# ՁԱՅՆՔԱՂ

# ՇԱՐԱԿԱՆ

ՅՈՐՈՒՄ ԲՈՎԱՆԴԱԿԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ՍՈՒՐԲ ԵՒ ՈՒՂՂԱՓԱՌ ԵԿԵՂԵՑՒՈՅ
ՀՈԳԵՆՈՒԱԳ ՊԱՇՏՕՆԵՐԳՈՒԹԻՒՆՔ ՅՕՐԻՆԵԱԼՔ Ի ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑՆ ՄԵՐՈՑ
ԵՒ Ի ՍՐԲՈՅ ՇՆՈՐՀԱԼՒՈՅՆ ԵՒ ՅԱՅԼՈՑ ՍՐԲՈՑ ՀԱՐՑ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ
Ի ՓԱՌԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՒ Ի ՄԵԾԱՐԱՆՍ ՍՐԲՈՑ ՆՈՐԱ

ԲԱՐԵԿԱՐԳԵԱԼ ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ԱՒՈՒՐ
ՀԱՆԴԵՐՁ ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ՔԱՂՈՒԱԾՈՎՔ Ի ԴԻՒՐՈՒԹԻՒՆ
ԵՐԳԵՑՈՂԱՑ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ Ե. ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
ՏԵԱՌՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔ-ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ ՏԵԱՌՆ ԶԱՒԷՆԻ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔ-ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Գ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ
ԸՆՏՐՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԲԱՂԴԱՏՈՒԹԵԱՄԲ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՕՐԻՆԱԿԱՑ




*Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅՍ*
ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
ԵՐՈՒՍԱՂԷՄ

1914
ՌՅԿԳ = 1363

ՀՐԱՄԱՆԱՒ

**ՏՆՕՐԷՆ ԺՈՂՈՎՈՅ ՍՐԲՈՅ ԱԹՈՌՈՅՍ**

# ՅՕՐԻՆՈՂՔ ՇԱՐԱԿԱՆԱՑ

Որք զծորանս Հոգւոյն արբին, եւ ընդ ժամանակս ժամանակս երգեցին զեղանակաւոր երգս Շարականաց.

1. Մեծն Մեսրովպ ասաց զկարգն Ապաշխարութեան.

2. Սուրբն Իսահակ՝ զԱւագ շաբաթեանն.

3. Մովսէս Քերթողն՝ զԾննդեանն, եւ զՄեծացուսցէքն, եւ զՏեառնընդառաջին, զՓոխման առաջին պատկերն, այլեւ զկարգն Ցարութեան սորա՛ է ասացեալ (Մեծն Վարդան՝ 'ի Տեսութեան Անթառամ ծաղկին.) իսկ այլք ասեն, թէ Անանիա Շիրակունին է ասացեալ.

4. Եւ զՊենտէկոստէին, եւ զՎարդավառին, եւ զՍուրբ Գրիգորին, եւ զՅովհաննու, եւ զՄարգարէիցն, եւ զՎարդապետացն, եւ զԱռաքելոցն, եւ զԹագաւորացն, եւ զԱնտոնին, զայս ամենայն ոմանք Անանիայի տան, եւ ոմանք Խորենացւոյն.

5. ԶՄեղաք յամենայնին եւ զկարգ մեծ տօնիցն՝ Յովհան Օձնեցին.

6. ԶՀռիփսիմեանց Անձինքն եւ զհարցն՝ Տէր Կոմիտաս. զԱնսկիզբն՝ Յովհան Մանդակունին, եւ այլք ասեն՝ թէ Օձնեցին.

7. ԶՀանգստեանն եւ զՄարտիրոսացն՝ Պետրոս Գետադարձն, եւ եւս զբազումս 'ի Մանկտեացն.

8. ԶԽաչին եւ զԵկեղեցւոյն՝ Իսահակ Զորափորեցին, որ գնաց ընդդէմ տաճկաց.

9. Զորս ըստ պատկերին՝ Գրիգորի Մագիստրոսն.

10. ԶԱւագ օրհնութիւնս զեօթն ձայնիցն՝ Ստեփաննոս Սիւնեցին.

11. ԶՎառ ձայնն Աւագ օրհնութեանց՝ Ներսէս Կլայեցին. այլեւ զՆինուէացւոյն, եւ զԾաղկազարդի հարցն, եւ զՀոգեգալստեան չորս պատկերսն, եւ զՎարդավառի զերկու պատկերսն, եւ զՓոխման երկու պատկերսն, զՀրեշտակապետացն, զԵօթանասնիցն, զՂեւոնդեանցն, եւ զՄարգարէից չորրորդ ձայն հարցն, եւ զՅովհաննու չորրորդ ձայն հարցն, զՆորահրաշն, զՆայեա՛ց սիրովն, զԻ քէն հայցեմքն, զԱրեւագալի շարականսն, զՕրհնեմք զքեզն, զԱյսօր անճառն, զԱրարչականն, զԱստուած անեղն եւ ըստ ոմանց՝ զՍուրբ Ցակովբայն եւս սորա է ասացեալ, նաեւ զաղուհացից կիւրակէիցն. եւ ոմանք զկարգ մեծ Տօնիցն եւս սմա տան.

12. Իսկ զԱյսօր յարեաւն, զՆորոգեալ կզզիքն, զՀամբարձմանն, եւ զԹուանցն՝ Ներսէս Լամբրոնացին.

13. ԶԽորհուրդ անճառն, եւ զՄեծահրաշն՝ Գրիգոր Պահլաւունի՝ եղբայր Շնորհալւոյն.

14. ԶԱրեգականն՝ Գրիգոր Սկեւռացին.

15. ԶԵրգեցէքն՝ Ցակոբ Կլայեցին.

16. Եւ զՈր նախիմացն, եւ զԻ յանսահման ծովէն, եւ զԹարգմանչաց օրհնութիւնն, եւ զՍուրբ Սարգսի օրհնութիւնն՝ Վարդան Վարդապետին է ասացեալ.

17. Որ զլոյս անճառն եւ զԽոստաճարակացն, եւ զԼուսաւորչի զԱյսօր զուարճացեալն եւ զԼերինքն՝ Յովհաննէս Պլուզ Վարդապետին է ասացեալ.

18. ԶԱրեւելք զերարփին ոմանք Կիրակոսի Եզնկացւոյն տան եւ ոմանք՝ Կիրակոսի Թարգմանչին՝ աշակերտի Գրիգորի վկայասիրի.

# ՅՕՐԻՆՈՂՔ ՇԱՐԱԿԱՆԱՑ ԵՒ ԺԱՄԱՆԱԿՔ ՆՈՑԱ

| | ՅԱՄԻ ՏԵԱՌՆ |
|---|---|
| Սուրբ Սահակ Պարթեւ Հայրապետ. | 426 |
| Սուրբ Մեսրովպ Վարդապետ. | 426 |
| Սուրբ Մովսէս Խորենացի՝ Արքեպիսկոպոս Արշարունեաց. | 441 |
| Սուրբ Յովհան Հայրապետ Մանդակունի. | 480 |
| Երանելի Տէր Կոմիտաս Հայրապետ. | 618 |
| Երանելի Անանիա Վարդապետ Շիրակունի. | 661 |
| Երանելի Սահակ Հայրապետ Ձորափորեցի. | 677 |
| Սուրբ Յովհան Իմաստասէր Օձնեցի. | 718 |
| Երանելի Ստեփաննոս Արքեպիսկոպոս Սիւնեաց. | 728 |
| Երանելի Պետրոս Գետադարձ Հայրապետ. | 1019 |
| Մեծն Գրիգոր Մագիստրոս. | 1044 |
| Սուրբ Գրիգոր Պահլաւունի՝ եղբայր Շնորհալւոյն. | 1113 |
| Սուրբ Ներսէս Կլայեցի Շնորհալի Հայրապետ. | 1166 |
| Սուրբ Ներսէս Լամբրոնացի Արքեպիսկոպոս Տարսոնի. | 1181 |
| Երանելի Գրիգոր Վարդապետ Սկեւռացի. | 1204 |
| Երանելի Մեծն Վարդան Վարդապետ. | 1251 |
| Երանելի Յակոբ Հայրապետ Կլայեցի. | 1268 |
| Երանելի Յովհաննէս Վարդապետ Պլուզ. | 1288 |
| Կիրակոս Վարդապետ Եզնկացի. | 1478 |

## ԱՆՈՒԱՆՔ ԽԱԶԻՑ ՇԱՐԱԿԱՆԱՑ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Շեշտ | ՛ | Խունճ | [neume] | Բենկորճ փոքր | [neume] | Խէկորճ | [neume] |
| Փուշ | [neume] | Վերնախաղ մեծ | [neume] | Ձակորճ | [neume] | Կէտերկար | [neume] |
| Բութ | ՝ | Վերնախաղ փոքր | [neume] | Էկորճ | [neume] | Կրկնոլորակ | [neume] |
| Պարոյկ | ՞ | Ներքնախաղ մեծ | [neume] | Խում | [neume] | | [neume] |
| Երկար | / | Ներքնախաղ փոքր | [neume] | Հուհայ | [neume] | | [neume] |
| Սուղ | ° | Քարքաշ | [neume] | Փաթութ | [neume] | | [neume] |
| Սուր | / | Խոսրովային | [neume] | Ջարկ | [neume] | | [neume] |
| Թուր | ) | Ծունկ | [neume] | Կուռ | [neume] | | [neume] |
| Թաշտ | ‿ | Ծնկներ | [neume] | Մենկորճ | [neume] | | [neume] |
| Ոլորակ | [neume] | Բենկորճ մեծ | [neume] | Կրկներկար | [neume] | | |

## ՍԿՍՈՒԱԾՔ ՇԱՐԱԿԱՆԱՑ ԸՍՏ ՈՒԹՆ ՁԱՅՆԻՑ

| | |
|---|---|
| ա ձ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| ա կ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| բ ձ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| բ կ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| գ ձ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| գ կ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| դ ձ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| դ կ | Օրհնեսցուք ըզտէր զի փառօք է փառաւորեալ: |
| սող | Օրհնեցէք մանկունք ըզտէր եւ օրհնեցէք զանունըն տեառն: Լուսամպայծամմա: |

# ՑՈՒՑԱԿ

## ԿԱՐԳԻ ՇԱՐԱԿԱՆԻՍ

# ՑԱՆԿ

## ՄԵԾԱՑՈՒՍՑԷԻՑ

| Անուանք Ամսոցն երկոտասանից | Ա | Բ | Գ | Դ | Ե | Զ | Է | Ը | Զայնագիւտ. Արարեալ յԱնդրիասէ իմաստասիրէ՝ Յատենադպրէ Թագաւորին Հեթմոյ։ | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Թ | Ժ | Ի | Լ | Խ | Ծ | Կ | Հ | | | | | | | |
| | Ձ | Ղ | Ճ | Մ | Յ | Ն | Շ | Ո | | | | | | | |
| | Չ | Պ | Ջ | Ռ | | | | | | | | | | | |
| Փետրուար | է | զ | ե | դ | գ | բ | ա | * | Ս | Վ | Տ | Ր | Ց | Ւ | Փ |
| Մարտ | գ | բ | ա | * | է | զ | ե | դ | է | զ | ե | դ | գ | բ | ա |
| Ապրիլ | բ | ա | * | է | զ | ե | դ | գ | զ | ե | դ | գ | բ | ա | * |
| Մայիս | * | է | զ | ե | դ | գ | բ | ա | դ | գ | բ | ա | * | է | զ |
| Յունիս | է | զ | ե | դ | գ | բ | ա | * | գ | բ | ա | * | է | զ | ե |
| Յուլիս | ե | դ | գ | բ | ա | * | է | զ | ա | * | է | զ | ե | դ | գ |
| Օգոստոս | դ | գ | բ | ա | * | է | զ | ե | * | է | զ | ե | դ | գ | բ |
| Սեպտեմբեր | գ | բ | ա | * | է | զ | ե | դ | է | զ | ե | դ | գ | բ | ա |
| Հոկտեմբեր | ա | * | է | զ | ե | դ | գ | բ | ե | դ | գ | բ | ա | * | է |
| Նոյեմբեր | * | է | զ | ե | դ | գ | բ | ա | դ | գ | բ | ա | * | է | զ |
| Դեկտեմբեր | զ | ե | դ | գ | բ | ա | * | է | բ | ա | * | է | զ | ե | դ |
| Յունուար | ե | դ | գ | բ | ա | * | է | զ | * | * | է | զ | ե | դ | դ |
| Փետրուար | դ | գ | բ | ա | * | է | զ | ե | * | է | զ | ե | դ | գ | բ |

## ԽՐԱՏ ԿԻՐԱՌՈՒԹԵԱՆ ԱՂԻՒՍԱԿԻՍ

Եթէ մոռացեալ լինի պատահմամբ ձայն աւուրն՝ եւ դու գտանել կամիցիս, նախ պարտիս գիտել թէ ո՛րն իցէ Գիր տարւոյն, այլ եւ զամիսն եւ զքանիս նոյն ամսոյն յորում որոնես։

Ուստի կա՛լ զԳիր տարւոյն 'ի վերուստ՝ որ է Տնագլուխ եղեալ՝ է՛ջ 'ի վայր հանդէպ ամսոյն, ուր է Եօթներեակ նորին։ Եւ առեալ զեօթներեակն՝ միաւորեա՛ ընդ թուոյ աւուր ամսոյն. եւ ութ ութն 'ի բաց գնա՛. եւ որ ինչ մնայ՝ այն է ձայն աւուրն անսխալ։

Բայց իմա՛՝ զի Գիր տարւոյ սորին ոչ փոփոխի 'ի մուտն Յունուարի, այլ յաւուր Կիւրակէի Բուն բարեկենդանին. յորում աւուր եւ ձայնն զինչ եւ իցէ՝ փոփոխի 'ի Վերջ ձայն. զի չէնք Աղիւսակիս արարեալ է 'ի վերայ Բուն բարեկենդանին, եւ անտի սկսեալ։ Զոր օրինակ թուական տարւոյս է՝ ՌՅԿԳ, Գիր տարւոյն է Հ. եւ յայսմ ամի Բուն բարեկենդանն 'ի Փետրուարի ԺԶ լինի. եւ հանդէպ սոյն ամսոյ, եւ 'ի ներքոյ Հ Տարեգրին եղեալ տուփն՝ է *, վասն որոյ չիք ինչ յաւելուլ 'ի վերայ ԺԶին, յորմէ երկիցս ութն 'ի բաց գնալով 'ի Վերջ ձայնն գայ։ Այլ եթէ ամն յորում կաս, նահանջ իցէ, 'ի Մարտ ամսոյ սկսեալ՝ պարտիս զերկրորդ գիր Տարեգրոյն 'ի կիր առնուլ. զի Փետրուար ամիսն մի օր յաւելանայ։ Սոյնպէս իմա՛ եւ վասն այլոց Տարեգրաց եւ ամսոցն աւուրց թուոց եւ Եօթներեկաց։


Ս. Ներսէս Շնորհալի — Ս. Սահակ — Ս. Մեսրոպ — Ս. Մովսէս Խորենացի

Որ զխաւարն անգիտութեան Հայաստանեայցս լուծեր,
զիմաստութեան ծագեալ զլոյս աչօք որդւոց Թորգոմայ։

(Շարական)



# ԿԱՆՈՆ

## ԾՆՆԴԵԱՆ ՍՐԲՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

### Ի ԾՆՈՂԱՑ ԻՒՐՈՑ

## Ի ՅՈՎԱԿԻՄԱՅ ԵՒ ՅԱՆՆԱՅԷ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

գկ Ե՛ՐԳԵ՛ՑԷ՛Ք որդիք սիոնի երգ նոր 'ի ծննդեան մօր տեառն. քանզի որ ծնաւ զանժամանակն 'ի հօրէ ծնեալն այսօր ծնաւ յամուլ արգանդէ. տուք օրհնութիւն տեառն զին մեզ ըզմայրըն լուսոյ։

Ցնծացէք որդիք մարդկան այսօր ծննդեամբ սրբուհւոյ կուսին. քանզի որ տարաւ զանտանելին յարգանդի անսերմնապէս այսօր բղխեաց յարմատոյն յեսսեայ. տուք օրհնութիւն տեառն։

Ուրախութիւն աշխարհի ծնաւ զմարիամ ամուլն աննա աւետեօք զօւարթնոյն. որ ըզտրուպն օրինաց հընոյն ծնաւ մարմնով պարգեւիչ նորոյս կտակի. տուք օրհն։

Խընդա մայր բանին 'ի հօրէ ծնեալ նախ քան զարուսեակ. որ ըզլոյսն երկնային ծագեցեր մարդկան ըզլուծիչ մեղաց մըթութեան. մաղթեա բանին փրկել ըզմեզ 'ի մեղաց մերոց։

Այսօր լցաւ խոստումն աստուծոյ առ նախահայրսն, 'ի զաւակէ նոցին օրհնիլ ամենայն ազանց. զի յարմատոյ նոցին բղխեաց կոյսըն սուրբ որ ծնաւ ըզբանն բարձրոյ մեղաց նախահօրն. փառս տացուք տուողին մեզ զօրհնեալն 'ի կանանս։ ✱

Այսօր բուսաւ յաննայէ մորենին մարիամ յոր վառեցաւ հուրն աստուածային. զոր եւտես մովսէս զօրինակ կուսին 'ի սինա լցեալ լուսովն անմատոյց. փառս տա։

ծնն Էակից հօր եւ հոգւոյն, անըս-
կիզբն որդի. անմայր յառաջնումն
անդրանիկ. եւ ընդ հօր յաւիտեան։
Ի ծոցոյ հօր առաքեալ, եդեալ 'ի
մըսուր անբանից. բանդ աստը-
ւած յայտնեալ։
Քրիստոս ծընեալ 'ի քաղաքի դաւ-
թի. քարոզեն հովիւքն ընդ հրեշ-
տակս. եւ մոգք հանդերձ աս-
տեղըն։
ծնն Հրաշափառ ծընունդ քո 'ի
սուրբ կուսէն. այսօր ցուցաւ ազգի
մարդկան. անըսկըզբնակից բանդ
էակից հօր։
Յայտնութեամբ քո տէր ցընծա-
ցաւ երկիր. եւ նորոգեալ եղե-
ադամ յառաջին յանցանաց 'ի
մեղաց իւրոց։
Դասք հովուացն յերկրի փառա-
ւորէին ըզքո ամենակեցոյց գա-
լուստդ. որ երեւեցար քո արարա-
ծոցս։
ծնն Որ ըզմարմնացեալըն տիրաբար
'ի յորովայնի քում կրեցեր. ու-
րախ լեր անհարսնացեալ մայր։
Որ զանտանելին յէից 'ի յարգան-
դի անապականաբար կրեցեր. ու։
Որ զարարչակից բանըն գոյացեալ.
ըստուգապէս աշխարհի ծընար. ու-
րախ լեր։
ծնն Այսօր յայտնեցաւ մեզ բար-
ձրեալըն բազմեալ բանըն յանբա-
նից մըսուր. գան եւ երկնաւոր
հաց։
Այսօր ցընծան զըւարթունք երկ-
նից. տեսանելով զահաւոր զահա-
գին և ըզհրաշալի ծընունդ. որ լոյս
աշխարհի ցուցաւ։
Ընդ իջանել զըւարթնոցն 'ի փա-
ռաբանութիւն. տեսանէին ամպ

լուսոյ սիւն գործեալ 'ի հրակեզ վի-
մին. դասք երջանիկ հովուացն։
Աստուածածին խորան լուսոյ ած
անվայրափակ արփւոյն կենաց. որ ե-
ղեր արեւելք արեգական արդա-
րութեան. եւ նստելոցս 'ի խաւա-
րի լոյս ծագեցեր. վասն որոյ ամենե-
քեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։
Անապական տաճար եւ մորենի
անկիզելի. որ զանշէջ հուր աս-
տուածութեանն 'ի քեզ տարեալ
կրեցեր. որով բնութեանս կիզեալ
շիջաւ կրից բոց. վասն որոյ։
Կենդանի տապանակ կտակարա-
նաց նորոյ ուխտի. որով եղեք յեր-
կիր աւետեաց հորդեալ հոգւով 'ի
քեզ տըպաւորեալ բանին. վասն որոյ։
Աստուածածին սիւն լուսոյ
ամպ հովանաւոր. եւ բնակարան
բանին որ բանիւ հովուէր զիսրայէլ.
բարեխօսեա նըմա վասն անձանց
մերոց։
Զանապական կոյսըն մարիամ աս-
տուածածին խոստովանի սուրբ ե-
կեղեցի. ուստի տըւաւ հացն ան-
մահութեան եւ բաժակ մեզ ու-
րախարար. տուք օրհնութիւն նը-
մա հոգեւոր երգով։
Զտաճար անապական բանին հօր.
բարեբանեն դասք հոգեղինացն.
գովեմք եւ մեք ձայնակցելով երկ-
նայնոցն։
Այսօր ցընծան դասք առաքե- հոգ
լոցըն գալըստեամբ հոգւոյն աստու-
ծոյ. զոր մըխիթարեաց փոխանակ
բանին մարմնացելոյ եղեալ ընդ
նոսա. փառըս տացուք նըմա սըր-
բասաց ձայնիւ։
Այսօր բըղխեաց ջուր կենդանի
յերուսաղէմ յորմէ լըցան գետք

անստուածայինք. եւ ընթացեալ արբուցին տիեզերաց զքառավըտակ աղբիւրն եդեմայ. փառըս տա:

Այսօր ցօղով իմանալեաւ յամպոց հոգւոյն զուարթացան բոյսք եկեղեցւոյ. պարարտացան դաշտք արդարութեամբ եւ գեղեցկացան անապատք մաքուր կուսութեամբ. փառըս տա:

հառ Լեառն վիմածին աղբիւր յորդառատ. բարունակ ծաղկեալ այգի վայելուչ սրովբէ հողեղէն. րաբունւոյ բանին տուն տնօրէնութեան տաղաւար հոգւոյն. առ ծընեալն 'ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր ննջեցելոցն:

Փափկութեան դրախտին բացող բանալի. քրիստոսի բարձող նմանող երկնից. սափոր ոսկեղէն լի մանանայիւ. գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսսեայ տաճար լուսոյ մայր. առ ծըն:

Ցօղ քաղցրածաւալ ցանկալի զըւարթնոց. նիւթեղէն սրովբէ գեղ մարգարտափայլ հիմն եկեղեցւոյ. մաքուր աղաւնի ամպ հովանաւոր սուրբ կոյս մարիամ. առ ծըն:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Այսօր գառինքն օրինականքըն յովակիմ եւ աննա ետուն մեզ ըզգեղմն ընդունիչ ըզցօղն երկնային. յորմէ հոսեաց անձրեւըն կենաց և բըղխեաց աշխարհի աղբիւրն իմաստից. փառըս տա:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Այսօր ծընաւ մայրն ամուլ զքեզ յարմատոյն յեսսեայ ծառ կենաց ծաղկեալ տիրուհի. որ ետուր մարդկան 'ի ժամու պըտուղ զհացըն կենաց զիջեալըն 'ի յերկնից. բարեխօսեա սրբուհի վասն անձանց մերոց:

Որ ըզնախագրեալսն յառաջագոյն գուշակութեամբ մարգարէիցն. կատարեցեր հայր երկնաւոր տալով ըզկոյսն 'ի յաննայէ. ըզքեզ բարեբանեմք աստուած հարցըն մերոց: հրց դկ

Որ 'ի լուսոյ անձառ ծնընդեանն ըստ եսայեայ քո 'ի կուսէն. այսօր հրաշիւք հօր միածին յամուլ մօրէ զմայրըն քո պարգեւեցեր. ըզքեզ բա:

Որ զօրինակ մարիամու հոգիդ ցուցեր մարգարէին. այսօր զնուակ յովակիմայ ետուր ըզլեառըն վիմածին. ըզքեզ բա:

Օրհնեցէ՛ք ամենայն գործք տեառն զտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Զուարճացիր սիօնըդ հին հանդիսարան տեսանողացն. որ բազմագոյն օրինակօք գուշակեցեր ըզծնունդ բանին տեառն աստուծոյ. բարձր արա:

Ուրախացիր եկեղեցի դուստր վերինըն սիովնի. քանզի ծընաւ 'ի յաննայէ մայրն ծընող քոյն փեսային. բարձր արա:

Քահանայք և ժողովուրդք տօնախըմբողք ծնընդեան կուսին. ընդ յովակիմայ և աննայի ծնողացն սըրբոյ ծնողի բանին. բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Նահապետացն սրբանուէր իսահակայ եւ յակոբայ. պարգեւեցար 'ի յաստուծոյ կոյս մարիամ դուստր նոցին. երանեն ազգ եւ ազինք այսօր ըզծնեալդ 'ի յաննայէ: մծ

Աղախին եւ մայր կենաց աջոյն ծընող հօր միածնին, որ առ 'ի քէն մարմնով ընկէց զամբարտաւանըն յաթոռոյ. երա:

Որ բարձրացուցեր զանկեալ բնութիւնս 'ի քէն ծննդեամբ որդին յերկինս. ընկարօտեալսն ելից հացիւ եւ զմեծատունսն ելոյծ ունայն. Երանեն ազգ եւ։

ողբ բկ Որ ողորմեցար 'ի մեղըս ծնեալ մարդկան հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսն սուրբ ըզծնող որդւոյդ միածնի. մաղթանօք սորա տէր մեզ ողորմեա։

Որ ցօղեցեր 'ի մեզ յամպոյ օրհնաց որդիդ այսօր զկոյսն մարիամ. յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախաստեղծին ադամայ. մաղթա։

Որ մաքրեցեր հոգիդ սուրբ ըզսիրտ և զարգանդ մօր քո փառակցին. այսօր ամուլ ծնողաց նորին ետուր ըզմայր բանին զօրհնիչն եւայի. մաղթա։

տէր Այսօր ցընծան երկնայինքն եւ պար առեալ 'ի բարձունս. երգեն զերգըս հոգեւորս յաւուր ծննդեան սրբուհւոյն։

Այսօր վերինքն սիօնի գոչեն զերգըս սրովբէիցն. զերեքսրբեանն ասելով յաւուր ծնն։

Այսօր աստեղք եւ լուսին ընդ արեւու հրճուելով. գովեն ըզլոյսն 'ի հօրէ յաւուր ծննդեան լուսոյ մօրն։

Այսօր ծերքն օրհնականք մանկամբք նորոյ սիօնի. երիտասարդք եւ կուսանք խընդան ծննդեամբ տիրուհւոյն։

Այսօր գունդք առաքելոցն եւ պարք նախատեսացն. յաւուր ծննդեան մօր բանին երգեն ըզփառս 'ի բարձունս։

Ծառ կենաց տնկեալ յադին սուրբ կոյս. որ ըզհայրածինն բըղխեցեր ըզծաղիկ. եւ ետուր 'ի ժամու զորդին պտուղ մարդկան. զորոյ զմարմինն ճաշակեալ անմահացաք յուսով. վասն որոյ օրհնաբանեմք ըզքեզ յաւուր քո ծննդեան։ ձշւ գկ

Բանաւոր երկիր տիրուհի եւ անդաստան մաքուր 'ի փշոց մեղաց. որ ըզբոյսն երկնային անանց սերման ծընար. որով զկենացն ետուր ըզհաց սովեալ բնութեանս. վասն որոյ օրհ։

Ամպ թեթեւ յերկրային ցանկութեանց սուրբ կոյս, եւ վառարան աստուածային բոցոյն. որ ըզցօղն հայրաբուղխ անձրեւեցեր 'ի բանական երկիր. որով բնութեանս բուսան արդարութեան սուրբ բոյսք. վասն որոյ օրհ։

Նոր սիօնի ծնեալ մանկունք սուրբ աւազանաւն. շնորհազարդեալք հոգւովն աստուծոյ. օրհնեցէք զհայրն երկնաւոր յաւուր ծննդեան սրբուհւոյ կուսին. յոր օրհնեցայք յանիծից նախնոյն։ հմբ գձ

Արեամբ գառին անարատի փրկեալ ժողովուրդք. յաւուր ծննդեան մօր անաանելւոյն. գովեցէք ըզմիածինն որ հաճեցաւ առնուլ մարմին անսերմն 'ի նմանէ. յոր օրհ։

Յաստուածաբուղխ շնորհաց հոգւոյն լուսազարդեալ ազգք հեթանոսաց. յաւուր ծննդեան մօր բանին ծնողի. զփառակից որդւոյ զհոգին բարեբանեցէք հոգեւոր երգով. որ մաքրազարդեաց զմարմնարան որդւոյն։



# ԿԱՆՈՆ

## ՅՈՎԱԿԻՄԱՅ ԵՒ ԱՆՆԱՅԻ

### ԾՆՈՂԱՑ ՍՐԲՈՒՀԻՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

օրհ / ակ

Որ նախիմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հիմունս հաստատութեան ըզգաստ արդարոյ. աղաչանօք սոցա խնայեա 'ի մեզ:

Որ զօրհնութիւն նախաստեղծիցն աստուածադրոյդ արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր. այսօր 'ի Յովակիմ եւ 'ի յԱննա. ալէ:

Որ ըզխոստումն աբրահամու նահապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական եւ թագաւորական գաւազանացն միացեալ ցուցեր այսօր 'ի յԱննայէ. ալէ:

Անըսկիզբն աստուած անճառելի անքնին զօրութիւն որ նախկըզբանց յաւիտենից խնամարկեցեր զորդիս ադամայ. գերագոյն այսօր շնորհիւ փայլեալ ցուցեր ծընընդեամբ զմայր միածնիդ քո ընտրելոյ. ալէ:

յով

Թագաւորըն բոլորից պայծառածածկեալ յարգանդի կուսին. զոր ծառայդ հաւատարիմ տեսեալ հոգւովըն սրբով. եւ բերանով մօր քո օրհնաբանէիր. առ քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց:

Ժառանգաւոր հին օրինացն արդարութեան ընդ մարգարէիցն. եւ նախաշաւիղ հետեւողաց անձուկ ճանապարհին նոր օրինացս ընդ առաքելոցն. առ քրիստոս բա:

Ի յանապատի հրեշտակական վարուք բնակեցար ըստ եղիայի. կերակրելով մարախ եւ մեղր վայրենի. հին եւ նոր պատուիրանաց օրինակաւ. առ քրիստոս բա:

Որ զաստուածային զօրութիւնըդ քո ծանուցեր հոգիդ ճըշմարիտ. բաշխելով իշխանաբար ըզպարգեւըս քո տեսանողաց մարգարէիցն 'ի սկըզբանէ. բարեխօսութեամբ սոցա խընայեա 'ի մեզ: մար

Որ մաքրեցեր բնակարան աստուածութեանըդ քո սուրբ ըզմարգարէսն. եւ առաւելաբար հեղեր յանձինս նոցա. զանապական եւ զերկնային շնորհաց քոց բըղխումն. բարեխօսու:

Որ յայտնեցեր ըզծածկեալ խորհուրդ քոյոց սիրողաց. եւ անճառելեաց ապագայից պատմողս արարեր. տնօրէնութեան քում էակցի բանիդ աստուծոյ. բարեխօսու:

Ի յանսահման ծովէն հօր գըթութեանց բըղխմունք եւ սուրբ առաքեալք. անդրանիկ խորհուրդք եւ լոյս գերագունից. երկնաւոր ազգաց պըսակ սուրբ եկեղեցւոյ. բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց: առ

Աշխարհակիր բանին բազկաց եդեալ հիմունք սրբոյն սիոնի. լերինք անշարժք հովիտք ծաղկածինք. հարազատ վէմք հաւատոյ պետրոս եւ անդրէաս. բարե:

Ի բարեբուն հոգւոյն վտակք եւ ոռոգմունք տիեզերաց. ցօղմունք հրեղէնք աստեղք լուսափայլք. յիսուսի թագաւորին վանկաս

լանջաց սուրբ յովհաննէս եւ յա-
կոբոս. բարե։

Հայ Որ թագաւորաց ազգաց եւ ա-
զանց գերագոյն ցուցին. արփիա-
փայլ զերգըս հոգեւորս ընտրեալ
դասուց վերին սիովնի. անմատոյց
լուսոյն երկրպագեսցուք։

Որ խորհրդեամբ Ճըշմարիտ լու-
սոյ փառաց անեղին. նըկարագրե-
ցաւ մեզ գիր կենդանի յարդանդ
մաքուր մեծին մեսրովպայ. անմա։

Որ զծածկեալ խորհուրդ ա-
տուածգիտութեան. տնօրինաբար
յայտնեալ ծանուցին հանգոյն սըր-
բոյ մեծին մովսէսի. անմա։

Որ յօրինակ Ճըշմարիտ սիրոյ սուրբ
առաքելոցն. աղբերաբար 'ի ձեզ
եհաց հոգի շնորհաց բըղխումն
անըսպառ. անմա։

Որ երկոքումբք սուրբ լուսաւոր-
չօք տանս թորգոմայ, հաստատե-
ցեր զեկեղեցիս հայաստանեայց.
զլոյս իմաստից 'ի մեզ ծագելով.
մաղթանօք սոցա քրիստոս խընա-
յեա 'ի մեզ։

Հող Որ յերկնային զօրս անմարմնո-
ցըն նախ հեղեր առատապէս հո-
գիդ Ճըշմարիտ. զաստուածային և
զգերագոյն քո իմաստութիւնդ. լի-
նել փառաբանիչ սուրբ երրորդու-
թեանդ. ընդ նոսին փառաւորեմք
զերրեակ միութիւնդ։

Որ զկերպարանն աստուածային
ստեղծեալ երրորդութեանդ խոր-
հըրդակցութեամբ. զարդարեցեր
փըչմամբ շնորհաց քոց կենդանա-
րար. եւ ընդ ծնեալսն առ 'ի նմա-
նէ խօսեցար օրինօք եւ մարգարէ-
իւք, ընդ նո։

Որ յերկրորդէ լինելութեանս յետ
յարութեան քում էակցին միտեալ
'ի վերնատունն դրօշըն փակելովք.
շնորհելով ըստ առաջին փըչմանն
ըզքեզ մետասանից. առաքելոցն
ասաց առէք հոգի սուրբ. ընդ նո։

Յորժամ յերկնից գոչէ փողն Հան
ազդեցութիւն առնելով տիեզե-
րաց 'ի դատաստանն ահաւոր. յայ-
նըմ աւուր ահեղին յիշեա տէր
եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հան-
գո ընդ սուրբըս քո։

Յորժամ Ճառագայթք աստուա-
ծութեանըդ փայլին 'ի յարեւելից.
եւ դըպրութիւնըք հրաշիցըն բա-
նին. յայնմ ա։

Զարհուրեալ դողան արարածք 'ի
ձայնէ սոսկալեագոչ փողոյն. յորժամ
հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ
'ի դատաստան զազգս որդւոց մարդ-
կան. յայնմ ա։

Որ գերահրաշ ծաղիկ բուրեալ Ած
յեդեմայ. հոտ անմահութեան
ծնընդոցս եւայի. յորմէ սփռեցաւ
մահ ընդ տիեզերս, օրհնութեամբ
ըզքեզ մեծացուցանեմք։

Դու լուծիչ երկանց բարձող անի-
ծից. ծագումն արեւու լուսոյն Ճըշ-
մարտի. որով հերքեաւ խաւարն ա-
ռաջին. օրհ։

Ըզքեզ ունիմըք բարեխօս կոյս
անհարսնացեալ. մայր անարատ էմ-
մանուէլի. տաՃար բանին հօրն եր-
կնաւորի. օրհ։

Ի վերայ վիմի հաւատոյ հիման Խաչ
առաքելոց եւ մարգարէից. շինեցեր
ըզքո սուրբ զեկեղեցի. եւ 'ի սմ
միաձայնեալ եղեն մարդիկ ընդ հը-
րեշտակս. փառաւորելով սուրբ զեր-
րորդութիւնդ։

Տեղի ապաւինի եւ ժողովարան

բանաւոր հօտի. բնակարան հրեշտակաց. նաւահանգիստ արդարոց եւ մեղաւորաց քաւարան. զարդարեալ առաքինովք եւ մարգարէիւք։

Բանն աստուած և ծածկեալ խորհուրդն յաւիտենից. իջեալ ՚ի յերկնից մարմնացեալ ՚ի կուսէն խաչեալ յերկրի եւ թաղեալ ՚ի նոր ՚ի գերեզմանի. եւ յարուցեալ յերրորդ աւուր. զի զմարգարէիցն ըզտառսըն կատարեսցէ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Որ յանէից բանիւ գոյացուցեր զաշխարհս ամենայն. այսօր մարդասիրեալ անօրինակս ՚ի յաննմանէ արկեր հիմունս նորոյ աշխարհի. տղայ։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Ի յամուլ երկրէ այսօր բուսաւ մեզ բարեբեր բոյսըն բարի շուշան հովտաց ծաղիկըն դաշտաց. միամայրըն մարիամ արմատ տընկոյն անմահութեան. տղայ։

հրց դձ Որ ՚ի վերայ քերովբէից նըստեալ հանգչիս բանդ աստըւած. այսօր հրաշափառ պարգեւօք. ցուցեր ծնընդեամբ ՚ի յաննայէ աթոռ փառաց յերկրի զսուրբըն մարիամ. օրհնեալ տէր աստըւած հարցըն ը մերոց։

Որ ՚ի լերինըն քորեբայ փայլատակեալ հուրդ աստուածային՝ հողմով և շարժմամբ յայտնեցար ՚ի պակուցումըն սուրբ մարգարէին. այսօր գըթութեամբ եւ ողորմութեամբ յարմարեցեր տեղի իջման անճառելի խոնարհութեամբ ՚ի յօդ հանդարտ զօրինակեալըն մարիամ. օրհ։

Որ ՚ի կանոնս ժամանակաց ստորագրեցեր զանօրէնութեան քո ըզտեղի. տաճար եւ քաղաք շինեալ բարձող անուանըդ քում բարձրելոյ. այսօր ստուգապէս յայտնեալ ցուցաւ բնակարան աստուածութեան քո սուրբ կոյսըն մարիամ. օրհ։

Օրհնեցէք ամենայն գործըք տեառն ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզծընեալն այսօր ըզմայր մաքուր բանին ըզմիշտ կոյսն։ գ

Որ ՚ի գօրաց հողեղինաց երգաբանի սրբուհին. ըզծընեալն այսօր օրհնօք բնութեան զմայրն աստուծոյ բանին ՚ի վեր քան ըզբնութիւնս. բարձր արա։

Որ ՚ի դասուց մարգարէից եւ յերջանիկ առաքելոցն օրհնաբանեալ տիրուհին. ըզլուծիչ երկանցն եւայի զմայրըն կենաց ծընեալն այսօր ՚ի յաննայէ. բարձր արա։

Առաւօտ խաղաղութեան եւ մեծ արուսեակ զուարթարար. այսօր մարիամ սրբուհին. ՚ի փառըս քո քրիստոս ծագեաց մեզ լոյս յորդառատ օրինաց. անդադար երգով սրբօք ըզքեզ ը միշտ մեծացուցանեմք։

Դրախտ աստուածային եւ արեւելք իմանալի. այսօր մարիամ հրաշագեղ. ծնեալ ՚ի յաննայէ ՚ի մայրութիւն քո հրաւիրեալ քրիստոս որդի աստուծոյ. անդա։

Տապանակ ապրեցուցիչ եւ տաղաւար աբրահամեն աստուածընկալ. այսօր մարիամ լուսապայծառ. միածին ծընունդ յայտնեալ ծնողաց. ՚ի ծնողութիւն քո կոչեցեալ միածին որդի աստուծոյ. անդա։

Անճառելիդ աստուած անզըն- ողբ
նական ՚ի հրեղինաց. այսօր հաճեցար ՚ի հողեղինաց յայտնել թագ-

մա՛ն աստուածութեա՛ն քո՞ զմիշտ կո՛յսը՛ն մա՛րիա՛մ. ա՛ղօ՛թիւք սորա՛ ո՛ղո՛րմեա՛ մե՛զ ա՛ստըւած։

Ա՛նժամա՛նա՛կ ծոցո՛յ ծը՛նո՛ւնդ հօ՛ր է՛ա՛կա՛ն. ա՛յսօ՛ր սը՛րբե՛ցե՛ր յո՛րո՛վա՛յնէ ժամանա՛կա՛ւ մա՛յր 'ի մօրէ՛ ա՛նձա՛ռ մա՛րդե՛ղո՛ւթեա՛մբ. ա՛ղօ՛։

Ցա՛ռա՛ջ քա՛ն զարուսեա՛կ ա՛նմայր ծը՛նո՛ւնդ հօ՛ր 'ի յե՛րկի՛նս. ա՛յսօր ը՛նտրե՛ցե՛ր իմա՛ստո՛ւթեա՛մբ զմա՛յր անա՛րա՛տ ա՛նհա՛յր ծնը՛նդեա՛ն քո՛ 'ի յե՛րկրի. ա՛ղօ՛։

տէր Թա՛գա՛ւո՛ր փառա՛ց աստուա՛ծ հո՛գի՛դ կե՛նդա՛նարա՛ր. 'ի՛ շնո՛րհա՛բա՛շխ ա՛ւուր մե՛ծի ծնը՛նդեան մա՛րիամու, դը՛ստեր դաւթի թա՛գաւորի՛ց. նո՛րո՛գեա՛ զկե՛նդանութի՛ւն մե՛րո՛յ թա՛գաւորի՛ն, զի օրհնե՛սցո՛ւք ըզքե՛զ տէ՛ր ա՛յժմ ե՛ւ յա՛ւի՛տեա՛ն։

Ա՛ղբի՛ւր կե՛նաց ե՛ւ փը՛րկութեա՛ն մե՛րո՛յ հոգի հօ՛ր ե՛ւ որդւո՛յ. 'ի՛ յա՛րմա՛տո՛յն յեսսեայ բը՛ղխման գա՛ւա՛զա՛նի հա՛սեալ ժա՛մո՛ւ, շնո՛րհա՛զա՛րդ պա՛յծառա՛ցո՛ զգա՛ւազա՛ն ի՛շխանութեան մե՛րո՛յ հա՛յրապետի՛ն. զի օրհնե՛ս։

Լրո՛ւմն ա՛շխարհի ե՛ւ ճառա՛գա՛յթ իմանալի հո՛գի՛դ սո՛ւրբ ա՛ստուծո՛յ. 'ի՛ ցը՛նծո՛ւթեան ա՛ւո՛ւր լը՛րման ո՛ւրախութեան յո՛վա՛կիմա՛յ ե՛ւ աննա՛յի՛. ա՛ղօ՛թի՛ւք սոցա՛ լը՛ցո՛ զպէտս կարեա՛ց հա՛յաստանեա՛յց ե՛կեղե՛ցւո՛յ. զի օրհ։

ձյն Ո՛ր 'ի բա՛րձրո՛ւթի՛ւնս երկնի՛ց բա՛րձըր բանի՛ւք բա՛րեբա՛նի՛ս սը՛րբո՛ւհի. 'ի՛ լը՛բա՛նա՛նէ դիմեա՛լ հա՛րսըն զգե՛ցեա՛լ այսօ՛ր. զա՛րեգա՛կն ա՛րկեա՛լ ը՛զքե՛ւ. ե՛ւ ը՛նդ ոտի՛ւք զլո՛ւսի՛նն ը՛ստուե՛րա՛տե՛սա՛կ օ՛րհնու-

թեամբ ե՛րգով ե՛կեղեցի՛ք տի՛եզե՛րա՛ց ա՛յսօ՛ր տօնե՛ն ը՛զյի՛շա՛տակ ծնը՛նդեա՛ն քո՛ 'ի՛ մօրէ՛։

Վե՛հա՛գո՛յն սերո՛վբէ՛ից ե՛ւ բա՛զմա՛չեայ քե՛րովբէի՛ց տի՛րամա՛յր ա՛ստուա՛ծա՛ծի՛ն. տա՛պա՛նա՛կ կը՛տակի սա՛փո՛ր ո՛սկի՛ խորհը՛րդա՛ւո՛ր խորա՛ն բա՛նի՛ն հօ՛ր բա՛րձրե՛լո՛յ. օ՛րհնութեամբ ե՛ր։

Մա՛րգարէի՛ց հանդի՛սարա՛ն ե՛ւ գրաւա՛կա՛ն կե՛նա՛ց մա՛րդկա՛ն մա՛րիա՛մ ա՛ստուա՛ծա՛մա՛յր. ը՛նդո՛ւնարա՛ն եօ՛թնա՛րփեա՛ն շնո՛րհա՛ց. խա՛րի՛սխ յո՛ւսո՛յ հա՛ստա՛տութեա՛ն. զո՛ւգա՛թի՛ւ ա՛ւո՛ւրց դա՛րո՛ւցս ա՛նցա՛ւո՛րա՛ց. օ՛րհ։



# Կ Ա Ն Ո Ն

## ԱՒԵՏԵԱՑ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

ԽՈՐՀՈ՛ՒՐԴՆ անճառ ծա՛ծկեալըն յա՛զգա՛ց ե՛ւ յա՛ւի՛տեա՛նց. յա՛յտնեցա՛ւ ի՛ջմա՛մբ հրե՛շտակա՛պե՛տի՛ն ա՛յսօր ա՛ռ կո՛յսը՛ն մա՛րիա՛մ. զո՛ր ա՛ռ տէ՛ր ո՛ւնի՛մը՛ք բա՛րե՛խօս վա՛սն ա՛նձա՛նց մե՛րո՛ց։ օրհ ակ

Ա՛նժամա՛նա՛կն ա՛ռ 'ի՛ հօրէ՛ ե՛ւ անմարմի՛ն ծո՛ցածի՛ն ծը՛նո՛ւնդ, ա՛յսօ՛ր ա՛ւե՛տեօ՛քը՛ն գա՛բրիէ՛լի մա՛րմին զգե՛նո՛ւ 'ի՛ սը՛րբո՛յ կո՛ւսէ՛ն. զո՛ր ա՛ռ։

Աննստանելին 'ի համայնից բովանդակիչ էութեանց բոլորից, պարագրի այսօր մարդասիրապէս յորովայնի անարատ կուսին. զոր։

Աներեւոյթ փառացըն հօր նըկարագիր անյեղլապէս, 'ի ծառայական խոնարհի պատկեր 'ի յարգանդի հոգւով մաքրելոյ. զոր։

Անսահմանըն յէութեան սահմանելեացս էացուցիչ, 'ի վեր քան ըզբան սահմանի այսօր յորովայնի սըրբուհւոյ կուսին. զոր առ։

Ուրախութիւն տըրտմեցելոյ բընութեանս բերկրեալ կոյս մարիամ, զոր ողջունաբեր աւետեօք կրեցեր զտէրուտն 'ի քեզ զօրէնս ողջունի. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

Որ առաքեցեր զմիածինդ 'ի փրկութիւն տիեզերաց. անեղ էութեամբ եղանիլ մարմին 'ի սուրբ կուսէն հայր երկնաւոր. զոր առ քեզ ունիմքը բարեխօս վասն անձանց մերոց։

Որ զնախամարդեալըն առ 'ի քէն մարգարէիւք եկիր կատարել. անմայր 'ի հօրէ անըսկըզբնաբար լինել անհայր 'ի սըրբոյ կուսէն. զոր առ քեզ ունիմքը բարեխօս։

ձնն Անըսկիզբըն աստուած անճառելի անբաւ զօրութիւն. որ իսկըզբանց յաւիտենից խնամարկեցեր զորդիս ադամայ. գերագոյն այսօր շնորհիւ փայլեալ ցուցեր ծընընդեամբ զմայր միածնիդ քո ընտրելոյ. աղաչանօք սոցա խընայեա 'ի մեզ։

Որ յանէից բանիւ գոյացուցեր զաշխարհս ամենայն. այսօր մարդասիրեալ տնօրինաբար 'ի յաննայէ արկեր հիմունս նորոյ աշխարհի. աղա։

Ի յամուլ երկրէ այսօր բուսաւ մեզ բարեբեր բոյսըն բարի. շուշան հովտաց ծաղիկըն դաշտաց. միամայրըն մարիամ արմատ տընկոյն անմահութեան. աղաչանօք սոցա խընայեա 'ի մեզ։

Զանճառելի ըզլոյս աստուածութեանն. տընօրինաբար կրեցեր 'ի քում յորովայնի մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ վար

Ի մանաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն. այլ 'ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր աստուածութեանըն մարիամ մայր եւ կոյս. օրհնու։

Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսեղէն. գերագոյն քեզ հոգւոյն սըրբոյ. եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ աստուածածին. օրհնու։

ձնն Որ ըզկեանքըն անմահարար մահկանացու բնութեամբս 'ի քեզ կրեցեր սուրբ կոյս մարիամ. որով մեռեալքս որ յադամայ կենդանացաք յոյսով յարութեան. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

Որ ըզբանն անեղական զէակն էից գոյացութեանց, անճառաբար ծընար մարմին եղեալ 'ի փըրկութիւն եղականացս. առ նա։

Որ ըզպըտուղն 'ի քէն կենաց ընծայեցեր մեռեալն ադամայ. զորոյ պահօք քառասնօրեայ քաւեաց ըզպըտղոյն ճաշակումն, եւ յանվախճան ըզնոյն վերածեաց 'ի կեանս. առ նա։

Ծնն Ընդ քեզ աղաչեմք հանապազ սուրբ աստուածածին. բարեխօսեա քրիստոսի աստուծոյ մերոյ փրկել զմեզ 'ի փորձութենէ եւ յամենայն վտանգից մերոց:

Ուրախ լեր մայր անճառ լուսոյ Մարիամ սուրբ աստուածածին. քանզի 'ի քեզ կրեցեր զհուր աստուածութեանն լուսեղէն տաճար աստուծոյ բանին. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց:

Ծանուցար տիեզերաց աստուած եւ մարդ գոլով. մարմնացար 'ի սուրբ կուսէն 'ի փրկութիւն ազգի մարդկան. միշտ փառաւորեալ յանմարմնոց զինուորութեանց:

Հոգ Որ առաքեցար 'ի հօրէ հոգիդ անեղ եւ համագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին. լինել մխիթարիչ սուրբ առաքելոցն. աղաչեմք ընդ քեզ ողորմեա:

Որ իջեր տիրաբար յերկնից սանտեկ հօրմէ նորման աստուած յայտնապէս. եւ 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար 'ի դասս առաքելոցն. ողորմեա:

Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս որբոց քոց առաքելոցն. որք արբուցին զտրտմեցելոց որդւոց ադամայ ըմպանակն ուրախարար յայգւոյն եդեմայ. աղաչեմք ընդ քեզ ողորմեա:

Համ Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ զմեր զննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո:

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին 'ի յարեւելից. եւ դպրութիւնք հրաշիցն բանին. յայնմ աւուր:

Զարհուրեալ դողան արարածք 'ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ ա:

Որ 'ի սկզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր իմաստութիւն. զոր նախանկար տեսութեամբ նշանակեալ մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերինն, լուսաւորելով փառօքն աստուծոյ: Խաչ

Որ զխորհուրդ անճառական տնօրէնութեանդ քո 'ի սրբոյ կուսէն. տպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց բանիդ աստուծոյ. փառաց անեղիդ տեղի հանգստեան:

Որ 'ի կեանս վերադարձի բնութեանս դարձմամբն յորդանանու օրինակեցեր. եւ զզօրութիւն մահու եւ զդժոխոց կործանմամբն երիքովի տապանակաւ խաչին հրաշագործեալ նոր խորհրդի. օրհնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Որ 'ի լուսոյն անճառից 'ի քէն յայտնեալ ծածկեալ խորհրդոյ. 'ի քէն մաքրելոյ երջանիկ կուսին հօր զօրութիւնն հովանաւորեալ. զոր առ քեզ ունիմք բարե:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Որ զնախամօրն անիծից երկանց լուծեր զդատակնիք. որ զտրտմական սահմանեաց ծնունդն անախտաբար ծնանելով 'ի քէն. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց:

հրց գձ Որ անիմանալիդ ես յէութեան հայր անըսկիզբն եւ անպատճառ. 'ի փրկութեան մերոյ սկզբան, առաքեցեր ըզմիածինդ մարմնանալ 'ի սրբոյ կուսէն. օրհնեալ տէր աստուած հարցն մերոց:

Որ 'ի հօրէ անմեկնելի անեղական բանդ առաքեցար. ըզդասապետս զօրութեանց վերնոցն նախընթաց քում գալըստեանդ առաքեցեր յառաջընթացն. օրհն:

Բըղխումն անճառ եւ անքննին հոգիդ աներւ եւ համագոյ. զանօրէնութեան քում էակցին, մարգարգեալ զնախակարապետն եկաւորութեանն. օրհնեալ տէր:

գ Օրհնեցէ՛ք ամենայն գործք տեառն ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Եկայք փրկեալք կենարար խըմամբ բանին հօր 'ի յարգանդ կուսին. ընդ երկնայնոց դասուցն երգով ըզտէր օրհն:

Որ զանէծս երկանց ծննդեան նախամօրն եղծ. անսերմնապէս ծնանելով յանապական կուսէն. երգով ըզտէր օրհն:

Որք վերըստին նորոգեալք եղէք 'ի հնութենէ մեղաց. զնորոգող բնութեանս երգով ըզտէր օրհնեցէք բարձր արա:

մեծ Ուրախ լեր մարիամ սուրբ աստուածածին. զի 'ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկն տէր. ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք:

Ուրախ լեր դուռըն փակեալ ընդ որ ոչ ոք մըտեալ, բայց տէր աստուած իսրայէլի. ըզքեզ:

Ուրախ լեր անըբիւր կընքեալ ջրոյն կենդանութեան. զոր ծարաւելոյ բնութեանս ետուր 'ի յարբումն. ըզքեզ:

Որ յանէից անմարմնական զօրաց էակ հայր անըսկիզբն. ըզզօրապետ խմբից նոցա աւետաբեր այսօր առաքեցեր առ բանի քո խորան սրբութեան. ողջունաւք սորա ազատեա մեղ առաքեալ: ողր

Որ 'ի կուս քերովբէից բազմեալ լոյս քուն զարեւ յաւուրն. 'ի հոլանութեայ հանգեցար այսօր տաճարի բազմին փառաց մաքրագործեալ որովայնին. ալլ:

Որ 'ի ստուեր ճըշմարտութեան խօսեալ յօրէնս տեառնողօք. այսօր 'ի գլուխ գրելոց նոցին համանմացեալ սրբոյ կուսին 'ի բնակութեան քում էակցին. ալլ:

Ուրախ լեր մարիամ կոյս անապական. զի 'ի հայրական ծոցոյ անմեկնելի որդին 'ի քո յանձն առնու բընակիլ յորովայնի: տէր

Ուրախ լեր երկին վեհագոյն քրովբէ հողեղէն. որ զանտանելին երկնից եւ հրեղինաց դասուցն 'ի քո ընկալար մաքրական որովայնի:

Ուրախ լեր սիւն հրեղէն լուսոյն աշտանակ. որ զարարչական եղականաց լուսոյ 'ի քեզ տանելով ծագեցեր խաւարելոցս:

Ուրախ լեր ստիոր ոսկի երկնային հացին. որ զառ 'ի վերուստ իջեալ ըզմանանայն կենաց, նորոյս պարգեւեալ կերակուր իսրայէլի:

Ուրախ լեր ամպ թեթեւ գեղմն իմանալի. որ 'ի բանական երկիր հեղեր զանձրեւ կենաց. արդիւնս ընդ գործոյ հաւատոյ պտղաբերեալ:

Ուրախ լեր դուստր լուսոյ մայր

անհարմանացեալ. քանզի յղացեալ յ
'ի քէն համախմբեալ վերնոցն որ-
դիք սիովնի երգեն ընդփառս 'ի բար-
ձունս:
Ճշ. Աստուածածին խորան լուսոյ
գկ անվայրափակ արփւոյն կենաց. որ
եղեր արեւելք արեգականն ար-
դարութեան, եւ նստելոցս 'ի խա-
ւարի լոյս ծագեցեր. վասն որոյ ա-
մենեքեան ընդ քեզ միշտ մեծացու-
ցանեմք:
Անապական տաճար եւ մորենի
անկիզելի. որ զանշէջ հուր աս-
տուածութեանն 'ի քեզ տարեալ
կրեցեր. որով բնութեանս կիզեալ
շիջաւ կրից բոց. վասն:
Կենդանի տապանակ կտակարանաց
նորոյ ուխտիս. որով եկեալք յերկիր
աւետեաց հորդեալ հոգւով 'ի քեզ
տպաւորեալ բանին. վասն որոյ:
Հմբ Աստուածածին ամպ կոյս
գկ անապական տաճար. անպարագիծ
էին բոլորից բնութեանց լոյսնա-
ծաւալ տեղի. այսօր ընդ բերկրա-
կան զուարթնոյն կրեցեր աւետեաց
զտէրըն տերանց 'ի քեզ. առ որ
մաղթեմք բարեխօսել վասն մեր
անլռելի ձայնիւ:
Ցիմանալի վտակաց անուն աստու-
ծոյ հոսմանց. վիճակեալդ տեսանո-
ղացըն ձայնի արբմամբ ընդմպլեցար.
այսօր զանթառամըն ծաղկեցար ըզ-
ծաղիկ 'ի ժամու տալով զպտուղն.
առ որ մաղ:
Այսօր 'ի քեզ լըցեալ ամփոփած-
նին բարբառ. որ 'ի փրկութիւն
հասարակաց տուեալ նշան բնու-
թեան ազգի մարդկան. ահա կոյս
յղասցի եւ ծընցի որդի զընդ մեզ
յայտնեալն աստուած. առ որ:



# ԿԱՆՈՆ

## ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՃՐԱԳԱԼՈՒՑԻՆ

ՈՒՐԱԽԱՑԻՐ սրբուհի գաբ- օրհ
րիէլի աւետեօքն. որ քարո- բձ
զեացն ընդ գալուստ արքային
տեառն 'ի յերկնից:
Ողջոյն ընդ քեզ մարիամ, 'ի քեզ
սուրբ հոգին եկեսցէ. եւ զօրու-
թիւն բարձրելոյն 'ի վերայ քո
հովանասցի:
Որ ծնանելոցն է 'ի քէն իսրայէլի
առաջնորդ. եւ ընդ հանուր քա-
րոզի տարեալ հզօր անմահ
բանին:
Ուրախ լեր բերկրեալ ամենա- ✠
սուրբ կոյս. որ ծնար աշխարհի
զարդարութեան արեգակն. որ լու-
սաւորեաց զազգս որդւոց մարդ-
կան:
Խոնարհեցար 'ի բարձանց եւ ձնն
մարմնացար 'ի կուսէն. որ նստէ-
իրդ 'ի քրովբէս արարիչդ արա-
րածոց:
Երկինք չէին բաւական փառաց
անմահ անեղիդ. արգանդ կուսին
ժուժկալեաց ընդունել ըզ-
գանձդ երկնային:
Յորժամ տեսեալ սերովբէքն ոչ իշ-
խէին մերձենալ. 'ի խանձարուրս
պատեցար եւ եդար 'ի մսուր
յանբանից:
Զքեզ հայր յառաջ քան զյա- ձնն
ւիտեանս բարբառեն դասք ան-
մարմնոց հրեշտակաց. ձայնիւ եր-
գով գոչեն եւ աղաղակեն. սու-

ուած անստուծոց եւ տէր տէրանց
փրկիչ գոլով։

Առաքեցեր զքո միածինդ մարմ-
նանալ 'ի սուրբ կուսէն. եւ անա-
րատ ծննանիլ յորովայնէ անապա-
կան, բառնալով զմեր նեղու-
թիւնս. աստուած։

Տնօրհնք բարի յերուսաղէմ երե-
ւեցաւ հեթանոսաց. զի արարիչն
յաւիտենից տղայ եղեալ յոր-
դեգրութիւն կենաց կոչէ. աստ։

ձնն Ըզքեզ կոյս եւ մայր եւ բնա-
կարան աստուածային ներմարդու-
թեանն, գոհաբանեմք եւ վերօրհ-
նեմք զեղեալ փրկող կենդանու-
թեան ազգի մարդկան. վասն որոյ
զքեզ աստուածածին և կոյս բա-
րեբանեմք զմայր եւ զաղախին
փրկչին մերոյ։

Ծննդն հօր եւ հին աւուրց
անժամանակն յաւիտենից։ ժամա-
նակաւ յորովայնի քում բնակեցաւ
եւ 'ի հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ։

Ծնեալն 'ի քէն 'ի խաչ ելեալ եւ
'ի յայնթոռ փառաց ընդ հօր. անար-
գեալ 'ի մարդկանէ փառաւորու-
թեամբ էութեամբ երկրպագեալ.
վասն որոյ։

Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան
այլ եւ վերին զօրութիւնք. դասք
անմարմնոց հոգեղինաց հրեղինաց
զուարթնոց եւ հրեշտակաց, գո-
հաբանեն եւ վերօրհնեն եւ փա-
ռաւորեն զմայր եւ զաղախին
փրկչին մերոյ։

ձնն Բանն առաքեալ 'ի հօրէ, որ
վասն մեր մարմնացաւ եւ ցըն-
ծութիւն աշխարհի յայտնեցաւ.
ըզքեզ բարեբանեմք աստուածա-
ծին կոյս։

Զի որում ոչըն հանդուրժէին
բոցանըշոյլ սերովբէք. նա բընա-
կեցաւ 'ի քում յորովայնի. ըզ։

Ցորմէ սարսեալ դողային փայ-
լակնացայս 'ի լուսոյն. 'ի գիրկըս
քո ըզնա ընկալար. ըզքեզ։

Ըզխնամութիւնդ քո աստուա-
ծածին անպատմ. զոր ոչ բոցակի-
զեաց հուր աստուածութեանն,
մեծացուցանեմք։ ձնն

Որ յարգանդի քում անապականա-
բար բնակեցաւ քրիստոս աստուած
եւ փրկիչ անձանց մերոց, մեծա։

Անհասանելի տէրունական յայտ-
նութիւնն աշխարհի ծագեցաւ. ան-
մատոյց լուսոյն երկրպագեսցուք։

Իքեզ եմք ապաւինեալ, որ մայ-
րդ ես եւ աղախին քրիստոսի. լեր
բարեխօս վասն մեր. զի զանուն
տեառն կարդասցուք և զքեզ մե-
ծարեալ պատուեսցուք։ ձնն

Որ զթագաւորն ամենեցուն յո-
րովայնի քում կրեցեր սրբուհի
մայր եւ կոյս եւ աղախին քրիստո-
սի. բարեխօսեա՛ առ տէր վասն
մերոյ փրկութեան։

Ցոյս մեր և ապաւէն մայր տեառն
եւ կոյս սուրբ. որ հուր աստուա-
ծութեանն ոչ բոցակիզեաց զքո
սուրբ զորովայն. բարեխօսեա՛ առ
տէր վասն մերոյ փրկութեան։

Ըստ աւետեաց մարգարէին որ
առ փրկելոյքս արեամբ գառինդ, ապ
ցնծամք եւ մեք ծաւք անտառի
ընդ գալուստ տեառնըդ կրկնակի.
շնորհեա մեզ տէր ընդ արդարոցն
ընդ առ 'ի քէն տընկեալ ծառոցն.
այժըմ յաւուր վարձատրման եւ
յերկրորդին ընդ քեզ ցընծալ։

Սրբին նըման տայ աւետիս զարքա-

րիսս նոր սիոնի. եթէ ուրախ լեր ահա գայ առ քեզ խոնարհ եւ հեզ արքայ. նստեալ 'ի յէշ եւ յաւանակ կրկին ազանց գոլ օրինակ. նստեալդ յաթոռ քերովբէից նիստ գթութեամբ 'ի մեր հոգիս:

Զանհեղ փառաց քոց երեւումն որ լինելոց է յերկրորդումն, նոյնս դաւիթ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազդմամբ հոգւոյն. թէ յայտնապէս աստուած գայցէ հուր առաջի իւր բորբոքէ. յայնժամ յիսուս 'ի մեզ խնայեա գթած քրիստոս եւ ողորմեա:

Աստուածածին անհնարնացեալ յերկրէ յերկինս հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ նմանն քո միածնիդ յաջակողմեան. յայնժամ մաղթեա ընդ մեր ըզնոյն փրկել ըզմեզ յահեղ բոցոյն, համագասիլ ընդ արդարոցն երգել ըզփառս ընդ երկնայնոցն:

Հոգ

Նոյն եւ նման հօր եւ որդւոյ հոգիդ անեղ եւ համագոյ. բղխումըն հօր անքըննաբար առող յորդւոյ անճառաբար. 'ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց առաքեցեր. արբօ եւ մեզ ողորմութեամբ 'ի բաժակէդ իմաստութեան:

Էից ստեղծող արարածոց որ շրջջէիր 'ի վերայ ջրոց. նոյն և 'ի ջուրն աւազանին 'ի շնորհել մեզ քում էակցին, գըգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. արբօ:

Բարձուն վերնոցն իմանալեաց եւ ըստորին այսր ըզգալեաց. որ մարգարէս տաս 'ի հովուաց եւ առաքեալս 'ի ձկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարող բանի քում զհալածողս. արբօ:

Հան

Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զերրորդութիւնըն, փառաւորելով ըզհայր. որ վերակոչեաց զամենեսեան 'ի մահուանէ յանմահութիւն:

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց, քրիստոսի երկրպագելով. որ վերա:

Սըրբասաց ձայնիւն օրհնեսցուք, հոգեւորական հընչմամբ գովեսցուք, սուրբ զհոգին փառաւորելով. որ վերահանգոյց զա:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Ուրախ լեր բերկրեալ դուռըն կնքեալ. որ ծընար աշխարհի ըզթագաւորըն քրիստոս. որ նստի 'ի վերայ անպարունակ աթոռոյ:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Գեղմն իմանալի զոր ետես գեդէոն յառաջ քան զայս հաւատացեալ. իմանամք զանճառելի ըզծընունդ. եւ երկրպագեմք որ 'ի կուսէդ մարմնացաւ աստուած:

Հրց

գձ

Որ դասուց երկնաւորաց անիմանալի, այսօր հողեղինաց յայտնեցեր ըզծածկեալ խորհուրդ. օրհնեալ սէր աստուած հարցըն մերոց:

Որ բազմաչեայ քրովբէից անտեսանելի, կերպացեալ ըզմերս 'ի սուրբ կուսէն տընօրինաբար. օրհնեալ:

Որ առաւել բարձրացեալդ ես յաւիտենից, մըշտընջենաւոր լըցուցիչ եւ անեղ կենդանարար. օրհ:

գ

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Որ ըզկերպարանըս ծառայի էառ, եւ ըզմեզ 'ի մարմնի իւրում դա-

տապարտեայց. անդադար գովելով
բարձր արա՛:

Որ այսօր մարմնացար ’ի սրբոյ
կուսէն յաղագս անիծիցն. եւ ե-
բարձ ըզպատուհաս նախաստեղծին.
Ժողովուրդք առաւել բարձր արա՛:

Որ ելն ’ի բարձունս գերեալ ըզ-
գօրութիւն մահու, այսօր բաշ-
խի անապականութեան պարգեւք
մարդկան. քահանայք հոգեւոր
երգով առաւել բարձր արա՛:

մեծ Ուրախացիր աստուածածին
վերօրհնեալդ ’ի սոփեէից. ծագե-
լով ’ի քէն մեզ լոյս մայր եղեր վե-
րանձգողին. ազգ եւ ազինք ըզքեզ
մեծացուցանեմք:

Հիմն եղեր եկեղեցւոյ խորան ե-
ղեր հոգւոյն սրբոյ. ’ի հրեշտակաց
ապասաւորեալ գովիլ քեզ աւե-
տեաց. ազգ:

Տեսանեմք ըզսոսկալի զհրաշալի
խորհուրդ յայտնեալ. ’ի հոգւոյն
սրբոյ յղացեալ զբանն աստուած
մարմնով ծընար. ազգ:

ողր բձ Անկանիմք առաջի քո աստուա-
ծածին. եւ աղաչեմք զանարատ
ըզկոյսդ:

Բարեխօսեա վասն անձանց մերոց,
եւ աղաչեա ըզմիածին որդին:

Փրկել ըզմեզ ’ի փորձութենէ
եւ յամենայն վտանգից մերոց:

տէր Օրհնեմք ըզքեզ ասորւած ընդ
անմարմնոցըն դասուց. որ ’ի բար-
ձունս ես բնակեալ. խնայեա ’ի
քո արարածս:

Գովեմք ըզքեզ միածին որդի եւ
բանդ աստւած. որ ’ի կուսէն
մարմնացար. խնայեա ’ի քո արա-
րածս:

Բարեբանեմք սուրբ զհոգիդ որ նո-

րոգողդ ես և կեանք. եւ միաբան
ասասցուք, փառք ’ի բարձունս աս-
տուծոյ:

Տնգումըն հրաշալի որ անյայտ Յկ
էր ’ի մէնջ. եւ բանըն հայրական գձ
անըմբռնելի. հուր փայլակնա-
ցեալ և ’ի մարմնի բնակեցաւ ան-
վնաս պահելով զարարածս ամե-
նայն:

Տնգումըն հրաշագործ որ ’ի կու-
սէն ծագեցաւ, ճառագայթելով
զարարածս ամենայն. երկինք ցըն-
ծային եւ երկիրս ուրախանայր. եւ
քրիստոս աստուած ընդ մարդկան
շըրջեցաւ:

Առ քեզ ապաւինիմք ամենասուր-
բուհի. գերագոյն եւ հրաշալի եւ
բաշխող բարութեանց. աղբիւր ես
ծարաւեաց եւ հանգիստ աշխատե-
լոց. եւ եղեր վերընկալ աստուա-
ծային բանին:

Զանճառելի լուսոյ մայր, եւ ճշ
ըզբնակարան անըսկըզբնակից որդ- գձ
ւոյն. օրհնութեամբ մեծացուցա-
նեմք:

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ
զանձնաւոր տաճար աստուծոյ բա-
նին. օրհնու:

Զբոլորից փրկութեան մայր, որ
զանտանելին յէից ’ի յարգանդի
երարձ. ըզնա ամենեքեան օրհնու:





# ԿԱՆՈՆ

## ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ԱՒՈՒՐՆ

օրհ ԽՈՐՀՈՒՐԴ մեծ եւ սքանչելի որ յայսմ աւուր յայտնեցաւ. հովիւքն երգեն ընդ հրեշտակս, տան աւետիս աշխարհի։

դկ Ծնաւ նոր արքայ 'ի Բեթղեհէմ քաղաքի. որդիք մարդկան օրհնեցէք, զի վասն մեր մարմնացաւ։

Անբաւելին երկնի եւ երկրի 'ի խանձարուրս պատեցաւ. ոչ մեկնելով 'ի Հօրէ 'ի սուրբ այրին բազմեցաւ։

Այսօր ցնծան երկինք 'ի վերուստ մեծապայծառ աւետեօք. եւ արարածք ամենայն զգեցան հանդերձ փրկութեան։

Այսօր յայրին ընծայեցաւ Քրիստոս որդին Աստուծոյ. եւ հրեղինաց բազմութիւնքն յերկնից յերկիր վայր իջեալ։

Այսօր հովուացն տեսեալ զարդարութեան արեգակն. եւ ընդ հրեշտակս երգէին փառք 'ի բարձունս Աստուծոյ։

Ի Հօրէ ծագեցար լուսաւորել զարարածս. արդարութեան արեգակդ տէր փառք քեզ։

Ծնար 'ի յայրին ընծայեցար Բեթղեհէմ. ամր։

Այսօր բանն 'ի Հօրէ անմեկնելի եւ անճառելի խորհրդով, 'ի ձեռն կուսական որովայնի տնօրինաբար յերկրի երեւեալ։ ձնն

Մանուկ անժամանակ 'ի Հօրէ անսերմն 'ի կուսէ. 'ի գիրկս Մօր գրկուեցաւ այսօր արարիչն երկնի եւ երկրի։

Որ մաքրեացն ըզյորդանան եւ լուաց զմեղս աշխարհի. զոր օրհնեն անդադար արարածք ամենայն, զէակիցն Հօր եւ Հոգւոյն։

Աստուածածին սուրբ կոյս անապական տաճար. անպարագիծ էին բոլորից բնութեանց լայնածաւալ տեղի. այսօր ընդ բերկրական զուարթնոյն կրեցեր աւետեաց զտէրըն տերանց 'ի քեզ. առ որ մաղթեմք բարեխօսել վասն մեր անլռելի ձայնիւ։ ձնն

Ցիմանալի վտակաց տանն Աստուծոյ հոսմանց. վիճակեալդ տեսանողացըն ձայնի արբմամբ ըզմայլեցար. այսօր զանթառամըն ծաղկեցար ըզծաղիկ 'ի ժամու տալով զպտուղն. առ որ մաղ։

Այսօր 'ի քեզ լցեալ ամովսածնին բարբառ. որ 'ի փրկութիւն հասարակաց տուեալ նշան բնութեան ազգի մարդկան. ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի զոր ընդ մեզ յայտնեալն Աստուած. առ որ։

Ընդ քեզ Աստուածածին, անգիւր անըսպառ լուսոյն, որ լուսաւորէ զհանուրս. միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։ ձնն

Դու պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն

հրեշտակաց. դու բարձրդ անիծիցն. վասն որոյ ըզքեզ աստուածածին մեծա։

Դու ճշմարիտ արեւելք արեգականն արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց. միաբանական ձայնիւ երգով։

ձնն Աստուածածին եւ սրբուհի. որ ըզբանն աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. անդադար երգով մեծացուցանեմք։

Զքեզ մայր կուսութեան եւ յղութեան լուսոյ, եւ անապատ անճառելւոյ բնակողին 'ի քեզ փեսայացեալ բանին. անդամ։

Քեւ լուծան կնիք դատապարտութեան. եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ. վասն որոյ ըզքեզ աստուածածին եւ կոյս. անդամ։

ձնն Միայնոյ քեզ 'ի կանայս կոյս յետ ծննդեան երգեմք զօրհնութիւն. զի լոյս 'ի լուսոյ քեւ յայտնեցաւ աշխարհի, եւ զնախամօրն եբարձ զանէծս. անճառ ծնընդեամբըն 'ի քէն։

Քեզ միայնոյ մարմնացելոյդ 'ի սուրբ կուսէն օրհնութիւն 'ի բարձունըս վերերգեմք ասելով. փառք քեզ քրիստոս, որ եկիր կամաւ հօր կեցուցանել ըզմեզ։

Խընդամ մարիամ որ եղեր մայր քրիստոսի. եւ աղաչեա զառ 'ի քէն ըզմարմնացեալ բանն աստուած, զի փրկեսցէ ըզմեզ 'ի փորձութենէ։

հոգ Հոգիք հրեղինացն այսօր տօնեն ընդ մեզ ըզգալուստ հոգւոյն աստուծոյ։

Տեսանողն յառաջ նըշանակէր զառատաբուղխ վըտակ իմաստից 'ի մեզ հեղեալ 'ի հոգւոյն։

Վէմըն հաւատոյ զմայլեալ անմահական բաժականն այսօր բաշխէր ծարաւեաց։

Գետոցս այս գնացիւք ցընծայ քաղաքն աստուծոյ սիոնի մայր եկեղեցի։

Վասն որոյ եւ մեք երրեակ եւ մի աստուածութեանն երգեմք ըզփառս 'ի բարձունս։

Որ 'ի հօրէ առաքեցար մարդասէր կարող փրկիչ. եւ ըզմեղուցեալ ըզմարդըն բըժըշկեցեր. ողորմեա տէր հրաժարելոյս զոր հրաւիրեալ առ քեզ կոչեցեր։ հան

Որ 'ի խաչին բեւեռեցար մարդասէր կարող փրկիչ. եւ ըզզօղ անապական արեանըդ ցօղեցեր տիեզերաց. ողոր։

Որ ըզդըժոխս աւերեցեր եւ ըզգերեալսն փրկեցեր, եւ զարգելեալսըն վերածեր 'ի յոյս կենացըն յաւիտենից. ողոր։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Հովուաց յայտնեցար երկըրպագեալ 'ի մոգուց. ար։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Եւ մեք երգեսցուք որ 'ի կուսէն մարմնացար. արդարութեան արեգակըն տէր փառք քեզ։

Անըսկիզբըն էակից բանըդ հօր. հրց
որ էիր յառաջ քան ըզյաւիտեանս. գձ
եւ եկիր 'ի փրկութիւն ըստեղծուածոց քոց. ըզքեզ օրհնեմք աստուած հարցըն մերոց։

Ծընար 'ի կուսէ անճառ միութիւն. անբաժանելի եւ միշտ գոլով ոչ մեկնեցար 'ի հայրական ծոցոյ. ըզքեզ։

Ցնծութեամբ տօնեսցուք ըզծընունդ քո սուրբ. որ յայտնեցար մեզ լոյս 'ի լուսոյ, եւ լուսով քո լուցեր ըզտիեզերս. ըզքեզ օրհ։

գ Գործըք տեառն ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Ըզծնեալն 'ի սըրբոյ կուսէն օրհնեցէք. եւ։

Զանճառելի ըզծընունդ փըրկչին գովեցէք. եւ առաւել բարձր արա։

մեծ Ուրախ լեր աստուածածին յոյս եւ փրկութեան մայր. ըզքեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք։

Ըզքեզ լուսոյ մայր և կոյս, ըզքեզ զանձըդ կենաց աստուածային ձայնիւ ցընծութեամբ մեծա։

Մայր սուրբ անարատ լուսոյն. հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ըզքեզ մեծացուցանեմք։

տղ Ամենախնամ ամենից հայր բազմազեղ խնամող ստեղծող եւ տէր բոլորից, անեղ եւ էիցս էակ. զոր միշտ օրհնեն դասք անմարմնականացն յաւէժաբար հնչմամբ։

Որ կերպարան եւ կնիք հօր առեալ զմարդն մեր ծառայի կերպ 'ի կուսէն. որ էն 'ի յաթոռ փառաց անտես վերնոցն, 'ի յայրին իջեւանի եւ 'ի մըսուր անբանից բազմեալ։

Ըզ 'ի կուսէն մարմնացեալ բանն եկայք ժողովուրդք ընդ հովիւսն բարեբանեսցուք, եւ ընդ մոգուցն երկրպագեսցուք. ընդ երկնային զօրսն երգեսցուք փառք 'ի բարձունս աստուծոյ։

տէր Ճառագայթ եւ կերպարան էութեան հօր բանդ աստուած. ըզքեզ բարեբանեմք ասելով փառք 'ի բարձունս աստուծոյ։

Որ միացար 'ի մարմնի անճառապէս ճըշմարիտ աստուած. ըզքեզ։

Որ զանիծիցն բարձեր ըզդատապարտութիւն քրիստոս աստուած. ըզքեզ։

Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։ նշ

Աւետաւոր հրեշտակին աւետաբաներ ըզծընեալ փըրկիչն 'ի սըրբոյ կուսէն։ մեծ

Այժմ ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ։ գձ

# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

ԱՅՍՕՐ բանն 'ի հօրէ անմեկնելի եւ անճառելի խորհրդով, 'ի ձեռն կուսական որովայնի տնօրինաբար յերկիր երեւեալ։ օրհ դկ

Մանուկ անժամանակ 'ի հօրէ անսերմն 'ի կուսէ. 'ի գիրկս մօր գրգուեցաւ այսօր արարիչն երկնի եւ երկրի։

Որ մաքրեացն ըզյորդանան եւ լուսոյ ըզմեղս աշխարհի. զոր օրհնեն անդադար արարածք ամենայն ըզէակիցըն հօր և հոգւոյն։



Լոյս 'ի լուսոյ ծագեալ 'ի հօրէ եւ լուսաւորեաց ըզտիեզերս. ծընունդ անապական յանըստուեր լուսոյն. զոր միշտ փառաւորեն դասք անմարմնոցն։

Յայտնի է 'ի հրէաստանի աստուած, եւ 'ի բեթղեհէմ ծընեալ

յայրին մանուկ անժամանակ 'ի հօրէ, եւ ժամանակաւ գոյացեալ ծնեալ լինի աստուած եւ մարդ։

ձնն Քրիստոս ծնեալ այսօր 'ի բեթղեհէմ 'ի յայրին, եւ դասք վերին զուարթնոցըն սոսկացեալ զարմացեալ կային. զի տեսին մարմնով ծնեալ ըզբանն աստուած։

Նոր ըսքանչելիք եղեն այսօր 'ի բեթղեհէմ 'ի յայրին, կուսի ծընանիլ աստուած եւ մարդ. անապական մընալով կուսական որովայնին. զի տեսին մարմնով ծնեալ ըզբանն աստուած։

Աստղըն գուշակէր մոգուցն առ 'ի բերել զընծայս աստուածութեանն. եւ հովիւքն ընդ հրեշտակս երգէին ասելով, փառք 'ի բարձունս աստուծոյ որ առաքեաց 'ի փրկութիւն մեզ ըզբանն աստուած։

ձնն Որ 'ի հրեղէն աթոռ ընդ հօր ես բնակեալ, եւ 'ի հրեշտակաց սպասաւորեալ. այսօր կամաւ հօր 'ի յերկիր երեւեցար մարմնով կուսական ծնընդեամբ. գթծ ընդ զօրս անմարմնոցն անդադար օրհնաբանեմք։

Յորժամ զարհուրեալ դողան սրովբէագունդ ջոկք անթուոցն. թեւաքօղելով ծածկեն զերեսս իւրեանց. այսօր աղաչեմք 'ի կուսական 'ի ստեանցըն կերակրեցար մարդասիրապէս. գթծ։

Որ յանպատում փառաց խոնարհեցար յերկիր. ախտակիր եղեր հողեղէն բնութեանս. այսօր ըզմեղուցեալ ըզնախահայրըն կենագործեցեր 'ի կեանըն յաւիտենից մարդասիրապէս. գթծ։

Որ անտես եւ անքըննին քառակերպիցըն վեհագոյն, 'ի փըրկել ըզմեզ եկեալ անմահից թագաւորն, օրհնութիւն առաքողին։ ձնն

Առաքի հրեշտակապետն առ սերովբէն հողեղէն. ասէ տուրն եւ արարողն առաքեալն 'ի հօրէ մարմնանայ 'ի քէն փրկողն։

Մըկրտի 'ի յորդանան վըկայելով հօր եւ հոգւոյն. ովսաննա 'ի բարձունս երգէին մանկունքն օրհնութիւն որդւոյ դաւթի։

Որ կերպարան հօր եւ արարչակից բանդ. վասըն փրկութեան ազգի մարդկան այսօր 'ի կուսէ ըզկերպարանըս ծառայի ըզգեցար մարդասիրապէս. քո անմենակեցոյց գալըստեամբդ ողորմեա մեզ աստուած։ ձնն

Որ յանմատոյց լուսոյ ծածկեալ ընդ հօր եւ սուրբ հոգւոյն, 'ի քրովբէականն հանգչէիր յաթոռ. այսօր խանձարրովք պատեցար եւ յանբանից մըսուր եդար մեզ։

Որ եկիր 'ի փըրկութիւն ազգի մարդկան, թագաւոր փառաց քո անձառ խոնարհութեամբդ. այսօր ըզմեղօք դատապարտեալ անձն իմ 'ի մահ, նորոգեա 'ի կեանըն յաւիտենից մեր։

Որ էրն 'ի սկըզբանէ առ աստըւած եւ աստուած բանն. կերպարան անեղին եւ համագոյ սուրբ հոգւոյն. 'ի վերջին աւուրս ծանուցեալ մարմնանալ յանձն առնու 'ի կուսական արգանդէ, վասըն փրկութեան ազգի մարդկան։ ձնն

Յառաջ քան զյաւիտեանս որդի նախայաւիտեան. այսօր յերկրի երեւեալ աստուած եւ մարդ կատարեալ, խանձարրովք պատի, եւ-

ղանի եւ դրնի յանբաւից մսուր, վասն փրկութեան ազգի մարդ։

Ի՛ բեթղեհէմ հրեաստանի երեւի արդարութեան արեգակն. այսօր երկրպագի անեղն յարեւելից եկեալ մոգուցն. եւ փառաբանի յերջանիկ ՚ի բացօթեայ հովուաց, վասն փրկութեան ազգի մարդ։

ձնն Բարեխօսութեամբ ծնողի քո եւ միշտ կուսի հայցեմք ՚ի քէն քրիստոս փրկիչ աշխարհի. վասն զի բաց ՚ի քէն զայլ ոք ոչ գիտեմք մարդասէր։

Ամենօրհնեալ աստուածամայր մարիամ. քերովբէական աթոռ արարչին մերոյ տնօրէնութեան. զոր երանեսցեն ամենայն ազինք հանապազ։

Բարեխօսութեամբ սուրբ աստուածածնի եւ միշտ կուսի աղաչեմ. տէր փրկեա զիս ՚ի յորոգայթէ աներեւոյթ թշնամւոյն։

հոգ Աղբիւր կենաց բաշխող շնորհաց հոգիդ իջեալ ՚ի բարձանց. զանապական պարգեւս քո բաժանեցեր յառաքեալսն։

Որ ՚ի վերայ ջուրցն գոլով ստեղծանէիր զարարածս. իջեալ ՚ի ջուրս աւազանին ծնանիս որդիս աստուծոյ։

Որ զարդարեալ նորոգես միշտ զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն մանկունք սորա։

հան Որ արարիչդ ես արարածոց համագոյեալդ ՚ի հրեղէն կառս. յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո ընդ սուրբս քո։

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան եւ ներող յանցանաց մերոց. յիշեա զհո։

Որ միասնագամ գալոցդ ես հայրենի փառօք, նորոգել զնախաստեղծին ծնունդ. յիշեա զհո։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Եւ հովուացն տեսեալ ըզհրաշալի ծագումն աստեղն, փութապէս եկեալ տեսին մանուկ եդեալ յանբաւից մսուր. զոր միշտ փառ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Խնդա եւ ուրախ լեր անհարսնացեալ մարիամ. քանզի որ ՚ի քէն ծնաւ փրկիչ, տէր է օծեալ ՚ի քաղաքի դաւթի. զոր միշտ փառաւորեն դասք երջանիկ հովուացն։

Ի կուսական որովայնէ ծնեալ մարմնով, որ յառաջ քան զյաւիտեանս բանդ ՚ի հօրէ երգեսցուք. տէր աստուած փառաւորեալ է անուն քո։ հրց գձ

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անսկիզբն որդի. անձառաբար տղայացեալ ՚ի խանձարուրս պատեցար. երգեսցուք, տէր։

Ամենայն բարութեանց տուող ազգի մարդկան. եւ ՚ի մոգուցն այսօր ընծայեցար. երգես։

Ըզտէր օրհնեսցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ յանճառելի աթոռ ընդ հօր փառակից բանն ՚ի յերկիր երեւեցար. օրհ։

Որ ՚ի կուսէ անապական թագաւոր ծնար քրիստոս. եւ ՚ի հրեշտակաց անդադար փառաբանիս աստուած. քահանայք օրհ։

Լոյս լուսոյ մայր, եւ կենարար բանին բնակարան. քեզ երանիցեն ազգ եւ ազինք ամենայն։ ձեձ

Ստեղծողին մայր, եւ հընութեան
կերպի նորոգողին. քեզ։
Լոյս ծագեցաւ 'ի քէն Նըստելոցս
'ի խաւարի. քեզ։
ողր Զանհաւոր բարբառոյս վերինացըն
հոգեւոր հընչմամբ երգով ընկա-
լեալ հոլովացն, օրհնէին ըզծը-
նողն եւ ըզծագումն յանմեկ-
նելի լուսոյն։
Հրեշտակապետին աւետեօքն ըն-
թացեալք 'ի յայրն, տեսին զի նը-
ւաստացեալ էր անտերըն սերով-
բէից. մանուկ եդեալ յանբանից
մըսուր։
Դիտելով մոգուցն ըզփայլումն աս-
տեղըն, սա զարդարուած գուշակեալ
լինի. զի 'ի տեսիլ մարմնացելոյն
ժամանեալ. նըմա մատուցանե-
լով զերկրպագութիւն։
տէր Դասք անմարմնականք երկնա-
ւոր զօրացն, 'ի մէջ հովուացն օրհ-
նէին ըզծագումըն լուսոյ մեծին 'ի
հօրէ մեզ 'ի փրկութիւն։
Եւ մոգքն աստեղը նըշանաւ ե-
կին 'ի բեթղեհէմ երկրպագին
տեառն, եւ 'ի յայրին մատուցին
զընծայս խորհըրդոյ։
Եւ հովիւքն երգեն ընդ հրեշտա-
կըս, փառք 'ի բարձունս մե-
ծին աստուծոյ. որ եկիր եւ փըր-
կեցեր ըզտիեզերս քոյով յայտնու-
թեամբդ։
ճչ. Ամենագովելի եւ քան զերկի-
մեծ նըս բարձրագոյն, որ զանհաս սանե-
գկ լի ըզտէրըն յորովայնի քում կրեցեր,
եւ ցընծութիւն աշխարհի ծընար.
վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ
մեծացուցանեմք։
Ամենապայծառ բերկրեալ միշտ
կոյս, որ զանբաւելի ըզբանն ան-
ճառագայթ յըղացար, եւ ըզմարմնա-
ցեալն աստուած ծընանելով 'ի քէն.
վասն որոյ։
Ի լեռնէ վէմն առանց ձեռին հա-
տեալ դանիէլ գուշակեաց զան-
սերմն ըզծընունդ քո հարսն երկնա-
ւոր, մայր եւ յետ ծննդեան մնա-
լով կոյս. վասն որոյ։

---

# ԿԱՆՈՆ

## ԵՐՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

ԼԱԿԻՑ հօր եւ հոգւոյն, ա- օրհ
նըսկիզըն որդի. անմայր յա- գկ
ւաջնումն անդրանիկ. եւ ընդ հօր
յաւիտեան։
Ի ծոցոյ հօր առաքեալ, եդեալ 'ի
մըսուր յանբանից. բանդ աստը-
ւած յայտնեալ։
Քրիստոս ծընեալ 'ի քաղաքի դաւ-
թի. քարոզեն հովիւքն ընդ հրեշ-
տակս. եւ մոգք հանդերձ աս-
տեղըն։
Որ ըզմարմնացեալըն տիրաբար ✠
'ի յորովայնի քում կրեցեր. ու-
րախ լեր անհարսնացեալ մայր։
Հրաշափառ ծընունդ քո 'ի սուրբ ծնն
կուսէն. այսօր ցուցաւ ազգի մարդ-
կան. անըսկըզբնականին բանդ էակից
հօր։
Յայտնութեամբ քո տէր ցընծա-
ցաւ երկիր. եւ նորոգեալ եղեւ
ադամ յառաջին յանցանաց 'ի մե-
ղաց իւրոց։
Դասք հովուացն յերկրի փառա-
ւորէին ըզքո ամենակեցոյց գա-
լուստ. որ երեւեցար քո արարա-
ծոցս։

ծնն Ծառ կենաց տնկեալ յադէն սուրբ կոյս. որ ըզհայրածինն բըղխեցեր ըզծաղիկ. եւ ետուր 'ի ժամու զործին պտուղ մարդկան. զորս զմարմինն ճաշակեալ անմահացան յուսով. վասն որոյ օրհնաբանեմք ըզքեզ յաւուր քո ծննդեան։

Բանաւոր երկիր տիրուհի եւ անդաստան մաքուր 'ի փշոց մեղաց. որ ըզսերմն երկնային անանց սերման ծընար. որով զկենացն ետուր ըզհաց տուեալ բնութեանս. վասն որոյ օրհ։

Ամպ թեթեւ յերկրային ցանկութեանց սուրբ կոյս եւ վառարան աստուածային բոցոյն. որ ըզցօղն հայրաբուղխ անձրեւեցեր 'ի բանական երկիր. որով բնութեանս բուսան արդարութեան սուրբ բոյսք. վասն որոյ։

աւե Աստուածածին խորան լուսոյ անվայրափակ արփւոյն կենաց. որ եղեր արեւելք արեգականն արդարութեան, եւ նշուելոյս 'ի խաւարի լոյս ծագեցեր. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։

Անապական տաճար եւ մորենի անկիզելի. որ զանշէջ հուր աստուածութեանն 'ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն որոյ։

Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտիս. որով եղեւ յերկիր աւետեաց հորդեալ հոգւով 'ի քեզ տըպաւորեալ բանին. վասն որոյ։

ծնն Զաստուածածինն եւ զմիշտ կոյսն անդադար օրհնեսցուք. քանզի ծագեաց մեզ լոյս երեւաց, եւ փրկիչ անձանց մերոց։

Խընդա եւ ուրախ լեր անհարսնացեալ մայր. քանզի որ 'ի քէն ծընաւ մեզ աստուած 'ի փրկութիւն անձանց մերոց։

Գանձ անապական գըտար սուրբ աստուածածին. բարեխօսեա Քրիստոսի աստուծոյ մերոյ, կեցուցանել զանձինս մեր։

Մայր եւ կոյս աղախին Քրիստոսի, որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. քեզ երանեն ամենայն ազինք։ ծնն

Մաքուր աղաւնի եւ հարսն երկնից Մարիամ, տաճար եւ աթոռ աստուծոյ բանին. քեզ երան։

Քեւ հաճեցան իմանալիքն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք 'ի փայտըն կենաց. քեզ երան։

Աղբիւր կենաց բըղխեալ յեդեմայ սուրբ աստուածածին, որով արբեցաւ երկիր ծարաւուտ հոգւոյն իմաստիւք. տուր մեզ մաղթեա աղբիւրս արտասուաց մաքրել ըզմեզ 'ի մեղաց մերոց։ աղ

Աստուածածին սիւն լուսոյ ամպ հովանաւոր, եւ բնակարան բանին որ բանիւ հովուէր զիսրայէլ. բարեխօսեա նըմա վասն անձանց մե։

Զանապականն կոյսըն Մարիամ աստուածածին խոստովանի սուրբ եկեղեցի. ուստի տուաւ հացն անմահութեան եւ բաժակ մեզ ուրախարար. տուք օրհնութիւն նըմա հոգեւոր երգով։

Զանըսկըզբնաբար բըղխումն 'ի հօրէ զհոգին ճըշմարիտ. որ հընչմամբ ձայնի էջ 'ի վերնատունն այսօր նըման սաստիկ հողմոյ. զոր փառաւորեմք հոգեւոր երգով։ հոգ

Զհամագոյակիցըն հօր եւ որդւոյ զբաշխողըն շնորհաց. որ 'ի հրեղէն

լեզուս բաժանեալ զլեզն ընտրու-
թեան լեզուաց շնորհեաց սուրբ ա-
ռաքելոցն. զոր փառ.

Զանըղբիւրն իմաստութեան ըզկա-
տարեալն անձնաւորութեամբ. որ
խօսեցաւ յօրէնս եւ 'ի մարգարէս
եւ յաւետարանս. զոր փառ.

Հան Լեառըն վիմածին անբիւր յոր-
դառատ. բարունակ ծաղկեալ այգի
վայելուչ սրբոյ հոգեղէն. բերու-
ւոյ բանին տուն տնօրէնութեան
տաղաւար հոգւոյն. առ ծընեալն 'ի
քէն միշտ բարեխօսեա անդադար
հայցմամբ, շնորհել զթողութիւն
մեր ննջեցելոցն.

Փափկութեան դրախտին բացող
բանալի. քրիստոսի բարձող նըմա-
նող երկնից. սափոր ոսկեղէն լի մա-
նանայիւ. գաւազան ծաղկեալ յար-
մատոյն յեսսեայ տաճար լուսոյ
մայր. առ ծըն.

Ցօղ քաղցրածաւալ ցանկալի զը-
ւարթնոցն. նիւթեղէն սրբոյ գեղ
մարգարտափայլ հիմն եկեղեցւոյ.
մաքուր անուանի ամպ հովանաւոր
սուրբ կոյս մարիամ. առ.

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Որ զանստուերելին յէից 'ի յարգան-
դի անապականաբար կրեցեր. որ.

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Որ զարարչակից բանըն գոյացեալ.
ըստուգապէս աշխարհի ծընար.
ուրախ լեր անհարսնացեալ
մայր.

Հրց Աքանչելագործ աստուած ըզ-
Գկ քեզ բարեբանեմք, որ 'ի քերովբէ-
ական աթոռըդ նըստիս. աս-
տուած հարցըն մերոց.

Որում ոչ բաւեն երկինք ընդու-
նել զանբաւելի զըրնութիւնդ. յար-
գանդի կուսին բնակեցար, ծընար
անճառապէս. աստուած հար.

Ցօր վեցթեւեանն սրովբէքն ոչ
իշխէին հայել 'ի քո աստուածու-
թիւնդ, տեսանելով 'ի գիրկս
կուսին, զարմացեալք օրհնէին
ըզքեզ. աստուած հար.

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր Գ
արարէք ըզնա յաւիտեան.

Որ 'ի կուսէ անապական թագա-
ւոր ծընաւ քրիստոս աստուած.
յորումն դողան իմանալի
զօրութիւնքն. օրհնեցէք ժողո-
վուրդք եւ բարձր արա.

Որ մըկըրտեցաւ 'ի յորդանան
եւ լուաց ըզտիեզերս 'ի մե-
ղաց. վըկայեաւ ձայնիւ հօր,
եւ երեւմամբ սուրբ հոգւոյն. օրհ-
նեցէք քահանայք, առաւել բարձ-
րացուցէք ըզնա յաւիտեան.

Աստուածածին սուրբ կոյս ան- Մծ
հարսնացեալ մարիամ, որ օրհնեալդ
ես 'ի կանանս. զքեզ օրհնեմք
միշտ որ արժանիդ ես մեծացուցա-
նեմք.

Անապական տաճար և առագաստ
լուսոյ. որ 'ի քեզ փեսայացեալ բա-
նըն կենաց բնակեցաւ. զքեզ օրհ-
նեմք միշտ.

Հուրըն կենդանի որ 'ի մորենին
վառեցաւ, զոր անվընաս յարգանդի
քում կրեցեր եւ ծընար աստուած
եւ մարդ. զքեզ օրհ.

Որ կերպարան հօր եւ արարչա- Ողբ
կից բանդ. վասըն փրկութեան
ազգի մարդկան այսօր 'ի կուսէ ըզ-
կերպարանըս ծառայի ըզգեցար մար-
դասիրապէս. քո անմեկնակեցոյց
գալըստեամբդ ողորմեա մեզ աս-
տուած.

Որ յանմատոյց լուսոյ ծածկեալ ընդ հօր եւ սուրբ հոգւոյն, ՚ի քրովբէական հանգչէիր յաթոռ. այսօր խանձարրօք պատեցար եւ յանբանից մըսուր եդար մարդա- սիրաբար. քո՛ անմէ։

Որ եկիր ՚ի փրկութիւն ազգի մարդկան, թագաւոր փառաց քո անճառ խոնարհութեամբդ. այսօր ըղմեղօք դատապարտեալ անձն իմ ՚ի մահ, նորոգեա՛ ՚ի կեանսըդ յա- ւիտենից մարդա։

տէր Քրիստոս ծնեալ այսօր ՚ի բեթ- ղեհէմ ՚ի յայրին. եւ դասուք վերին զօւարթնոցըն սոսկացեալ զարմա- ցեալ կային. զի տեսին մարմնով ծնեալ ըզբանն աստուած։

Նոր ըսքանչելիք եղեն այսօր ՚ի բեթղեհէմ ՚ի յայրին. կուսն ծը- նանիլ աստուած եւ մարդ. անսա- պական մընալով կուսական որո- վայնին. զի տէ։

Աստղըն գուշակէր մոգուցն առ ՚ի բերել զընծայս աստուածու- թեանն. եւ հովիւքն ընդ հրեշտակս երգէին ասելով. փառք ՚ի բարձունս աստուծոյ որ առաքեաց ՚ի փրկու- թիւն մեզ ըզբանն աստուած։

ձչւ ձեծ դձ Անըսկըզբնական բանին հօր բընակարան, տաճար եւ առագաստ, տեղի անտանելի լուսոյն. զքեզ մեծացուցանեմք արժանապէս եր- գով աստուածածնայր եւ կոյս։

Յորմէ կենդանատուեղծեալք յա- նեղէն հաստեցան ամենայն եղա- կանքս, աներմնապէս տըղայացա- յորովայնի քում, եւ ծընաւ առ ՚ի քէն մարմնացեալ աստուածըն բո- լորից. զքեզ։

Յորմէ զարհուրեալ դողային դասք վերին զուարթնոցն, տըղայապէս առ ընկալեալ բարձեր ՚ի գիրկս, եւ արբուցեր որպէս մայր ըստացո- ղին ըզքեզ ըզկուսական քո սուրբ ըզկաթն. զքեզ մե։

# ԿԱՆՈՆ

## ՉՈՐՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

ԱՅՍՕՐ գոբրիէլ ցընծու- թեամբ երգեաց սըրբոյ կու- սին աւետիս բերկրեաց ասելով. որ ծընաւ ըզփրկիչ անձանց մերոց։ օրհ դձ

Անբաւելին երկնի եւ երկրի, ՚ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ. աստուած ապրելու մարդկան։

Յառաջընթաց փայլումըն լուսա- տեսիլ աստեղըն, մոգուցըն հետե- ւելով նըշանի ՚ի ծընունդ աս- տուածորդւոյն։

Այսօր գաբրիէլ հրեշտակըն ցընծութեամբ երգեաց առ կոյսըն սուրբ. ասէ ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ։

Այսօր որ յաթոռ փառաց ընդ հօր ծընանի ՚ի սըրբոյ կուսէն մարմնացեալ բանն. ծընանելով ըղտիեզերս յորդեգրութեան շը- նորհս։ ծնն

Այսօր անպարագրելի բանըն հօր բազմի ՚ի մըսուր անբանից բոլորից տէրն. եւ ՚ի վերայ քե- րովբէիցըն հանգչի։

Որ նոյն իսկն է ճառագայթ փա- ռացըն հօր, ՚ի յովհաննէ հայցէր մըկըրտիլ ՚ի յորդանանու յորձանսն. աւաքելական կոչմամբ ըզտիեզերս հրաւիրելով։

ծնն Անսկզբնական տեսիլ փառաց քոց տուող որ 'ի մեզ հրաշագործեցաւ երեւելով անճառաբար ծնունդ, այսօր ցնծութիւն յայտնեցաւ տիեզերաց։

Անմարմնական հոգեղինացն երգակցելով բոցեղէն փայլմամբ, թափանցիկ հրածին ամպոյն սեւն գործեալ յայրին. այսօր դասակից եղեն հովիւքն հանդիսի վերնոցն։

Ընդհանուր ծաւալեցաւ ծագումն լուսոյ, մոգուցն հետեւելով աստեղըն գուշակեալ ըզծնունդ յայրին. անդ մատուցանէին զընծայս աստուածային ծննդեանն։

ծնն Ճառագայթ եւ կերպարան էութեան հօր բանդ աստուած. ըզքեզ բարեբանեմք ասելով փառք 'ի բարձունս աստուծոյ։

Որ միացար 'ի մարմնի անճառապէս ճշմարիտ աստուած. ըզքեզ։

Որ զանծնիցն բարձեր ըզդատապարտութիւն քրիստոս աստուած. ըզքեզ բա։

Դասք անմարմնականք երկնաւոր զօրացն, 'ի մէջ հովուացն օրհնէին ըզծագումն լուսոյ մեծին 'ի հօրէ մեզ 'ի փրկութիւն։

Եւ մոգքն աստեղբ նշանաւ եկին 'ի բեթղեհէմ երկրպագին տեառն, եւ 'ի յայրին մատուցին զընծայս խորհրդոյ։

Եւ հովիւքն երգեին ընդ հրեշտակս, փառք 'ի բարձունս մեծիդ աստուծոյ. որ եկիր եւ փրկեցեր ըզտիեզերս քոյով յայտնութեամբդ։

ծնն Զանճառելի լուսոյ մայր, եւ ըզբնակարան անսկզբնակից որդւոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք։

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանձնաւոր տաճար աստուծոյ բանին. օրհնու։

Զբոլորից փրկութեան մայր, որ զանտանելին յէից 'ի յարգանդի եբարձ. ըզնա ամենեքեան օրհնու։

Անտանելւոյն տաղաւար բարձող էիցըս բարձողին. որ ծնար զաստուած մարմնով զանմարմինաբար ծնունդն հօր. բարեխօսեա վասն մեր աստուածածին մարիամ։ տող

Որ վառեցար 'ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ եղեւ զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ քրիստոս ջնջել ըզգիր մեղաց մերոց։

Աստուածածին դու ես յոյս եւ ապաւէն խոստովանողացս ըզքեզ. որդւոյ քո եւ աստուծոյ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

Արեգակն արդարութեան քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգւով եւ ճշմարտութեամբ։ հոգ

Որ փոխանակ ծոցածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետիքն հօր 'ի բարձանց հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս յադամայ տրտմեցելոց եւ հրազինել զընտրեալ դասս առաքելոցն. վասն որոյ։

Այսօր տօնական և գիշերային լուծան երկունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալսն մարմնով 'ի

մահ եւ յապականութիւն, վերըստին ծնանի հոգին յորդիս լուսոյ հօրն երկնաւորի. վասն որոյ։

հան Որ խոնարհեցար յերկնից բանդ աստուած, եւ առեր մարմին ՚ի սրբոյ կուսէն. յիշեա զննջեցեալսն մեր յորժամ գայցես անճառ փառօք. զի դու ես տէր ամենայն երկրի։

Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց, եւ խաչիւդ քո լուծեր զերկունս մահու. յիշ։

Ի նստիլ քո յաւէտնի դատաւոր ահեղ. աղաչանօք սուրբ աստուածածնին յիշեա զննջեցեալսն մեր, յորժամ գայցես անճառ փառօք. քանզի քո են փառք յաւիտեանս ամէն։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր աւետիք հրեշտակապետին ցընծութեամբ լցին ըզկոյսն սուրբ. քանզի էջ միածինն յարգանդ կուսին։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Այսօր տիեզերք պայծառացան աւետեօք սրբոյ կուսին. քանզի բանն մարմին եղեւ եւ բնակեաց ՚ի մեզ։

հրց գկ Որ ՚ի ծոցոյ հօր բանդ աստուած անըսկիզբն, յարգանդի կուսին բընակիլ յանձն առեր. ընդ քեզ բարեբանեմք աստուած հարցն մերոց։

Որ յանարատեան աթոռ նստիս եւ ընդ հօր ես յէութեան, յանբաւից մըտուր եղար թագաւոր փառաց. ընդ քեզ բա։

Որ ՚ի քառակերպեան երեքսրբեան ձայնիւ անդադար օրհնաբանիս, ՚ի մեզուց պատարագօք պատուեցար յայրին. ընդ քեզ բա։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս։ գ

Զթագաւորն անմահ քրիստոս զէակից հօր եւ հոգւոյն, որ տղայացաւ այսօր յանարատ ՚ի սուրբ կուսէն, փրկելով ըզմեզ. ժողովուրդք օրհնե։

Արարիչն արարածոց քրիստոս փառակից հօր եւ հոգւոյն, այսօր մըկրտիլ ՚ի յանձն էառ ՚ի ձեռաց հողեղինի, սրբելով ըզմեզ. քահանայք օրհնե։

Ընդ քեզ աստուածածին, աղբիւր անըսպառ լուսոյն, որ լուսաւորէ զհաւատացեալս. միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։ մեծ

Դու պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձող անիծիցն. վասն որոյ ընդ քեզ աստուածածին մեծա։

Դու ճշմարիտ արեւելք արեգական արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց. միաբանա։

Ընդ քեզ աղաչեմք անըսկզբնակից հօր որդի. որ այսօր նախաստեղծին բնութեամբ ՚ի կուսէն ծընար աստուած եւ մարդ. ողորմեա մեզ։ ողբ

Առ քեզ պաղատիմք էակից հօր որդի. որ այսօր ՚ի մըսուր եդար եւ ՚ի հրեշտակաց պատուեցար աստուած ես։

Ի քէն հայցեմք ճշմարիտ սուրբ հոգի. որ այսօր աղաւնակերպ երեւմամբ յայտնեցար աշխարհի աստուած. ողորմեա մեզ։

Որ ՚ի հրեղէն աթոռ ընդ հօր ես բընակեալ, եւ ՚ի հրեշտակաց տէր

սպասաւորեալ. այսօր կամաւ Հօր
'ի յերկրի երեւեցար մարմնով կու-
սական ծննդեամբ. զքեզ ընդ
զօրս անմարմնոցն անդադար օրհ-
նաբանեմք:

Յորմէ զարհուրեալ դողան սրովբէ-
բէագունդ ջոկք աթոռոցն. թեւա-
սքօղելով ծածկեն զերեսս իւրեանց.
այսօր տղայաբար 'ի կուսական 'ի
ստեանցըն կերակրեցար մարդասի-
րապէս. զքեզ:

Որ յանսպառ փառաց խոնար-
հեցար յերկիր. անխառն եղեր
հոգեղէն բնութեանս. այսօր ըզ-
ձեղուցեալ ըզնախահայրըն կենա-
գործեցեր 'ի կեանսըդ յաւիտենից
մարդասիրապէս. զքեզ:

Ճշու
մեծ Ըզքեզ, կոյս եւ մայր եւ բնա-
բձ կարան աստուածային ներմարդու-
թեանն, գոհաբանեմք եւ վերօրհ-
նեմք զեղեալ փրկող կենդանու-
թեան ազգի մարդկան. վասն որոյ
ըզքեզ աստուածածին եւ կոյս բա-
րեբանեմք ըզմայր եւ զաղախին
փրկչին մերոյ:

Ծննդեանըն հօր եւ հին աւուրց ան-
ժամանակին յաւիտենից. ժամանակաւ
յորովայնի քում բնակեցաւ եւ 'ի
հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ ըզքեզ:

Ծնեալն 'ի քէն 'ի խաչ ելեալ եւ
'ի յաթոռ փառաց ընդ հօր. անսար-
գել 'ի մարդկանէ փառաւորու-
թեամբ էութեամբ երկրպագեալ.
վասն որոյ ըզքեզ:

Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան
այլ եւ վերին զօրութիւնք. դասք ան-
մարմնոց հոգեղինաց հրեղինաց զը-
ւարթնոց եւ հրեշտակաց, գոհաբա-
նեն եւ վերօրհնեն եւ փառաւորեն
ըզմայր եւ զաղախին փրկչին մեր:

# ԿԱՆՈՆ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

ԱՅՍՕՐ որ յաթոռ փառաց ընդ օրհ
հօր ծընանիս 'ի սըրբոյ կու- գձ
սէն մարմնացեալ բանն, ծնա-
նելով ըզտիեզերս յորդէգրու-
թեան շնորհս:

Այսօր անպարագրելի բանըն հօր
բազմի 'ի մըսուր անբանից
բոլորից տէրն, եւ 'ի վերայ քե-
րովբէիցըն հանգչի:

Որ նոյն ինքն է ճառագայթ փա-
ռացըն հօր, 'ի յովհաննէ հայցէր
մըկրտիլ 'ի յորդանանու
յորձանսն. անապականն կոչմամբ
ըզտիեզերս հրաւիրելով:

Ըզծնեալն 'ի սըրբոյ կուսէն
ընկալցուք 'ի սիրտս մեր հա-
ւատով, որպէս երբեմն 'ի գիրկսըն
սիմէօն:

Որ յէութեանդ ես ընդ հօր եւ ձեռ
սուրբ հոգւոյն անըսկիզբըն որդի,
խոնարհեցար 'ի հայրական ծոցոյ,
մարդ եղեալ մարմնացար 'ի կու-
սէն, բառնալով զյանցմունսըն մա-
հու յանցանաց նախահօրն. քեզ
երգեմք ընդ զօրըս հրեշտակացն
'ի մէջ հովուացն, օրհնեալ ես
քրիստոս նախայաւիտեան բանդ:

Այսօր ծընար որ 'ի հօրէ յառաջ
քան զյաւիտեանս որդի, ճառա-
գայթ փառաց եւ ծագումըն յան-
մեկնելի լուսոյն. աստղագուշակ
տեսլեամբըն յայրին իջեվանի եւ
'ի մըսուր անբանից բազմեալ. քեզ:

Թագաւոր փառաց քրիստոս եւ ա-
րարիչ բոլորից, աստուած հըզօր

իշխան Հայր հանդերձեալ լուսոյն, մանուկ երեւեալ այսօր անփոփոխելիդ 'ի յէութեան. քեզ եր։

ձնն Անեղնիմաստ ամենից Հայր բազմագեղ խնամող ստեղծող եւ տէր բոլորից, աննեղ եւ էիցս էակ. զոր միշտ օրհնեն դասք անմարմնականացըն յաւէժաբար հընչմամբ։

Որ կերպարան եւ կնիք Հօր առեալ վասըն մեր ծառայի կերպ 'ի կուսէն. որ էն 'ի յաթոռ փառաց անտես վերնոցն, 'ի յայրին իջեվանի եւ 'ի մսուր անբանից բազմեալ։

Ըզ 'ի կուսէն մարմնացեալ բանն եկայք ժողովուրդք ընդ հովուացն բարեբանեսցուք, եւ ընդ մոգուցն երկըրպագեսցուք. ընդ երկնային զօրացն երգեսցուք փառք 'ի բարձունս աստուծոյ։

ձնն Զահաւոր բարբառըս վերնոցըն հոգեւոր հնչմամբ երգով ընկալեալ հովուացն, օրհնէին ըզծընողին եւ ըզծագումն յանմեկնելի լուսոյն։

Հրեշտակապետին աւետօքն ընթացեալք 'ի յայրն, տեսին զի նըւաստացեալ էր անտեսըն սերովբէից. մանուկ եղեալ յանբանից մըսուր։

Դիտելով մոգուցն ըզփայլումն աստեղն, սա զաստուած գուշակեալ լինի. զի 'ի տեսիլ մարմնացելոյն ժամանեալ, նըմա մատուցանելով զերկըրպագութիւն։

ձնն Ուրախ լեր աստուածածին յոյս եւ փըրկութեան մայր. ըզքեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք։

Ըզքեզ լուսոյ մայր և կոյս, ըզքեզ զանձըդ կենաց աստուածային ձայնիւ ցընծութեամբ մեծա։

Մայր սուրբ անարատ լուսոյն. հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ըզքեզ մեծացուցանեմք։

Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։ ձն՝

Աւետաւոր հրեշտակն աւետաբանէր ըզծընեալ փրկիչն 'ի սուրբ կուսէն։

Աստ ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ։

Բարեխօսեա անդադար առ որդին քո եւ աստուած մեր, ծընող եւ աղախին տեառն։ ձնն

Ի բարեխօսութիւն փութացիր մեզ սուրբ աստուածածին. առ 'ի փրկել ըզժողովուրդս 'ի մեղաց եւ յապականութենէ։

Ապաւինիմք 'ի քո բարեխօսութիւնդ աստուածածին մարիամ, մայր տեառն եւ կոյս սուրբ, հարսն երկնից և դուռըն կենաց, զոր մարգարէն ասէ։

Որ համագոյ ես Հօր եւ որդւոյ, անճառաբար բղխումն 'ի միշտ էէն. այսօր բղխեցեր ջուր կենդանի յերուսաղէմ. հոգի աստուծոյ ողորմեա։ հոգ

Որ արարչակից ես Հօր եւ որդւոյ, որով կենդանածնեալք 'ի ջուրս արարածք. այսօր որդիս աստուծոյ ծնանիս 'ի ջուրց. հոգի։

Որ փառակից ես Հօր եւ որդւոյ, եւ քննես ըզխորս աստուծոյ. այսօր խորագէտս իմաստից զյիմարս աշխարհի արարեր. հոգի։

Արարչագործ աստուած, զարարածըս քո մի անտես առներ. այլ գթա 'ի նորոգեցեալսըն մեր, եւ ձան

համեգո՛ ընդ սուրբս քո ՚ի խորան քում սի՛րողաց։

Արարչակիցդ հօր որդի, ՚ի միւսանգամ քո գալըստեանն անդատապարտ պահեա ըզնըննջեցեալսըն մեր, եւ հան։

Կենդանարար սուրբ հոգի, յորժամ նորոգես զերեսս երկրի, նորափետուր զարդարեա ըզնըննջեցեալսըն մեր, եւ հան։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Օրհնեսցուք զառաքեալն ՚ի հօրէ, որ ՚ի խանձարուրս պատեցաւ վասըն մեր, եւ փրկեաց ըզմեզ յանիծիցն ադամայ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ուրախ լեր անապատ ծառաւի, եւ ծաղկեալ հաւատով երանութեամբ յայսըմհետէ. քանզի քրիստոս յոյս յայտնեցաւ հեթանոսաց։

հրշ / գկ Որ յանձառելի ծնցոյ հօր յէութենէ ծագեցար ՚ի արեգակն արդարութեան անըսկիզբըն աստուած. զքեզ ընդ հրեշտակս բարեբանեմք աստուած հարցըն մերոց։

Որ խոնարհեցար յերկնից փրկել զարարածս անյեղապէս, մարմնացար ՚ի կուսէն էակից բանդ հօր. զքեզ։

Որ ՚ի խանձարուրս պատեցար անեղանելիդ, ոչ մեկնեցար յանքըննին փառաց հօր իսկակից սուրբ հոգւոյն. զքեզ։

դ Ըզտէր միաբանութեամբ օրհնեցէք եւ առաւելաբար բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Զառաքեալն ՚ի հօրէ զբանն եւ ըզմարմնացեալն ՚ի կուսէն զանքըննելին. միա։

Ըզծընեալն ՚ի սրբոյ կուսէն եւ յանբանից մըսուր եդեալ ըզհաց կենաց. միա։

Զերկրպագեալն ՚ի մոգուց և զմըկրտեալն ՚ի յորդանան ՚ի յովհաննէ. միա։

Աստուածածին եւ սրբուհի. որ ըզբանն աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. անդադար երգով մեծացուցանեմք։ մեծ

Զքեզ մայր կուսութեան եւ յղութեան լուսոյ, եւ առագաստ անճառելւոյ բնակողին ՚ի քեզ փեսայացեալ բանին. անդա։

Քեւ լուծան կնիք դատապարտութեան. եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ. վասն որոյ ըզքեզ աստուածածին եւ կոյս. անդա։

Որ էրն ՚ի սկըզբանէ առ աստուած եւ աստուած բանն. կերպարան անեղին եւ համագոյ սուրբ հոգւոյն. ՚ի վերջին աւուրս ծնուցեալ մարմնանալ յանձն առնու ՚ի կուսական արգանդէ, վասըն փըրկութեան ազգի մարդկան։ ողբ

Յառաջ քան զյաւիտեանս որդի նախայաւիտեան. այսօր յերկրի երեւեալ աստուած եւ մարդ կատարեալ, խանձարրով պատի, եղանի եւ դնի յանբանից մըսուր, վասըն փըրկութեան ազգի մարդ։

Ի բեթղեհէմ հրէաստանի երեւի արդարութեան արեգակն. այսօր երկրպագի անեղըն յարեւելից եկեալ մոգուցն. եւ փառաբանի յերջանիկ ՚ի բացօթեայ հովուացն, վասըն փըրկութեան ազգի մարդ։

Որ անտես եւ անքըննին քառակերպիցըն վեհագոյն, ՚ի փըրկել տէր

ըզմեզ եկեալ անմահից Թագաւորն, օրհնութիւն առաքողին։

Առաքի հրեշտակապետն առ սեպուհն հողեղէն. աւէ տէրն եւ արարողն առաքեալն ՚ի Հօրէ մարմնանայ ՚ի քեզ փրկողն։

Մըկըրտի ՚ի յորդանան վըկայելով Հօր եւ Հոգւոյն. ովսաննա ՚ի բարձունս երգէին մանկունքն օրհնութիւն որդւոյ դաւթի։

Եշւ
մեծ
բձ

Անթառամ ծաղիկ անդաստապարտ շառաւիղ վերաբուսեալ յարմատոյն յեսսեայ. զքեզ եսայի կանխաւ վերագոչեաց ՚եօթնարփեան շնորհաց հոգւոյն ընդունարան գոլ. աստուածածին եւ կոյս զքեզ ըմեծացուցանեմք։

Համեղաճաշակ պտղոյն բանաւոր ըբարունակ, յորմէ կաթեցաւ մեզ ողկոյզն անապական յուրախութիւն տրտմեցելոցն ՚ի ճաշակմանէ ծառոյն գիտութեան. սրբուհի անարատ ամենեքեան զքեզ։

Քաղաքավարեալ ՚ի մարմինս անարատ ըվերրուք. այսօր յառաքելոցն ամփոփեալ վերին ակնարկութեամբքն վերափոխեցար յարքայութիւն որդւոյ քո եւ աստուծոյ ըմերոյ. բարեխօս խոստովանողացս զքեզ։



# ԿԱՆՈՆ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

ԱՆՍԿԶԲՆԱԿԱՆ տեսիլ փառաց քոց տըւող որ ՚ի մեզ հրաշագործեցաւ երեւելով անճառաբար ծընունդ, այսօր ցընծութիւն յայտնեցաւ տիեզերաց։ օրհ գձ

Անմարմնական հոգեղինացն երգակցելով բոցեղէն փայլմամբ, Թափանցիկ հրածին ամպոյն սուն գործեալ յայրին. այսօր դասակից եղեն հովիւքըն հանդիսի վերնոցն։

Ընդհանուր ծաւալեցաւ ծընդումըն լուսոյ, մոգուցըն հետեւելով աստեղըն գուշակեալ ըզծընունդ յայրին, անդ մատուցանէին զընծայս աստուածայինն ծնընդեանն։

Որ յէութեանդ ես ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն անըսկիզբն որդի, խոնարհեցար ՚ի հայրական ծոցոյ, մարդ եղեալ մարմնացար ՚ի կուսէն, բառնալով զյաղթումըն մահու յանցանաց նախահօրն. քեզ երգեմք ընդ զօրըս հրեշտակացն ՚ի մէջ հովուացն. օրհնեալ ես քրիստոս նախայաւիտեան բանդ։

Ըզծնեալն ՚ի սըրբոյ կուսէն ընկալցուք ՚ի սիրտըս մեր հաւատով, որպէս երբեմն ՚ի գիրկըն սիմէօն։ ձնն

Օրհնեսցուք զառաքեալն ՚ի Հօրէ, որ ՚ի խանձարուրըս պատեցաւ վասըն մեր, եւ փըրկեաց ըզմեզ յանիծիցն ադամայ։

Ուրախ լեր անապատ ծարաւի, եւ ծաղկեա հաւատով երանութեամբ յայսըմհետէ. քանզի

քրիստոս յորս յայտնեցաւ հեթա-
նոսաց։

ձնն Աստուածածին երկնային
դուռն աստուածային ձայնիւն ա-
ւետարանէր հրեշտակն. ուրախ լեր
բերկրեալդ տէր ընդ քեզ։

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր
անպականաբար բնակիլ հաճեցար
'ի քում յորովայնի. ու։

Որ բոցեղէն սրովբէիւք շրջափա-
կեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդ-
կան 'ի գիրկս հողեղինի յայտ-
նեալ. ու։

ձնն Լոյս լուսոյ մայր, եւ կենարար
բանին բնակարան. քեզ երա-
նիցեն ազգ եւ ազինք ամենայն։

Ստեղծողին մայր, եւ հնութեան
կերպի նորոգողին. քեզ։

Լոյս ծագեցաւ 'ի քէն նստելոցս
'ի խաւարի. քեզ։

ձնն Անսկզբնական բանին հօր
բնակարան, տաճար եւ առագաստ,
տեղի անտանելի լուսոյն. զքեզ
մեծացուցանեմք արժանապէս եր-
գով աստուածամայր եւ կոյս։

Յորժամ կենդանատեղծեալք յա-
նեղէն հաստեցան ամենայն եղա-
կանքս, աներեւութապէս տղայացեալ
յորովայնի քում, եւ ծնեալ առ
'ի քէն մարմնացեալ աստուածն
բոլորից. զքեզ։

Յորժամ զարհուրեալ դողային դասք
վերին զուարթնոցն, տղայապէս
առ ընկալեալ բարձեր 'ի գիրկս,
եւ արբուցեր որպէս մայր ըստացո-
ղին ըզքեզ կուսական քո սուրբ
ըզկաթն. զքեզ։

ձնն Որ տարար ըղեանն աստուած
յարգանդի քում, եւ ծնար ըզնա
մարմնով ապրեցուցիչ աստուածա-
ծին. բարեխօսեա կեցուցանել
ըզմեզ։

Հոգւոյն սրբոյ հովանացեալ ըզ-
քեւ աստուածածին, մարմնացեալ
հօր հաճութեամբ զորդին մի-
ածին մեզ 'ի փրկութիւն։

Զանարատն օրհնեսցուք զաստ-
ուածածինն, որ կոյս մնաց յետ
ծննդեանն, եւ տաճար յորովայ-
նի զանտանելին ամենեցուն, ըզ-
համաբնակիցն հօր եւ ամենա-
սուրբ հոգւոյն։

Բարեխօսութեամբ սուրբ աս- ձնն
տուածածնին պահեսցէ զեկեղեցի
իւր սուրբ. եւ 'ի միւսանգամ
գալստեան իւրոյ նորոգեսցէ 'ի
փառս։

Այլ մեք ձայնիւ վերնոց փառա-
ւորեսցուք ըզքեզ քրիստոս, որ հա-
մագոյդ ես հօր եւ սուրբ հոգ-
ւոյն. զի միաբանեսցես զեկեղե-
ցի քո սուրբ պահելով 'ի խաղա-
ղութեան։

Զի 'ի քէն ցնծութիւն ծնաւ
տիեզերաց նախայաւիտեան բանն,
փառակից հօր եւ սուրբ հոգւոյն.
ըզնա անդադար աղաչեա վասն ան-
ձանց մերոց։

Հոգին ճշմարիտ որ զաստուա- Հոգ
ծային ըզհրամանսն քո զառաջին
դաւթեան լցեր, արբուցանելով
աշակերտացն ըզպարարտութիւն
քո 'ի սուրբ վերնատանն. ողորմեա։

Որ առաքեցար 'ի հօրէ կենդա-
նարար վտակ եւ լոյս ճշմարիտ.
արբուցանելով նոքօք որդւոց սիով-
նի զուղխս փրկութեան. ող։

Որ կատարեցեր ըզփափագ ցան-
կութեան սրտից նոցա. որք ըս-
պասեալ մնային մեծի գալըս-

տեան քո ՚ի սուրբ վերնատունն. Ողորմեա։

Հան Արարչագործ աստուած, որ յոչընչէ գոյացուցեր զերկինս եւ զերկիր, օրհնեմք զքեզ, որ հանգուցիչդ ես ննջեցելոց հայր ամենակալ։

Բանդ աստուած եւ համագոյ փառաց հօր պատկեր. գովեմք զքեզ, որ յարութիւնդ ես ննջեցելոց որդիդ միածին։

Աղբիւր անսպառ յորմէ բաշխի տիեզերական շնորհք. բարեբանեմք զքեզ, որ նորոգողդ ես ննջեցելոց հոգիդ ճշմարիտ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր ծնունդ որ ՚ի հօրէ յառաջ քան զյաւիտեանս որդի, ճառագայթ փառաց եւ ծագումն յանմեկնելի լուսոյն. աստուածաշունչ տեսլեամբքն յայրին իջեալ եւ ՚ի մսուր անբանից բազմեալ. քեզ երգեմք ընդ զօրս հրեշտակացն ՚ի մէջ հովուացն, օրհնեալ ես քրիստոս նախայաւիտեան բանդ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Թագաւոր փառաց քրիստոս եւ արարիչ բոլորից, աստուած հզօր իշխան հայր հանդերձեալ լուսոյն, մանուկ երեւեալ այսօր անփոփոխելիդ ՚ի յէութեան. քեզ։

Հրց Գկ Որ խոնարհեցար ՚ի հայրական ծոցոյ բնակիլ յարգանդի կուսին. աստուած հարցն մերոց։

Որ գթացար յերկիր եւ ծնար անախտ ազատելով զախտի ծնունդս. աստուած։

Բարեբանեմք զէակիցդ հօր եւ հոգւոյն անդադար հոգեւոր երգով. աստուած։

Ըզտէր. Զառաքեալսն ՚ի հօրէ լոյս իմաստութիւն եւ բան, զէակիցն հօր եւ հոգւոյն. օրհնեցէք եւ բարձր արարէք։ Գ

Ըզծնեալսն ՚ի սրբոյ կուսէն ընդ խոստովանեալ թագաւորն, զերկրպագեալսն ՚ի մոգուց. օրհնեցէք եւ բար։

Որ իջանելով ՚ի ջուրսն սրբեաց զյորդանան, եւ զմկրտեալսն ՚ի յովհաննէ. օրհնեցէք եւ բար։

Որ զանճառելին ծնար սուրբ աստուածածին կոյս. օրհնեալ ես յաւիտեան։ Մծ

Որ զարարչակիցն հօր զ՚ի սկզբանէ բանն աստուած յորովայնի քում կրեցեր. օրհ։

Զքեզ եզեկիէլ ետես երկնային դուռն եւ հարսն անփորձ. օրհ։

Հրաշափառ ծնունդ քո ՚ի սուրբ կուսէն. այսօր ցուցաւ ազգի մարդկան. անսկզբնակից բանդ էակից հօր։ Ողր Գկ

Յայտնութեամբ քո տէր ցնծացաւ երկիր. եւ նորոգեալ եղեւ ադամ յառաջին յանցանաց ՚ի մեղաց իւրոց։

Դասք հովուացն յերկրի փառաւորէին ընդ քո ամենակեցոյց գալուստ. որ երեւեցար քո արարածոց։

Այսօր յայտնեցաւ մեզ բարձրեալն բազմեալ բանն յանբանից մսուր. գառն եւ երկնաւոր հաց։ Տէր

Այսօր ցնծան զուարթունք երկնից, տեսանելով զահաւոր զահագին եւ ըզհրաշալի ծնունդ. որ լոյս աշխարհի ցուցաւ։

Ընդ իջանել զուարթնոցն ՚ի փա-

ռաբանութիւն, տեսանէին ամպ լուսոյ սիւն գործեալ ՚ի հրալէց վիմին, դասք երջանիկ հովուացն։

ձշ. մեծ բձ Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն. աստուած աստուծոց եւ տէր տերանց փրկիչ գոլով։

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ ՚ի սուրբ կուսէն. եւ անարատ ծննանիլ յորովայնէ անապական, բառնալով ըզմեր նեղութիւնս. աստուած։

Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցան հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. աստուած։

## ԿԱՆՈՆ

### ԵՕԹՆԵՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

օրհ բձ ԱՆԵՂԱՆԵԼԻ բնութեան որ յէութեանդ ես ընդ հօր, ծնեար ՚ի սրբոյ կուսէն. ըզքեզ բարեբանեմք արարչակից հօր։

Անեղանելի արարիչդ որ վասն մեր մարմնացար, եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցար. ըզքեզ բարե։

Մկրտեցար ՚ի յորդանան ՚ի յովհաննէ, աղաւնակերպ սուրբ հոգւոյն վկայեալ երկնային ձայնիւն. ըզքեզ բարե։

Բանն առաքեալ ՚ի հօրէ, որ վասն մեր մարմնացաւ եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցաւ. ըզքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։

Զի որում ոչըն հանդուրժէին բոցանըշոյլ սերովբէքն. նա բնակեցաւ ՚ի քում յորովայնի. ըզքեզ։

Յորմէ սարսեալ դողային փայլակնացայտ ՚ի լուսոյն. ՚ի գիրկըս քո ըզնա ընկալար. ըզքեզ։

Լոյս որ ՚ի հօրէ առաքեցար յորժամ իջեր ՚ի յերկնից եւ մարմնացար ՚ի սրբոյ կուսէն. դու ես գառն աստուծոյ եւ որդի հօր։

Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն. աստուած աստուծոց եւ տէր տերանց փրկիչ գոլով։ ձնն

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ ՚ի սուրբ կուսէն. եւ անարատ ծննանիլ յորովայնէ անապական, բառնալով ըզմեր նեղութիւնս. աստուած։

Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցան հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. աստ։

Ուրախացիր սրբուհի զարդարեալ աւետեօքն. որ քարոզեցան ըզգալուստ արքային տեառն ՚ի յերկնից։ ձնն

Ողջոյն ընդ քեզ մարիամ, ՚ի քեզ սուրբ հոգին եկեսցէ. եւ զօրութիւն բարձրելոյն ՚ի վերայ քո հովանասցի։

Որ ծնանելոցն է ՚ի քէն իսրայէլի առաջնորդ. եւ ընդ հանուր քարոզի աստուած հզօր անմահ բանն։

Անկանիմք առաջի քո աստուա- ձնն

ծածին. եւ աղաչեմք զանարատ ըզկոյսդ։

Բարեխօսեա վասն անձանց մերոց, եւ աղաչեա ըզմիածին որդին։

Փըրկել ըզմեզ ՚ի փորձութենէ եւ յամենայն վտանգից մերոց։

ձնն Սուրբ եւ աստուածածին մարիամ ցանկալի կուսից եւ պարծանք ազգի մարդկան, մայր եւ աղախին մեծացուցանեմք։

Անկէզ մորենի եւ տաճար ընդհանուր լուսոյն, անարատ եւ անխախտելի կուսութիւն. մայր։

Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան, եւ առագաստ հրափայլ ծագմամբ. մայր։

ձնն Բարեխօսեա վասն մեր աստուածածին մարիամ, որ ծընար զտէր աստուած, որ հովուէրըն զիսրայէլ. ո՜ մեծազօր եւ սքանչելի փառօքն իւրովք։

Ի քեզ եմք ապաւինեալ, որ մայրդ ես եւ աղախին քրիստոսի. լեր բարեխօս վասն մեր. զի զանուն տեառըն կարդասցուք եւ զքեզ մեծարեալ պատուեսցուք։

Որ ըզհուրըն աստուած յորովայնի քում ընկալար, եւ ծընար անճառապէս զկենագործողն ամենեցուն. բարեխօս ըզքեզ ունիմք որ երանեալդ ես ՚ի կանայս։

հոգ Սարսափելի հողմոյ նըման ահեղագոչ սաստիկ հընչմամբ, երեւեցար ՚ի վերնատանն հոգիդ դասուն երկոտասան. որք առ ՚ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. մաքրեա ՚ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց։

Էկիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար, ընդ արդարութեան եւ ընդ մեղաց եւ ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաքրեա։

Սէրն ՚ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տընտես ՚ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա։

Ի ձայն փողոյ գալըստեան քո տէր, ամենայն հոգիք զարթիցեն կալ ՚ի դատաստանի քում քրիստոս աստուած մեր։ հան

Յորժամ հընչէ բարբառն ահագին, եւ հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմըք փառըք գալըստեան քո տէր։

Յորժամ առնես հատուցումըն տէր, եւ սուրբըք քո պարծեսցին ՚ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փըրկիչ կալ ՚ի յաջմէ քումմէ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Այսօր յայրին ընծայեցար փըրկիչ, եւ ՚ի մոգուցն երկըրպագեցար. եւ հովուացըն տեսեալ ասէին, դու ես գառն աս։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Ի նմանութիւն աղաւնոյ տեսեալ զհոգին սուրբ յորդանանէս, աղաղակէր ասելով. սա է գառն աստուծոյ եւ որդի հօր։

Փառաւորեալ աստուած սքանչելի մեծագործութեամբ, եկիր ՚ի փըրկել զարարածըս քո. աստուած հարցըն մերոց։ հրց բձ

Ծընար ՚ի կուսէ անճառելի բանդ, ՚ի հօրէ ոչ մեկնեցար. օրհնեմք ըզքեզ անհասանելի լոյս. աստը։

Երեւեցար յաշխարհի որ իջեր 'ի
յորդանան մկրտիլ 'ի յովհաննէ.
որ ընդ ջուրսն սրբեցեր սրբեա
զմեզ 'ի մեղաց մերոց. ամոր:

գ Ընդշտէր. Ամենայն գործք տեա-
ռըն օրհնեն ըզնա անդադար. զա-
նընկճելի աստուած զանյաղթելի
զթագաւորն օրհնեցէք գովեցէք
եւ բարձր արարէք ըզնա յաւի-
տեան:

Որ էն փառօք 'ի յերկինս անըն-
կըղընակից որդին, եւ իջեալ 'ի
յերկնից մարմնացաւ 'ի կուսէն.
օրհնէ:

Ըզծնեալն 'ի սուրբ 'ի կուսէն,
զեդեալն յանբանից մըսուր, եւ
զմկրտեալն 'ի սուրբ յորդանան
օրհ:

Զէակիցն հօր եւ որդւոյ ըզսուրբ
հոգին, զնորոգող եւ զանըսպառ
աղբիւրն լուսոյ որ լուսաւորեացն
ըզմեզ, օրհնէ:

մեծ Ըզկուսութիւնդ քո աստուա-
ծածին անարատ. զոր ոչ բոցակի-
զեաց հուր աստուածութեանն,
մեծացուցանեմք:

Որ յարգանդի քում անպարականա-
բար բնակեցաւ քրիստոս աստուած
եւ փրկիչ անձանց մերոց, մեծ:

Անհասանելի տէրունական յայտ-
նութիւնն աշխարհի ծագեցաւ. ան-
մատոյց լուսոյն երկրպագեսցուք:

ողր Խոնարհեցար 'ի բարձանց եւ
մարմնացար 'ի կուսէն. որ նորոգէ-
իրդ 'ի քրովբէս արարիչդ արա-
րածոց:

Երկինք չէին բաւական փառաց
անմահ անեղին. արգանդ կուսին
ժուժկալեալ ընդունել ըզ-
գանձդ երկնային:

Ցորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշ-
խէին մերձենալ. 'ի խանձարուրս
պատեցար եւ եդար 'ի մըսուր
յանբանից:

Հրաշալի բարբառք երկնաւոր տէր
զօրացն հընչմամբ օրհնէին զան-
մահ թագաւորութիւնն:

Անճառ ծնունդըն փառօք երե-
ւեալ, եւ աստղըն լուսապայծառ
հովանի էր յայրին:

Բանըն բազմեալ յանբանից մը-
սուր. եւ մոգքըն հետեւէին
ծագմամբ լուսափայլ աստեղն:

Սիւն լուսոյ եւ ամպ հովանի ճշ
սուրբ կոյս, որ ցօղեցեր 'ի մեզ մեծ
ըզցօղն երկնային. զքեզ բարեբա- բկ
նեմք աստուածածին կոյս:

Անկէզ մորենի եւ սրովբէ հողե-
ղէն սուրբ կոյս. քանզի պտուղըն
կենաց 'ի քէն տուաւ մեզ. զքեզ:

Անիծից լուծիչ եւ քաւիչ մեղաց
սուրբ կոյս. որ զանտանելին յէից
'ի գիրկս քո բարձեր. զքեզ:

# ԿԱՆՈՆ

## ՈՒԹԵՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

ԼՈՅՍ 'ի լուսոյ 'ի հօրէ առա- օրհ
քեցար եւ մարմնացար 'ի դձ
սուրբ կուսէն, զի վերըստին նորո-
գեսցես զապականեալն ադամ:

Դու աստուած 'ի յերկրի երեւե-
ցար եւ ընդ մարդկան շրջեցար,
եւ փրկեցեր ըզտիեզերս յանի-
ծիցն ադամայ:

Քեզ 'ի յերկնից վըկայեալ հօր քո
ձայն. սա է իմ որդի. եւ սուրբ

հոգւոյն ընդ քեզ յայտնեաց աղաւնակերպ երեւմամբ։

❋ Ընդ քեզ որ հոգւով եւ հրով մաքրեցեր ըզմարդկան աղտեղութիւն, որպէս զաստուած եւ ըզփրկիչ ամենեքեան օրհնեսցուք։

Փրկիչն երեւեցաւ եւ զաշխարհս ապրեցոյց 'ի պատրանաց թշնամւոյն. որդեգրութիւն շնորհելով 'ի ձեռըն մկրտութեան։

Ջրով կիզու ըզմեղս մեր այսօր երեւեալ ապրեցուցիչն, եւ զովացուցանէ զաշխարհս աստուածային ջերմովն։

❋ Ընդգլուխ վիշապին փրկիչըն ջախջախեաց 'ի յորդանան 'ի գետն. եւ ինքեան իշխանութեամբ զամենեսեան ապրեցոյց։

ծնն Ծագումըն հրաշալի որ անյայտ էր 'ի մէնջ. եւ բանըն հայրական անըմբռնելի. հուր փայլակնացեալ և 'ի մարմնի բնակեցաւ անվընաս պահելով զարարածս ամենայն։

Ծագումըն հրաշագործ որ 'ի կուսէն ծագեցաւ, ճառագայթելով զարարածս ամենայն. երկինք ցընծային եւ երկիր ուրախանայր. եւ քրիստոս տեսեալ ընդ մարդկան շրջեցաւ։

Առ քեզ ապաւինիմք ամենասըրբուհի. գերագոյն եւ հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային բանին։

ծնն Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զուարթարար. այսօր մարիամ սըրբուհին. 'ի փառըս քո քրիստոս ծագեաց մեզ լոյս յորդւոյն օրինաց. անդադար երգով սրբօք ըզքեզ ը միշտ մեծացուցանեմք։

Դրախտ աստուածային եւ արեւելք իմանալի. այսօր մարիամ հրաշագեղ, ծնեալ 'ի յաննայէ 'ի մայրութիւն քո հրաւիրեալ քրիստոս որդի աստուծոյ. անդա։

Տապանակ ապրեցուցիչ եւ տաղաւար արքայութեան աստուածընկալ. այսօր մարիամ լուսապայծառ. միածին ծընունդ յայտնեալ ծնողաց. 'ի ծնողութիւն քո կոչեցեալ միածին որդի աստուծոյ. անդա։

Ուրախ լեր մարիամ սուրբ աստուածածին. զի 'ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկըն տէր. ընդ քեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։ ծնն

Ուրախ լեր դուռըն փակեալ ընդ որ ոչ ոք մըտեալ. բայց տէր աստուած խորայէլի. ընդ քեզ։

Ուրախ լեր աղբիւր կընքեալ ջրոյն կենդանութեան. զոր ծարաւելոյ բնութեանս ետուր 'ի յարբումն. ընդ քեզ։

Ընդ քեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։ ծնն

Որ ըզբանն տարեալ յարգանդի կրեցեր սրբուհի անարատ, եւ անճառապէս ծնար ըզվերամբարձողն երկնից. ընդ քեզ։

Որ էիր լուսոյն արժանի եղեր բառնալոյ 'ի քո գիրկս. եւ արեգական արդարութեան եղեր արեւելք. ընդ քեզ։

Որ տարար յորովայնի զանսահմանելին ամենեցուն, եւ ծնար անճառապէս զքրիստոս յոյս ազգի մարդկան. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։ ծնն

Տեսին դասք իմանալի զօրութեանց զաստուած մարմնով առ ՚ի քէն ծնեալ. իսկ եկեղեցի որդւոյ քո աստուածածին ընդ քեզ խոստովանի. որ միայն կուսութեամբ ես մայր:

Աստուածածին տաճարն մեր եւ յոյս, բարեխօսեա առ որդին քո միածին, զի փրկեսցէ զմեզ ՚ի հրոյն տանջանաց, եւ պարգեւեսցէ մեզ զերկնից արքայութիւնն:

Հոգ

Առաքելոյ աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ ՚ի բարձանց, ՚ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն, մինչդեռ նստէին ՚ի սուրբ վերնատանն:

Աննիւթական աղաւնի, անքննելի որ քննէ զխորս աստուածոյ. զոր առեալ ՚ի հօրէ պատմէ զահաւոր եւ զմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյական:

Օրհնութիւն ՚ի բարձունս, երգեն ՚ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս ՚ի յերկինս:

Հան

Անսկիզբն աստուած սկիզբն արարչութեան, ՚ի հողոյ ստեղծեր զմարդն առաջին. գործել եւ պահել յանպատում ՚ի կեանս. իսկ ՚ի յանցանել հրամանի քո տէր, ընդ վճռիւ մահու ՚ի վերայ եդեալ, հող էիր անդրէն եւ ՚ի հող դարձցիս. եւ այժմ աղաչեմք զստեղծողդ ամենից, ընկալ եւ հանգո զհրաժարեալ հոգիս յեօթն աստեղեան լուսեղէն խորանս. ուր ժողովքն են սրբոցն ՚ի խաղաղութեան, հոգւով հեզութեամբ յերկնից բարութիւնն:

Ոսկի եղեալս անպիտանացայ. գեղեցկայարմար շինուածոյս քակտումն. իմաստունքս յիմարեցայ, ՚ի յալեաց մեղաց յոր ընկղմեցայ. եւ այժմ աղա:

Կոչողն եհաս վերին կոչողին. կոչնատէրն անհեղ կոչողն ահաւոր. դատաւորն անաչառ դատաստանն արդար. հրեշտակք անողորմ դատին զմեղաւորս. եւ այժմ աղա:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Զհին մարդն նորոգելով փրկիչն ՚ի մկրտութիւն գայ այսօր, զի զապականեալ բնութիւնս ջրով նորոս գործեսցէ, անապական զգեստ փոխարէն տալով մեզ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Մկրտի քրիստոս եւ սրբին ամենայն արարածք. եւ տայ մեզ թողութիւն մեղաց, ջրով եւ հոգւով վերասրբելով զմեզ:

Երգ ած

Տնօրինեցաւ յորդանանի կուսին ինքնակից հօր եւ սուրբ հոգւոյն, բանն առաքեալ ՚ի հօրէ յաղագս նախաստեղծ մարդոյն, բառնալով զյանցանս. ժողովուրդք օրհնեցէք զառաքեալն ՚ի հօրէ զաստուած հարցն մերոց:

Նախայաւիտեան որդին փառակից հօր եւ սուրբ հոգւոյն ՚ի յորդանան եկն այսօր մկրտիլ ՚ի յովհաննէ. կերպացեալ ի մարմնի յաղագս իմ, զնախահօրն եբարձ զմեղս. ժողով:

Մաքրողական պարգեւեցան շնորհք աղաւնակերպ իջմամբ սուրբ հոգւոյն ջուրցն սրբութեան. եւ հայր ՚ի վերուստ վկայեաց, կրկնակի ծննդեամբ դա է որդի իմ սիրելի. միաբան եւ մեք օրհ-

նեսցուք զառաքեալն ՚ի հօրէ գաստը։

Գ Ըզտէր օրհնեցէք բարձր արա‑րէք ըզնա յաւիտեան։

Արարիչն երկնի եւ երկրի աս‑տըւած եւ մարդ գոլով, երեւեալ ՚ի հոսանսըն յորդանանու, աս‑տուածախառըն մարմնով լը‑ւաց ըզտիեզերս ՚ի մեղաց. բարձր արարէք ըզ։

Միաբանութեամբ օրհնեցէք քա‑հանայք եւ ժողովուրդք զամենա‑սուրբ զերրորդութիւնն, ըզհամա‑գոյ եւ ըզմի աստուածու‑թիւնն, բարձր արա։

Ած Յանճառ փառաց խոնարհեցար ՚ի մեր բընութիւնս, բանդ աս‑տըւած եւ մարմնացար ՚ի սըրբոյ կուսէն։

Եւ ծնար ՚ի սուրբ կուսէ անապա‑կան մարմնով. ըզքեզ անդադար բարեբանեալ մեծացուցանեմք։

Այսօր զեկեալդ ՚ի փըրկութիւն ազգի մարդկան, միաբանութեամբ ամենեքեան մեծա։

Դղ Պատկերակից եղեր հողեղէն բընութեանըս, անօրինեցար յար‑գանդի կուսին բանդ աստըւած, ըզմերս վերանորոգել պատկեր։

Մերկացեալ ՚ի ճաշակմանէ նա‑խաստեղծին ըզփառս, միւսանգամ վերըստին շնորհելով, ըզմերս վերանորոգել ՚ի փառս։

Մըկըրտեալ ՚ի յորդանան ՚ի յով‑հաննէ, աստուածային բնութեամբ մարմնովըն զոր ՚ի մէնջն էառ. ըզ‑մեզ լուսաւորելով աստուածա‑յին ծագմամբն։

Ակր Զանբաժանելի ըզբանըն հօր եւ զանըսկիզբըն նորա զորդին, որ ՚ի յորդանան այսօր ըզմեղս մե‑ռոյց եւ զաշխարհս լուսաւորեաց, բարեբանելով միշտ յաւիտեան։

Որ ՚ի հօրէ վըկայեալ որդին, յայտնեալ հոգին իջեալ ձեւանադրէր կարապետն. զի եւ մեք օրհնեսցուք զերրորդութիւն միաձնական. բարե։

Որ ՚ի հրեշտակաց օրհնաբանեալ աստըւած, ՚ի հոսանսըն յորդանա‑նու տեսեալ յովհաննէս ասէր. ահա գառն աստուծոյ որ վըկայի ՚ի սուրբ հոգւոյն. զոր օրհնեսցուք միշտ յաւէտ։

Ճչ Աներկիզըն աստուած բանդ որ ՚ի հօրէ առաքեցար, ընդ ժամանա‑կաւ լինիլ հաճեցար եւ մարմնա‑ցար ՚ի սուրբ կուսէն վասըն մե‑րոյ փըրկութեան. այսօր մըկըր‑տիլ ՚ի յորդանան ՚ի յովհաննէ, բառնալով ըզյանցանս առաջին նախաստեղծ մարդոյն։

Անեղանելիդ աստուած բանդ ան‑մեկնելիդ ՚ի հօրէ, ընդ ժամանա‑կաւ լինիլ հաճեցար եւ մարմնա‑ցար ՚ի սուրբ կուսէն, աստուած եւ մարդ յայտնեալ. այսօր մը‑կըրտիլ ՚ի յորդա։

Զորեքկերպեան կենդանեացն ըզ‑խորհուրդ քարոզեաց առորդին, տեսանելով սուրբ զհոգին աղաւ‑նակերպ իջմամբ ՚ի վերայ ջուրցն, աղաղակէր ասելով. ահա գառն աստուծոյ որ ՚ի հօրէ վըկայեցաւ, դա է որդի իմ սիրելի, ընդ որում եւ հաճեցայ։



# ԿԱՆՈՆ

## ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋԻՆ

օրհ ՄԱՐՄՆԱՑԵԱԼԴ ՚ի կուսէն
ած նախայաւիտենական բանդ, այ-
սօր ՚ի տաճարն եկիր կատարել զօ-
րէնս վասն փրկութեան հեթա-
նոսաց։

Որ յանարուեստ աթոռ նստիս
բարեբանեալդ ՚ի հրեշտակաց. այ-
սօր ՚ի սիմէոնի բառնալով ՚ի գիրկս.
որ ընծայեցեալ ըզմեզ ՚ի կեանսըդ
յաւիտենից։

Որ արձակիչդ ես կապելոց պարգե-
ւատու ամենեցուն. այսօր հայց-
մամբ ծերունւոյն արձակեա եւ զիս
ըզբանդամեալս ՚ի կապանաց մահու
՚ի կեանսըդ յաւիտենից։

գձ Այսօր անըսկըզբնական ծը-
նունդ հայրական ծոցոյ բանն եկա-
ւորեալ ՚ի տաճարն, ընծայէ զարա-
րածըս հօր ՚ի յերկինս։

Այսօր բարձեալ եղեւ ՚ի գիրկըս
ծերունւոյն, որ բառնիւ զարարածըս
բարձեալ ունի, օրհնաբանեսցուք։

Այսօր եւ մեք հաւատացեալքս
ընդ ծերունւոյն սիմէոնի, ըզբան
համագոյ հօր եւ սուրբ հոգւոյն
օրհնա։

Այսօր ՚ի տաճարն եկեալ կե-
նարարն, եւ ՚ի գիրկսըն սիմէոնի
գրկուեցաւ. զոր խնդութեամբ
ընկալաւ երուսաղէմ։

Լոյս ՚ի լուսոյ ՚ի հօրէ առաքե- ղր
ցար եւ մարմնացար ՚ի սուրբ կու-
սէն, զի զմերըստին նորոգեսցես զա-
պականեալըն ադամ։

Դու աստուած ՚ի յերկրի երեւե-
ցար եւ ընդ մարդկան շըրջեցար,
եւ փրկեցեր ըզտիեզերըս յանէ-
ծիցն ադամայ։

Քեզ ՚ի յերկնից վըկայեալ հօր քո
ձայն. սա է իմ որդի. եւ սուրբ
հոգին ըզքեզ յայտնեաց աղաւնա-
կերպ երեւմամբ։

Որ ունիս իշխանութիւն մահու փառ
եւ կենաց քրիստոս թագաւոր փա-
ռաց. ողորմեա մեզ աստուած։

Տօնելով ըզյիշատակ կուսի աս-
տուածորդւոյ մօր հըրճուին հրեշ-
տակք ՚ի յերկինս, եւ ցնծան
դասք առաքելոց եւ մարգարէից
ընդ կուսական տօնս. ողոր։

Քեզ միայնոյ մօր եւ կուսի, մաղ-
թեմք հայցելով ՚ի քէն. բարե-
խօսեա անդադար առ որդիդ քո
եւ աստուած մեր, փրկել ըզմեզ
՚ի փորձութենէ եւ յամենայն
վըտանգից մերոց։

Զգալուստ քո քրիստոս այսօր ծաղ
յերուսաղէմ նոր եկեղեցի սուրբ,
յաղթական երգով բարեբանեմք.
օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

Որ վասն մերոյ փրկութեան
յաւանակի նստեր յանձն առեր,
ընդ մանկունսըն բարեբանեմք.
օրհ։

Թագաւոր երկնաւոր զեկեղեցի
քո անշարժ պահեա, եւ զերկըր-

պանծուս անուանըդ քում պանծեա
'ի խաղաղութեան։

Չող. Լուսաւորեա երուսաղէմ պար-
դարեաւ զամուրըս քո. քանզի մեր-
ձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր.
փրկութիւն քեզ շնորհելով պըսա-
կեաց սքանչելի փառօքն իւրովք։

Այսօր ծագեաց քեզ գըշխոյ դուս-
տըր սիոնի արդարութեան արե-
գակըն քրիստոս. եւ սրբեցան
ըզքեւ շնորհօք սուրբ հոգւոյն
մեծապէս պարգեւօք։

Այսօր ցընծայ սուրբ սիոն մայր
եկեղեցի. փայլեցո զմանկունըս քո
որպէս զարեգակըն. զի անճառ
խընդութեամբ լըցոյց ըզքեզ քրիս-
տոս թագաւորն։

աճ Անարատ կոյս աստուածածին
մարիամ, սրբուհի եւ մայր քրիս-
տոսի, յարգանդի տարար զանտա-
նելին ամենեցուն. օրհնութեամբ
ըզքեզ աստուածածին մեծացու-
ցանեմք։

Ըզքեզ երկնային դուռըն զոր ե-
տեսն եզեկիէլ, եւ այրըն զոր ծա-
նեաւ գեդէոն. սերովբէ հողեղէն
վեհագոյն քերովբէից. օրհ։

Երկս խորհուրդըս սակայն 'ի
քեզ տեսանի աստուածածին.
յղութիւն անսերմնական, ծը-
նունդ անապական, կուսութիւն յետ
ծննդեան մնալով անարատական. օրհ։

Հող Կենդանարար աստուածամար-
դանէր հոգի, ըզժողովեալըն միա-
բանական սիրով լուսաւորեցեր
հրեղինօք լեզուօք. վասն որոյ եւ
մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո
սուրբ։

Զուարճացան քո գալըստեամբըն
սուրբ առաքեալքըն. կոչելով 'ի մի-
ասին ըզցրուեալսն 'ի միմեանց
բազմաձայն լեզուօք. վասն որոյ
եւ մեք։

Հոգեւորական սուրբ մըկրտու-
թեամբ զարդարեցեր նորօք ըզտի-
եզերս 'ի ըզգեստըս լուսափայլս
եւ նորափետուրս. վասն որոյ եւ։

Հաճ Բազմերամք վեհագունիցըն
հոյլքըն յոգնախումբս եղանա-
կեին. երգս առեալ մատուցանեն
զերամբըշտականաց զերանաւէտ
հոգեղէն հըռչմունս, քեզ
Էմմանուէլ որ ծընար տըղայաբար
եւ վերածեր զազգըս մարդկան
հօր յորդէգրութիւն. աղաչանօք
հայցեմք 'ի քէն ըզնընջեցեալըն
մեր ընդ սուրբըս քո հանգո։

Գեղգեղեալ զոլեն ըզքեզ գերա-
պայծառ գունդք հոգեղինացն,
հեզաբար թեւապարեալ պարու-
նակեալ ծածկեն ըզդէմս յահէ
փառաց քոց. քեր։

Զնոյն եւ մեք երգեմըք քեզ բա-
բունական ձայնիւ զերգս հո-
գեւորս. առ բերելով քեզ պատա-
րագ ոսկի կընդրուկ զըմուռս
եւ զհալուէս. քեր։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր երկիրս երկինք անուանե-
ցաւ, զի տէրըն տերանց իջեալ
յերկնից 'ի յերկիր, եւ ընծայիւ
յանձն առնու 'ի գործոց ձեռաց
իւրոց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Այսօր հեթանոսաց լոյս ծագե-
ցաւ քրիստոս աստուած. և փառք
իւրոյ ժողովրդեանն իսրայէլի։

Չորրորդ ձայն քաղուածուն կատարեցաւ։

Սոա զկերպ ձայնն եւս եղաւ քաղուածովն հանդերձ. զորն եւ կամիս՝ զայն ասա։

օրհ. դկ Այսօր 'ի տաճարն եկիր փրկիչ. եւ ծերունոյն 'ի գիրկս ընկալեալ ասէր. արդ արձակես զծառայս քո տէր։

Այսօր աշխարհի ցուցար լոյս, եւ փրկութիւն տիեզերաց քրիստոս աստուած. որ մարդացար եւ կեցո զմեզ։

Այսօր իմանալի արեգակն, որ ծագեցար տիեզերաց քրիստոս աստուած. որ մար։

✻ Ի սկզբանէ բանն աստուած մարմնացաւ 'ի կուսէն. այսօր գրգուեցաւ 'ի տաճարին։

ծնն Այսօր ցնծան երկինք 'ի վերուստ մեծապայծառ աւետեօք. եւ արարածք ամենայն զգեցան հանդերձ փրկութեան։

Այսօր յայրին ծնեալ քրիստոս որդին աստուծոյ. եւ հրեղինաց բազմութիւնքն յերկնից յերկիր վայր իջեալ։

Այսօր հովուացն տեսեալ զարդարութեան արեգակն. եւ ընդ հրեշտակս երգէին փառք 'ի բարձունս աստուծոյ։

ծնն Քրիստոս ծնեալ այսօր 'ի բեթղեհէմ 'ի յայրին. եւ դասք վերին զուարթնոցն սոսկացեալ զարմացեալ կային. զի տեսին մարմնով ծնեալ զբանն աստուած։

Նոր սքանչելիք եղեն այսօր 'ի բեթղեհէմ 'ի յայրին. կոյսն ծնանիլ աստուած եւ մարդ. անապական մնալով կուսական որովայնին. զի տէ։

Աստղն գուշակէր մոգուցն առ 'ի բերել զընծայս աստուածութեանն. եւ հովիւքն ընդ հրեշտակս երգէին ասելով. փառք 'ի բարձունս աստուծոյ որ առաքեաց 'ի փրկութիւն մեզ զբանն աստուած։

Ի հօրէ ծագեցար լուսաւորել զարարածս. արդարութեան արեգակն տէր փառք քեզ։ ծնն

Ծնար 'ի յայրին ընծայեցաւ բեթղեհէմ. ար։

Հովուաց յայտնեցար երկրպագեալ 'ի մոգուց. ար։

Եւ մեք երգեսցուք որ 'ի կուսէն մարմնացար. ար։

Որ էրն 'ի սկզբանէ առ աստուած եւ աստուած բանն. կերպարան առեալ եւ համագոյ սուրբ հոգւոյն. 'ի վերջին աւուրս ծանուցեալ մարմնական յանձն առնու 'ի կուսական արգանդէ, վասն փրկութեան ազգի մարդկան։ ծնն

Յառաջ քան զյաւիտեանս որդի նախայաւիտեան. այսօր յերկրի երեւեալ աստուած եւ մարդ կատարեալ, խանձարրօք պատի, եղանի եւ դնի յանբանից մսուր, վասն փրկութեան ազգի մարդ։

Ի բեթղեհէմ հրէաստանի երեւի արդարութեան արեգակն. այսօր երկրպագի աներղն յարեւելից եկեալ մոգուցն. եւ փառաբանի յերջանիկ 'ի բացօթեայ հովուաց, վասն փրկութեան ազգի մարդ։

Որ 'ի հրեղէն աթոռ ընդ հօր ես բնակեալ, եւ 'ի հրեշտակաց սպասաւորեալ. այսօր կամաւ հօր 'ի յերկրի երեւեցար մարմնով կուսական ծնընդեամբ. զքեզ ընդ զօրս անմարմնոցն անդադար օրհնաբանեմք։ ծնն

Յորժամ զարհուրեալ դողան սրովբէագունդ ջոկք անմարմնոցն. Թեւաքօղելով ծածկեն զերեսս իւրեանց. այսօր տղայաբար 'ի կուսական 'ի ստեանցն կերակրեցար մարդասիրապէս. զքեզ ։

Որ յանպատում փառաց խոնարհեցար յերկիր. ախտակիր եղեր հողեղէն բնութեանս. այսօր ըզմեղուցեալ ըզնախահայրըն կենագործեցեր 'ի կեանսըդ յաւիտենից մարդասիրապէս. զքեզ ։

ձնն Ի քեզ եմք ապաւինեալ քրիստոսի մայր աստուծոյ մերոյ ։

Որ քան զերկինս բարձրագոյն մարիամ, պարծանք եկեղեցւոյ. քրիստոսի մայր ամ ։

Որ քան զարեգակըն պայծառագոյն մարիամ, մի դադարիր բարեխօսել վասըն մեր, քրիստոսի մայր ։

ձնն Միայնոյ քեզ 'ի կանանց կոյս յետ ծընընդեան երգեմք զօրհնութիւն. զի լոյս 'ի լուսոյ քեւ յայտնեցաւ աշխարհի, եւ զնախամօրն եբարձ զանէծս. անճառ ծընընդեամբըն 'ի քէն ։

Քեզ միայնոյ մարմնացելոյդ 'ի սուրբ կուսէն օրհնութիւն 'ի բարձունս վերերգեմք ասելով. փառըք քեզ քրիստոս, որ եկիր կամաւ հօր կեցուցանել ըզմեզ ։

Յաւուր վրիժուց հատուցման ամբարըշտաց վերածիցես ըզմեզ ընդ հոգեղինաց դասն 'ի տեղի անկելոց հրեշտակաց, բարեխօսութեամբ սըրբուհւոյ աստուածածնին ։

հոգ Հոգիք հրեղինացն այսօր տօնեն ընդ մեզ ըզգալուստ հոգւոյն աստուծոյ ։

Տեսանողն յառաջ նըշանակէր զառատաբուղխ վըտակ իմաստից 'ի մեզ հեղեալ 'ի հոգւոյն ։

Վէմըն հաւատոյ զմայլեալ անմահական բաժակաւն այսօր բաշխէր ծարաւեաց ։

Գետոցս այս գնացիւք ցընծայ քաղաքն աստուծոյ սիոն մայր եկեղեցի ։

Վասն որոյ եւ մեք երրեակ եւ մի աստուածութեանն երգեմք ըզփառս 'ի բարձունս ։

Թագաւոր փառաց քրիստոս անմահութեանց բաշխող. 'ի փառաւորեալ գալըստեանըն քո արժանաւորեա ըզննջեցեալսըն մեր դասակից լինել սըրբոց քոց մարդասիրապէս. որ ես միշտ 'ի յաթոռ փառաց ։ հան

Զորս հաւասարեցեր ընդ սուրբըս քո, հաղորդիլ մարմնոյ եւ արեան քո տէր. այսօր ընկալեալ հանգո զհոգիս նոցա, կենագործելով 'ի կեանսըդ յաւիտենից մար ։

Յորժամ առնես զհատուցումըն տէր, եւ սուրբըք քո պարծեսցին 'ի քեզ. յայնժամ խնայեա 'ի դաւանողըս քո, դասաւորելով յաջակողմեան դասուն մար ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ ։**

Խայտայր ալեօքըն ծերունին աստուածորդւոյն 'ի գիրկս իւր, եւ օրհնէր զաստուածն ասելով ։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ։**

Արդ արձակես ըզծառայս քո տէր ըստ բանի քում 'ի խաղաղութիւն. զի տեսին աչք իմ ըզփըրկողդ աստուած ։

Օրհնեմք ըզքեզ որ առաքեցար հրց
'ի հօրէ, անճառելի բանդ աստուած. յանձն առեր մարմնանալ դձ

'ի սրբոց կուսէն. աստուած հար-
ցըն մերոց։

Այսօր եկիր 'ի տաճարն անհասա-
նելի փրկիչ, եւ 'ի գիրկսն սիմէ-
օնի գրգուեցար. աստուած։

Ուսուի եւ սիմէօն հոգեւոր հրճւ-
մամբըն աղաղակէր. արդ արձակես
ըզծառայս քո տէր ըստ բանի քում
'ի խաղաղութիւն. աստուած։

գ Ըզտէր օրհնեցէք, եւ բարձր
արարէք ըզնա յաւիտեան։

Օրհնեցէք. Զծընեալն յամենա-
սուրբ յորովայնէ յաննարատ 'ի
կուսէն օրհ։

Օրհնեսցէ. Զեկեալըն այսօր 'ի
տաճարն, զընկալեալն 'ի գիրկսըն
սիմէօնի օրհ։

ժծ Այժմու քրովբէական երեւեալ
այսօր սիմէօն. զաստուածորդին
'ի գիրկս իւր բարձեալ մարմնով,
զոր զօրք երկնից 'ի բարձունս հա-
նապազ մեծացուցանեն։

Հոգւովըն գոչէր, ցընծայր անեծ-
քըն ծերութիւն ասելով, սա է թա-
գաւորն անմահ, զոր։

Արտասուելով աղերսէր, արձա-
կեալ զիս 'ի խաղաղութիւն անա-
րատ ծընողին քո բարեխօսութեամբ,
զոր։

ողր Որոյ առեալ հրաման 'ի սուրբ
հոգւոյն ոչ տեսանել ըզմահ մին-
չեւ տեսցէ զօծեալդ, տէր աղօ-
թիւք ծերոյն ողորմեա։

Որոյ ընկալեալ 'ի գիրկս իւր զօ-
ծեալդ, եւ հայցէր 'ի կենացդ ըզ-
մահ, եւ արձակիլ 'ի խաղաղու-
թիւն. տէր աղօ։

Ցորոյ այսօր 'ի գիրկսըն գրգուեցար,
եւ կատարեցեր ըզփափագումն ըն-
ծայելոյ քո 'ի տաճարին. տէր աղօ։

Զոր փառաբանեն 'ի բարձունս տէր
իմանալի զօրութիւնքն, այսօր 'ի
տաճարն եկիր յընծայումն քրիս-
տոս, որ ընծայես զարարածս բար-
ձրելոյ քում հօր։

Ի գիրկըս մարմնով բարձեալ ե-
ղէր 'ի ծերունւոյն, որ բանիւ զա-
րարածըս բարձեալ ունիս քրիստոս,
որ վասըն մեր մարմնացար 'ի սըր-
բոյ կուսէն։

Վասն որոյ եւ մեք ընդ սիմէօնի
գոչեսցուք, որ 'ի հօրէ լուսոյ
լոյս ծագեցար մեզ եւ կեանք.
փառք գալըստեան քում տէր։

Անսկիզբըն բանըն յանըս- ծչ
կըզբնական 'ի հօրէ. եւ սկըզբնա- դկ
ւորեալ 'ի կուսէն մարմնոյ զգեց-
մամբ, բովանդակելով յորովայնի
եւ ընդ հօր գոլով, եւ սահմանեալ
ժամանակաւ ծնեալ լինի աս-
տուած եւ մարդ։

Մըտեալ ընդ օրինօք անհիւթա-
կանըն հողանիւթ գոլով. զի զհո-
ղածնեալքս հօրն ընծայեսցէ աս-
տուածորդին որ 'ի ծոց հօր. տղայ
քառասնօրեայ բանին 'ի գիրկըս ծե-
րունւոյն. եւ յայտնապէս ծանու-
ցանի աս։

Վասն որոյ եւ սիմէօն ցընծայր
հոգւովն, աղաղակէր 'ի տաճարին,
արդ արձակես ըզծառայս քո տէր
ըստ բանի քում 'ի խաղաղութիւն.
զի ընդհանուր տեսի ըզփըրկողդ
ասոյ։



# ԿԱՆՈՆ

## ԱՆՏՕՆԻ ԱՆԱՊԱՏԱԿԱՆԻՆ

օրհ / առձ — Որ գերազանցեալ գտար առաւել քան ըզբնութիւն մարդկան երանելդ 'ի հայրս սուրբ անտոն. առ Քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց։

Որ անձանձանկ լինելով ըզբազմաժամանակեայ աւուրբք, յօժարութեամբ բարձեր ըզկարիս մարմնոյ. առ Քրիստոս։

Անմռունչ յիշմամբ առաջի Քրիստոսի, օգնական լեր տօնողացս ըզյիշատակս քո. զի եւ ըզմերս ընկալցի զօրհնաբանութիւն։

Որ 'ի հանդէս քո ճգնութեան երկնային զզուարթունքն նայեցեալ զարմանային. 'ի մարմնի տեսանելով զանմարմին իւրեանց ըզվարս. ով սուրբ հայր անտոն, բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց։

բվ — Կարապետ արքայութեանն երկնից սուրբ յովհաննէս մկրտիչ, որ եղեւ աշխարհի քարոզ փրկութեան յաւիտենից. աղօթիւք սորա տէր լուր մեզ եւ ողորմեա։

Որ առաւել քան ըզմարգարէս մեծ 'ի ծնունդս կանանց. որ ըզքեզ մեզ յայտնեաց աստուած եւ մարդ յերկրի երեւեալ. աղօ։

Ձայն բարբառոյ յանապատի եւ կատարիչ խորհրդոյ, գլխատեալ այսօր 'ի հերովդիայ վերափոխեցաւ 'ի դասս անմարմնոց. աղօ։

առ — Որք 'ի սկզբանէ պատուեալ էին 'ի սէր բոլորից հօր, առաքելական կոչմամբ ըզտիեզերս հրաւիրեցին յուսով հաւատալ մասին. վարդապետութեամբ սոցա ամենեքեան օրհնեսցուք ըզտէր։

Որք ականատեսք եւ սպասաւորք եղեն մարմնացելոյ բանին, գեր 'ի վերոյ անմարմնոց դասուցն հանդիպելով շնորհի. վարդա։

Որոց դատողական աթոռ անհեղ ատենին հանդերձեալ մնայ, կատարել 'ի մեզ դատաստան ըստ գրեալոյն. առ սոսա անկցուք զղջացեալ անձամբ պաղատելով, հաշտեցուցանել սոքօք ընդ մեզ զահաւոր զդատաւորն։

Երգս առեալ մարգարէիցն հրաշալի ձայնիւ անդադար օրհնաբանեն ըզմարմնացեալն 'ի սուրբ կուսէն, որ երեւեցաւ մեզ 'ի փրկութիւն։ — մար

Զնեղութիւն եւ զչարչարանս յանձն առին կամաւորապէս, ժուժկալեալ համբերեցին վասն անուանն տեառն, որ։

Աներկիւղ քարոզեցին յաշխարհի ըզճշմարիտ մարդեղութիւն մարմնացելոյն 'ի սուրբ կուսէն, որ։

Առաքինասէր վարուք հաճոյացան սուրբ վկայքն, եւ ընտրեցան կամաւոր մահուամբն իւրեանց, եւ հրաւիրեցան 'ի կոչումն արքայութեանն երկնից։ — մար

Որք մատնեցին զանձինս իւրեանց 'ի փորձ սրոյ եւ հրոյ. եւ հեղմամբ արեանն իւրեանց եղեն վկայք Քրիստոսի. եւ հրա։

Աղօթիւք սոցա եւ բարեխօսութեամբ, պարգեւեա մեզ Քրիստոս մասն և բաժին ընդ հրաւիրեալսն 'ի կոչումն ար։

հոգ Ո՛ր յաւէնային ես անստուածութիւն, և՛ ՚ի ձայն հընչման իջեր յերկնից սուրբ հոգի. ողորմեա մեզ:

Ո՛ր զամենայն լընուս զօրութեամբ քո, և՛ ՚ի դասս առաքելոցն իջեր բընակիլ սուրբ հոգի. ողոր:

Ո՛ր անբաժանելի ես յաստուածութեան, և՛ ՚ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն սուրբ հոգի. ողոր:

հան Զայն արկեալ կենարարին աստուածային բարբառոյն, սակս եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն ՚ի հանդերձեալ երկրին:

Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ՚ի յօդըս վերինս, աստուածազգեաց լուսով պայծառացեալ ՚ի դասս անմարմնոցն. ՚ի լսել ըզձայն երանաւէտ կոչմանն:

Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանսն, ՚ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ՚ի դասս անմարմնոցն, ՚ի ժողովս անդրանկաց գրելոց ՚ի յերկինս:

ած Ո՛ր զաւետիս հոգւոյն ՚ի հրեղէն ՚ի հրեշտակէն ընկալար, ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ մարիամ անհարսնացեալ:

Անսկիզբըն բանըն հաճեցաւ առնուլ մարդեղութեամբն ըսկիզբըն ՚ի կուսէդ, քրիստոս աստուած թագաւորն յաւիտենից:

Աղաչեմք ըզքեզ սուրբ աստուածածին, առ քրիստոս բարեխօսեա փրկել ըզժողովուրդս իւր, զոր գնեաց արեամբն իւրով:

խաչ Ի խորանի քում սրբութեան զոր ընտրեցեր գալըստեամբըդ քո քրիստոս, ՚ի սմա միաձայնեալ աղաչեմք ըզքեզ. լուր ձայնի աղաչանաց մերոց ընկալ եւ կեցո ըզմեզ:

Աստուածային լուսով քո պայծառ քան զարեգակըն լուսաւորեցեր զքո սուրբ զեկեղեցի. ՚ի սմա:

Այսօր եւ հրեշտակք՝ ուրախանան ընդ պայծառութիւն քո սուրբ եկեղեցւոյ. ՚ի սմա:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Որ գերագոյն քան ըզբնութիւն հողեղինաց ժուժկալեալ զանազան տանջանաց համբերելով յաներեւոյթ թըշնամւոյն. ով սուրբ հայր անտոն, բարեխօսեա առ քրիստոս վասն անձանց մերոց:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Ուստի եւ մեք տօնելով ըզձըգնութեան քո սուրբ զյիշատակս, որ եղեր նախընթաց բարեաց կենաց ճանապարհին, փոխեցար յերկրայնոցս յանմահից դասակցութիւնս. ով սուրբ հայր:

Նախասկիզբըն միանձանց երանելի սուրբ հայր անտոնիոս, վերնական յուսոյն ակն ունելով զերկրաւորս արհամարհեաց. եւ զկնուորեցաւ քեզ քրիստոս աստուած հարցն մերոց: հրց աձ

Մենամարտեալ ընդդէմ չարին բազմահնար վիշապին, ժուժկալեալ համբերեաց ազգի ազգի վըշտաց քարավէժ կոչկոճման. եւ զկն:

Յանապատի բնակելով աղօթանըւէր թեւօքըն հալածեաց ըզբազմութիւն լեգէոն զօրացն. եւ քաջալերեալ յորդորեաց զմիանձունս ամենայն. եւ զկն:

Ըզտէր օրհնեցէք. Փառաբանիչք աստուծոյ յիշատակի սորա բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Ի փապարս լերանց բնակելով խարազնազգեաց ճգնութեամբ, 'ի յայրս եւ 'ի ծերպս քարանձաւաց. փառաւք։

Համանմանեալ մեծին եղիայի եւ յովհաննու մկրտչի, վերաթեւեալ ընդ սուրբ քրիստոսի. փառաւ։

մեծ

Որ ըզբանն աստուած բանական եղեր ընդունիլ յորովայնի միշտ կոյս. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես 'ի կանայս։

Որ էիր լուսոյն արժանի եղեր բառնալոյ 'ի գիրկս քո մարմնով. զքեզ մե։

Անարատ տաճար երրորդութեան կոչեցար հոգւոյն սրբոյ միշտ կոյս. զքեզ մե։

ողբ

Որ անմարմնական վարուք պայծառացեալ 'ի մարմնի զօրացեալ տերամբ ով սուրբ հայր անտոնիոս. եղեր օրինակ բազմաց. եղեր դուռըն մտից կենաց ճանապարհին. յիշեսջիր ըզմեզ առաջի քրիստոսի, քո սուրբ եւ արժանընդունակ աղօթիւք։

Որ առեր ըզլոյս խոնարհութեան համբերող խըստամբերութեամբ. եւ պարանկցեալ օրհնութեամբ ընդ հրեշտակս, եւ խաչակրօն անդադար սաղմոսերգութեամբ. յիշես։

Վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզհանգըստեան օր յիշատակի քո. անմոռաց յիշմամբ հայցեսցես 'ի քրիստոսէ ըզմեծ ողորմութիւն. քո սուրբ եւ։

տէր

Որ շնորհօք սուրբ հոգւոյն բարձեր ըզխաչըն փրկչական յորդէգրութեան շնորհս, ով սուրբ հայր անտոնիոս. արժանաւոր երկնային կոչմանն 'ի հրեշտակական դասակցութիւնսն. օրհնեմըք միշտ սուրբ զերրորդութիւնն։

Այսօր եւ մանկունքս սուրբ եկեղեցւոյ տօնեն ըզխաչակրօն քո սուրբ զյիշատակս, ով սուրբ հայր ճգնաւորաց. զի ընկալցին զանապական պարգեւս 'ի քրիստոսէ յաստուծոյ մերոյ. օրհ։

Զամենապարգեւս վերընկալեալ ըզփառս յաջակողմեանըն քրիստոսի ընդ իմաստուն կուսանսն, հայցեսցես 'ի քրիստոսէ ըզթողութիւն մեղուցելոցս, 'ի լսել ըզձայնն եթէ եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք ըզկեանսըն յաւիտենից։

Ձկ
բձ

Պարծանք եկեղեցւոյ եւ ուրախութիւն հրեշտակաց, ով սուրբ հայր անտոն, զաղաչանս մեր հանապազ մատո սուրբ երրորդութեանն։

Որ 'ի մարմնի կռուեցեալ եւ զանմարմինսըն բերելով 'ի քեզ ըզվայրս. ով։

Բաժակ հոգեւորական լցեալ աստուածային ուրախութեամբ. ով։



## ԿԱՆՈՆ

### ԹԷՈԴՈՍԻ ԹԱԳԱՒՈՐԻ

օրհ
ակ

Որ երկնաւոր թագաւորութեանդ քո զօրինակ ցուցեր 'ի յերկրի, հաստատելով զաթոռ թագաւորութեան թէոդոսի թագաւորի յարդարութիւն եւ յիրաւունս. բարեպաշտութեամբ սորա՝ քրիստոս խընայեա 'ի մեզ։

Որ զօրութեամբ նըշանի խաչի քո տէր պատերազմելով խորտակեաց

զընդդիմամարտ բըռնութիւն հե-
թանոսաց եւ հաստատեաց խաղա-
ղութեամբ սուրբ զեկեղեցի. բա։
Որ ետուր զիրաւունս արդարու-
թեան քո արքայի, դատելով ըզժո-
ղովուրդս քո արդարութեամբ ըստ
հրամանի սրբոց քոց պատուիրա-
նաց. բարե։
✠ Որ զարդարեալ գեղապանծ վա-
յելչութեամբ սուրբ զեկեղեցի, պը-
սակեցեր առաքելովք եւ մարգա-
րէիւք, եւ հաստատեալ ամրացու-
ցեր սուրբ թագաւորօք. բարե։
յղ Թագաւորըն բոլորից պարածած-
կեալ յարդանդի կուսին. զոր ծա-
ռայդ հաւատարիմ տեսեալ հոգ-
ւովըն սրբով. եւ բերանով մօր քո
օրհնաբանէիր. առ քրիստոս բարե-
խօսեա վասն անձանց մերոց։
Ժառանգաւոր հին օրինացն ար-
դարութեան ընդ մարգարէիցն. եւ
նախաշաւիղ հետեւողաց անձուկ
ճանապարհին նոր օրինացս ընդ ա-
ռաքելոցն. առ քրիստոս։
Ի յանապատի հրեշտակական վա-
րուք բնակեցար ըստ եղիայի. կե-
րակրելով մարախ եւ մեղր վայրե-
նի. հին եւ նոր պատուիրանաց
օրինակաւ. առ քրիստոս։
առ Ի մաքրագործ հոգւոյն անօթ
ընտրեալ եւ ձիւնափայլ. թագա-
ւորք երկրի իշխանք աշխարհի. ան-
պակաս գանձուց բաշխող յակոբ
ալփեան յուդա յակոբեան. բարե-
խօս լերուք առ տէր վասն անձանց
մերոց։
Երեքսրբեան մի տէրութեան
խորհուրդ կամաց եւ հազարա-
պետք. փողոց հընչմունք բար-
բառք աւետեաց ընդ ամենայն եր-
կիր սուրբըդ շմաւոն եւ մատա-
թիա. բարե։
Բանին կենաց կանուխ քարոզ եւ
աւետարանիչ. երգ փրկութեան
հընչումն ահաւոր. ազգի մարդկան
պարծանք սուրբըդ մատթէոս. բա-
րեխօս լեր առ քրիստոս վա։
Թագաւորին երկնաւորի սուրբ սր
զօրապետ եւ մենամարտիկ. սիրով
անմահին խաչեալ յաշխարհի, ե-
րանգահօս սուրբըդ սարգիս խա-
չիւ պըսակեալ. բարեխօս լեր առ
քրիստոս վասն անձանց մերոց։
Արեգականն արդարութեան մեծ
կարապետ պայծառ արուսեակ, ցո-
լացեալ յարեւմըտից ՚ի յելս արե-
ւու, երանգահօս սուրբըդ սարգիս
անշէջ ճառագայթ. բարե։
Աւետաւոր հայոց մեծաց դիմեալ
՚ի մէջ երկրի ՚ի հիւսիսոյ. հողմըն
հարաւոյ ՚ի դաշտ ծաղկածին, ե-
րանգահօս սուրբըդ սարգիս տունկ
անմահութեան. բարեխօս լեր առ
քրիստոս վասն։
Ի տաճարի հանգըստեան սրբոց մր
վըկայից զաղաչանըս մեր մի անտես
առներ որ կարդամք առ քեզ տէր.
սոցա բարեխօսութեամբ կեցո ըզ-
մեզ։
Որք վասն անուանըդ քո հեղին
ըզպատուական սուրբ զարիւնս իւ-
րեանց. արիաբար մարտեան ընդ-
դէմ թըշնամւոյն եւ զօրացան ՚ի
պատերազմի. սոցա բա։
Պարծեսցին սուրբքդ քո տէր ՚ի
հանգիստ իւրեանց, որք տանջա-
նաց անօրինացըն համբերեցին, եւ
անապական պըսակացն արժանի ե-
ղեն. սոցա բարեխօսութեամբ կեցո
ըզմեզ։

հոգ Որ յերկնային զօրս անմարմնոցըն նախ հեղեր առատապէս հոգիդ ճըշմարիտ. զաստուածային եւ զգերագոյն քո իմաստութիւնըդ. լինել փառաբանիչ սուրբ երրորդութեանդ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ:

Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ երրորդութեանդ խորհրդակցութեամբ. զպարգեւեցեր փըչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ 'ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ:

Որ յերկրորդն լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մտեալ 'ի վերնատունն դրօքըն փակելովք. շնորհելով ըստ առաջին փըչմանն ըզքեզ մետասանից. առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նոսին փառս:

հան Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբըս քո:

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին 'ի յարեւելից. եւ դըպրութիւնըք հրաշէիցըն բանին. յայնմ աւուր ահէ:

Զարհուրեալ դողան արարածք 'ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ:

ած Որ նախնեաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հիմունս հաստատութեան ըզդասս արդարոց. աղաչանօք սոցա խնայեա 'ի մեզ:

Որ զօրհնութիւն նախաստեղծիցն աստուածազգեաց արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր. այսօր 'ի յովակիմ եւ 'ի յաննա. աղա:

Որ ըզխոստումն աբրահամու նահապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական եւ թագաւորական գաւազանացըն միացեալ ցուցեր այսօր 'ի յաննայէ. աղա:

Ի վերայ վիմի հաւատոյ հիման առաքելոց եւ մարգարէից. շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի. եւ 'ի սմա միաձայնեալ եղեն մարդիկ ընդ հրեշտակս. փառաւորելով սուրբ զերրորդութիւնդ: խաչ

Տեղի ապաւինի եւ ժողովարան բանաւոր հօտի. բնակարան հրեշտակաց. նաւահանգիստ արդարոց եւ մեղաւորաց քաւարան. զարդարեալ առաքելովք եւ մարգարէիւք:

Բանն աստուած եւ ծածկեալ խորհուրդըն յաւիտենից. իջեալ 'ի յերկնից մարմնացեալ 'ի կուսէն խաչեալ յերկրի և թաղեալ 'ի նոր 'ի գերեզմանի. եւ յարուցեալ յերրորդ աւուր. զի զմարգարէիցն ըզտառսըն կատարեսցէ:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Որք զինու զօրութեամբ հոգւոյն վառեալք 'ի պատերազմի, վանեցին ըզմոլութիւն հերձուածողաց, եւ 'ի հաւատըս ճըշմարիտս հաստատեցին ըզտիեզերս. բարեպաշտութեամբ սոցա քրիստոս խնայեա 'ի մեզ:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Որ շնորհեցեր յաշխարհի թագաւորել մեծին թէոդոսի. եւ կատարեալ ըզկեանս հաւատով ուղղա-

փառութեան, վերափոխեցեր այ-
սօր յերկնից Թագաւորութիւնդ.
բարեպաշտութեամբ սորա քրիս-
տոս խընայեա 'ի մեզ ։

հրց Օրհնեմք զքեզ քրիստոս Թա-
ած գաւոր, որ յաղթող խաչիւ քո պը-
սակես ըզսուրբս քո սքանչելի փա-
ռօք քո. աստուած հարցն մերոց ։

Այսօր ցնծան զուարթունք եր-
կնից ընդ ճըգնութիւն Թագաւո-
րին. քանզի երգէ բարեպաշտու-
թեամբ Թէոդոս մեծ Թագաւորն
ընդ վեցթեւեանն զօրս երկնից աս-
տուծոյ հարցն մերոց ։

Եւ նորածնեալ եկեղեցիք հեթա-
նոսաց, ընդ սրբոյն Թէոդոսի բա-
րեպաշտ Թագաւորի երգեսցուք
քեզ երգ նոր. աստուած հար ։

դ Ըզտէր օրհնեցէք. Ընդ սրբոյն
բարձր արարէք զաստուած բանըն
հօր յաւիտեան ։

Որ 'ի յերկրի է պըսակեալ 'ի
հրեշտակաց, եւ 'ի յերկինս բար-
ձրացեալ բարեպաշտութեամբ իւ-
րով. ընդ ։

Որ հաւատով պարտեաց զթըշ-
նամին, եւ աղօթիւք հիմնեցոյց
սուրբ զեկեղեցի. ընդ ։

մեծ Երանելի աստուածասէր սուրբ
դըշխոյն եկեալ 'ի քաղաքն ե-
րուսաղէմ խնդրէր ըզփրկական
ծագումըն մեծի փայլմանն. եւ
քարոզէր նոցա զմորենին վառեալ
որ ոչ այրէր. մեծացուցանելով ըզ-
ծնեալն 'ի կուսէն ։

Եւ խոշտանկեալ զդասըս հրէ-
ից, խոստովանէր յուդա. եկեալ
'ի տեղին գողգոթայ հաւատով.
եւ քարոզէր նոցա զդուռն ընդ
որ եմուտ բանն աստուած. մե ։

Եւ համբարձեալ զձայնըն յու-
դայի խնդրելով 'ի տեառնէ ըզ-
տենչալին ամենեցուն սուրբ ըզ-
խաչն. եւ հաւատով գոչէր ե-
կայք երկրպագեսցուք աստուա-
ծային սուրբ նշանիս. մեծա ։

Թիւնս իմ. Աստուած փրկիչ ողբ
մեր, լուր մեզ որ կարդամք առ բձ
քեզ, բարեխօսութեամբ սուրբ Թա-
գաւորին ։

Որ բարեպաշտութեամբ հիմնե-
ցոյց զեկեղեցի սուրբ, եւ կարգա-
ւորեաց ուղղափառութեամբ ըզքո
ժողովուրդս ։

Արդ անկեալ աղաչեմք ըզքեզ
մարդասէր տէր, յիշատակի սորա
պարգեւեա մեզ զերկնային քո ըզ-
խաղաղութիւնդ ։

Ով երանելի եւ բարեպաշտ տէր
Թէոդոս մեծ Թագաւոր, բարեխօս
լեր վասըն մեր առ Թագաւորն եր-
կնաւոր, Թողուլ մեզ ըզմեղս մեր ։

Որ երկրպագող ես քրիստոսի և
հիմնադիր սուրբ հաւատոյ. բարե ։

Որ Թագաւորաց ես 'ի յերկրի
պարծանք եւ 'ի յերկինս պըսա-
կեալ. բարե ։

Ով երանելիդ ամենեցուն տի- ձկ
եզերական իշխանութեամբ ընկա- բկ
լար 'ի քրիստոսէ ըզԹագ պարծա-
նաց. ով Թէոդոս մեծ Թագաւոր,
վասըն մեր բարեխօսեա առ Թա-
գաւորն երկնաւոր ։

Որ քոյին սուրբ աղօթիւքըդ վանե-
ցեր ըզԹըշնամին, կոխելով ըզսա-
տանայ ընդ երկնայինսըն դասեցար.
ով Թէո ։

Ուստի եւ մեք հաւատացեալքս
տօնեմք զքո յիշատակս, օրհնու-
Թիւն առաքելով ըզքեզ պըսակո-

զՔն. ո՜վ Թէոդոս մեծ Թագաւոր, վասըն մեր բարէ։

Շարական Տրդատայ թագաւորին:

ձկ գձ Որ գերագոյն քան ըզբնութիւնս հրաշագործեցեր որդի աստուծոյ, առ թագաւորըն հայաստանեայց, գաւազանաւ քո բարկութեան զյիմարութիւնն յիմաստս փոխարկեալ. վասն որոյ մանկունք եկեղեցւոյ յիշատակէ սորա օրհնեն ըզքեզ տէր։

Որ համանըման բաբելացւոցըն բռնաւորին 'ի յանբանից փոխեալ կերպարան, յանբանական բըռնութենէն նըւաճելով զարքայն մեծ Տրդատ. վասն որոյ։

Որ 'ի ձեռըն մաքրութեան սըրբոյն Գրիգորի 'ի մարդկային բնութիւն դարձուցեր յանասնականէն 'ի բնութենէն նորաստեղծեալ զարքայն մեծ Տրդատ. վասն որոյ։

## ԿԱՆՈՆ

### ԴԱՒԹԻ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԵՒ ՅԱԿՈԲԱՅ ԱՌԱՔԵԼՈՅՆ

օրհ գձ ՅԱ՛ՂԹՈ՛Ղ գլխաւ յօրհնաբանեալ երանելին Դաւիթ. որ զօրացեալ 'ի վերայ այլազգեացն եւ հաւատով պարտեաց զանօրէնն ըզԳողիաթ. զմարգարէն արասցուք բարեխօս առ տէր վասն անձանց մերոց։

Ո՛վ սուրբ զօրութիւնք բընակիչք երկրի. նմանեցարուք ընդ արդարըն Յակոբ. որ հաճոյ եղեւ աստուծոյ վարուքն իւրովք. ըզնա։

Սա եղեւ գլուխ առաքելոց սրբոց, եւ կոչեցաւ եղբայր տեառն 'ի տանէ Դաւթի. ըզնա։

Որ երջանիկ լուսովըն զուարճանայր մարգարէն Դաւիթ, եւ հոգւովըն վերանայր 'ի կամարըս լուսեղէնս. ըզնա։ ✠

Ամոլք հաւատոյ այսօր փայլին հայր սուրբ 'ի քո սուրբ եկեղեցւոջ. մարդասէր փրկիչ տօնողացս ողորմեա։ աա

Բարեխօսութեամբ պետրոսի եւ պօղոսի քո սուրբ առաքելոցն, մարդասէր փըր։

Լուսաւորեալք 'ի սոցա գլխաւորութենէս փառաւորեմք սուրբ զերրորդութիւնդ. երկրաքանչիւրոցն աղօթիւք տօնս։

Որ 'ի հրեղէն զօրաց երկնից փառաբանիս աստուած, որով զերկնային անապական աստուածային ըզշնորհս հեղեր յորդիս ադամայ. աղաչանօք սոցա ողորմեա մեզ աստուած։ հր

Երեւելով հոգեղինացս անհիւթականքն 'ի ձեւ մարմնոյ, որք եւ ծանուցին մարգարէիցն ըզխորհուրդ քո գալըստեանդ բազմապատիկ տեսլեամբք օրինակելով. աղա։

Անճառելի տնօրէնութեանըդ քո աւետաբերք առաքեցան գաբրիէլ եւ միքայէլ, անմարմնական դասուքն իւրեանց յերկրի սպասաւորելով. աղա։

Որ աւետաւոր քում գալըստեանդ առաքեցեր յաշխարհ ըզսուրբ մարգարէսն. եւ եկեալ խոնարհութեամբ նոր օրինօք զթերին լըցեր 'ի գիրս օրինաց եւ մարգարէից. բարեխօսութեամբ սոցա քրիստոս ողորմեա մեզ։ մար

Ո՛ր կոչեցեր մարգարէիւք յառաջագոյն ըղձեմանս քեզ նոր ժողովուրդ. եւ ըզգուշացուցեր սիրովին զեկեղեցի հեթանոսաց հարսն սրբելի անմահ փեսային. բա՛ :

Ո՛ր ըզփառս տաճարին զոր շինեցեր շինող էիր 'ի վերայ վիմին, բարձրագոյն քան զառաջինն, եւ գերազարդ վայելչութեամբ տեսանողքըն ծանուցին իմաստիւք հոգւոյն. բարեխօսու :

Հայ Ո՛ր ասացեր ողորմութեամբ շինել զաշխարհս 'ի սկզբանէ. ողորմելով որդւոց արանց, եւ տուր յազգէն արշալուսնեաց հովիւ ընտրեալ զուարթուն ներսէս. աղօթիւք սորա ողորմեա մեզ աստուած :

Ո՛ր 'ի ստունգանել թագաւորացն աստուածային քո օրինաց, ըզպատուհաս բարկութեան մերոյ յառաջագոյն ժամանակօք յայտնեալ ցուցեր սրբոյն ներսեսի. աղօ :

Ո՛ր պատուական արեամբըդ քո ազատեցեր զաշխարհս յանիծիցն. փրկեա ըզմեզ 'ի նեղչաց մերոց. եւ ազատեա յանօրինաց բարեխօսութեամբ սրբոյն ներսեսի. աղօթիւք սո :

Հոգ Ո՛ր 'ի վերայ բըղխեալ գաւազանին յեսսեայ հանգեար եօթնարփեան շնորհօք, հոգի աստուծոյ եւ խորհրդոյ, հոգի հեզութեան եւ զօրութեան, հոգի իմաստութեան եւ գիտութեան, հոգի երկիւղի աստուածպաշտութեան. աղաչեմք շնորհեա եւ մեզ ողորմութեամբ 'ի քոց պարգեւացդ :

Ո՛ր զգուշակեալըն քո եսայեա ելից օծեալն 'ի քէն մարմնով. ասէ հոգի տեառն 'ի վերայ իմ. զոր 'ի տնօրէնութեանըն խոնարհութեամբ ընթերցեալ որ վասն իւր զեան մարգարէին. աղա :

Ո՛ր զառաքումն առ 'ի հօրէ եւ 'ի հոգւոյդ բանիւն յաշխարհ մարգարէիւքն ծանուցեր. զոր 'ի դիմաց մարդացելոյն բարբառէր առ մարդկութիւնս. տէր տէր առաքեաց զիս եւ հոգի նորա. աղա :

Քանզի զքեզ օրհնեն իշխանութիւնք երկնից, թագաւոր փառաց անճառակալ անճառակարող. թող ըզմեղս մեր նընջեցելոցն, եւ հանգո 'ի խորանի քում 'ի յարքայական 'ի հանգըստեան : Հան

Ո՛ր 'ի նախնումն ըզմարգարէն մովսէս լուսաւորեցեր աստուածային փառօք տեսլեամբ աստուածութեան նըդ քո. լուսաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալսն, եւ հանգո :

Բարեխօսութեամբ սուրբ աստուածածնի ծընողի եւ մօր քո յիշեա զգիսս արեան քո տէր, եւ դասաւորեա յերանաւէտ յանթառամ եւ յանդորրումն 'ի կեանսդ 'ի յարքայական 'ի հան :

Թագաւոր փառաց աստուած հոգւոց կենդանարար. 'ի շնորհաբաշխ աւուր մեծի ծննդեան մարխամու, դըստեր դաւթի թագաւորին. նորոգեա զկենդանութիւն մերոյ թագաւորին. զի օրհնեսցուք ըզքեզ տէր այժմ եւ յաւիտեան : ած

Աղբիւր կենաց եւ փրկութեան մերոյ հոգի հօր եւ որդւոյ. 'ի յարմնոյն յեսսեայ բըղխման գաւազանի հանեալ ժամու, շնորհազարդ պայծառացո զգաւազան իշխանութեան մերոյ հայրապետին. զի օրհնես :

Լուսոյ աշխարհի եւ ճառագայթ իմանալի հոգւոյ սրբոյ աստուածոյ, 'ի ցնծութեան սրբոյ լերման ուրախութեան յոլովակիմաց եւ աննայիր. աղօթիւք սոցա լուցո զպէտս կարեաց հայաստանեայց եկեղեցւոյ. զի օրհնես:

խաղ Գաւազան զօրութեան ընկալաւ քո Պետրոս մեղ քրիստոս. եւ սովաւ յաղթեցուք անօրէն թշնամւոյն:

Սա է զէն յաղթութեան սրբեալ արեամբ որդւոյն աստուծոյ. եւ սովաւ յաղ:

Սա է աթոռ տէրունեան, եւ 'ի սմա է բազմեալ քրիստոս որդին աստուծոյ. եւ սովաւ յաղ:

Սա է սեղան սրբութեան, եւ 'ի սմա է պատարագեալ քրիստոս գառն աստուծոյ. եւ սովաւ:

Սա է կարապետ յարութեան գալստեան փրկչին. եւ պսակ պարծանաց հաւատացելոց. եւ սովաւ:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Որ հողանիւթ բնութեամբն զուգակցեալ ընդ սուրբ հոգւոյն, եւ ազատէր բղթագաւորն 'ի դիւական ախտէն. ընդ նմա արաս:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Որ հրաշագործեալ գրեալ 'ի կտակագրս թագաւորաց, եւ միանակից եղեւ սուրբ առաքելոցն. ընդ նմա:

հրց գ.ձ Մեղաք յամենայնի եւ ընդպատուիրանս քո ոչ պահեցաք, այլ խոստովանիմք առ քեզ, մի անտես առներ այլ գթա 'ի մեզ. աստուած հարցն մերոց:

Վասն դաւթի սիրելւոյ քո եւ յակոբայ արդարոյ աղաչեմք ընդքեզ. մի ան:

Որ նստիս 'ի քրովբէս եւ հայիս յանդունդս. յիշեա ողորմութեամբ քո զդաւիթ, եւ աղօթիւք սրբոյն յակոբայ խնայեա 'ի մեզ. աստուած:

Ընդ տէր օրհնեցէք բարձր արարէք ընդ նմա յաւիտեան: գ

Որ ընտրեաց զերանելին զդաւիթ, յառաջնորդութիւն իսրայէլի. օրհ:

Որ կացոյց զքաջանշելին զյակոբ պարիսպ շրջապատ եկեղեցւոյ իւրոյ. օրհ:

Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զուարթարար. այսօր մարիամ սրբուհին. 'ի փառս քո քրիստոս ծագեաց մեզ լոյս յորդւոյն օրինաց. անդադար երգով սրբօք ընդ քեզ զմիշտ մեծացուցանեմք: մեծ

Դրախտ աստուածային եւ արեւելք իմանալի. այսօր մարիամ հրաշագեղ, ծնեալ 'ի յաննայէ 'ի մայրութիւն քո հրաւիրեալ քրիստոս որդի աստուծոյ. անդա:

Տապանակ ապրեցուցիչ եւ տաղաւար աբրահամեան աստուածընկալ. այսօր մարիամ լուսապայծառ. միածին ծնունդ յայտնեալ ծնողաց. 'ի ծնողութիւն քո կոչեցեալ միածին որդի աստուծոյ. անդա:

Անըսկիզբն աստուած լոյս 'ի լուսոյ, որ ծագեցար մեզ եղջիւր փրկութեան 'ի տանէ դաւթի. աղօթիւք սորա աստուած ողորմեա մեզ: ողր

Անմարմնոց վերնոց թագաւոր յաւիտենից, որ մարմնով երեւեցար յերկրի 'ի զաւակէ դաւթի. աղօթիւք ս:

Յառաջնումն աստուածահայր անուանեալ մարգարէն դաւիթ, եւ

'ի վերջինս եղբայր տեառըն կոչեցաւ ըսքանչելին յակոբ . ողորմութիւնք առ ։

ակր Երդուաւ տէր դաւթի ճըշմարտութեամբ եւ ոչ ստեաց նըմա, 'ի պըտղոյ որովայնէ նորա նըստուցանել 'ի յաթոռ նորա . օրհնեցէք ըզտէրութիւն նորա ամենայն երկիր ։

Ծագեաց մեզ տէր զեղջիւր 'ի դաւթի, պատրաստեաց ըզճրագ օծելոյ իւրոյ . գովեցէք ըզտէրութիւն նորա ամէ ։

Զյակոբ ընտրեաց իւր տէր, ժառանգել նովաւ ըզնոր ժողովուրդ ըզհոգեւորն իսրայէլ . բարեբանեցէք զաստուածութիւն նորա ա ։

ձկ Օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն 'ի նոր . քանզի ծագեաց մեզ եղջիւր փրկութեան 'ի տանէ դաւթի կեցուցանել ըզմեզ կամեցաւ . օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն 'ի նոր ։

Գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսսեայ դաւիթ մարգարէն . եւ 'ի նորին շառաւիղէ առաքեալըն յակոբոս անուանեալ եւ սպասաւոր բանին աստուծոյ . օրհ ։

Ցնծացիք օրհնեցէք ըզտէր, որ երկոքումբք ընտրեցայք, առաքելական յակոբեան եւ մարգարէիւըն դաւթիւ հաստատեաց զհիմունս սուրբ եկեղեցւոյ . օրհ ։





# ԿԱՆՈՆ

## ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՆԱԽԱՎԿԱՅԻՆ

ՆԱՀԱՏԱԿ բարի քրիստոսի եղեր այսօր 'ի միջի մերում. եւ մըտեր 'ի վերնատունըն խորհըրդոյ յաւիտենականին ։ օրհ / գկ

Որ ընտրեցար 'ի դասս երկնաւոր զօրացն . պըսակեցար 'ի թագաւորէն զանթառամ ըզպըսակն . եւ մըկըրտեցար արեամբըդ քո սըրբոյ առաջին վըկայ քրիստոսի սուրբ ստեփաննոս նախասարկաւագըդ մեծ ։

Մարտեար ընդդէմ թըշնամւոյն, այսօր եւ գնեցեր արեամբըդ քո զարքայութիւն 'ի պարծանս ազգի մարդկան, ճըգնաւոր քրիստոսի . գոհութիւն երեքսըրբեանն, որ ընկալաւ ըզվկայդ իւր զսուրբ ստեփաննոս, 'ի վերին երուսաղէմ ։

Որ ընտրեցար 'ի կոչումն, առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ ստեփաննոս . բարեխօսեա առ քրիստոս վասն անձանց մերոց ։ ✠

Որ խընդրեցեր զթողութիւն 'ի վերայ քո քարաձիգ ժողովոյն սուրբ ստեփաննոս . եւ այժըմ վասըն քո ուխտաւորացս աղաչեա զընդաջմէ հօր նըստեալըն ։

Որ արժանի եղեր զմարտիրոսականն առնուլ պըսակ նախ 'ի վըկայս, առ պըսակիչըն սըրբոց եւ վասըն մեր բարեխօսեա ։

դկ Առաքեալ եւ նախավկայ քրիստոսի սուրբ ստեփաննոս, որ ըզքարկոծումն յանձն առեր, եւ յանմահից բնակարանըն վերափոխեցար. աղաչեա զաստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճան :

Տունկ անմահ իմանալի դրախտին շնորհեցար 'ի հօրէ, եւ լուսաւորեցար անճառապէս. այսօր ցընծան դասք հրեշտակացն ընդ քո մեծապայծառ ճըգնութիւնդ. աղաչեա զաստուած շնոր :

Աստուածատեսդ մարդոյն պըտուղ ընծայեցար մերձ յանմերձենալին լոյսն. եւ հայրենի աւանդութեանն եղեր ժառանգորդ. աղաչեա զաս :

որտ Որ էին յէութեան որդի միշտ յէէն, անեղանելի ծնունդ հայրական. զոր 'ի վերնատուն հընչեցին որդիքն որոտման, եւ յայտնեցին որդւոց մարդկան զծածկապէս խորհուրդ :

Բանն անըսկիզբն 'ի կուսէն սկըզբնաւորեալ, 'ի յերկիր մարմնով երեւեցաւ. զոր տեսին քարոզք բանին ճըշմարտութեան, եւ ծանուցին տիեզերաց աստուած եւ մարդ :

Իսկապէս բանն աստուած միացաւ 'ի մարմին, անփոփոխ գոլով յէութեան, որում եղեն ականատես որդիքն որոտման, եւ ընդհանուր քարոզեցին զբանն մարմին եղեալ :

առ Իմաստութիւն երկնային իջեալ 'ի վերնատուն, ժողովել զընտրեալսն 'ի սկըզբանէ զյիմարս աշխարհի. եւ լցեր լուսով քո իմաստութեան հալածել տքօք ըզխաւարն անգիտութեան 'ի մէնջ. աղաչանօք սոցա խնայեա 'ի մեզ մարդասէր փրկիչ :

Ի ծովու ճանապարհորդեալ անհետ ընթացիւք, 'ի ծովակէ կոչեցեր զորսորդս անբանից կենդանեաց 'ի մահ. զի 'ի ծովէ աշխարհի որսասցեն ըզբանականս 'ի կեանս. աղա :

Բանն որ երկրի մըշակդ երկնային. որ ետուր ըզսերմն կենաց 'ի լեզուս բանին մըշակաց, եւ առաքեցեր սերմանել յոգիս բանաւորաց. աղաչանօք սոցա խնայեա 'ի մեզ մարդասէր փրկիչ :

Երրորդութեանըն սիրով անձինք յաղթող վկայից, արժանաւորք ընդունելոյ, 'ի յառագաստըն լուսոյ : մար

Զի զառաջին մեղացն ըզբոց արեամբն իւրեանց շիջուցին. եւ ըզտիեզերս հրաւիրեցին յօրհնաբանութիւն :

Հեղմամբ արեանն իւրեանց մեզ ճանապարհ հորդեցին. եւ առ քրիստոս մեզ գնալըն կենաց բացին 'ի յերկինս :

Աղբիւր կենաց բըղխող շնորհաց հոգին իջեալ 'ի բարձանց, զանազանեալն պարգեւըս քո բաժանեցեր յառաքելսն : հոգ

Որ 'ի վերայ ջուրցըն գոլով ստեղծանէիր զարարածս. իջեալ 'ի ջուրս աւազանին ծնանիս որդիս աստուծոյ :

Որ զառաքեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլին մանկունք սորա :

Ես անացի տէր ողորմեա հոգւոյ իմոյ բազմամեղի, որ բնակեալդ հան

ես 'ի յերկինս եւ յանմարմնոց
փառաբանիս. յիս մարդասիրեան
բազմագութ փրկիչ, եւ փարա-
տեցո զցաւս անձին իմոյ:

Պսակեցաւ յազգատոհմէ լքեալ
թողլի զկեանս աշխարհի. եւ մար-
մին ունայնութեան դարձաւ 'ի հող
ուստի ստեղծաւ. յիս:

Յաւուր յայնմիկ մտանեցայ 'ի
ձեռս ահեղ հրապարակին. եւ առ
քեզ ապաւինիմ ստեղծող բնաւից
տէր բոլորից. յիս:

Որ անտես եւ անքննելի քա-
ռակերպիցն վեհագոյն, 'ի փրկել
զմեզ եկեալ անմահից թագա-
ւորն, օրհնութիւն առաքողին:

Առաքի հրեշտակապետն առ սե-
րովբէն հողեղէն. ասէ տէրն եւ
արարողն առաքեալն 'ի հօրէ մար-
մնանայ 'ի քէն փրկողն:

Մըկրտի 'ի յորդանան վկայելով
հօր եւ հոգւոյն. ովսաննայ 'ի բար-
ձունս երգէին մանկունքն օրհնու-
թիւն որդւոյ դաւթի:

Խաչի քո քրիստոս երկրպա-
գեմք արարածք ամենայն, որ 'ի փր-
կութիւն մեզ կանգնեցաւ. սա
եղիցի մեզ պահապան յաղթող,
անպարտեցուցանել զմեզ 'ի պատրա-
նաց բանսարկուին:

Ի սմա բարձրացար բարձրոզդ անխ-
ծից, որ փառաւորեալդ ես ընդ
հօր. ժողովեալ ընդհեռացեալսն
կենսաբեր փայտիւն. անպարտեցուցա-
նել զմեզ 'ի պատրանաց բան-
սարկուին:

Սովաւ լուսաւորեցան արարածք
ամենայն. սովաւ սպասէին արդա-
րեալքն 'ի մեղսաբեր բանսիդն. որ
ազատեաց զմեզ 'ի պատրաց:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Ճանապարհ վկայից յետ քրիս-
տոսի գլուխ, եւ աստուածային
փառացն արժանաւոր եղեր. բան-
սարկուն զինու քո վիրաւորեցաւ,
եւ նախաստեղծքն պայծառացեալ
բերկրեցան. աղաչեա զաստուած
շնորհել մեզ զկեանս անվախճան:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Դասակարգեալք եւ մեք ընդ ան-
մարմնական բազմութեանն վերա-
հայեցմամբ ընդ հրեղէն լեզուացն
աղօթանուէր մաղթանօք, հայ-
ցեմք 'ի քէն մարդասէր փրկիչ,
խնայեա 'ի մեզ ստեղծող մեր եւ
կեանք աշխարհի:

Ընդ երկնայինն հոգեղինաց
դասուց, այսօր տօնեմք ըզյիշատակ
սրբոյն ստեփաննոսի. բարեբանելով
ըզքեզ տէր աստուած հարցն
մերոց:

Որ հրեշտակակերպ տեսլեամբ ա-
րիաբար պատերազմեալ զքարկո-
ծումն յանձն էառ. խոստովանե-
լով ըզքեզ քրիստոս աստուած:

Որ անպարագրելի աստուածու-
թեանդ տեսող եւ բարեխօս եղեր
ուխտաւորացս, այսօր յիշատակաւ
սրբոյն ստեփաննոսի գովեմք ըզ-
քեզ քրիստոս:

Ըզտէր օրհնեցէք եւ
բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Որ յերկնային զօրացն միշտ օրհ-
նի քրիստոս աստուած, այսօր յի-
շատակաւ սրբոյն ստեփաննոսի. ըզ
տէր:

Հրաշալի աստուածաբանութեամբ
սրբոյն ստեփաննոսի, քահանայք
ընդ վերին զօրացն երկնից զքրիս-
տոս գովեցէք եւ:

մեծ Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ:

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անապականաբար բնակել հաճեցար 'ի քում յորովայնի. ու:

Որ բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հողեղինի յայտնեալ. ու:

ողր գկ Առաքեա 'ի մեզ տէր ըզբազում գթութեան քո զողորմութիւն, բարեխօսութեամբ սրբոյ նախավկային քո եւ ողորմեա:

Որում զերկնայինսն բացեր ըզդրունս, ցուցանելով զանճառելի խորհուրդ. սորին աղաչանօք խնայեա 'ի մեզ տէր եւ ողորմեա:

Որ աղօթանուէր հայցմամբ ըզգթութիւն խնդրելով 'ի քէն անօրէն ըսպանողաց իւրոց. սորին աղաչանօք խնա:

տէր Ով երջանիկ ճառագայթ, առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ ստեփաննոս. հաստատութիւն 'ի քրիստոսէ հայցեա սուրբ եկեղեցւոյ:

Որ քոյին յօժարական համբերութեամբ ըզքարկոծումն յանձն առեր, շնորհեալ քեզ յաստուծոյ լինել չարչարակից քրիստոսի, զի եւ մեզ ուսուցես փառաւորել սուրբ զերրորդութիւնն:

Աղօթէիր որ քարանձիգքն լինէին 'ի քեզ նախդ 'ի վկայս, զի առցես ըզհատուցումն բարի յարարչէն ամենեցուն. եւ այժմ աղաչեմք ըզքեզ եւ վասն մեր բարեխօսեա:

Նախասարկաւագ եւ առաջին մարտիրոս, որ 'ի քրիստոսէ պսակեցար, եւ յերկնաճեմ առագաստին պայծառացեալ բերկրեցար. աղաչեա զաստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճան: ձկ գկ

Որ քոյին համբերութեամբ ըզդրունս երկնից բացեալ տեսեր, եւ զորդի ընդ աջմէ հօր. աղօթէիր 'ի վերայ քո քարանձիգողացն. աղաչեա զաստուած:

Ընկալեալք արդարոց եւ ժողովք ուղղափառաց, այսօր ըզպսակաւորս քո տօնեմք, եւ ապաստաւորք հայցեմք 'ի քէն ճշմարիտ վկայդ քրիստոսի. աղաչեա զաստուած:

Ցնծայ այսօր եկեղեցի աստուծոյ, զքո վայելչապէս տօնէ զյիշատակս, ով սուրբ ստեփաննոս. մեծ եւ պատուական անուանիդ 'ի վկայս. աղաչեա: ծլ

Նախաշաւիղ բարեաց ամենայն աշխարհի, եւ լուսազարդ ճանապարհացն եղեր ժառանգորդ, ով սուրբ ստեփաննոս. մեծ եւ պատուական անուանիդ 'ի վկայս. աղաչեա:

Աստուածային զինու վառեցար սուրբ հոգւոյն, տեսանելով յերկինս հայրենի փառօք զորդին աստուծոյ, ով սուրբ ստեփաննոս. մեծ եւ պատուական անուանիդ 'ի վկայս. աղաչեա:



# ԿԱՆՈՆ
## ԳԼԽԱՒՈՐ ԱՌԱՔԵԼՈՑՆ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ՊՕՂՈՍԻ

օրհ դձ Ցընծա՛յ այսօր եկեղեցի աստուծոյ յիշատակաւ սուրբ առաքելոցն, հաստատեալ ի վերայ վիմի հաւատոյ, զարդարեալ ի փառս մարմնացելոյ բանին։

Որ զէութիւն անճառելոյ միածնին յայտնութեամբ հօր ի վերուստ դաւանեցեր, և երանական արժանացեալ շնորհին. վէմ անուանելի ի դրանց դժոխոց։

Որ անմարմնոց դասուց հրեղինաց հողեղէն բնութեամբ գերազանցեցար, և բարձրացեալ ի յերկնային խորհրդոցն, անճառ բանին արժանաւորեալ։

Որ գերագոյն ընտրելոց առաքելոցն դասուց անուանեցեր լինել զերանելին ըզպետրոս, գլուխ սուրբ հաւատոյ հիմն եկեղեցւոյ։

հրշ Անմահ արքային անպատուեստ աթոռք, բազմաչեայ քերովբէք, սրբասաց ձայնիւ սրովբէք, առաջին յերկինս քահանայապետք, բարեխօս լերուք առ տէր վասն եկեղեցւոյ։

Բարձրելոյն փառաց բարձող տէրութիւնք, անյաղթելի զօրութիւնք, վեհագոյն իշխանութիւնք, երկրորդին դասու քահանայապետք. բարե։

Գերագոյն էին պետութիւնք վերին, հրեշտակապետք երկնաւորք, հրեշտակաց զինուորութիւնք, երրորդի յերկինս քահանայապետք. ձեզ համաձայնեալ երգեմք ըզփառս ի բարձունս։

դա Օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն ի նոր. քանզի ծագեաց մեզ եղջիւր փրկութեան ի տանէ դաւթի կենդանացանել ըզմեզ կամեցաւ. օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն ի նոր։

Գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսսեայ դաւիթ մարգարէն. և ի նորին շառաւիղէ առաքեալքն յակոբոս անկանատես և սպասաւոր բանին աստուծոյ. օրհ։

Եկեղեցիս օրհնեցէք ըզտէր, որ երկոքումբք ընտրելովք, առաքելովքն յակոբաւ և մարգարէիւն դաւթիւ հաստատեաց զհիմունս սուրբ եկեղեցւոյ, օրհ։

յով Այսօր ցնծան հրեշտակք ի յերկինս, յիշատակաւ հողանիւթ հրեշտակացն. որք համագունեալք ձայնիւ բարբառոյ, երգեն զօրհնութիւնս հօր ի բարձունս։

Այսօր ցնծան հոգիք արդարոց, նահապետաց և մարգարէից. ձայնակից լինել մեծին ի ծնունդս կանանց, երգեն զօրհնութիւնս որդւոյն միածնի։

Այսօր ցնծան դասք առաքելոցն, տօնախմբելով զյիշատակ մեծի մկրտչին. որ առաքելոցն է ըսկիզբն և մարգարէից լրումն. ընդ նոսին և մեք բողոքեցելոյն ի հօրէ երգեմք ըզփառս ի բարձունս։

հա Հրաշափառ աստուած և միշտ բարեխնամող. որ յառաջ գիտութեամբ ըզփըրկութիւն հայաստա-

նեայց ընկերգելնաւորեալ, 'ի պար-
թեւական մեղապարտ ազգէն լու-
սաւորիչ մեզ շնորհեցեր. վասն
որոյ բարեխօսութեամբ սորա փըր-
կիչ կեցո ըզմեզ այժմ եւ 'ի քո
յահաւոր գալստեանն։

Հրաշալի զարմացմամբ երանելին
սուրբ Գրիգոր զանտանելի ըզչար-
չարանս 'ի յանձն էառ, եւ երիւք
հրեղօք ամօք 'ի մէջ թունաւորա-
ցըն բնակէր անդընդային տան-
ջանօքն 'ի վիրապին. վասն որոյ։

Հրաշագործ քո բանիւդ եւ մեծ
ողորմութեամբ, ելեալ բըժշկէր
ըզհարուածեալսն 'ի դիւաբաղխ
սաստիցն. երկրպագուս առնելով
զամենեսեան սուրբ երրորդու-
թեանդ. վասն որոյ։

ձող Սքանչանայր սուրբ մար-
դասէր հոգի, ըզժողովեալսըն միա-
բանական սիրով լուսաւորեցեր
հրեղինօք լեզուօք. վասն որոյ եւ
մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո
սուրբ։

Զուարճացան քո գալստեամբըն
սուրբ առաքեալքըն. կոչելով 'ի մի-
աբին ըզցրուեալսն 'ի միմեանց
բազմաձայն լեզուօք. վասն որոյ
եւ մեք։

Հոգեւորական սուրբ միկրտու-
թեամբ զարդարեցեր նորօք ըզամե-
նեսեան 'ի ըզգեստս լուսափայլս
եւ նորափետուրս. վասն որոյ եւ։

ձան Որ հայրական իշխանութեամբ
եւ փառօք գալոց ես տէր, նստե-
լոց ես դատաւոր հանդերձ քո
առաքելովք. եւ տաս ըզհատու-
ցումըն քոց արարածոց։

Որ լուսափայլ ճառագայթիւք նը-
շանաւ սրբոյ խաչին յահաւոր բե-
մին բազմիս, եւ ընտրեալս զօդես
յայծեաց, եւ առ։

Արդ աղաչեմք ըզքեզ քրիստոս
որդի աստուծոյ, հանգո զմեր ննջե-
ցեալսն 'ի վերին երուսաղէմ.
զի մի դարձցի տրտմեալ ամաչեցեալ
'ի յաւուր ահեղ ատենին։

Այսօր ժողովեալ սրբոցն 'ի ած
միաբին, երանելի առաքելքն եւ
սուրբ կուսանքն ջահազգեստուք
պայծառացեալք լուցանեն ըզ-
լապտերս իւրեանց. եւ միաձայ-
նեալ ասէին, օրհնեալ ես ամե-
նօրհնեալդ 'ի կանայս։

Այսօր գնելով ըզսուրբ կոյսն առ
դրանըն գերեզմանին, սպասէին
եւ ակն ունէին տեսանել իսկ ինք-
նին գոլով, դեր 'ի վերոյ տեսեալ
զարարիչն եկեալ բազում հրեշտա-
կօք. եւ նոցա միաձայն։

Այսօր տեսեալ ըզսուրբ կոյսն
թռուցեալ յօդս, եւ ամպեղէն
կառօքն 'ի վեր համբարձեալ յեր-
կինս. մըտանելով յերկնային խո-
րանսն ընդ իմաստուն կուսանսն.
եւ նոցա։

Այսօր ընդ բազմաչեայ քրովբէսն
եւ ընդ վեցթեւեան սրովբէսն մը-
տանելով յեօթնաստեղեան խո-
րանսն. տեսանելով զանճառն ա-
թոռսն զոր պատրաստեալ է քեզ
տէրունոյդ. երգեմք եւ մեք ա-
սելով. օրհ։

Քրիստոս աստուած մեր շնոր- խաղ
հեա մեզ ընդ պետրոսի եւ ընդ
որդւոցըն զեբեդեայ արժանաւո-
րիլ քում աստուածային տես-
լեանդ։

Համբարձցես ըզմեզ տէր առա-
ւել քան ըզգայի զթաբօրական ըզ-

լեան, յերկնաբերձ եւ յիմանալի խորանն:

Վասն որոյ եւ մեք ըղձակոծելիս մեր յարմարեսցուք քեզ հոգեւորական տաղիւ, որպէս միայնոյ մարդասիրի եւ փրկչի:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Որ յառաջնագոյն կոչմամբ առաքեցեր զանծօթն ընտրութեան, յայտնելով աշխարհի զանձառ տնօրէնութեան քո խորհրդոյ, յորդնաբանութիւն կոչել զհեթանոսս:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Որ երկրպագուօք ընծայելովք լուսաւորչօքն աշխարհի, հաստատեցեր զեկեղեցի քո քրիստոս. մաղթանօք սոցա խնայեա 'ի մեզ:

հրց գձ Որ խոստացար տալ ըղձականս արքայութեանն երկնից երանելւոյն պետրոսի, որ հրաւիրեաց ըզմեզ 'ի յոյս կենացն յաւիտենից. աղաչանօք սորա կեցո զմեզ տէր աստուած հայրցն մերոց:

Որ ընտրեցեր 'ի մարդկանէ հաւատարիմ սուրբ զառաքեալըն պօղոս, որոշելով յաւետարանըն լինել քեզ խոստովանող. աղաչանօք սորա կեցո զմեզ:

Փառօքն արքայութեանն երկնից սուրբ առաքեալըն պետրոս, արութեամբ ժուժկալեալ քեզ խաչակցեցաւ. աղա:

դ Ըղձեր օրհնեցէք բարձր արարէք յաղթողական ձայնիւ ըղձնակեալն 'ի մէջ սրբոց:

Որ ընտրեաց զերանելին առաքեալսն անմոլորք հաւատոյ սիւնք եկեղեցւոյ, 'ի տիեզերական 'ի հրապարակին զդատողական աթոռսըն շնորհելով. բարձր արա:

Նըմանեալ աղաւնոյ արծաթապատ թեւօքն 'ի գոյն ոսկւոյ ճըշմարիտ սուրբ հոգին, եւ լուսազարդ փայլմամբ փարէր ըզնոքօք. բարձր արա:

Աստուածածին գերագոյն երկնից ցուցար խորան եւ առագաստ. քանզի ծագեալ լոյսն 'ի հօրէ, բնութեանց երից անտանելին պարագրեցաւ 'ի քում յորովայնի. հոգեւոր երգով ըզքեզ միշտ մեծացուցանեմք: մեծ

Դուռըն փակեալ զքեզ եզեկիէլ յառաջագոյն ծանոյց կոյս անարատ, ընդ որ եմուտ անտեսան յէից, բանն անմարմին որ 'ի հօրէ եւ ել մարմնով անխախտելի մնալով կուսութեանդ. հոգեւոր եր:

Վերափոխեալ զքեզ 'ի յերկնային խորանան այսօր որդին քո միածին. ուստի եւ դասք առաքելոցն եւ խմբատուն սուրբ կուսանացըն միաձայնելով գովէին ըզքեզ մայր անհարսնացեալ. հոգեւոր եր:

Ամոլք հաւատոյ այսօր փայլին ողր
հայր սուրբ 'ի քո սուրբ եկեղեցւոջ. մարդասէր փրկիչ տօնողացս ողորմեա:

Բարեխօսութեամբ պետրոսի եւ պօղոսի քո սուրբ առաքելոցն, մարդասէր փրկ:

Լուսաւորեալք 'ի սոցա դըպրութենէս փառաւորեմք սուրբ զերրորդութիւնդ. երկաքանչիւրոցն աղօթիւք տօնս:

Երանելի սուրբ առաքեալքն որպէս զարեգակըն ծագեցան 'ի յերկիր, արձակելով ըզճառագայթս ընդ տիեզերս, լուսաւորեցին զաշխարհս ամենայն: տէր

Ի մերմէ ՚ի հողեղէն բնութենէս չարչարեցան վասն քրիստոսի. Եղեն լուսատուք տիեզերաց, եւ հրաւիրեցին զերկիրս ՚ի յերկինս։

Չարչարեցան վասն քրիստոսի, զնա տարին իւրեանց յոյս. հեղին զարիւնս իւրեանց ՚ի յերկիր, եւ պսակեցան յանմահ արքայէն։

մնկ | սա | դկ Որ արփիափայլ լուսոյ ծագմամբ պայծառացոյց ըզտիեզերս անճառապէս, լոյսն որ ՚ի հօրէ առաքեցաւ առաքելական քարոզութեամբ սրբոյն պետրոսի, հրաւիրելով ՚ի լոյսն անմատուէր։

Որ ՚ի հեղձական մեղաց ծովէս վերամբերեաց ըզհողեղէն բնութիւնս ՚ի կեանս, բանն որ ՚ի յերկրի երեւեցաւ օրհնեալ աւետարանի սրբոյն պետրոսի. հրաւի։

Որ յառաջ գուշակելով մահուն իւրոյ լինել կցորդ արեամբ խաչին, զանուն որ երբեմն ըզմեղըս մեր, ըմպել զբաժակ չարչարանաց սրբոյն պետրոսի. ժամանեցելով ըզկեանս անվախճան։

հմբ Որ անպարագիրն է յէութեան, պարածածկեալ արփիափայլ ճառագայթիւք, լոյսն որ պայծառ քան զարեգակն ճառափայլեալ շուրջանակի սրբոյն պօղոսի. հրաւի։

Որ գերագոյն քերովբէից վերամբարձեալ ՚ի յերրորդ խորանս երկնից, եւ հրաշահրաշն վետակաց արքունի զմըյլեալ, երրորդութեանն արժանաւորելով տեսլեան սուրբըն պօղոս. հրաւի։

Որ անօթ հոգւոյն ընտրեալ, քարոզելով զանունն տեառն ՚ի հեթանոսս. եւ կատարեալ զընթացսն համատոյ պսակեցաւ հեղմամբ արեանն իւրոյ ՚ի քրիստոսէ. ժամանեցէ։



# ԿԱՆՈՆ

## ՈՐԴՒՈՑՆ ՈՐՈՏՄԱՆ ՍՐԲՈՑ ԱՌԱՔԵԼՈՑՆ ՅԱԿՈՎԲԱՅ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ

Որ էն յէութեան որդի միշտ յէէն, աներեւելի ծնունդ հայրական. զոր ՚ի վերուստ հընչեցին որդիքն որոտման, եւ յայտնեցին որդւոյ մարդկան զծածկապէս խորհուրդ։ օրհ | դկ

Բանն անըսկիզբն ՚ի կուսէն սկըզբնաւորեալ, ՚ի յերկրի մարմնով երեւեցաւ. զոր տեսին քարոզք բանին ճըշմարտութեան, եւ ծանուցին տիեզերաց աստուած եւ մարդ։

Ինքնակալէս բանն աստուած միացաւ ՚ի մարմին, անփոփոխ գոլով յէութեան, որում եղեն ականատես որդիքն որոտման, եւ ընդհանուր քարոզեցին զբանն մարմին եղեալ։

Որ անմարմին ՚ի հօրէ մարմնացար ՚ի կուսէն, թանձրացեալ բանդ անըմբռնելի. զոր ՚ի մարմնի շօշափեցին որդիքն որոտման. եւ հընչեցին ընդ տիեզերս զաւետիս կենաց։

Առաքեալ եւ նախավկայ քրիստոսի սուրբ ստեփաննոս, որ ըզքարկոծումն յանձն առեր, եւ ատե

յանմահից բնակարանըն վերափոխեցար. աղաչեմ զաստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճան:

Տունկ անմահ նմանալի դրախտին շնորհեցար 'ի հօրէ, եւ լուսաւորեցար անճառապէս. այսօր ցընծան դասք հրեշտակացն ընդ քո մեծապայծառ ճըգնութիւնդ. աղաչեմ զաստուած շնոր:

Աստուածաստեղծ մարդոյն պըտուղ ընծայեցար մերձ յանմերձենալի լոյսն. եւ հայրենի ժառանգութեանն եղեր ժառանգորդ. աղաչեմ զայս:

Ճանապարհ վըկայից յետ քրիստոսի գնացեր, եւ աստուածային փառացն արժանաւոր եղեր. բանսարկուն զինու քո վիրաւորեցաւ, եւ նախաստեղծըն պայծառացեալ բերկրեցաւ. աղաչեմ զաստը:

Դասակարգեալք եւ մեք ընդ անմարմնական բազմութեանն վերահայցեմք ընդ հրեղէն լեզուացըն աղօթանուէր մաղթանօք, հայցեմք 'ի քէն մարդասէր փըրկիչ, խնայեա 'ի մեզ ստեղծոց մեր եւ կեանք աշխարհի:

առ Որ զօրինակ երկնաման առաքելոց քոց քրիստոս, եւ զեօթանասունն ընտրելոց աշակերտացն յառաջագոյն ծանուցեր 'ի թիւ արմաւենեաց եւ աղբերացըն յաղիմայ. աղաչանօք սոցա խնայեա 'ի մեզ մարդասէր փրկիչ:

Որ շինեցեր ըզտուն քո զեկեղեցի իմաստութիւն հօր յիսուս. եւ կանգնեցեր 'ի սմա սիւնս զեօթնարփեան հոգւոյն զօրութիւն. եւ առաքեցեր ըզծառայս քո սուրբ զառաքեալսն կոչել զհեթանոսս յարքունիս ուրախութեան խառնեցելոյ բաժակին. աղա:

Որ սիրականդ իշխանութեան հաղորդս արարեր ըզսուրբ զառաքեալսն, կապել եւ արձակել զորդիս մարդկան յերկինս եւ յերկրի, եւ աթոռակից լինել քեզ խոստացար յորժամ նըստիս յաթոռ դատողական. աղա:

Այսօր ուրախացեալ սուրբ եկեղեցի քրիստոսի, տօնէ խընդութեամբ զտօն վերինն երուսաղէմի, սըրբասանց ձայնիւ փառաւորելով ըզքրիստոս: հրշ

Այսօր համաձայնեալ որդիք սիովնի երկրայնոյ, տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին սիովնի. սըր:

Այսօր դասք անմարմնոցն երգս առեալ պարեն ընդ մարդկան, զերգըս հոգեւորս յանմահ փեսային յառագաստ. սըր:

Այսօր ցընծայ եկեղեցի 'ի հոգեւոր հարսանիս, զոր պատրաստեաց ձայն բարբառոյ հարսըն մաքուր փեսային: յով

Այսօր փեսաւէրն եւ բարեկամն ընդ երկնաւոր փեսային, միաւորեաց զեկեղեցի փոխադրելով 'ի յերկինս:

Այսօր շնորհեցաւ մեզ դեղ կենաց նըշխարք սուրբ ոսկերաց, 'ի ձեռըն սուրբ լուսաւորչին հայաստանեայց աշխարհի:

Հոգիք հրեղինացն այսօր տօնեն ընդ մեզ ըզգալիս հոգւոյն աստուծոյ: հոգ

Տեսանողն յառաջ նըշանակեր զառատաբուղխ վըտակ խմատեց 'ի մեզ հեղեալ 'ի հոգւոյն:

Վէմըն հաւատոյ զմայլեալ անմահական բաժակն այսօր բաշխէր ծարաւեաց։

Գետոցս այս գնացիւք ցընծայ քաղաքն աստուծոյ սիոն մայր եկեղեցի։

Վասն որոյ եւ մեք երրեակ եւ մի աստուածութեանն երգեմք ընդ փառս 'ի բարձունս։

Հան Հայեցաք 'ի բարձունս առ քեզ կարող յամենայնի. ընկալ զմեզ յորկս որդւոց անբաւ ծածուկ աջոյդ. քո. յիս մարդասիրեալ բանըմնդութ փրկիչ եւ փարատեցո զցաւս անձին իմոյ։

Ահա 'ի խաղաղութիւն դարձայ 'ի հող յորմէ առեղծայ. նորոգող ճարտարապետ պարգեւատու ողորմութեան. յիս։

Այլ կենդանիքս օրհնեմք զքեզ քրիստոս թագաւոր յաւիտենից, որ փառօք փառաւորիս 'ի յերկնայնոց եւ յերկրայնոց. յիս։

ած Մխեալ բամից դառնոց սըրբոց, զընձուղս եղբօրըն վըճարեալ. բացեալ զտապանն ամենօրհնեալ եւ զբաղձալին իւր ոչ գըտեալ. քանզի եղեւ վերափոխեալ 'ի փառս անճառ նախապատրաստեալ։

Փառք հօրն էակին պատիւ որդւոյն իւր էակցի, ընդ հոգւոյն համագոյի որ զարդարեաց զկոյսն 'ի յերկրի. ժառանգել զանճառ բարին զոր պատրաստեաց իւր միածնին։

Քանզի անճառ է խորհուրդ փառաց կուսին անմարմնոց. զոր 'ի դարուցըս վերջնոց եհեղ մարդկան ստորայնոց. զոր այժմ յուսով բերկրելոց յայնժամ շնորհէ յուսացելոց։

Որ յանըսկզբըն էէն անսերմապէս ծըննեալ, եւ սրովբէականըն ծածկէիր թեւօք. այսօր ըզպարագրեալն մարմնով ցուցեր զաստուածութեան քո զփառս աշակերտաց քոց տէր. քո անմեկնապայծառ ծագմամբք ողորմեա մեզ աստուած։ խաղ

Որ զաստուածութեան օրէնս մովսիսական տուիցն 'ի սինէականըն խօսէիր լերին. այսօր ըզմովսէս եւ զեղիաս ածեալ 'ի մեռելոց եւ կենդանեաց 'ի տեսիլ փառաւորաց քոց. քո։

Որ զօրհնակ մեծի գալըստեան քո տէր 'ի թաբօրականըն ծանուցեր լերին. քանզի տեսին դասք առաքելոցն ըզնախահայրն եկեալ փառօք, խօսէին զելիցն յերուսաղէմ զխորհուրդ. քո։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ զանտեսդ յէից զոյդ անտանելի պարագրեալ մարմնով ծածկեցեր. զոր 'ի լերին արտափայլեալ տեսին որդիքն որոտման, եւ մաքրեցան անճառ տեսլեամբ գերապանծ լուսոյն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ կենարար բանիւ քո անմահացեալք, եւ մահու եղեն գերազանց. յանձն առին ըմպել զբաժակ չարչարանաց ընդ քեզ, զի ընկալցին 'ի քէն ըզփառս աննախանձ կենացն։

Որ զամենայնըն յոչընչէ արարեր Հրց
եւ ըստեղծեր ըզմարդն 'ի յանմահութիւն դկ
'ի պատկեր աստուածութեանըդ քո. ըզքեզ օրհնեմք աստուած հարցըն մերոց։

Որ զանկեալն 'ի մահ պատրանօք բանսարկուին կանգնեցեր 'ի փառս

առաջին, գալըստեամբըդ քո յաշխարհս. ըղ։

Ո՞ր կոչեցեր ըզտիեզերս 'ի հաւատըս Ճըշմարիտս ընտրելովք քո առաքելովք. եւ ցուցեր աւետարանիչ զօրդին ոտսմին. ըղ։

գ Ըղտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Ո՞ր ըստ կամաւոր յօժարութեան նուրեանց զօրացոյց սուրբ զառաքեալսն, եւ հրաւիրեաց յերկնից արքայութիւնն. օրհ։

Ո՞ր ընկալաւ 'ի կեանս անապականըս զերջանիկ սուրբ զառաքեալսն, եւ դասեցոյց 'ի խորաննըս լուսեղէնս. օրհ։

մեծ Աստուածածին ամպ լուսաւոր որ ըզցօղըն կենաց հեղեր յերկիր բանաւոր. եւ զնախամօրըն չիջուցեր զպարտեացն ըղհուր. անդադար ձայնիւ զքեզ բարեբանեմք, եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք։

Տեղի անսահմանելի բանին, եւ երկիր վայրափառ յորում լոյսն ածանիցի. եւ արեւելք արեգականն արդարութեան. անդա։

Զքեզ կատարումըն մարգարէից կուսական քո ծնընդեամբ որով բնութեանըս քակտեցան օրէնք, հրաշուն սեռիցըն փոխադրեալ 'ի լուսաձեւ խորանսն. անդա։

ողբ | հրց դկ Որդիքն որոտման որք 'ի վերուստ հընչեցին ըզբանըդ կենաց ծագեալ 'ի Հօրէ եւ ըզտիեզերս հրաւիրեցին յօրհնաբանութիւն սուրբ երրորդութեանդ. բարեխօսութեամբ սոցա ողորմեա մեզ որդի աստուծոյ։

Բանըդ մարմնացար 'ի կուսէն քարոզըքըն տեսին, աւետարանեցին յաշխարհի զգալուստ միածնիդ. բարեխօ։

Զշարչարանս եւ ըզմահ ընդ քեզ յանձն առին հաւորդիլ փառաց քոց տէր 'ի քում գալըստեանն. բարեխօ։

Հոգի նոր կանխէ առ քեզ աստուած, որ ծագեցեր ըզլոյս հրամանի քո յաշխարհս ընտրելովք քո առաքելովք. փառըն սոցա կեցո ըզմեզ։ տէր

Լըցեալ շնորհօք հոգւոյդ սրբոյ, եւ բարձրացեալ 'ի վերայ խորանաց երկնից, տեղեկացեալ եղեն անճառ էութեան միածնի քո, աւետարանեցին յաշխարհի. փառըն սո։

Կարողք եղեն ամենայն զօրութեամբ ընդունիլ ըզբաժակ չարչարանաց միածնի քո որդւոյն ուրոտման, եւ ընդ աջմէ դասիլ. փառըն սո։

Որ յանըստուեր 'ի լուսոյն ընկալար ըզծագումըն շնորհաց, ով երանելի տէր յովհաննէս, եւ հրաշագործ գըտար յերջանիկ դասս առաքելոցն. հայցեա 'ի տեառնէ զթողութիւն յանցանաց։ մեծ սա դկ

Որ փարեցար ըզսիրասփելի պարանոցան զանմատոյց լուսոյն, եւ մաքրեցար որպէս զոսկի 'ի հուր. լուսազարդեալ երեւեցար 'ի մէջ սրբոցն որպէս յաստեղս արեգակն. հայցեա։

Որ 'ի կենդանի աղբերէն արբեր ըզբղխումըն շնորհաց, եւ 'ի թեւս հոգւոյն համբեր յանիմանալին. աւետարանեցեր մըշտընջենաւորակից հօր զէակից որդին. հայցեա։



# ԿԱՆՈՆ

## ՀԱՄՕՐԷՆ ԱՌԱՔԵԼՈՑՆ

օրհ գձ ԵՐԱՆԵԼԻ սուրբ առաքեալք հրաւիրեալք 'ի սկզբանէ եւ ընտրեալք յորովայնէ, սպասաւորք եւ բարեկամք եւ վկայք աստուածորդւոյն. բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց:

Որք առիք իշխանութիւն 'ի վերայ ազգի մարդկան, կապել և արձակել 'ի յերկինս և 'ի յերկրի. արձակեցէք զմեզ 'ի կապանաց մեղաց մերոց:

Խաչակցեալք ընդ Քրիստոսի եւ ընդ նմին թագաւորեալք. 'ի միւսանգամ գալստեան նորա նստելոց էք դատաւորք. թողութիւն շնորհեցէք եւ մեզ մեղաւորացս:

Զորս առեալ 'ի ծովակէն արարեր որսորդս մարդկան, որսալ զամենեսեան յարքայական սեղանն. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խնայեա 'ի մեզ:

Որոց հրամայեցեր հոտ անոյշ լինել ընդ տիեզերս, ոմանց հոտ 'ի մահուանէ 'ի մահ եւ ոմանց 'ի կենաց 'ի կեանս. բարե:

Որոց խոստացար նստել յաթոռ դատողական, դատել զազգն Իսրայէլի յայնմ աւուր յահեղին. բարեխօսութեամբ:

Զառաջնորդս եւ զվարդապետս եկեղեցւոյ քում սրբոյ, յիշատակաւ պատուեմք այսօր. բարե:

յոլ Առաքեալըն յաստուծոյ կարապետ մեծն 'ի մարգարէս մկրտիչն յովհաննէս, պատրաստէր ճանապարհս թագաւորին յաւիտենից:

Վկայեաց եւ ասէ չեմ ես Քրիստոսն, այլ առաքեալ եմ առաջի նորա. եւ հարսին եկեղեցւոյ փեսայ Քրիստոս է արքայն երկնից:

Տեսանէր ըզյիսուս զի գայր առ նա, մատնանկեաց և ասէ, ահա գառն աստուծոյ որ եկն 'ի բառնալ ըզմեղս աշխարհի:

Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյիշատակ սրբոյն գրիգորի. որով լուսաւորեալ պայծառացաւ վայելչապէս, 'ի հանդերձս յոսկեհուռս զարդարեալ եւ պճնեալ. օրհնեցէք մանկունք զքրիստոս թագաւորն: գրի

Այսօր ցնծան նորածնեալ որդիք լուսոյ յիշատակաւ սուրբ լուսաւորչին. որով հրաւիրեցան 'ի հարսանիսն անմահական, մտանել ընդ փեսային երկնաւորի 'ի յառագաստըն լուսեղէն. օրհ:

Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ. որով երկնային քահանայութեանցն հաղորդեալք. յոր վերափոխեալ այսօր մտանէ 'ի սրբութիւն սրբոց միշտ բարեխօսել առ Տէր վասըն մեր. օրհ:

Ժողովեալ սուրբ հայրապետքն հրաւիրմամբ հոգւոյն սրբոյ, վերստին հաստատեցին զառաքելական քարոզութիւնն, 'ի վերայ վիմի հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ: հայ

Որք զինու հոգւոյն սրբոյ արիաբար պատերազմեալք, վանեցին զընդդիմամարտ մոլութիւն հեր-

ձուածոյոյն. որպէս հովուք քաջք հերքեցին զգայլսն 'ի հօտէ գառանց:

Եւ ըղձանօք ձեռնարկողս սուրբ երրորդութեանն, ընդհանուր քարոզեցին յեկեղեցիս ուղղափառաց. հաւատալ 'ի հայր եւ յորդի եւ յամենասուրբ հոգին:

ոսկ Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտութիւն առաքելոյն թադէոսի. եւ աստուածային հրով մաքրութեան, ոսկի փորձեալ գըտայք 'ի բնակարանսն հրեշտակաց. ով երանելի սուրբ ոսկեանք, բարեխօսեցէք առ տէր մաքրել ըզմեզ 'ի մեղաց մերոց:

Որք անհրաժեշտ զաւանութեամբ քարոզեցիք ըզքրիստոս 'ի դրունս թագուհւոյն, մխիթարելով ըզքաջ նահատակն 'ի յափունս եփրատայ 'ի ծաղկազարդ վայելչութիւնս. ով երանելի սուրբք:

Որք անպարտելի մնացիք 'ի հրապուրանաց որդւոյ թագաւորին, չարչարեալք վասն քրիստոսի, սրագայէս խողխողեցայք պատարագ ընդունելի. ով երա:

հոգ Որ համագոյդ ես հօր և որդւոյ, անձառաբար բղխումն 'ի միշտ էէն. այսօր բղխեցեր ջուր կենդանի յերուսաղէմ. հոգի աստուծոյ ողորմեա:

Որ արարչակից ես հօր և որդւոյ, որով կենդանածնեալք 'ի ջուրս արարածք. այսօր որդիս աստուծոյ ծնանիս 'ի ջուրց. հոգի:

Որ փառակից ես հօր և որդւոյ, եւ քննես ըզխորս աստուծոյ. այսօր խորագէտս իմաստից զյիմարս աշխարհի արարեր. հոգի:

Յանհաւոր քո գալստեանն յորժամ գայ տէր 'ի յերկնից աստուածային քո զօրութեամբդ. եւ նշան սուրբ խաչին պայծառանայ 'ի մէջ երկրի: հան

Նորոգին տարերք երկրի 'ի ձայնէ հընչման փողոյն, որ գոչէ զկենդանութիւն. ասէ արիք եկն տէր կենդանեաց եւ մեռելոց:

Շնորհեա մեզ տէր ողորմութիւն 'ի ծագել սրբոյ խաչին որով եղեւ մեզ փրկութիւն. զի նովաւ եղցուք ընդ առաջ աստուածորդւոյդ որ 'ի յերկնից:

Ըզծնեալն 'ի սրբոյ կուսէն ընկալցուք 'ի սիրտս մեր հաւատով, որպէս երբեմն 'ի գիրկսն սիմէօն: ած

Օրհնեսցուք զառաքեալն 'ի հօրէ, որ 'ի խանձարուրս պատեցաւ վասն մեր, եւ փրկեաց ըզմեզ յանիծից ադամայ:

Ուրախ լեր անապատ ծարաւի, եւ ծաղկեա հաւատով երանութեամբ յայսմհետէ. քանզի քրիստոս յոյս յայտնեցաւ հեթանոսաց:

Այսօր որ էն 'ի յերկինս բան եւ ծնունդ հօր միածին, ըզծածկեալն 'ի յէից խորհուրդ յայտնեաց աշակերտացն, ծառայի ըզ կերպարանսն ծածկելով աստուածութեամբն: խաչ

Այսօր հնչեաց յառաքեալսն հայրական բարբառ յերկնից, ասէ դա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ. որ ըզբնութիւնն աստուածային կերպիւ ծածկեալ ծառայականն:

Այսօր վիմին հաւատոյ յայտնեալ զխորհուրդ երրորդութեանն, եր-

բանի յօրինմամբ տնդաւարացըն խորհրդոյ. որում ըզմեզ մասնակիցս լինել տաճար երրորդութեանն :

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ :

Ծիր մշակք անսպառելի կաթուղիկէ եկեղեցւոյ, եւ պըսակ պարծանաց հաւատացելոց . բարեխօ :

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից :

Հրաշափառեալք աստուածային խորհրդոյն, եւ բացօղք դրան արքայութեան երկնից . բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց :

Հրց ած Ի անկից բանդ հօր եւ հոգւոյն, որ իջեր 'ի յերկնից 'ի փրկութիւն ազգի մարդկան . աստուած հարցըն մերոց :

Որ պահեցեր յաղթող ըզճըգնութիւն սրբոց առաքելոցն . այսօր և մեք ընդ նոսին ցընծութեամբ օրհնեմք ըզքեզ, աստուած :

Որ առնել բարձրացեալդ ես յաւիտենից, այսօր ընդ դասս վըկայից քոց բարեբանեմք ըզքեզ, աստուած :

Գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան :

Որ ընտրեաց զերանելի առաքեալսն եւ նոքօք որսաց 'ի հաւատս ըզտիեզերըս քրիստոս . բարձր արա :

Որք ըզխաւար կռապաշտութեանցըն վանեցին եւ ըզլոյս գիտութեան ընդհանուր յերկիր ծաւալեցին . ընդ նոսին բարձր :

Մեծ Այսօր ընտիր ժողովուրդք ցընծացէք ընդ դասուս հոգւոյն սրբոյ . մեծացուցանելով ըզելողն 'ի հօրէ :

Այսօր ցընծան առաքեալքն, զարդարեալք 'ի շնորհաց հոգւոյն սրբոյ . մեծա :

Այսօր զուարճացան սրբարանք . ճըշմարիտ գալըստեամբ հոգւոյն սրբոյ . մեծացուցանելով ըզելողն 'ի հօրէ :

Տէր որ զգըլխաւորութիւնըդ քո զաւառս հեղեր յերկնից 'ի մէջ սըրբոյ առաքելոց քոց . աղաչանօք սոցա ողորմեա : Ողբ

Որ 'ի ձեռըն սոցա ըսփռեցան շընորհք հոգւոյդ սըրբոյ ընդ ամենայն երկիր . ողա :

Որ սոքօք լուսաւորեցեր մըկըրտութեամբ աւազանին զեկեղեցի քո սուրբ . ողա :

Որք 'ի սկըզբանէ պատուեալ եղեն 'ի տէր բոլորից հօր, առաքելական կոչմամբ ըզտիեզերս հրաւիրեցին յաւուրլ հանանել մասին . փառաւորութեամբ սոցա ամենեքեան օրհնեսցուք ըզտէր : Տէր

Որք ականատեսք եւ սպասաւորք եղեն մարմնացելոյ բանին . զեր 'ի վերոյ անմարմնոց դասուցն հանդիպելով շնորհի . փառա :

Որոց դատողական աթոռ ահեղ ատենին հանդերձեալ մընայ, կատարել 'ի մեզ դատաստան լաւ գրեալըն . առ սոսա անկցուք զըղջացեալ անձամբ պաղատելով, հաշտեցուցանել սոքօք ընդ մեզ ըզահաւոր զդատաւորն :

Առաքեալք աստուծոյ սիւնըք հաւատոյ կաթուղիկէ եկեղեցւոյ, քրիստոսի աստուծոյ երկնաւոր փառաւորեալին աշակերտք . բարեխօսեցէք շնորհել ըզխաղաղութիւն ամենայն աշխարհի : Տէր

Բարեկամք քրիստոսի եւ հաղորդեալք աստուածային խորհրդոյն . ընդունօղք ըզշնորհին կենաց եւ

լուսաւորիչք տիեզերաց․ բարե-
խօսեցէք շնորհել զխաղաղ։

Դատաւորք ահեղ ատենին եւ դատապարտողք ընդ քրիստոս ոչ խոստովանողաց, արդարութեամբ ընձեռ․ բարեխօսեցէք շնորհել զխաղաղութիւն ամե։

հմբ Ի քէն հայցեմք բարեխօսութիւն ՚ի ձեռն սրբոց քոց առաքելոցն․ խնայեա տէր ՚ի յանձինս մեր։

Զոր ընտրեցեր յառաջ գիտութեամբ պարգեւանացն անձինս, տպաւորեալ ՚ի նոսա զհոգի շնորհաց քոց․ որով վանեալ հերքեցին զամբարտաւանն զթշնամին․ բարեխօսութեամբ սոցա խնայ։

Որք ընդ աւազանին անդրանկութեան մերկացին յամենայն ախտից, ընդգեստաւորեալ զհեթանոսս, առաքելական կոչմամբ ՚ի յոյս կենացն յաւիտենից․ բարեխօսութեամբ սոցա խնայ։

Վասն որոյ եւ մեք հաւատացեալքս կատարեսցուք ըզյիշատակ սրբոց առաքելոցն․ աղաչեմք ըզքեզ որ միայն գթած ես․ առատաձեռնեա ՚ի մեզ ըզմեծ քո ողորմութիւն․ տէր որ կեցուցանես զամենայն արարածս։

մնկ դկ Աշակերտք քրիստոսի, եւ առ ամենայն տիեզերս առաքեալք, բարեխօսեցէք առ տէր վասն մեր։

Որք առիք զպատուէր քարոզել աներկիւղ զբանն կենաց յաշխարհի․ բարե։

Որք արժանի եղէք տեսանել մարմնով զորդին աստուծոյ յայտնապէս․ բարե։

ճչլ Որ սիրողդ էք արարչին արարածոց, քրիստոսի սուրբ առաքեալք․ բարե։

Որ քարոզդ էք ընդհանուր տիեզերաց, քրիստոսի սուրբ առաքեալք․ բարե։

Որ պսակդ էք ամենայն եկեղեցեաց, քրիստոսի սուրբ առաքեալք․ բարե։

---

ՇԱՐԱԿԱՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ԱՌԱՔԵԼՈՑՆ

Ի յանահաման ծոցէն հօր դթութեանց բղխմունք եւ սուրբ առաքեալք․ անդրանիկ խորհուրդք եւ լոյս գերագոյնից․ երկոտասան ազգաց պսակ սուրբ եկեղեցւոյ․ բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց։ օրհ ակ ճչլ

Աշխարհաշինին բանին բազկաց եդեալ հիմունք սրբոյն սիոնի․ լերինք անշարժք հաստատք ծաղկածինք․ հարազատ վէմք հաւատոյ պետրոս եւ անդրէաս․ բարեխօս լերուք առ։

Ի բարեբուն հօտոյն վտակք եւ որոտմունք տիեզերաց․ ցոլմունք հրեղէնք աստեղք լուսափայլք․ յիսուսի թագաւորին վակաս լանջաց սուրբ յովհաննէս եւ յակոբոս․ բարեխօս լեր։

Հայրապետական այգւոյն հրեղէն պարիսպք եւ բարձր աշտարակք․ ոսկեղէն բաժակք եւ ժիր մատրուակք․ հայաստանեայց հայր հոգեւոր բարդուղիմէոս եւ թադէոս․ բարեխօս լեր։

Քրիստոսական հօտին անմահ արօտք եւ ջուրք հանգստեան․ հըկոյլ հովիւք խաւարահալածք, բանաւոր փարախ սուրբքդ թովմաս եւ փիլիպպոս․ բարե։

Ի մաքրագործ հոգւոյն անօթ ընտրեալ եւ ձիւնափայլ. թագաւորք երկրի իշխանք աշխարհի. անպատկառ գանձուց բաշխող յարկոք ալփեան յուդամ յակոբեան. բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց։

Երեքսրբեան մի տէրութեան խորհուրդ կամաց եւ հաւասարապետք. փողոց հնչմունք բարբառք աւետեաց ընդ ամենայն երկիր սուրբքդ շմաւոն եւ մատաթիա. բարե։

Բանիւն կենաց կանուխ քարոզ եւ աւետարանիչ. եւդ փրկութեան հնչումն ահաւոր. ազգի մարդկան պարծանք սուրբդ մատթէոս. բարեխօս լեր առ քրիստոս վամ։

Անճառելի դրախտին սատէն տեսող և երրորդ երկնից. նրկատող բարձանց, խորոց բանալի. երեքտասան սուրբ առաքեալ պօղոս հայր համատարած. բարեխօս լեր առ տէր։



## ԿԱՆՈՆ

### ԽՕԹԱՆԱՍՈՒՆ ԵՒ ԵՐԿՈՒ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ ՔՐԻՍՏՈՍԻ

օրհ

դկ

Ի՛ՄԱ՛ՍՏՈՒԹԻՒՆ երկնային բխեալ ՚ի վերուստ, ժողովել զընտրեալսն ՚ի սկզբանէ զյիմարս աշխարհի. եւ լցեր լուսով քո իմաստութեան հալածել զօքօք ըզխաւարն անգիտութեան ՚ի մէնջ. աղաչանօք սոցա խնայեա ՚ի մեզ մարդասէր փրկիչ։

Ի ծովու ճանապարհորդեալ անհետ ընթացիւք, ՚ի ծովակէ կոչեցեր զորսորդս անբանից կենդանեաց ՚ի մահ. զնս ՚ի ծովէ աշխարհի որսացեն ըզբանականս ՚ի կեանս. աղա։

Բանիւ քո երկրի մշակդ երկնային. որ ետուր ըզսերմըն կենաց ՚ի լեզուս բանին մշակաց, եւ առաքեցեր սերմանել յոգիս բանաւորաց. աղաչանօք սոցա խնայեա ՚ի մեզ մարդասէր փրկիչ։ ✠

Որ զօրինակ երկոտասան առաքելոց քոց քրիստոս, եւ զեօթանասուն ընտրելոց աշակերտացն յառաջագոյն ծանուցեր ՚ի թիւ արմաւենեաց եւ աղբերացըն յաղէմայ. աղաչանօք սոցա խնայեա ՚ի մեզ մարդասէր փրկիչ։

Որ էն յէութեան որդի միշտ յէէն, անեղանելի ծնունդ հայրական. զոր ՚ի վերուստ հնչեցին որդիքն որոտման, եւ յայտնեցին որդւոց մարդկան զծածկապէս խորհուրդ։ որս

Բանն անբաւելին ՚ի կուսէն սկզբնաւորեալ, ՚ի յերկրի մարմնով երեւեցաւ. զոր տեսին քարոզք բանին ճշմարտութեան, եւ ծանուցին տիեզերաց աստուած եւ մարդ։

Իսկապէս բանն աստուած միացաւ ՚ի մարմնի, անփոփոխ գոլով յէութեան, որում եղեն ականատես որդիքն որոտման, եւ ընդհանուր քարոզեցին զբանն մարմին եղեալ։

Առաքեալ և նախավկայ քրիստոսի սուրբ ստեփաննոս, որ ըզքարկոծումն յանձն առեր, եւ յանմահից բնականացն վերա- ստե

փոխեցար. աղաչեա զաստուած շնորհել մեզ զկեանս անվախճան։

Տունկ անմահ իմանալի դրախտին շնորհեցար 'ի հօրէ, եւ լուսաւորեցար անճառապէս. այսօր ցնծան դասք հրեշտակացն ընդ քո մեծապայծառ ծննդութիւնդ. աղաչեա զաս։

Աստուածաստեղծ մարդոյն պտուղ ընծայեցար մերձ յանմերձենալի լուսոյն. եւ հայրենի աւանդութեանն եղեր ժառանգորդ. աղաչեա զաստր։

Ճանապարհ վերկայից յետ քրիստոսի գտար, եւ աստուածային փառացն արժանաւոր եղեր. բանաւորական զինու քո վկայաւորեցաւ, եւ նախաստեղծըն պայծառացեալ բերկրեցաւ. աղաչեա զաստր։

Դասակարգեալք եւ մեք ընդ անմարմնական բազմութեանն վերահայեցեմք ընդ հրեղէն լեզուացըն աղօթանուէր մաղթանօք, հայցեմք 'ի քէն մարդասէր փրկիչ, խնայեա 'ի մեզ ստեղծող մեր եւ կեանք աշխարհի։

Մարգարէից գերագոյն եւ մեծ 'ի ծննդոց կանանց. որ զտնօրէնութիւն աստուածորդւոյն 'ի յարգանդի ծանեար հոգւովն. աղաչեա զաստուած վասն մանկանց եկեղե։ յով

Յորովայնէ յորովայն երկրպագող քրիստոսի, որ զհզօրն աստուած մերով բնութեամբ մկրտեցեր 'ի յորդանան. աղա։

Կատարումն օրինաց եւ նախասկիզբն շնորհաց. որ հոգւոյն 'ի դժոխս քարոզեցեր զփրկութիւն գալստեամբն քրիստոսի. աղաչեա զաստուած։

Այսօր զիմանալի լուսոյն ծագողն 'ի խաւարի նստելոցս. զգրիգորիոս սուրբ հայրապետն եկայք վերապատուեսցուք։ գրե

Այսօր զանապական հոգւոյն պարգեւս բաշխող որդւոյ Թորգոմայ, յորդոր լուսոյ նորա ծնեալք, եկայք վե։

Այսօր զաստուածային բանին պատմող 'ի հայաստան աշխարհի, աշակերտեալք նորին մանկունք, ե։

Այսօր երգէ եկեղեցի որդովք իւրովք ընդ հրեշտակս, յիշատակի լուսաւորչին փառք 'ի բարձունս աստուծոյ։

Ի հարաչարժ աղբերէն անհատահոսդ վտակ, կենդանարար սուրբ հոգի, օրհնեալ ես լոյս ճշմարիտ։ հող

Այսօր 'ի սուրբ վերնատունն եկեալ աստուած ճշմարիտ, հրաշազարդեաց զառաքեալսն 'ի լոյս փառաց քոց հոգի։

Հրձուածական խնդութեամբ աշակերտացն լցեալ, փառաւորելով երգէին օրհնեալ ես լոյս գերազանց։

Թագաւոր փառաց քրիստոս անմահութեանց բաշխող. 'ի փառաւորեալ գալստեանն քո արժանաւորեա զննջեցեալսն մեր դասակից լինել սրբոց քոց մարդասիրապէս. որ ես միշտ 'ի յաթոռ փառաց։ հան

Զորս հաւասարեցեր ընդ սուրբս քո, հաղորդել մարմնոյ եւ արեան քո տէր. այսօր ընկալեալ հանգո զհոգիս նոցա, կենդանածնելով 'ի կեանսդ յաւիտենից մար։

Յորժամ առնես զհատուցումն

տէր, եւ սուրբքս քո պարծեցին 'ի քեզ. յայնժամ խնայեա 'ի դաւանողս քո, դասաւորեալ յաջակողմեան դասուն մեր:

աձ Այսօր զանճառելի ծննդեան քո տէր լուսաւոր խորհրդով, 'ի հողանիւթ գոյացութեանց փոխադրեցեր 'ի յերկինս:

Այսօր զանտանելի բանիդ բարձող ընդերկրեայն հողեղէն, բարձրացուցեր 'ի ստորինայնոցս վերակացիցըն կայանս:

Այսօր զանապական կոյսն որ ըզքեզ մաքուր կամաւք կերպարեաց, 'ի զգայական փոխեալ բնութեանց յիմանալեացըն խորանս:

խաղ Էջ մածինն 'ի հօրէ եւ լոյս փառաց ընդ նմին, ձայնիւք հնչեցին սանդարամետք անդընդոց:

Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին դրախտին, պատմէր ցնծութեամբ հաւատացեալ որդւոցն:

Եկայք շինեսցուք սուրբ ըզխորանըն լուսոյ. քանզի 'ի սմա ծագեաց մեզ լոյս 'ի հայաստան աշխարհի:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Որ շինեցեր ըզտուն քո զեկեղեցի իմաստութիւն հօր յիսուս. եւ կանգնեցեր 'ի սմա սիւնս զեօթնարփեան հոգւոյն զօրութիւն. եւ առաքեցեր ըզծառայս քո սուրբ զառաքեալսն կոչել զհեթանոսս յարբումն ուրախութեան խառնեցելոյ բաժակին. ադա:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Որ տիրական իշխանութեան հաղորդս արարեր ըզսուրբս զառաքեալսն, կապել եւ արձակել զորդիս մարդկան յերկինս եւ յերկրի, եւ աթոռակիցս լինել քեզ խոստացար յորժամ նստիս յաթոռ դատողական. ադա:

Որ 'ի հօրէ առաքեցար 'ի փըրկութիւն ազգի մարդկան, միածին հրց
որդի եւ բանդ աստուած. ըզքեզ դկ
բարեբանեմք աստուած հարցըն մերոց:

Որ զընտրեալսն 'ի քէն յառաջ քան ըզլինել աշխարհի, առաքեցեր ընդ տիեզերս աւետաւոր արքայութեանդ. ըզ:

Որ ըստ մարմնոյ չարչարանացըն քոց եղեն կամաւ չարչարակիցք, որոց 'ի փառսըն հայրենի լինել նըման քեզ խոստացար. ըզ:

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր գ
արարէք ըզնա յաւիտեան:

Եկեղեցիք հեթանոսաց հաստատեալք առաքելովքն. զբանն որով երկինք հաստատեցան, օրհ:

Քահանայք եւ ժողովուրդք միաբան ձայնիւ երգով. զլոյսըն ճըշմարիտ որ ծագեցաւ առաքելովքն, օրհնե:

Աստուածածին սուրբ լուսա- ձեձ
ւոր որ ըզցօղըն կենաց հեղեր յերկիր բանաւոր. եւ զխաւամօրըն շիջուցեր պատուեալն ըզհուր. անդադար ձայնիւ զքեզ բարեբանեմք, եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք:

Տեղի անտանելի բանին, եւ երկիր վայրափակ յորում լոյսն անանիցի. եւ արեւելք արեգականն արդարութեան. անդա:

Զքեզ կատարումըն մարգարէից կուսական քո ծննդեամբ որով բնութեանըս քակտեցան օրէնք, հրաբուն սերովբէն փոխադրեալ 'ի լուսաճեմ խորանն. անդա:

ողր Հայր անսկիզբն միածնիդ որում եւ տուր յաշխարհի. զընտրեալս քո 'ի սկզբանէ. անդ չանօք ան-ցայ ողորմեա մեզ:

Փառաւորն հօր ճառագայթ որ շնորհեցեր աշխարհի լուսաւորիչ զառաքեալսն. անդ:

Կենդանարար սուրբ հոգի որ 'ի լեզուս բաժանեալ հանգեար 'ի սուրբ առաքեալսն. անդ: տէր

Այսօր երկնայնոցն վայր իջեալ տօնեն ընդ հողեղէնս զգլխաւորն սուրբ առաքելոցն քրիստոսի, որք դասեցին ընդ մարդիկ ընդ հրեշտակս, փառաւորելով սուրբ զերրորդութիւնն համագոյ:

Այսօր պարակից եղեալ վերնոցն որդիք նոր սիոնի 'ի յիշատակի լեզուացն հրեղինաց, որովք եղեն ընդգեցեալք ընդ քրիստոս. փառաւորելով:

Այսօր քահանայք եւ պաշտօնեայք սուրբ եկեղեցւոյ տօնախմբեն զգլխաւորն լուսոյն ծագողացն, որովք մաքրեալք ծնութեամբ սուրբ հոգւոյն. փառաւորելով:

Յեկ ստ Առաքեալք սուրբք ընտրեալք 'ի սկզբանէ նախ քան զաշխարհս. որք արժանի եղէք տեսանել զանուն սուրբ հրեղինաց. բարեխօսեցէք առ տէր վասն մանկանց եկեղեցւոյ:

Բարեկամք քրիստոսի, համաբանեալք աստուածային նորին խորհրդոցն. որք 'ի հոսանուտ մեղաց ծովէս վերածիք զմարդիկ 'ի կեանս անմահ. բարեխօսեցէք առ տէր:

Գերագոյն քան զբնաւ անճառելոյն համբք երանութեան. որք 'ի գալըստեան տեառն նստջիք յերկոտասան աթոռսն քրիստոսի. բարեխօսեցէք առ տէր:



# ԿԱՆՈՆ

## ՅՈՎՆԱՆՈՒ ՄԱՐԳԱՐԷԻՆ

Իսկ զՕրհնութիւնն յապաշխարութեան ձայնեն ասա:

Որ զանճառելի ծածկապէս խորհուրդ անորէնութեանըդ քո մարգարէիւք տպաւորեալ ցուցեր. աստուած հարցն մերոց: հրց գ4 ստ

Որ զանապականն թաղումն քո յերկիր նշանակեալ յովնան, 'ի փոր կիտին պահելով կենդանի. աստուած:

Որ զփրկական քո աւետարանի գուշակելով զխորհուրդն, նինուէի քարոզէր ապաշխարութիւն. աստուած:

Գործք տեառն զտէր օրհնեցէք. Քաղցրաձայն երգով բարձր արարէք յաւիտեան: գ

Գիշերք զտէր օրհնեցէք:

Որ առաքեաց ողորմութեամբ զմարգարէն յովնան, քարոզել նինուէացւոցն ապաշխարութիւն. օրհնեցէք ընդ զուարթունս ամենայն ժողովուրդք, եւ բարձր արարէք զհայրն երկնաւոր:

Ամպք զտէր օրհնեցէք.

Որ ըմբռնեաց 'ի փոր կիտին զփախուցեալ մարգարէն, եւ ծանոյց զգթութիւնն անարատ պահելով. գովեցէք ընդ սերովբէս պաշտօնեայք քրիստոսի, եւ բարձր արարէք զէակից բանին հօր:

Խոստացեալ ըղձուէր օրհնեցայք.

Որ լուսով մարգարէին ’ի խորոց անդընդոց, եւ փրկեաց ’ի դըժոխոց ապականութենէ. բարեբանեցէք ընդ քերովբէսն քահանայք Աստուծոյ, եւ բարձր արարէք զփառակից սուրբ զհոգին.

մեծ Մարգարէն ’ի փորոյ կիտին աղաղակէր եւ ասէր. Տէր նայեաց յիս եւ մի տար զիս հե-ղօրիս այս.

Զայն բարձի ’ի խորոց անդընդոց առ Աստուած ողորմած. եւ ձայն աղաղակի իմոյ հասցէ ’ի լը-սելիս քո Տէր.

Բարեխօսութեամբ սուրբ Աս-տուածածնի եւ միշտ կուսի ա-ղաչեմ. Տէր փրկեա զիս ’ի յորոգայթէ անօրէնացն թըշ-նամւոյն.

ողր Ողորմութեանց բաշխող քրիս-տոս, որ գըթացար ’ի քո յարա-րածս. գըթա յիս ’ի մեղաւորս, որ ողորմածդ ես յամենայնի.

Որ ’ի բարկութեան զողորմու-թիւն յիշեցեր առ քո ստեղ-ծուածս. յիշեա զիս ըղմեղաւորս, որ ողոր.

Որ ’ի ժամանակեան մերձեալ մա-հուն փրկեցեր ըզնինուէացիսն. փրկեա զմեզ ’ի հրոյն յաւիտե-նից, որ ողոր.

ողր Կանխեալ յոլովանու առաքե-լով յամենահասութեանց պարգեւո-ղէն, նինուէի մահաբեր քա-րոզ.

Յահեղ բարբառոյ մարգարէին զարհուրելով թագաւորին, խո-նարհեալ զիջանէր ’ի սուգ.

Պահօք պատուիրէր ժողովր-դեանցն պաղատիլ առ Տէր, խընդրելով զթողութիւն մեղաց.

Ծագեալ առաւօտ խաղաղու-թեան յանմահաբար տեառնէն, եւ զմահու փարատեաց զերկիւղ. տէր

Ուստի օրհնութիւն նոր երգե-լին քեզ թագաւոր անմահ, փըր-կողիդ ’ի ձեռաց մահու.

Ընդ սոսա եւ զփըրկեալքս պա-տուական արեամբըդ քո սրբեա, փրկեա Քրիստոս ’ի հրոյն յաւի-տենից.

Յովնան մարգարէն աղաղա-կէր նինուէացւոցն. ահա ե-րեք աւուրք, եւ այլ ոչ եւս ի-ցէ նինուէ. տէր

Ձայնիւ հառաչմամբ պաղատէ-ին առ քեզ գըթած. փրկեա ըզմեզ ’ի մահանոյթ հրաւիրմա-նէս եւ կեցո.

Բացաւ ընդ լուսոյ առաւօտուն ողորմութեան քո դուռն. եւ լըւար ձայնի տըրտմոց անմեղաց բիւրաւորաց փրկելով ’ի մա-հուանէն.

Եւ մեք ընդ նոսին հայցեմք ’ի քէն փրկիչ ողորմած. փրկեա ըզմեզ ’ի սպառնալեաց գեհենոյն, եւ քեզ փառք յաւիտեանս ամէն.

Որ առաքեցեր զյովնան քարո-զել մեծի քաղաքին նինուէի, յայտնելով զանուանս քո զմարդասի-րութիւնդ. ընկալ եւ զիմս ա-պաշխարութիւնս. Ձնկ դձ

Ելեալ ’ի կիտէն երեքօրեայ թաղ-մամբ սահելով կենդանին, յօրինակ թաղման քո եւ յարութեան. կեցո եւ զիս զմեղօք ըղմեռեալս.

Որ լուար ձայնի աղօթից երկո-տասան բիւրուց եւ մանկանց տը-

ղայոց, ներող գթած եւ երկայնամիտ. լուր այժմ եւ ինձ որ կարդամս առ քեզ։

հմբ / բկ Ապաշխարութեամբ ապրեցաւ քաղաքըն Նինուէացւոց, 'ի լըսել ձայնի մարգարէին եղեւ թողութիւն մեղաց։

Եհաս բանն առ թագաւորն. պատուէր տայր ժողովրդեանն լըսել ձայն։

Ի բերանոյ մանկանց տղայոց զարքայն երկնից յօգնութիւն կոչէին լըսել ձայնի։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑՆ ՍԱՐԳՍԻ ԶՕՐԱՎԱՐԻՆ

օրհ / ակ ԱՄԵՆԱՍՈՒՐԲ երրորդութեանն ընտրեալ ծառայ եւ հաւատարիմ. յաղթող սպանողէն եւ քաջ նահատակ. Երագահաս սուրբըդ սարգիս շնորհաց օթեւան. բարեխօս լեր առ քրիստոս վասն անձանց մերոց։

Թագաւորին երկնաւորի սուրբ զօրապետ եւ մենամարտիկ. սիրով անմահին խաչեալ յաշխարհի. Երագահաս սուրբըդ սարգիս խաչիւ պըսակեալ. բարե։

Արեգականն արդարութեան մեծ կատարապետ պայծառ արուսեակ, ցոլացեալ յարեւմըտից 'ի յելս արեւու, Երագահաս սուրբըդ սարգիս անշէջ ճառագայթ. բարե։

Աւետաւոր հայոց մեծաց դիմեալ 'ի մէջ երկրի 'ի հիւսիսոյ. հողմըն հարաւոյ 'ի դաշտ ծաղկածին, Երագահաս սուրբըդ սարգիս տունկ անմահութեան. բա։

Առաքելական զինու վառեալ մըտեր 'ի մեծ հանդէս քաջութեան, մարտիրոս որդւովդ 'ի պարս վկայեալ, Երագահաս սուրբըդ սարգիս եւ մարտիրոս մեծ պըսակաւորք. բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց։

Գերագոյն պատիւ առեր 'ի բարձրելոյն բանին բարեխօս, կատարիչ խընդրուածոց, լըսող աղօթից. Երագահաս սուրբըդ սարգիս դիւաց հալածիչ. բարեխօս լեր առ քրիստոս վասն։

Ցուցեր կենաց մարդկան զօրեղ բըժիշկ, սփոփիչ տրտմութեանց, նեղելոց դիւրիչ, վըշտաց մըխիթար. Երագահաս սուրբըդ սարգիս գերեաց գերեհան. բարե։

Գեղեցիկ անուն բարի քաղցր եւ անոյշ պըտուղ շըրթանց հաւատացելոց. 'ի գիշերի եւ 'ի տուընջեան յուսով կոչեցեալ, ընդ ամենայն տեղիս յիշեալ եւ փառաւորեալ. Երագահաս սուրբըդ սարգիս գերեաց ազատիչ. բարե։

Էակից բանն 'ի հօրէ իջեալ յերկնից ըզկնի ձայնիդ. ուստի զաբրիէլ վերառաքէր զկոյսըն մարիամ առ ամլութեամբ յղացեալն ըզքեզ յորովայնի. առ քրիստոս բարեխօսեա վասն անձանց։ յով

Ընդ ժամանել ձայնի ողջունին մարիամու առ եղիսաբեթ, խայտացեր ձայնդ ընդ առաջ բանին աստուծոյ, յորովայնէ ամլոյն երկըրպագելով. առ քրիստոս։

Թագաւորըն բոլորից պարածածկեալ յարգանդի կուսին, զոր ծա-

ուղղ հաւատարիմ տեսեալ հոգ-
ւովըն սրբով, եւ բերանով մօր
քո օրհնաբանեսիր. ստ քրիստոս։

[առ] Ի մաքրանդորձ հոգւոյն անօթ
ընտրեալ եւ ձիւնափայլ. Թագա-
ւորք երկրի իշխանք աշխարհի. ան-
պանկան դանձուց բաշխող յակոբ
ալփեան յուդա յակոբեան. բարե-
խօս լերուք առ տէր վասն անձանց
մերոց։

Երեքսրբեան մի տէրութեան
խորհուրդ կամաց եւ հաւասարա-
պետք. փողոց հընչմունք բար-
բառք աւետեաց ընդ ամենայն եր-
կիր սուրբք շմաւոն եւ մատա-
թիա. բարե։

Բանին կենաց կանուխ քարոզ եւ
աւետարանիչ. երդ փրկութեան
հընչումն ահաւոր. ազգի մարդկան
պարծանք սուրբք մատթէոս. բա-
րեխօս լեր առ քրիստոս վա։

[առ] Աղաչեմք ըզքեզ տէր բարեխօ-
սութեամբ սրբոց առաքելոց, որք
նահատակեցան ՚ի ճակատամարտ
պատերազմի, յաղթող գտան
ընդդէմ թշնամւոյն, բարեխօսու-
թեամբ սոցա քրիստոս խնայեա
՚ի մեզ։

Որք առին զսպառազինութեան
զրահս հաւատոյ սրտից իւ-
րեանց, եւ ընկալան ՚ի գլուխ սա-
ղաւարտ փրկութեան ընդդիչան
խաչին, մտանէր ընդ մէջ ածեալ
ըզճըշմարիտ սուրբ հոգին. բա։

Որք մաքրեցին զանձինս իւրեանց
տաճար անուանել քում սրբոյ,
եւ բուրեցին հոտ անուշութեան
զաղօթս իւրեանց, ՚ի տեղւոջ հեղ-
ման սուրբ արեան իւրեանց. բա-
րեխօսութեամբ սոցա քրիս։

[հոգ] Որ առաքեցար ՚ի հօրէ հոգիդ
անեղ եւ համագոյ. աղաչանօք
տնօրինաբար քում էակցին. լինել
մխիթարիչ սուրբ առաքելոցն.
աղաչեմք ըզքեզ ողորմեա։

Որ իջեր տիրաբար յերկնից սաս-
տիկ հողմոյ նմանն ասուած յայտ-
նապէս, եւ ՚ի հրեղէն լեզուս բա-
ժանեալ հանգեար ՚ի դասս առա-
քելոցն. աղա։

Որ արբուցեր երկնաւոր գինեաւն
իմաստութեան զհոգիս սրբոց քոց
առաքելոցն. որք արբուցին զըստա-
մեցելոց որդւոց ադամայ ըզբա-
ժակն ուրախարար յայդւոյն եդե-
մայ. աղա։

[համ] Յորժամ յերկնից գոչէ փողն
ազդեցութիւն առնելով տիեզե-
րաց ՚ի դատաստանին ահաւոր. յայնժամ
աւուր ահեղին յիշեա տէր եւ
զմեր ըզնընջեցելոյս. եւ հանգո
ընդ սուրբս քո։

Յորժամ ճառագայթք աստուա-
ծութեանըդ փայլին ՚ի յարուե-
լից. եւ դըրպութիւնք հրաշէիցըն
բանին. յայնմ աւուր ահե։

Զարհուրեալ դողան արարածք ՚ի
ձայնէ սոսկալի փողոյն. յորժամ
հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ
՚ի դատաստան զազգս որդւոց մարդ-
կան. յայնմ։

[ած] Անըղկիզըն աստուած անձա-
ռելի անբաւ զօրութիւն. որ իւ-
կըզեանց յաւիտենից խնամակալե-
ցեր զորդիս ադամայ. դերանդիւն
այօր շնորհիւ փայլեալ ցուցեր
ծընընդեամբ զմայր միածնիդ քո
ընտրելոյ. աղաչանօք սոցա խընա-
յեա ՚ի մեզ։

Որ յանէից բանիւ գոյացուցեր

զաշխարհս ամենայն. այսօր մար-
գարէական տնօրինօք 'ի յան-
նայէ առնէր հիմունս նորոյ աշխար-
հի. աղաչանօք:

Ի յամուլ երկրէ այսօր բուսաւ
մեզ բարեբեր բոյսըն բարի. շու-
շան հովտաց ծաղիկըն դաշտաց.
միամայրըն մարիամ արմատ տըն-
կոյն անմահութեան. աղաչանօք:

խաչ Որ 'ի սկզբանէ իմաստութեամբ
հաստատեցեր զեկեղեցի հօր իմաս-
տութիւն. զոր նախանըկար տե-
սութեամբ նըշանակեալ մովսէս
խորանաւն երկնահանգոյն 'ի սինա
լերինն, լուսաւորելով փառօքն
աստուծոյ:

Որ ըզխորհուրդ անապական սնո-
րէնութեանըդ քո 'ի սըրբոյ կու-
սէն. տըպաւորելով տապանակն
աստուածային ուխտի կտակարա-
նաց բանիւդ աստուծոյ. փառաց ա-
նեղծդ տեղի հանգըստեան:

Որ 'ի կեանս վերադարձի բնու-
թեանս դարձմամբըն յորդանանու
օրինակեցեր. եւ ըզբընութիւն
մահու եւ զըժոխոց կործանմամբըն
երիքովի տապանակաւ խաչիւն հրա-
շագործեալ նոր իսրայէլի. օրհնու-
թիւն քեզ տէր երգեսցեն ման-
կունք:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Սաղաւարտ յուսոյ անմահ բանին
եդեալ 'ի գլուխ մերոյ իշխանին.
առաքեր այժմ վահան հաւատոյ քրիս-
տոսանէր զօրաց եւ զօրավարաց,
ամենահաս սուրբըդ սարգիս ա-
մուր պարիսպ ընտիր հեծելոց. բա-
րեխօս լեր առ քրիստոս վասն ան-
ձանց մերոց:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Խաչաչարչար սուրբ դիտապետ նը-
շանագործ անուամբ 'ի խաչ եւ
յեկեղեցի. առաւել պայծառ 'ի
գլուխըս գագաթ 'ի գագաթան տեղ-
ւոյն օրհնեալ սըրբոյն մեսրովպայ.
երագահաս սուրբըդ սարգիս բա-
գնեաց կործանիչ. բարե:

Զինուորութիւնըք հրեշտա- հրց
կաց օրհնեն ըզքեզ. իմանալի ձայ- գկ
նիւն ըզքեզ փառաւորեն. աստը-
ւած հարցըն մերոց:

Իշխանութիւնք և պետութիւնք,
սերովբէք և քերովբէք փառաւորեն
սուրբ զանունըդ քո. աստուած,

Ազգ մարդկան հողեղինաց դա-
սուց մարտիրոսաց երկրպագեն
տէրութեանըդ քո. աստուած:

Ըզտէր օրհնեցէք բարձր ա- գ
րարէք ըզնա յաւիտեան:

Զոր փառաբանեն 'ի բարձունս ի-
մանալի զօրութիւնքըն. ժողո-
վուրդք օրհնեցէք:

Որում երկրպագեն գովելով
դասք սըրբոց մարտիրոսացըն. քա-
հանայք օրհ:

Ամենագովելի եւ քան զերկի- մեծ
նըս բարձրագոյն, որ զանհաս ա-
նելի ըզտէրըն յորովայնի քում
կրեցեր, եւ ցընծութիւն աշխար-
հի ծընար. վասն որոյ ամենեքեան
ըզքեզ միշտ մեծացուցանեմք:

Ամենապայծառ բերկրեալ միշտ
կոյս, որ զանբաւելի ըզբանն ան-
ձառաբար յղացար, եւ ըզմարմ-
նացեալն աստուած ծընանելով 'ի
քէն. վասն որոյ:

Ի լեռնէ վէմն առանց ձեռին
հատեալ դանիէլ գուշակեաց
զանեղծըն ըզծընունդ քո հայրն

երկնաւոր, մայր եւ յետ ծննդեան մնալով կոյս. վասն որոյ։

ողր Նայեաց 'ի մեզ եւ ողորմեա մեզ քրիստոս, որ ունիս բազում գթութիւն։

Որ հայրդ ես որբոց եւ դատաւոր այրեաց քրիստոս, որ ու։

Որ պսակիչդ ես սրբոց, լուր եւ մեզ աղօթիւք սոցա քրիստոս, որ։

տէր Այսօր հրեշտակաց դասքն 'ի յերկինս ուրախանան 'ի վերայ ճգնութեան սրբոցն։

Այսօր ճգնազգեաց սրբոց դասքն 'ի յերկրի պսակեցան, երկնային աստուածեղէն փառօքն։

Այսօր անմարմնոց զինուորութիւնքն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինաւորաց բազմութիւնքն ընծայեցան 'ի խորան սրբութեան երկնից։

Թվկ Զինաւորըն քրիստոսի 'ի հօրէ
ճչւ առեալ պարգեւս, յաստուածա-
աձ տունկ 'ի դրախտէն ծագեցաւ մեզ շառաւիղ. որ է զէն յուսոյ վահան հաւատոյ։

Իսկ երանելի վկայն քրիստոսի զօրանայր 'ի սուրբ հոգւոյն. զի զերանութեանցն առնոյր ըզշնորհս ողորմութեան, որ է զէն։

Աստ առաջիք ըզյիշատակ սրբոցն սարգսի զօրավարին. որ է դուռն երկնից եւ ճանապարհ արքայութեան. եւ մեզ զէն։





# ԿԱՆՈՆ

## ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻՆ

ԲԱՆՆ որ ընդ հօր յէութեան օրհ
եւ համագոյ սուրբ հոգւոյն. դկ
ըզպատկերն իւրական խառնեալ ընդ հողանիւթ բնութեանս. զոր զարդարեալ փառօք եդ 'ի դրախտին փափկութեան։

Յորում ցընծայր զուարճացեալ անտըխրական խնդութեամբ. քանզի զաստուած տեսանէր միշտ խոնարհեալ 'ի դրախտին. յորմէ զլուսոյն ճառագայթ ըմպաւորէր 'ի յինքեան։

Վասն որոյ աղաչեմ մայր աստուծոյ մարիամ. զմիածին քո զորդին զի շնորհեսցէ ըստ աւազակին ժառանգել վերստին մեզ ըզդրախտին վայելչութիւն։

Այսօր յօրինակ նախաստեղծին ✻
ադամայ, որ 'ի դրախտին փափկութեան ուրախանայր ընդ հրեշտակս. ցընծասցուք եւ մեք 'ի յօրհնութիւնս հոգեւորս։

Այսօր 'ի խորհուրդ աստուածաստեղծ նախահօրն, որ 'ի պտղոյն եդենայ ճաշակելով զուարճանայր. ճաշակեսցուք եւ մեք ըզպատուիրանս աստուծոյ։

Որ ողորմութեամբ զգեցար մարմին, եւ նորոգեցեր ըզհնացեալքս. նորոգեա եւ զմեզ հոգւով քրիստոս. եւ ողորմեա։

Որ 'ի խաչին մեռար մարմնով, եւ զմեռեալքս դարձուցեր 'ի կեանս. կեցո եւ զմեզ հոգ։

Որ յարեար 'ի մեռելոց, եւ յարուցեր ընդ բնութիւնս մեր յուսով. յարո և զմեզ հոգ։

Որ ըղխելին քո զղազարոս կոչեցեր 'ի գերեզմանէն. կոչեա եւ զմեզ հոգւով 'ի կեանս. եւ ո։

Նորահրաշ տեսլեամբ յարութեան քո տէր, ահեղակերպ փայլմամբ զարհուրեցան դժոխք, եւ մեռեալք ընդ կենդանեաց յարեան 'ի հաւատս համօրէն յարութեանն։

Յորժամ փառօք հայրենի քրիստոս ծագիս 'ի յերկնից, եւ յարուցանես ըզմեռեալս. յայնժամ դասեա ընդ աջմէ քումմէ, եւ կոչեա ըզմեզ 'ի փառս քո։

Յորժամ հեծանոցաւ դատողութեան քո տէր, սրբես ըզկալ աշխարհի. յըշտեմարանս արքայութեանդ. ժողովեա զմեզ ընդ արդարոցն։

Յորժամ եկեղեցի հարսնացեալ միանայ ընդ փեսային, ընդ իմաստուն սուրբ կուսանացն արժանացո առագաստին ըզմեզ, ընդ նոսին երգել ըզփառս 'ի բարձունս։

Յիշեա զմեզ տէր յորժամ գաս թագաւորութեամբըդ քո։

Շնորհեա մեզ տէր զթողութիւն բազում յանցանաց մերոց։

Ուսո մեզ տէր փառս տալ մեծի տէրութեանըդ քո։

Օրհնեմք ըզքեզ անսկիզբըն հայր. որ յամենայն ժամ օրհնիս 'ի դասուց քերովբէից։

Գովեմք ըզքեզ միածին որդի. որ անդադար փառաբանիս 'ի դասուց սերովբէից։

Անդադար բերանով անհանգիստ բարբառով բարեբանեմք սուրբ զհոգիդ. որ փառակից ես հօր եւ որդւոյ։

Մի աստուածութիւն երրորդութիւն անբաժանելի, որ 'ի հրեշտակաց անդադար օրհնաբանիս։

Անմարմնոց զինուորութիւնք փառաբանեն ըզքեզ, իշխան հայր աստուած։

Զորեքկերպեան կենդանիքըն վայելուչ աղաղակեն առ քեզ, իշխանակից որդի եւ բան աստուած։

Իշխանութիւնք աթոռոց գովեն ըզքեզ, ամենասուրբ հոգի և բոլորից աստուած։

Օրհնեմք ըզքեզ անեղ անսկիզբըն հայր. անհասանելի եւ փառաւորեալ յանմարմնոց զինուորութեանց։

Գովեմք ըզքեզ որդի հօր արարչակից բանդ. նորոգող և կեանք ազգի մարդկան թագաւոր յաւիտենից։

Զքեզ բարեբանեն ամենայն ազինք. մըշտընջենաբուղխ անըսպառ աղբիւր սուրբ հոգիդ ճըշմարտութեան։

Աստուածածին և սրբուհի. ած
որ ըզբանն աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. անդադար երգով մեծացուցանեմք։

Զքեզ մայր կուսութեան և յղութեան լուսոյ, և առագաստ անճառելւոյ բընակողին 'ի քեզ փեսայացեալ բանին. ան։

Քեւ լուծան կնիք դատապարտութեան. եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ. վասն

որոյ ըղձէր աստուածածին եւ
կոյս. անդադար երգով մեծա-
ցուցանեմք:

խաչ Խաչին քո քրիստոս երկրպագեն
արարածք ամենայն, որ 'ի փրկու-
թիւն մեզ կանգնեցաւ. սա եղի-
ցի մեզ պահապան յաղթող, ապա-
ւինեցուցանել ըզմեզ 'ի պատրանաց
բանսարկուին:

Ի սմա բարձրացար բարձրեալդ անե-
ծից, որ փառաւորեալդ ես ընդ
հօր. ժողովեալ ըզհեռացեալսըն
կենսաբեր փայտիւն. ապրէ:

Սովաւ լուսաւորեցան արարածք
ամենայն. սմա ապաւէին արդե-
լեալքն 'ի մեղսաւէր բանտին. որ
ազատեաց ըզմեզ 'ի պատրանաց
բանսարկուին:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Այսօր 'ի տիպ պատմուճանին ա-
ռաջնոյ, որով պըճնեալ զարդա-
րիւր 'ի փառս մարդն առաջին,
զարդարեսցուք եւ մեք աստուա-
ծային օրինօք:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Ցընծա մարիամ արեգակնն ար-
դարութեան արեւելք, եւ աղա-
չեա զու 'ի քէն զծընեալն աստուած
վասըն մեր. զի դարձուսցէ վերըս-
տին ըզմեզ 'ի դրախտին ժառան-
գութիւն:

հրց Ուրախացիր եկեղեցի քրիստո-
աձ սի, փրկական տնօրէնութեամբ
մարմնացելոյն 'ի կուսէն վասըն քո,
աստուծոյ հարցըն մերոց:

Այսօր ցընծան որդիք ադամայ.
քանզի որ 'ի սկզբանն օրինադիր
պահոցն 'ի դրախտին վասըն մեր
պահեաց մարմնով յանձն առնու,
աստուած հայր:

Այսօր երկրորդ ադամ վասն ա-
ռաջնոյն անճաշակ լինելով, ըզ-
ճաշակաց պտղոյն քաւել ըզպար-
տիս, աստուած հայր:

Ըզտէր օրհնեցէք բարձր ա- գ
րարէք ըզնա յաւիտեան:

Որ ըստ պահոց քառասնօրեայ
փրկողին պահելով հարսնացեալ
եկեղեցի. զի մըտցէ 'ի յառագաստ
ընդ փեսային յարուցելոյ. բարձր
արա:

Եկայք հաւատացեալք քրիստո-
սի, ցընծութեամբ պահեսցուք,
ընդ անմահին մահու մեռանելով
մեղաց. զի յարութեամբ նորա
կենդանանացուք արդարութեամբ.
բարձր արա:

Որ ընտրեցար 'ի սկզբանէ ա- մեծ
նապական կոյս մարիամ լինել տա-
ճար սըրբութեան, անճառ լու-
սոյն որ 'ի հօրէ. առ նա միշտ բա-
րեխօսեա կեցուցանել ըզմեզ:

Որ առ 'ի քէն երկրորդ ադամ
վասն առաջնոյն յանցանաց, բնու-
թեամբ մերով պահելով, զմա-
հաբեր պտղոյն լուծեալ զպատ-
րանս. առ նա միշտ:

Արդ աղաչեա մայր աստուծոյ
զծնեալն 'ի քէն վասըն մեր, զի
ընդ նմին պահելով սուրբ յա-
րութեամբ նորա նորոգեսցուք.
առ նա միշտ բարեխօսեա կեցու-
ցանել ըզմեզ:

Թիւնս իմ. Ողորմեա ինձ ողր
աստուած:

Որ զառաջինն ոչ պահելով ըզպա-
տուիրանըն մեռաք, շնորհեցեր
քեւ օրինակ մեզ պատուիրան կե-
նաց, զի պահելով կենդանանա-
ցուք. ող:

Որ 'ի խորհուրդ քո կամաւոր մահուամբն եկեղեցի քո քրիստոս, մեռանելով օրինաց մեղաց, զի յարուցեալ ընդ քեզ նորոգեսցի 'ի փառս. որ։

տէր Ի՝ բարձանց. Փառք յարութեան քո տէր։

Որ տէրամօրական չարչարանաց խաչի քո քրիստոս, եկեղեցի հեթանոսաց չարչարակից գոլով քեզ սրբութեամբ պահօք. փառք յա։

Տուր մեզ տէր մահու քո նըմանիլ մեռելութեամբ մեղաց, զի և կենաց քոյ հաղորդիլ արժանացուք կենդանարար արքայութեանդ. փառք յա։



Ահա եդաք Օրհնութիւն պահոց զուրն ձայնի ապաշխարութեան Ողորմեայսն կարգաւ :

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

ած Հայր բազումողորմ խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին. թող ինձ ըզմեղս իմ, եւ ողորմեա։

Տէր որ գթացար 'ի կինըն քանանացի, գթա եւ յիս 'ի մեղաւորս, եւ ող։

Տէր որ դարձուցեր զմաքսաւորն 'ի գիտութիւն ճշմարտութեան, դարձո եւ զիս ըզմոլորեալս, եւ ողորմեա։

Աստուած բազումողորմ, խնայեա յարարածըս քո հայր ամենակալ, եւ ող։

Արեգակն արդարութեան, ծագեա 'ի հոգիս մեր ըզլոյս ճշմարտութեան, եւ ող։

Տուր մեզ տէր զխաղաղութիւն, եւ փրկեա 'ի նեղչաց մերոց հոգիդ ճշմարտութեան, եւ ող։

Ի նեղութեան իմում օգնեա ինձ տէր, որպէս երբեմըն յովնանու, եւ ող։

Ի յանցանաց իմոց մաքրեա զիս տէր, որպէս երբեմն ըզմաքսաւորն, եւ ող։

Ի նենգաւոր շրթանց փրկեա զիս տէր, եւ յարենէ ապրեցո, եւ ող։

Զըղջման իմոյ զարտասուս արկանեմ առաջի քո քրիստոս, թող ինձ ըզմեղս իմ որպէս երբեմն ըզպոռնիկին, որ միայնդ ես բազմագութ։

Անկանիմ առաջի քո քրիստոս, որ հովիւդ ես բանաւոր հօտի, խնդրեա եւ զիս ըզմոլորեալս, որ մի։

Ըզմեղս իմ ցուցից քեզ քրիստոս, որ բժիշկդ ես հոգւոց եւ տէր կենաց, բժշկեա եւ զիմ զհիւանդութիւնս, որ մի։

Վտանգիմ 'ի բազմութենէ մեղաց իմոց. աստուած խնայողութեան օգնեա ինձ։

Ակնածիմ հայցել անօրէնութեան իմոյ. թագաւոր խաղաղ։

Ի՝ խորոց մեղաց ծովու տարաբերեալ ծփիմ. նաւապետ բարի փրկեա զիս։

Թիւն իմ. Ողորմեա ինձ աստուած։

Ի լուել ըզձայն փողոյն յահագին աւուրն, յորժամ ձայնիցէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան, ողո։

Ի նըստիլ քո յատենին դատաւոր

անհեղ, յորժամ առնես հրափորձութեամբ ըզքննութիւն որդւոց մարդկան, ողո՛:

Որ առ 'ի քէն երկրորդ ադամ վասն առաջնոյն յանցանաց, բնութեամբ մերով պահելով, զմահաբեր պտղոյն լուծեալ զպատրանս. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Արդ աղաչեա մայր աստուածոյ զծնեալն 'ի քէն վասն մեր, զի ընդ նորին պահելով սուրբ յարութեամբ նորա նորոգեսցուք. առ նա միշտ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Ի միասնդամ գալըստեան աստուածորդւոյն, սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց:



ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

ակ Ո՛վ կենցաղոյս հանապազ զիս ալէկոծէ:

Մըրըրկեալ ալիք թշնամին ինձ յարուցանէ:

Նաւապետ բարի լեր անձին իմոյ ապաւէն:

Մերձ եմ յընկըղմիլ, օգնեա ինձ նաւապետ բարի. քանզի ծանրացան 'ի վերայ իմ բեռինք մեղաց:

Աստուած յօգնել ինձ փութա քանզի խորք չարեաց ընկղմեն զիս յանդունդս. այլ դու նաւապետ լեր եւ ինձ ձեռնտու:

Փրկեա 'ի վտանգէ ըղնաւաբեկս 'ի յալեաց ծովէ. քանզի կորնչիմ 'ի մեղաց անօրէնութեան իմոյ:

Աղաչեմ ըզքեզ տէր պարգեւեա ինձ ապաշխարութեամբ լուանալ ըզմեղս իմ, եւ ողորմեա:

Զարտասուս իմ եւ զհառաչանս սրտի իմոյ մարդասիրութեամբդ քո ընկալ տէր, եւ ող:

Մերձեցին խնդրուածք իմ առաջի քո տէր. բարերարութեամբդ քո խնայեա յիս, եւ ող:

Աղաչեմ ըզքեզ հայր երկնաւոր, մի դարձուցաներ զերեսս քո յինէն, զի նեղեալ եմ ես վաղվաղակի լուր ինձ տէր:

Մոլորեալ անձն իմ անօրէնութեամբ, մի կորուսաներ զիս տէր ըստ անօրէնութեան իմոյ, որ խընդրողդ ես մոլորեալ ոչխարիս:

Ծանրացեալ մեղօք ընկըղմի անձն իմ, ընկալ զիս որպէս երբեմն ըզպետրոս, որ ծըփիմս ալէկոծեալ յանցանօք:

Մեղայ տէր բազումողորմ աստուած. մեղայ ողորմեա:

Մեղայ տէր եւ անկանիմ առաջի քո. մեղայ ող:

Մեղայ տէր խոստովանիմ ըզյանցանս իմ. մեղայ ող:

Թիւնս իմ. Մեղայ քեզ տէր, քաւեա զիս:

Մեղաք անօրինեցաք ամենեքեան. ոչ պահեցաք ըզպատուիրանս քո. մեղայ:

Դարձիր տէր 'ի բարկութենէ քումմէ. անցո 'ի մէնջ ըզցասումն քո. մեղայ:

Որ ըզբանն անեղական զէակն էից գոյացութեանց անճառաբար ծընար մարմին եղեալ 'ի փրկու-

թիւն եղականացս. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ ըզպըտուղն 'ի քէն կենաց ընծայեցեր մեռեալն ադամայ. զորոյ պտղօք քառասնօրեայ քաւեաց զպըտղոյն ճաշակումն, եւ յանվախճան ըզնոյն վերածեաց 'ի կեանս. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ի միւսանգամ քո գալըստեանըն յերեւիլ տուրք նըշանիս, արժանի արա ըզծառայս քո վերըստին նորոգման. զի դու միայն ես թագաւոր փառաց օրհնեալ յաւիտեան։



ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

բծ Դարձո զցասումըն քո 'ի մէնջ, յաղագակեալ հողեղինացս. բազմագութ տէր խնայեա եւ մի կորուսաներ։

Կանգնեա զանկեալս 'ի գլորմանէ, զվիրաւորեալս 'ի թըշնամւոյն. որ բըժիշկդ ես հիւանդաց, բըժըշկեա զիմ զհիւանդութիւնս։

Ի յանցանաց իմոց թամբծեալ անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսաւորն. մատըուած քաւեա զիս ըզմեղաւորս։

Աներեւութից քըննող գաղտնեաց, բըժըշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն եւ կեցո միայն մարդասէր։

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան, ողորմեա անձին իմոյ բազմամեղի եւ կեց։

Ամենաբաւական ողորմութեան շնորհ, պարգեւեա ինձ յահագին աւուրն ըզթողութիւն եւ կեցո միայն մարդասէր։

Բազում են քո գըթութիւնքըդ բազմամեղ անձին իմոյ. ողորմեա մատըուած քաւիչ իմ։

Զի քեզ անխըշաչար տէր մեղայ չարին խաբմամբ. ողոր։

Ի քո 'ի միւսանգամ գալըստեանըն յորժամ գաս դատել զերկիր. ողոր։

Մեղաք մինչեւ յերկինս եւ զարդար ըզցասումըն քո շարժեցաք 'ի մեզ. տէր ըստ մեծի քում ողորմութեանդ ողորմեա մեզ։

Իջաք մինչ 'ի դըժոխս ընկըղմեալք յանօրէնութեան մերում. տէր յիշեա ըզգինս արեան որդւոյ քո եւ ողորմեա։

Հալածեա 'ի մէնջ տէր նըշանաւ խաչի քո զընդդիմամարտ եւ զաներեւոյթ գազանն. եւ մի տար յապականութիւն զքո ժառանգութիւնս։

Տաճար լուսոյ անըստուերին եւ առագաստ անճառ բանին. որ ըզնախնւոյ մօրն եւային բարձեր զանէծսըն տըրտմական. հայցեա յորդւոյ քո միածնի հօր հաշտութեաննըն միջնորդի. բառնալ 'ի մէնջ ըզխռովութիւն եւ տալ զոգւոց խաղաղութիւն։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Աստուածածին անհարսնացեալ յերկրէ յերկինս հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ նըման քո միածնիդ յաջակողմեան. յայնժամ մաղթեա ընդ մեր ըզնոյն փըրկել ըզմեզ յահեղ բոցոյն. համագա-

սիւ ընդ անդամոցն երգել ըզփառս ընդ երկնայնոցն ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ։

Երեւեալ անխառնըմբն անլըն պատուակըն 'ի ձեռն խաչին. հերձանելով ըզծածկըն կարմիր, առաջնորդելով ժողովրդեանըն սեանս ամպոյ լուսոյ անձնկենլին. որ ձեւացոյց մեզ անխառն մըտանել ընդ դուռն անեղաշէն դրախտին տեառն ։



ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

բկ Յամենայն ժամ աղաչանք իմ այս են. 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս տէր ։

Յանցանաց իմոց զորհնուրն սիրտ իմ. աղաչեմ ըզքեզ թող ինձ տէր ։

Արտասուաց իմոց մի լինէր տէր. զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի ։

Թիւնս իմ. Ողորմեա ինձ անտըւած իմ ողորմեա ինձ. զի անպատասխանի եմ յամենայնի թող ինձ տէր ։

Տնտեսական. Ճանապարհք քո ուղիղ են, ես միայն մոլորեցայ. դարձո զիս եւ ողորմեա ինձ աստուած ։

Թեան քո. Դատաստանք քո արդար են, ես միայն եմ մեղուցեալ. քաւեա զիս եւ ողորմեա ինձ աս ։

Յոյս իմ ես դու տէր քաւիչ յանցանաց իմոց. մի անտես առնէր զըղջումն արտասուաց իմոց. ողորմեա ինձ աստուած ։

Առ քեզ ապաւինեցայ որպէս զաւանակ որդին. հայր մեղայ յերկինս եւ առաջի քո. ող ։

Փրկեա զիս աստուած 'ի բազում մեղաց իմոց. արա արժանի քոյին սուրբ արքայութեանդ. ող ։

Մեղք իմ բազում են յոյժ ծանր են քան զաւազ ծովու. քանզի քեզ միայն մեղայ ողորմեա ինձ աստուած ։

Բաց տէր ըզդուռն ողորմութեան որ ողբալով կարդամ առ քեզ. քանզի քեզ ։

Հեղ յիս ըզգթութիւնդ քո բազումողորմ եւ մարդասէր. քանզի քեզ ։

Թիւնս իմ. Մեղայ քեզ տէր. մեղայ ողորմեա ։

Մեղայ անօրինեցայ եւ մատնեցայ 'ի ձեռս անօրէն թշնամւոյն. արդ անկեալ աղաչեմ թող ինձ տէր ։

Քան զամենեսեան առաւել մեղայ տէր իմ գթած, քան զամենեսեան անօրինեցայ եւ մատնեցայ 'ի ձեռս անօրէն թշնամւոյն. արդ ան ։

Եկեսցէ տէր 'ի վերայ մեր ողորմութիւն քո, եւ բան փրկութեան քո պահեսցէ զանձինս մեր 'ի մեղաց ։

Ողորմութիւն քո եւ ճշմարտութիւն քո եւ լոյս երեսաց քոց առաջնորդեսցէ մեզ 'ի յարդարութիւն ։

Որ ողորմածդ ես գթած եւ երկայնամիտ տէր, ընկալ զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին ։

Տէր ըզսուրբ միւսանգամ քո գալստեանդ լուսոյ եւ երկեայ. զի

ուսայ 'ի սրբոց պատուիրանացն Ելէ գամ գու 'ի գտանել զերկիր։

Տէր յիշեցի ըզչար ըզգործս իմ եւ զարհուրեցայ. զի ծանեայ ճշմարտութեամբ զահաւոր եւ զանաչառ ըզքո դատաստանն։

Տէր յիշեցի եւ ըզգութ արարչական սիրոյ քո առ քո արարածս. Եւ 'ի քո գըթութիւնդ ապաւինեալ աղաչեմ, ողորմեա ինձ յաւուր յայնմիկ քրիստոս արդար դատաւոր։

Աղաչանօք աստուածածնին անարատին քում ծնողին, զիմանալի անշէջ լուսոյ մերոյ բացցես ողորմութեամբ հայիլ 'ի լոյս քո քրիստոս։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Մարիամ կոյս անարատ զանապական փեսայդ աղաչեա, զի հաշտեացի ընդ այլի եղելոյ հոգիս, եւ միաւորեսցի դարձեալ սիրով ընդ հեռացեալս 'ի նմանէ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Յորժամ յարեւելից փայլես անձառ լուսով լուսաւորես զհաւատացեալս. եւ դատապարտես զազգըն հրէից անհաւատից ով տէր քառամթեւ. Եւ զիս լուսաւորեա ըզխաւարեալս մեղօք. եւ դատակնքեա 'ի դաս մատենագրի յանձանս Երկնից արքայութեանդ. զի անդադար օրհնաբանիս եւ քեզ են փառք յաւիտեանս ամէն։



ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

Օերծո զիս յորոգայթէ որսողին եւ յամենայն վտանգից ապրեցո եւ ողորմեա։ դձ

Յաներեւոյթ թշնամւոյն եւ 'ի դաւոնի նետից բանսարկուին պահեա եւ ող։

Փրկեա զիս 'ի յանցանաց մեղաց իմոց, եւ նորոգեա զիս հոգւով զգաստութեան եւ ող։

Որով մեղաց իմոց զիս ալեկոծէ. որ ես նաւապետ բարի, շնորհեա ինձ նաւահանգիստ հայր ամենակալ։

Խորքն պատրանաց զիս կորուսանեն. այլ դու նաւապետ բարի, շնոր։

Որ միայն իշխանդ ես թողուլ ըզմեղս. եւ ես աղաչեմ ըզքեզ. տէր թող ինձ ըզմեղս իմ հայր ամենակալ։

Մերձեալ է օր գալոյ քո տէր. ըստ ձայնի աղօթից իմոց որ կարդամ առ քեզ, եւ ողորմեա։

Բանից իմոց ունկնդիր տէր, եւ 'ի միտ առ զաղաչանս իմ զառաւօտուս որ կար։

Որ ընկղմեալս եմ 'ի խորս չարեաց, սուրբ զհոգիդ քո առաքեա առ իս որ կար։

Ողորմեա ինձ աստուած, զի քեզ միայնոյ մեղայ։

Աւանել լուա զիս 'ի տղմոյ յանցանաց, աղբիւր բժշկութեան, եւ ողորմեա։

Յարենէ փրկեա զիս, որ հոգւոց եւ մարմնոց ունիս իշխանութիւն. եւ ող։

Վերաւորեալ յանցանօք անձն իմ, առ քեզ տէր համբարձի զաչս իմ. թող ինձ ըզմեղս իմ միայն բարեգութ, եւ ողորմեա ինձ աստուած ըստ մեծի ողորմութեան քում։

Կործանեաց զիս չարագործ թըշնամին, եւ կամի խապառ զիս որսալ. հայր բարեգութ բըժըշկեա զվիրաւորեալս, եւ ողորմեա ինձ աստուած ըստ մե։

Անդունդք մեղաց պաշարեցին զիս, զի բազում են քան զաւազ ծովու. առ քեզ տէր պաղատիմ, փրկեա ի վտանգէս, եւ ողորմեա ինձ աստուած ըստ մե։

Զանապական ըղհօգեւոր ըզգանձըն յապականացու կենցաղիս ծախեցի. այլ առ քեզ միայն պաղատիմ բարերար փրկիչ, խնայեա ի մեղուցեալ ծառայս։

Զյանկ հոգւոյ իմոյ քակտեցի եւ եղէ անբարունակ որթ. այլ առ քեզ միայն պաղատիմ։

Ոստայնքանց եղէ ես որպէս զարմանւենի, պըտղակորոյս որպէս ձիթենի. այլ անյիշաչար եւ անոխակալ փրկիչ, խնայեա ի մեղուցեալ ծառայս։

Անսահմանելոյն տաղաւար բարձող էիցըս բարձրոցին. որ ծընար զաստուած մարմնով զանմարմնաբար ծընունդըն հօր. բարեխօսեա վասըն մեր աստուածածին մարիամ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ վառեցար ի յարփոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ ետուր զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Զկենդանակիր անարատ ծընողի քո արկանեմք առաջի անոխակալ տէրութեանըդ քո. յորժամ գաս փառօք հօր դատել ըզթըշնամին խաչի քո. ներեա յանցանաց մերոց բարեխօսութեամբ մօր քո եւ կուսի. աղաչեմք ըզքեզ տէր պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ։



ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

Քրիստոս աստուած աստուծոյ. ողորմեա։ գկ

Անօրէնութեամբ ի մեղս երկնեաց զիս մայր իմ. աղաչեմ փրկիչ. ող։

Վերաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ փրկիչ. մի անտես առներ. ողո։

Մաքսաւորին հառաչանօք ի տաճարին էառ ըզքաւութիւն. նոյին ձայնիւն եւ ես գոչեմ. ողորմեա ինձ աստուած։

Աւազակին աղաղակէր ի խաչին, յիշեա զիս տէր. նոյին ձայն։

Անառակ որդին աղերսանօք աղաչէր ըզքեզ, հայր մեղայ յերկինս եւ առաջի քո. նոյին ձայն։

Շնորհեա մեզ տէր ընդ աղքատաց օրինակին զղազարու ժուժկալութիւն. զի կամաւոր աղքատութեամբ արքայութեանդ երկնից ընդ նմին լիցուք արժանի. լուր մեզ եւ ողորմեա քրիստոս աստուած։

Որ փոխանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան նը-

մամ չնորհեցեր. Եւ ընդ մեծատանն անգըթութեան ՚ի գոգն աբրահամու ընդամ ընկալար. լուր։

Լուսաւորեա զաչս սրտից տանամ մեզ ողորմութեամբ ՚ի քէն տէր զողորմութիւն. զի մի ընդ մեծատանն հայցեսցուք ՚ի բոց հնոցին ծագիւ մատին ջուր ՚ի զովացումն. լուր։

Զանըսկիզբն աստուած զհայրն ամենակալ բարեբանեսցուք ընդ զուարթունս երկնից։

Զնա ՚ի հօրէ ծնեալ զորդին միածին բարեբանեսցուք հրեշտակային ձայնիւ։

Եւ զնորոգող սուրբ զհոգին ձայնիւ ցնծութեամբ բարեբանեսցուք անլռելի ձայնիւ։

Անըսկիզբն աստուած եւ թագաւոր երկնաւոր. բարեբանեալ ՚ի զօրաց անմարմնից երկնաւորաց. ընդ քեզ օրհնեմք հայր անըսկիզբն։

Խոնարհեցար ՚ի բարձանց վասն մերոյ փրկութեան. արձակիչ կապելոց եւ բժիշկ հոգւոց մերոց. ընդ քեզ գովեմք որդի միածին։

Որ էակիցդ ես ընդ հօր եւ փառակից միածնի. բաշխող պարգեւաց եւ տուող ողորմութեան. ընդ քեզ բարեբանեմք սուրբ հոգիդ ճշմարիտ։

Որ ըզլոյս աստուածային քո բանիւ ծագեցեր յաշխարհամած խաւարն անգիտութեան. լուսաւորեա եւ զմեզ հոր իմաստութիւն։

Որ զհամօրէն դատաստանին օրինակ նշանակեցեր առ մեծատունն եւ զաղքատս, ներհակաբար տալով զոր առ ընկալան։

Վասն որոյ աղաչեսցուք ըզքեզ տէր, փրկել ըզմեզ ՚ի հրոյ մեղաց եւ տանջանաց, հանգչել ՚ի գոգ նահապետին արդարոյ։

Որով եւ մեք ընդ հրեշտակացն դասուց, անբաժանելի սուրբ երրորդութեանդ համաձայնեալ երգեմք ըզփառս ՚ի բարձունս։

Ուրախացիր բարձրելոյն հովանացեալ զօրութեամբ, եւ բնակարան սուրբ հոգւոյն որով ծնար զբանն աստուած. բարեխօսեա վասն մեր աստուածածին մարիամ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Աղբիւր կենաց բղխեալ յեդեմայ սուրբ աստուածածին, որով արբեցան երկիր ծարաւեալ հոգւոյն իմաստիւք. տուր մեզ մաքրութեան աղբիւրս արտասուաց մաքրել ըզմեզ ՚ի մեղաց մերոց։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Քեւ ցնծան լուսոյինքս ամենայն ՚ի միւսանգամ քո գալստեանն. եւ յաւէժ զուարճանան դասք անմարմնոցն առ էիցս։

## ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

Համբառնամ առ քեզ տէր զաչս իմ, նայեաց յիս գըթութեամբըդ քո, եւ ողորմեա։ դձ

Դու ես յոյս և ապաւէն իմ, զերծո զիս յորոգայթէ մեղաց, եւ ող։

Ապրեցուցիչ իմ եւ փրկիչ իմ, ապրեցո զիս յորոգայթէ մեղաց, եւ ող։

Բազմութեամբ յանցանօք ծանրաբեռնեալ է անձն իմ. միայնոյ

քեզ մարդասիրի աղաչեմ . ողորմեա ինձ Աստուած ։

Բղխմամբ արտասուաց եւ հառաչանօք սրտի իմոյ անդադար հայցեմ բազմամեղութեամբ . քաւեա զիս Տէր ։

Բազմագութ մարդասէր շնորհեա զթողութիւն իմոյ յանցանաց. զի առ քեզ միայն պաղատիմ . քաւեա զիս Աստուած ։

Աստուած մարդասէր որ զմաքսաւորն արդարացուցեր . քաւեա զիս զմեղաւորս ։

Որ քղանցիւ հանդերձի քո զմերձեցեալն 'ի քեզ բժշկեցեր . քաւ ։

Որ բանիւ հրամանի քո զանդամալոյծն առողջացուցեր . քաւեա ։

Որ զարտասուս կնոջն պոռնկի ընկալար փրկիչ մարդասիրապէս . եւ զիս ապաշխարութեամբ արա արժանի ըղձայն մեղուցելոյս ընդունող ։

Որ հառաչմամբ ձայնի աղախնոյն ոչ լռեցեր փրկիչ ընդունակ մեղաւորաց . եւ զիս ։

Որ զաւազանապարգեւի քո նշխար ոչ խնայեցեր ընձեռել շնորհն հո[illegible] . եւ զիս ։

Անկանիմ առաջի քո և խնդրեմ զթողութիւն յանցանաց իմոց . մի անտես առներ հայր զաղաչանս իմ ։

Աղաղակեմ որպէս մաքսաւորն, և հեղում զարտասուս իմ առաջի քո որպէս պոռնիկն . մի ան ։

Յանհետեւոյթ թշնամւոյն պարտեցայ, եւ 'ի գաղտնի նետից բանսարկուին վիրաւորեցայ . մի անտես առներ հայր զայս ։

Անկանիմ առաջի քո տէր բազմամեղիս ողորմեա ։

Աղաղակեմ առ քեզ փրկիչ քանանացւոյն ըղձայն . բաղ ։

Մաքսաւորին հառաչմամբ կարդամ առ քեզ փրկիչ եւ բարերար . բաղ ։

Ողորմեա ինձ քրիստոս ողորմութեամբդ քո մեծաւ, զի կարօտ եմ ես շնորհի քո և ողորմութեան . ողորմեա եւ լուր ինձ բազմամեղիս ։

Լուր տէր ձայնի աղօթից եւ ցաւագին պաղատանաց, որ ամօթով կամ առաջի քո իմ չարաչար վարուքս . ող ։

Ընկալ տէր զաղաչանս իմ եւ զհառաչանս սրտի իմոյ, որ աղաղակեմ որպէս կինն քանանացի . ողորմեա ։

Որ եկիր 'ի փրկութիւն մարդկան ծննդեամբ կուսին մարիամու . եւ կենդանարար քո յարութեամբդ հրաւիրեցեր զմահացեալս 'ի յարութիւն անմահութեան . վասն որոյ աղաչանօք մօր քո կեցո զմեզ փրկիչ ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ ։

Որ անապական ծննդեամբդ քո լուծեր զերկունս նախամօրն, մարիամ մայր աստուծոյ . բարեխօսեա առ միածին որդին լուծանել զկապանս մեղաց մերոց . եւ աղաչեա փրկել զանձինս մեր 'ի փորձութենէ ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ։

Բանն անեղ համագոյ որ ընդ հօր եւ սուրբ հոգւոյն, երեւեալ 'ի յերկրի պայծառացան արարածք . հրաշօքն կարողութեամբ եւ զմեզ վերագրեաց յորդեգրութեան շնորհս ։



## ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈՑ

դկ Քրիստոս անուանեալ յոյս ապաշխարողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց:

Առ քեզ բազմապատիկ ապաւինեալ կարդամք. մի մերժեր զմեզ յողորմութենէ քումմէ:

Որպէս զաւազակն աղաղակեմ առ քեզ. յիշեա և զիս տէր 'ի քում արքայութեանդ:

Ընդ մեղաւոր կին խոստովանիմ առ քեզ քրիստոս, որ մեղայց ես բազմապատիկ թողութեամբ. ողորմեա ինձ անառակս:

Դու տէր որ քաղցրութեանց ես սիրող, և քննես զծածուկս գաղտնեաց սրտի իմոյ. ողորմ:

Տուր ինձ զխնդութիւն փրկութեան, և հոգւով տէրութեանդ քո հաստատեա զիս. և ողորմ:

Ալիք յանցանաց զիս ալէկոծեն, և մեղք իմ բազում զիս յանդիմանեն:

Արդ զինչ արարից մեղուցեալ անձամբս, որ չեմ ապրելոց յահագին հրոյն:

Մեղայ քեզ քրիստոս որդի աստուծոյ, շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց:

Տէր որ 'ի մէջ լերինն աղբերացուցեր ըզջուրն 'ի վիմէն:

Տէր 'ի սրտէ խմէ հան ինձ արտասուս ապաշխարութեան:

Զի կեցից և ապաշխարութեամբ ապրեցայց 'ի հանդերձեալ քոց դատաստանաց:

Մեղուցեալ անձամբ կարդամ առ քեզ հայր երկնաւոր, օգնեա ինձ 'ի նեղութեանս. որ մեղօքս եմ մեռեալ, օգնեա ինձ:

Վիրաւորեցայ ես յաներեւոյթ թշնամւոյն. բժիշկ հոգւոց, բժշկեա զիմ զհիւանդութիւնս. որ մեղ:

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրող գերելոց խնդրեա զիս ընդմոլորեալս. որ մեղ:

Մեղայ քեզ տէր քաւեա զիս և ողորմեա ինձ անառակս:

Ոչխար եմ բանաւոր հօտի քո և առ քեզ ապաւինիմ հովիւ բարի, խնդրեա զիս ընդմոլորեալս և ողորմ:

Ի ծովու մեղաց ալէկոծեալ եմ և առ քեզ աղաղակեմ նաւապետ բարի, փրկեա զիս 'ի վտանգէս և ողորմ:

Վասն որոյ աղաչեմ մայր աստուծոյ մարիամ զմիածին քո զորդին զի շնորհեսցէ ընդ աւազակին ժառանգել վերըստին մեզ ըզդրախտին վայելչութիւն:

Փառք հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ:

Ծնեալ մարիամ արեգականն արդարութեան արուեսելք, և աղաչեա զառ 'ի քէն զծնեալն աստուած վասն մեր. զի դարձուցէ վերըստին զմեզ 'ի դրախտին ժառանգութիւն:

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից:

Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա զմեզ քրիստոս աստուած. որ տարածեցեր ըզձեռս քո 'ի նմա. և լուծեր ըզկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեցուցանել ըզմեզ 'ի պատրանաց թշնամւոյն:



Կարգք ապաշխարութեան՝ առաջին շաբաթու աղուհացիցն :

Առաջին ձայն :

հրց ան Որ հայցես քաղցրութեամբ յարարածս քո հայր ամենակալ. օրհնեալ ես աստուած հարցն մերոց :

Որ խնդրեր 'ի փրկել զարարածս քո որդւովդ միածնիւ. օրհ :

Որ խնամես անեղութեամբ զարարածս քո հոգւովդ ճշմարտիւ. օրհ :

գ Ըղոէր. Ամենայն գործք քո ընդ քեզ օրհնեն :

Որ յոչնչէ գոյացուցեր զերկինս եւ զերկիր. յիշեա զմեզ տէր մարդասիրութեամբդ քո. ամէ :

Որ անդադար փառաբանիս 'ի քո յարարածոց. ընկալ զաղաչանս սուրբ եկեղեցւոյ քո. ամէ :

մեծ Յանճառ փառաց խոնարհեցար 'ի մեր բնութիւնս, բանդ աստուած եւ մարմնացար 'ի սրբոյ կուսէն :

Եւ ծնար 'ի սուրբ կուսէ անապական մարմնով. ընդ քեզ անդադար բարեբանեալ մեծացուցանեմք :

Այսօր զենեալդ 'ի փրկութիւն ազգի մարդկան, միաբանութեամբ ամենեքեան մեծա :

ողր Հայր բազումողորմ խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին. թող ինձ զյանցանս իմ, եւ ողորմեա :

Տէր որ գթացար 'ի կինն քանանացի, գթա եւ յիս 'ի մեղաւորս, եւ ող :

Տէր որ դարձուցեր զմաքսաւորն 'ի գիտութիւն ճշմարտութեան, դարձո եւ զիս զմոլորեալս, եւ ողորմեա :

տէր Տէր որ 'ի վերայ քերովբէից փառաբանիս, քաղցրութեամբ խոնարհեալ ընկալ զաղաչանս մեր :

Տէր որ շնորհեցեր ողորմութիւն ազգի մարդկան, քաղց :

Տէր որ ուսուցեր մեզ յամենայն ժամ փառս տալ անուանդ քում սրբոյ, քաղց :

հրց Որ համագոյից ես հասարակ հարցըն մերոց աստուած, ուսո մեզ անդադար օրհնել զանհասն անուն քո սուրբ :

Որ երգեցողացն աղօթիւք հրաշացուցեր 'ի մէջ հնոցին ընդ քո զանչափ զօրութիւնդ, ուսո :

Որ ապրեցուցեր զերիս մանկունսն 'ի մէջ հրոյն բորբոքեալ բոցոյն, ուսո :

գ Ըղոէր օրհնեցէք. Միաբանութեամբ բարձր արարէք յաւիտեան զաստուածն աբրահամու :

Զանժամանակին 'ի յէութեան երկրաւորքս ընդ երկնայինսն միաբանութեամբ բարձր արարէք յաւիտեան զաստուածն իսահակայ :

Զանհասն 'ի բարձրութեան քահանայք եւ ժողովուրդք, միաբանութեամբ բարձր արարէք յաւիտեան զաստուածն իսրայէլի :

մեծ Որ զաւետիս հոգւոյն 'ի հրեղէն 'ի հրեշտակէն ընկալար, ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ մարիամ անհարսնացեալ :

Անընկրկելին բանն հաճեցաւ առնուլ մարդեղութեամբն սկիզբն 'ի կուսէդ, քրիստոս աստուած թագաւորն յաւիտենից :

Աղաչեմք զքեզ սուրբ աստուածածին առ Քրիստոս բարեխօսեա փրկել զժողովուրդս իւր, զոր գնեաց արեամբն իւրով։

ողր Աստուած բազումողորմ, խնայեա յարարածս քո հայր ամենակալ, եւ ողորմեա։

Արեգակն արդարութեան ծագեա ՚ի հոգիս մեր զլոյս ճշմարտութեան, եւ ող։

Տուր մեզ տէր զխաղաղութիւն, եւ փրկեա ՚ի նեղչաց մերոց հոգւով ճշմարտութեան, եւ ող։

տէր Քեզ վայելէ աստուած օրհնութիւն զօրհանապազ։

Զհայր եւ զորդի եւ զսուրբ զհոգին գոհութեամբ բարեբանեսցուք։

Զերրորդութիւն միասնական գովեմք, եւ զմի աստուածութիւն։

հրց Որ յամենայնի ես կարող օրհնեմք զքեզ տէր. աստուած հարցն մերոց։

Որ անապական քում զօրութեամբ պահեցեր զյուսացեալսն ՚ի քեզ սուրբ զմանկունսն. փրկեա եւ զմեզ մարդասէր տէր. աստուած հար։

Բարձրացուցանեմք գովելով զանուն քո սուրբ. թագաւոր որ յաթոռ փառաց նստիս. օգնեա մեզ ՚ի նեղութեան մերում. աս։

գ Գործք տեառն զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։

Տիւք եւ գիշերք զտէր օրհնեցէք. եւ բարձր արա։

Իսրայէլ զտէր օրհնեսցէ. եւ առաւել բարձր արարէք զնա յաւիտեան։

մեծ Մեծացուցանեմք զքեզ որ ՚ի հօրէ բանդ եւ անճառելի ծնունդ, որ ՚ի կուսէն մարմնացար ցուցար մեզ։

Մեծացուցանեմք զքեզ որ կուխեցեր զմահ աստուածապէս, եւ լուծեր զկնիք մահու. որ ՚ի խաչին բարձրացար կամաւ հօր։

Մեծացուցանեմք զքեզ որ թաղեցար ՚ի նոր ՚ի գերեզմանի, եւ յերրորդ աւուր յարեար. որ ՚ի յերկինս համբարձար փառօք հօր։

ողր Ի նեղութեան խնդրեմ օգնեա ինձ տէր, որպէս երբեմն յովնանու, եւ ողորմեա։

Ի յանցանաց խնդրեմ մաքրեա զիս տէր, որպէս երբեմն զմաքսաւորն, եւ ող։

Ի նենգաւոր շրթանց փրկեա զիս տէր, եւ յարենէ ապրեցո, եւ ող։

տէր Ամենայն զինուորութիւնք հրեշտակաց անդադար ձայնիւ օրհնեն զքեզ հայր ամենակալ աստուած եւ միայն մարդասէր։

Նոր օրհնութիւն քեզ երկրպագինքս երգեսցուք, առաքեալ ՚ի հօրէ որդիդ միածին, ամենակալ։

Ուրախութեամբ զքեզ գովեն արարածք, բաշխող պարգեւաց սուրբ հոգիդ ճշմարիտ, ամե։

հրց տղց մի Երգէին մանկունքն ՚ի հնոցին եւ ասէին. տէր աստուած հարցն մերոց, օրհնեալ ես յաւիտեան։

Մի մատներ զմեզ իսպառ ըստ անօրէնութեան մերում, վասն աբրահամու սիրելոյ քո. օրհ։

Էջ հրեշտակն յերկնից եւ զբոց հրոյն շիջոյց, եւ փրկեաց զօրհ-

նաբանոսն 'ի ձեռաց մահու. օրհ-
նեալ ես յաւիտեան:

գ Ըզտէր. Ալէլուիա. եւ բարձր
արարէք ըզնա յաւիտեան:

Զորեքկերպեան կենդանիք փա-
ռաբանեն 'ի բարձունս. փառք
քեզ հայր Ալէլուիա. եւ բա:

Վեցթեւեան սերովբէքն աղաղա-
կեն ասելով. սուրբ սուրբ սուրբ
տէր Ալէլուիա. եւ բա:

մեծ Որ ըզհրեշտակին ըզձայնին լը-
ւեալ հիացեալ բերկրեցար, բա-
րեխօսեա վասն մեր. մեք օրհ-
նաբանեմք զօրհնեալդ 'ի կա-
նայս:

Որ ըզհուրն աստուած յորովայնի
քում կրեցեր անկիզելի մարմնի.
բարե:

Որ զանշօշափելին յեւից 'ի գիրկս
քո բարձեալ դիեցուցեր կաթնա-
սուն. բարե:

ողբ Զըղջման իմոյ զարտասուս ար-
կանեմ առաջի քո քրիստոս, թող
ինձ ըզմեղս իմ որպէս երբեմն ըզ-
պոռնիկին, որ միայնդ ես բազմա-
գութ:

Անկանիմ առաջի քո քրիստոս,
որ հովիւդ ես բանաւոր հօտի,
խընդրեա եւ զիս ըզմոլորեալս,
որ մի:

Ըզմեղս իմ ցուցից քեզ քրիստոս,
որ բըժիշկդ ես հոգւոց եւ տէր
կենաց, բըժըշկեա եւ զիմ զհի-
ւանդութիւնս, որ մի:

տէր Զաստուածն իսրայելի ամենե-
քեան օրհնեսցուք եւ փառըս տա-
ցուք նըմա:

Միածնի եւ անմահի երկիւղիւ
երկիրպագցուք եւ փա:

Սուրբ զհոգին ճըշմարտութեան
զօրհութեամբ մեծացուցուք եւ
փառըս:

Բարեբանեալ ես թագաւոր ան- հրց
մահ. աստուած հարցըն մերոց:

Հաստատեցեր ուխտս ընդ ծառա-
յին քում աբրահամու. աստ:

Բարձրացուցեր ըզմանկունս եկե-
ղեցւոյ սըրբոյ քո. աստուած:

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր գ
արարէք ըզնա յաւիտեան:

Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնե-
ցէք եւ բարձր արա:

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.
եւ առաւել բարձր արարէք
ըզնա յաւիտեան:

Ըզքեզ երեւեալ դուռն առ մեծ
եզեկիելիւ մարգարէիւ, ընդ որ ոչ
ոք էանց եթէ ոչ աստուած միայն.
աստուածածին կոյս, օրհնութեամբ
մեծացուցանեմք:

Ըզքեզ որ 'ի մորենւոջն առ մով-
սէսիւ մարգարէիւ ըզնոր խորհուրդ
կուսի յայտնեցեր մարդկան ազգի,
օրհնու:

Ըզքեզ որ 'ի հօրէ անժամանա-
կապէս եւ 'ի մօրէ անթարգմանա-
բար, 'ի ժամանակի ծնընդեան 'ի
բոլորից փրկութեան յայտնեցար
որդի բարձրելոյն. օրհնութեամբ
մեծացուցանեմք:

Վըտանգիմ 'ի բազմութենէ ողբ
մեղաց իմոց. աստուած խաղաղու-
թեան օգնեա ինձ:

Ալէկոծիմ հողմով անօրէնու-
թեան իմոյ. թագաւոր խաղա:

Ի խորըս մեղաց ծովու տարաբե-
րեալ ծփիմ. նաւապետ բարի
փըրկեա զիս:

Որ բնակեալդ ես 'ի յերկինս տէր
օրհնեմք ըզքեզ:

Զօրհանապազ օրհնեսցուք զանուն սուրբ քո։

Բարձր արարէք ըզտէր աստուած մեր։

հրց Բարեբանեալ ես 'ի յաւիտեան. տէր աստուած հարցըն մերոց։

Մի բացէ աւնէր 'ի մէնջ զողորմութիւն քո. տէր։

Ըստ ողորմութեան քում փրկեա զմեզ 'ի նեղչաց մերոց. տէր։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Ըզնըստեալն 'ի քերովբէական աթոռ օրհնէ։

Զթագաւորըն քրիստոս եւ զաստուած խաղաղութեան օրհնեցէք ժողովուրդք եւ բարձր արա։

Զոր փառաբանեն զօրք անմարմնոց հրեշտակաց, քահանայք աստուածաբանելով, ժողովուրդք առաւել բարձրացուցէք ըզնա յաւիտեան։

մեծ Որ ըզբանն աստուած բանական եղեր ընդունել յորովայնի մշտ կոյս. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես 'ի կանանս։

Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալըն 'ի գիրկըս քո մանուկ. զքեզ մե։

Անարատ տաճար տընօրէնութեան կոչեցար հոգւոյն սրբոյ մշտ կոյս. զքեզ մե։

ողր Թիւնս իմ. Ողորմեա ինձ աստուած։

Ի լսել ըզձայն փողոյն յահագին աւուրն, յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան, ողո։

Ի նըստիլ քո յատենի դատաւոր ահեղ, յորժամ առնես հրապարակութեամբ ըզքըննութիւն որդւոց մարդկան, ողո։

Ի բարձանց. Փառք քեզ աստուած։ տէր

Երկնային զինուորութիւնքըն հրաշալի ձայնիւ փառաբանեն ասելով. որ նըստիս 'ի քերովբէս, փա։

Երկրածին որդիք մարդկան սաղմոսիւք եւ օրհնութեամբ աղաղակեն ասելով. երրորդութիւն անբաժանելի, փա։

Զառաւօտու զօրհներգութիւնըս մարդասիրութեամբդ քո ընկալ թագաւոր փառաց. եւ զմանկունս եկեղեցւոյ քո պահեա 'ի խաղաղութեան։ ՃՌ կ

Որ տեառնդ ես խոնարհաց յերկնից 'ի յերկիր, եւ տուող ողորմութեան ազգի մարդկան. ըզմա։

Ընդ սերովբէսըն սըրբասաց համաձայնեալ քեզ երգեմք, երեքսըրբեան տէրութիւն խնայեա քաղցրութեամբ յարարածըս քո, եւ զմանկունս եկե։

Ինձ օգնութիւն 'ի տեառնէ աստուծոյ իսրայէլին. եկեսցէ։ հմբ

Եւ որ պահէն զիսրայէլ աջովն իւրով. ինձ օգ։

Զի նա է տէր տերանց եւ աստուած յաւիտենից. ինձ օգ։

Համբարձի զաչս իմ առ քեզ որ թագաւորդ ես թագաւորաց, փրկեալ ըզմեզ եւ պահեալ յաներեւոյթ թըշնամւոյն։

Արեգակն արդարութեան յէից լուսոյդ ծագեաց մեզ փըրկող, փրկեալ ըզմեզ եւ պա։

Անձըն իմ առ քեզ պաղատի, կարդամ առ քեզ հայր բազմագութ. փրկեա ըզ։

ՅԱՌԱՋԻՆ ՇԱԲԱԹՈՒ
ՏՕՆ Է ՍՐԲՈՑՆ ԹԷՈԴՈՐՈՍԻ ԶՕՐԱՎԱՐԻՆ

օրհ գկ Այսօր հրեշտակաց դասքն 'ի յեր-կինս ուրախանան 'ի վերայ ճըգնութեան սրբոցն։

Այսօր ճըգնազգեաց սրբոց դասքն 'ի յերկրի պսակեցան, երկնային աստուածեղէն փառօքն։

Այսօր անմարմնոց զինուորու-թիւնքըն մեծապէս տօնեն. քան-զի երկրաւոր զինուորաց բազմու-թիւնքն ընծայեցան 'ի խորան սրբութեան երկնից։

Սուրբ աստուած հայր անըս-կիզբն, որ փառաւորեալդ ես 'ի մէջ սրբոց քոց. օրհնեմք զքեզ ընդ զուարթունս երկնից։

Սուրբ աստուած որդի միածին, որ պսակեցեր յաղթող ըզճըգնու-թիւն սրբոց քոց. գովեմք զքեզ։

Սուրբ աստուած հոգի ճշմարիտ, որ նորոգեցեր զտիեզերս ճշմա-րիտ երկրպագութեամբ սուրբ եր-րորդութեանդ. բարեբանեմք զքեզ անլռելի ձայնիւ։

Ճըգնաւորական աշխատու-թեանց համբերեցին սուրբ մարտի-րոսքն, եւ զպատերազմըն չա-րին վանեցին ժուժկալութեամբ. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խնայեա 'ի մեզ։

Որք հեղին զարիւնս իւրեանց փո-խանակ արեան քո տէր. եւ ըզ-բռնութիւն հրապուրողին վա-նեցին ժուժկալութեամբ. բարե։

Եւ զպըսակս անապական ընկա-լան 'ի քէն քրիստոս. եւ դասա-ւորեցան 'ի դասս վերին զուարթ-նոցն. բարե։

Նահատակք յաղթողք քաջք 'ի մարտի երանելի սուրբ մարտիրոսք. որք վանեալ ըզթշնամին խորտա-կեցիք։

Հրեշտակացըն դասքըն տօնակից են մեզ. եւ ջոկք աթոռոցըն զուար-ճացեալ բերկրին ընդ վարդագոյն ձեր հեղումն արեան. որք։

Անթառամ պսակըն ձեզ աւան-դեալ մնայ քան զանկանելս պա-տուականս գերագոյն հրաշիւք. որք վանեալ ըզթշնամին խորտա-կեցիք։

Այսօր մարտիրոսաց դասքըն ցընծացեալ բերկրին ընդ առաջ տեառն քրիստոսի որդւոյն աս-տուծոյ։

Ձայն 'ի յերկնից վկայեալ ասէ. եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգորդք երկնից խորանացն։

Որ ընտրեցար 'ի կոչումն, առա-քելական քարոզութեանցն արժա-նաւոր լինելով սուրբ ստեփաննոս. բարեխօսեա առ քրիստոս վասն անձանց մերոց։ ստե

Որ խնդրեցեր զթողութիւն 'ի վերայ քո քարաձիգ ժողովոյն սուրբ ստեփաննոս. եւ այժմ վասըն քո ուխտաւորացս աղաչեա զընդաջմէ հօր նստեալըն։

Որ արժանի եղեր զմարտիրոսա-կանն առնուլ պսակ նախ 'ի վկա-յս, առ պսակիչըն սրբոց եւ վասըն մեր բարեխօսեա։

Նահատակ բարի քրիստոսի ըն-տրեալ, արքային զինուոր տէր գրի-գորիոս. ստորագլուխ կախմամբ դառնահոտ շնչմանն արիաբար գրի

տարայր, զի ուղղեսցես ըզգնացս ոտից մեր յերկինս։

Ծառաւիղ լուսազարդ ճանապարհին կենաց, երկրին աւետեաց հետեւող տէր գրիգորիոս, մխրաշունչ եղեր քացախ ընկալեալ հոգիաշունչ ուղղամբք, պարգեւելով ուրախութեան մեզ օծումն։

Ոսկեձոյլ գերագոյն պատուական գլխոյն, համանմանեալ հոգւով հայր գրիգորիոս. կռփեալ հարուածովք եղեալ ՚ի մամուլս անտուածազարդ գլուխ քո, որով բարձրացան գլուխք կորացեալ մեղօք։

հայ Ուրախացան զօրք երկնից ընդ քո մեծի ճըգնութեան. որ ՚ի մարմնի կառուցար նըման վերին զըւարթնոցն. ըզքեզ ունիմք բարեխօս առ հայր յերկինս վասըն մեր։

Բըղխմամբ քո սուրբ արտասուաց կենդանագործէիր ըզմեռեալս, նըման փըրկչին յիսուսի կենդանագործողին ղազարու. ըզքեզ։

Այլ մեք ձայնիւ ցընծութեամբ տօնեմք զքո սուրբ զյիշատակս, պատուեալ վըկայ քրիստոսի սուրբ հայրապետըդ յակոբ. ըզքեզ։

Ցանձն առեր զչարչարանս վասըն նոյեան տապանին. ՚ի հրեշտակէն ընկալար զփայտ փըրկութեան աշխարհի. ըզքեզ։

քո Այսօր զանյաղթելի մարտիրոսացն, Եկեղեցի տօնէ ըզյիշատակ ճըգնութեան, որք ՚ի սեբաստիա պատերազմեալք ընդ թըշնամւոյն յաղթեցին քաջութեամբ. սոցին աղաչանօք քրիստոս խընայեա ՚ի մեզ։

Այսօր անտանելի չարչարանօք նահատակեալք ՚ի լըճին սառուցելոյ երանելի քառասունքն. որք ՚ի բարձանց անճառելի ճառագայթիցըն նըշողիւք տպացեալք լինէին. որ լցեր ՚ի մէջ սրբոց քոց քրիստոս խընայեա ՚ի մեզ։

Այսօր ՚ի լրումն աստուածային երգոյն անցանէին ընդ ջուր, մաքրեալք որպէս զոսկի փորձելով ՚ի հուր. եւ համբարձեալք ՚ի յերկնային զինուորութիւնըն դասելով ընդ անմարմին զըւարթունսն. որ ես փառաւորեալ ՚ի մէջ սրբոց քոց քրիստոս խընայեա ՚ի մեզ։

Ամենագովելի եւ քան զերկինս բարձրագոյն, որ զանհասանելի ըզտէրըն յորովայնի քում կրեցեր, եւ ցընծութիւն աշխարհի ծընար. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ ած

Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս, որ զանբաւանելի ըզբանն անճառաբար յըղացար, եւ ըզմարմնացեալն աստուած ծընանելով ՚ի քէն. վասն որոյ։

Ի լեռնէ վէմն առանց ձեռին հատեալ դանիէլ գուշակեաց զանսերմն ըզծընունդ քո հայրն երկնաւոր, մայր եւ յետ ծննդեան մնալով կոյս. վասն որոյ։

Ով քառաթեւ լուսածին գերապանծ նիշ կառուցող կենացն ամենից. միշտ բազկատարած առ քեզ էն։ խաչ

Քառակուսի ազանց հովանի եւ պահապան ՚ի յելս եւ ՚ի մուտս. փրկութիւն ՚ի յայսոց եւ պարիսպ ամրութեան։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Դրոշմ ըզգայութեան եւ կնիք ՚ի դէմս ամենից. դու եւ յաստուա-

ծայրինաւորն կատարիս խորհրդոց. յորմէ արեգականային փայլին ճառագայթք։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Լըցէք ըզլուսեղէն անկելոյն մոլու-տամբերգական թըշնամւոյն, որ 'ի յերկնից վայր անկեալ։

հրց գկ Զինուորութիւնք հրեշտակաց օրհնեն զՔեզ. իմանալի ձայնիւն զՔեզ փառաւորեն. աստուած հարցն մերոց։

Իշխանութիւնք և պետութիւնք, սերովբէք եւ քերովբէք փառաւորեն սուրբ զանուանդ քո. աստուած։

Ազգ մարդկան հողեղինաց դասուց մարտիրոսաց երկրպագեն տէրութեանդ քո. աստուած։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Զոր փառաբանեն 'ի բարձունս իմանալի զօրութիւնքն. ժողովուրդք օրհնեցէք։

Որում երկրպագեն գոլելով դասք սրբոց մարտիրոսացն. քահանայք օրհ։

մեծ Մայր եւ կոյս անախտ քրիստոսի որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. քեզ երանեն ամենայն ազինք։

Մաքուր անաղտ եւ հարսն երկնից մարիամ, տաճար եւ աթոռ աստուածոյ բանին. քեզ երանեն ա։

Քեւ հաճեցան իմանալիքն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք 'ի փայտըն կենաց. քեզ երա։

ողր Նայեա 'ի մեզ եւ ողորմեա մեզ քրիստոս, որ ունիս բազում գթութիւն։

Որ հայրդ ես որբոց եւ դատաւոր այրեաց քրիստոս, որ ու։

Որ պսակիչդ ես սրբոց, լուր և մեզ աղօթիւք սոցա քրիստոս, որ ունիս բազում գթութիւն։

Այսօր հրեշտակաց դասքն 'ի յերկինս ուրախանան 'ի վերայ ճգնութեան սրբոցն։ տէր

Այսօր ճգնազգեաց սրբոց դասքն 'ի յերկրի պսակեցան, երկնային աստուածեղէն փառօքն։

Այսօր անմահից զինուորութիւնքն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինուորաց բազմութիւնքն ընծայեցան 'ի խորան սրբութեան երկնից։

Որ ընտրեցեր 'ի սկըզբանէ զհոգւոյ եղեալսն 'ի մարդկանէ. որ եւ զինուորեալ քեզ թէոդորոս, զոր խառնեցեր 'ի դաս երկնաւոր զօրացդ. աղաչանօք սորա կեցո զմեզ քրիստոս թագաւոր։ ձնկ դձ

Որ յորինակ աներեւոյթ միշտ օձին զօր եւ կոփել հրամայեցեր, արիաբար թէոդորոս զերեւելի գլուխ վիշապին խորտակեաց քոյով զօրութեամբդ. աղա։

Որ ընդհանուր արկեալ յերկիր բոբոքեցեր յոգիս սրբոյն թէոդորոսի. որ եւ զտաճարն լուցեալ զհեկոսցն, եւ մատոյց զանձն ողջակէզ քեզ պատարագ ընդունելի. աղա։

Ճգնաւորքը ճըշմարիտք եւ վըկայք քրիստոսի, որք զչարչարանս եւ զմահ յանձն առիք վասն նորա. ըզձեզ ունիմք բարեխօս առ քրիստոս վասն անձանց մերոց։ ճշւ գկ

Քանզի հեղմամբ արեան ձերոյ պայծառացան սուրբ եկեղեցիք. եւ զստուերամած խաւար կռապաշտութեանն բարձիք. զղ։

Երկնային զօրքն խնդեան 'ի պատիւ

պատարագի մահուան ձերոյ. եւ ըզպըսակս անապական առ բերելով 'ի հօրէ լուսոյ. ըզձեզ։



# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԿԻՐԱԿԷԻ ԱՂՈՒՀԱՑԻՑ

օրհ / գձ Որ զօրէնըս սրբութեան պահոց նախ 'ի դրախտին աւանդեցեր. զոր ոչ պահելով նախատեղծիցըն ճաշակմամբ պտղոյն ճաշակեցին ըզդառնութիւն մեղաց եւ մահու. վասն որոյ շնորհեա մեզ տէր ճաշակել ըզքաղցրութիւն քոց պատուիրանաց։

Որ զանազան վիրօք մեղաց հարաք յոգիս 'ի թըշնամւոյն. եւ 'ի բազմապատիկ հիւանդութիւնս կարօտացաք մարդասիրդ բառնալով ըզցաւըս մեր. վասն որոյ բըժշկեա ըզմեզ քրիստոս որպէս մարդասէր։

Որ եկիր 'ի փըրկութիւն մարդկան ծընընդեամբ կուսին մարիամու. եւ կենդանարար քո յարութեամբդ հրաւիրեցեր ըզմահացեալըս 'ի յարութիւն անմահութեան. վասն որոյ աղաչանօք մօր քո կեցո զմեզ փըրկիչ։



Որ գերագոյն փառօք բարձրացուցեր զմանկունս եկեղեցւոյ քո քրիստոս, խոնարհութեան քո ճանապարհաւ առաջնորդելով 'ի յերկնային վարըս հրեշտակաց. աղաչեմք առաջնորդեա մեզ տէր 'ի յարդարութիւն։

Ի թաբօր 'ի լերինն ձեւացուցեր ըզքո բնութիւնդ անտանելի գոյացութեամբ. ընդ որս և մեք ցնծութեամբ երգեմըք քեզ, ողորմեա մեզ մարդասէր։ վար

Աշակերտըք հիացեալ բարբառէին ըզխորհուրդս 'ի տագնապի սրտից իւրեանց. ընդ։

Սքանչելի մեծ խորհուրդ զերրորդութեանըդ քոց սրբոց առաքելոցըն ծանուցեր բարերար. ընդ։

Սոսկալի հիացմամբ զայլակերպութիւն քո տէր առաքելոցըն տեսեալ յօրինէին քեզ տաղաւար. ընդ։

Հովանացեալ ամպ լուսեղէն եւ ըզհայրականըն լուեալ ըզձայն, եթէ դա է որդի իմ սիրելի. ընդ։

Քրիստոս աստուած մեր շնորհեա մեզ ընդ պետրոսի եւ ընդ որդւոցըն զեբեդեայ արժանաւորիլ քում աստուածային տեսլեանդ։

Համբարձցես ըզմեզ տէր առաւել քան ըզգալի զթաբօրական ըզլեառն, յերկնաբերձ եւ յիմանալի խորանաց։

Վասն որոյ եւ մեք ըզքանկատելիս մեր յարմարեցուք քեզ հոգեւորական տաղաւար, որպէս միայնոյ մարդասիրի եւ փըրկչի։

Այսօր ըզխորհուրդ քո կըրկնակի զալըստեանդ աշակերտաց քոց յայտնեցեր քրիստոս 'ի թաբօր լերինն։

Այսօր ըզփըրկական քո վասն աշխարհի ըզմահ վըկայեալ քեզ երեւեցան մովսէս եւ եղիա։

Սրբեա տէր զմեղուցեալ քո ծառայիս ըզդայարանս, եւ շնորհեա տեսանել ըզքեզ եւ լսել

ըզհայրական ըզձայնն. եթէ դա է
որդի իմ սիրելի։

պզ Դատաւոր արդար որ հաստա-
տեցեր 'ի մեզ դատող բնութեան
ըզխիղճս մեր, շնորհեա սոսա դա-
տել զանձինս իրաւամբք եւ ար-
դարութեամբ. խնայեա 'ի մեզ
տէր ողորմութեամբ։

Փեսայ երկնաւոր հարսին քո եկե-
ղեցւոյ. զայրի եղեալ 'ի քէն զհո-
գիս մեղօք, մաքրեա զղջմութեամբ
եւ յօդեա 'ի քեզ միութեամբ.
խնայեա։

Որ մահուամբ մարմնոյ քո մեռու-
ցեր ըզմեղս. եւ յարութեամբ քո
յարուցեր 'ի մեզ զարդարութիւն.
տուր զօրութիւն հոգւոյս կամաց
հնազանդել ըզկամս մարմնոյս.
խնայեա։

Որ փառաբանիս 'ի հրեշտա-
կաց ընդ հօր եւ հոգւոյն քրիս-
տոս որդի աստուծոյ. խոնարհե-
ցար 'ի հողեղէն բնութիւնս համ-
բերելով խաչի վասն մեր. վասն
որոյ գթա 'ի մեզ մարդասէր
փրկիչ։

Որ ըզհին մարդն մեր մեղաց
'ի խաչին սպաներ, նորոգելով ըզ-
նոր մարդն արդարութեան յու-
սով կենացն անվախճանից 'ի նորո-
գումն նոր ադամայ. վասն։

Կենդանարար քո յարութեամբդ
անմահ թագաւոր. կենդանացո
ըզմեռեալքս մեղօք, կենդանական
գործովք բարեաց ըստ լուսաւոր
քոց պատուիրանաց. վասն որոյ գը-
թա 'ի մեզ մարդասէր փրկիչ։

Շնորհեա մեզ տէր ըզգաստու-
թիւն արթուն լինել ըստ դռ-
նապանին. զի 'ի բաղխել սուրբ
փեսային բացցուք ըզսենեակս քոյ
մտից ընդ քեզ եւ հօր քո եւ
հոգւոյդ լինել օթեվան. եւ եր-
գեսցուք երրորդութեանդ ըզ-
փառս 'ի բարձունս։

Ի՛ բարձանց. Քեզ վայելէ օրհ-
նութիւն աստուած։

Որ անմարմնոցն դասուց հաստիչ
ես բանիւ. քեզ վայելէ։

Որ մարմնաւորացս ազգի արարող
ես ձեռօք. քեզ վայելէ։

Որ մեռելոցն յուսով յարութիւն
ես ձայնիւ. քեզ վայելէ։

Անարատ կոյս աստուածածին ած
մարիամ. սրբուհի եւ մայր քրիս-
տոսի, յորդանդի տարար զանուա-
նելին ամենեցուն. օրհնութեամբ
ըզքեզ աստուածածին մեծացու-
ցանեմք։

Ըզքեզ երկնային դասուցն զոր ե-
տեսն եզեկիէլ, եւ զասրն զոր ծա-
նեաւ գեդէօն. սերովբէ հրեղէն
վեհագոյն քերովբէից. օրհ։

Որպէս խորհրդով անկանիս 'ի
քեզ տեսանի աստուածածին.
յղութիւն անսերմնական, ծը-
նունդ անապական, կուսութիւն յետ
ծննդեան մնալով անապական.
օրհ։

Ի յերկնից երեւեալ նշանն խաչ
յաղթութեան ամենայն հեթա-
նոսաց ծագեաց լոյսն ողորմու-
թեան։

Եւ բազմութեան ժողովրդեան տե-
սանէին ամենայն սուրբ ըզխաչըն
լուսոյ ճառագայթիւք զարդա-
րեալ։

Ընդ երեւումն սրբոյ խաչի քո
քրիստոս ամենայն երուսաղէմ մե-
ծապէս պանծայր յոյժ։

Եւ ընծայումն լուսոյ աստուա-
ծային նշանին քո ճառագայթիւք
տեսանիցուր բազմութեան ժողո-
վըյն ։

Ամենայնաղթ զօրութիւն խաչի քո
քրիստոս, որ ցուցաւ 'ի յօգնու-
թիւն ընդդէմ թշնամւոյն պատե-
րազմեալ զօրութեամբ քով ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ ։**

Որ զդառնութեան պտղոյն ճա-
շակն որով մեռաք արդարութեան,
պահելով քո քառասնօրեայ փո-
խեցեր 'ի քաղցրագոյն օրինաց քոց
ճաշակումն. աղաչեմք արդ մեզ
տէր զուրախարար սիրոյ քո զբա-
ժակն ։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ։**

Որ անապական ծնընդեամբըդ քո
լուծեր զերկունս նախամօրն, մա-
րիամ մայր աստուծոյ. բարեխօսեա
առ միածին որդին լուծանել զկա-
պանս մեղաց մերոց. եւ աղաչեա
փրկել զանձինս մեր 'ի փոր-
ձութենէ ։

հրց
ակ
Որ յառաջ քան զյաւիտեանս
անժամանակ ծնեալ 'ի հօրէ ան-
ճառելի բանդ աստուած, որով ե-
ղեն երկինք եւ երկիր. օրհնեմք
ըզքեզ աստուած հարցըն մերոց ։

Որ 'ի պատկեր աստուածութեա-
նըդ քո զարդարեցեր ըզմարդն ա-
ռաջին. եւ ըզպատուիրանն ոչ պա-
հելով դարձաւ 'ի հող, ընդ մահու
անկեալ թագաւորութեան. օրհ ։

Որ զգըթութիւն արարչական սի-
րոյ քո ոչ դարձուցեր յորդւոց ա-
դամայ, այլ շնորհեցեր ըզյոյս անդ-
րէն դառնալոյ 'ի կեանս, որով զե-
նովք յանմահութիւն վերափոխե-
ցեր. օրհ ։

Զտէր օրհնեցէք բարձր գ
արարէք ըզնա յաւիտեան ։

Ընդ նախահօրըն տըրտմութեան
որ վասն ելիցն 'ի դրախտէն կենաց,
ընկալցուք եւ մեք ըզտըրտմու-
թիւն ապաշխարութեան. զի յա-
րութեամբըն քրիստոսի արժանա-
ցուք մըտից դրախտին եկեղեցւոյ.
բարձր արա ։

Ընդ ենովքայ նահապետին որ յու-
սացաւ կոչել զանուն տեառն աս-
տուծոյ, յուսասցուք եւ մեք յա-
րութեամբըն քրիստոսի. յանել
նովաւ 'ի կեանսըն յաւիտենից.
բարձր արա ։

Որ ըզկեանքն անմահարար մահ- մեծ
կանացու բնութեամբս 'ի քեզ
կրեցեր տէրը կոյս մարիամ. որով
մեռեալքս որ յադամայ կենդանա-
ցաք յուսով յարութեան. առ նա
միշտ բարեխօսեա վասն անձանց
մերոց ։

Որ ըզբանն անեղական զէակն էից
գոյացութեանց անճառաբար ծը-
նար մարմին եղեալ 'ի փրկութիւն
եղականացս. առ նա ։

Որ ըզպտուղն 'ի քէն կենաց ըն-
ծայեցեր մեռեալն ադամայ. զորոյ
պահօք քառասնօրեայ քաւեաց
զպտղոյն ճաշակումն, եւ յան-
վախճան ըզնոյն վերածեաց 'ի
կեանս. առ նա ։

Որ առաքեցար 'ի հայրական ծո- ողբ
ցոյ ծածկեալ խորհուրդ ընդ հօր
յաւիտեան, եւ առեր մարմին
զմեղուցելոյ նախաստեղծին յա-
նարատ կուսէն անճառ միու-
թեամբ վասն մերոյ փրկու-
թեան. ողորմեա ։

Որ փոխանակ ճաշակոցըն դառ-

նութեան մահաբեր պտղոյն անճաշակ լինելով քո քառասնօրեայ, քաղցրացուցեր յուսով ըղձալի նոր քո օրինաց. փառքն:

Որ աջակողմն աւազակին բացեր ըղձալին դրախտին կենաց. բաց եւ մեզ մեղուցելոցս ողորմութեամբ, որք ընդ նմին զքեզ դաւանիմք տէր եւ թագաւոր. աղաչեմք ըզքեզ տէր:

տէր Որ անմարմնոց հոգեղինաց զամակցեցեր քրիստոս սուրբ զեկեղեցի. որք ընդ նոսին համաձայնեալ փառաւորեմք սուրբ զերրորդութիւնդ, պաշտելական սրբասացութեամբ երգելով ըզփառս 'ի բարձունս:

Որ յաղթեցեր մերով բնութեամբս 'ի փորձութեան կամակոր օձին. որով ետուր իշխանութիւն որդւոց ադամայ կոխել ըզգլուխ չար վիշապին, եւ ընդ երկնայնոցն երգել ըզ:

Որ զաղօթեամբ քո վերածեր ըզմեզ յաշխարհական մեղաց ծովէս, տրպաւորեալ լորմամբ նուկանի վեմին հաւատոյ, զոր 'ի ծոցն հրաշագործեցեր. երգեմք քեզ ըզ:



Հարցք ապաշխարութեան՝ երկրորդ շաբաթու աղուհացիցն:

Առաջին կողմ:

հրց ակ Օ անունն քո քրիստոս օրհնեմք, փառաւորեմք ըզքեզ աստուած հարցն մերոց:

Իջեր 'ի հնոցն 'ի բաբելոն, փառ:

Եւ փրկեցեր զերիս մանկունսն 'ի հրոյն բռնութենէ. փառ:

Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Նախկինն հօր իջեալ 'ի հնոցն, եւ թօթափեր ըզհուրն 'ի նոցանէ. եւ անկէզ պահեալ ըզմանկունսն 'ի հրոյն. օրհ:

Եւ մանկունքն 'ի հնոցին պրհաբանէին, որ պահեցեր ըզմեզ 'ի հրոյս եւ արժանի արարեր օրհնել ըզքեզ աստուած, եւ գովել զանուն քո յաւիտեան:

Ուրախ լեր աստուածածին, տաճար անխախտելի. ըզքեզ մեծացուցանեմք: մեծ

Ցնծացիր անարատ կոյս, եւ զաստուած վայելչապէս ծնար. ուրախ:

Երգէ մարգարէն, սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ, եւ դուռն երկնային. ուրախ:

Ծով կենցաղոյս հանապազ զիս ալէկոծէ: ողր

Մրրկեալ ալիք թշնամին ինձ յարուցանէ:

Նաւապետ բարի լեր անձին իմոյ ապաւէն:

Ի համբառնալ իմում առ քեզ զաչս իմ օգնեա ինձ տէր: տէր

Ի յօրհնութիւն նոր օրհնեսցուք ըզքեզ քրիստոս փրկիչ մեր:

Այցելու մեր եւ փրկիչ. կեցո զանձինս մեր:

Որ խոնարհեցար 'ի տկարութիւնս մեր մարդանալ տէր. օրհնեմք ըզքեզ աստուած հարցն մերոց: հրց

Եւ բարձեր ըզմեղս մեր չարչարանօք քո. շնորհեա բանաւոր հօտի օրհնել զանուն քո անդադար. աստուած հար:

Որ արարեր սքանչելիս 'ի հնոցին.

արամ 'ի մեզ զողորմութիւն քո մարդասէր. աստուած հայր:

դ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեանս:

Եցէք. Որ ըզհուր հնոցին շիջոյց, եւ զմանկունսն ապրեցոյց 'ի բոցոյն. բարձր:

Եայէ. Զօրութեամբ սուրբ հոգւոյն փրկեցան մանկունքն. եւ երգէին միաբանութեամբ, բար:

մեծ Անարատ տաճար բնակարան անբաւ բանին աստուծոյ, մարիամ սուրբ կոյս, զքեզ եւ ըզծնեալն 'ի քէն մեծացուցանեմք:

Յարգանդի կրեցեր որ յառաջ քան զյաւիտեանս 'ի հօրէ ըղբանն, եւ ծնար մարմնով. զքեզ եւ ըզծնեալն 'ի քէն:

Արդ խնդրեմք 'ի քէն անդադար բարեխօսել վասն անձանց մերոց, առ որդին քո միածին, փրկել ըզմեզ 'ի փորձութենէ եւ յամենայն վտանգից մերոց:

ողր Մերձ եմ յընկղմիլ օգնեա ինձ նաւապետ բարի. քանզի ծանրացան 'ի վերայ իմ բեռինք մեղաց:

Աստուած յօգնել ինձ փութա քանզի խորք չարեաց ընկղմեն զիս յանդունդս. այլ դու նաւապետ լեր եւ ինձ ձեռնտու:

Փրկեա 'ի վտանգէ ըղնաւակս 'ի յալեաց ծովէ. քանզի կործանիմ 'ի մեղաց անօրէնութեան իմոյ:

տէր Բարձրեալ ահաւոր տէր փառք քեզ:

Բարձրեալ վասն վերին աթոռոյն. ահաւոր վասն ահեղ ատենին. բարձրեալ:

Բարձրեալ ես դու յերկինս ամ-
տուած. յամենայն երկրի ես փառօք քո. բարձրեալ:

Զի դու բարձրացար ըզմեզ փրկեցեր, նստար ընդ աջմէ հօր մեզ կեանս շնորհեցեր. բարձրեալ ահաւոր տէր փառք քեզ:

Աստուած հարցն մերոց. բարեբանեալ է անուն քո յաւիտեան: հրց

Վասն ուխտի հարցն մերոց, տէր մի մատներ իսպառ վասն անուանդ քում սրբոյ:

Առաւել փառաւորեալ է անուն փառաց քոց ամենայն յաւիտեանս:

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս: դ

Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնեցէք եւ առաւել բար:

Իսրայէլ ըզտէր օրհնեցէք. եւ առաւել բարձր արարէք ըզնա[3] յաւիտեանս:

Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յեդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս եւայի. յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք: մեծ

Դու լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւու լուսոյն ճշմարտի. որով հերքեաւ խաւարն առաջին. օրհ:

Ըզքեզ ունիմք բարեխօս կոյս անհարսնացեալ. մայր անարատ էմմանուէլի. տաճար բանին հօրն երկնաւորի. օրհ:

Աղաչեմ ըզքեզ տէր պարգեւեա ինձ ապաշխարութեամբ լըւանալ ըզմեղս իմ, եւ ողորմեա: ողր

Զարտասուս իմ եւ զհառաչանս սրտի իմոյ մարդասիրութեամբդ քո ընկալ տէր, եւ ող:

Մերձեցին խնդրուածք իմ առաջի քո տէր․ բարերարութեամբդ քո խնայեա յիս, եւ ող։

տէր Տուք փառս աստուծոյ բնակելոյն 'ի յերկինս միաբանութեամբ։

Բնակելոյն 'ի սրբութեան մատուսցուք զաղօթս մեր․ եւ խնդրեսցուք զողորմութիւն 'ի բարերար տեառնէ մերմէ։

Յանճառ փառաց խոնարհեցաւ վասըն փրկութեան մերոյ․ զի դարձուսցէ ըզմոլորեալս 'ի գիտութիւն ճշմարտութեան։

Զաստուած օրհնեսցուք 'ի սրբութեան անձանց մերոց գոհաբանելով․ եւ խնդրեսցուք զողորմութիւն 'ի բարերար փրկչէն մերմէ։

հրց Օրհնեալ եւ փառաւորեալ․ աստուած հարցըն մերոց։

Արդար ես յամենայնի․ տէր կեցո զանձինս մեր։

Եւ այնք ոչ դադարէին զորս արկեալ էր եւ գըտայրին 'ի մէջ հընոցի հրոյն․ զաստուած փառաւորէին։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Իջմամբ որդւոյն աստուծոյ բոց հնոցին ցօղանայր․ անդադար գովելով բարձր ա։

Յաղթող զօրութեամբ զօրհնաբանողս ապրեցոյց․ ընդ նոսին գովելով բարձր ա։

մեծ Զանճառելի ըզլոյս աստուածութեանն տընօրինաբար կրեցեր 'ի քում յորովայնի մարիամ մայր եւ կոյս․ օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։

Ի մանաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն․ այլ 'ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր աստուածութեանըն մարիամ։

Առաքելոցըն համանացեալ ամպ լուսեղէն, գերագոյն քեզ հոգւոյն սրբոյ, եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ աստուածածին․ օրհ։

Աղաչեմ ըզքեզ հայր երկնաւոր, մի դարձուցաներ զերեսըս քո յինէն, զի նեղեալ եմ ես վաղվաղակի լուր ինձ տէր։ ողր

Մոլորեալ անձն իմ անօրէնութեամբ, մի կորուսաներ զիս տէր ըստ անօրէնութեան իմոյ, որ խընդրող ես մոլորեալ ոչխարիս։

Ծանրացեալ մեղօք ընկըղմի անձն իմ, ընկալ զիս որպէս երբեմն ըզպետրոս, որ ծըփիմս ալէկոծեալ յանցանօք։

Փառք պատիւ եւ գոհութիւն տէր անուանըդ քում սրբոյ։ տէր

Քում սրբոյ տէրութեանըդ վայելէ փառըք պատիւ եւ երկըրպագութիւն։

Օրհնեալ տէր բարերար․ որ ուսուցեր մեզ յամենայն ժամ փառըս տալ անուանըդ քում սրբոյ։

Փառաւորեալ յաւիտեան․ աստըւած հարցըն մերոց կեցո ըզմեզ։ հրց աղց մի

Որ արարեր ողորմութիւն 'ի մէջ հնոցին․ եւ կենարար ցօղով քո փրկեցեր զերիս մանկունսն։

Զհուրըն բորբոքեալ մանկունքըն հաւատովըն շիջուցին եւ պատկերի ոսկւոյ ոչ մատուցին խունկս․ այլ քեզ աստուած հայր։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Ցօղէր ըզցօղ ողորմութեան երից մանկանցն 'ի հնոցին․ բարձր։

Բանն աստուած լոյս ծագեալ 'ի
Հնոյն, ըղձալուտ միածնին Եր-
գեռին մանկունքըն. բարձր։
Իջեալ առ նոսա կենսաբեր Հրեշ-
տակն, ըղհոյր 'ի յերկինս տայր
փառաւորել. բարձր։
մեծ Նոր խորանիդ արեգականն սր-
բարութեան նոր օրհնութիւնս
տացուք, եւ անդադար բարեբա-
նեսցուք։
Նոր տաճարիդ անճառ լուսոյն որ
'ի հօրէ նոր երգս երգեսցուք, եւ
անդադար բա։
Զնոր խառնարանըդ հրաշալի նոր
խառնըման բանին եւ մարմնոյն հո-
գեւոր երգով բա։
ողր Մեղայ տէր բազումողորմ աս-
տուած. մեղայ ողորմեա։
Մեղայ տէր եւ անկանիմ առաջի
քո. մեղայ ող։
Մեղայ տէր խոստովանիմ ըզյան-
ցանս իմ. մեղայ ող։
տէր Ընդ երկնային զօրութիւնսն
օրհնեցէք ըզտէր ամենայն երկիր
եւ բընակիչք երկրի։
Զանուն սուրբ փառաց նորա գո-
վեցէք յերկրէ որդիք մարդկան
իշխանք եւ դատաւորք երկրի։
Զայնիւ երգով ցընծութեամբ բա-
րեբանեցէք զաստուած 'ի սրբու-
թեան նորա մանկունք եկեղեցւոյ
սրբոյ։
հրց Զանճառ էութիւն և ըզմի աս-
տուածութիւն բարեբանեմք.
տէր աստուած հարցըն մերոց։
Որ վասն հարցըն մերոց իջեր 'ի
փրկել զարարածըս քո. տէր
աստուած։
Որ նըստիս 'ի քրովբէս եւ հա-
յիս քաղցրութեամբ յարարածըս
քո. տէր աստուած հարցըն մե-
րոց։
Ըզտէր օրհնեցէք եւ բարձր գ
արարէք ըզնա յաւիտեան։
Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնե-
ցէք. եւ առաւել բարձր։
Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.
եւ առաւել բարձր արարէք
ըզնա յաւիտեան։
Որ ըզկեանսն անմահարար մահ- մեծ
կանացու բնութեամբս 'ի քեզ կրե-
ցեր սուրբ կոյս մարիամ. որով մե-
ռեալքս որ յադամայ կենդանա-
ցաք յոյսով յարութեան. առ նա
միշտ բարեխօսեա վասն անձանց
մերոց։
Որ ըզբանն անեղական զէակն էից
գոյացութեանց, անճառաբար ծը-
նար մարմին եղեալ 'ի փրկութիւն
եղականացս. առ նա։
Որ ըզպտուղն 'ի քէն կենաց ըն-
ծայեցեր մեռեալն ադամայ. զորոյ
պահօք քառասնօրեայ քաւեաց
զպտղոյն ճաշակումն, եւ յան-
վախճան ըզնոյն վերածեաց 'ի
կեանս. առ նա։
Թիւնս իմ. Մեղայ քեզ տէր, ողր
քաւեա զիս։
Մեղաք անօրինեցաք ամենեքեան.
ոչ պահեցաք ըզպատուիրանըս քո.
մեղայ։
Դարձիր տէր 'ի բարկութենէ
քումմէ. անցո 'ի մէնջ ըզցասու-
մըն քո. մեղայ։
Որ տէրդ ես երկնի եւ երկրի տէր
ըզքեզ օրհնեն զուարթունք
երկնից հոգեւոր երգով։
Օրհնեմք ըզքեզ քրիստոս փառաց
թագաւոր. որ շնորհեցեր մեզ
ձայնակից լինել զուարթնոց երկնից։

Սուրբ երրորդութիւն անմահ աղօթիւք սրբոց քոց կարդամք առ քեզ. լուր ձայնից մերոց։

ձնկ Լոյս փառաց բանդ անստեղծ որ ծագեցեր 'ի մեզ զլոյս գիտութեան, կարդամք առ քեզ տէր. առաւօտու աղօթք մեր հաճոյասցին քեզ։

Յանմարմնոց վերօրհնեալդ 'ի մարդկանէ երկրպագեալ, բնակեալդ 'ի լոյս անմատոյց. կարդամք։

Երեքսրբեան տէրութիւն, միասնական աստուածութիւն, բնակեալդ 'ի լոյս անմատոյց. կարդամք։

հմբ Օգնական մեր լեր տէր և ապաւէն յամենայն ժամ. ամրացո աներկիւղ զհաւատացեալքս 'ի քեզ։

Հայր բազումողորմ որ խնամողդ ես յամենայնի. շնորհեա մեզ խաղաղութեամբ հասանել 'ի նաւահանգիստ։

Որդիդ միածին որ 'ի կառուդ ես քերովբէից. շնորհեա մեզ յաջակողմեանն դասել ընդ սուրբս քո։

Հոգիդ ճշմարիտ որ միշտ յանճառ փառօք բարեբանիս. ընկալ զմեր օրհներգութիւնս 'ի ժամ երեկոյիս։



ՇԱԲԱԹ ՕՐ՝ ՏՕՆ Է ՍՐԲՈՅՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՅ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

օրհ / մրտ / գձ Օտարական մահ սրբոց քոց քրիստոս ընդ երկնային զօրացն այսօր երգակցեալ տօնեմք. որք հանդիսացան ընդդէմ բռնութեան թշնամւոյն։

Անմարմինք 'ի մարմնի ցուցան գերիվերոյ սրոյ և հրոյ տանջանաց. զպատուական մահս իւրեանց ընծայեցին քեզ քրիստոս բանաւոր զենմունք։

Նահատակեալքն ճգնութեամբ 'ի փորձ զանազան տանջանաց, համբերութեամբ վանեալ զթշնամւոյն պատերազմն, փոխեցան 'ի զօրս վերին զուարթնոցն։

Երանելի սուրբ հայրապետք չարչարեալք վասն տեառն համբերեցիք. յաղթելով բռնաւորին դասակից եղէք վերնոցն։

Ճգնեալ նահատակեցայք յերկրի յաղթօղք 'ի պատերազմի. կոխելով զսատանայ դիւականս։

Լուսաւորեալք երկնային լուսով. պայծառացեալք 'ի հոգւոյն սրբոյ. բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց։

Երանելի սուրբ հայրապետք, որք կամաւ չարչարեցայք յանձն առիք զհամբերութիւն. յարժանաւոր աղօթս ձեր յիշեսջիք զանձինս մեր։

Փոխանակ արեանն տեառն ձեր արիւնքդ հեղաւ յերկրի, եւ հոտ անոյշ բուրեաց յաշխարհ. յարժա։

Փոխանակ անցաւորիս ձեզ անանցն է պատրաստեալ պսակ փառաց 'ի քրիստոսէ. յարժա։

Ընդ վերին զուարթունսն բարեբանեմք զքեզ տէր. սուրբ սուրբ սուրբ ես տէր զօրութեանց կեցո զմեզ։

Յիշատակս սրբոց մարտիրոսաց գոհաբանեմք զքեզ տէր. սուրբ։

Երեքսրբեան ձայնիւն աղաղակեմք առ քեզ տէր. սուրբ։

Զանյաղթելի ճգնաւորացն զյիշատակս եկայք հաւատացեալք ամենեքեան պատուեսցուք։

Քանզի մարմին ունելով զաստուածային արհամարհեցին, նմանողք լինելով չարչարանաց փրկչին. Եկայք հաւա։

Քանզի տեսանելով եղեն հրեշտակաց եւ մարդկան. զպայծառութեան պսակն 'ի Քրիստոսէ ընկալան. եւ բարեխօսեն առ տէր վասն անձանց մերոց։

Ընդդիմակիցն որոց եւ զհանգուցեալն 'ի Քերովբէս անդադար ձայնիւ երգելով, օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն 'ի նոր։

Այսօր տօնէ եկեղեցի ըզյիշատակ որոց մարտիրոսացն. ընդ որս եւ մեք ձայնիւ երգելով, օրհնեսցուք ըզտէր յորհ։

յռվ Ճրագ ճշմարտութեան սուրբ յանհանէս մոլորաց, որ ծագեցան 'ի յերկիր. աղօթիւք սոցա տէր լուր մեզ եւ ողորմեա։

Մարգարէ և առաքեալ աստուածորդւոյդ, եւ ձայն բարբառոյ անդադարող տեղերանց. աղօ։

Որպէս զարուսեակն ծագեալ 'ի յերկիր եղեւ կարապետ արեգականդ արդարութեան. աղօ։

գրի Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյիշատակ սրբոյն գրիգորի. որով լուսաւորեալ պայծառացան փայլելապէս, 'ի հանդերձս յաւիտենականս զարդարեալ եւ պսակեալ. օրհնեցէք մանկունք զՔրիստոս Թագաւորն։

Այսօր ցնծան նորածնեալ որդիք լուսոյ յիշատակաւ սուրբ լուսաւորչին. որով հրաւիրեցան 'ի հարսանիսն անմահականն, մտանել ընդ փեսային երկնաւորի 'ի յառագաստն լուսեղէն. օրհ։

Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետին սուրբ. որով երկնային քահանայութեանցն հաղորդեալք. յոր վերափոխեալ այսօր մտանէ 'ի սրբութիւն սրբոց միշտ բարեխօսել առ տէր վասն մեր. օրհ։

Ուրախ լեր աստուածածին յոյս եւ փրկութեան մերոյ. ըզքեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք։ ած

Ըզքեզ լուսոյ մայր եւ կոյս, ըզքեզ զանձըր կենաց աստուածային ձայնիւ ցնծութեամբ մեծացուցանեմք։

Մայր սուրբ անարատ լուսոյն. հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ըզքեզ մեծաւ։

Այսօր ուրախացեալ ցնծան երկնից բանաւորութիւնք 'ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից 'ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. փառուք գալըստեան քո տէր։ խաչ

Այսօր սիւն լուսոյ հովանի եղեւ մեզ 'ի բարձանց. քանզի թագաւորն երկնաւոր եկաւորի 'ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծառայեալ տօնեն ընդ մարդկան. փառուք։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր քահանայապետն ճշմարիտ աստուածային օրինօքըն պատուեալ. կանգնէ զքառանկիւն սեղանն խաչին, արժանապէս պատրաստեալ բաշխէ զմարմին եւ զարիւնն տեառն. մաքրապէս մերձեցարուք փրկեալք նորա ժողովուրդք. եւ հայցեցէք 'ի Քրիստո-

սէ զի շնորհեցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ անթառամ փառօք պըսակէ ըզսուրբս քո, եւ ՚ի դասս լուսեղէնս վերայսցս, օրհնեցէք զըտէր յօրհնութիւն ՚ի նոր։

հրց մրտ գձ Որք հաղորդեցան չարչարանաց քոց քրիստոս սուրբ հայրապետքն, եւ վերաբերեալ պայծառացան ընդ անմարմին բանակութիւնսն. սոցին աղաչանօք խընայեա ՚ի մեզ աստըւած հարցն մերոց։

Որք ՚ի սկըզբանէ պատուեալ եղեն ՚ի սէր բոլորից հօրն, եւ ըզտիեզերս հրաւիրեցին յորդեգրութեան շնորհս. սոցին։

Որք զանթացս խուրեանց կատարեցին հանձինք քո քրիստոս, եւ ըզպըսակս անապական ՚ի քէն ընկալան. սոցին։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Զէակիցըն հօր և հոգւոյն, որ բնակեալ է ՚ի լոյս յանմատոյց եւ բարեբանի սրբասաց ձայնիւ. բարձըր արա։

Զերկրպագեալն ՚ի սրբոց հայրապետաց, որք հեղմամբ արեանն խուրեանց նըմանողք եղեն փրկչակին զենեանըս. բարձր։

մեծ Աննարատ կոյս աստուածածին մարիամ, սրբուհի և մայր քրիստոսի, յարդանդի տարար զանտանելին ամենեցուն. օրհնութեամբ ըզքեզ աստուածածին մեծացուցանեմք։

Ըզքեզ երկնային դուռըն զոր ետեսն եզեկիէլ, եւ ապըն զոր ծանեաւ գեդէօն. սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից. օրհ.

Երկիս խորհուրդըս սոսկալիս ՚ի քեզ տեսանի աստուածածին. յղութիւն անսերմնական, ծընունդ անապակ, կուսութիւն յետ ծննդեան միայն անապական. օրհ։

Ողորմեաց մեզ տէր աստուած մեր, ՚ի յիշատակի սուրբ հայրապետացն։ ողղ

Որք յանուն քո սուրբ դարձուցին զաշխարհս կուռցն ՚ի պաշտելութենէ. աղօթիւք սոցա ողորմեա մեզ։

Եւ արժանի եղեն ընդունիլ ՚ի քէն զանթառամ փառաց պըսակն. աղօթիւք սոցա ող։

Որ զսա ՚ի քրիստոս զչարչարանըս յանձն առեալ համբերեցիք ով աստուածասէր հայրապետք, եւ արժանի եղէք զերկնային անուանս պըսակի։ տէր

Որք փորձեցայք չիջանելս հրով. ժառանգեցիք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն. համարձակութիւն ունիք բարեխօսել առ տէր վասն անձանց մերոց։

Որք զամբարըշտութեանցըն վանեցիք զկռապաշտութիւն ով աստուածասէր հայրապետք. հաստատութիւն ՚ի քրիստոսէ հայցեցէք անդադար սուրբ եկեղեցւոյ։

Ցընծութիւն է այսօր հրեշտակաց եւ մարդկան. զի զկրոնաւցեալ ըզթըշնամին վանեալ խորտակեցին սուրբ վկայքն. եւ եղեն յաղթողք ՚ի պատերազմի։ տէր

Մարմնով եւ արեամբ մարտեան ընդդէմ զինու. վերանորեալք ՚ի մարմնի վերացուցին ՚ի մահ ըզբելիար, եւ առացան պարծանըս յաւիտենական։

Նորանուէրեալք 'ի հոգեղէն
լուսաւորմանց. եւ բարեբանեալք
'ի դասուց մարմնաւորաց սուրբ
վերկայքն. անեղին աջովըն պսա-
կեալ եղեն։

ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑ ԿԻՒՐՂԻ
ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

ձյւ Յկ գձ Մանկանցըդ նոր սիոնի, փա-
ռաբանիչք սուրբ Երրորդութեանն,
ըզյիշատակ սրբոյն կիւրղի հայրա-
պետին տօնելով այսօր ընդ զօրս
անմարմնոցն, օրհնեցէք ըզՏէր
յօրհնութիւն 'ի նոր։
Իյարկի սրբութեան եւ 'ի տեղ-
ւոջ փառաբանութեան, ըզյիշա-
տակ սրբոյն կիւրղի։
Քահանայք եւ պաշտօնեայք մի-
աբան հաւատացեալք, ըզյիշատակ
սրբոյն կիւրղի։



ԿԱՆՈՆ

ԵՐՐՈՐԴ ԿԻՒՐԱԿԷԻ ԱՂՈՒՀԱՑԻՑ

օրհ գկ ՕՐՀՆԵՄՔ ըզքեզ անըսկիզբըն
հայր որդւոյդ միածնի, զոր ա-
ռաքեցեր 'ի դարձուցմըն մոլորեալ
աշխարհին. դարձո եւ զմեզ 'ի մե-
ղաց որդւոյ քո չարչարանօք։
Գովեմք ըզքեզ բան եւ լոյս որ
զտիրական քո պատկեր լուսով
ծրագի քո գըտեալ վերականգնե-
ցեր. կանգնեա զանկեալքըս մե-
ղօք քոյին սուրբ չարչարանօք։
Բարեբանեմք զփառակիցըդ հօր
զհոգիդ ճըշմարիտ. որ նորոգեցեր
ըղձնացեալքս մեղօք հընոյն ադա-
մայ. նորոգեա եւ զմեզ 'ի մե-
ղաց նորոգութեամբ քո շնորհաց։
Ուրախացիր բարձրելոյն հովանա-
ցեալ զօրութեամբ, եւ բնակարան
սուրբ հոգւոյն որով ծընար զբանն
աստուած. բարեխօսեա վասըն
մեր աստուածածին մարիամ։
Լոյս 'ի լուսոյ ծընունդ եւ ծա-
գումն. որ եկիր 'ի խընդիր մոլո-
րեալ աշխարհի բնութեանս, զոր
ընդ խաչին բարձեր 'ի վերայ ու-
սոյդ. մաքրեա ըզմեզ 'ի մեղաց
մերոց։
Սուրբըդ սըրբոց էից մաքրու-
թիւն. որ ածեր տան քո աւել 'ի
մեղաց զաշխարհս մաքրելով. 'ի
նմա գըտեալ զպատկեր քո նորո-
գեցեր. նորոգեա զմեզ 'ի հնու-
թենէ մեղաց։
Շնորհեա մեզ տէր ընդ աղքա-
տաց օրինակին ղազարու ժուժկա-
լութիւն. զի կամաւոր աղքատու-
թեամբ արքայութեանդ երկնից
ընդ նըմին լիցուք արժանի. լուր
մեզ եւ ողորմեա քրիստոս աս-
տուած։ ապչ
Որ փոխանակ հացին կարօտու-
թեան զհացն անմահութեան նը-
մա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն
անգըթութեան 'ի գոգն աբրահա-
մու ըզնա ընկալար. լուր։
Լուսաւորեա զաչըս սըրտից ստա-
նալ մեզ ողորմութեամբ 'ի քէն
տէր զողորմութիւն. զի մի ընդ
մեծատանըն հայցեսցուք 'ի բոց
հնոցին ծագիւ մատին ջուր 'ի զո-
վացումն. լուր։
Որ ըզլոյս աստուածային քո
բանի ծագեցեր յաշխարհհամած

խաւարն անդիտութեան. լուսաւորեա եւ զմեզ հօր խնամատութիւն:

Որ զհամօրէն զատամատանին օրինակ նշանակեցեր առ մեծատունն եւ զաղքատս, ներհակաբար տալով զոր առ ընկալան:

Վասն որոյ աղաչեսցուք ըզքեզ տէր, փրկել զմեզ ՚ի հրոյ մեղաց եւ տանջանաց, հանգուցանել ՚ի գոգ նահապետին արդարոյ:

Որով եւ մեք ընդ հրեշտակացն դասուց, անբաժանելի սուրբ երրորդութեանդ համաձայնեալ երգեմք ըզփառս ՚ի բարձունս:

Զանըմկիզըն տարեալ զհայրն ամենակալ բարեբանեցէք ընդ զուարթունս երկնից:

Զառ ՚ի հօրէ ծնեալ զորդին միածին բարեբանեցէք հրեշտակային ձայնիւ:

Եւ զնորոգող սուրբ զհոգին ձայնիւ ցնծութեամբ բարեբանեցէք անլռելի ձայնիւ:

Անըսկիզբն աստուած եւ թագաւոր երկնաւոր. բարեբանեալ ՚ի զօրաց անմահից երկնաւորաց. ըզքեզ օրհնեմք հայր անսկիզբն:

Խոնարհեցար ՚ի բարձանց վասն մերոյ փրկութեան. արձակիչ կապելոց եւ բժիշկ հոգւոց մերոց. ըզքեզ գովեմք որդիդ միածին:

Որ էակից ես ընդ հօր եւ փառակից միածնիդ. բաշխող պարգեւաց եւ տուող ողորմութեան. ըզքեզ բարեբանեմք սուրբ հոգիդ ճշմարիտ:

ած Աստուածատունկ խնկաբեր ծառ յանուշահոտ բուրաստանէն, որ ՚ի գնացս հոգւոյն վըտակաց տընկեցար, եւ զանմահութեան պըտուղն ՚ի ժամու իւրում մեզ. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք:

Զանապականն բողբոջն յաստուածային դրախտէն յորովայն քո տնկեալ բղխեցեր յարմատոյն յեսսեայ ծաղիկ վայելուչ կուսական ծննդեամբ. վասն որոյ:

Յարփւոյն լուսոյ ծագումն ՚ի քեզ վառեալ ըզճրագ մարմնոյն լոյս աշխարհի. որով զաւետալ զպատկերն իւրական, զոր վերբերին նորոգեալ յառաջին կերպարանն. վասն որոյ բարեխօսեա նորոգել զմեզ ՚ի հնութենէ մեղաց:

Ով քառաթեւ լուսածին գերապանծ նիշ կամուցեալ կենացն ամենից. միշտ բազկատարած առ քեզ են: խաչ

Քառակուսի ալանց հողմնի եւ պահպանեան ՚ի յերս եւ ՚ի մեռս. փրկութիւն ՚ի յայրեաց եւ պարիսպ անմահութեան:

Դրոշմ ըզգայութեան եւ կնիք ՚ի դիմս ամենից. զոր եւ յաստուածային կատարիս խորհուրդ. յորմէ արեգակնային փայլին ճառագայթք:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Ընդ անմահին որդւոյ գովեմք առ հայրըդ գըթած, մեղաք յերկինս եւ առաջի քո քաւիչ յանցանաց. եւ ընդ աւաջ սրտով գոչեմ համբուրիւ, մաքրեա ըզմեզ ՚ի մեղաց մերոց:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Աղբիւր կենաց բըղխեալ յեդեմայ սուրբ աստուածածին, որով արբեցաւ երկիր ծարաւուտ հոգւոյն

խնամովք. տուր մեզ մաքրութեամբ անձ-
նինս արտասուաց մաքրել զմեզ
՚ի մեղաց մերոց։

Հրց / բկ Որ զարմանալի կերպարան լու-
սաւորեցեր ծառայիւն. եւ զարդա-
րեալ փառօք Նորա ՚ի դրախտին.
օրհնեալ ես տէր աստուած հար-
ցըն մերոց։

Որ ճաշակմամբ պտղոյն մահու
յանմահից կենաց մերժեցաք. եւ գա-
լըստեամբ քո վերստին փակեալ
դրախտին դուռն բացաւ. օրհ

Որ փոխանակ մահաբերին որով
անէծքն տարածեցին, մեզ փայտ
կենաց ետուր զխաչ քո լուծեր նո-
վաւ ըզկապ մահու. օրհ։

դ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր
արարէք ըզնա յաւիտեանս։

Որ ապրեցոյց զնոյ տապանաւն
պահելով հայր աշխարհի, եւ զհե-
ղեղ մեղաց մարդկան հեղեղա-
ջուրց դադարեցոյց. եւ բարձր։

Որ ՚ի ծով այս աշխարհի շինեաց
տապան զեկեղեցի, եւ ՚ի սմա զօ-
ժանդակեալ հոգիս փրկեաց ՚ի
ջուրց մեղաց. եւ բարձր։

մծ Ուրախ լեր մայր լուսոյ մաքրե-
ալ, երկիր բանաւոր արեգականն
ծագման. լեր բարեխօս վասն ան-
ձանց մերոց։

Խնդա տաճար բանին աստուծոյ.
բարձող տըրտմութեան նախամօրն
եւայի. լեր բա։

Ցնծա խորանդ սրբութեանց, քան-
զի քեւ ծագեաց մեզ լոյս երրեակ
քրիստոս. լեր բարեխօս վասն ան-
ձանց մերոց։

ողր Թէ... Որ խոնարհեցար ՚ի
բարձանց հայրենի քաջ թողեալ
յերկինս ըզհօտ քո անմոլար,

վասն մոլորեալ ոչխարին.
ողորմեա մեզ աստուած։

Որ լուսով աստուածութեան քո
լուցեր ըզճրագ մարմնոյդ, ածեր
առ եւ տան քո աշխարհի,
վասն պատկերի քո զոր նորոգե-
ցեր. ողոր։

Որ դարձմամբ անառակ մարդ-
կութեանս եղերդ պարարանք, հօր
հաճութեամբ զենար պատա-
րագ, վասն հաշտութեան երկնա-
ւորաց եւ երկրաւորացս. ողոր։

Ընդ լուսաւոր զուարթնոցն
ըզպայծառացեալն օրհնեսցուք. եւ
մաքրելով խնդրեսցուք, մա-
քրել ըզմեզ ՚ի մեղաց։ տէր

Ընդ խոնարհեալ սուրբ կանանցն
անմահ բուրմամբն անուշից,
խունկս անօթից մատուսցուք,
մաք։

Ընդ նուիրերցն արտասուս ըզ-
մարդկան բարձրոյն արտասուաց
պաղատեսցուք արտասուօք մաք։

Ընդ քրիստոսի պահելով յաղ-
թողս լիցուք փրկչին. եւ ընդ
հրեշտակս երգեսցուք, փառք ՚ի
բարձունս աստուծոյ։



Հարցն ապաշխարութեան՝ երրորդ շաբաթու
աղուհացից։

Երկրորդ ձայն։

Օրհնեալ տէր աստուած հար-
ցըն մերոց։ հրց / բձ

Որ իջեր ՚ի մէջ հնոցին եւ փրկե-
ցեր զերիս մանկունս, ընդ քեզ
օրհնեմք անդադար. աստուած
հարցըն մերոց։

Սխանանկան սուրբ երրորդութիւն
որ յամենայնի ես բարեբանեալ,
ընկալ ըզմեր օրհներգութիւնս.
աստուած հայր։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր ա-
րարէք ըզնա յաւիտեան։

Ամենայն ժողովուրդք միաբան եր-
գով բարեբանեցէք. եւ բար։

Ըզնըստեալն ՚ի վերայ քերովբէից,
քահանայք սուսել բարեբանե-
ցէք. եւ բարձր։

մեծ Սուրբ եւ աստուածածին մա-
րիամ ցանկալի կուսից եւ պար-
ծանք ազգի մարդկան, մայր եւ ա-
ղախին մեծացուցանեմք։

Անկէզ մորենի եւ տաճար ընդ-
ունարան լուսոյն, անարատ եւ ան-
խախտելի կուսութիւն. մայր եւ։

Խորհուրդ կենաց եւ մայր կենդա-
նութեան, եւ սուադանատ հրափայլ
ծագմամբ, մայր եւ։

ողր Դարձո զցասումն քո ՚ի մէնջ,
յաղաղակել հողեղինացս. բազմա-
գութ տէր խնայեա եւ մի կորու-
սաներ։

Կանգնեա զանկեալս ՚ի գլորմանէ,
զվիրաւորեալս ՚ի թըշնամւոյն. որ
բըժիշկդ ես հիւանդաց, բըժըշկեա
զիմ զհիւանդութիւնս։

Ի յանցանաց իմոց թախծեալ
անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսա-
ւորն. աստուած քաւեա զիս ըզ-
մեղաւորս։

տէր Որ ՚ի վերդ ես քան զամենայն
ըզմիտս եւ զխորհուրդս. փառաց
թագաւոր խընայեա ՚ի մեզ։

Որ միայն ունիս զանմահութիւն
եւ զանեղութիւն. փա։

Որ նստիս ՚ի քրովբէս Երրորդու-
թիւն անբաժանելի. փա։

Որ երկրպագեալդ ես ՚ի հրեշ-
տակաց եւ ՚ի մարդկանէ. փա։

Որ ազատեցուցեր զերիս ման- հրց
կունսն ՚ի հնոցին, եւ զիս աղց
ազատեա յահագին հրոյն. տէր ա- մի
ստուած հարցն մերոց։

Որք երգով օրհնութեամբ ըզհուրն
՚ի ցօղ փոխեցին, եւ զթագա-
ւորին յամօթ արարին. ընդ նոսին
օրհնեմք ըզքեզ. տէր աստուած։

Աստուած հարցն մերոց գովեմք
ըզքեզ, եւ առաւել բարձրա-
ցուցանեմք. որ զմիածինդ առաքե-
ցեր փրկել ըզմեզ. տէր աստուած
հարցն մերոց։

Ըզտէր օրհնեցէք. Միաբանու- գ
թեամբ տուք փառս եւ բարձր ա-
րարէք ըզնա յաւիտեան։

Որ ՚ի բարձունս բնակեալ է ըզ-
խոնարհս տեսանողին. միա։

Քահանայք եւ պաշտօնեայք երի-
տասարդք եւ կուսանք, անդադար
զաստուածն աստուածոց գովե-
ցէք. եւ բարձր։

Ըզքեզ կոյս եւ մայր եւ բնակա- մեծ
րան աստուածային ներմարդու-
թեանն, գոհաբանեմք եւ վերօր-
հնեմք զեղեալ փրկիչ կենդանու-
թեան ազգի մարդկան. վասն որոյ
ըզքեզ աստուածածին եւ կոյս
բարեբանեմք ըզմայր եւ զաղախին
փրկչին մերոյ։

Ծընունդըն հօր եւ հին աւուրց
անժամանակն յաւիտենից. ժամա-
նակաւ յորովայնի քում բնակեցաւ
եւ ՚ի հօրէ ոչ մեկնեցաւ վասն
որոյ։

Ծնեալն ՚ի քէն ՚ի խաչ ելեալ եւ
՚ի յաթոռ փառաց ընդ հօր. անդր-
գեալ ՚ի մարդկանէ փառաւորու-

թեամբ էութեամբ երկրպագեալ. վեան որդի։

Ընդ քեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք, դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց, գոհաբանեն եւ վերօրհնեն եւ փառաւորեն ընդմիշտ եւ։

ողր Աներեւութից քննող դատանեաց, բժշկեա զհոգւոյ խոց զհիւանդութիւն եւ կեցո միայն մարդասէր։

Որ երկնայնամբող ես առ ամենեսեան, ողորմեա անձին իմոյ բազմամեղի եւ կեց։

Ամենաբաւական ողորմութեան շնորհ, պարգեւեա ինձ յահեղին աւուրն զթողութիւն եւ կեցո միայն մարդասէր։

տէր Օրհնեմք զքեզ անսկիզբն հայր. յամենայն ժամ օրհնութիւն ՚ի բարձունս։

Գովեմք զքեզ միածին որդի. յամենայն ժամ գոհութիւն ՚ի բարձունս։

Բարեբանեմք ըզքեզ սուրբ հոգի. յամենայն ժամ փառք քեզ ատրուած։

հրց / արց / մի Որ ահաւոր քոյով զօրութեամբ յօդըս ցօղաւորըս փոխեցեր ըզբոց հնոցին. ըզքեզ օրհնեմք անդադար աստուած հարցն մերոց։

Որ ըզծառայս քո զվտանգեալս ՚ի հնոցին պահեցեր անարատս, ըզքեզ ծանուցեր ապրիչ եւ տէր գոլով. ըզքեզ։

Ընդ երանելի մանկանցն երգեսցուք ՚ի նեղչաց մերոց փրկեա զըմեզ, եւ մի իսպառ մատներ, զի գինք արեան քո եմք. ըզքեզ։

գ Ըզտէր օրհնեցէք եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Զանբաժանելի սուրբ զերրորդութիւնն արժանաւոր ձայնիւ գովելով օրհ։

Զերկրպագեալն յամենայն արարածոց համբունակիցն ձայնիւ բարեբանելով օրհ։

մեծ Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն. աստուած աստուածոց եւ տէր տերանց փրկիչ գոլով։

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ ՚ի սուրբ կուսէն. եւ անարատ ծնանիլ յորովայնէ անապական, բառնալով ըզմեր նեղութիւնս. աստուած։

Տնօրհնք բարի յերուսաղէմ երեւեցար հեթանոսաց. զի ապրիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. աստուած աստու։

ողր Բազում են քո գթութիւնքդ բազմամեղ անձին իմոյ. ողորմեա աստուած քաւիչ իմ։

Զի քեզ անյիշաչար տէր մեղայ չարին խաբմամբ. ողոր։

Ի քո ՚ի միւսանգամ գալըստեանըն յորժամ գաս դատել զերկիր. ողոր։

տէր Օրհնեսցուք եւ գովեսցուք առաւել բարձր արասցուք եւ բարեբանեսցուք զանուն քո փրկիչ. քեզ վայելէ փառք։

Հրեշտակք եւ մարդիկք եւ ամենայն արարածոց լեզուք ըզքեզ միայն օրհնեն փրկիչ. քեզ։

Երկնային զօրութիւնքն անդա-

դար օրհնութիւն մատուցանեն քեզ փրկիչ. քեզ:

հրց Ուղիղ են ճանապարհք քո յամենայնի արդար. Տէր Աստուած հարցն մերոց:

Զբանաւոր պատարագս յանձանց խոնարհաց ընկալ. Տէր

Ի տաճարի սրբութեան փառաւորութիւն մատուցանեմք քեզ. Տէր Աստուած հար:

դ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Տիւք եւ գիշերք զտէր օրհնեցէք. եւ առաւել բարձր արարէք զնա յաւիտեան:

Իսրայէլ զտէր օրհնեսցէ. Քահանայք անդադար բարեբանեցէք զանքննելի եւ ըզյայտնի աստուածութիւնն. եւ առաւել բարձր:

մեծ Զկուսութիւնդ քո աստուածածին անարատ. զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեանն, մեծացուցանեմք:

Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ քրիստոս աստուած եւ փրկիչ անձանց մերոց, մեծա:

Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեցուք:

ողբ Մեղաք մինչեւ յերկինս եւ զարդար ըզցասումն քո շարժեցաք 'ի մեզ. տէր ըստ մեծի քում ողորմութեանդ ողորմեա մեզ:

Իջաք մինչ 'ի դժոխս ընկղմեալք յանօրէնութեան մերում. տէր յիշեա ըզգիրս արեան որդւոյ քո եւ ողորմեա:

Հալածեա 'ի մէնջ տէր նըշանաւ խաչի քո զընդդիմամարտ եւ զանէրեւոյթ գազանն. եւ մի տար յապականութիւն զքո ժառանգութիւնս:

Հընչմամբ փողոյ սաղմոսարանաւ եւ քնարիւ օրհնեցէք ըզտէրն 'ի յերկինս: տէր

Որդիք սիոնի, ցընծութեամբ եւ ուրախութեամբ գովեցէք զորդին միածին:

Եւ սուրբ զհոգին ամենայն շունչք բարեբանեցէք, երգով եւ ձայնիւ ցընծութեամբ:

Մանկունք եկեղեցւոյ փառաբանիչք սուրբ երրորդութեանն, օրհնեցէք ըզհայրն երկնաւոր անդադար երգով: ձնկ

Պաշտօնեայք քրիստոսի լուսաւորեալք սուրբ աւազանաւն, գովեցէք զորդին միածին անդա:

Քահանայք հոգեւոր երգով ընդ սերովբէսն եւ ընդ քերովբէսն բարեբանեցէք զհոգին ճըշմարիտ անդա:

Համբառնալով զանձս մեր կարդամք առ քեզ մարդասէր, որ յահեղակերպ աթոռըդ նըստիս: հմբ

Ընդ հովանեաւ աջոյ քո պահեա ըզմեզ բազմագութ, որ յանմարմնական զօրացըդ գովիս:

Փառըք քեզ աստուած փառաւորեալ յաւիտեան. փառք ամենազօր տէրութեանըդ քո:





Հարցն ապաշխարութեան

Աւագ կողմ։

հրց բկ պղց մի Հարցն մերոց օրհնեալ ես Տէր եւ փառաւորեալ յաւիտեան։

Մի՛ ցրեր զուխտս քո, մի՛ մերժեր զմեզ յողորմութենէ քումմէ։

Բարձր արարցուք զանուն քո սուրբ, Թագաւոր հզօր եւ սքանչելագործ։

գ Ըզտէր. Գործք քո օրհնեն զքեզ եւ առաւել բարձրացուցանեն։

Որ ընդ հնոցն իջուցեր եւ զմանկունս ազատեցուցեր. գործք։

Զարհուրեալ սրբոյն ընդ տեսիլ հրեշտակին ձայնէր. Ելայք արտաքս ծառայքդ Աստուծոյ. զի եւ ես ընդ ձեզ օրհնեմ զԹագաւորն անմահ։

մեծ Ընդ քեզ աստուածածին որ վերօրհնիս 'ի զօրաց հրեշտակաց, ազգ մարդկան կենդանեաց մեծացուցանեմք։

Ընդ քեզ բնակ հրեղէն աստուածութեանն յիմանալի զօրացն երանեալ, ազգ մարդ։

Ընդ քեզ մայր Էմմանուէլի, մարդաբերին յառաջ գուշակեալ, ազգ մարդկան կեն։

ողր Յամենայն ժամ աղաչանք իմ այս են, 'ի մեղաց խնայ սուրբ սրբեա զիս Տէր։

Յանցանաց իմոց զարհուրի սիրտ իմ. աղաչեմ ըզքեզ Թող ինձ Տէր։

Արտասուաց իմոց մի լռեր Տէր. զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի։

Միաբանութեամբ տուք փառս 'ի բարձունս Թագաւորին յաւիտենից։ տէր

Զի նա փառօք է փառաւորեալ 'ի յերկինս և 'ի յերկրի։

Լուսաւորեա Տէր զմիտս մեր, լուսատու անեղերաց։

Որ հարցն մերոց աստուած փառաւորեալ յաւիտեան։ հրց

Արարչական հօր որդի միածին, կենդանարար Տէր եւ յոյս աշխարհի։

Ըստ ողորմութեան քում կեցո զմեզ փրկիչ, եւ սուրբ զանուն քո փառաւորեսցուք։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Տիւք եւ գիշերք ըզՏէր օրհնեցէք եւ առաւել բարձր։

Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ.

ԶԹագաւորն ամենեցուն ամենայն ժողովուրդք, օրհնեցէք եւ առաւել բարձր։

Միւն լուսոյ և անեղ հօրանի սուրբ կոյս, որ յօղեցեր 'ի մեզ ըզցօղն երկնային. զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։ մեծ

Անկէզ մորենի եւ սրբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի զտուրն կենաց 'ի քէն տուաւ մեզ. զքեզ բարեբանեմք սաս։

Անիծից լուծիչ և քակիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յեց 'ի գիրկս քո բարձեր. զքեզ բարեբանեմք սաս։

Թիւնս իմ. Ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա ինձ. զի անպատասխանի եմ յամենայնի Թող ինձ Տէր։ ողր

Տառապեալ. Ճանապարհք քո ու-

ղիղ են, եւ միայն մոլորեցայ. դարձո զիս եւ ողորմեա ինձ Աստուած։

Թեւան քո. Դատաստանք քո արդար են, եւ միայն ես եմ մեղուցեալ. քաւեա զիս եւ ողորմեա ինձ Աստուած։

աէր Յորժամ գայցես բազմել հրեշտակօք տէր ՚ի դատել զերկիր։

Յայնժամ շարժին զօրութիւնք երկնից տէր ՚ի յահէ քումմէ։

Եւ յայնմ աւուր լեր ինձ օգնական տէր իմ եւ Աստուած իմ։

հրց Մանկունքն գերեալք ՚ի մէջ հնոցին ըզքեզ օրհնէին. Աստուած հարցն մերոց։

Խոստովանին աբրահամեան զոր խոստացար Աստուած, առաքեա եւ փրկեա զպատանեակքս ՚ի քէն. Աստուած։

Ուղիղ են ճանապարհք քո Աստուած, մեղուցեալ յանցաւորաց ողորմութիւն շնորհեա. Աստուած հարցն մերոց։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնեցէք, եւ բարձր արա։

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ, եւ բարձր արա։

մնձ Որ ողորմեցար ՚ի մեղս ծնեալ մարդկան հայր երկնաւոր ընդ մարգարէին, եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ընկալան ունրք ըզծնող որդւոյդ միածնի. մաղթանօք սորա տէր մեզ ողորմեա։

Որ ցուցեր ՚ի մեզ յանման օրինաց որդւոյդ այսօր զկոյսն Մարիամ. յորմէ ծընաւ մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեզ նախաստեղծին ադամայ. մաղթա։

Որ մաքրեցեր հոգւոյդ սուրբ ըզմիտս եւ զմարմին մօր քո փառաւորին. այսօր առնուլ ծնողաց նորին ետուր ըզմայր բանին զօրհնելին եւայի. մաղթա։

Յոյս իմ ես դու տէր քաւիչ յանցանաց իմոց. մի անտես առներ զխնդրուածս աղօթից իմոց. ողորմեա ինձ Աստուած։ ողր

Առ քեզ ապաւինեցայ որպէս զաւանակ որդին. հայր մեղայ յերկինս եւ առաջի քո. ող։

Փրկեա զիս Աստուած ՚ի բազում մեղաց իմոց. արա արժանի քոյին սուրբ արքայութեանդ. ող։

Ընդ առաւօտս կանխեցից յանդիման լինել քեզ, Թագաւոր իմ եւ Աստուած իմ։ աէր

Ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում տէր, Թագա։

Ես ըզքեզ աղաչեմ տէր նայեաց յաղօթս իմ, Թագա։

Տէր Աստուած հարցն մերոց յամենայնի արդար ես, եւ սուրբ է քո տէրութիւնդ։ հրց ողջ մի

Երեք մանկունքն ՚ի հնոցին հրեշտակային ձայնիւն ըզքեզ փառաւորէին։

Եւ երգելով զայս ասէին. օրհնեալ է քո տէրութիւնդ. օրհնեմք եւ փառաւորեմք։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ զարդարեցեր բնութիւն բոցոյն ՚ի ցօղ փոխարկելով, ՚ի տօչորմանէ հրոյն զերիս մանկունսն անկէզ պահեցեր. եւ բարձր արա։

Հրաշալի աստուածային աւե-

լեամբքն չորրորդին բռնաւորըն պակուցեալ զօրհնաբանողըն զուարճացոյց. եւ բարձր արա։

մեծ Ուրախ լեր մայր լուսոյ մարմնով, երկնի բանին արեգականն ծագման. լեր բարեխօս վասն անձանց մերոց։

Խնդա տաճար բանին աստուծոյ. բարձող անմտութեան նախամօրն եւայի. լեր բա։

Ցնծա իմանալի արեւելք, քանզի քեւ ծագեաց մեզ լոյս երեւեալ քրիստոս. լեր բա։

ողր Մեղք իմ բազում են յոյժ ծանր են քան զաւազ ծովու. քանզի քեզ միայնոյ մեղայ ողորմեա ինձ աստուած։

Բայց տէր ընդունել ողորմութեան որ ողբալով կարդամ առ քեզ. քանզի քեզ։

Հեղ յիս զգթութիւնդ քո բազումողորմ եւ մարդասէր. քանզի քեզ։

տէր Ամենայն երկիր տուք փառս աստուծոյ, որ եկն եւ փրկեաց ըզմեզ։

Ամենայն հոգիք ձայնիւ ցնծութեամբ բարեբանեցէք ըզտէր։

Զի եցոյց մեզ տէր զփրկութիւն եւ զկեանս, յազգէ տանն իսրայէլի։

հրց ացց մի Մանկանցն ըղձայնողն քեզ վերագոչեմք, արդար ես յամենայնի տէր զոր ածեր ի վերայ մեր. աստուած հարցըն մերոց։

Քանզի ոչ պահեցաք զպատուիրանս քո, նուաղեցաք մեք յամենայնի. արդ թող մեզ տէր զյանցանս մեր. աստուած։

Օրհնեալ տէր եւ փառաւորեալ առ քեզ պաղատիմք, այլ մի ի սպառ մատներ ըզմեզ, եւ մի ցրեր զուխտս քո. աստուած։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան։ գ

Զանըսկիզբըն բանըն հօր զէակցն էից, որ ի բաբելոն ի հնոցին ըզհրոյն ի ցօղ փոխարկեաց, պարագրելով զերիս մանկունսն. բարձր արա։

Որ ընդ լոյս փառաց ծագեալ ի մէջ հնոցին օրհնաբանիցն. ընդ նոսին համաձայնեալ երգեսցուք խոնարհ սրտիւք, զի շիջուսցէ զանտանելի հրոյն բորբոքումն. բարձր արա։

Մայր լուսոյն մարիամ անհարսնացեալ, օրհնեալդ ի կանայս։ մեծ

Զլոյսն անստուեր յարգանդի կրեցեր, օրհնեալդ ի։

Մի դադարիր վասն մեր բարեխօսել, օրհնեալդ ի։

Թիւնս իմ. Մեղայ քեզ տէր. մեղայ ողորմեա։ ողր

Մեղայ անօրինեցայ եւ մատնեցայ ի ձեռս անօրէն թշնամւոյն. արդ անկեալ աղաչեմ թող ինձ տէր։

Քան զամենեսեան առաւել մեղայ տէր իմ գթած, քան զամենեսեան անօրինեցայ եւ մատնեցայ ի ձեռս անօրէն թշնամւոյն. արդ ան։

Ամենայն արարածք համբառնալով ընձեռօք ձեր օրհնեցէք ըզտէր, զանմահն ի յերկինս։ տէր

Ամենայն ժողովուրդք յօրհնութիւն ի նոր գովեցէք ըզտէր, զանմահն ի։

Զայնիւ երգով ցնծութեամբ

բարեբանեցէք զաստուած ընդ սուրբս նորա, զխնկեալն ՚ի յերկինս։

Յլկ Արթունք եւ պատրաստք եղերուք աւուր աստուծոյ մերոյ։

Երգել եւ սաղմոս ասել աւուր աստուծոյ մերոյ։

Զի նա է տէր աստուած մեր. փրկէ զմեզ եւ կեցուցանէ։

հմբ Յօգնութիւն մեզ ժամանեա կարող տէր. առաքեա ՚ի բարձանց քո զխաղաղութիւնդ, եւ պահեա զքո յուսացեալս ալէլուիա։

Ապաւէն մեր եւ փրկիչ հզօր թագաւոր. ընդունեան յաղթութեան խաչի քո առաքեա առ մեզ, եւ պահեա զքո յուսա։

Վեր երգեմք քեզ ՚ի բարձունս ընդ անմարմնոց բազմութիւնս. զաղաչանս մեր զերկրայինս ընկալ քո բարերարութեամբդ, եւ պահեա զքո յուսա։

հրց տոն Անուն քո յաւիտեան. Աստուած հզօր թագաւոր անմահ, արարիչ յաւիտենից. աստուած հարցն մերոց։

Որ զերիս մանկունսն փրկեցեր ՚ի հնոցին, փրկեա զմեզ ՚ի հրոյն յաւիտենից. աստուած։

Ապաւինելոց ՚ի քեզ օգնական լեր տէր. զի դու միայն ես մարդասէր. աստուած։

Գ Գործք տեառն զտէր օրհնեցէք. եւ բարձր արարէք զնա յաւիտեան։

Գիշերք զտէր օրհնեցէք. եւ բարձր արա։

Իսրայէլ զտէր օրհնեսցէ. եւ բարձր արարէք զնա յաւիտեան. ալէլուիա ալէլուիա։

Ըզքեզ աստուածածին որ վերծնեալս ՚ի զօրաց հրեշտակաց, ազգ մարդկան կենդանեաց մեծացուցանեմք։ մեծ

Ըզքեզ բնակ հրեղէն աստուածութեանն յիմանալի զօրացն երանեալ, ազգ մարդ։

Ըզքեզ մայր էմմանուէլի, մարգարէին յառաջ գուշակեալ, ազգ մարդկան կեն։

Եկեսցէ տէր ՚ի վերայ մեր ողորմութիւն քո, եւ բան փրկութեան քո պահեսցէ զանձինս մեր ՚ի մեղաց։ ողր

Ողորմութիւն քո եւ ճշմարտութիւն քո եւ լոյս երեսաց քոց առաջնորդեսցէ մեզ ՚ի յարդարութիւն։

Որ ողորմած ես գթած եւ երկայնամիտ տէր, ընկալ զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին։

Տէր զլուր միւսանգամ քո գալստեանդ լուայ եւ երկեայ. զի ուսայ ՚ի սրբոց պատուիրանացն եթէ գաս դու ՚ի դատել զերկիր։ ողր

Տէր յիշեցի զչար զգործս իմ եւ զարհուրեցայ. զի ծանեայ ճշմարտութեամբ զահաւոր եւ զանաչառ ըզքո դատաստանն։

Տէր յիշեցի եւ ըզգութ արարչական սիրոյ քո առ քո արարածս. եւ ՚ի քո գթութիւնդ ապաւինեալ աղաչեմ, ողորմեա ինձ յաւուր յայնմիկ քրիստոս արդար դատաւոր։

Որ օրհնիս ՚ի հրեշտակաց անդադար հայր երկնաւոր, ընկալ զաղաչանս մեր։ տէր

Առաջի քո անկանիմք փրկիչ.

խնդրեմք զխնդութիւն բանում յանցանաց մերոց։

Որ գիտակդ ես գաղտնեաց մարդկան հոգւոյ սուրբ, տէր եւ կենդանարար, ընկալ զա։

տէր Օրհնեցէք զտէր ընդ երկնային նշմանեալ դասուց, նոր ժողովուրդք աւետելով, քեզ հօր տըւողիդ մեզ ըզկեանըս փառք։

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք ընտրելոյ որդիք սիոնի աւետելով, քեզ որդւոյ շնորհողիդ մեզ ըզկեանըս փառք։

Բարեբանեցէք զաստուած 'ի սքանչելիս սրբութեան նորա ձայնիւ ցնծութեամբ աւետելով, քեզ հոգւոյդ պարգեւողիդ մեզ ըզկեան։

ձկ րձ Զանուն տեառն ալէլուիա ալէլուիա։

Եւ սրբոյ հոգւոյն ալէլուիա ալէլուիա։



ՇԱԲԱԹ ՕՐ՝ ՏՕՆ Է ՍՐԲՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

օրհ ակ Որք զարդարեցին տնօրինաբար զիմաստս անեղին, հաստատելով յերկրի ըզգիր կենդանի հովուել ըզհօտ նոր իսրայէլի. Երգով քաղցրութեան հնչմամբ զաստուած օրհնեսցուք։

Որք զերկրաւոր մեծութիւն փառաց խաւար կոչեցին, ապաւինելով 'ի յոյս անմահ փեսային անճառ բանին արժանի եղեն. Եր։

Որք զօրութեամբ հօր իմաստութեան էին անեղին հաստատեցին զաթոռ սրբոյն գրիգորի թարգմանութեամբ նշանագրութեան. Եր։

Որք նորափետուր բանիւ զարդարեալ պայծառազգեցան եկեղեցիք հայաստանեայց 'ի ձեռն սրբոյն սահակայ. Եր։

Որք թագաւորաց ազգաց եւ ազանց գերագոյն ցուցին արփիափայլ զերգըս հոգեւորս ընտրեալ դասուց վերին սիոնի. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

Որ խորհրդեամբ ճշմարիտ լուսոյ փառաց անեղին նկարագրեցաւ մեզ գիր կենդանի յարգանդ մաքուր մեծին մեսրովպայ. անմա։

Որք ըզծածկեալ խորհուրդ աստուածգիտութեան տնօրինաբար յայտնեալ ծանուցին հանգոյն սրբոյ մեծին մովսէսի. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

առ Ի մաքրագործ հոգւոյն անօթ ընտրեալ եւ ձիւնափայլ, թագաւորք երկրի իշխանք աշխարհի. անպական գանձուց բաշխող յակոբ ալփեան յուդա յակոբեան, բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց։

Երեքսրբեան մի տէրութեան խորհուրդ կամաց եւ հազարապետք, փողոց հնչմունք բարբառք աւետեաց. ընդ ամենայն երկիր սուրբքդ շմաւոն եւ մատաթիա. բարե։

Բանին կենաց կանոնի քարոզ եւ աւետարանիչ, երգ փրկութեան հնչման ահաւոր, ազգի մարդկան պարծանք սուրբքդ մատթէոս, բարեխօս լեր առ քրիստոս վասն անձանց մերոց։

հայ Այսօր ընդ երկնային զուարթնոցն ժողովուրդք հայաստանեայց, տօնելով ըզյիշատակ սուրբ

հայրապետաց շառաւիղաց սրբոյն գրիգորի, օրհնեցէք ըզհայրն երկնաւոր։

Այսօր որդիք Թորգոմայ ծննեալք աւազանաւն յորդիս արքային. 'ի յիշատակի հարցն սրբոց որդւոց մեծի լուսաւորչին, գովեցէք զորդին միածին։

Այսօր երկնաւոր քահանայութեանն հաւլորդ քահանայք սուրբ եկեղեցւոյ. ընդ քահանայապետս աստուածային օրինօք պատուեալս բարեբանեցէք զհոգին ճշմարիտ, երգելով ընդփառս 'ի բարձունս։

Բգ Որ զարդարեալ գեղապանծ վայելչութեամբ սուրբ զեկեղեցի, պսակեցեր առաքելովք եւ մարգարէիւք, եւ հաստատեալ ամրացուցեր սուրբ թագաւորօք. բարեպաշտութեամբ սոցա քրիստոս խնայեա 'ի մեզ։

Որք զինու զօրութեամբ հոգւոյն վառեալք 'ի պատերազմի, վանեցին ըզամբարշտութիւն հերձուածողաց, եւ 'ի հաւատս ճշմարիտս հաստատեցին ըզտիեզերս. բարե։

Որ շնորհեցեր յաշխարհի թագաւորել մեծին թէոդոսի. եւ կատարեալ ըզկեանս հաւատով ուղղափառութեան, վերափոխեցեր այսօր յերկնից թագաւորութիւնդ. բարեպաշտութեամբ սորա։

մկց Աղաչեմք ըզքեզ տէր բարեխօսութեամբ սրբոց ատովմանց, որք նահատակեցան 'ի ճակատամարտ պատերազմի, յաղթող գտան ընդդէմ թշնամւոյն. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խնայեա 'ի մեզ։

Որք առին զպատուագինութեան զրահըս հաւատոյ ուղղոյ իւրեանց, եւ ընկալան 'ի գլուխ սաղաւարտ փրկութեան ըզնըշան խաչին, սուսեր ընդ մէջ ածեալ ըզճշմարիտ սուրբ հոգին. բարե։

Որք մաքրեցին զանձինս իւրեանց տաճար անուանեալ քում սրբոյ. եւ բուրեցին հոտ անուշութեան զպօլթս իւրեանց 'ի տեղւոջ հեղման սուրբ արեան իւրեանց. բա։

Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յեդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս եւայի. յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ ած

Դու լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւու լուսոյն ճշմարտի. որով հերքեաւ խաւարն առաջին. օրհ։

Ըզքեզ ունիմք բարեխօս կոյս անհարսնացեալ. մայր անարատ էմմանուէլի. տաճար բանին հօրն երկնաւորի. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։

Որ 'ի սկզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր իմաստութիւն. զոր նախանըկար տեսութեամբ նըշանակեալ մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերին, լուսաւորելով փառօքն աստուծոյ։ խաչ

Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանդ քո 'ի սուրբ կուսէն. տըպաւորելով տապանակին աստուածային ուխտի կտակարանաց բանիդ աստուծոյ. փառաց անեղին տեղի հանգստեան։

Որ 'ի կեանս վերադարձի բնութեանս դարձմամբն յորդանանու

օրհնակեցեր. եւ ըզբըղխութիւն մահու եւ դըժոխոց կործանմամբն երկրորդ տապանակաւ խաչին հրա-շագործեալ նոր խորանին. օր-հնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Որ յօրինակ ճըշմարտին սիրոյ սուրբ առաքելոցն ամբերբանաւր 'ի ձեզ եմացաւ հոգի շնորհաց բըղխումն անսպառ. անմահութեանց լուսոյն եր-կրպագեսցուք։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Որ երկրպագումք սուրբ լուսաւորչօք տանըս թորգոմայ հաւատացեալք զեկեղեցիս հայաստանեայց, զլոյս իմաստից 'ի մեզ ծագեցոյ. մաղ-թանօք սոցա քրիստոս խընայեա 'ի մեզ։

հրց դձ Սքանչելագործ աստուած որ ցուցեր զսքանչելիս քո ազգի մարդ-կան. օրհնեմք զքեզ տէր աստ-ուած հարցն մերոց։

Որ 'ի ձեռն երանելի վարդապե-տին արարեր ողորմութիւն ազգի մարդկան. օրհնեմք։

Որ անվաւ լուսաւորեցեր զտոհ-մերս, որոյն բարեխօսութեամբ պահեա զմեզ. օրհ։

դ Ըզտէր. Ամենայն գործք տե-առն եւ ամենայն արարածք օր-հնեցէք. սուրբք եւ խոնարհ սրտիւք գովեցէք. եւ առաւել բարձր ա-րարէք զնա յաւիտեանս։

Հրեշտակ երեւեցար 'ի յերկրի եւ վարս ունէիր աստուծոյ հաճոյա-կան. յիշեցէր զմեզ անդադար երանելի սուրբ վարդապետ. որ ընդ հրեշտակս օրհնես զաստուած յա-ւիտեան։

Ստացող եղեր պատուիրանաց սուրբ հոգւոյն, եւ ապրեցար 'ի հաղբից հրապուրողին. կատարե-ցեր զառաքինութիւն, եւ փոխե-ցար 'ի հանգիստն յաւիտենից։

Արդ եկայք ամենեքեան միաբան, առցուք յօրինակ ճգնութեան զերանելին. զի նմանեսցուք վա-րուց նորա, եւ փոխեսցուք 'ի կեանսն յաւիտենից։

Ըզքեզ օրհնութեամբ մեծա-ցուցանեմք։ մեծ

Որ ըզբանն տարեալ յարգանդի կրեցեր սրբուհի անարատ, եւ անճառապէս ծնար ըզվերնագոյն երկնից. ըզքեզ։

Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ 'ի քո գիրկս. եւ արե-գական արդարութեան եղեր ա-րեւելք. ըզքեզ։

Որ ըզշնորհս աստուածային ան 'ի վերուստ ընկալ յերկնից պար-գեւեցեր հիւսիսականացս 'ի ձե-ռըն սուրբ վարդապետին. աղա-չանօք սորա ողորմեա մեզ աստ-ուած։ ողբ

Որ զանմահն պարունակող բա-նի զգրաւորական զիմաստ հոգ-ւոյն շնորհեցեր որդւոց թորգո-մայ, յայտնեալ տեսլեամբ 'ի ձե-ռըն սուրբ վարդապետին. աղա։

Որ զգիտութիւն քո զերկնային եւ զհոգեւոր զիմաստութիւն ա-ռատապէս ծաւալեցեր յեկեղեցիս հայաստանեայց 'ի ձեռըն սրբոց թարգմանչացն. աղա։

Անճառելի շնորհօք լցեալ 'ի յիշատակի սուրբ վարդապետին. տէր
խնդրեմք 'ի քէն տէր կեցո զան-ձինս մեր։

Եւ զճըգնութիւն սրբոյ վարդապետին ընկալցուք 'ի սիրտըս մեր հաւատով. բարեխօսութեամբ սորա տէր կեցո զան:

Դասաւորեալ ընդ անմարմնական բազմութիւնսն, եւ 'ի սրբոյ հոգւոյն է պսակեալ. 'ի ձեռըն սորին բարեխօսութեան տէր կէ:

Ձկ դձ Նմանեալ մովսէսի տէր վարդապետ, բերելով ըզգիր օրինաց 'ի հայաստան աշխարհս. որով լուսաւորեցան ազգ որդւոց թորգոմայ:

Քանզի նա արժանաւորեցաւ կալ 'ի սինէական փառաւորութեանն. եւ ընկալեալ պատգամըս կենդանիս տայր խրատելեան բանականին. որով լուսաւորեցան ազգ որդւոց յաբեթեայ:

Արդ աղաչեմք ըզքոյին հեզութիւնդ տէր վարդապետ. բարեխօսեա առ հայր 'ի յերկինըս վասըն քո տօնողացս. քանզի քեւ լուսաւորեցան մանկունք սուրբ եկեղեցւոյ:



# ԿԱՆՈՆ

## ՉՈՐՐՈՐԴ ԿԻՐԱԿԷԻ ԱՂՈՒՀԱՑԻՑ

օրհ դձ Որ արարեր զօրութեամբ զիմանալեացն աշխարհ վերին, եւ 'ի նմա հաստատեցեր տէրութեանս ըզպետըս հրեղինաց. օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ:

Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի. եւ 'ի դրախտն որ յադենի տէրութեանս եդեալ ըզմարդն առաջին. օրհ:

Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհըրդեամբ. եւ 'ի սմա կարգեալ տէրութեանս զքարոզս բանին ճըշմարտութեան. օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ:

Անտանելւոյն սակաւոր բարձող էիցըս բարձողին. որ ծընար զաստուած մարմնով զանմարմնաբար ծընունդըն հօր. բարեխօսեա վասըն մեր աստուածածին մարիամ:

Որ տիրական առ 'ի քէն կարգեալ տէրութեանս բնութեան մերոյ, խնամութեամբ ըզպարտըս եթող քոյոց պարտապանաց. թող եւ ըզմեր ըզյանցանս ողորմութեամբըդ քո քրիստոս:

Որ պատմուճանն առաջին զոր զգեցուցեր օծմամբ հոգւոյն, մերկացաք մեղօք ըստ նախահօրըն պատուիրանաց, զգեցո ըզնոյն վերըստին ողորմու:

Այսօր որ էն 'ի յերկինս բան եւ ծընունդ հօր միածին, ըզծածկեալն 'ի յէից խորհուրդ յայտնեաց աշակերտացն, ծառայքն ըզկերպարանըն ծածկելով աստուածութեամբըն: վաղ

Այսօր հնչեաց յառաքելոցըն հայրական բարբառ յերկնից, սա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ. որ ըզլիութիւնն աստուածային կերպիւ ծածկեալ ծառայական:

Այսօր վիմին հաւատոյ յայտնեալ զխորհուրդ երրորդութեանն, երանելի յօրհնմամբ տանուտարացըն խորհրդոյ. որում ըզմեզ մաքրեցես լինել տաճար երրորդութեանն:

Որ յանարատեաս 'ի յաթոռ բազմեալ ընդ հօր եւ ընդ հոգւոյն.

անըսկիզբն աստուած բանդ ՚ի հօրէ առաքեցար. ծառայի զգեցար ըզկերպարան ծածկելով զաստուածութիւնդ։

Այսօր ցուցեր ՚ի Թաբօր զաննմանելի լուսոյդ փայլումն. ծագեցար աշխարհի արդարութեան արեգակն. յայտնելով աշակերտացն ըզպարագրեալ աստուածութիւնդ։

Յորմէ անհուն զարհուրեալ ընտրեալ դասուց առաքելոցն, երրակի խորհրդով յօրինէին քեզ տաղաւար. որով ըզմեզ սրբեսցես լինել տաճար քեզ հոգեւոր։

ապչ Ըզհայրն երկնաւոր օրհնեցէք ընդ հրեշտակս, որ միայն է թագաւոր փառաց։

Զորդին միածին գոհութեամբ բարեբանեցէք, որ եկն և փրկեաց ըզմեզ։

Զմխիթարիչ սուրբ զհոգին ամենայն շունչք բարեբանեցէք, որ լուսաւորեացն ըզմեզ։

Օրհնեմք ըզքեզ անըսկիզբն աստուած ընդ հրեշտակս քո ՚ի յերկինս։

Զօրհնաբանեալ օրհնեսցուք զմիայն օրհնեալ թագաւորդ. զի դու միայն ես փառաւորեալ տէր յարարածոց քոց։

Ըստ արժանի սրբութեան քում հանապազ քեզ վայելէ օրհնութիւն, զի դու միայն ես փառաւորեալ. փառըք քեզ աստուած։

Օրհնեմք ըզքեզ աստուած ընդ սուրբս քո ՚ի յերկինս։

Տուր մեզ իմաստութիւն փառաւորել ըզքեզ ՚ի տուէ և ՚ի գիշերի ընդ հրեշտակս քո ՚ի յերկինս։

Լուր ձայնի աղօթից ժողովրդեան քո, եւ լեր մեր ապաւէն պահելով ՚ի խաղաղութեան։

Առաւօտ խաղաղութեան ծագեա ՚ի մեզ մարդասէր, եւ կեցո։

Իմանալի լուսովդ քո փրկիչ, լուսաւորեա ըզմեր ըզհոգիս, եւ կեցո։

Եւ յամենայն ՚ի վտանգէ ամրացո ըզմեզ ընդ հովանեաւ աջոյդ քո սրբոյ, եւ կեցո։

Ամենակալ ամենից հայր բազմագեղ խնամող ստեղծող եւ տէր բոլորից, աննեղ եւ էիցս էակ. զոր միշտ օրհնեն դասք անմարմնականացն յաւէժաբար հընչմամբ։ ած

Որ կերպարան եւ կնիք հօր առեալ վասն մեր ծառայի կերպ ՚ի կուսէն. որ էն ՚ի յաթոռ փառաց անտես վերնոցն, ՚ի յայրին իջեւանի եւ ՚ի մսուր անբանից բազմեալ։

Ըզ՚ի կուսէն մարմնացեալ բանն եկայք ժողովուրդք ընդ հովուսն բարեբանեսցուք, եւ ընդ մոգուցն երկրպագեսցուք. ընդ երկնայինն զօրսն երգեսցուք փառք ՚ի բարձունս աստուծոյ։

Քեզ քրիստոսի կաթողիկէ եկեղեցւոյ շնորհողի զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նշանս, մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ՚ի բարձունս։ խաչ

Սա կամաւ քո քրիստոս եւ թեւոք ամենազօր սուրբ հոգւոյն, եւ դասուք հրեշտակաց թռուցեալ եկաւորի ՚ի լեառն վարագայ բնակիլ ՚ի նմա։

Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս. համբարձէք միաբան ըզձեռս

ձեր 'ի սրբութիւն, եւ ըղձնա-
կեալն 'ի սմա միշտ փառաւորես-
ցուք ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ ։**

Յաստուածային կայծակունս 'ի
սրովբէիցն անհըպելին, անմարմա-
պէս մերձեցաք դոլ պարտական
քում խորհրդոյ. շնորհեա ընդ
մաքրութեամբ 'ի թողութիւն մե-
ղաց մերոց ։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ։**

Որ վառեցար 'ի յարփւոյն եւ ոչ
կիզար ընդ մորենւոյն. այլ եսուր
զհացն կենաց կերակուր բանա-
ւորաց. բարեխօսեա առ քրիստոս
ջնջել զպարտիս մեղաց մերոց ։

հրց գկ Արարչակիցդ հօր համագոյ
հոգւոյդ որդի եւ բան. որ ըղխոր-
հուրդ անօրէնութեանդ քո ծա-
նուցեր առանողացն. ընդ քեզ օր-
հնեմք աստուած հարցն մերոց ։

Որ զփրկականն քո օր զանճառ
պատարագելդ զենումն ցանկացա-
տեսանել աբրահամ. ետես սահա-
կաւ եւ ցնծացաւ. ընդ քեզ օրհ ։

Որ զկենարար խաչ քո գուշակէր
սանդուղքն յակոբայ. որով հրեշ-
տակք 'ի յերկիր իջեալ եւ մար-
դիկ յերկինս ելին. ընդ քեզ օր-
հնեմք աստուած հարցն մերոց ։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր ա-
րարէք ընդ նա յաւիտեան ։

Նախանձաւորք ճըգնութեան մեծ
նահատակին յոբայ արդարոյ. հզօրք
ճըգնաւորաց բարձր արարէք
ընդհայրն երկնաւոր ։

Ընդ ողջախոհին յովսեփայ, որ
յաղթեաց մեղաց ցանկութեան.
մանկունք սիոնի բարձր արա-
րէք զքրիստոս թագաւորն ։

Ընդ ծննդականին քրիստոսի, մեծ-
քնեցելի քահանայապետին. դասք
քահանայից բարձր արարէք
զհոգին ճշմարիտ ։

Աստուածատունդ խընկարկեր մեծ
ծառ յանուշահոտ բուրաստանէն,
որ 'ի գնացս հօտոյն վըտակաց
տընկեցար, եւ զանմահութեան
պտուղն 'ի ժամու եսուր մեզ.
վասն որոյ ամենեքեան ընդ քեզ միշտ
մեծացուցանեմք ։

Զանապական բողբոջն յաստուա-
ծայինն դրախտէն յորովայն քո
տընկեալ բըղխեցեր յարմատոյն
յեսսեայ ծաղիկ վայելուչ կուսա-
կան ծընընդեամբ. վասն որոյ ։

Յարփւոյն լուսոյ ծագումն 'ի քեզ
վառեալ ըղձրագ մաքրոյն լոյս աշ-
խարհի. որով դտեալ զպատկերն
իւրական, զոր վերըստին նորո-
գեաց յառաջին կերպարանն. վասն
որոյ բարեխօսեա նորոգել զմեզ
'ի հնութենէ մեղաց ։

Շնորհեա մեզ տէր ընդ աղքա- ողբ
տայ որբնակին ղազարու ժուժկա-
լութիւն. զի կամաւոր աղքատու-
թեամբ արքայութեանդ երկնից ընդ
նմին լիցուք արժանի. լուր մեզ եւ
ողորմեա քրիստոս աստուած ։

Որ փոխանակ հացին կարօտու-
թեան զհացն անմահութեան նը-
մա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն
անգըթութեան 'ի գոգն աբրահա-
մու ըղնա ընկալար. լուր ։

Լուսաւորեա զաչըս սրտից ստա-
նալ մեզ ողորմութեամբ 'ի քէն
տէր զողորմութիւն. զի մի ընդ
մեծատանն հայցեսցուք 'ի բոց
հնոցին ծագիւ մատին ջուր 'ի
զովացումն. լուր ։

տէր Որ ըզլոյս աստուածային քո բանի ծագեցեր յաշխարհամած խաւարն անգիտութեան. լուսաւորեա եւ զմեզ հօր իմաստութիւն։

Որ զհամօրէն դատաստանին օրինակ նշանակեցեր առ մեծատունն եւ ղազարոս, ներհակաբար տալով զոր առ ընկալան։

Վասն որոյ աղաչեսցուք ըզքեզ տէր, փրկել ըզմեզ 'ի հրոյ մեղաց եւ տանջանաց, հանգչել 'ի գոգ նահապետին արդարոյ։

Որով եւ մեք ընդ հրեշտակացն դասուց, անբաժանելի սուրբ երրորդութեան համաձայնեալ երգեմք ըզփառս 'ի բարձունս։



Հարցք ապաշխարութեան՝ չորրորդ շաբաթու աղուհացիցն:

**Երրորդ ձայն:**

հրց գձ Փառաւորեալ անուն քո յաւիտեան. տէր աստուած հարցն մերոց։

Վասն անուան քո մեծի մի մատներ ըզմեզ իսպառ. տէր աս։

Բարձրացուցանեմք գովելով զանուն քո սուրբ. տէր աս։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ 'ի յերկրէ 'ի յերկինս համբարձար 'ի վերայ թեւոց հողմոց. ժողովուրդք օրհ։

Որ նստիս 'ի բարձունս յաթոռ ընդ աջմէ բարձրելոյն. քահանայք օրհնեն։

մեծ Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանեցեր հրեշտակին. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ։

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անպատականաբար բնակիլ հաճեցար 'ի քում յորովայնի. ուրախ։

Որ բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հողեղինի յայտնեալ. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ։

Զերծո զիս յորոգայթէ որսողին եւ յամենայն վտանգից ապրեցո եւ ողորմեա։ ողր

Յաներեւոյթ թշնամւոյն եւ 'ի գազանի նետից բանսարկուին պահեա եւ ող։

Փրկեա զիս 'ի յանցանաց մեղաց իմոց, եւ նորոգեա զիս հոգւով գիտութեան եւ ող։

Ըզհայրն երկնաւոր օրհնեցէք ընդ հրեշտակս, որ միայն է թագաւոր փառաց։ տէր

Զորդին միածին գոհութեամբ բարեբանեցէք, որ եկն եւ փրկեաց ըզմեզ։

Զմխիթարիչ սուրբ զհոգին ամենայն շունչք բարեբանեցէք, որ լուսաւորեաց ըզմեզ։

Փառաւորեալ է անուն քո յաւիտեան. աստուած հարցն մերոց։ հրց

Վասն աբրահամու սիրելոյ քո մի մերժեր ըզմեզ իսպառ. աստուած հարցն մերոց։

Ի տաճարի քում խնդրեմք 'ի քէն. մի անտես առներ ըզմեզ. աստուած հարցն մերոց։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ փառաբանիս յանմարմնոց հր-

րեշտակաց. ամենայն ազինք գո-
վելով բարձր։
Որ երկրպագի 'ի դասուց քերով-
բէից. քահանայք օրհնելով ժողո-
վուրդք առաւել բարձր։
մեծ Զանձառելի լուսոյ մայր, եւ
ընդհանրական անպարագրելւոյ որ-
դւոյն. օրհնութեամբ մեծացու-
ցանեմք։
Զանհաս տնօրէնութեան մայր,
եւ զանձնաւոր տաճար աստուծոյ
բանին. օրհ։
Զբոլորից փրկութեան մայր, որ
զանտանելին յէից 'ի յորգանդի
եբարձ. ըզնա ամենեքեան օրհնու-
թեամբ մեծա։
ողր Ով մեղաց խոց զիս ալէկոծէ.
որ ես նաւապետ բարի, շնորհեա
ինձ նաւահանգիստ հայր ամենա-
կալ։
Խորքք պատրանաց զիս կորուսա-
նեն. այլ դու նաւապետ բարի,
շնորհեա ինձ։
Որ միայն իշխանդ ես թողուլ ըզ-
մեղս. եւ ես աղաչեմ ըզքեզ. տէր
թող ինձ ըզմեղս իմ հայր ամե։
տէր Օրհնեմք ըզքեզ անսկիզբն
աստուած ընդ հրեշտակս քո 'ի
յերկինս։
Զօրհնաբանեալ օրհնեցուք զմիայն
օրհնեալ թագաւորդ. զի դու մի-
այն ես փառաւորեալ տէր յարա-
րածոց քոց։
Ըստ արժանի սրբութեան քում
հանապազ քեզ վայելէ օրհնու-
թիւն, զի դու միայն ես փառաւո-
րեալ. փառք քեզ աստուած։
հրց Օրհնեալ ես տէր եւ փառա-
ազգ ւորեալ է անուն քո յաւիտեան.
մի աստուած հարցն մերոց։

Զօրհներգութիւն երից մանկանցն
ընդ սերովբէսըն բարեբանեմք.
օրհնեալ ես տէր եւ փա։
Զանյաղթելի հըզօր թագաւորդ
ընդ քերովբէսըն բարեբանեմք.
օրհնեալ ես տէր եւ փա։
Ընտէր օրհնեցէք եւ առաւել գ
բարձր արարէք ըզնա յաւիտեան։
Նցէք. Զերկրպագեալն 'ի հրեշ-
տակաց զփառաւորեալն անդադար.
բարեպաշտութեամբ օրհ։
Նսյէ. Զահաւոր զփառաւորեալ
զամենասուրբ զերրորդութիւն,
զանրաւելի զբնութիւնն, քահա-
նայք օրհնե։
Ուրախ լեր աստուածածին յոյս մեծ
եւ փրկութեան մայր. ըզքեզ
ընդունող լուսոյ մեծացուցանեմք։
Ըզքեզ լուսոյ մայր եւ կոյս, ըզ-
քեզ զանձրդ կենաց աստուա-
ծային ձայնիւ ցընծութեամբ մե-
ծացուցանեմք։
Մայր սուրբ անարատ լուսոյն.
հրեշտակային օրհնութեամբ պա-
տուեալ ըզքեզ մեծա։
Մերձեալ է օր գալոյ քո տէր. ողր
լուր ձայնի աղօթից իմոց որ կար-
դամս առ քեզ, եւ ողորմեա։
Բանից իմոց ունկնդիր տէր, եւ
'ի միտ առ զաղաչանս իմ զառա-
ւօտուս որ կար։
Որ ընկղմեալս եմ 'ի խորս չար-
եաց, սուրբ զհոգին քո առաքեա
առ իս որ կար։
Օրհնեմք ըզքեզ աստուած ընդ տէր
սուրբս քո 'ի յերկինս։
Տուր մեզ խնամութիւն փա-
ռաւորել ըզքեզ 'ի տուէ և 'ի գի-
շերի ընդ հրեշտակս քո 'ի յեր-
կինս։

Լուր ձայնի աղօթից ժողովրդեան քո, եւ լեր մեր ապաւէն պահելով 'ի խաղաղութեան։

Հրց Հարցըն մերոց տուրեալ ըզքեզ բարերանեմք, որ օրհնեալ ես 'ի յաւիտեան։

Վասն ուխտի հարցըն մերոց մի մերժեր ըզմեզ 'ի քո բազում գըթութեանցդ, որ օրհ։

Յաջողեա ատենին յահեղ յայնըմ աւուր ողորմեա անձանց մերոց, որ օրհ։

Գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Եկէք. Երեք մանկունքն 'ի հընոցին մաքրութեամբ երգէին ասելով. ամենայն գործք տեառն ըզտէր օրհ։

Եսցէ. Եւ զայն տեսեալ անօրէն արքային զի ոչ այրեին մանկունքն 'ի հնոցին. զանձին հարեալ ասելով. եւ ես բարերանեմ զանմահ թագաւորն։

Մեծ Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։

Աւետաւոր հրեշտակն աւետաբանէր ըզծընեալ փրկիչն 'ի սուրբ կուսէն։

Ասէ ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ։

Ողր Ողորմեա ինձ աստուած, զի քեզ միայնոյ մեղայ։

Առաւել լուա զիս 'ի տղմոյ յանցանաց, աղբիւր բժշկութեան, եւ ողորմեա։

Յարենէ փրկեա զիս, որ հոգւոյ եւ մարմնոյ ունիս իշխանութիւն. եւ ողորմեա։

Տէր Առաւօտ խաղաղութեան ծագեա 'ի մեզ մարդասէր, եւ կեցո։

Իմանալի լուսովդ քո փրկիչ, լուսաւորեա ըզմեր ըզհոգիս, եւ կեցո։

Եւ յամենայն 'ի վտանգէ ամրացո ըզմեզ ընդ հովանեաւ աջովդ քո սրբոյ, եւ կեցո։

Հրց աղց մի Օրհնեալ ես տէր, աստուած հարցըն մերոց։

Որ հրաշալի ձայնիւ վերնոյցըն գայք զքեզ փառաւորեն. օրհ։

Ազարիանց ձայնիւն երգեմք քեզ թագաւոր փառաց. օրհ։

Գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնստեալն 'ի քերովբէս։

Եկէք. Զլոյսն անքննին 'ի հայրական ծոցոյ առաքեալ, օրհ։

Եսցէ. Որ զանգէս որդւոց մարդկան 'ի յիսրայէլ անուն նորոգեալ, օրհնէ։

Մեծ Լոյս լուսոյ մայր, եւ կենարար բանին բնակարան. քեզ երանեսցեն ազգ եւ ազինք ամենայն։

Ստեղծողին մայր, եւ հընութեան կերպի նորոգողին. քեզ։

Լոյս ծագեցաւ 'ի քէն նստելոցս 'ի խաւարի. քեզ։

Ողր Վիրաւորեալ յանցանօք անձն իմ, առ քեզ տէր համբարձի զաչս իմ. թող ինձ ըզմեղս իմ միայն բարեգութ, եւ ողորմեա ինձ աստուած ըստ մեծի ողորմութեան քում։

Կործանեաց զիս չարագործ թըշնամին, եւ կամի իսպառ զիս որսալ. հայր բարեգութ բժշկեա զվիրաւորեալս, եւ ողոր։

Անդունդք մեղաց պաշարեցին զիս, զի բազում են քան զաւազ ծովու. առ քեզ տէր պաղատիմ, փրկեա 'ի վտանգէս,

Եւ ողորմեա ինձ աստուած իմ։

տէր Փառք Թագաւորին յաւիտենից։

Որ յանմատոյց լուսոյ ծագեալ բանդ փառակից գոլով հօր, քեզ հրեշտակք երգեն սաղմոսիւ. փառք։

Քահանայք և պաշտօնեայք սուրբ եկեղեցւոյ, անդադար քեզ ընդ հրեշտակս երգեն սաղմոսիւ. փառք։

հրց Օրհնեալ ես տէր աստուած հարցն մերոց։

Վասն ուխտի քո առ հայրսն փրկեա զմեզ ՚ի հրոյն. եւ ՚ի բորբոքեալ բոցոյն ապրեցո զմեզ. ամ։

Որ նստիս ՚ի քրովբէս եւ բարեբանիս ՚ի սերովբէից. յանձանց խոնարհեալ ընկալ ըզլանաւոր պատարագս ՚ի մէնջ. ամ։

գ Գործք տեառն ըզտէր օրհնեցէք, եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Գիշերք ըզտէր օրհնեցէք.

Զթագաւորն յաւիտենից զաստուած արարիչ. օրհնեցէք, եւ։

Ամպերք ըզտէր օրհնեցէք.

Զէակիցն հօր եւ հոգւոյ զմիածին որդին գովեցէք, եւ։

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.

Զփառակիցն հօր եւ որդւոյ ընդնորդոյ սուրբ զհոգին բարեբանեցէք, եւ բարձր։

մեծ Անսկըզբնական բանին հօր բընակարան, տաճար եւ առագաստ, տեղի անտանելի լուսոյն. զքեզ մեծացուցանեմք արժանապէս երգով աստուածածինդ եւ կոյս։

Յորմէ կենդանատուեղծեալք յանեղէն հատեցան ամենայն եղականքս, անսերմնապէս տրտմացեալ յորովայնի քում, եւ ծնեալ առ ՚ի քէն մարմնացեալ աստուածըն բոլորից. զքեզ։

Յորմէ զարհուրեալ զօրացն գունդք վերին զուարթնոցն, տղայապէս առ ընկալեալ բարձեր ՚ի գիրկս, եւ արբուցեր որպէս մայր կաթացողին ըզքեզ երկուսական քո սուրբ ընկալաւ. զքեզ։

ողր Զանապական զհօրդ զգանձն յապականացու կենցաղս ծախեցի. այլ առ քեզ միայն պաղատիմ բարերար փրկիչ. խնայեա ՚ի մեղուցեալ ծառայս։

Զցանկ հօրդ իմոյ քակտեցի եւ եղէ անպտղունակ որթ. այլ առ քեզ միայն։

Ոստայքանց եղէ ես որպէս զարմանելի, պտղալիցս որպէս ձիթենի. այլ անյիշաչար եւ անոխակալ փրկիչ, խնայեա ՚ի մեղուցեալ ծառայս։

տէր Անշիջդ քո աստուած ընկալ զիս եւ կեցո։

Յօրհնութիւն ՚ի նոր օրհնեսցուք զքեզ քրիստոս փրկիչ մեր։

Ի սրբութեան քում բարեբանեմք զքեզ քրիստոս աստուած մեր։

ձնկ Զքեզ բարեբանեն մանկունք եկեղեցւոյ։

Անեղական արդարութեան լոյս ճշմարտութեան քրիստոս աստուած. զքեզ։

Յարեւելից եւ յարեւմտից ՚ի հիւսիսոյ եւ ՚ի ծովէ. քեզ երկրպագեն ամենայն քո արարածք. եւ զքեզ։

հմբ Զօրհներգութիւնս բանաւոր պատարագ. քեզ ՚ի մատուցանել արե-

գականըս վեր առաքեմք, Թագաւոր յաւիտենից։

Յամենայն փորձութենէ Թշնամւոյն, ամենակալդ աջովդ քո պահպանեա զմեզ, Թագաւ։

Ի մշտնջենաւոր քո լերանց օրհնաբերեցաք փառաւորել սուրբ զերրորդութիւնդ, Թագաւ։

հմբ Պահապան խնդրեմք ՚ի քէն Քրիստոս, մի՛ անտես առներ. այլ շնորհեա խնդրողացս ՚ի քէն զամենայնաղթ զօրութիւն սուրբ խաչին քո, յօգնութիւն անձանց մերոց։

Եւ մի՛ տար սասանութեան զոտըս մեր փրկիչ. այլ ամրացո հաստատուն հաւատով զանձինս մեր, զյոյս զսէր եւ զհաւատս մինչեւ յաւիտեան։

Առաւելացուցես ՚ի մեզ ըզշնորհս քո զօրութեան. տէր աստուած խոստովանեցուք հաւատով սուրբ զերրորդութիւնդ, զհայր եւ զորդի եւ ըզսուրբ զհոգիդ յաւիտեանս ամէն։



Հարցն ապաշխարութեան

Վառ ձայն։

հրց
գկ
աղց
մի Սուրբ աստուած հայր անըսկիզբըն. աշխարհի ողորմեա մարդասէր. աստուած հարցըն մերոց։

Սուրբ աստուած որդիդ միածին. մեղաւորացըս Թողութիւն շնորհեա մարդասէր. աստուած հար։

Սուրբ աստուած հոգիդ ճշմարիտ. ՚ի հասեալ բարկութենէ ամրացո մարդասէր. աստուած հար։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Հընոցըն ցօղանայր ընդ իջանել հրեշտակին. եւ մանկանցն օրհնաբանեալ անէին. բարձր։

Յարուցեալ ազարիանք բարբառեցան ըզքրովբէական օրհնութիւնսն երգելով. բարձր։

Զաստուածածին եւ զմիշտ կոյսն անդադար օրհնեսցուք. քանզի ծագեաց մեզ լոյս երեսաց, եւ փրկիչ անձանց մերոց։ ձեձ

Խնդա եւ ուրախ լեր անհարսնացեալ մայր. քանզի որ ՚ի քէն ծնաւ մեզ աստուած ՚ի փրկութիւն անձանց մերոց։

Գանձ անապական գտար սուրբ աստուածածին. բարեխօսեա քրիստոսի աստուծոյ մերոյ, կեցուցանել զանձինս մեր։

Քրիստոս աստուած աստուծոյ. ողորմեա։ ողբ

Ա՛նօրէնութեամբ ՚ի մեղս երկնեաց զիս մայր իմ. ողորմեա փրկիչ. ող։

Վիրաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ փրկիչ. մի՛ անտես առներ. ողորմեա։

Զանըսկիզբըն աստուած զհայրն ամենակալ բարեբանեցէք ընդ զուարթունս երկնից։ տէր

Զոր ՚ի հօրէ ծնեալ զորդին միածին բարեբանեցէք հրեշտակային ձայնիւ։

Եւ զնորոգող սուրբ զհոգին ձայնիւ ցընծութեամբ բարեբանեցէք անլռելի ձայնիւ։

Աստուած բարձրեալ ահաւոր եւ սքանչելագործ, արարիչ անձանց մերոց. օրհնեմք ըզքեզ աստուած հարցըն մերոց։ հրց

Որ իջեր ՚ի մէջ հնոցին, եւ փըր-

կեցեր մեծ սքանչելեօք զերիս մանկունս. աստուած:

Քեզ հրեշտակք երկրպագանեն, եւ սերովբէք սրբասաց ձայնիւ օրհնեն ըզքեզ. աստուած:

դ Գործք տեառն ըզտէր օրհնեցէք. եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Տիւք եւ գիշերք ըզտէր օրհ:

Խաւարք ըզտէր օրհնեա.

Ամենայն ժողովուրդք երգով օրհնութեամբ. եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան:

մեծ Մայր և կոյս անապական քրիստոսի, որ բարեխօս ես մեզ աշխարհի. քեզ երանեն ամենայն ազգք:

Մաքուր անուանի եւ հոգով երկնից մարմնով, տաճար եւ աթոռ աստուծոյ բանին. քեզ երան:

Քեւ հաշտեցան վերնայինքն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք ի փայտին կենաց. քեզ երան:

սղր Սրբասուրբ հաւատով ի տաճարին նոր ըզքահանայութիւն. նմին ձայնիւն եւ ես գոչեմ. օգնեա ինձ աստուած:

Աւազակին ազատակէր ի խաչին, յիշեա զիս տէր. նմին:

Անառակ որդին ապերասանօք ապաչէր ըզքեզ, հայր մեղայ յերկինս և առաջի քո. նմին:

տէր Անսկիզբն աստուած և թագաւոր երկնաւոր. բարեբանեալ ի զօրաց անմարմնից երկնաւորաց. ըզքեզ օրհնեմք հայր անսկիզբն:

Խոնարհեցար ի բարձանց փառաց մերոյ փրկութեան. արձակիչ կապելոց եւ բժիշկ հոգւոց մերոց. ըզքեզ գովեմք որդի միածին:

Որ էակից եւ ընդ հօր և փառակից միածնիդ. բաշխող պարգեւաց եւ տուող շնորհութեան. ըզքեզ բարեբանեմք սուրբ հոգիդ ճշմարիտ:

Օրհնեցէք ըզտէր, եւ օրհնեցէք ըզանուն նորա: ձյն

Գովեցէք ըզտէր, եւ բարեբանեցէք ըզանուն նորա:

Աւետարանեցէք օր ըստ օրէ ըզփրկութիւն նորա:

Տուր մեզ տէր զօգնութիւն ի նեղութեան, զի օրհնեսցուք հանապազ զանուն քո սուրբ: հմբ

Պահեա զմեզ տէր յամենայն փորձանաց, յաներեւոյթ թշնամեաց եւ ի գաղտնի նետից նորա:

Դու յոյս մեր և ապաւէն յամենայն ժամանակի, որ օրհնիս հանապազ ի քոյոց արարածոց:

Հովանի արա ձեռին քո տէր պահպանեալ ըզմեզ, եւ ոչ նկրտեսցէ որ յափշտակել ըզմեզ: հմբ

Զօրութիւն սուրբ խաչի քո քրիստոս պահպանեալ ըզմեզ, եւ եղիցի մեզ պահապան ի տուէ եւ ի գիշերի:

Ետուր երկիւղածաց քոց նշան, եւ զէն յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն:



ՇԱԲԱԹ ՕՐ՝ ՏՕՆ Է ՍՐԲՈՑ ՔԱՌԱՍՆԻՑ

Այսօր ընդ անմարմնոցն դասս պարեն, որք ի սեբաստիա ճգնութեամբ պսակազարդեալք յաղթեցին թշնամւոյն. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խնայեա ի մեզ: օրհ գլ

Եւ ըզմոլութիւն անօրէն բռ-

նուիրին աստուածային արութեամբ վանեալ, տարեալ ժուժկալութեամբ համբերեցին տանջանաց. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խնայեա ի մեզ:

Ի ձուլիլ պատուական մարմնոցն ի դժընդակ օդոյն, տագնապէին ի լըծին սաստկացելոց յանտանելի տանջանաց. զորս ի յերկինս համբարձեալ և զօգնութիւն ի քէն խնդրէին, որ յոյս և ապաւէնդ ես քոց սրբոց խնայեա ի մեզ:

Այսօր զանյաղթելի մարտիրոսացն, եկեղեցի տօնէ ըզյիշատակ ճգնութեանն, որք ի սերմանեալ պատերազմաւք ընդ թշնամւոյն յաղթեցին քաջութեամբ. այնոցին աղաչանօք քրիստոս խնայեա ի մեզ:

ատն Ով երջանիկ ձօնաւորդ, առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ ստեփաննոս. հաստատութիւն ի քրիստոսէ հայցեա սուրբ եկեղեցւոյ:

Որ քոյին յօժարական համբերութեամբ ըզքարկոծումըն յանձն առեր, շնորհեալ քեզ յաստուծոյ լինել չարչարակից քրիստոսի, զի եւ մեզ ուսուցես փառաւորել սուրբ զերրորդութիւնն:

Աղօթէիր որ քարանձիգըն լինէին ի քեզ նախդ ի վըկայս, զի առցես ըզհատուցումըն բարի յարարչէն ամենեցուն. եւ այժմ աղաչեմք ըզքեզ եւ վասն մեր բարեխօսեա:

դրե Խոստովանող քրիստոսի ճշմարիտ վըկայ, բազմաչարչար նահատակ տէր գրիգորիոս. զպակասութիւն չարչարանաց տեառն ի մարմնի քում կրեցեր, որով ցնծայ եկեղեցի ի փառս որդւոյ սիոնի:

Ծնող հոգեւոր աստուածանման սիրով, գործակցութ հայր պարծանաց տէր գրիգորիոս. չարչարանօք մարմնոյդ մաքրեցեր ըզմեզ ի յաղտոյ մեղաց, եւ ծնար որդիս լուսափայլ բանիւդ:

Կերպարան փառաց միածնի որդւոյն, մարտիրոս յաղթող տէր գրիգորիոս. բեւեռս երկաթիս ընկալար երկնագնաց թաթք ոտից քոց սուրբ, զի բեւեռեսցես ըզմեզ յերկիւղն աստուծոյ:

Այսօր ցնծայ եկեղեցի ընդ անմարմնոցն դասակցեալ, տօնելով զյիշատակս քո տէր սուրբ ներսէս. որ ի հօտւոյն սրբոյ աղաւնակերպ խնամաբ վերակացար. բարեխօսեա առ քրիստոս վասն անձանց մերոց: հայ

Քահանայապետ ընտրեալ արժանապէս շնորհօք հոգւոյն բաշխեցեր զփրկական մարմին եւ զարիւնն տեառն. յորում հրեղէն սիւն ի յերկնից իջեալ. բարե:

Արդ աղաչեմք ըզքեզ լուսաւորիչ հօտւոյս մերոյ նմանեալդ մխիթարի նախամարտիրոսին մեծի, լուսափայլեալ զխօսք աստուածահրաշ ատեանն. բարե:

Այսօր հրեշտակաց դասքն ի յերկինս ուրախանան ի վերայ ճգնութեան սրբոցն: մրտ

Այսօր ճգնազգեաց սրբոց դասքն ի յերկրի պըսակեցան, երկնային աստուածեղէն փառօքն:

Այսօր անմարմնոց զինուորութիւնքըն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինուորաց բազմութիւնքն ընծայեցան ի խորան սրբութեան երկնից:

Նահատակք յաղթողք քաջք 'ի մարտի երանելի սուրբ մարտիրոսք. որք վանեալ ըզթըշնամին խոստակեցիք:

Հրեշտակացն դասքն տօնակից են մեզ. եւ ջոկք աթոռոցն զուարճացեալ բերկրին ընդ վարդագոյն ձեր հեղմանն արեան. որք վս:

Անթառամ պըսակըն ձեզ աւանդեալ մընայ քան զանկանելս պատուականս գերագոյն հրաշիւք. որք վս:

Այսօր մարտիրոսաց դասքըն ցընծացեալ բերկրին ընդ անուշ տեառն քրիստոսի որդւոյն աստուծոյ:

Ձայն 'ի յերկնից վըկայեալ ասէ. եկայք օրհնեալըք հօր իմոյ, ժառանգորդք երկնից խորանացն:

Լըցէք ըզտեղի անկելոցն ապըստամբողական թըշնամւոյն, որ 'ի յերկնից վայր անկեալ:

ած

Աստուածածին խորան լուսոյ անվայրափակ արփւոյն կենաց. որ եղեր արեւելք արեգականն արդարութեան. եւ նըստելոցս 'ի խաւարի լոյս ծագեցեր. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք:

Անապական տաճար եւ մորենի անկիզելի. որ զանշէջ հուր աստուածութեանն 'ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն որոյ:

Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտի, որով եկեալ յերկիր աներեւաց հորդեալ հոգւով 'ի քեզ տըպաւորեալ բանին. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք:

Յաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ 'ի բարձունս երգեսցուք թագաւորին քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք: խաչ

Որ եկն 'ի լուսաւորել զմոլորեալ սուրբ զեկեղեցի, եւ պըսակեաց սուրբ խաչիւն. նովաւ ըզփառս երգեսցուք:

Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փըրկողին մատուսցուք փառք եւ պատիւ յաւիտեան:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Այսօր անստուերին չարչարանօք նահատակեալք 'ի լըճին սառուցելոյ երանելի քառասունքն. որք 'ի բարձանց անճառելի ճառագայթիցն նըշողիւք տպաւորեալք լինէին. որ իջեր 'ի մէջ սրբոց քոց քրիստոս, խընայեա 'ի մեզ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Այսօր 'ի լոյսն աստուածային երգոյն անցանէին ընդ ջուր, մաքրեալք որպէս զոսկի փորձելով 'ի հուր. եւ համբարձեալք 'ի յերկնային զինուորութիւնսն դասելով ընդ անմարմին զուարթունսն. որ ես փառաւորեալ 'ի մէջ սրբոց քոց քրիստոս խընայեա 'ի մեզ:

Այսօր տօնելով ըզյիշատակ քաջ եւ յաղթող վըկայիցն, որք 'ի սեբաստիա արիաբար ընդդիմամարտեալ հերքեցին ըզմոլորութիւն անօրէն կռապաշտութեանցն, բարեպաշտութեամբ զքեզ դաւանեալ միածնական սուրբ երրորդութիւն. օրհնեալ տէր աստուած հարցն մերոց: հրգ դձ

Որք հանդիսացեալք խրախուսելով ընդ երկնային զինուորու-

թեանցն բոլորիցն հոյլն . եւ միաբանութեամբ յանկնորկեն իւրեանց ըզքեզ վերանկարգային յօգնութիւն , ամենակարող զօրութեամբքդ մինչ թագաւոր յաւիտենից . օրհ ։

Իսկ բըղխումըն յորդաբուղխ սուրբ արեանցն 'ի ձուլել պատուական մարմնոցն 'ի դըժընդակ օդոյն . եւ վերնախնամ տեսչութեամբ ճառագայթարձակ փայլմամբ բոլորեալ պլամլըն յաննմատոյց լուսոյն . քեզ յաւէժաբար հընչմամբ ընդ հոգեղինացըն դասս վերերգեսցուք . օրհ ։

գ Ըզտէր օրհնեցէք . բարձր արարէք յաղթողական ձայնիւ ըզբնակեալն 'ի մէջ սրբոց ։

Այսօր հրաշափառ ծագմամբ որդին միածին զճառագայթս պատուածութեանն երեւեցուցեալ 'ի մէջ լըճին , արփիահրաշ փայլմամբ լուծանելով ըզպաղումըն դառնաշունչ դըժընդակ օդոյն . Եւ բարձր ։

Այսօր վերանորոգող սուրբ հոգին ճըշմարիտ նախագուշակ տեսլեամբ հօտապետին յայտնեալ ըզգանձըս հոգեւորս . եւ բոցաճաճանչ հրաշիւք 'ի փայլումըն նըշուլիցըն համահաւաքեալ 'ի հոսանս ջուրցն . Եւ բարձր արարէք յաղթողական ձայնիւ ըզբնակեալն 'ի մէջ սրբոց ։

մեծ Ծագումըն հրաշալի որ անյայտ էր 'ի մէնջ . եւ բանըն հայրական անըմբռնելի . հուր փայլակնացեալ եւ 'ի մարմնի բնակեցաւ անվընաս պահելով զարարածս ամենայն ։

Ծագումըն հրաշագործ որ 'ի կուսէն ծագեցաւ , ճառագայթելով զարարածս ամենայն . երկինք ցընծային եւ երկիր ուրախանայր . եւ քրիստոս աստուած ընդ մարդկան շըրջեցաւ ։

Առ քեզ ապաւինիմք ամենասըրբուհի . գերագոյն եւ հրաշալի եւ բաշխող բարութեանց . աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց . եւ եղեր վերընկալ աստուածային բանին ։

ողբ Հրաշափառ ծագումըն լուսոյ քո քրիստոս , որ 'ի մէջ լըճին զուարճացոյց սուրբ ըզքառասունսն . ողորմեա մեզ աստուած ։

Լուսափայլ ողորմութեան քո շնորհք ծագեալ 'ի մէջ քառասնիցն , զուարճացոյց սուրբ ըզմանկունսն . ողոր ։

Երանելի վըկայք քո քրիստոս , նահատակեալք 'ի պատերազմի , եւ ընկալան զանապական պըսակն . ողորմեա մեզ ։

տէր Այսօր ցընծան դասք հրեշտակաց , քանզի անուանք ձեր գրեցան 'ի դըպրութիւն կենաց ով սուրբ քառասունք . ընդ որս եւ մեք երգեսցուք քրիստոսի օրհնութիւն ։

Ով երջանիկ ճառագայթք , որք զօրութեամբ աստուածայնոյն ըզպաղումըն լըճին եղկացուցիք . եւ աղօթիւք ըզպակասումըն չորրորդտասինըն լըցուցիք ։

Սուրբք եւ սիրեցեալք 'ի քրիստոսէ , լուսաւորիչք աշխարհի , պարծանք սուրբ եկեղեցւոյ . բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց ։

Ձկ

Զանունըն տեառն. Լուսապսակացըն տօնիւս պայծառացեալ հաւատացեալք պսակողին. որք 'ի սեբաստիա ծովուն զծովածուփ կենցաղոյս լուծին ըղձանք. Ճգնութեամբ սոցա մաղթեսցուք զհանգստութիւն անձանց։

Քրիստոսաձիր երկնաւոր Ճառագայթիւք տապանայր ծովըն սառնապատ լըճիւն. վասըն զի պատուական արեանցըն հեղլով, զկապուտակ զծովըն վարդագոյն ներկէր. Ճգնու։

Թագաւոր երկնաւոր որ ընդ թիւ սրբոց քոյ բարեգթութեամբ ըն-ցեր, զմիաբանութիւնըս մեր օրհնեա. զի մեք որ ծնեալ 'ի բանսարկուէն ելք արտաքս 'ի կորստական բաղանիսն. Ճգնու։

Ճշ. Գձ

Այսօր մեծապէս պանծացեալ ցընծայ սիոն ընդ յաղթող Ճգնութիւն սրբոց քառասնիցն, որք հաւատով հանդիսացան. եւ միաձայնեալ ասէին, օրհնեալ ես ամենօրհնեալ թագաւոր անմահ։

Այսօր կացեալք առաջի բռնաւորին յատենին 'ի սեբաստիա. եւ ըզդառնութիւն սառնամանեացն հաւատով քաղցրացուցին. եւ նոցա միաձայնեալ։

Այսօր ամբարձեալք զաչս իւրեանց յերկինս կոչելով ըզքեզ տէր յօգնութիւն. գեր 'ի վերոյ տեսեալ բոլորեալ պսակըս յանմատոյց լուսոյն. եւ նոցա միա։

Այսօր բացեալ եղեն դրունք վերինն երուսաղէմի. կոչելով սուրբ ըզքառասունսն յանձառ 'ի փառսն եւ յանպատում 'ի կեանս. եւ նոցա միա։

Այսօր սեբաստիա եղեւ երկրորդ յորդանան իջմամբ որդւոյն աստուծոյ. եւ փայլէին անձառ պըսակքն 'ի վերայ սրբոց քառասնիցն. եւ նոցա միա։



# ԿԱՆՈՆ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԿԻՐԱԿԷԻ ԱՂՈՒՀԱՑԻՑ

Որ պատուիրան Ճըշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ քո քրիստոս. անապական ժամանակաւ աղօթել միշտ առ աստուած հոգւով եւ մըտօք։ օրհ բկ

Որ ըզբան քո օրինաց հաստատեցեր գործով մեզ օրինակ. հանելով ըզգիշերն 'ի գլուխ յաղօթս աստուածային բնութեամբ մերով տնօրինաբար, որում կըրկին ծնունդ ամենայն։

Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ քեզ քրիստոս. շնորհեա մեզ յամենայն ժամ լինել քեզ յանդիման, մաքուր աղօթիւք ըստ անմարմնոցն որ յերկինս։

Աղաչանօք աստուածածնին անապական քում ծընողին. զիմանալի աչըս սրտից մերոց բացցես ողորմութեամբ հայիլ 'ի լոյս քո քրիստոս։



Դատաւոր արդարութեան հաստատեցեր 'ի մեզ ըզմիտըս մեր. դատել զհոգի եւ ըզմարմին, արդարապէս դատմամբ ըստ օրինաց քոց քրիստոս։

Իսկ անիրաւ դատաւորին որ 'ի քաղաք բնութեան մերոյ, ոչ ու-

նելով զերկիւղ քո սուրբ, եւ անպատկառ 'ի մարդկանէ ոչ առնելով դատ զորկելոյն։

վար Ծառագայթ փառաց Հօր որդիդ միածին, որ ընդ լոյսդ անվայրափայլ մարմնով պարագրեալ, այսօր 'ի թաբօր փառօք փայլեցեր։

Որ անտես սովորեցից անհաս 'ի վեր քան զլուսն, ծառայի կերպիւ պարածածկեալ ընդ լոյսդ անըստուեր, այսօր 'ի Թաբ։

Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեանդ, 'ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ սրփիական. այսօր 'ի Թաբ։

Որ զերամդոյն փառօք պայծառացոյց զմարմինն առաջին, զոր ճաշակմամբ պտղոյն մերկացաւ ըզփառս անպատումս. այսօր վերըստին փառօք զարդարեաց։

Որ 'ի նախնումն երեւեալ մովսէսի ամպովքն 'ի սինա. այսօր լուսափայլ ամպովք 'ի թաբօր յայտնեալ վըկայեաց, դա է իմ որդի դըմա լուարուք։

Որ 'ի յերկինըս վերացոյց հրեղէն կառօք զհեղիաս, այսօր վայրաբերեալ 'ի թաբօր հանդերձ մովսէսիւ, խօսէին զելիցն որ յերուսաղէմ։

ապշ Ընդ լուսափայլ զուարթնոյն ըզյարուցեալն օրհնեսցուք. եւ մաղթելով խընդրեսցուք, մաքրել ըզմեզ 'ի մեղաց։

Ընդ խընկաբեր սուրբ կանանցն անմահ բուրմանն անուշից, խունկս աղօթից մատուսցուք, մաք։

Ընդ իւղաբերիցն արտասուս ըզմարդկան բարձողն արտասուաց պաղատեսցուք արտասուօք մաք։

Ընդ քրիստոսի պահելով յաղթող լիցուք փորձողին. եւ ընդ հրեշտակս երգեսցուք, փառք 'ի բարձունս աստուծոյ։

Յորժամ գայցես բազում հրեշտակօք տէր 'ի դատել զերկիր։

Յայնժամ շարժին զօրութիւնք երկնից տէր 'ի յահէ քումմէ։

Եւ յայնժամ ամուր լեր իմ օգնական տէր իմ եւ աստուած իմ։

Որ օրհնիս 'ի հրեշտակաց անդադար հայր երկնաւոր, ընկալ զաղաչանս մեր։

Առաջի քո անկանիմըք փըրկիչ. խընդրեմք զթողութիւն բազում յանցանաց մերոց։

Որ գիտակ ես գաղտնեաց մարդկան հոգիդ սուրբ, տէր եւ կենդանարար, ընկալ զաղ։

Օրհնեցէք ըզտէր ընդ երկնայինսն նըմանեալ դասուց, նոր ժողովուրդք ասելով, քեզ հօր տըւողիդ մեզ ըզկեանըս փառք։

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք ընտրելոց որդիք սիովնի ասելով, քեզ որդւոյ շնորհողիդ մեզ ըզկեանըս փառք։

Բարեբանեցէք զաստուած 'ի սքանչելիս սըրբութեան նորա ձայնիւ ցընծութեամբ ասելով, քեզ հոգւոյդ պարգեւողիդ մեզ ըզկեանըս փառք։

Սիւն լուսոյ եւ ամպ հովանի ած
սուրբ կոյս, որ ցօղեցեր 'ի մեզ ըզցօղն երկնային. զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։

Անկէզ մորենի եւ սրովբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղըն կենաց 'ի քէն տըւաւ մեզ. զքեզ բարեբանեմք աստ։

Անիծից լուծիչ և քաւիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յէից ՚ի գիրկըս քո բարձեր. զքեզ բարեբանեմք աստ։

խաչ Եկայք ժողովուրդք ՚ի տաճարի փառաց քրիստոսի, տուք ամենեքեան օրհնութիւն ՚ի բարձունս։

Քանզի թագաւորըն քրիստոս պըսակեաց ըզսա սքանչելի փառօքն իւրովք. տուք ամե։

Ի՛ սմա և զօրըք հրեշտակաց դասաւորեալ տօնեն տեառն. տուք ամենեքեան։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այլ անմահ սուրբ փեսայիդ այրի հոգի իմ պաղատի. ուսովկիրանունըս քո խնուլ դատաւորիս. տանել ինձ զդատաստան արդար ընդ ոսոխի մարմնոյ իմոյ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Մարիամ կոյս անարատ զանապական փեսայդ աղաչեա, զի հաշտեսցի ընդ այրի եղեալ հոգիս, եւ միաւորեսցի դարձեալ սիրով ընդ հեռացեալս ՚ի նմանէ։

հրց գձ Որ ՚ի սկիզբըն փրկութեան մերոյ օրինակի երեւեցար մարգարէին Մովսէսի, աստուածային վառեալ բոցով ըզմորենին անկիզելի ՚ի նմանութիւն կուսական ծնընդեանն. օրհնեալ տէր աստուած հարցըն մերոց։

Որ յօրինակ քո գալըստեանդ յաշխարհ առաքեցեր զՄովսէս ՚ի յեգիպտոս, ազատելով զհինն իսրայէլ արեամբ գառինըն խորհըրդոյ, որպէս և դու գառն աստուծոյ քո կենարար արեամբդ ըզնորս իսրայէլ. օրհ։

Որ ՚ի նմանութիւն կարմիր ծովուն բաժանեցեր խաչիւն ըզծով աշխարհական, խորտակելով զիմանալի զգլուխ վիշապին ՚ի վերայ ջուրց. եւ առաջնորդեցեր ամպով հոգւոյն ժողովրդեան քո ՚ի յերկինս. օրհնեալ տէր աստուած հարցըն մերոց։

Ըզտէր. Ամենայն գործըք տեառն ըզտէր օրհնեցէք։ գ

Այսօր միաբանեսցուք պահօք քառասնօրեայ ընդ Մովսէսի. զի ելցուք ՚ի լեառն իմանալի առ աստուած. ամե։

Այսօր ընդ մեծին եղիայի սրբեալ պահովք. զի տեսլեան աստուածային լուսոյն արժանասցուք հոգւով. ամե։

Այսօր պահովք ճըշմարտութեան ելցուք ՚ի լեառըն փորձութեան ընդ քրիստոսի, պատերազմել ընդ թըշնամւոյն զի յաղթեսցուք նովաւ, ամե։

Աստուածածին դերանգոյն քերովբէից, բանին բարձրոյ որ զամենայն կրէ զօրութեամբ. բարեխօսեա առ տէր վասըն մերոյ փրկութեան։ մեծ

Մայր սըրբութեան բարձրագոյն սերովբէից, զանտեսն ինքեանց ՚ի քեզ կրելով, ծագեցեր զլոյս աշխարհի. բարե։

Ծառ կենաց որ զանմահութեան պըտուղըն ՚ի քէն ետուր նախնոյ մօրն եւայի, ՚ի մահաբեր երկանցն ազատելով. բարե։

Դատաւոր արդար որ հաստատեցեր ՚ի մեզ դատող բնութեան ըզմիտըս մեր. շնորհեա սըմա դատել զանձինս իրաւամբք եւ ար- ողր

դարութեամբ. խնայեա 'ի մեզ տէր ողորմութեամբ։

Փեսայ երկնաւոր հարսին քո եկեղեցւոյ. զայրի եղեալ 'ի քէն զհոգիս մեղօք, մաքրեա գթութեամբ եւ յօդեա 'ի քեզ միութեամբ. խնայեա։

Որ մահուամբ մարմնոյ քո մեռուցեր ըզմեղս. եւ յարութեամբ քո յարուցեր 'ի մեզ զարդարութիւն. տուր զօրութիւն հոգւոյս կամաց հնազանդել ըզկամս մարմնոյս. խնայեա։

տէր Որ փառաբանիս 'ի հրեշտակաց ընդ հօր եւ հոգւոյն քրիստոս որդի աստուծոյ. խոնարհեցար 'ի հողեղէն բնութիւնս համբերելով խաչի վասն մեր. վասն որոյ գթա 'ի մեզ մարդասէր փրկիչ։

Որ ըզհին մարդն մեր մեղաց 'ի խաչին սպաներ, նորոգելով ըզնոր մարդն արդարութեան յուսով կենացն անվախճանից 'ի նորոգումըն նոր ադամայ. վասն։

Կենդանարար քո յարութեամբդ անմահ թագաւոր. կենդանացո ըզմեռեալըս մեղօք, կենդանական գործովք բարեաց ըստ լուսաւոր քոց պատուիրանաց. վասն որոյ։

Շնորհեա մեզ տէր ըզգաստութիւն արթուն լինել ըստ դռնապանին. զի 'ի բաղխել սուրբ փեսային բացցուք ըզսիրտըս քոց մըտից ընդ քեզ եւ հօր քո եւ հոգւոյդ լինել օթեվան. եւ երգեսցուք երրորդութեանդ ըզփառս 'ի բարձունս։



Կարգ ապաշխարութեան՝ հինգերորդ շաբաթու աղուհացիցն։

Չորրորդ ձայն։

Հարցն մերոց աստուած. որ ապրեցուցեր զերիս մանկունս 'ի հնոցին. փառաւորեալ յաւիտեան։ հրց դձ

Երգեին մանկունքն 'ի հնոցին անեծլով. օրհնեալ ես թագաւոր անմահ. փառաւ։

Շիջուցին ըզբոց հրոյն բորբոքելոյ. ձայնիւ քաղցրութեամբ երգէին. փառաւ։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Զթագաւորըն քրիստոս հրեշտակային օրհնութեամբ բարձր։

Քահանայք աստուածաբանելով, ժողովուրդք նուաւել բարձր։

Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։ մեծ

Որ ըզբանն աստուած յարգանդի կրեցեր սրբուհի անարատ, եւ անճառապէս ծնար ըզվերանձգողն երկնից. ըզքեզ։

Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ 'ի քո գիրկս. եւ արեգականն արդարութեան եղեր արեւելք. ըզքեզ։

Համբառնամ առ քեզ տէր զաչս իմ, նայեաց յիս գթութեամբք քո, եւ ողորմեա։ ողր

Դու ես յոյս եւ ապաւէն իմ, զերծո զիս յորոգայթէ մեղաց, եւ ողորմեա։

Ապրեցուցիչ իմ եւ փրկիչ իմ, ապրեցո զիս յորոգայթէ մեղաց, եւ ողորմեա։

տէր Տէր երկնի եւ երկրի, արարող եւ յոյս մեր:

Խոնարհեալ յանձինս մեր Քրիստոս Թագաւոր երկնի եւ երկրի:

Աղաչեմք ըզքեզ այց արա փրկիչ, յուսացելոցս ՚ի քեզ:

հրց Հարցըն մերոց աստուած, որ ՚ի նեղութեան կեցուցես ըզմեզ. առաւել փառաւորեալ յաւիտեան:

Ցանկութիւն զօրութեամբ քո Քրիստոս, ՚ի հուրն ընկեցեալ պահեցին մանկունքն. որք գտին զօգնութիւն ցօղոյն օրհնութեան:

Շիջուցին ըզբոց հրոյն, զհրապանայքն արհամարհեցին ըզպղծունաւորին. ընդ չորրորդ հրեշտակին օրհնաբանեցին:

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնեցէք. բարձր արա:

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ....

Զաստուածըն յաւիտենից. բար:

մեծ Անարատ կոյս աստուածածին Մարիամ, սրբուհի եւ մայր Քրիստոսի, յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. օրհնութեամբ ըզքեզ աստուածածին մեծացուցանեմք:

Ըզքեզ երկնային դուռըն զոր ետես Եզեկիէլ, եւ ասրըն զոր ծանեաւ Գեդէոն. սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից. օրհ:

Երբեմն խորհուրդըս սոսկալիս ՚ի քեզ տեսանի աստուածածին. յղութիւն անսերմնական, ծընունդ անարատ, կուսութիւն յետ ծննդեան մնալով անապական. օրհնութեամբ ըզքեզ աստուա:

Բազմութեամբ յանցանաց ծանրաբեռնեալ է անձն իմ. միայն ըզքեզ մարդասէրդ աղաչեմ. ողորմեա ինձ աստուած: ողր

Երկխմամբ արտասուաց եւ հառաչանօք սրտի իմոյ անդադար հայցեմ բազմամեղութեամբ. քաւեա զիս աստուած:

Բազմագութ մարդասէր շնորհեա զթողութիւն իմոց յանցանաց. զի առ քեզ միայն պաղատիմ. քաւեա զիս աստուած:

Որ ՚ի բարձունս բնակեալդ ես, եւ ՚ի քեզ եմք ապաւինեալ. արարածք ամենայն օրհնեն ըզքեզ: տէր

Որ մոլորելոց հովիւդ ես. դարձո ՚ի մէնջ ըզցասումըն քո. արա:

Որ ծառայելոց ազատիչդ ես եւ քաւիչ ես մեղաւորաց. արա:

Քո յաւիտեան. Օրհնեալ ես յաւիտեան: հրց աղց մի

Աստուած հարցըն եւ ամենայն յաւիտենից. օրհնեալ ես յա:

Որ նստիս ՚ի վերայ քերովբէից. գովեալ եւ առաւել բարձրացեալ ես յաւիտեան:

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Թագաւոր գոլով անմահ. բարձր ա:

Ըզնըստեալն յաթոռ փառաց. բարձր արարէք:

Աստուածածին մայր լուսոյ սուրբ կոյս լուսեղէն տաճար, որում երկինք չէին բաւական առ ՚ի բնակութիւն, ՚ի քեզ մարմնացաւ: մեծ

Ըզքեզ անհամրանացեալ որ միայնդ ՚ի կանայս օրհնեալ, կրելով ՚ի քեզ զանտանելի ըզբնութիւնն. օրհնութեամբ մեծամ:

Ուրախ լեր աթոռ փրկութեան, յոյս հաստատութեան մարդկան, միջնորդ օրինաց եւ շնորհաց, օրհնութեամբ անդադար գոհութեամբ մեծաւ։

ողբ Աստուած մարդասէր որ ըզմաքսաւորն արդարացուցեր. քաւեա զիս ըզմեղաւորս։

Որ քղանցսն հանդերձի քո ըզմերձեցեալն 'ի քեզ բժշկեցեր. քաւեա զիս։

Որ բանիւ հրամանի քո զանդամալոյծն առողջացուցեր. քաւեա։

տէր Զօրութիւնք երկնից հոգեւոր երգով 'ի ձայն հնչման զքեզ փառաւորեն։

Երկնաւոր տեսակք բանաւոր հօտի ձայնիւ երգով զքեզ փառաւ։

Զուարթութիւնքդ քո հանապազ օրհնեմք, որ 'ի բարձունս ես փառաւորեալ։

հրց Որ յամենայնի ցուցեր ըզքո սքանչելիսդ, եւ 'ի բոլորից փառաւորեցար երրեակ միութիւն. ըզքեզ ընդ օրհնաբանողսն բարեբանեմք։

Որ ըզբորբոքեալ ըզհուրն 'ի ցօղ փոխեցեր, եւ զարգելեալսն 'ի նմին պահպանեցուցեր. զքեզ։

Որ ըզբռնութիւն թագաւորին խորտակեցեր, եւ զյուսացեալսն 'ի զօրութիւնդ քո փառաւորեցեր. զքեզ ընդ օրհնա։

գ Գործք տեառն ըզտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան։

Գիշերք ըզտէր օրհնեցէք.

Ըզնըստեալն 'ի յաթոռ փառաց ըզբարեբանեալն 'ի հրեշտակաց. ըզնա անդադար օրհնեցէք. բարձր։

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.

Որ յահէ փառաց աստուածութեանն դողան զուարթունք երկնից. ըզնա ան։

Ուրախացիր աստուածածին որ կուսութեանց ես պարծանք եւ մայր հաստատութեան մարդկան. օգնական եւ շնորհ աշխարհի, մարիամ մայր եւ աղախին փրկչին մերոյ։ մեծ

Երանելիդ ամենեցուն զաստուած տանելով ըզծնութեամբ անտանելին, զամենեցուն ամենակալն արժանի եղեր կրել յորովայնի, որ երեւեցաւ ազգի մարդկան։

Քերովբէական աթոռ ցուցար աստուածածին, 'ի գիրկս բառնալով զաստուածն ամենեցուն, որ նստի 'ի քերովբէս. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

Որ զաղաղակ կնոջն այլազգւոյ առ ընկալար փրկիչ մարդասիրապէս. եւ զիմս ապաշխարութեան արա արժանի ըզձայն մեղուցելոյս ընդունող։ ողբ

Որ հառաչմամբ ձայնի աղախնոյն ոչ լռեցեր փրկիչ ընդունակ մեղաւորաց. եւ զիմս։

Որ զառաջնապարգեւի քո նշխար ոչ խնայեցեր ընծեռել շանցն հովուասիրի. եւ զիմս։

Երկնային զօրութեանցըն զինուորութիւնքըն քեզ երեքսրբենիդ կան յանդադար փառաբանութեան։ տէր

Առաքելոց եւ մարգարէիցըն դասք փառաբանեն ասելով. փառք վերածագողիդ ըզլոյս։

Եւ մեք հանդիսակից ընդ նոսին, փոխարկեալք ընդ վերին զօրսըն

գոչելով ասասցուք. փառք ՚ի բարձունս աստուծոյ:

հրց Ճշմարտապէս գոհանամք ըզքէն, տէր աստուած հարցն մերոց փառաւորեալ յաւիտեան:

Որ երկայնամիտդ ես յամենայնի խնայես ՚ի մեզ. տէր աստուած:

Ի տաճարի քում խնդրեմք ՚ի քէն, մի անտես առներ ըզմեզ տէր աստուած հայր:

դ Ըզտէր. Ըզքո տէրութիւնդ հանապազ օրհնաբանեմք:

Որ իջեր ՚ի հնոցն փրկեցեր ըզմանկունսն ՚ի ձեռաց անօրինաց. շիջուցեր ըզհուրն հողմաբեր ցօղով. ըզքո:

Երգէին մանկունքն ՚ի մէջ հնոցին, սաղմոսիւք եւ օրհնութեամբ գովէին ըզքեզ թագաւոր փառաց. ըզքո:

մեծ Ուրախ լեր մարիամ սուրբ աստուածածին. զի ՚ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկն տէր. ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք:

Ուրախ լեր դուռն փակեալ ընդ որ ոչ ոք մտեալ, բայց տէր աստուած իսրայելի. ըզքեզ:

Ուրախ լեր աղբիւր կնքեալ ջրոյն կենդանութեան. զոր ծարաւելոյ բնութեանս ետուր ՚ի յարբումն. ըզքեզ օրհնու:

ողր Անկանիմ առաջի քո եւ խնդրեմ զթողութիւն յանցանաց իմոց. մի անտես առներ հայր զաղաչանս իմ:

Աղաղակեմ որպէս մաքսաւորն, եւ հեղում զարտասուս իմ առաջի քո որպէս պոռնիկն. մի ան:

Յաներեւոյթ թըշնամւոյն պատերազմաց, եւ ՚ի գաղտնի նետից բանսարկութեն վիրաւորեցայ. մի ան:

Օրհնեցէք ըզտէր յերկինս զօրք եւ ամենայն հրեշտակք, որ հոգիքդ էք հարկաւորութեան, սպասաւորիչք տեառն: տէր

Օրհնեցէք ըզտէր յերկրէ կէտք եւ ամենայն կայտառք, որ տեսանկդ էք բանաւոր հօտի, փառաբանիչք տեառն:

Օրհնութիւն նոր երգեցէք տեառն եկեղեցիք սրբոց, որ որդիքդ էք վերին սիոնի, օրհնաբանիչք տեառն:

Հանապազ օրհնեմք ըզքեզ անհասանելի փրկիչ, որ միայնդ ես փառաւորեալ տէր, յարարածոց քոց:

Տէր աստուած մեր, որ հաստատեցեր ըզլոյս եւ զխաւար ՚ի սկըզբանէ. օրհնեալ ես տէր աստուած հարցն մերոց: հրց

Մարգարէն դանիէլ աղօթէր առ տէր աստուած, ազատեցուցանել զերիս մանկունսն ՚ի հնոցին ՚ի բաբելոնի:

Բարձր արարէք զաստուած հարցն մերոց յաւիտենից, որ ապրեցոյց զօրհնաբանսն ՚ի ձեռաց մահու:

Ըզտէր. Ըզնա անդադար բարձրացուցանեմք: դ

Որ ՚ի տուէ օրհնի անդադար ձայնիւ սրովբէիւք եւ մարդկամբ, ՚ի գիշերի եւ յամենայն ժամու. ըզնա անդա:

Զբորբոքեալ ըզհուրն շիջուցին աղօթիւք սուրբ մանկունքն ՚ի հնոցին, եւ ըզհրաշալի ըզձայնն ընդ հրեշտակս երգէին ասելով. ըզնա անդադար բարձրա:

Ուրախացիր աստուածածին վեր օրհնեալդ ՚ի սրովբէից. ծագելով մեծ

'ի քէն մեզ լոյս մայր եղեր վերաձգողին. ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք:

Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ. 'ի հրեշտակաց սպասաւորեալ գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ եւ ա:

Տեսանեմք ըզսոսկալի զհրաշալի խորհուրդ յայտնեալ. 'ի հոգւոյն սրբոյ յղացեալ զբանն աստուած մարմնով ծընար. ազգ եւ ա:

ողբ Անկանիմ առաջի քո տէր բազմամեղիս ողորմեա:

Աղաղակեմ առ քեզ փրկիչ քանանացւոյն ըզձայն. բազ:

Մաքսաւորին հառաչմամբ կարդամ առ քեզ փրկիչ եւ բարերար. բազմա:

տէր Օրհնեմք ըզքեզ հայր սուրբ, 'ի յամենայն ժամ:

Գովեմք ըզքեզ որդիդ միածին, 'ի յամէ:

Բարեբանեմք ըզքեզ հոգիդ ճշմարիտ, 'ի յամէ:

հրց աղց մի Որ զերիս մանկունս 'ի հրոյն փրկեցեր, ցուցանելով ըզզօրութիւն աներեւ բնութեանդ. ըզքեզ օրհնեմք աստուած:

Վասն երանաւէտ ուխտին առ հարսն եղելոյ, փրկեա ըզմեզ յաւիտենական հրոյն. ըզքեզ:

Զոր տեսեալ հրոյն յինքեան զաբարողդ, եւ զայրեցող բնութիւնն անկիզանող առնէր. ըզքեզ օրհնեմք աստուած:

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Գիշերք ըզտէր օրհնեցէք. բարձր արա:

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.

Զաստուածըն յաւիտենից. բարձր արա:

մծ Աստուածածին գերագոյն քերովբէից, բանին բարձող որ զամենայն կրէ զօրութեամբ. բարեխօսեա առ տէր վասն մերոյ փրկութեան:

Մայր սրբութեան բարձրագոյն սերովբէից, պանտեան ինքեանց 'ի քեզ կրելով, ծագեցեր զլոյս աշխարհի. բարե:

Ծաւ կենաց որ զանմահութեան պտուղն 'ի քէն ետուր նախնւոյ մօրն եւայի, 'ի մահաբեր երկանցն ազատելով. բարե:

ողբ Ողորմեա ինձ քրիստոս ողորմութեամբքդ քո մեծաւ, զի կարօտ եմ ես շնորհի քո եւ ողորմութեան. ողորմեա եւ լուր ինձ բազմամեղիս:

Լուր տէր ձայնի ողբալւոյս եւ ցաւագին պաղատանացս, որ առօթիւ կամ առաջի քո իմ չարաչար վարուքս. ողոր:

Ընկալ տէր զաղաչանս իմ եւ ըզհառաչանըս սրտի իմոյ, որ աղաղակեմ որպէս կինըն քանանացի. ողորմեա:

տէր Ի՛ բարձանց. Քեզ վայելէ օրհնութիւն աստուած:

Որ անմարմնոցըն դասուց հաստիչ բանիւ. քեզ:

Որ մարմնաւորացս ազգի արարող ես ձեռօք. քեզ:

Որ մեռելոցըն յուսով յարութիւն ես ձայնիւ. քեզ:

թկ Մանկունք ըզտէր օրհնեցէք. որոյ անունն որ էն, եւ միշտ եղիցի անուն տեառն օրհնեալ:

Ծագմամբ լուսոյ զարդարեաց զաղ-

գիս մարդկան Թագաւորըն քրիստոս. եւ միշտ եղիցի։

Որդիք լուսոյ տուք ըզփառս հօրըն լուսոյ, որդւոյն միածնի եւ սուրբ հոգւոյն յաւիտեանս ամէն։

հմբ Ընդ քեզ կարգաւք յոգնութիւն, որ անքուն ականբ պահես զիսրայէլ. եւ զիս փրկեա ի փորձութենէ. ալէլուիա ալէլուիա։

Ընդ քեզ աղաչեմք տէր անտաանելի պահեա զհօտս մեր ի քո սուրբ ի պատուիրանիդ. ալէ։

Ընդ քեզ փառաւորեմք տէր, որ նստիս ի վերայ չորեքկերպեանն կենդանեաց, և հայցես քաղցրութեամբ յարարածըս քո. ալէ։



ՇԱԲԱԹ ՕՐ՝ ՏՕՆ Է ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ ՄՏԱՆԵԼՈՅՆ Ի ՎԻՐԱՊՆ

օրհ գկ Այսօր զուարճացեալ ցնծայ եկեղեցի, դրախտ աստուածատունկ ծաղկեալ. յորմէ տուաւ մեզ տունկն անմահութեան տէր գրիգորիոս. եւ պտղովն նորով եղեց ըզտիեզերս ամենայն։

Բարունակ ողկուզաբեր ճըշմարիտ որթոյն, մըշակեալ հայրական աստուածային աջովն. յորմէ բըղխեաց բաժակն ուրախարար տըրտմեցելոյ ազինս. որով արբեալ ըզմայլեցաք յուրախութիւն հոգեւոր։

Գարնանաբեր հընչումըն հարաւային հողմոյն ճառագայթեալ հրով աստուածային հոգւոյն. որով հալեցաւ սառըն կռապաշտութեան հիւսիսաբնակ ազանց. եւ եղեն ծաղկեալք աստուածային գիտութեամբն։

Դրախտ նորազուարճ տընկեալ յաշխարհիս հայոց, բազմաջան քըրտամբք տէր գրիգորիոս. արբեալ ի վտակաց հոսման քարոզի ճըշմարիտ բանին, ծաղկաւէտ լըցեալ հրաշագեղ տընկօք։

Երկնային լոյս ծագեալ ի յերկրի ցուցար, պայծառացեալ փայլմամբ ի յարփւոյն կենաց. որով հերքեցաւ խաւար Թանձրամած հայաստանեայց ազգի. եւ տեսին ըզլոյս շնորհաց սուրբ հոգւոյն։

Զօրաց հրեղինաց անմարմնական դասուց պարանկցեալ ցընծան ընդ հողանիւթ բնութեանս. որ ընծայեաց տեառն աստուծոյ զտէր գրիգորիոս. որով նուիրին ի փառս ուղղափառ հաւատոյ մանկունք։

Նմական բարւոյն կերպարան բարեաց, հովուապետ բարի տէր գրիգորիոս. քաղցրաձայն հընչմամբ դարձուցիչ մոլորեալ հօտին, ժողովեալ ի հօտ ճըշմարիտ հովուին։

Ընտրեալ յաստուծոյ քահանայապետ անբիծ, քարոզող ճըշմարիտ աստուծոյ բանին. ընծայեցեր տեառն աստուծոյ նոր ժողովուրդ մաքրեալ, հրաւիրեալ ի փառս վերնոյն սիոնի։

Թագ պարծանաց արշակունեաց կազմեալ. առաքելական վարուք տէր գրիգորիոս. յօրինեցար բազմագոյն ականբք հանդիսից նահատակութեան. վայելուչ պըսակ հիւսեալ սուրբ եկեղեցւոյ։

Ժառանգորդ եղեր հայրենի սեփական հօտին, վիճակեալ Թադէոսի սուրբ առաքելոյն. պարգեւական զաւակ կենդանի նըշխարաց նորին, շառաւիղ շնորհաց աղօթիւք հայցեալ։

Ի փշաբեր արմատոյ վարդ կարմիրափեան ծաղկեալ, առաքելաշնորհ տէր գրիգորիս. անուշահոտ բուրմամբ լցեր ըզհայաստան աշխարհս, յայտնելով 'ի մեզ ըզհոտ գիտութեան։

Լուսապայծառ ծաղիկ 'ի յերկրի ցուցար, բժիշկ հոգւոց մերոց տէր գրիգորիս. քաղցրաճաշակ արմաւենի 'ի տանն աստուծոյ տնկեալ. պտղաբերեցեալ պտղով հաւատոյ մանկամբք։

Խոստովանող քրիստոսի ճշմարիտ վկայ, բազմաչարչար նահատակ տէր գրիգորիս. զպակասութիւն չարչարանաց տեառն 'ի մարմնի քում կրեցեր, որով ցնծայ եկեղեցի 'ի փառս որդւոց սիոնի։

Ծնող հոգեւոր աստուածանման սիրով, գորովագութ հայր պարծանաց տէր գրիգորիս. չարչարանօք մարմնոյդ մաքրեցեր ըզմեզ 'ի յաղտոյ մեղաց, եւ ծընար որդիս լուսափայլ բանիւդ։

Կերպարան փառաց միածնի որդւոյն, մարտիրոս յաղթող տէր գրիգորիս. բեւեռս երկաթիս ընկալան երկնագնաց թաթք ոտից քոց սուրբ, զի բեւեռեսցես ըզմեզ յերկիւղն աստուծոյ։

Հայաստանեայց հայր հաւատոյ հեղինակ ընտրեալ, ճգնողական վարուք տէր գրիգորիս. 'ի կոճեղս ոլորեալ հոսեալ յարենէ սրունք սրբասնեալ մարմնոյդ, հաստատելով ըզմեզ 'ի վէմ հաւատոյ։

Ձայնիւ մաղթանօք ըզյիշատակս քո տօնեմք, լուսաւորիչ հոգւոց մերոց հայր գրիգորիս. կապիճս երկաթիս ծանունս եւ դառնա- կըսկիծս կախաղանաւ ընկալեալ, գետնամածեալ ծընրադրութեամբ ծունկք մարմնոյ քո սուրբ։

Ղեկօք հաւատոյ ընդ ծով աշխարհիս անցեր, վըշտակիր մարմնով տէր գրիգորիս. տանջեալ ջարդեցան աստուածակիր բարձք անդամոց քոց սուրբ. զի զլուծեալ անդամք հոգւոցս հաստատեսցես վերստին։

Ճշմարիտ հոգւոյն հանճարով լցեալ, աղբերաբար շնորհիւ տէր գրիգորիս. ստորագլուխ եղեր ջրաչարչար պարպատմամբ եւ ուռուցմամբ ճըգնեալ. զի լուացես ըզմեզ 'ի յաղտոյ մեղաց։

Մաքրողական ող համեմիչ հայաստանեայց եղեր, արիաբար հըսկող հայր գրիգորիս. աստուածային օրինացն բեռնաբարձ ողամբ կրեցեր ըզծանրութիւն աղեն. որով բարձեր 'ի մէնջ զբեռինս մեղաց։

Յեռեալ ընդ ոսկւոյ ակամբք պատուական մարգարտաշար հիւսեմք զչարչարանաց քոց թիւ տէր գրիգորիս. գեղարանօք անուօք եւ առասանօք չարահնար տանջեալ, դանդանաւանդս եւ գերս աստուածաբան բերանոյդ։

Նահատակ բարի քրիստոսի ընտրեալ, արքային զինուոր տէր գրիգորիս. ստորագլուխ կախմամբ դառնահոտ շընչմանն արիաբար տարար, զի ուղղեսցես ըզգնացս ոտից մեր յերկինս։

Շառաւիղ լուսազարդ ճանապարհին կենաց, երկրին աւետեաց հետեւող տէր գրիգորիս. մոխրաշունչ եղեր քացախ ընկալեալ

հոգիաշունչ ռնգամբք, պարգեւելով ուրախութեան մեզ օծումն։

Ոսկիաձոյլ գերագոյն պատուական գլխոյն, համանմանեալ հոգւով հայր գրիգորիոս. կրաւիեալ հարուածովք եղեալ ՚ի մամուլս աստուածազարդ գլուխ քո, որով բարձրացան գլուխք կորացեալ մեղօք։

Չնաշխարհիկ պարծանք հողեղէն բնութեանս, չարչարանօք ժուժկալեալ տէր գրիգորիոս. տապակաւ տանջեալ քերանօք քերեալ և կապարաւ հալեալ, խանձողեցան նըշխարք քո սուրբ ոսկերացդ։

Պարանկից հոգեղինաց երկնային զօրացն, սրբափայլ զգեստիւք տէր գրիգորիոս. ՚ի խոր վիրապին իջեր ՚ի տղմին ՚ի մէջ դառնաշունչ օձիցն, զի փրկեսցես ըզմեզ ՚ի չար վիշապէն։

Ջերմեռանդն աղօթիւք և հոգեւոր սիրով, վառեալ յուսով տէր գրիգորիոս. զանկեալքս ՚ի յերկնից ՚ի խորս անդընդոց գլխրաւորեալքս մեղօք, վերաբերեա ընդ քեզ յերկնային խորանսն։

Ռետին քաղցրութեան մեզ ՚ի վերուստ շնորհեալ, երիւք հընգօք ամօք ՚ի վիրապին ճըգնեալ. աստուածային տեսլեամբն ելեալ բըժշկեր ըզհարուածեալսն ՚ի դիւական ախտիցն, եւ լուսափայլ բանիւ բըղխմամբ հաստատեցեր ՚ի հաւատս։

Սոսկալի տեսլեանն ՚ի վերուստ յայտնեալ, մարգարէանհրաշ հոգւով տեսանող եղեր, բացման խորանին վերնական յարկին եւ երկնային լուսոյն, խառնելով մարդկան ընդ հրաշքուն զօրացն։

Վարդագոյն արեամբ վըկայիցըն տեառն, մաքրեցաւ երկիրս ՚ի յաղտոյ մեղաց. որ եւ հիմնեցեր խորան խորհրդոյ տաճար տէրունի շինեալ. յորմէ բըղխեաց աղբիւր քաւութեան մերոյ։

Տանն աստուծոյ տեսանող բարի, արժանացեալ շնորհիւ տէր գրիգորիոս. կործանիչ բագնեաց բակտիչ մեհենաց զօրութեամբ խաչին, քահանայապետ ընտրեալ աստուածային յայտնութեամբն։

Րաբունւոյն հրամանաւն ՚ի վերուստ կոչեալ, յառաքելական յաթոռ տէր գրիգորիոս. յորդառատ բանիւ հոգեւոր ծնընդեամբ լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհս, ընդ ամենայն տեղիս շինեալ խորան փառացն աստուծոյ։

Ցանկալի սովորից անմարմնական վարուք, մաքրափայլ մարմնով տէր գրիգորիոս. յանապատի բնակեցար հանգոյն յովհաննու և եղիայի ճըգնեալ, օրէնսդիր աստուածային պատգամաց նըման մեծին մովսէսի։

Իւծելոյս մեղօք տառապեալ որդեացս, աստուածանգութ ծընող հայր գրիգորիոս. հայցմամբ աղօթիւք առ հայրն երկնաւոր խընդրեա, կատարել զընթացըս մեր ուղղափառութեամբ։

Ամենազօրելի եւ քան զերկինս բարձրագոյն, որ զանհա՟սանելի ըզտէրըն յորովայնի քում կրեցեր, եւ ցընծութիւն աշխարհի ծընար. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ ած

Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս, որ զանբա՟ւելի ըզբանն ան-

Ճառագայթ յղացար, եւ ըզմարմնացեալն աստուած ծընանէլով ՚ի քէն. վասն որոյ։

Ի լեռնէ վիմն առանց ձեռին հատեալ դանիէլ գուշակեաց զանսերմն ըզծընունդ քո հայրն երկնաւոր, մայր եւ յետ ծննդեան միայնով կոյս. վասն որոյ։

խաչ Յաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ ՚ի բարձունս երգեսցուք թագաւորին քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք։

Որ եկն ՚ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի, եւ պըսակեաց սուրբ խաչիւն. նըմա ըզփառս երգեսցուք։

Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փըրկողին մատուսցուք փառք եւ պատիւ յաւիտեան։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Փըրկաւէտ մահուան կենարար բանին, կենդանի վըկայ տէր գրիգորիոս. առ ծընեալն ՚ի հօրէ որդին միածին լոյսըն ճըշմարիտ հայցեա, լուսաւորել զանձինըս մեր աստուածային գիտութեամբն։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Քնար քաղցրախօս աստուածային հոգւոյն, յօրինեալ մարմնով եւ մասամբք հոգւոյդ. առ բըղխեալըն ՚ի հօրէ փառակցի որդւոյ սուրբ հոգին մաղթեա, զի մաքրեսցէ ըզմեզ ՚ի մեղաց մերոց։

Հրց Որ ՚ի հօրէ առաքեալ արեգակն
Դ Կ արդար, ծագեցեր ընդ տիեզերս ըզլոյս քո առաքելովքն. ըզքեզ բարեբանեմք աստուած հարցըն մերոց։

Որ փոխանակ առաքելոցն առաքեալ եւ քարոզ, առաքեցեր հայաստանեայց ըզսուրբըն գրիգոր. ըզքեզ։

Որ ըզխաւարն անգիտութեան հիւսիսականացս, հալածեցեր լուսափայլ բանիւ սըրբոյն գրիգորի. ըզքեզ։

Ըզտէր. Ընդ լուսաւորչին լուսա- Դ
ւորեալք նովաւ բարձր արարէք ըզլոյսն անլստուեր։

Այսօր ժողովուրդք հայաստանեայց աշակերտեալք ճըշմարտութեանն ՚ի ձեռըն սըրբոյն գրիգորի, օրհնեցէք ըզլոյսն անըսկիզըն. բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Այսօր նորածնեալք աւազանաւն, լուսաւորեալք իմաստութեամբ ՚ի ձեռըն սուրբ լուսաւորչին, գովեցէք ըզլոյսն ՚ի հօրէ. բարձր։

Այսօր երկնաւոր պատարագին կատարող քահանայութիւն, ՚ի ձեռըն սուրբ քահանայապետին, բարեբանեցէք զպաշտողըն շնորհաց. բարձր։

Նահապետացն աբրահամու ի- Մեծ
սահակայ եւ յակոբայ. պարգեւեցար ՚ի յաստուծոյ կոյս մարիամ դուստր նոցին. երանեն ազգ եւ ազինք այսօր ըզծնեալդ ՚ի յաննայէ։

Աղախին եւ մայր կենաց աջոյն ծընող հօր միածնին. որ առ ՚ի քէն մարմնով ընկէց զամբարտաւաններն յաթոռոյ. երանեն։

Որ բարձրացոյց զանկեալ բնութիւնս ՚ի քէն ծնընդեամբ որդին յերկինս. ըզկարօտեալսն ելից հացիւ եւ զմեծատունսն ելոյծ ու-

նայն. Երանեն ազգ եւ ազինք այսօր ըղձնեալդ 'ի յանձնայէ։

ողր Ո՛ր կոչեցեր ըղհեռացեալքս 'ի հայրանիս քո միածնին, ըմպել զբաժակն իմաստութեան 'ի ձեռըն սըրբոյն գրիգորի. բարեխօսութեամբ սորա ողորմեա մեզ աստուած։

Ո՛ր գերագոյն քան ըզըմբռնութիւն չարչարանօք քո ընտրելոյն դարձուցեր ըզմոլորեալքս 'ի գիտութիւն ճշմարտութեան. բարե։

Ո՛ր 'ի վիրապն անդընդային ջախջախեր նովաւ զգլուխ վիշապին, 'ի գբի ներքնումն նշմամբ նորին բարձրացուցեր զմեզ 'ի յերկինս. բարե։

տէր Այսօր զիմանալի լուսոյն ծագումն 'ի խաւարի նստելոցս. զգրիգորիոս սուրբ հայրապետն եկայք վերապատուեսցուք։

Այսօր զանապականն հոգւոյն պարգեւս բաշխող որդւոյ Թորգոմայ, յորդիս լուսոյ նովաւ ծընեալք, եկայք վերա։

Այսօր զաստուածային բանին պատմող 'ի հայաստան աշխարհի. աշակերտեալ նմա մանկունք. եկայք վերա։

Այսօր երգէ եկեղեցի որդւովք իւրովք ընդ հրեշտակս, յիշատակի լուսաւորչին փառք 'ի բարձունս աստուծոյ։

ձկ գձ Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյիշատակ սըրբոյն գրիգորի. որով լուսաւորեալ պայծառացաւ վայելչապէս, 'ի հանդերձս յոսկեհուռս զարդարեալ եւ պըսակեալ. օրհնեցէք մանկունք զքրիստոս Թագաւորն։

Այսօր ցընծան նորածնեալ որդիք լուսոյ յիշատակաւ սուրբ լուսաւորչին. որով հրաւիրեցան 'ի հարսանիսն անապական, մըտանել ընդ փեսային երկնաւորի 'ի յառագաստըն լուսեղէն. օրհ։

Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ. որով երկնային քահանայութեանցըն հաղորդեալք. յոր վերափոխեալ այսօր մըտանէ 'ի սրբութիւն սրբոց միշտ բարեխօսել առ տէր վասըն մեր. օրհ։

Լերինք ամենայն այսօր ցընծացէք ընդ մեծապայծառ փառսըն սեպուհ գերազանց լերինն. քանզի 'ի նմա բնակեցաւ սուրբըն գրիգորիոս սիւն լուսոյ հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ. որով ցընծայ 'ի փառս վերնոյն սիովնի։ ձշւ գկ

Որ աւաւել խորին խորհրդով խընդայ քան զարարատեանըն բարձըր մասիս. քանզի 'ի նմա հանգեաւ սուրբըն գրիգորիոս տապանն ապրեցուցիչ 'ի հոսանաց մեղաց հայաստան ազգաց. որով փըրկիմք միշտ 'ի ջըրոց հոսանաց։

Գեղապանծ լուսով բերկրեալ զուարճանայ լեառըն սեպուհ հանգոյն սինայի. յորում եկաց կամարն ամպեղէն սուրբըն գրիգորիոս գերահրաշ լուսով զարդարեալ նըման մովսէսի. որով փայլին երեսք շնորհօք սուրբ հոգւոյն։

Ջօրօք հրեղինաց պարփակեալ պահի լեառըն հանգըստեան սըրբոյն գրիգորի տեսլեամբ կարմեղայ. զորըս պարըսպեն կառքըն կենդանի մաքրափայլ աղօթք սուրբ լու-

սաւորչին հօրըն հոգեւոր. զոր առ տէր ունիմք միշտ բարեխօս։

Համանմանեալ ամովսածնին եսայեայ կայծակնամաքուր սուրբ մարգարէին տէր գրիգորիոս. վեցթեւեան սրովբէից կիցն կենդանեաց եղեւ տեսանող հոգւով կենդանին. զանդընդամխոր ըղձորն երկնից կամօր յօրինեաց։

Տնօրհնաբաշխ աջովն յիսուսի պատուեցաւ լեառըն սեպուհն ՚ի տիպ սանիրայ եւ ահերմոնի. յորմէ բըղխեաց աղբիւրըն լուսոյ ջուրըս բարեհամս եւ վըտակս յորդախաղաց հոսանօք. որով ցըրնծայ երկիրս ՚ի բերս արմըտեաց։

Ծնընդեամբ սուրբ կուսին յայրըն բեթղեհէմ յորդորեցան դըստերքն եւայի լինել կուսութեամբ ՚ի մայր քրիստոսի. յորում ծագեաց խորհուրդըն պայծառ յերկնանըման լերինն ՚ի յայրըն մանեայ մաքրական վարուք. որով սըրբիմք միշտ ՚ի յաղտոյ մեղաց։

Խորհուրդ խաչելոյն գերահրաշ տեղւոյն գողգոթայ ծածկապէս ՚ի սմին լերին տեսանի. զէնն արքայական սպանմանըն գործի կենաց արքային ՚ի կենաց գործիս նըւիրեալ. որով փըրկեսցէ ըզմեզ յաւիտենից մահուանէ։

Զխորհուրդ սեպուհոյ սեպհական փառաց հոգւովըն սրբով մարգարէին ծանուցեալ. զոր եւ հարցանէր զխորանն աստուծոյ եւ ըզլեառըն տեառն թէ ով բնակիցէ. զոր եւ տեսաք առ սուրբըն գրիգոր կատարեալ։

Անբիծըն վարուք արդարըն հոգւով, բանիւ ճըշմարիտ և սուրբըն սըրտիւ տէր գրիգորիոս. յորում ցանկացան զօրքըն սրովբէից բերանք հրեղէնք յերկնից յերկիր խոնարհեալ ՚ի տես մարմնով ճըգնողին. որ եւ պատիւ տեղւոյն անուամբըն կոչի։

Հովուին հըսկողի ճըշմարիտ եւ քաջ հովուին պատկերի հովիւքն եղեն հետեւողք. զոր ամփոփեցին զմարմինըն մաքուր մերձ ՚ի յայրըն մանեայ մեղ դեղ ախտից մաքրութեան. որով սըրբիմք հոգւով ՚ի թունից վիշապին։



## ԿԱՆՈՆ

### ՎԵՑԵՐՈՐԴ ԿԻՒՐԱԿԷԻ ԱՂՈՒՀԱՑԻՑ

Որ ըզխորհուրդ քո գալըստեանդ յառաջագոյն գուշակեցեր, մարգարէիւքն իսրայէլի զորս ընտրեցեր յետ մովսէսի. որք խօսեցան հոգւով սըրբով բազմապատիկ օրինակօք. տէր մեզ փըրկիչ ողորմութիւն եւ ըզմեղաց ըզթողութիւն։ օրհ բժ

Ի մերձենալ ամաց վերջին զոր տեսանողքըն ծանուցին, ըզհասանիլ մեր փըրկողիդ առ ՚ի վախճան ժամանակին. երեւեցար ՚ի մէջ մարդկան զգեցեալ ըզկերպ ծառայական. տէր։

Ի վեցերորդ աւուր զադամ ստեղծեր ՚ի տիպ քո տիրական. որ ոչ պահեալ ըզպատուիրանըն մերկացաւ ըզպատմուճանն. իսկ նոր ադամդ ՚ի վեց դարուն այց արարեր կորուսելոյն. տէր։

Տաճար լուսոյ անըստուերին եւ առանգամատ անճառ բանին. որ ըզ-
նախնւոյ մօրն Եւայի բարձեր զա-
նէծսն տրտմալի. հայցեա յորդ-
ւոյ քո միածնի հօր հաշտութեա-
նըն միջնորդի, բառնալ 'ի մէնջ
ըզխռովութիւն եւ տալ զոգւոյ
խաղաղութիւն:

Ըստ աւետեաց մարգարէին որ
ասէ փրկեալքս արեամբ գառինդ,
ցնծամք եւ մեք ծառք անտառի
ընդ գալուստ տեառնըդ կըրկնակի.
շնորհեա մեզ տէր ընդ արդարոցն
ընդ ասէ 'ի քէն տընկեալ ծառոցն,
այժմ յուսով զուարճանալ եւ
յերկրորդին ընդ քեզ ցնծալ:

Արմին նըման տայ աւետիս զաքա
րիաս Նոր Սիոնի, եթէ ուրախ լեր
ահա գայ առ քեզ խոնարհ եւ հեզ
արքայ. Նըստեալ 'ի յէշ եւ յաւա-
նակ կըրկին ազանց գոլ օրինակ.
Նըստեալդ յաթոռ քերովբէից
նիստ գըթութեամբ 'ի մեր հոգիս:

Յաստուածային ձայնէ դուշմա-
նըն սարսեցին դողալով կարապե-
տըք դըժոխոցն. եւ մեռեալն եկն
արտաքս անապականն:

Կացեալ 'ի դուրս այրին եւ ձայ-
նէր ազգ արարող բարբառովն 'ի
գերեզմանն. ղազարէ եկ արտաքս
անապականն:

Ելեալ 'ի գերեզմանէն երիզա-
պինդ պատանօքըն մեռեալն. հրա-
մայեաց լուծանել 'ի կեանսըն յա-
ւիտենից:

Անեղն 'ի հօրէ ծընեալ որդի
յանէից գոյացոյց զեղեալքս զեր-
կնային եւ զերկրաւորս էութիւն.
արարածք ամենայն տուք փառս
արարչին յաւիտենից:

Պատկեր աներեւոյթ փառացըն
հօր, 'ի պատկեր բարերարութեան
խորոյ արար ըզմարդկային բընու-
թիւնս. արարածք ամէ:

Լոյսն 'ի հօրէ լուսոյ ծագեալ լու-
սաւորեալ զմարդարեաց զազամ, 'ի
դրախտին եդեալ անմահ տընկոցն
երկրագործ. արարածք ամէ:

Որ նըստիս 'ի քրովբէս սաստը-
ւած բանդ. այսօր վայրըն մեր խո-
նարհութեամբ նըստար 'ի լերինըն
ձիթենեաց. օրհնեմք ըզքեզ ան-
դադար երգով:

Որ համագոյ ես խոնարհողըդ
հայրենի, աշակերտաց քոց ծա-
նուցեր ըզխոնարհութդ քո. գալըս-
տեանն. օրհ:

Որ ամենայնից ես արարիչ եւ ըս-
տեղծիչ կենդանութեան. այսօր
ըզծածկեալ խորհուրդ երրորդու-
թեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ
սըրբոյ քո. օրհ:

Որ 'ի վերդ ես քան զամենայն
ըզմիտս եւ զխորհուրդս. փառաց
թագաւոր խընայեա 'ի մեզ:

Որ միայն ունիս զանմահութիւն
եւ զանեղութիւն. փա:

Որ նըստիս 'ի քրովբէս երրորդու-
թիւն անբաժանելի. փա:

Որ երկրպագեալդ ես 'ի հրեշտա-
կաց եւ 'ի մարդկանէ. փա:

Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն
հայր. յամենայն ժամ օրհնութիւն
'ի բարձունս:

Գովեմք ըզքեզ միածին որդի. յա-
մենայն ժամ գոհութիւն 'ի բար-
ձունս:

Բարեբանեմք ըզքեզ սուրբ հոգի.
յամենայն ժամ փառըք քեզ աս-
տուած:

Օրհնեսցուք եւ գովեսցուք ա-
ռաւել բարձր մատուցուք եւ բա-
րեբանեսցուք զանուն քո փրկիչ.
քեզ վայելէ փառք։

Հրեշտակք եւ մարդիկք եւ ամե-
նայն արարածոց լեզուք ընդ քեզ մի-
այն օրհնեն փրկիչ. քեզ։

Երկնային զօրութիւնքն անդա-
դար օրհնութիւն մատուցանեն
քեզ փրկիչ. քեզ։

ած Զքեզ հայր յառաջ քան զյա-
ւիտեանս բարեբանեն դասք ան-
մարմնոց հրեշտակաց. ձայնիւ եր-
գով գոչեն եւ աղաղակեն. ա-
տուած աստուածոց և տէր տերանց
փրկիչ գոլով։

Առաքեցեր զքո միածինդ մար-
մնանալ 'ի սուրբ կուսէն. եւ անա-
րատ ծննդեան յորովայնէ անա-
պական, բառնալով զմեր նեղու-
թիւնս. աստուած։

Տնօրէնք բարի յերուսաղէմ երե-
ւեցան հեթանոսաց. զի արարիչն
յաւիտենից տղայ եղեալ յոր-
դեգրութիւն կենաց կոչէ. ա-
տուած աստուածոց։

խաղ Անապական սուրբ ըզխաչն օր-
հնեսցուք, որ եղեւ առաջնորդ ա-
ւազակին, եւ յօրինեաց մեզ ճա-
նապարհ. որ ձեւացոյց մեզ սո-
վառ մըտանել ընդ դուռն անեղա-
չէն դրախտին տեառն։

Բանակի արքայութեան տըւեա
հողածին մարդոյն, ուստի յառա-
ջին ճաշակմանէն արտաքս անկեալ
'ի յաւէժ կենդանութեանն. որ
ձեւացոյց։

Գաւազանաձեւ երեւեալ եգիպ-
տական ազգին, ցուցանելով ըզ-
զօրութիւն սրբոյ խաչին, յափըշ-
տակելով ըզգաւազանըն դիւթա-
կանն. որ ձեւացոյց։

Դրօշմ ըզդայութեան օրինակեալ
'ի վերայ սեմոց դրանց նոցա, ա-
ներկիւղ պահելով ըզժողովուրդն
յանդրանկածախ սատակմանէն.
որ ձեւացոյց։

Երեւեալ ակնուանըման ակըն
պատուական 'ի ձեւ խաչին. հեր-
ձանելով ըզծովըն կարմիր, առաջ-
նորդելով ժողովրդեանըն սեամբ
ամպոյ լուսոյ անմեկնելի. որ ձե-
ւացոյց մեզ սովառ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Զանհեղ փառաց քոց երեւումն որ
լինելոց է յերկրորդումն, երես
դաւիթ յառաջագոյն ծանոյց կան-
խաւ ազդմամբ հոգւոյն. թէ յայտ-
նապէս աստուած դայցէ հուր ա-
ռաջի իւր բորբոքէ. յայնժամ յի-
սուս 'ի մեզ խնայեա գըթած քրիս-
տոս եւ ողորմեա։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Աստուածածին անհամրանցեալ
յերկրէ յերկինս հարսն ընծայեալ.
յորժամ բազմիս լուսոյ նըման քո
միածնիդ յաջակողմեան. յայնժամ
մաղթեա ընդ մեր ըղնոյն փըրկել
ըզմեզ յահեղ բոցոյն, համադա-
սել ընդ արդարոց երգել ըզփառս
ընդ երկնայնոցն։

Որ յանճառելի ծոց հօր ծած- հրց
կեալ անքըննելի ծընունդ եւ բան. դկ
եւ 'ի հրեշտակաց երկրըպագեալ
փառաբանեալ. ըզքեզ բարեբա-
նեմք աստուած հարցըն մերոց։

Որ խոնարհութեամբ իջեալ յաշ-
խարհ շիջուցեր ըզբոց մեղաց, որ-
պէս երբեմն 'ի բաբելոն 'ի մէջ
հընոցին. ըզքեզ։

Որ ըստ նախաձայն մարգարէիցն եկիր 'ի լրումն խորհրդոյ. զոր տնօրինաբար կատարեցեր վասն մերոյ փրկութեան. ընդ քեզ։

դ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ յայտնեաց հոգին տեսլեամբ դանիէլի մարգարէին զմիւսանգամ գալըստեանն քրիստոսի զխորհուրդ. բարձր։

Որ ըզչորրորդ գազանն անհեդ զապստամբեալըն յաստուածոյ ծանոյց բարձեալ զօրութեամբ աստուածորդւոյն. բարձր։

Որ զհին աւուրցն աստուած եւ տես նըստեալ յաթոռ քերովբէականն, եւ զորդի ընդ ամպս երկնից եկեալ. բարձր։

մեծ Աստուածածին պայծառ քան զերկինս, որ 'ի մեզ ծագեցեր ըզլոյսըն մեծ եւ գերազանց, որով խաւարն անգիտութեան հալածեցաւ. սովորական ձայնիւ զքեզ բարեբանեմք, եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք։

Ամպ թեթեւ եւ լուսաւոր, որ զանձրեւըն կենաց 'ի քեզ հեղեալ 'ի յերկնային ծովէն, զոր հոսեցեր 'ի յերկիր ծարաւուտ. սովորական ձայնիւ զքեզ։

Պարտէզ փակեալ աստուածատունկ եդեմ, որ եւ ծառըն կենաց 'ի մէջ դրախտի քո 'ի հողւոյն տընկեալ, անմահական պտղովն ելից ըզտիեզերս. սովորական ձայնիւ ըզքեզ բարեբանեմք, եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք։

ողր Որ ողորմութեամբ զգեցար մարմին, եւ նորոգեցեր ըզհնացեալքս. նորոգեա եւ ըզմեզ հոգւովդ քրիստոս, եւ ողորմեա։

Որ 'ի խաչին մեռար մարմնով, եւ զմեռեալքըս դարձուցեր 'ի կեանս. կեցո եւ զմեզ հոգ։

Որ յարեար 'ի մեռելոց, եւ յարուցեր ըզբնութիւնըս մեր յուսով. յարո եւ զմեզ հոգ։

Որ ըզսիրելին քո զղազարոս կոչեցեր 'ի գերեզմանէն. կոչեա եւ զմեզ հոգւով 'ի կեանս. եւ։

Նորահրաշ տեսլեամբ յարութեան քո տէր, անհեղակերպ փոյլմամբ զարհուրեցան դըժոխք, եւ մեռեալք ընդ կենդանւոյդ յարեան 'ի հաւատս համօրէն յարութեանն։ տէր

Յորժամ փառօք հայրենի քրիստոս ծագիս 'ի յերկնից, եւ յարուցանես ըզմեռեալսն. յայնժամ դասեա ընդ աջմէ քումմէ, եւ կոչեա զմեզ 'ի փառըս քո։

Յորժամ հեծանոցաւ դատողութեան քո տէր, սըրբես ըզկալ աշխարհի. յըշտեմարանս արքայութեանդ ժողովեա զմեզ ընդ արդարոցն։

Յորժամ եկեղեցի հարսնացեալ միանայ ընդ փեսային, ընդ իմաստուն սուրբ կուսանացն արժանացո առագաստին ըզմեզ, ընդ նոսին երգել ըզփառս 'ի բարձունս։





Հարցք ապաշխարութեան՝ վեցերորդ շաբաթու աղուհացիցն:

Վերջ ձայն:

հրց գկ Աստուած հարցըն մերոց օրհնեա:

Երեք մանկունքն ՚ի հնոցին երգէին. հայր անըսկիզըն քեւ պարծեցին անձինըք մեր:

Իջանէր ամպ ցօղագին և հովանի լինէր նոցա. սուրբ հոգին քաջալերէր ասէր, ես ընդ ձեզ եմ յաւիտեան:

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Զէակից բանըն հօր որ երեւեցաւ ՚ի մէջ հնոցին, օրհնեցէք ամենայն ազինք. եւ բարձր արա:

Ընդ զօրըս հրեշտակաց միաբանական օրհնութեամբ բարեբանեցէք ըզ՚ի վերայ քերովբէիցն. եւ բարձր արա:

Ընդ երիս մանկունս զհամաբնակիցըն հօր, անդադար բարեբանեցէք քահանայք ժողովուրդք. առաւել բարձր արա:

մեծ Աստուածածին մայր եւ կոյս ծագող արեգականն արդարութեան, որ լուսաւորեացն ըզմեզ, հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք ըզմիածին քո զորդին:

Եղծ զօրէնըս բնութեան մարդկան հրաշափառ քո ծնունդ, եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ, եւ կուսութեանըդ քո ոչ խախտեցան կընիք. հոգե:

Զքեզ մորենի անկէզ, լեառըն վիմածին գուռըն փակեալ եւ աղբիւր կընքեալ. նախատեսացըն գուշակեալ մայր եւ կոյս. հոգեւոր երգով զքեզ բարեբա:

Քրիստոս աստուած յոյս ապաշխարողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց: ողր

Առ քեզ բազմագութ ապաւինեալ կարդամք. մի մերժեր ըզմեզ յողորմութենէ քումմէ:

Որպէս զաւազակն աղաղակեմ առ քեզ. յիշեա եւ զիս տէր ՚ի քում յարքայութեանդ:

Յիշեա զմեզ տէր յորժամ գաս թագաւորութեամբըդ քո: տէր

Շնորհեա մեզ տէր զթողութիւն բազում յանցանաց մերոց:

Ուսո մեզ տէր փառըս տալ մեծի տէրութեանըդ քո:

Օրհնեալ տէր աստուած հարցըն մերոց: հրց ապց մէ

Ամենազօր թագաւոր յաւիտենից. օրհնեալ տէր:

Որ ՚ի հնոցին զերիս մանկունսն ապրեցուցեր. օրհնեալ տէր:

Ըզտէր օրհնեցէք. Զարարիչըն աստուած. եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Զթագաւորըն քրիստոս. եւ բարձր արարէք ըզնա յա:

Զնորոգող սուրբ զհոգին. եւ բարձր արարէք ըզնա յա:

Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ մարիամ, որ օրհնեալդ ես ՚ի կանայս. զքեզ օրհնեմըք միշտ որ արժանիդ ես մեծացուցանեմք: մեծ

Անապական տաճար և առագաստ լուսոյ. որ ՚ի քեզ փեսայացեալ բանըն կենաց բնակեցաւ. զքեզ օրհ:

Հօրըն կենդանի որ 'ի մորենին վառեցաւ, զոր անվնաս յարգանդի քում կրեցեր եւ ծընար աստուած եւ մարդ. զքեզ օրհ:

ողր Ընդմեղս իմ խոստովան լինիմ առ քեզ քրիստոս, որ միայնդ ես բազմագութ թողութեամբ. ողորմեա ինձ աստուած:

Դու տէր որ ճըշմարտութեանց ես սիրող, եւ քըննես ըզծածուկս գաղտնեաց սրտի իմոյ. ողոր:

Տուր ինձ ցընծութիւն փրկութեան, եւ հոգւով տէրութեան նըրդ քո հաստատեա զիս. եւ ողորմեա ինձ աստուած:

տէր Ըզքեզ օրհնեմք տէր. քեզ փառս մատուցանեմք:

Ըզքեզ տէր ամենակալ, անձինք մեր օրհնեսցեն:

Օրհնեալ ես տէր, օրհնեմք ըզքեզ գովեմք եւ փառաւորեմք:

հրդ Հայցըն մերոց օրհնեալ ես տէր, ուղիղ են ճանապարհըք քո:

Արդար ես դու տէր, ուղիղ են ճանապարհըք քո. աստուած երկայնամիտ, խընայեա յարարածըս քո:

Որ յաւիտենից ես առաւել բարձրացեալ աղաղակեմք. աստուած երկայնամիտ խընայեա յա:

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնեցէք եւ առաւել բարձր:

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.

Զաստուած տէր եւ արարիչ ամենայնի. ամենայն գործք օրհնեցէք եւ բարձրացուցէք ըզնա յաւիտեան:

մեծ Ըզքեզ աստուածածին, աղբիւր անըսպառ լուսոյն, որ լուսաւորէ զհաւատացեալս. միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք:

Դու պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձող անիծից. վասն որոյ ըզքեզ աստուածածին մեծա:

Դու ճըշմարիտ արեւելք արեգական արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց. միաբանական ձայնիւ երգով մե:

Ալիք յանցանաց զիս ալէկոծեն, եւ մեղք իմ բազում զիս յանդիմանեն: ողր

Արդ զինչ արարից մեղուցեալս անձամբս, որ չեմ ապրելոյ յահագին հըրոյն:

Մեղայ քեզ քրիստոս որդի աստուծոյ, շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց:

Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն հայր. որ յամենայն ժամ օրհնիս 'ի դասուց քերովբէից: տէր

Գովեմք ըզքեզ միածին որդի. որ անդադար փառաբանիս 'ի դասուց սերովբէից:

Անդադար բերանով անհանգիստ բարբառով բարեբանեմք սուրբ զհոգիդ. որ փառակիցդ ես հօր եւ որդւոյ:

Օրհնեալ տէր աստուած. օրհնեալ: հրց

Օրհնեալ տէր աստուած, որ ցօղեցեր երից մանկանցն. օրհնեալ տէր աստուած. օրհ:

Զթանձրացեալ հուրըն շիջոյց ըզբորբոքեալ բոցոյն. ծանուցեալ բըռնաւորին ասէր. եւ ես բարեբանեմ ըզքեզ տէր աստուած օրհնեալ:

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր
արարէք ըզնա յաւիտեան։
Գիշերք ըզտէր օրհնեցէք եւ ա-
ռաւել բարձր արա։
Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.
Տէր որ 'ի բաբելոնի առաքեցեր ըզ-
միածին որդիդ, եւ զհուր հը-
նոցին շիջուցեր յերից մանկանցն.
ընդ նոսին օրհնեմք ըզքեզ գովեմք
եւ փառաւորեմք։

մեծ Աստուածածին եւ սրբուհի.
որ ըզբանն աստուած անսերմն
յղութեամբ յարգանդի կրեցեր.
անդադար երգով մեծացուցանեմք։
Զքեզ մայր կուսութեան եւ յը-
ղութեան լուսոյ, եւ առագաստ
անճառելւոյ բընակողին 'ի քեզ
փեսայացեալ բանին. անդա։
Քեւ լուծան կնիք դատապար-
տութեան. եւ քեւ կանգնեցաւ
մեղուցեալ մայրն գլորեալ. վասն
որոյ ըզքեզ աստուածածին եւ
կոյս. անդա։

ողր Տէր որ 'ի մէջ լերինն աղբերա-
ցուցեր ըզջուրն 'ի վիմէն։
Տէր 'ի սրտէ խնդրէ հան ինձ ար-
տասուս ապաշխարութեան։
Զի կեցից եւ ապաշխարութեամբ
ապրեցայց 'ի հանդերձեալ քոց
դատաստանաց։

տէր Մի աստուածութիւն երրոր-
դութիւն անբաժանելի, որ 'ի հը-
րեշտակաց անդադար օրհնաբանիս։
Անմարմնոց զինուորութիւնք փա-
ռաբանեն ըզքեզ, իշխան հայր
աստուած։
Զորեքկերպեան կենդանիքն վա-
յելուչ աղաղակեն առ քեզ, իշխա-
նակից որդի եւ բանդ աստուած։
Իշխանութիւնք աթոռոց գովեն
ըզքեզ, ամենասուրբ հոգի եւ
բոլորից աստուած։

Օրհնեալ ես տէր աստուած հրց
հարցն մերոց, եւ օրհնեալ է ա-
նուն սուրբ փառաց քոց. աստը-
ւած հարցն մերոց։
Քանզի նուաղեցաք մեք քան զա-
մենայն հեթանոս. վասն անուան
սրբոյ քո կեցո ըզմեզ. աստը-
ւած հար։
Օրհնեալ ես տէր որ նստիս 'ի
քրովբէս եւ հայիս յանդունդս
թագաւոր յաւիտենից. աստ։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր գ
արարէք ըզնա յաւիտեան։
Որ յոչընչէ արար զամենայն ա-
րարածս, եւ զարդարեաց բանիւ.
օրհնե։
Զոր անդադար օրհնեն ամենայն
արարածք. քահանայք առաւել
գովեցէք. եւ բարձր արարէք ըզ-
նա յաւիտեան։

Որ զանճառելին ծնար սուրբ մեծ
աստուածածին կոյս. օրհնեալ ես
յաւիտեան։
Որ զարարչականիցն հօր զ'ի սկըզ-
բանէ բանն աստուած. յորովայնի
քում կրեցեր. օրհ։
Զքեզ եզեկիէլ տեսես երկնային
դուռն եւ հարսն անփորձ. օրհ։

Մեղուցեալ անձամբ կարդամ ողր
առ քեզ հայր երկնաւոր, օգնեա
ինձ 'ի նեղութեանս. որ մեղօքս
եմ մեռեալ օգնեա ինձ։
Վիրաւորեցայ ես յաներեւոյթ
թըշնամւոյն. բըժիշկ հիւանդաց,
բըժըշկեա զիմ զհիւանդութիւնս.
որ մեղօքս եմ մեռ։
Մոլորեցայ ես որպէս ոչխար կո-
րուսեալ. խընդրող գերելոց խընդ-

րեա զիս ըզմոլորեալս. որ մեղօքս եմ մեռեալ. օգնեա ինձ։

տէր Օրհնեմք ըզքեզ անեղ անըս-կիզբն Հայր. անհասանելի եւ փա-ռաւորեալ յանմարմնոց զինուորու-թեանց։

Գովեմք ըզքեզ որդի հօր արար-չակից բանդ. նորոգող եւ կեանք ազգի մարդկան թագաւոր յաւի-տենից։

Զքեզ բարեբանեն ամենայն ա-զինք. միշտ ընջենաբուխ անըսպառ աղբիւր սուրբ հոգիդ ճշմարտու-թեան։

հրց աղց մի Աստուած հարցն մերոց բա-րեբանեալ ես 'ի յաւիտեան։

Զի արդար ես յամենայնի տէր կեցո ըզմեզ։

Առաւել փառաւորեալ տէր կեցո ըզմեզ։

գ Ըզտէր օրհնեսցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնե-սցէք. եւ առաւել բարձր։

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.

Զաստուած տէր եւ արարիչ ամենայնի, ամենայն գործք օր-հնեցէք. եւ բարձրացուցէք ըզը-նա յաւիտեան։

մեծ Ի քեզ եմք ապաւինեալ քրիս-տոսի մայր աստուածոյ մերոյ։

Որ քան ըզերկինս բարձրագոյն մարիամ, պարծանք եկեղեցւոյ. քրիստոսի մայր աս։

Որքան ըզարեգակն պայծառագոյն մարիամ, մի դադարեր բարեխօսել վասն մեր. քրիստոսի մայր աս-տուածոյ մերոյ։

ողբ Մեղայ քեզ տէր քաւեա զիս եւ ողորմեա ինձ աստուած։

Ոչխար եմ բանաւոր հօտի քո եւ առ քեզ ապաւինիմ հովիւ բարի, խնդրեա զիս ըզմոլորեալս եւ ողորմեա ինձ աս։

Ի ծովու մեղաց ալեկոծեալ եմ եւ առ քեզ աղաղակեմ նաւապետ բարի, փրկեա զիս 'ի վտանգէս եւ ողորմեա ինձ աս։

Օրհնեմք ըզքեզ մարդասէր տէր, խոնարհեալ յարարածըս քո։ տէր

Հօրդ երկնաւորի եւ մարդասիրի օրհնութիւն եւ փառըս մատու-ցանեմք։

Զի առ քեզ տէր տէր են աչք մեր, 'ի քեզ յուսացաք պահեա եւ կեցո ըզմեզ։

Է՛ անուն տեառն օրհնեալ յայ-սմհետէ մինչեւ յաւիտեան։ յակ

Եւ եղիցի անուն տեառն օր-հնեալ յայսմհետէ։

Փառաւորեալ անուն տեառն օր-հնեալ յայսմհետէ։

Մերձեսցեն աղօթք իմ տէր 'ի տաճար սուրբ քո. եւ առաքեա 'ի մեզ տէր զօգնութիւն 'ի լեռնէ սրբոյ քումմէ։ հմբ

Հովանացի աջ քո տէր 'ի վերայ ստեղծուածոց քոց. եւ առաքեա։

Զերեկոյի աղօթս մեր ընկալ տէր բարեխօսութեամբ ծնողի քո. եւ առաքեա։

Անուն քո յաւիտեան։ հրց սրբ

Օրհնեալ տէր աստուած հար-ցըն մերոց։

Վասն աբրահամու սիրելւոյ քո մի մերժեր ըզմեզ. աստուած։

Որ առաւել բարձրացեալդ ես յաւիտենից. գովեալ եւ փա-ռաւորեալ. աստուած հայր։

Գ Գործք տեառն զՏէր օրհնեցէք. եւ բարձր արարէք զնա յաւիտեան։

Գիշերք զՏէր օրհնեցէք.

Զարարիչն արարածոց ամենայն ազինք օրհնեցէք եւ գովեցէք անդադար ձայնիւ. եւ բարձր արա։

Իսրայէլ զՏէր օրհնեսցէ.

Զթագաւորն թագաւորաց եւ զՏէրն տերանց, քահանայք եւ ժողովուրդք սուրբ եկեղեցւոյ, օրհնեցէք եւ գովեցէք հոգեւոր երգով. եւ բարձր արարէք զնա յաւիտեան։

մեծ Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ Մարիամ, որ օրհնեալդ ես 'ի կանանս. զքեզ օրհնեմք միշտ որ արժանիդ ես մեծացուցանեմք։

Անապական տաճար և առագաստ լուսոյ. որ 'ի քեզ փեսայացեալ բանն կենաց բնակեցաւ. զքեզ օրհ։

Հօրն կենդանի որ 'ի մորենին վառեցաւ, զոր անվնաս յարգանդի քում կրեցեր եւ ծնար աստուած եւ մարդ. զքեզ օրհ։

ողր Զարհուրեալ դողացաւ ամենայն անձն իմ, յահեղ քոց դատաստանաց, յաններելի տանջանացն։

Քանզի կամաւ մերձեցայ 'ի մեղս մեծամեծս. արդ կայ եւ մնայ ինձ աններելի պատուհասն։

Արդ անկեալ աղաչեմ փրկիչ եւ բարերար. խնայեա յիս 'ի մեղուցեալս, եւ ողորմեա ինձ բազմամեղիս։

ողր Ամենակալ քաւեա զմեղս իմ. զի աստուած ես ապաշխարողաց։

Եւ զհոգիդ սուրբ մի հաներ յինէն. զի աստուած ես։

Եւ փրկեա զիս յահագին հրոյն. զի աստուած ես։

Զառաւօտու զաղօթս եւ զբանաւոր պաշտօնս մատուցանեմք քեզ մարդասէր։ տէր

Բանդ 'ի բարձանց երկիր եւ լուսաւորեցեր զարարածս քո փրկիչ։

Եւ հաստատուն արարեր զեկեղեցի խաչիւ քո. փառք զօրութեան քո Տէր։

Կանխեալ 'ի ժամ առաւօտուս, օրհնեմք զքեզ Տէր ընդ զուարթունս երկնից։ տէր

Արա զմեզ արժանի ողորմութեան քում. զի օրհնեսցուք զքեզ Տէր ընդ։

Քրիստոս փրկիչ մեր փրկեա զմեզ, յորժամ գաս 'ի նորոգել զերկիր։

Յոյս իմ 'ի մանկութենէ իմմէ. մի թողուր զիս Տէր աստուած իմ։ ձնկ

Յոյս իմ 'ի ժամանակի ծերութեան իմոյ. մի թողուր զիս Տէր աստուած իմ։

Յոյս իմ 'ի միւսանգամ գալստեանն քո. մի անտես առներ զիս Տէր աստուած իմ։





# ԿԱՆՈՆ

## ՅԱՐՈՒԹԵԱՆ ՂԱԶԱՐՈՒ

օրհ / ա՛

Ա՛ՅՍՕՐ գոլով 'ի բեթանիա քո ամենազօր հրամանաւդ ձայնեցեր ղազարու, եւ դողացաւ մահ. դժոխք պարտեցաւ, ապականութիւն լուծաւ. կենդանարար քրիստոս կեցո՛ զմեզ։

Ա՛յսօր գոլով 'ի բեթանիա զքո զաշխարհակեցոյց սուրբ զյարութիւնդ յառաջագոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօրեայն 'ի թաղմանէ. կենդա։

Ա՛յսօր գոլով 'ի բեթանիա եբրայեցւոց մանկունքն ըսքանչացեալ աւէին. զմարիամու եւ զեղբայրն 'ի թաղմանէ յարուցեալ որդւոյն մարիամու. կենդա։

Կենդանութեանց բաշխող քրիստոս 'ի բեթանիա եկաւորեալ այսօր, բարեկամին ղազարու պարգեւէ զկենդանութիւն։

Տընօրինաբար արտասուելով ընդ մարթային եւ ընդ մարիամու ողբակցեր. եւ որպէս մարդ հարցաներ ուր եդիք զղազարոս։

Եւ որպէս զաստուած բարբառով յարուցանէ 'ի մեռելոց զչորեքօրեայն. եւ զուգընթաց ձայնին մեռեալն եկն արտաքս անապական։

բձ

Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին դողալով կարապետք դժոխոցն. եւ մեռեալն եկն արտաքս անապական։

Եկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք ըզհօրն ըզվրտանգ. որ մերկացաւ մեղօք ըզփառս արարչին, եւ զգեցաւ զթըզենւոյն ծածկոյթ փոխանակ անձառ լուսոյն։

Գովեցէք զորդին աստուծոյ այսօր ցնծութեամբ որդիք ադամայ, որ եկն 'ի խնդիր եղծեալ պատկերին. եւ գտեալ նորոգեաց 'ի փառս առաջին պատմուճանին։

Նոր նորոգող բնութեան մերոյ յիսուս, որ 'ի խորհուրդ հընութեան մարդոյն զանպտուղն այսօր չորացուցեր զթզենին. եւ ըզմեզ 'ի հնացեալ մեղաց նորոգեա 'ի կեանս անմահ։

Ո՛ր ըզխորհուրդ քո գալըստեանդ յառաջագոյն գուշակեցեր, մարգարէիւքն խօսելի զօրս ընտրեցեր յետ մովսէսի. որք խօսեցան հոգւով սրբով բազմապատիկ օրինակօք. տէ՛ր մեզ փրկիչ ողորմութիւն եւ զմեղաց զթողութիւն։

Ի՛ մերձենալ ամաց վերջին զոր տեսանողքըն ծանուցին, ընդ հասանիլ մեր փրկողիդ սոր 'ի վախճան ժամանակին. երեւեցար 'ի մէջ մարդկան զգեցեալ ըզկերպ ծառայական. տէ՛ր մեզ փրկ։

Ի՛ վեցերորդ աւուր զադամ ստեղծեր 'ի տիպ քո տէրական. որ ոչ պահեալ զպատուիրանըն մերկացաւ ըզպատմուճանն. իսկ նոր ա-

զամդ ՚ի վեց գարուն այց արարեր
կորուսելոյն. տո՛ւր մեզ փըր:
Տաճար լուսոյ անըստուերին եւ
առագաստ անճառ բանին. որ ըզ-
նախնւոյ մօրն Եւայի բարձեր զա-
նէծսըն տըրտմալի. հայցեմ յորդւոյ
քո միածնի հօր հաշտութեանըն
միջնորդի, բանալ ՚ի մէնջ ըզխոստո-
վութիւն եւ տալ պտղոյ խաղա-
ղութիւն:
Որ ՚ի վերդ ես քան զամենայն
ըզմիտս եւ զխորհուրդս. փառաց
թագաւոր խընայեա ՚ի մեզ:
Որ միայն ունիս զանմահութիւն
եւ զանեղութիւն. փա:
Որ նըստիս ՚ի քրովբէս երրորդու-
թիւն անբաժանելի. փա:
Որ երկըրպագեալդ ես ՚ի հրեշտա-
կաց եւ ՚ի մարդկանէ. փա:
հոգ Սարսափելի հողմոյ նըմանն ա-
հեղագոչ սաստիկ հընչմամբ, երե-
ւեցար ՚ի վերնատանն հոգիդ դա-
սուն երկոտասան. որք առ ՚ի քէն
մըկըրտեցան որպէս զօսկի հրով
մաքրեցան. մաքրեա ՚ի մէնջ ըզմեգ
մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց:
Էկիր յերկիր աստուածաբար դա-
տել զաշխարհս իշխանաբար, ընդ
արդարութեան եւ ընդ մեղաց եւ
ընդ չարին դատաստանաց. բացեր
ըզպանձդ անհիւթական պարգեւս
ետուր որդւոց մարդկան. մաք:
Սէրն ՚ի սիրոյ զսէրդ առաքեաց
յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց.
զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն
սեամբ քո հաստատեաց. տընտես
՚ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ
շնորհօք քո զվարդարեաց. մաք:
հան Ի ձայն փողոյ գալըստեան քո
տէր, ամենայն հոգիք զարթիցեն
կալ ՚ի դատաստանի քում քրիստոս
աստուած մեր:
Յորժամ հընչէ բարբառն ահագին,
եւ հարկանի փող յարութեան մե-
րոյ. եւ մեք գոչելով ասեմք փա-
ռըք գալըստեան քո տէր:
Յորժամ առնես հատուցումըն
տէր, եւ սուրբք քո պարծեսցին
՚ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փըր-
կիչ կալ ՚ի յաջմէ քումմէ:
Բանն առաքեալ ՚ի հօրէ, որ ած
վասըն մեր մարմնացաւ եւ ցըն-
ծութիւն աշխարհի յայտնեցաւ.
ըզքեզ բարեբանեմք աստուա-
ծին կոյս:
Զի որում ոչըն հանդուրժէին
բոցանըշոյլ սերովբէքն. նա բնա-
կեցաւ ՚ի քում յորովայնի. ըզքեզ
բարեբանեմք աստ:
Յորմէ սարսեալ դողային փայ-
լակնացայտ ՚ի լուսոյն. ՚ի գիրկըս
քո ըզնա ընկալար. ըզքեզ բարե:
Այսօր խընդրի պատուական խաչ
փայտ խաչին աւանդեալըն ՚ի գող-
գոթա, ՚ի ձեռն աստուածասէր
դըշխոյին. եկայք հաւատացեալք
երկըրպագեսցուք աստուածային
սուրբ նըշանիս:
Այսօր ընծայէ գողգոթա ըզծած-
կեալըն ՚ի յերկրի, վերաբերեալ ա-
նուշահոտ խընկովք, ՚ի ձեռն երա-
նելոյն յուդայի. եկայք հա:
Այսօր ՚ի ձեռըն փրկական սուրբ
խաչին կենագործի պատանին մե-
ռեալ. եւ ողբայ սատանայ ըզկոր-
ծանումն իւր. իսկ մեք քրիստոսի
հաւատացեալք երկըրպա:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Կացեալ ՚ի դուրս այրին եւ ձայ-
նէր ազդ արարող բարբառովն ՚ի

գերեզմանն. ղազարէ եկ արտաքս անապականն ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ։

Եղեալ ՚ի գերեզմանէն երիզապինդ պատանօքըն մեռելոյն. հրամայեաց լուծանել ՚ի կեանսըն յաւիտենից ։

Հրց բձ Աստուածային գոչմամբ ձայն արկեալ առ ղազարոս կոչեցեր ՚ի թաղմանէ. աստուած հարցըն մերոց ։

Որ զարտասուս մարիամու եւ մարթայի ոչ անտես արարեր բարերար. աստուած հայր ։

Զչորեքօրեայ զմեռեալն իշխանութեամբ անապական կոչեցեր ՚ի թաղմանէ. աստուած հայր ։

Գ Գործք տեառն ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան ։

Գիշերք ըզտէր օրհնեցէք.

Որ հօրն է փառակից ՚ի բեթանիա եկըն այսօր, յարութիւն առնելով ղազարու. օրհնեցէք եւ գովեցէք բարձր արարէք ըզնա յաւ ։

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.

Եւ լուծեալ ըզզօրութիւնըս դըժոխոց, աստուածաբար կոչեաց ըզմեռեալ չորեքօրեայն ՚ի թաղմանէ. օրհնեցէք եւ գո ։

ձեծ Սուրբ եւ աստուածածին մարիամ ցանկալի կուսից եւ պարծանք ազգի մարդկան, մայր եւ աղախին մեծացուցանեմք ։

Անկէզ մորենի եւ տաճար ընդհանուր լուսոյն, անարատ եւ անխառնելի կուսութիւն. մայր եւ աղախ ։

Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան, եւ առաջնորդ հրափայլ ծագմամբ. մայր եւ աղախ ։

Որ ՚ի չորեքկերպեան կենդանեաց փառաբանիս ՚ի բարձունս. այսօր մարդասիրապէս փղձկիս, ՚ի բեթանիա երթալ յանձն առեր. աղբիւր կենաց մեր եւ յոյս ողորմեա մեզ ։ ողբ գձ

Որ յարտասուս մարիամանց գթացեալ արտասուեցեր եւ ասացեր ցնոսա. ուր եդիք, ես յարուցից ըզսիրելին իմ զղազարոս. աղբիւր կենաց մեր եւ ։

Աստուածային արարչագործ ձայնիւըդ քո քրիստոս ՚ի թաղմանէ կոչեցեր զղազարոս. ցուցար կենդանեաց եւ մեռելոց աստուած. աղբիւր կենաց մեր եւ յոյս ողորմեա մեզ ։

Աղբիւր անմահութեան բըղխեալ ՚ի բեթանիա կենագործեաց ըզղազարոս ՚ի թաղմանէ ։ տէր

Կանխեալ մարիամանցն արտասուօք հառաչմամբ գտին կենդանացեալ ըզչորեքօրեայ զմեռեալն ։

Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին դողալով դըժոխք. եւ երիզապինդ մեռեալն ըզգեցաւ զանմահութիւն ։

Յիսուս միածինն անմահութեանց պարգեւատուն երեւեցաւ մեզ, խափանեաց զզօրութիւն մահու ։ Յնկ տան դկ

Բըղխմամբ արտասուաց մարիամու եւ մարթայի անկեալ առ ոտսըն տեառն, խնդրէին զնորոգումն եղբօրն ։

Բանիւ բանն աստուած կենագործեաց ըզղազարոս ՚ի թաղմանէ, եւ եկեալ արտաքս անապական ։

ձշւ
գձ
տէր
թգ

Որ ՚ի յերկնից իջեր բանդ աստուած. մարդ եղեալ ՚ի սրբոյ կուսէն, յարութիւն եկիր առնել բարեկամին քում ղազարու. փառք գալստեանդ քում քրիստոս թագաւոր անմահ:

Յորժամ դողան դասք հրեշտակաց. մարդասիրապէս արտասուեցեր ողբակցելով ընդ մարթայի եւ ընդ մարիամու. փառք:

Աղբիւր կենաց եւ անմահութեան. աստուածային ձայնիւ դողացուցեր զմահ, եւ նորոգեցեր զչորեքօրեայ զմեռեալն. փառք:



## ԿԱՆՈՆ

### ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ԿԻՐԱԿԷԻՆ ԳԱԼՍՏԵԱՆ ՏԵԱՌՆ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

օրհ
ած

Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից, ՚ի վերայ նըստիլ յաւանակի հաճեցար. բարեբանեալ որ եկիրդ ՚ի կեցուցանել:

Ուստի եւ մեք զյաղթական օրհնութեանցն ըզձայն մատուցանեմք քեզ թագաւոր փառաց ընդ տղայոցն օրհնաբանելով. բարե:

Ովսաննայ ՚ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ տեառն ալէլուիա. եւ օրհնութիւն որ գալոցդ ես անուամբ տեառն ալէլուիա:

Այսօր զանընկճելին բանն որ յաթոռ փառաց ընդ հօր յերկրի երեւեալ տեսաք. քրովբէական ձայնիւն օրհնեսցուք. օրհնեալ եկեալ անուամբ տեառն:

Այսօր գոլով ՚ի բեթանիա քո ամենազօր հրամանաւդ ձայնեցեր ղազարու, եւ դողացաւ մահ. դժոխք պարտեցաւ, ապականութիւն լուծաւ. կենդանարար քրիստոս կեցո զմեզ:

Այսօր գոլով ՚ի բեթանիա զքո զաշխարհակեցոյց սուրբ զյարութիւնդ յառաջագոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօրեայն ՚ի թաղմանէ. կեն:

Այսօր գոլով ՚ի բեթանիա եբրայեցւոց մանկունքն ըսքանչացեալ աւէրին. զմարիամու զեղբայրն ՚ի թաղմանէ յարուցեալ որդւոյն մարիամու. կեն:

Կենդանութեանց բաշխող քրիստոս ՚ի բեթանիա եկաւորեալ այսօր, բարեկամին ղազարու պարգեւէ զկենդանութիւն:

Տնօրինաբար արտասուելով ընդ մարթայի եւ ընդ մարիամու ողբակցէր. եւ որպէս մարդ հարցանէր ուր եդիք զղազարոս:

Եւ որպէս զաստուած բարբառով յարուցանէ ՚ի մեռելոց զչորեքօրեայն. եւ զուգընթաց ձայնին մեռեալն եկն արտաքս անապական:

Որ ՚ի լերինն այլակերպեալ ցուցեր զաստուածային քո զօրութիւնդ. զքեզ փառաւորեմք իմանալի լոյս: վառ

Որ ըզճառագայթ փառաց քոց ցուցեր արեգականակերպ փայլմամբ զարարածըս լուսաւորեցեր. զքեզ:

Ո՛ր ահագին տեսլեամբ զարհուրեցուցեր զքո՛ պաշտօնեայսն, ՚ի թմբրութիւն հրաշիցն ՚ի սէր աստուածային փառաց քոց. զքեզ։

Օրհ Զփառաւորեալըն յամենայն արարածոց, եւ ՚ի ծագաց մինչ ՚ի ծագս երկրի զերկրպագեալըն. զմարմնացեալ բանն ՚ի կուսէն, ձայնիւ երգով օրհնեսցուք։

Ո՛ր դիմեալ գաս յեդովմայ բարձրացեալ փողով. յարուցեալ ՚ի պատերազմ ընկղմեաց զաներեւոյթն ամաղէկ. զինջեալ բանն ՚ի դժոխս ձայնիւ երգով օրհ։

Ծագումն ՚ի հօրէ փառակից սուրբ հոգւոյն. կենդանութիւն ազգի մարդկան, որ յարեան այսօր ՚ի մեռելոց. զհամբարձեալ բանն ՚ի յերկինս ձայն։

Հոգ Ո՛ր ՚ի քրովբէական կառսըդ համբարձար, այսօր իջեր յերկնից ՚ի դաս առաքելոցըն սուրբ հոգի. օրհնեալ ես թագաւոր անմահ։

Ո՛ր գընաս ՚ի վերայ թեւոց հողմոց, այսօր ՚ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքելոցըն սուրբ հոգի. օրհ։

Ո՛ր խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր ՚ի հաստատել զեկեղեցի քո սուրբ հոգի. օրհ։

Հան Զայն արկեալ կենարարին աստուածային բարբառոյն, ասէ եկայք օրհնեալըք հօր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն ՚ի հանդերձեալ երկրին։

Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ՚ի յօդըս վերինս, աստուածազգեաց լուսով պայծառացեալ ՚ի դասս անմարմնոցն. ՚ի լսել ըզձայն երանաւէտ կոչմանն։

Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանսն, ՚ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ՚ի դասս անմարմնոցն, ՚ի ժողովս անդրանկաց գրելոց ՚ի յերկինս։ Ած

Մարմնացեալդ ՚ի կուսէն նախայաւիտեան բանդ, այսօր ՚ի տաճարն եկիր կատարել զօրէնս, վասըն փրկութեան հեթանոսաց։

Ո՛ր յանարուեստ աթոռ նըստիս բարեբանեալդ ՚ի հրեշտակաց. այսօր ՚ի սիմէօնի բառնալով ՚ի գիրկս. որ ընծայեցես ըզմեզ ՚ի կեանսըդ յաւիտենից։

Ո՛ր արձակիչդ ես կապելոց պարգեւատու ամենեցուն. այսօր հայցեմք ծերունոյն արձակեալ եւ զիս ըզբանդմամբս ՚ի կապանաց մահու ՚ի կեանսըդ յաւիտենից։

Ի՛ խորանի քում սրբութեան զոր ընտրեցեր գալըստեամբդ քո քրիստոս, ՚ի սմա միաձայնեալ աղաչեմք ըզքեզ, լուր ձայնի աղաչանաց մերոց ընկալ եւ կեցո ըզմեզ։ Խաչ

Ա՛ստուածային լուսով քո պայծառ քան զարեգակըն լուսաւորեցեր զքո սուրբ զեկեղեցի. ՚ի սմա միաձայնեալ։

Ա՛յսօր և հրեշտակք ուրախանան ընդ պայծառութիւն քո սուրբ եկեղեցւոյ. ՚ի սմա միա։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Ա՛յսօր յաւանակ քերովբէ, եւ տըղայքն երգեցին բարեբանեն. օրհնութիւն որդւոյ դաւթի, օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Ա՛յսօր զուարճացան տիեզերք գալըստեամբ աստուածորդւոյն յե-

բուսաղբիւր. եւ գոչէին հրճուանօք երգով. օրհնեալ եկ։

հրց գկ Որ ՚ի քրովբէական աթոռ ընդ Հօր նստէիր բանդ աստուած. այսօր խոնարհութեամբ նստար մարմնով նոր յաւանակի. ընդ քեզ բարեբանեմք աստուած հայրցն մերոց։

Որ ՚ի սրովբէիցն սրբասաց ձայնիւ անդադար օրհնաբանիս. այսօր ՚ի դասուց եբրայեցւոց որդի դաւթի փառաբանեցար. ընդ քեզ բարեբան։

Որ ՚ի հրակերպիցն երգաբանեալ հրճուանօք ՚ի բարձունս օրհնաբանիս. այսօր ՚ի ծերոց եւ ՚ի տղայոց գովեցար ովսաննա երգով. ընդ քեզ բարեբան։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ընդ յաւիտեան։

Այսօր ըզգալուստ փրկչին մերոյ ցնծութեամբ տօնէ նոր Երուսաղէմ. ժողովուրդք որք ՚ի հեթանոսաց, բարձր արա։

Այսօր ընդ մանկանցն եբրայեցւոց զհին ուխտին եկեալ նոր արքայ ՚ի Սիովն. մանկունք սուրբ եկեղեցւոյ բարձր արա։

Այսօր ընդ ծերոցն օրհնաբանին ուրախութեամբ բարեբանեցէք զանմահ թագաւորն եկեալ. քահանայք հոգեւոր երգով բարձր։

մեծ աձ Ուրախ լեր յոյժ դուստր Սիովնի. պայծառացիր երուսաղէմ զարդարեալ ըզդրունս քո քաղաքդ աստուծոյ։

Քանզի քրիստոս որ էնն ՚ի յաթոռ փառաց, այսօր մտանէ ՚ի քեզ նստեալ ՚ի վերայ յաւանակի նորոյ։

Ծերք եւ տղայք ստովք ձիթենեօք միաբանութեամբ երգէին. օրհնութիւն որդւոյ դաւթի, օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

Ուրախ լեր եկեղեցի սուրբ. ՚ի գալըստեան սուրբ միածնին. ուրախ լեր եւ ցնծա հանդերձ անկեալ սրբովք։ ողղ բկ

Խնդա յոյժ դուստր վերին Սիովնի. ահա թագաւոր քո գայ նստեալ ՚ի յաւանակի նորոյ. արդար եւ փրկիչ փրկէ եւ կեցուցանէ։

Զարդարեցիր եւ բերկրեալ ժողովուրդ աստուծոյ. մատո զօստս ծաղկեալս համատով եւ ասա. օրհնեալ որ եկիրդ թագաւոր տիեզերաց։

Զքրիստոս թագաւորն որ էն ՚ի յաթոռ փառաց. տեսաք ՚ի յերկրի նստեալ ՚ի նոր յաւանակի։ տէր

Ընդ առաջ ելեալ արքային դասք եբրայեցւոց. ծերքն ստովք ձիթենեօք եւ տղայքն արմաւենեօք։

Միաբանեալ ձայնիւ գոչէին երգ նոր. բարեբանելով զանմահ թագաւորն։

Անսկիզբըն բանըն Հօր որ ՚ի վերայ քերովբէիցն հանգչի, այսօր ՚ի վերայ յաւանակի նորոյ նստեալ. օրհնեալ արքայ եկեալ անյաղթելի թագաւոր։ ճչւ դկ տէր թգ

Յառաջ քան զյաւիտեանս որդին որ ՚ի վերայ քառակերպիցն բազմի, այսօր ՚ի ծերոց եւ ՚ի տղայոց փառաւորեցաւ. օրհ։

Եկայք նոր ժողովուրդք ընդ անմարմնոցն դասս բազմութեան, ընդ սա հրճուանօք երգով քաղցր ձայնիւ փառաւորեսցուք. օրհ։

Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանեն ծերքն ոստովք, եւ տղայքն արմաւենեօք. ովսաննա օրհնեալ եկեալ ի յանուն տեառն։

Զոր սերովբէքն ծածկաբար ընդունիլ ոչ բաւեն, ի վերայ յաւանակի նորոյ նստեալ բարեբանեցաւ ի տղայոց. ովսաննա օրհնեալ եկեալ։

Այսօր ընդ ծերոց եւ ընդ տղայոց օրհնաբանութեանցն վեր երգեմք, նորոյ արքայիդ եկեալ յերուսաղէմ. ովսա։

Օրհնեալ եկեալ անուամբ տեառն. օրհնեալ որ գալոցդ ես։

### ՆՈՑՆ ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ԿԻՒՐԱԿԷԻՆ

Թագաւոր գոլով քո յաշխարհ, մտեր ի քաղաքն երուսաղէմ, նստեալ ի վերայ հողեղէն նոր յաւանակի, կոչել զհեթանոսս յերկրպագութիւն։

Ծերքն ոստովք ձիթենեօք, եւ տղայքն ոստովք արմաւենեօք. եւ երամ երամ դասուքն աղաղակէին. ովսաննա օրհնեալ եկեալ ի յանուն տեառն։

Ցնծացաւ սուրբ սիոն, բերկրեցան սուրբ եկեղեցիք. եւ խնդութեամբ բազմաւ ելին ընդ առաջ, օրհնէին զգալուստ քո փրկիչ յաշխարհ։

Յորժամ եկին յիսուս յերուսաղէմ ի քաղաքն, ընդ առաջ ելին ծերքն ոստովք ձիթենեօք, եւ զաստուածորդին փառաւորէին։

Ի լեառն ձիթենեաց տարածանէին մանկունքն ըզհանդերձս իւրեանց. եւ ոստս ի ծառոց բերեալ մատուցանէին աստուածորդւոյն սուրբ թագաւորին

Ոստովք եւ արմաւենեօք ձիթենեօք երգեցեալ մանկունքն օրհնէին. ուրախ լեր երուսաղէմ քաղաք, եւ ցնծա սիոն մայր եկեղեցի։

Զգալուստ քո քրիստոս այսօր յերուսաղէմ նոր եկեղեցի սուրբ, յաղթական երգով բարեբանեմք. օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

Որ վասն մերոյ փրկութեան յաւանակի նստիլ յանձն առեր, ընդ մանկունսն բարեբանեմք. օրհ։

Թագաւոր երկնաւոր զեկեղեցի քո անշարժ պահեա, եւ զերկրպագուս անուանդ քում պահեա ի խաղաղութեան։

Ի յարութեան յաւուր գալստեան փրկչին տարածանէին մանկունքն ըզհանդերձս, եւ անդադար ձայնիւ օրհնէին օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

Ոստս ի ծառոց բերեալ մատուցանէին աստուածորդւոյն առ ճանապարհաւն, և անդադ։

Ի ծերոց բղխեալ օրհնութիւն, եւ ի տղայոց փառաբանութիւն, եւ անդադար ձայն։





# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻՆ

ԱՆԵՂՆ 'ի հօրէ ծնեալ որդի յանէից գոյացոյց զեղեալքս զերկնային եւ զերկրաւորս էութիւն. արարածք ամենայն տուք փառս արարչին յաւիտենից։

օրհ / բձ

Պատկեր աներեւոյթ փառացն հօր, 'ի պատկեր բարերարութեան խւրոյ արար ըզմարդկային բնութիւնս. արարածք ամե։

Լոյսն 'ի հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զազամ, 'ի դրախտին եդեալ անմահ տընկոցն երկրագործ. արարածք ամենայն տուք փառս արար։

Ընկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք ըզհօրն ըզվըտանգ. որ մերկացաւ մեղօք ըզփառս արարչին, եւ զգեցաւ զթըզենւոյն ծածկոյթ փոխանակ անճառ լուսոյն։

Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արթնութեամբ. ընդ առաջել որ գաս 'ի դատել զերկիր։

Անաղօտ վառեալ լապտերըք հաւատոյ ընդ գիտս իմաստուն կուսանացըն, մըտանել 'ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային։

Փութասցուք կանխեալ յառաջ քան ըզձայն սատուածային բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ըստ չիջման հինգ կուսանացն։

Որ նըստիս 'ի քրովբէս աստըւած բանդ. այսօր վասըն մեր խոնարհութեամբ նըստար 'ի լեռինըն ձիթենեաց. օրհնեմք ըզքեզ անդադար երգով։

Որ համագոյդ ես խորհրդոցըդ հայրենի, աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալըստեանն. օրհ։

Որ ամենայնց ես արարիչ եւ ըստեղծիչ կենդանութեան. այսօր ըզծածկեալ խորհուրդ երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սըրբոյ քո. օրհ։

Տնօրհնեա մեզ տէր արթնութիւն ընդ իմաստուն կուսանացն. եւ զհոգւոյ մերոց լապտերըս պայծառացո։

Երկընչիմք 'ի քէն տէր զարհուրեալք 'ի պատասխանւոյն, զամէնն ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ։

Յորժամ գաս փառօք հօր դատել ըզտիեզերս ամենայն, շնորհեա եւ մեզ տէր կալ 'ի յաջմէ քումմէ։

Բացցի մեզ դուռն ողորմութեանն երկնաւոր փեսային, եւ մըտցուք 'ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն։

Ժամանեսցուք ընդ առաջ փեսային, եւ մըտցուք 'ի յառագաստ նորա. զի մի մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն։

Պայծառացին լապտերըք հոգւոյ մերոց, եւ բազմեցուսցես ըզմեզ ընդ հրաւիրեալսն 'ի կոչումն արքայութեանն երկնից։

Որ 'ի վերդ ես քան զամենայն ըզմիտս եւ զխորհուրդս. փառաց թագաւոր խոնարհեա 'ի մեզ։

Որ միայն ունիս զանմահութիւն եւ զանեղութիւն. փա։

Որ նըստիս 'ի քրովբէս Երրորդութիւն անբաժանելի. փա։

Որ երկրպագեալդ ես 'ի հրեշտակաց եւ 'ի մարդկանէ . փա՜ ։

հոգ. Նոյն եւ նըման հօր եւ որդւոյ հոգիդ անեղ եւ համագոյ . բղխումըն հօր անքըննաբար առեալ յորդւոյ անճառաբար . 'ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց առաքելոյ . ա՛րհնեալ եւ մեզ ողորմութեամբ 'ի բաժանեալ իմաստութեան ։

Էից ստեղծող արարածոց որ շրջէիր 'ի վերայ ջրոց . նոյն եւ 'ի ջուրսն աւազանին 'ի շնորհել մեզ քում էակցին , գրգուես սիրով ազանազանիր զմարդիկ ծնանիս աստուածակերպս . ա՛րհնեալ ։

Բարուն վերնոցն իմանալեաց եւ բոսորին այր ըզգալեաց . որ մարգարէս տաս 'ի հոլովս եւ առաքեալս 'ի հրեղինս . աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս . ա՛րհնեալ եւ ։

հան Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զերրորդութիւնըն , փառաւորելով ըզհայր . որ վերակոչեաց զամենեսեան 'ի միահաւանէ յանմահութիւն ։

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք սըրբեցելոց , քրիստոսի երկրպագելով . որ վերակոչեաց զա ։

Ամբաստաց ձայնիւն օրհնեսցուք , հոգեւորականն հրնչմամբ գովեսցուք , սուրբ զհոգին փառաւորելով . որ վերահանգոյց զա ։

ած Ընդ քեզ կոյս եւ մայր եւ բնակարան աստուածային ներմարդութեանն , գոհաբանեմք եւ վերօրհնեմք զերեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան . վասն որոյ ըզքեզ աստուածածին եւ կոյս բարեբանեմք ըզմայր եւ զմաքուրին փրկչին մերոյ ։

Ծընունդըն հօր եւ հին աւուրց անժամանակն յաւիտենից . ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ եւ 'ի հօրէ ոչ մեկնեցաւ . վասն ո ։

Ծնեալն 'ի քէն 'ի խաչ ելեալ եւ 'ի յաթոռ փառաց ընդ հօր . անարգեալ 'ի մարդկանէ փառաւորութեամբ էութեամբ երկրպագեալ . վասն որոյ ։

Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք . դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց . գոհաբանեն եւ վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր եւ զա ։

Բանալի արքայութեան տուեալ հողածին մարդոյն , ուստի յառաջին ճաշակմանէն արտաքս անկեալ 'ի յաւէժ կենդանութենէն . որ ձեւացոյց մեզ ապա մըտանել ընդ դուռն անեղաշէն դրախտին տեառն ։ խաչ

Գաւազանաձեւ երեւեալ եգիպտական ազգին , ցուցանելով ըզզօրութիւն սրբոյ խաչին , յափշտակելով ըզգաւազանսըն դիւթականն . որ ձեւա ։

Դրոշմ ըզգուշութեան օրինակեալ 'ի վերայ սեմոց դրանց նոցա , աներկիւղ պահելով ըզժողովուրդն յանդրանկածախս սատակմանէն . որ ձեւա ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ ։**

Գովեցէք զորդին աստուծոյ այսօր ցընծութեամբ որդիք ադամայ , որ եկն 'ի խնդիր եղծեալ պատկերին . եւ գտեալ նորոգեաց 'ի փառս առաջին պատմուճանին ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Նոր նորոգող բնութեան մերոյ յիսուս, որ 'ի խորհուրդ հընու- թեան մարդոյն զանպտուղն այսօր չորացուցեր ըզթզենին. եւ ըզմեզ 'ի հնացեալ մեղաց նորոգեա 'ի կեանս անմահ։

հրց բձ Որ արարիչդ ես յաւիտենից, եւ ստեղծեր զարարածս ամենայն յոչընչէ. ըզքեզ օրհնեմք աստուած հարցըն մերոց։

Որ թագաւորդ ես թագաւորաց. եւ շնորհես բանաւոր կենդանի մարդ 'ի հողոյ. ըզքեզ օրհ։

Որ ապաւէնդ ես մոլորելոց. եւ խնամես զյուսացեալքս 'ի քեզ քո անեղութեամբդ. ըզքեզ օրհ։

գ Ըստէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Օրհնեցէք. Զթագաւորն եւ զտա- տըւածն որ նըման միայնոյ վայելէ օրհնութիւն. եւ բարձր։

Օրհնեսցէ. Զի ծանուցեր մեզ սքան- չելի խորհուրդ սուրբ երրորդու- թեանն եւ զմի աստուածութեանն քրիստոս. եւ բարձր։

մեծ Սուրբ եւ աստուածածին մա- րիամ ցանկալի կուսից եւ պար- ծանք ազգի մարդկան, մայր եւ ա- ղախին մեծացուցանեմք։

Անկէզ մորենի եւ տաճար ըն- հանուր լուսոյն, անարատ եւ ան- խախտելի կուսութիւն. մայր եւ աղ։

Խորհուրդ կենաց և մայր կենդա- նութեան, եւ առագաստ հրափայլ ծագմամբ. մայր եւ աղ։

ողր Առ ամենեսեան գըթած քրիս- տոս թագաւոր խաղաղութեան. ըզքեզ աղաչեմք միայն մարդասէր։

Որում այսօր փափագեալ ցանկայր հոգւով եւ մարմնով. մայր որ- դւովք հրովք խնդրէր ըզբարձ- րագոյն ըզփառս յերկրին կենդա- նեաց։

Տրուող ըզկեանս անմահ առ քեզ աղաղակեմք եւ միաբան հայցեմք, շնորհեա եւ մեզ տէր կալ 'ի յաջմէ քումմէ։

Ըզքեզ օրհնեմք որ բաշխող ես բարութեանց, եւ հայցեմք որպէս 'ի մարդասիրէ, ընդ մօր քո ըն- բելոյն զիմանալի աշխարհն։ տէր

Զի դու ես տէր յորմէ հայցէր մայ- րըն համառօտ հանդերձ որդւովք ամբարձելովք ընդ աջմէ քո զփառս եւ յահեկէ. ընդ որս եւ մեք աղա- չեմք զի դասեսցես ընդ սուրբս քո։

Այլ դու բարձրեալ փրկիչ որ վասըն մեր խոնարհեցար, արժանի արա ըզմեզ լինել զւարթուն պատ- ուիրանի կենաց քոց տէր. որով կացցուք յաջմէ քումմէ 'ի հան- դերձեալ քում գալըստեանն։

Ցէք զանունըն տեառն։ մնկ

Աղէլուիա. ալէլուիա. ա- ղէլուիա։

Այսօր ընդ զօրս երկնից համա- ձայնեալ միաբանական ձայնիւ եր- գեմք աւետելով. ա։

Երկրաւորքս ընդ երկնայինսն, հա- ղեղէնքս ընդ հրեղէնսն. միա- բանական ձայնիւ երգեմք աւե- տելով. ալէ։

Որ յանէից գոյացուցեր զքո զա- րարածս 'ի սկզբանէ. 'ի պատկեր աստուածութեանդ քո ստեղծեր մարդ 'ի հողոյ. ժառանգել նոմա զանպատում ըզկեանսն։ հմբ

Իսկ պատրանօք բանսարկուին 'ի

դրախտէն արտաքս անկեալ. 'ի
յաւէժ կենդանութեանըն մահա-
ուիթ պըտղով մեռեալ, մերկացաւ
ըզփառս անըստուեր լուսոյն։

Այլ դու փըրկիչ բարերար որ
մարմնացար 'ի սուրբ կուսէն, եւ
հեղմամբ արեանըդ քո բարձեր
զյանցանս նախաստեղծին, փըրկե-
լով ըզմեզ յանիծից նորա։

Որ ըստ պարտեաց նախահօրըն
յանձն առիր յօժարութեամբ ըմ-
պել զբաժակ չարչարանաց ընդ
քեզ որդիքըն զեբեդեայ. շնոր-
հեաց մեզ տէր ըզբաժակ քո փըր-
կութեան։

Ի միւսանգամ քո գալըստեանըն
յորժամ գաս դատել զերկիր, ընդ
նոսին դասակարգեա ըզմեզ 'ի փառս ա-
ջակողմեանն. որով հանցուք քեզ գոր-
հութիւն յանըսպառ յաւիտենին։



# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ԵՐԵՔՇԱԲԱԹԻՆ

օրհ / բկ ԻՄԱՍՏՈՒՆ կուսանքըն պատ-
րաստեալ իւղ լապտերաց,
եկին ընդ առաջ երկնաւոր փեսա-
յին վառեալ լապտերօք։

Իսկ յիմարաց կուսիցն ունայնա-
ցեալք 'ի յիւղոյ, անպատրաստ
գըտան գալըստեան փեսային շի-
ջեալ լապտերօք։

Կան որք եւ մեք պատրաստեա-
ցուք իւղ հոգեւոր, զի մըտցուք
'ի յառագաստ անմահ փեսային
վառեալ լապտերօք։

Յորժամ յերկնից փառօք գաս
քրիստոս նըստիս յաթոռ դատո-
ղական եւ բաժանես զազգս ամե-
նայն, յաջակողմեանըն քում դա-
սեա ըզմեզ ընդ օղեացն։

Ճառագայթ փառաց հօր որդիդ
միածին, որ ըզլոյսդ անվայրափակ
մարմնով պարագրեալ, այսօր 'ի թա-
բօր փառօք փայլեցեր։

Որ անտես սրովբէից անհաս 'ի
վեր քան ըզբան, ծառայի կերպիւ
պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր,
այսօր 'ի թա։

Որ հրեղինացն անմերձենալի հուր
աստուածութեամբդ, 'ի հողեղէնս
խոնարհեալ լոյսդ արփիական. այ-
սօր 'ի թա։

Ուրախ լեր եկեղեցի սուրբ.
'ի գալըստեան սուրբ միածնին.
ուրախ լեր եւ ցընծա հանդերձ
ամենայն սըրբովք։

Խընդա յոյժ դուստըր վերին սի-
ոնի. ահա թագաւոր քո գայ նըս-
տեալ 'ի յաւանակի նորոյ. արդար
եւ փըրկիչ փըրկէ եւ կեցուցանէ։

Զըւարճացիր եւ բերկրեա ժողո-
վուրդ աստուծոյ. մատո զոստըս
ծաղկեալըս հաւատով եւ սաս.
օրհնեալ որ եկիրըդ թագաւոր
տիեզերաց։

Դատաւոր արդարութեան համա-
տարեցեր 'ի մեզ ըզմիտըս մեր.
դատել զհոգի և ըզմարմին, ար-
դարապէս դատմամբ ըստ օրինաց
քոց քրիստոս։

Իսկ անիրաւ դատաւորին որ 'ի
քաղաք բնութեան մերոյ, ոչ ու-
նելով զերկիւղ քո սուրբ, եւ
անպատկառ 'ի մարդկանէ ոչ ա-
նելով դատ զըրկելոյն։

Այլ անմահ սուրբ փեսայիդ այրի
հոգի իմ պաղատի. ուսո զիրաւու-

նըս քո խմուլ դատաւորիս. անունել ինձ դատաստան արդար ընդ ոսոխի մարմնոյ իմոյ։

Մարիամ կոյս անարատ զանապական փեսայդ աղաչեա, զի հաշտեսցի ընդ այրի եղեալ հոգիս, եւ միաւորեսցի դարձեալ սիրով ընդ հեռացեալս 'ի նմանէ։

Ամենայն երկիր տուք փառս անձին, որ եկն եւ փրկեաց զմեզ։

Ամենայն հոգիք ձայնիւ ցնծութեամբ բարեբանեսցէք զՏէր։

Զի եցոյց մեզ Տէր զփրկութիւն եւ զկեանս, յայտնեաց տանն Իսրայէլի։

հոգ Իջեր Տէր ողորմութեամբ քո յաշխարհ, եւ ըզմեռեալ բնութիւնս 'ի կեանս վերանորոգեցեր։

Ելեր Տէր առ Հայր փառօք 'ի յերկինս, եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զՀոգիդ։

Բացեր Տէր այսօր զգանձ երկնային, եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բնութեանս։

հան Գալոց է միածինն փառօք եւ փառօք Հօր, եւ զհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ։

Լուսաւոր են ճանապարհք արդարոց, եւ 'ի բիւրաւոր բանակըս հրեշտակաց ամպովք ընթանան։

Ի վերինն երուսաղէմ թռչին ամպովք ընդ առաջ տեառըն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ տեառըն լինին։

ած Ընդ քեզ աստուածածին որ վերօրհնիս 'ի զօրաց հրեշտակաց, ազգ մարդկան կենդանեաց մեծացուցանեմք։

Ընդ քեզ բնակ հրեղէն աստուածութեանն յիմանալի զօրացն երանեալ, ազգ։

Ընդ քեզ մայր Էմմանուէլի, մարգարէին յառաջ գուշակեալ, ազգ։

Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր զեկեղեցի. ըզսա պահեա 'ի խաղաղութեան։ խաղ

Որ շնորհեցեր ողորմութիւն 'ի բնակարանըս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր սմա զանշարժ քո զխաղաղութիւն։

Ի տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո զողորմութիւն։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Յորժամ զտաղանդ պատուիրանին պահանջեսցես 'ի ծառայիցն, ընդ կրկնաշահ քանքարացն արժանաւոր ըզմեզ Քրիստոս ուրախութեամբ քո յերկինս։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Յորժամ կոչես ըզհրաւիրեալսն 'ի սկզբանէ աշխարհի ժառանգել ըզպատրաստեալն, շնորհեա մեզ ընդ նոսին զարքայութիւն քո Քրիստոս։

Որ սքանչելիդ ես 'ի բարձունըս Տէր, եւ ահաւոր 'ի մէջ երկրի անուն քո սուրբ. օրհնեալ ես աստուած հարցըն մերոց։ հրց բձ

Որ զհաւատացեալսն 'ի քեզ պահեալ, եւ ըզչարըն պատժեալ գործակցօք ջրովք սուզմամբ յանդունդս. օրհ։

Որ հաստատեցեր ազգի մարդկան հրով փորձիլ 'ի յերկրորդումըն, պահեա անվնաս ըզքո փրկեալքս. օրհնեալ ես աստ։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Օրհնեցէք. Զթագաւորն յաւի-
տենից քրիստոս, որ եկն եւ փըր-
կեաց զամենայն արարածս. եւ այլն։

Օրհնեցէք. Որ արար գալըս-
տեամբն իւրով զփրկութիւն որդ-
ւոց մարդկան. եւ այլն։

Նջէ. Նոր արարածք պատուեալք
'ի հրեշտակաց զերծեալք 'ի խա-
ւարէ առ լոյսն. եւ այլն։

մեծ Ընկալութիւնդ քո աստուա-
ծածին անարատ. զոր ոչ բոցակի-
զեաց հուր աստուածութեանն,
մեծացուցանեմք։

Որ յարգանդի քում անապակա-
նաբար բնակեցաւ քրիստոս աս-
տուած եւ փրկիչ անձանց մե-
րոց. մեծա։

Անհասանելի տէրունական յայտ-
նութիւնն աշխարհի ծագեցաւ. ան-
մատոյց լուսոյն երկրպագեսցուք։

տղր Թիւնս իմ. Թագաւոր փառաց
քեզ սպասեսցուք պատրաստեալք
արթնութեամբ. ընդառաջել որ
գաս 'ի դատել զերկիր։

Անմեղօք վառեալ լապտերօք հա-
ւատոյ ընդ գալ իմաստուն կու-
սանացն, մտանել 'ի յառագաստ
ընդ երկնաւոր փեսային։

Փութասցուք կանխեալ յառաջ
քան ըղձայն աստուածային բար-
բառոյն. զի մի մնասցուք արտաքս
ըստ շիջման հինգ կուսանացն։

տէր Որ նստիս 'ի քրովբէս աստը-
ւած բանդ. այսօր վասն մեր
խոնարհութեամբ նստար 'ի լե-
րինն ձիթենեաց. օրհնեմք ըզ-
քեզ անդադար երգով։

Որ համագոյ ես խորհրդոցն
հայրենի, աշակերտաց քոց ծա-
նուցեր զխորհուրդ քո գալըս-
տեանն. օրհնեմք ըզքեզ անդա։

Որ ամենայնից ես արարիչ եւ լու-
սեղծիչ կենդանութեան. այսօր
ըղձանկեալ խորհուրդ երրորդու-
թեանդ յայտնեցեր եկեղեցւոյ
սուրբ քո. օրհ։

Ահաւոր ես թագաւոր քրով- Ձկ
բէական ձայնիւ օրհնեալ. 'ի յեր- գձ
կինս 'ի յերկրի եւ յամենայն ժա-
մանակի։

Ահաւոր ես թագաւոր որ նորո-
գես զքո զարարածս. հաստատես
'ի հաւատս 'ի պիտութիւն ճըշ-
մարտութեան։

Լուսաւորեա ըզմեզ քրիստոս 'ի
միւսանգամ քո գալստեանն. յոր-
ժամ ծագես 'ի յերկնից եւ նորո-
գես զքո զարարածս։

Շնորհեա մեզ տէր արթնու- Հմբ
թիւն ընդ իմաստուն կուսանացն. բձ
եւ զհնգեցունց մերոց լապտերըս
պայծառացո։

Երկրպագեմք 'ի քէն տէր զարհու-
րեալք 'ի պատասխանւոյն, զամէնն
ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ։

Յորժամ գաս փառօք հօր դատել
ըզտիեզերս ամենայն, շնորհեա եւ
մեզ տէր կալ 'ի յաջմէ քումմէ։

Բացցի մեզ դուռն ողորմութեան
երկնաւոր փեսային, եւ մտցուք
'ի յառագաստ ընդ իմաստուն կու-
սանսն։

Ժամանեսցուք ընդ առաջ փեսա-
յին, եւ մտցուք 'ի յառագաստ
նորա. զի մի մնասցուք արտաքս
որպէս յիմար կուսանսն։

Պայծառացին լապտերք հոգւոյ
մերոյ, եւ բազմեցուսցես ըզմեզ
ընդ հրաւիրեալսն 'ի կոչումն ար-
քայութեանն երկնից։



# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻՆ

օրհ / գձ

Որ յանթառ փառաց բազմեալ ընդ Հօր անսկըզբնակից բանդ. այսօր բազմիլ ընդ հողեղէնսն յանձն առեր. օրհնեմք զեկեալդ 'ի փրկութիւն աշխարհի։

Որ զանճառ աստուածութեամբդ ծածկեալ զքո ծառայական կերպ, այսօր հաճեցար ծանիլ խուզիլ 'ի մեղաւորաց. օրհ։

Որ կենարար Թաղման քո գուշակ զիւղոյն ծանուցեր զօծումն. այսօր յուդային յայտնեցաւ խորհուրդ արծաթասիրութեան. օրհ։

Որ խորհրդեամբ ընդ Հօր եւ Հոգւոյն արար 'ի պատկեր քո ըզմարդն առաջին. այսօր որդիք մարդկան ժողովեալ խորհին մատնել 'ի մահ զորդին աստուծոյ։

Վերանձգողն Երկնից մշտընջենաւոր Հօր որդին ներգործեալ խմուլս 'ի վեր քան ըմբռնելիս, ծառայի առեալ ըզկերպ անկողոպտելի աստուածութեանն։

Բանիւն զմաքրեցելոցն ջրով զոտըս լուանայ. զի զխոնարհութիւն 'ի նմա տըպաւորեսցէ, երրորդութեանըն գովել օթեւան։

Բաշխէ զմարմին իւր եւ զարիւն, նոյն ինքն ուխտ անուանեալ եւ յիշատակ կամաւոր մահուանն մերձեցելոյս 'ի նա սրբութեամբ։

Արկողդ ըզլոյս որպէս զօթոց, այսօր անճառ խոնարհութեամբ 'ի վերնատունն խորհրդոյ ըզգեստ ծառայի ըսփածանիլ յանձն առեր. օրհնեմք զեկեալդ 'ի կամաւոր չարչարանս

Որում երկրպագեն դասք հրեշտակաց խոնարհեցար 'ի լուանալ զոտըս հողեղէնս, բըժըշկել ախտօք ըզգարշապարս նախահօրն. բըժըշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն։

Որ 'ի խորհրդըս փրկականս եկեղեցւոյ բաշխեցեր աշակերտացն ըզմարմինըդ քո, նորոգելով ըզմահացեալսն 'ի ճաշակմանէ. համօրդս յամ ընկալ ըզմեզ միայն մարդասէր։

Որ անըսկիզբն յէութեանդ ես աստուած, այսօր ըզգեցար ըզգեստ հողեղէն ծառայի, ծածկելով ըզմերկութիւն նախահօրն. օրհնեալ եկեալդ 'ի փրկութիւն ազգի մարդկան։

Որ վերօրհնիս 'ի հրեղէն քերովբէից, այսօր եկիր կամաւ 'ի վերնատունն խորհրդոյ, լուացեր զաշակերտացն յօրինակ վասն մեր. օրհնեալ եկեալդ։

Որ յանթառ փառաց նըստիս ընդ Հօր, այսօր բազմիլ ընդ աշակերտացըն յանձն առեր, բաշխելով ըզմարմին եւ զարիւն քո սուրբ. օրհնեալ եկեալդ։

Ընկեալ 'ի փրկութիւն ազգի մարդկան, 'ի ծառայէ յանձն առ-նու մատնիլ 'ի դատաստան. համբե-րելով վասն ըմպելոյ կեցուցանել:

Մատնեալ պիղատոսի որպէս մա-հապարտ, 'ի յաննայէ և 'ի կայիա-փայ դատապարտեալ. համ:

Կացեալ 'ի յատենի երկրորդ ա-դամ վասն առաջնոյն ադամայ պար-տեացն թողութեան. համբերե-լով վասն:

հոգ Արեգակն արդարութեան քրիստոս ծագեալ յաշխարհ հալա-ծեաց ըզխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծա-գեաց. որ երկրպագի յերկնաւո-րաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն, վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգ-ւով եւ ճշմարտութեամբ:

Որ փոխանակ ծագածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ ներ-քին հօր 'ի բարձանց հոգին ճշ-մարտութեան, մխիթարել զորս յադամայ տրտմեցելոց եւ հրա-ւիրել զնորեալ դասս առաքե-լոցն. վասն որոյ:

Այսօր տրտմական եւ գիշերա-յին լուծան երկունք ծննդեան նախամօրն. քանզի ծնեալսն մա-հու 'ի մահ եւ յապականութիւն, վերստին ծնանի հոգին յորդիս լուսոյ հօրն երկնաւորի. վասն որոյ:

հան Ի ձայն մեծի զուարթնոյն եւ 'ի հնչումն հրաշալի փողոյն, ուր հողացեալ մարմինք մարդկան նո-րոգին, յայնմ աւուր ահեղին յի-շեա տէր եւ ըզմեր ըզննջե-ցեալսն, եւ հանգո ընդ սուրբս քո:

Յորժամ նըշան տէրունեան ճա-ռագայթիւք փայլի, եւ թագա-ւորըդ թագաւորաց փառօք տեսանի. յայնմ աւուր:

Յորժամ ատեան դատաստանին դընի, եւ գրութիւնք հրա-շիցն բանին. յայնմ:

Այսօր գաբրիէլ ցընծութեամբ երգեաց սըրբոյ կուսին աւետիս բերկրեաց ասելով. որ ծնաւ ըզ-փրկիչ անձանց մերոց: ած

Անուանելին երկնի եւ երկրի, 'ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ. աստուած այցելու մարդկան:

Յառաջընթաց փայլմամբն լուսա-տեսիլ աստեղն, մոգուցն հե-տեւելով նշանի 'ի ծնունդ աստուածորդւոյն:

Այսօր ցնծան դասք հրեշտա-կաց ընդ հաւատացեալս քո 'ի յերկրի ով լուսեղէն խորան երկնանմանս եկեղեցի սուրբ. ուրախ լեր վէմ պատուական հօտանի մեր և յոյս: խաչ

Զուարճացիր հարսն անարատ լու-քօղարկեալ վայելչապէս. զարդա-րեալ հանդերձ փառօք եւ էլ ընդ առաջ երկնաւոր փեսային. ուրախ լեր ամուլ բազմածին, ահա փե-սայն գայ առ քեզ:

Աստանօր նորոգեցաւ մեզ աւա-զան մկրտութեան, յարգանդ մօր հոգւոյն յղացեալ ծնանե-լով վերստին զհաւատացեալսն 'ի քրիստոս. ուրախ լեր անմայր յա-ռաջնումն ահա որդին գայ առ քեզ:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Յուդայ սիրոյն աշակերտ փոխա-նակեաց զատելութիւն առ վարդա-

պետին, մատնելով քահանայիցն
ընդ երեսուն արծաթոյ:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Որ զամենայն տնօրինաբար կա-
մաւ յանձն առեր փրկիչ ընդ մե-
ղաւորաց. վասն անճառ խոնար-
հութեանդ քո եւ մեզ ողորմեա:

Հրց գձ Որ խորհրդոյ ես տէր անստը-
ւած անուանի, ըզծածկեալ խոր-
հուրդ չարին անպակասեալ վանեա.
զքեզ օրհնեմք աստուած հայրցն
մերոց:

Որ զնախնիսն աբրահամու զ-
հանդէս խորանոյնս ծանուցեր
աւետեօք որդւոյն պատուեալ. զ-
քեզ օրհ:

Որ շնորհիւս ծածկելոց յայտնի գոլ.
յուդայս արծաթոյ պանհանանելով
մատնէր. զքեզ օրհ:

գ Զտէր օրհնեցէք եւ բարձր
արարէք ընդ յաւիտեան:

Զքննակեալն 'ի վերին զօրացն ծած-
կապէս խորհուրդ, քահանայքն
հօրինեալ վաճառէին զանստուած.
եւ բարձր ա:

Որ վասն մեր համբերեաց բան-
սարկութին, կամաւ վաճառի անստը-
ւած բանն. եւ բարձր ա:

մեծ Աստուածածին երկնային դասուն
ստուածային ձայնիւն աւետարա-
նէր հրեշտակն. ուրախ լեր բեր-
կրեալդ տէր ընդ քեզ:

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր ա-
նսպականաբար բնակիլ հաճեցաւ
'ի քում յորովայնի. ուրախ լեր:

Որ բոցեղէն սրովբէիւք շրջանի-
կեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդ-
կան 'ի գիրկս հողեղինի յայտնեալ.
ուրախ լեր:

Զքէն խորհեցան 'ի չարու- ողբ
թիւն անստուած յաւիտենից. որ
բանիւ զարարածս խորհրդով
հիմնեցուցեր:

Զքեզ որ արարիչդ ես մեծու-
թեան արծաթոյ վաճառեցին. յանձն
առեր զամենայն համբերելով վա-
սըն մեր:

Զքեզ որ թագաւորդ թագա-
ւորաց 'ի ծառայէ դատապարտեալ.
զի ըզմեզ փրկեսցես 'ի յանիծիցն
ադամայ:

Այսօր եկեալ կամաւ փրկիչն տէր
առ 'ի մատնիլ յանօրէն ժողովր-
դեն, վասն փրկութեան հեթա-
նոսաց:

Այսօր մատնի բանն 'ի բանաւոր
հօտէ. եւ յառաջնոց դատապարտի
յանօրինաց ժողովրդեն, վասն
փրկու:

Այսօր հողն ըզտէրն դատապար-
տէ, եւ արծաթոյ վաճառի արա-
րիչն արարածոց, վասն փըր:

Նոր սքանչելիք այսօր տեսա- Ձնկ
նեմք յաշխարհի 'ի մէջ հողեղի- Հմք
նաց. արարածք արարչին սպանու-
թեան խորհին զխորհուրդ:

Որ բանիւն իւրով զերկինս եւ
զերկիրըս հաստատեաց յոչընչէ գո-
յացուցեալ, վաճառի այսօր դիւ-
րագին ընդ երեսուն արծաթոյ:

Ով յուդաս անտանելի երկնա-
ւոր վարդապետին սպանութեան
խորհի զխորհուրդ. մատնելով անօ-
րինաց զի խաչեսցի 'ի մէջ երկրի:





# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ՀԻՆԳՇԱԲԱԹԻՆ

օր / գ

ՎԵՐԱՁԳՈՂՆ երկնից մըշտընջենաւոր հօր որդին ներգործեալ խոհս 'ի վեր քան ըզհրաշս, ծածուկն ամենայն ըզգակերպ անկողոպտելի աստուածութեամբն։

Բաներն զմաքրեցելոցն ջրով զոտս լուանայ. զի զխոնարհութիւն 'ի նոսա տպաւորեսցէ, երրորդութեանն գով օրհնեալն։

Բաշխէ զմարմինն իւր եւ զարիւն, նոր ուխտ անուանեալ եւ յիշատակ կամաւոր մահուանն, մերձեցելոցս 'ի նա սրբութեամբ։

Աղբիւր լուսոյ եւ ճառագայթ անշիջանելի լուսոյ. որ լուանալ յանձն առեր զոտս աշակերտացն. մաքրեա 'ի մէնջ ըզմեղ խաւարին խորհրդոյ եւ լուսաւորեա զմեզ։

Որ մարմնով եւ արեամբ քո ցուցեր ըզթողութիւն մեղաց, որ միշտ պատարագիս 'ի մեզ անծախապէս. մաքրեա 'ի։

Որ քաւիչ զայս նոր ուխտ ցուցեր յետ ամենայն քո մահացելոցս 'ի ճաշակմանէ նախահօրն. մաքրեա 'ի մէնջ ըզ։

Որ եդ 'ի յերկինս եւ 'ի վերայ երկրի, այսօր յանձն առեր լուանալ զոտս աշակերտացն. եւ զնոս լուա քրիստոս 'ի մեղաց խնոց։

Որ բարերարն յիմանալի զուարթնոցն, հանձեցար մարմնով պատարագիլ. արա եւ զնոս արժանի աստուածային շնորհիդ։

Որոյ անթիւ քերովբէ 'ի վերնատունն բազմեցար. կենարար բաժակաւն ըզմեզ փրկեցեր. փրկեա եւ զնոս յաւիտենից 'ի հրոյն։

Քրիստոս աստուած որ վասն մեր խոնարհեցար 'ի կամաւոր չարչարանս. լուացեր զոտս աշակերտացն այսօր 'ի սուրբ վերնատունն. ազատեա զմեզ փրկիչ ողորմեա։

Որ կատարեցեր ըզզատիկն խորհրդոյ, եւ տուեր յանմահական բաժակէն, սրբոց քոյ առաքելոցն այսօր 'ի սուրբ վերնատունն. ազատ։

Մաքրեա ըզմիտս եւ ըզխորհուրդս, զի եւ մեք հաղորդեսցուք սրբութեամբ, ընդ սրբոց քոյ առաքելոցն այսօր 'ի սուրբ վերնատունն. ազատեա զմեզ փրկ։

Որ վասն մեր յերկրի երեւեալ զամենայնսն կատարեցեր ըստ օրինացն, այսօր կատարումն ըստուերականն օրինացն. որդի աստուծոյ ողորմեա։

Մարդ ճշմարիտ եւ գառն անարատ որ դատապարտեցեր ըզմեղս 'ի մարմնի, այսօր խոնարհեցար 'ի լուանալ զոտս աշակերտացն. որդի աստուծոյ ող։

Բան հօր և քահանայապետ ճշմարիտ որ զաշխարհականացս ըզմարմին եւ զարիւնդ քո բաշխեցեր յառաքելոցն, այսօր հա-

զօրդին հողեղէնք աստուածային խորհրդոյդ. որդի աստուծոյ ողորմեա։

✠ Յորժամ սպասեալ սերովբէքն ոչ իշխէին նայել, այսօր ՚ի ծառայի կերպարանս եղեալ նախայաւիտեան բանն. օրհնեցէք ըզնա հոգեւոր երգով։

Հոգ Որ համապատիւ ես հօր եւ որդւոյ, անճառաբար բղխումն ՚ի միշտ էէն. այսօր բղխեցեր ջուր կենդանի յերուսաղէմ. հոգի աստուծոյ ողորմեա։

Որ արարչակից ես հօր եւ որդւոյ, որով կենդանածնեալք ՚ի ջուրս արարածք. այսօր որդիս աստուծոյ ծնանիս ՚ի ջուրց. հոգի աս։

Որ փառակից ես հօր եւ որդւոյ, եւ քննես ըզխորս աստուծոյ. այսօր խորտակես իմաստից զվիշապս աշխարհի ապականէր. հոգի աստուծոյ ողորմեա։

Հան Որ երկայնամիտդ ես առ քաղցր եւ անոխակալ հանդէպ զհոգիս քոց ծառայից. զի մի դարձցի սնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին։

Զյիշատակ հրաժարելոյն ՚ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զուխտս մեր ընկալ որպէս զաբելին զնուէրն եւ զաբրահամուն. զի մի։

Ի խորան քում սիրելեաց հանգուցես ըզծառայս քո, եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբս քո. զի մի դարձցի սնանկ։

ած Որ յէութեանդ ես ընդ հօր եւ սուրբ հոգւոյն անըսկիզբն որդի, խոնարհեցար ՚ի հայրական ծոցոյ, մարդ եղեալ մարմնացար ՚ի կուսէն, բանալով զյաղթումըն մա-

հու յանցանաց նախահօրն. քեզ երգեմք ընդ զօրս հրեշտակացն ՚ի մէջ հոլուացն, օրհնեալ ես քրիստոս նախայաւիտեան բանդ։

Այսօր ծընար որ ՚ի հօրէ յառաջ քան զյաւիտեանս որդի, ճառագայթ փառաց եւ ծագումն յանմեկնելի լուսոյն. աստուածաշունչ տեղեամբքն յայրին իջեալն եւ ՚ի մսուր անբանից բազմեալ. քեզ երգեմք ընդ զօրս։

Թագաւոր փառաց քրիստոս եւ արարիչ բոլորից, աստուած հզօր իշխան հայր հանդերձեալ լուսոյն, մանուկ երեւեալ այսօր անփոփոխելի ՚ի յէութեան. քեզ երգեմք ընդ զօրս։

Այսօր ուրախացեալ ցնծան երկնից բազմութիւնքն ՚ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից ՚ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. փառք գալըստեան քո տէր։ խաչ

Այսօր սուրբ լուսոյ հովանի եղեւ մեզ ՚ի բարձանց. քանզի թագաւորն երկնաւոր եկաւորի ՚ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծաւալեալ տօնեն ընդ մարդկան. փառք գալըս։

Այսօր քահանայապետ ճշմարիտ աստուածային օրհնօքըն պատուեալ կանգնէ զքառանկիւն սեղան խաչին, արժանապէս պատարագեալ բաշխէ զմարմին եւ զարիւնըն տեառն. մաքրապէս մերձեցարուք փրկեալքըս նորա ժողովուրդք. եւ հայցեցէք ՚ի քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ զըստուերակերպն այսօր ճըշմարտապէս կատարեցեր, լըւանալով զոտս աշակերտացն 'ի պատրանաց թըշնամւոյն. օրհնեցէք ըզնա հոգեւոր երգով։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Այսօր վերնատան նորոգեցաք 'ի յանեղծից նախահօրն, ճաշակելով ըզմարմին եւ զարիւն որդւոյն աստուծոյ. օրհնեցէք ըզնա հոգեւոր երգով։

հրց բձ Լոյսդ 'ի հայրական ծոցոյ ծագեալ հալածելով զխաւար մեղաց. կենարարդ յայտնեցեր այսօր ըզխորհուրդ ընթրեաց քո աշակերտացն. օրհնեալ եկեալդ 'ի փրկութիւն մեր աստուած հարցն մերոց։

Զոր օրհնեն դասք լուսեղէնք զոտս տաժանեալս լըւացեր, զանիծիցն մերկացեալ 'ի մէնջ ծածկոյթ, ըզգեստ ծառայի սփածար. օրհնեալ եկեալդ։

Անպատմականութեամբ աղբիւր ըզկենդանարարդ բաշխեցեր զմարմինդ քո. նորոգելով ըզմահացեալսն յանցանօք 'ի պատրանաց թըշնամւոյն. օրհնեալ եկեալդ 'ի փրկութիւն մեզ, ան։

գ Եկէք. ճառագայթ փառաց հօր եւ պատկեր բարերարութեան. որ ըզգեցաւն այսօր ըզգեստ ծառայական կերպի. ըզնա ամենայն ազինք օրհնեցէք հոգեւոր երգով։

Որ անճառ խոնարհութեամբ 'ի մաքրութիւն ոտից աշակերտացն, ըզմարդկային ազգի զընացս ուղղեաց 'ի յերկինս. ըզնա ամե։

Որ բաշխմամբ կենդանարար խորհրդոյ անապական ճաշակմամբն հաւատացելոց ըզմեզ յերկնից արքայութիւնն. ըզնա ամե։

Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն. աստուած աստուծոյ եւ տէր տերանց փրկիչ գոլով։ ձեձ

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ 'ի սուրբ կուսէն. եւ անարատ ծընանել յորովայնէ անապական, բառնալով ըզմեր նեղութիւնս. աստուած։

Տնօրէնք բարի յերուսաղէմ երեւեցան հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տէրն եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. աստուած աստուծոյ։

Արկեալ ըզլոյս որպէս զօթոց, այսօր անճառ խոնարհութեամբ 'ի վերնատունն խորհրդոյ ըզգեստ ծառայի ըսփածանել յանձն առեր. օրհնեմք զեկեալդ 'ի կամաւոր չարչարանս ողբ գձ

Որում երկրպագեն դասք հրեշտակաց խոնարհեցար 'ի լըւանալ զոտս հողեղէնս, բըժշկել այսօր ըզգարշապարս նախահօրն. բըժշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն։

Որ 'ի խորհուրդս փրկականս եկեղեցւոյ բաշխեցեր աշակերտացն ըզմարմինդ քո, նորոգելով ըզմահացեալսն 'ի ճաշակմանէ. հաղորդս այսմ ընկալ ըզմեզ միայն մարդասէր։

Որ անըսկիզբն յէութեանդ ես աստուած, այսօր ըզգեցար ըզգեստ հողեղէն ծառայի, ծածկելով ըզ- տէր

Ձկ
ակ

մերկութեան նախահօրն. օրհնեալ եկեալդ 'ի փրկութիւն ազգի մարդկան:

Որ վերօրհնիս 'ի հրեղէն քերովբէից, այսօր եկիր կամաւ 'ի վերնատունն խորհրդոյ, լուացեր զաշակերտացն յօրինակ վասն մեր. օրհնեալ եկեալդ:

Որ յաթոռ փառաց նստիս ընդ Հօր, այսօր բազմիլ ընդ աշակերտացն յանձն առեր, բաշխելով զմարմին եւ զարիւն քո սուրբ. օրհնեալ եկեալդ:

Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան 'ի թողութիւն մեղաց մերոց:

Այսօր ոտից մեր լուանայր զոտս աշակերտացն եւ պատուիրէր զայս առնել:

Մի ոք 'ի ձէնջ եղբարք մատնելոց է զիս 'ի մահ եւ որոշի յաշակերտացդ:

Զայն լուեալ Պետրոսի ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ով իցէ:

Բանն զոր ասաց Յիսուս տրտմեցոյց զսիրտ զաշակերտսն եւ խռովեցան ամենեքեան:





# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒՆ

Հետեւակ Շարական:

օրհ
գձ

ԱՅՍՕՐ 'ի կատարումն աստուածայինն ընթրեաց նոր ուխտի ճշմարտութեան քո, 'ի վերնատունն խորհրդոյ տարամերժեալ Յուդաս 'ի հօտէն փրկչի. ուստի եւ դու զառն աստուածոյ զինեալ կամաւ 'ի մահ խաչի առ 'ի բառնալ զմեղս աշխարհի. վասն որոյ խնայեա 'ի մեզ Քրիստոս կամաւոր քո չարչարանօք:

Այսօր որ 'ի հրեղէն զօրաց երկնից միշտ փառաբանեալ երկրպագիս Բանդ, աղօթէիր առ Հայր մարմնով ընկալեալ ընդ Հօր եզքո վասն իմ զպատղամատանս. ուստի կամաւ կրելով զերկիւղ 'ի հրեշտակաց զօրանայիր զօրացուցիչդ երկնաւորաց եւ երկրաւորաց. վասն որոյ:

Այսօր յառաջ նշանակեալ հրամանն քո կատարիւր յաշակերտացդ դառն. քանզի զհովիւդ քաջ հարեալ ցրուեցան հօտն ըստ մարգարէին. որ եւ կապեցար անկապելիդ 'ի յԱննայէ եւ 'ի Կայի-

ափայ դատապարտեալ. 'ի ծառայէ ապտակեցար եւ նախատանաց թուք կերպարանիդ հօր ընկալար. փառք որոյ։

Այսօր ըղձմբն հաւատոյ շարժեալ փորձողին խաբէութեան մտօք, առ 'ի քէն թողացուցեալ ըղմարդկային տկարութեանս յանդիմանելով, եւ առ յոյս դարձի մեղաւորաց. որ դառնացեալս արտասուելովք ընկալար 'ի քէն երբեք հայցմամբ սորոյն զերից ուրացութեանցն ըղքըժըշկութիւն. ընդ նմին ընժըշկեա ըզմեզ քրիստոս եւ շնորհեա մեզ սրտամտու ապաշխարութեան։

Այսօր զոր յերկնայինն լուսեղինացն անհիւ պատուեալ բանդ աստուած, նշանակեցեալ դասք եբրայեցւոցն, զիմանալի լոյսդ 'ի գիշերին ջահիւք եւ սուսերօք եկեալ ըմբռնել զանըմբռնելիդ. փառք որոյ երկրպագեմք անճառելի քո խոնարհութեանդ։

Այսօր զոր սերովբէքն ծածկեին ըզդէմս յահէ փառաց աստուածութեանդ. իսկ կորուսեալն որդին յուդաս 'ի համբոյր մերձեալ նենգութեամբ նշանակ եւ առիթ մահու անօրինին. փառք որոյ երկրպագեմք անճառ։

Այսօր ընդ գերանդոյն տնօրէնութիւնդ քո որդի աստուծոյ հոյլք անմարմնոցն հրայրուն սեռիցն պակուցեալ զարմանային, տեսանելով զանտեսանելիդ մատնեալ կամաւ 'ի ձեռըս մեղաւորաց. փառք որոյ երկրպագեմք անճառ։

Այսօր բարեկամք եւ մերձաւորքըք քո հեռի եղեն 'ի քէն քրիստոս. ծառայացն եւ եղբարք քո, եւ ցուլք գէրք պաշարեցին որք 'ի դպրաց եւ 'ի փարիսեցւոց, եւ շուրջ եղեն շունք բազումք զինուորք պիղատոսի եւ հերովդէի. փառք որոյ երկրպագեմք անճառելի քո խոնարհութեանդ։

Իսկ զկնի Հետեւակին՝ Օրհնութիւն:

Արծաթսիրութեամբն մոլեալ յուդա, զՏէր ընդմէծ ըզվարդապետն ընդ երեսուն արծաթոյ հրէիցն մատնէր։ բձ

Ը՞նդ որում ես համբուրեցից ասէ ըզնա կալարուք. ով համբոյր նենգութեան, նշան եւ առիթ մահու։

Մերկացաւ յինքենէ զպատուածայրին սուրբ հոգին. եւ ըզգեցաւ ըզսատանայ, որպէս պճանգերձ արկաւ զիւրեւ։

Ի գիշերին յորում մատնէր փրկիչն մեր 'ի մահ խաչի, եւ 'ի լեառն ձիթենեաց, աղօթելով կայր առէր. հայր անցո յինէն զբաժակս։

Որ նստիս 'ի քրովբէս աստուած բանդ. այսօր վասն մեր խոնարհութեամբ նստար 'ի լերինն ձիթենեաց. օրհնեմք ըզքեզ անդադար երգով։

Որ համագոյդ ես խորհրդոցդ հայրենի, աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալըստեանն. օրհ

Որ ամենայնից ես արարիչ եւ ըստեղծիչ կենդանութեան. այսօր ըղձանկեալ խորհուրդ երրորդութեանդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբոյ քո. օրհնեմք ըզքեզ անդադար երգով։

Ընդ քեզ օրհնեմք որ բաշխողդ ես բարութեանց, եւ հայցեմք որպէս 'ի մարդասիրէ, ընդ մօր քո ընտրելոցն զնմանալի աշխարհն:

Զի դու ես տէր յորմէ հայցէր մայրըն հաւատով հանդերձ որդւովք սրբեցելովք ընդ աջմէ քո գփառս եւ յահեկէ. ընդ որս եւ մեք աղաչեմք զի դասեսցես ընդ սուրբըս քո:

Այլ դու բարձրեալդ փրկիչ որ վասըն մեր խոնարհեցար, արժանի արա ըզմեզ լինել զուարթ պատուիրանի կենաց քոց տէր. որով կացցուք յաջմէ քումմէ 'ի հանդերձեալ քում գալըստեանն:

Հոգ. Սարսափելի հողմոյ նըման ահեղագոչ սաստիկ հընչմամբ, երեւեցար 'ի վերնատանն հոգիդ դասուն երկոտասան. որք առ 'ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. մաքրեա 'ի մէնջ ըզմեզ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց:

Էկիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար, ընդ արդարութեան եւ ընդ մեղաց եւ ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաք:

Սէրն 'ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տընտես 'ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա 'ի մէնջ ըզմեզ մե:

Հան Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից, մարդասիրութեամբըդ քո խընայեա յանձինս մեր. ստեղծիչ կենդանեաց եւ հանդուցիչ ննջեցելոց:

Ի խաչին բեւեռեցար զմահու լուծեր զիշխանութիւն. յաւիտենից ըզննջեցեալսըն վերածեր յանմահ 'ի կեանս. ստեղծիչ կեն:

Արժանաւորաց քոց աղօթիւք յիշեա ըզմեր ըզննջեցեալսն, յորժամ գայցես անճառ փառօք հատուցանել մարդկան ըստ գործս. եւ մեր ննջեցելոցն շնորհեա դասիլ ընդ սուրբըս քո:

Ընդ քեզ կոյս եւ մայր եւ բնակարան աստուածային ներմարդութեանն, գոհաբանեմք եւ վերօրհնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան. վասն որոյ ըզքեզ աստուածածին եւ կոյս բարեբանեմք ըզմայր եւ զաղախին փրկչին մերոյ: ած

Ծընունդըն հօր եւ հին աւուրց անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ եւ 'ի հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ:

Ծնեալն 'ի քէն 'ի խաչ ելեալ եւ 'ի յաթոռ փառաց ընդ հօր. անարգեալ 'ի մարդկանէ փառաւորութեամբ էութեամբ երկըրպագեալ. վասն որոյ:

Ընդ քեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք. դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց, գոհաբանեն եւ վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր եւ զա:

Ապաւինեցաք 'ի խաչ քո արարիչ յաւիտենից, որ ետուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թըշնամւոյն. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինս մեր: խաղ

Բարձրեալ թագաւոր որ վասըն մեր ելեր 'ի խաչ, եւ բարձեր սո-

վան զյանցանս նախաստեղծին ադամայ. ողա:

Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեալ, զոր տեսեալ այսոյն պղծոյ կործանեցաւ անկանգնելի. ողա:

Դողացաւ Թշնամին ընդ յայտնիլ սրբոյ խաչին, եւ 'ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. ողա:

Երկինք ցնծային եւ երկիր ուրախանայր, քանզի փրկիչ ցուցաւ սուրբ խաչն եւ լուսատու տիեզերաց. ողա:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Իսկ անօրէն աշակերտին Թողեալ ըզգութ սիրոյ նորա, եւ փութայր առ քահանայսն. ասէր ինձ զինչ կամիք տալ, զի մատնեցից ըզվարդապետն:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Ժողովեալ հրէիցն կըշռեցին արծաթ բազում. տուեալ տարան առ պիղատոս, ասեն 'ի խաչ հան 'ի խաչ, զի հայհոյիչ է օրինաց:

հրց գձ Իջեր յերկնից անըսկիզբն որդի. 'ի հողեղէն 'ի բնութենէ մարդկան զչարչարանս յանձն առեր. օրհնեմք ըզքեզ որ էիր յառաջ քան զամենայն յաւիտեանս:

Որ ասացեր բանիւ լինել ամենայն երկրի, 'ի յերկրի յատենի կացեալ տեսանէին արարածք. օրհ:

Յորմէ դողան զօրութիւնք երկնից, այսօր ենկեր կամաւ 'ի խաչ գեղարդեամբըն խոցեցար. օրհնեմք ըզքեզ որ:

գ Ընտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան:

Եւ զինուորըն գեղարդեամբըն յարձակեալ, խոցեաց զկող կենարարին. բարձր:

Ուստի ամբիծ կենդանարար բըղխեալ, լուսոյ զտիեզերս 'ի մեղաց. բարձր արարէք:

Այս լուսոյ մայր, եւ կենարար բանին բնակարան. քեզ երանիցեն ազգ եւ ազինք ամենայն: մեծ

Ստեղծողին մայր, եւ հրճուութեան կերպի նորոգողին. քեզ:

Այս ծնդեցաւ 'ի քէն նըստելոց 'ի խաւարի. քեզ:

Ենկեալ 'ի փրկութիւն ազգի մարդկան, 'ի ծառայէ յանձն առնու մատնիլ 'ի դատաստան. համբերելով վասն ըզմեզ կեցուցանել: ողբ

Մատնեալ պիղատոսի որպէս մահապարտ, 'ի յաննայէ և 'ի կայիափայ դատապարտեալ. համբ:

Կացեալ 'ի յատենի երկրորդ ադամ վասն առաջինն ադամայ պարտեացըն Թողութեան. համբերելով վասն:

Ով ըսքանչելի և տեսիլ ահաւոր, զարարիչն երկնի եւ երկրի այսօր տեսաք 'ի խաչի: տէր

Տեսեալ ըզտէրն 'ի խաչին խաւարեցաւ արեգակն. եւ վարագոյր տաճարին ցելոյր վերուստ մինչ 'ի վայր:

Անարգաբար խաչեցաւ տէրն 'ի մէջ 'ի յանօրինաց. զի լցցի գիրն որ ասէ, Թէ ընդ անօրէնս համարեցաւ:

Որ Թագաւորդ ես Թագաւորաց քրիստոս, 'ի ծառայէ դատապարտեալ համբերելով վասն մեր. երկայնամիտ տէր քեզ փառք: Թկ բձ

Որ պատուական խաչիւդ քո քրիստոս եւ սուրբ արեամբդ քո

հեղմամբ կեցուցանել զմեզ կա-
մեցար. Երկայնամիտ։

Որ մարդասիրապէս վասն ամենե-
ցուն ամենայնի համբերեցեր, եւ
'ի մահու զմահ կոխեցեր. Երկայ-
նամիտ տէր քեզ փառք։

հմբ գկ առն

Եկայք համատօնեալք եր-
կրպագեսցուք սուրբ երրորդու-
թեանն. լոյսն որ ընդ հօր է յէ-
ութեան 'ի քահանայից դատապար-
տեալ եկեալ 'ի խաչ ելանել ա-
նըմահ Թագաւորն։

Զոր երկինք ոչ բաւէին տանել,
ըզփայտ պատուհասի ուսով
բարձեալ եւ եկեալ 'ի տեղի կա-
ռափըման 'ի խաչ ելանել անդ։

Հիացեալ պետութեանց երկնից
ընդ Թաղումըն տեառն 'ի նոր գե-
րեզմանի. քանզի որ անմահն
է յէութեան վասն մարդածոց
փրկութեան ըզմահ ճաշա-
կեաց անդ։



Երգ տեառն Ներսիսի Հայոց կաթուղիկոսի,
ասացեալ յաղագս մեծի ուրբաթու գիշերին
աւետարանացն:

գկ

Այսօր անճառ լուսոյն ծագումն
'ի փրկութեան մեր կատարումըն,
խոնարհի 'ի վերնատունն 'ի ստուե-
րական տօնից լըրումն. Նախ քան
զընթրիսըն խորհրդոյ սփածա-
ղենջակ արկողն լուսոյ, եւ ջուր
առեալ ծառայաբար զոտըս լուա-
նայր զաշակերտացն։

Բանին հօր փառաց լուսոյ պետ-
րոս մերձիլ յոտս ոչ ներէր, այնմ
ձեռաց որոյ են գործք երկնից եր-
կինք եւ երկրաւորք. որով կուրաց
աչըք բացան խուլք եւ համերք
արձակեցան. որ վերածեաց զինքն
'ի ծովին, սաստեաց ալեացն եւ լը-
ռեցին։

Գըլխոյն ընտրեալ հօտին փոքու,
սաստէր զխորհուրդն ոչ գիտելոյ.
որով դառնայր եւ հնազանդէր,
զոտս եւ ըզգլուխս մաքրել մաղ-
թէր. գըլխոյս ասէ չէ ինչ պիտոյ
լուացումըն ջրոյ զի լուացեալ է.
ոտիցըդ պէտք են մաքրութեան
յօդիլ 'ի գլուխըս սըրբութեամբ։

Դասուց իւրոց աշակերտաց զոր
նախ բանիւ վարդապետեաց, այ-
սօր գործով ըզծայրագոյնն եցոյց
յինքեան զխոնարհութիւն. սպա-
սաւորեալ հողեղինաց այն որ ան-
տեսն է հրեղինաց. տարեալ պաշ-
տօն իւր ծառայիցն այն որ պաշտին
'ի սրովբէից։

Եթէ տէրս ասէ էից եւ վարդա-
պետըս բոլորից, զաշակերտացդ եւ
զծառայից զոտըս լուացի 'ի հնոյ
աղտից. միմեանց եւ դուք համա-
բնութեամբ ցուցէք ըզնոյն խոնար-
հութիւն, բարձրացելոյն 'ի կործա-
նումն եւ անկելոյ բնութեանդ
կանգնումն։

Զոր մաքրեցեր յաւազանին մա-
քուր ձեռօք զոտըս նոցին, եւ
ուսուցեր խոնարհութեամբ յաղ-
թող լինել չար հըպարտին. եւ
զիմ լուա զախտըն մեղաց աղաչա-
նօք սըրբոյ գընդին. եւ ըզգընացս
ուղղեա զոտին խոնարհութեամբ
ելիւք յերկինս։

Օրհն: Աւետարան ըստ Յովհաննու:
Ամէն ամէն ասեմ ձեզ։



Ի՞նչ զօրէ՜ նաւըն Մովսէսի զոր խօսեցաւ ՚ի սինայի. եկեր ըզգառն օրինակին եւ ըզբաղարջն ընդ եղեգին. ըզհինն ՚ի նորըս փոխելով զըստուերն ՚ի լոյս ճըշմարտելով. փոխան գառինն ինքըն գոլով գառն աստուծոյ նուիրելով։

Ը՛նդ բաղարջի՜ն հաց անխմոր ետ ըզմարմինն իւր զերկնաւոր, ընկուածինն անսերմնաւոր զանապականն եւ զհոգեւոր. ընդ ոչխարին արեանն ուխտին ետ մեզ զարիւն իւր ուխտ կըրկին, եւ եղեգան դառնագունին փոխան ըզլոյս աստուածային։

Թագաւորն արարածոց զհացըն կենաց ետ քաղցելոց, եւ ըզբաժակն ուրախարար ոչ յագմանց տըրտմեցելոց. այս նոր ուխտ է իմոյ արեան, փոխան հընոյ ուխտին արեանց. զոր յիշատակ իմ առնիցէք մինչեւ եկից ես միւսանգամ։

Ժողովեալքս ՚ի քեն հայցեմք ընդ ժողովեալ մետասանին, որ զկենաւորըդ քո մարմին բաշխեալ ետուր ընդ բաժակին. շնորհեա եւ մեզ տէր ընդ նոսին հաղորդ լինել քում սեղանին. կենաց հացիդ յոր փափագիմք եւ ըմպելւոյդ ում ծարաւիմք։

Ի՞ յընթրելոյ աշակերտացն յուդաս մեկնեալ ՚ի սուրբ դասանցն. զբարձող մեղաց զգառն աստուծոյ մատնէր ՚ի մահ ընդ արծաթոյ. ՚ի յընթրիսըն հոգեւոր մերձի ժըպիրհն եւ նենգաւորն, ուտելով ընդ վարդապետըն յաճախէ զխաբէութիւն։

Լոյսըն խօսէր աղերսալի խաւարելոյն վասըն դարձի. մի ոմն ՚ի ձէնջ առէ եղբարք զիս մատնելոց է առ ՚ի մահ. պետրոս լըւեալ զայն զարհուրէր եւ ակնարկէր առ յովհաննէս, հարցանել թէ ով իցէ դաւաճանող վարդապետին։

Որթի: Աւետարան ըստ Ղուկասու:
Մերձեցաւ տօն բաղար։

Խնամով սիրոյն յիւր սիրելեացն ըզստորոտութիւնն փարատեաց, թագեաւ պատուոյ յուդայի նըշաւակեալ զգոլըն մատնիչ. զոր մուեալ եւ մերկացաւ յաստուածային հոգւոյն շնորհաց. մատնեցաւ նախանձարին ընդ մատնութեան վարդապետին։

Ծայրագոյն լուսոյն զերկեալ խաւարասէրն արտաքս ելեալ. տէրըն յայտնէր լոյս եղելոցն ըզգայթակղին ՚ի գիշերի. պետրոս խօսէր խրախուսելի եւ կըշտամբելիւր հաւախօսի. զիւրն յաշխարհէ զփոխին ասէր եւ ըզգալուստ հոգւոյն պատմէր։

Կեդրոնեան յայնկոյս ձորոյ ՚ի վերնատունն եւ խորհըրդոյ, եմուտ պարտէզ ընդ պարտիզի եմոյծ զադամ յադին դրախտին. մուծցես եւ զմեզ տէր ընդ նըմին ուստի հաներ նախ զառաջինն. զի ժառանգել ըզհայրենին արժանասցուք մեք վերըստին։

Հոգայր ըզկիրցըն տըրտմաբար երիւքն եղեալ առանձնաբար. փորձել զաշխարհս հոգիս յօժար բայց է բնութիւն մարմնոյս տըկար. ոչ ոմն ուժեղ եւ զօրաւոր եւ ոմն

անղօր վըտանգաւոր . այլ մի եւ նոյն գոլ միաւոր կըրէր ըզկիրսըն կամաւոր ։

Ձայնիւ մաղթէր աղօթական վասն իմ առ Հայր իւր էական , ծունըր դընէր խոնարհական որում կըրկ-նի ծունր ամենայն . Եթէ փըրկիլ մարդկան հնար է առանց մահու իմ որ գրեալ է , բաժակ մահուս յինէն անցցէ ոչ իմ կամաւ այլ քոյդ եղցէ ։

Դօղեալ յերկիւղ քըրտանց հոս-ման ոլոռնաձեւ կայլակ վիժման , 'ի զօրանալ հրեշտակի մերձեալ զօ-րինական գիրըն լըցեալ . զի կա-տարեալ էառ զընութիւն աստ-ուածըն բան ըզմարդկութեան . պարտ էր զերկիւղ եւ զտըրտմու-թիւն յիւրումըն կրել տնօրէնու-թիւն ։

Օրհ : Աւետարան ըստ Մարկոսի :
Եւ ասէ ցնոսա յիսուս ։

---

Ծառագայթ փառաց էին որ ըստ բնութեանըս մարդկային , տագնապեցար 'ի գիշերին աղօթե-ցեր առ Հայր յերկինս . ծածկեալ 'ի մեզ զլոյս երկնային եւ փարա-տեալ զերկիւղ չարին . մասունք հոգւոց մեր եւ մարմին յերկիւղ քո սուրբ բեւեռեսցին ։

Մերձեալ յուդաս որ մատնելոց հանդերձ դասուն փարիսեցւոց , անկան նըման ստորանկելոցն որ յաւիտեան չեն կանգնելոց . յու-դաս նենգաւ համբուրելով անխիթ մահու նըշան տալով , փոխան սիրոյ զնա մատնելով չար ընդ բարւոյ վըճարելով ։

Յայնժամ առ գութ սիրոյն պետ-րոս ըզծառային անուն մաղքոս , եհատ սուսերբ զականջն աջոյ որ ոչ լըւաւ տեառըն իւրոյ , իսկ տէ-րըն մեր արագապէս յունկըն մեր-ձեալ բըժըշկապէս , առողջացոյց աստուածապէս զոր ոչ տեսին կոյ-րացն հանդէս ։

Նոր հօտին փոքու ցրուեալ քան-զի զհովիւըն քաջ հարեալ . պետրոս միայն ընդհետ երթեալ 'ի յաղջկանէ վիժմին շարժեալ . նըշանակեալ հա-ւըն խօսէր առ 'ի պետրոս տէրն ակնարկէր . զբանըն յիշէր դառն արտասուէր 'ի գլորմանէն դար-ձեալ կանգնէր ։

Շնորհեալ վիմին եկեղեցւոյ զոր պահեցեր 'ի հոսելոյ , եւ կանգնե-ցեր 'ի գլորելոյ վասըն սըրտիւն արտասուելոյ . կանգնեա եւ զիս տէր ընդ նըմին 'ի գլորմանէ սայ-թաքողին , տալով աչացս յորդ ար-տասուս եւ ջուր նըման ծովու գըլխոյս ։

Ո՛վ կամաւ զանկապելին կապեալ ըզձեռս արձակողին , 'ի յապարան-սըն տանէին կայիափայ եւ ան-նային . ծառայն զերեսն այն ապ-տակէր յորմէ սրովբէն թեւաքօ-ղէր , թուք արձակեալ պիղծ բե-րանովըն յայն որ կուրին լոյս ծա-գեաց թքովն ։

Օրհ : Աւետարան ըստ Մատթէոսի :
Յայնժամ ասէ ցնոսա ։

---

Չօր կապանաց մարդկան լուծիչ որ կապեցար ընդ կապելոյն, զիս արձակեա յինքնակամապէս մեղաց կապից դժոխայնոյն. որ ընդ մեզօք պարտաւորին կացեր անմեղդ 'ի յատենին. յորժամ փառօք գաս հայրենի մի դատեսցես զիս ընդ նոսին։

Պատկառանօք հինն ադամայ որ ձաղեցար փառըն նորա, ջնջեա զամօթ մեղաց լըրբին որով զերեսս իմ ծածկեցին. որ ներեցեր չար ծառային ածել ձեռօք քեզ ապտակին. հար ուժգնակի զդէմս չարին որպէս եւ զիս եհար ուժգին։

Ջահըն լուսոյ յաւանօտին 'ի յուրբաթուն հըրոյ զատկին, կայր առաջի դատաւորին ծառայն նըռաէր 'ի յատենին. 'ի հարցանել պիղատոսի տէրն ոչ տանէր պատասխանի. զի կանխաւաց զիրըն լեցցի եղէ եւ մարդ որ ոչ խօսի։

Ռամկական դասք զինուորացն արկին հանդերձ նախատանաց, այնմ որոյ զգեստն է լոյս փառաց իբրեւ զօթոց զիրեանք արկած. 'ի ծունր իջեալ կատակէին զպըսակն եղեգամբ հարկանէին. պըսակ 'ի փշոյ բոլորէին ըզփուշ մեղացըն բարձողին։

Սակայն քերովբէից բառնայր ինքեամբ ըզփայտ խաչին, մինչ 'ի տեղի գողգոթային յորում եդեալ մարդն առաջին. Ետուն ըմպել զինի զմըռսեալ եւ կերակուր լեղեաւ խառնեալ, որով զպըտուղն դառըն ճաշակ փոխեաց մեզ քաղցր եւ ախորժակ։

Վերնականքըն զարհուրեալ տեսին ըզտէրըն մերկացեալ, եւ ըզհանդերձսըն բաժանեալ պատմուճանին վիճակ արկեալ. ըզձեռսն եւ զոտսըն ծակեցին ըստ յայտնապէս դաւթեան ձայնին. ընդ փայտ խաչին բեւեռեցին զմանանան որ գրեաց 'ի տախտակին։

Օրհ: Աւետարան ըստ Մատթէոսի:
Իսկ նոցա կալեալ։

Տարածեալ ձեռք ընդ ձեռաց ոտք ընդ ոտից ընթանալեաց, փայտ ընդ փայտի դառըն պըտղոյ կեանք ընդ մահու փոխարկելով. 'ի մէջ երկուց անօրինաց կայր մերկացեալ տուողն օրինաց, զոր ոչ տեսին ազգըն կուրաց բաց 'ի միայն աւազակաց։

Րոպէից արեգականն ըզտիւն արար գիշերանման, զլուսաւորըն քօղ արկ մերկութեանն զի մի տեսցէ ամէն անարժան. 'ի մէջօրեայն նըսեմացաւ յորժամ ադամ մեզօք մեռաւ. 'ի յիններորդն 'ի լոյս դարձաւ յորժամ մահուամբ մահըն լուծաւ։

Ցօղէր արտօսր ցանագին մայր տեառն որ կայր մերձ առ խաչին, յորժամ լսէր ըզծարաւըն բարբառեալ իւր միածնին. ետուն քացախ խառնեալ լեղի այնմ որ բըղխեաց գետ յադենի, եւ 'ի վիմէն վըտակ բարբի աղբերց տոհմին դառնացողին։

Իւծեալ յերրորդ ժամու օծին զմիտըս նախնւոյ մօրն եւային, 'ի վեցն անկեալ մարդն առաջին հաւանական բանիւ նորին. 'ի սոյն ժամու տէրն 'ի խաչին զի քաւես-

ցե՛ զմեղըս նոցի՛ն. եւ յորժամ ե՛լ ադամըն հի՛ն եդ զաւազակն 'ի մէ՛ջ դրախտի՛ն։

Փա՛րելի՛ բարբառ ընդ ի՛մ Էլի Էլի՛ առ հայր գոչէր, զհոգի՛ն կամաւ հօր աւանդէր զհոգի՛ս մարդկա՛ն նո՛յն ընծայէր. Երկի՛ր հիմա՛մբք սասանեցաւ եւ վարագո՛յրն ընդ մէջ հերձաւ. վէ՛մք 'ի յի՛նքեանց պատառեցա՛ն եւ գերեզմանք մա՛հու բացա՛ն։

Քարոզէ 'ի սքանչե՛լեացս աստուած մա՛րմնով վասն իմ խաչեա՛լ. մեռեալ բնութեամբըն մեռանի աստուած ա՛նմա՛հ խոստովանի. կենդանաւորակ կո՛ղին ա՛ղբերբք եկեղեցի՛ իւր հաստատի. ջրո՛վըն մաքրի զա՛րի՛ւնն ըմպէ զո՛րդի՛ ընդ հօր փառաւորէ։

Օրհն: Աւետարան ըստ Յովհաննու:
Գիտէր եւ։

Նորին երգ՝ մեծի Ուրբաթու ցերեկին:

դկ Նորոգո՛ղ արարե՛լեա՛ց որ զգեցուցե՛ր մեզ լոյս փառաց, արկա՛ր ըզքեւ 'ի զի՛նուորաց քղամիդ կարմիր նախատանաց. մերկեա՛ յինէ՛ն ըզքուրձ մե՛ղաց ըզտըրտմութե՛ան արեամբ ներկած. եւ ըզգեցո զուրախալի՛ն ըզպատմուճանն իմ զառաջի՛ն։

Երկնաւո՛ր Թագաւո՛րիդ 'ի ծունր իջեա՛լ խաղ առնէի՛ն. ծածկեալ ըզգլուխըդ կռփէի՛ն եւ եղե՛գամբ հարկանէի՛ն. եւ զի՛մ անկեա՛լ մինչ 'ի գե՛տի՛ն 'ի հնազանդե՛լ կամաց չարի՛ն, մի՛ թողուցուս խոցեա՛լ տովի՛ն ա՛յլ կանգնեսցես զի՛ս վե՛րըստի՛ն։

Բամեալ բոլո՛րըդ քո մարմի՛ն յե՛տ վըճըռոյ դատաւորի՛ն, սաստիկ եառ զհարուած գանի՛ն վասըն գանից նախաստեղծի՛ն. զի՛ս որ յոտի՛ց մինչեւ ցըգլուխ ցաւօք նե՛ղիմ անհընարի՛ն, ա՛ռողջացո դա՛րձեա՛լ կըրկի՛ն որպէս շնորհօք յաւազանի՛ն։

Ս՛ըրբափա՛յլ պըճնեա՛լ զարդո՛ւն զոր զգեցուցե՛ր ահարոնի՛ն, փոխան պըսակ 'ի փշո՛ց եդի՛ն մըշա՛կք այգւոյն իսրայէլի՛ն. ըզփուշ մեղա՛ց հանեսցես յի՛նէ՛ն զոր յի՛ս ե՛հար իմ թըշնամի՛ն. եւ ողջացո զխայթուած վէրի՛ն զի՛ ագի՛ք մեղացըն ջըննջեսցի՛ն։

Օրհն: Աւետարան ըստ Մատթէոսի:
Իբրեւ այգ եղեւ։

Ե՛տուն ըմպե՛լ քեզ ըզլե՛ղի՛ն եւ ըզքացախն 'ի ծարաւի՛ն, արբէ՛ր կամաւ զի քաղցրացի՛ն ճաշա՛կք պըտղոյն դառնապտուղի՛ն. ըզդառնութի՛ւն թունաւո՛րի՛ն զո՛ր 'ի մարմինս հոգւոյս արկի՛ն, հե՛րքեա՛ 'ի բաց հանդե՛րձ ատլի՛ն եւ քաղցրացի սէր քո՛ 'ի սմի՛ն։

Ստե՛ղնեալ ծառո՛յ մահաբե՛րի՛ն ա՛յնմ որ բուսա՛ւ 'ի մէջ դրախտի՛ն, փոխա՛ն բարձեր ըզփա՛յտ խաչի՛ն 'ի գո՛լգոթա հաներ տեղի՛ն. զի՛մ առ 'ի մե՛ղս անկեա՛լ հոգի եւ մարմո՛յն բարձո՛ղ բեռի՛ն, բա՛րձ 'ի յուսոյդ ըստ ո՛չխարի՛ն հա՛ն 'ի յե՛րկինս յուխտեա՛լ տեղի՛ն։

Ի՛ յուրբաթու ժամ երրո՛րդի՛ն բեւեռեցա՛ր տէր 'ի խաչի՛ն. լուծեր զկապանս նախա՛ստեղծի՛ն եւ կա՛պեցե՛ր ըզթշնամի՛ն. զի՛ս ա՛մրացո՛

ընդ հովանեաւ կենդանարար քո նշանին. եւ 'ի ծագելն յարեւելից լուսաւորեա լուսով նորին։

Երանեալ աւազակին բացեր ըզդուռն ադին դրախտին. ըստ հաւատոյ ընծայ նորին կատարեցեր ըզխնդրելին. տուր եւ ինձ տէր ընդ նմին լսել ըղձիցն պատասխանին. այսօր ընդ իս լիցիս յադին 'ի հայրենիս քո առաջին։

Օրհ: Աւետարան ըստ Մարկոսի:
Եւ փաղփաղակի։

---

Բևեռելով զէլն էլին հիմունք երկրի տատանեցին, եւ վարագոյր հին օրինին վերուստ 'ի վայր պատառեցին. որդ ընդ վիմացն որ շարժեցին շարժեաւ զանշարժ սիրտս 'ի բարին. ընդ պատառել վարագուրին զիմ պատառեա ըզգիր պարտին։

Արեգական լոյս քող արկեալ խաւարանայր միջօրէին. եւ գերեզմանունք բանային մարմինք սրբոցն յառնէին. ընդ խաւարել լուսաւորացն մաքրեա յինէն զգործ խաւարին. ընդ մեռելոցն որ յառնէին կանգնեա զմեղօք մեռեալ հոգիս։

Նոր սիրով պատուիրանին գործով լցող եղեր բանին, աղօթելով առ հայր յերկինս թողուլ ըզմեղս որ 'ի խաչին. ինձ որ հոգւովս հաւատացեալ երկրպագեմ քեզ միածին, թող ըզլուծումն հրամանին մի յիշեսցին մեղքն առաջին։

Սարսեցին սանդարամետք 'ի յաւանդելն առ հայր զհոգին, որ 'ի դըժոխս իջեր ներքին 'ի բանտ մահու եւ խաւարին. կապեալ զիշխանն մահածին հաներ զհոգիս որ 'ի բանտին. եւ զիս հանցես տէր ընդ նոսին բանտէ մեղաց աղջամըղջին։

Օրհ: Աւետարան ըստ Ղուկասու:
Եւ իբրեւ այգ եղեւ։

---

Աղբերացն անապականն որ յետ մահուն անմահարար, բղխեալ 'ի քէն վտակ կրկին 'ի նորոգումն կուսածնին. բաց ըղներման իմ յարբուցումն քո արեան կենարարին. լուա գործեալ յանզանին թէ ոչ չորհօր այլ որոտառօք։

Յանմահից մեռանելոյ զմեռեալ հոգիս կենդանացո. թմբրմամբ 'ի նոր գերեզմանի զթաղեալս 'ի մեղս վերածեա. 'ի գուբ ներքնումն իջանելով 'ի գբոյ մեղաց վերաբերեա. 'ի ստուեր մահու քո բնակելով լուսաւորեա եւ զիս հոգւով։

Սիրտ իմ առ քեզ ապաւինէ բան որ ընդ հօր 'ի սկըզբանէ. որ կամաւոր վաղըն մարդկան կրեցեր մարմնով զայս ամենայն. ինձ լըսելի արա ըղձիցն յարքայութեան նըդ քո կոչմանն, ընդ ժողովոցն անդ անդրանկացն օրհնել ըզքեզ միշտ յաւիտեան։

Օրհ: Աւետարան ըստ Յովհաննու:
Եւ նորա։





# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ՇԱԲԱԹՈՒՆ ԹԱՂՄԱՆ ՏԵԱՌՆ

օրհ
բձ

ՊԱՐԳԵՒԱՏՈՒՆ ամենեցուն այսօր խնդրի պարգեւս 'ի պիղատոսէ. եւ տուողն ըղձս որպէս զօթոց հանուանի պատի 'ի յովսեփայ:

Կենդանատուն ամենեցուն այսօր դնի 'ի նոր գերեզմանի. եւ զանձն անմահութեան կնքի մատանեաւ քահանայիցն:

Արարածոց փրկութիւն քրիստոս այսօր եդաւ 'ի նորափոր վիմի. զոր օրհնեն զօրք երկնից երգով պահպանի 'ի զինուորացն:

Կենդանին յաւիտենից քրիստոս այսօր խնդրի որպէս մեռեալ 'ի պիղատոսէ. եւ մերկութեան ծածկոյթն անդամոց յանձն առնու պատիլ 'ի յովսեփայ:

Անմահութեան տուողն քրիստոս այսօր 'ի հող մահու խոնարհեցաւ. եւ բնակեալն 'ի լոյս անմատոյց թաղեցաւ մարմնով 'ի սիրտ երկրի:

Արեգակն արդարութեան քրիստոս այսօր եդաւ 'ի գուբ ստուերականի. եւ փառացն հօր ճառագայթ ծածկեցաւ վիմով 'ի մէջ երկրի:

Կուսածին մարմնով քրիստոս այսօր դնի 'ի կոյս գերեզմանի. եւ լուծիչն երկանց դժոխոց մատանեաւ կնքի քահանայիցն:

Որ թագաւորդ ես թագաւորաց քրիստոս, 'ի ծառայէ պատարագեալ համբերեցեր վասն մեր. Երկրպագանեմք տէր քեզ փառք:

Որ պատուական խաչիւդ քո քրիստոս եւ սուրբ արեամբդ քո հեղմամբ կեցուցանել ըզմեզ կամեցար. Երկրպագանեմք:

Որ մարդասիրապէս վասն ամենեցուն մահնայինս համբերեցեր, եւ 'ի մահու ըզմահ կոխեցեր. Երկրպագանեմք տէր քեզ փառք:

Արծաթսիրութեամբն մոլեալ յուդա, զիւր ըմբեծ ըղվարդապետն ընդ երեսուն արծաթոյ հրէիցն մատնէր:

Ընդ որում ես համբերեցեր տէր ըղնա կապանօք. ով համբերող նենգութեան, նշան եւ առիթ մահու:

Մերկացաւ յինքենէ զպատուածայրն սուրբ հոգին. եւ զգեցաւ ըզստանայ, որպէս զհանդերձ արկաւ զնուրբեան:

Որ նստիս 'ի քրովբէս աստուածային բանդ. այսօր վասն մեր խոնարհութեամբ նստար 'ի յերինջն ձիթենեաց. օրհնեմք զքեզ անդադար երգով:

Որ համագոյ ես խորհրդոցն հայրենի, աշակերտաց քոց ծանուցեր զխորհուրդ քո գալըստեանն. օրհնեմք:

Որ ամենայնից ես արարիչ եւ ըս-

տեղծիչ կենդանութեան. այսօր ըղձանկեալ խորհուրդ երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբոյ քո. օրհնեմք զքեզ անդադար երգով:

հոգ Նոյն եւ նման հօր եւ որդւոյ հոգիդ անեղ եւ համագոյ. բղխումն հօր անքննաբար առող յորդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց առաքեցեր. առ քեզ եւ մեք ողորմութեամբ ի բաժակեդ իմաստութեան:

Էիր ստեղծող արարածոց որ շըրջէիր ի վերայ ջրոց. նոյն եւ ի ջրեան աւազանին ի շնորհել մեզ քում էակցին, զըգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. ամէն:

Բաժանումն վերնոյն իմանալեաց եւ բնաւորին այսր ըզգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց եւ առաքեալս ի ձկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. ամէն:

հան Ի ձայն փողոյ գալըստեան քո տէր, ամենայն հոգիք զարթիցեն կալ ի դատաստանի քում քրիստոս աստուած մեր:

Յորժամ հնչէ բարբառն ահագին, եւ հարկանի փող յարութեան մերոյ, եւ մեք գոչելով ասեմք փառք գալըստեան քո տէր:

Յորժամ առնես հատուցումն տէր, եւ սուրբք քո պարծեսցին ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փըրկիչ կալ ի յաջմէ քումմէ:

ած Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարբառնեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն. աստուած աստուածոց եւ տէր տէրանց փրկիչ գոլով:

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ ի սուրբ կուսէն. եւ անարատ ծնանիլ յորովայնէ անապական, բառնալով ըզմեր նեղութիւնս. աստուած ես:

Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցան հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տըլեալ եղեւ յորդեգրութիւն կենաց կոչէ. աստուած սատար:

Գըլուխ սուրբ հաւատոյ և փայտ կենաց մարդկան յայտնեալ, զոր տեսեալ այսոյն պըղծոյ կործանեցաւ անկանգնելի. աղաչեմք սուլան փըրկիչ պահպանեա զանձինըս մեր: խաչ

Գողացաւ թըշնամին ընդ յայտնիլ սրբոյ խաչին, եւ ի յանհէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. ամէն:

Երկինք ցընծային եւ երկիրս ուրախանայր, քանզի փըրկիչ ցուցաւ սուրբ խաչն եւ լուսաւոր տիեզերաց. ամէն:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Արժանի բնութեամբ արարիչն ամենեցուն այսօր նընջէ ի մէջ մահացելոց. որ պահէն զիսրայէլ անքուն պահպանի ի զինուորացն:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Յընծութիւն արարածոց քրիստոս այսօր արտասուէ որպէս մեռեալ ի տըրտմագգեցիցն. եւ բուրումն անմահութեան խընկի ի զգաստիցն իւղաբերից:

հրց գձ Զքեզ օրհնեմք Թագաւոր յաւիտենից. անմահ աստըւած հայրցըն մերոց.

Զոր ոչ բնութիւնք արարածոց զանստըւած տանիւր, մահուամբ սահմանեալ դընի 'ի նոր գերեզմանի. նոր զնա ընդունելով մարդ. գովեմք ըզքեզ տէր հայրցըն.

Որ անխափան գրով հաստատեալ քարտէզ, կընքի մատանեաւ անկորուստ պահելով ըզմեզ հաւատով երրորդութեանդ. գովեմք ըզքեզ տէր հայր.

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան.

Օրհնեցէք. Զքրիստոս Թագաւորն յիմանալի զօրացն անհիւպատուելոյ. եւ բարձր.

Օրհնեսցէ. Զանպատմելի զԹագաւորն որ պահի 'ի զինուորաց գանձն անմահութեան. եւ բարձր արարէք.

մեծ Աստուածածին երկնային դըռուռն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ.

Ի քերովբէս բազմեալն ընդ հօր անապականաբար բնակիլ հաճեցաւ 'ի քում յորովայնի. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ.

Որ բոցեղէն սրովբէիւք շըրջափակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հողեղինի յայտնեալ. ուրախ լեր.

ողր Որ բաշխողդ ես բարութեանց եւ պարգեւատու արարածոց քոց. այսօր հաճեցար խընդրիլ 'ի պարգեւի մարմին 'ի պիղատոսէ: զի եւ մեզ շնորհեսցես զպարգեւս ողորմութեան քո.

Որ զանճառ ըզլոյս փառաց իբրեւ զօթոց ըզքեւ արկար. այսօր անճառ խոնարհութեամբ պատեցար 'ի յոլովիմ 'ի գերեզմանի տըքնեալ. զի ըզհնութիւն մեղաց մերոց նորոգեսցես 'ի կեանս անմահ.

Որ յէութեանդ ես ընդ հօր անպարագրելի բանդ, այսօր մատանեաւ քահանայիցըն պարագրիլ 'ի յանձն առեր անկողոպտելի գանձ. զի ըզմեզ փրկեսցես 'ի յանցանաց մեղաց մերոց.

տէր Յովսէփ ճըշմարիտ եւ արդար հայցէր 'ի պիղատոսէ զհաստրակից ըզպարգեւատուն. որ տըւամեզ գանձ անկողոպտելի.

Պատեալ սուրբ կըտաւովք զմարմինըն տէրունական զարկողն ըզլոյս որպէս զօթոց. որ ըզգեցոյց մեզ ըզգեստ անկողոպտելի.

Եդաւ 'ի նորափոր 'ի վիմի եւ մատանեաւ կընքեցաւ. որ զնախաստեղծն կենդանացոյց, եւ զմարդկան կապանըս մահու եղծ.

ձկ սոկ գկ Յովսէփ քեզ հաւատացեալ պիղատոսի աղերսէր, շնորհել զտէրունեանդ մարմին.

Զանապական զաստուածացեալ մարմինդ պատեալ սուրբ կըտաւովք, եւ եդ 'ի գերեզմանի.

Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ 'ի քերովբէս, վիմով կընքեցար յերկրի.





Գովեայք Երեանցն ձաւու :

ձյւ ած Յարեաւ քրիստոս ՚ի մեռելոց ալէլուիա:
Եկայք ժողովուրդք երգեցէք տեառն ալէ:
Յարուցելոյն ՚ի մեռելոց ալէլուիա, որ զանձկաւորհերս լուսաւորեաց ալէ:
ձյւ Նորացուցէք զօրհնութիւնս յարուցելոյն ՚ի մեռելոց:
Որ նորոգեաց զաշխարհս, նոր օրհնութիւնս երգեսցուք յարուցելոյն ՚ի մեռելոց:
Եկայք նոր ժողովուրդք, նոր օրհնութիւնս երգեսցուք յարուցելոյն ՚ի մեռելոց:
ձյւ Արմատն յանձն առեր ըզչարչարանս խաչի եւ համբերեցեր, ալէլուիա:
Թաղեցար ՚ի սիրտ երկրի երեքօրեայ ալէլուիա, եւ յարեար աստուածապէս, ալէ:
Յարուցելոյն ՚ի մեռելոց երկրպագեսցուք ալէլուիա, որ փրկեաց զաշխարհս, ալէ:
ձյւ Տուք օրհնութիւն տեառն աստուծոյ յարուցելոյն ՚ի մեռելոց:

Նա ըզդժոխս գերեաց մահուամբն իւրով, եւ զհզօրն կապեաց. տուք օրհ:
Տէր հզօր զօրութեամբ իւրով, տէր կարող ՚ի պատերազմի. տուք օրհնութիւն տեառն աս:
Յարուցելոյն ՚ի մեռելոց քրիստոսի աստուծոյ երգեսցուք ընդ հրեշտակս օրհնութիւնս. ալէլուիա ալէլուիա: ձյւ
Փրկողին աշխարհի կենարար յարութեանն երգես:
Եկայք մանկունք առագաստի երկնաւոր փեսային երգեսցուք ընդ հրեշտակս օրհնութիւնս ալէ:
Որ յարեար ՚ի մեռելոց կենդանութեանց պարգեւատու քրիստոս անմահ թագաւոր, ընդ երկնայինն զուարթունս նոր օրհնութիւն քեզ երգեսցուք. ալէլուիա: ձյւ
Որ մահուամբ ըզմահ լուծեր անմահութիւն մեզ շնորհեցեր կենդանարար քո յարութեամբդ. ընդ երկնայինն զուարթունս:
Որ ՚ի յերկինս համբարձար եւ ընդաջմէ հօր նստար յաթոռ փառաց բանդ ստեղծ. ընդ երկնային զուարթունս նոր օրհնութիւն քեզ երգեսցուք. ալէլուիա:





# ԿԱՆՈՆ

## ՍՈՒՐԲ ԶԱՏԿԻՆ

օրհ / ած

ԱՅՍՕՐ յարեաւ ’ի մեռելոց փեսայն անմահ եւ երկնաւոր. քեզ աւետիք խնդութեան հարսն ’ի յերկրէ եկեղեցի. օրհնեա ’ի ձայն ցնծութեան զաստուած քո սիոն:

Այսօր անձամբ լոյսն ’ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո, լուսաւորեա երուսաղէմ, քանզի յարեաւ լոյս քո քրիստոս. օրհնեա ’ի ձայն ցնծու:

Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ երրեակ լուսովն. եւ քեզ ծագեաց լոյս գիտութեան յարուցեալն ’ի մեռելոց քրիստոս. օրհնեա ’ի ձայն ցնծութեան զաստուած քո սիոն:

Այսօր զատիկ մեր զենմամբ քրիստոսի. արասցուք տօն ցնծութեամբ նորոգեալքս ’ի հնութենէ մեղաց մահելով, քրիստոս յարեաւ ’ի մեռելոց:

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ’ի գերեզմանն, ’ի խնկել զանապական մարմինն:

Եւ գտին զվէմն բարձեալ ’ի դրանց գերեզմանին, եւ լուեալ բարբառ ’ի հրեշտակէն, եթէ յարեաւ քրիստոս եւ խափանեաց զմահ:

Եւ հանդիպեալ քո տէր առաքելոցն եւ տուեալ ողջոյն կենդանարար, առաքեցեր զնոսա ’ի փրկութիւն տիեզերաց:

Փառք յարութեան քո տէր։
Պատրանօք նախաստեղծին մերկա-
ցաք ՚ի լուսոյն. իսկ յարութեամբ
միածնիդ ըզգեցաք զանմահութիւն.
փառք յարու։

Խաբանօք փայտին ճաշակեցաք ըզ-
մահ. իսկ ՚ի փայտէն կենաց նո-
րոգեցաք ամենեքեան. փառք
յարութեան քո տէր։

Ընդ կանայսն իւղաբերսն առ
քեզ առաւօտեմբք կենդանիդ յա-
ւիտենից քրիստոս, ընկալ եւ ըզ-
մերս փոխանակ խնկոցն զօրհնա-
բանութիւնս։

Փոխանակ սուրբ աւետաւոր զը-
ւարթնոյն գթութիւն քո մեզ
հանդիպեսցի յուսով գիտութեան,
մխիթարել ըզհոգիս եւ լուսա-
ւորել։

Ընդ նոսին աւետարանութեամբ
քարոզեսցուք ըզքո միայն
զսքանչելիսդ. որ յարեարդ ՚ի
մեռելոց ամենազօր թագաւոր ան-
մահ։

Որ անճառ էութեամբ հօրդ
ես փառակից, չարչարիլ մարմնով
յանձն առեր վասն մեր. մըշտըն-
ջենաւոր օրհնութեամբ ՚ի հրեշտա-
կաց օրհնեալ ես տէր։

Որ էակից ես ընդ հօր եւ սուրբ
հոգւոյն, խաչեցար եւ թաղեցար
կամաւ հօր վասն մեր. մըշտընջե-
նաւոր օրհնութեամբ ՚ի։

Որ միասնագամ գոլով ես հայրե-
նի փառօք, շնորհելով աստուա-
ծապէս յարութիւն տիեզերաց.
յամենայն արարածոց յաւիտենից
օրհնեալ ես տէր։

հոգ
Որ ՚ի քրովբէական կառսդ
հանգչիս, այսօր իջեր յերկնից ՚ի
զդաս առաքելոցըն սուրբ հոգի. օր-
հնեալ ես թագաւոր անմահ։

Որ գընայիր ՚ի վերայ թեւոց հող-
մոց, այսօր ՚ի հրեղէն լեզուս բա-
ժանեալ հանգեար յառաքեալսն
սուրբ հոգի. օրհ։

Որ խնամես տեսչութեամբ զքո
զարարածս, այսօր եկիր ՚ի հաս-
տատել զեկեղեցի քո սուրբ հո-
գի. օրհ։

Զհոգիս ծառայից քոց քրիստոս, հան
ընկալ ՚ի դաս անդրանկաց գրե-
լոց ՚ի յերկինս։

Ընկալ վասըն սոցա ըզբանաւոր
պատարագս ՚ի մէնջ. եւ շնորհեա
նոցա ըզթողութիւն գտանել յա-
ւուրն յետնում։

Հաշտեա ՚ի ձեռըն սուրբ մարմնոյ
եւ արեան քո տէր. եւ պարգեւեա
նոցա դասել յաջակողմեանսըն քո։

Յարուցելոյն ՚ի մեռելոց բնա- ած
կարան մայր եւ կոյս, որ ըզնընջե-
ցեալըն յադամայ կենագործէ ա-
նապականն. զքեզ մեծացուցանեմք
որ օրհնեալդ ես ՚ի կանայս։

Արարողին երկնի եւ երկրի եղեր
տաճար եւ առագաստ, որ ըզնըն-
ջեցեալըն մեր հրեղէն նորոգէ.
զքեզ մեծա։

Կերակրողին տիեզերաց սընուցեր
ըզքո սուրբ ըզկաթն, որ ըզնըննջե-
ցեալըն մեր վերստին նորոգէ.
զքեզ մեծա։

Որ զանարատ բազուկս քո ՚ի խաչ
խաչին տարածեցեր քրիստոս աս-
տուած, եւ նշան յաղթութեան
ետուր մեզ. սովաւ ըզկեանըս մեր
պահեա։

Որ զաշխարհակեցոյց բազկատա-
րածութիւն խաչի քո քրիստոս

անտրուած գաւազան զօրութեան
ետուր մեզ. ալէլու ըզկեանս։
Որ ըզմեռեալն ՚ի ճաշակմանէ փայ-
տին յանցանաց, կենաց փայտիւն
կենագործեցեր. ալէլու։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր հրեշտակքն լուսաւորք ՚ի
յերկնից իջեալ զարհուրեցոյց ըզ-
պահապանսն, եւ սուրբ կանանցն
քարոզեր աւետիւ. քրիստոս յա-
րեաւ ՚ի մեռելոց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Այսօր նոր իսրայէլ կոչեցեալք ՚ի
քրիստոս. ազատեալք արեամբ
գառինն աստուծոյ, պարեսցուք
ընդ երկնայնոցն աւետեաւ. քրիստոս
յարեաւ ՚ի մեռելոց։
հրց գկ Այսօր մեծ աւետիք ազգաց
նախամարդին տուաւ. արի որ
ննջես լուսաւորէ եղեւ քեզ յա-
րուցեալն քրիստոս. աստուած
հարցն մերոց։
Այսօր ձայն աւետեաց յեւայի
գոչեն լուսեղէն զգաստերքն իւղա-
բերք. տեսաք յարուցեալ ըզյա-
րութիւնն քո ըզքրիստոս. աստ։
Այսօր հրեշտակք յերկնից իջեալ
տան զաւետիս մարդկան. յարեաւ
խաչեցեալն եւ յարոյց ըզձեռ ընդ
ինքեան. աստուած։
դ Զտէր օրհնեցէք եւ բարձր ա-
րարէք ըզնա յաւիտեանս։
Այսօր տէրն մեր յարեաւ. ե-
կայք պարեսցուք ընդ հրեշտակս
յաղթական երգով. օրհնեցէք եւ
բարձր արարէք։
Այսօր սիւն լուսոյ ծագեաց
սուրբ եկեղեցւոյ յարուցեալն ՚ի
մեռելոց քրիստոս. օրհնեցէք եւ
բարձր արարէք ըզնա յաւիտեանս։

Աստուածածին տաճար լու- մեծ
սոյ, որ մարմնով պարագրեալ ան-
ճառաբար ծընար ըզբանն աստ-
ուած. զքեզ բարեբանեալ մեծա-
ցուցանեմք։
Ուրախ լեր և բերկրեա մայր եւ
կոյս. քանզի ծնեալն ՚ի քումէդ
այսօր վերըստին յարութեամբ ծը-
նաւ ՚ի կոյս գերեզմանէն. զքեզ
բարեբանեալ։
Ցընծա եւ ուրախացիր հարսն ՚ի
յերկրէ երկնից. քանզի այսօր
երկնայնոցն իջեալ տային քեզ զա-
ւետիս յարութեան միածնի որ-
դւոյ քո. զքեզ բարեբանեալ։
Այսօր ըզպասէք չարչարանացն ողբ
ելից իսրայէլի փոխեցեր ՚ի փըր-
կութիւն հոգւոյ զատիկ սուրբ
յարութեամբ քո քրիստոս։
Այսօր ընդ արեանն օրինակին
անբան գառանցն զենմանց պար-
գեւեցեր մեզ գառն աստուծոյ
զարիւնդ քո փրկական։
Այսօր ընդ անդրանկացն ազա-
տութեան ազատեցեր ըզգերեալս.
պըտուղ կենաց նընջեցելոց, եւ
անդրանիկ մեռելոց։
Այսօր հրեշտակք ՚ի բարձունս տէր
ուրախանան ընդ մարդկան. որք
իջեալ ՚ի յերկնից տան զաւետիս
աշխարհի. ցընծացէք այսօր, քրիս-
տոս յարեաւ ՚ի մեռելոց։
Այսօր զուարթունն ՚ի վիմին
խընկաբերից սուրբ կանանցն փո-
ղէր ձայնիւ ցնծութեամբ պատ-
մել աշակերտացն աւետիւ. ցընծա-
ցէք այսօր, քրիստոս յար։
Այսօր վիմին հաստատւոյ եւ յով-
հաննու սիրելւոյ ընդ հակառակս
ընթացեալ ՚ի գերեզման յարու-

ցեղին. զոր տեսեալ պատմէին, քրիստոս յար։

Այսօր եւ մեք զուարճացեալք պայծառասցուք տօնիւս. ընդ հաշտութեանն աստուծոյ միմեանց արկցուք գիրկս սիրով. եւ միաբան գոչեսցուք, քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց։



Ցայս շաբաթիս Օրհնութիւն՝ զՅարութեան Տէր երկնիցն ասա կարգաւ:
Օրհնութիւն Երկուշաբաթի աւուրն:

օրհ ակ Առաքեցար ՚ի հօրէ բանդ աստուած ՚ի փրկութիւն ազգի մարդկան. օրհնեմք ըզքեզ տէրբ աստուած։

Ի գերեզման իջեր Թագաւոր անմահ եւ ՚ի հօրէ ոչ մեկնեցար. օրհնեմք ըզ։

Ի յերրորդ աւուր յարեար աստուածապէս եւ՚ի յերկինս համբարձար. փառք յարութեանն քո տէր. օրհնեմք ըզ։

Յարուցեալ տէրն ՚ի գերեզմանէն միածինն որպէս փայլակն, եւ լոյս փառաց ծագեաց յաշխարհս, եւ երկինք եւ երկիրս ցնծային։

Մեծ է յարութիւն աստուածորդւոյն քանզի զդրունս երկնից բացեալ եղեն եւ հոտ անուշ բուրեաց յաշխարհս, եւ լցոյց զտարածս ամենայն։

Զօրք երկնից իջեալ էին եւ բանակեալ շուրջ զգերեզմանաւն, եւ հոգեղէն բարբառով երգէին. տէր օրհնեալ է քո յարութիւնդ։

Աքանչելի հրեշտակն տեառն ցնծութեամբ իջեալ ՚ի գերեզմանն հարկանէր փող յարութեանն տեառն։

Ի հարկանել փողոյն պահապանքն զարհուրեցան եւ եղեն ՚ի յահէն որպէս մեռեալ։

Զայն եղեւ ՚ի հրեշտակէն բարբառ եղեւ ուրախութեան տէր յարեաւ. փառք յարութեանն տեառն։

Դրօքն փակելովք երեւեալ յիսուս աշակերտացն եւ ասէր. խաղաղութիւն ընդ ձեզ։

Հրաշալի ըզյարութիւն աստուածորդւոյն այսօր տեսեալ առաքելոցն. եւ բազմութիւնք հրեշտակացն երգէին երգ նոր անլռելի ձայնիւ։

Զայն ահեղ գաբրիէլեան փողոյն այսօր գոչէր աւետարանէր, աւետիք են աշխարհի. երգէին։

Լոյս մեծ եւ ահաւոր այսօր ծագեաց սուրբ եկեղեցւոյ յարուցեալն ՚ի մեռելոց քրիստոս. երգեսցուք երգ նոր անլռելի ձայնիւ։

Երգեսցուք քեզ ընդ հրեշտակս յաղթական օրհներգութիւն։

Որ մահուամբ քո մեռուցեր ըզմահ, եւ յարութիւն պարգեւեցեր հողանիւթ բնութեանս. երգեսցուք քեզ ընդ հրեշտակս յաղ։

Որ ցուցար մեզ ճանապարհ նորոգման, եւ մաքրեցեր զաղտեղութիւն յանցանացն զոր պատուեաց թշնամին. երգեսցուք քեզ ընդ։

Կանխեցին կանայքն իւղաբերք ՚ի գերեզմանն, եւ տեսին զյարութիւնն տեառն։

Բացաւ դուռն յարութեանն գերեզմանին կնքելոյ. լոյս ծագեաց տիեզերաց։

հոգ Որ յերկնային զօրս անմարմնոցըն նախ հեղեր անապական հոգւով ճշմարիտ. զաստուածային եւ զգերագոյն քո իմաստութիւնդ. լինել փառաբանիչ սուրբ երրորդութեանդ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։

Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ երրորդութեանդ խորհրդականութեամբ. զարդարեցեր փրկչական շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ 'ի նմանէ խօսեցար օրհնօք եւ մարգարէիւք. ընդ նոսին փառաւ։

Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էակցին. միտեալ 'ի վերնատունն գրօքըն փակելովք. շնորհեցեր բոց առաջին փրկչմանն ըզքեզ մետասանից. առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նոսին փառաւ։

հան Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբըս քո։

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին 'ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշէգըն բանին. յայնժամ աւուր ահեղին։

Զարհուրեալ դողան արարածք 'ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր ահեղին. յիշեա տէր։

ած Զանճառելի ըզլոյս աստուածութեանն. անհնարինաբար կրեցեր 'ի քում յորովայնի մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։

Ի մանաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն. այլ 'ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր աստուածութեանն մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ։

Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսեղէն. գերագոյն քեզ հոգւոյն սրբոյ. եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ աստուածածնին. օրհնութեամբ։

Որ 'ի սկզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր իմաստութիւն. զոր նախանկար տեսութեամբ նշանակեալ մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերինն, լուսաւորեալ փառօքն աստուծոյ։ խաչ

Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանդ քո 'ի սրբոյ կուսէն. տպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց բանիդ աստուծոյ. փառաց անեղին տեղի հանգստեան։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Որ 'ի կեանս վերադարձի բնութեանս դարձմանըն յորդանանու օրինակեցեր. եւ ըզլնութիւն մահու եւ գըժոխոց կործանմանըն երիքովի տապանակաւ խաչին հրաշագործեալ նոր իսրայէլի. օրհնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Յարեաւ տէրն 'ի մեռելոց հզօր զօրութեամբ. հաստատեաց զհիմունս եկեղեցւոյ սրբոյ։

Օրհնութիւն Երեքշաբաթի աւուրն:

օրհ
բձ

Ի գերեզման քո կանխեցին կանայքն, զիւղս եւ զխունկս բերին ՚ի պատիւ թաղման քո, զի զմեզ ըզհողացեալըս վերածեր ՚ի կեանս:

Փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս եւ զաղաչանս մեր ընդ առաւօտեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան Եւայի ունկամբքն:

Ետուն աւետիս առաքելոցն յարեաւ յարուցիչըն մեր աւերեաց ըզդըժոխս, եւ զթըշնամին կապեաց ՚ի յանլոյծ կապանս:

Եկին ՚ի գերեզմանն առաւօտեան սուրբ կանայքն. յօծանել խընկել զանապական մարմինն:

Գոչումն հրեշտակին քաջալերէր ըզնոսա ասելով. ցընծացէք յարեաւ որպէս յառաջն ասաց:

Լուեալ ՚ի հրեշտակէն զաւետիս յարութեանն, պատմէին աշակերտացն եթէ յարեաւ Քրիստոս:

Զայն աւետաւոր հրեշտակին զըւարճացոյց զառաւօտեան կանայսն. զՔրիստոսի պատմելով ըզյարութիւն:

Մի յուսահատիք տըրտմութեամբ այլ ցընծացէք բերկրելով, խընկազգեացք աստուածայնոյն եւ փափագողք յարութեանն:

Փութացարուք ՚ի Գալիլեա աւետարանեցէք աշակերտացն, եթէ յարեաւ Քրիստոս եւ խափանեաց ըզմահ:

Այսօր զուարճացան տիեզերք ամենայն ճշմարիտ յարութեամբ աստուածորդւոյն. քանզի զդըժոխս աւերեաց եւ գերեաց զարգելեալսն ՚ի նմա:

Այսօր լուսափայլեալ մեծապայծառ ծագմամբ հրեշտակապետն ՚ի վերայ վիմին, կանանցն աւետէր ասելով. զի խնդրէք զկենդանին ընդ մեռեալս:

Այսօր բերկրեցան կանայքն իւղաբերք աւետեօք յարութեան աստուածորդւոյն. դարձան յառաքեալսն ասելով, յարեաւ Աստուած:

Սքանչելի կանայքն աներկիւղ եկին ՚ի տեսանել ըզգերեզմանն. զի կատարեալ սէրըն մերժեաց ըզերկիւղն:

Եկին ՚ի խընկել ըզՏէրունեան մարմինն, եւ տեսին յարուցեալ ՚ի գերեզմանէն. եւ վերստին լոյսըն ծագեաց յաշխարհս:

Քարոզեաց հրեշտակն ըզյարութիւնըն Տեառն, եւ բացան գերեզմանք նընջեցելոց. եւ յարութիւն Տեառըն յաղթեաց մահու:

Կանխելով սուրբ կանանցն ընդ առաւօտն ՚ի գերեզմանն, եւ զահաւոր յարութեանն ըզձայն ՚ի հրեշտակէն լուեալ, եթէ յարեաւ Աստուած:

Թողեալ ըզտրտմութիւն երջանիկ եւ սուրբ կանանցն, եւ խընդութեամբ ընթանային պատմել աշակերտացն. եթէ յարեաւ Աստուած:

Նոյն եւ նման Հօր եւ որդւոյ Հոգիդ անեղ եւ համագոյ. բըղխումն Հօր անքննաբար առող յորդւոյ անճառաբար. ՚ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնոր- հոգ

հաց քոց արբուցեր. ալլէ եւ մեզ ողորմութեամբ ՚ի բաժակէդ իմաստութեան։

Էից ստեղծող արարածոց որ շրջէիր ՚ի վերայ ջրոց. նոյն եւ ՚ի ջուրսն աւազանին ՚ի շնորհել մեզ քում էակցին, գրգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. ալլէ։

Բաբուն վերնոցն իմանալեաց եւ ըստորին այսր ըզգալեաց. որ մարգարէս տաս ՚ի հովուաց եւ առաքեալս ՚ի ձկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. ալլէ։

հան Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զերրորդութիւնն. փառաւորելով ըզհայր. որ վերակոչեաց զամենեսեան ՚ի մահուանէ յանմահութիւն։

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց, քրիստոսի երկրպագելով. որ վերակոչեաց զա։

Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք, հոգեւորական հնչմամբ գովեսցուք, սուրբ զհոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամենեսեան ՚ի մահուանէ։

ած Ըզքեզ կոյս եւ մայր եւ բնակարան աստուածային ներմարդութեանն, գոհաբանեմք եւ վերօրհնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան. վասն որոյ ըզքեզ աստուածածին եւ կոյս բարեբանեմք ըզմայր եւ զաղախին փրկչին մերոյ։

Ծնունդըն հօր եւ հին աւուրց անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ եւ ՚ի հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ։

Ծնեալն ՚ի քէն ՚ի խաչ ելեալ եւ ՚ի յաթոռ փառաց ընդ հօր. անարգեալ ՚ի մարդկանէ փառաւորութեամբ էութեամբ երկրպագեալ. վասն որոյ։

Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան այլ եւ վերին զօրութիւնք. դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց, գոհաբանեն եւ վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր եւ զաղախին։

Ապաւինեցաք ՚ի խաչ քո արարիչ յաւիտենից, որ եղուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թշնամւոյն. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինս մեր։ խաչ

Բարձրեալ թագաւոր որ վասն մեր ելեր ՚ի խաչ, եւ բարձեր սովաւ զյանցանս նախաստեղծին ադամայ. աղաչեմք։

Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեալ, զոր տեսեալ այսօր պղծոյ կործանեցաւ անկանգնելի. աղաչեմք։

Դողացաւ թշնամին ընդ յայտնիլ սրբոյ խաչին, եւ ՚ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. աղա։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Երկինք ցնծային եւ երկիրս ուրախանայր, քանզի փրկիչ ցուցաւ սուրբ խաչն եւ լուսատու տիեզերաց. աղա։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Զսքանչելի եւ զհրաշագործ ըզյարութիւնն քրիստոսի առաքելոցն ըստուգապէս տեսեալ ընդհանուր քարոզէին, եթէ յարեաւ աստուած։

Օրհնութիւն Զորեհաւաքարի աւուրն:

օրհ
բկ

Որ յարութեամբդ փառօք վայելէ երկնայնոյն տէր:

Օրհնեալ է քո յարութիւնդ աստուած, որ ըզմահ մահու ծանուցեր քոյին կամաւոր մահուամբդ. քո յարու:

Գոչումն անհեղ հրեշտակին ՚ի վէմին որ քարոզէր առ սուրբ կանայսն, յարեաւ տէրն ՚ի մեռելոց. քո յարու:

Քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց:

Ընդ արշալոյսն առաւօտուն կանխեալ կանանցն ՚ի գերեզմանն ասելով, քրիստոս յար:

Եւ առ նոսա ասէր հրեշտակըն, զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս, քրիստոս յար:

Փութացարուք ով սուրբ կանայք եւ պատմեցէք աշակերտացն ասելով, քրիստոս յար:

Առաւօտեան սուրբ կանայքն հանդերձ իւղովք եւ խնկովք եկին ՚ի սուրբ գերեզմանն. եւ ողբալով խնդրէին զանմահ փառաց թագաւորն:

Եւ ՚ի ձայնէ հրեշտակին զուարճացան տրտմագնեալքն առաւօտեան սուրբ կանայք. զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. յարեաւ փառաց թա:

Աստուածասէր սուրբ կանայք փութացարուք հետեւեալ, պատմել լինել պետրոսի եւ յովհաննու սիրելոյ. յարեաւ փառաց թագաւորն:

Կանխեցին կանայքն ընդ առաւօտն ՚ի գերեզմանն հանդերձ խնկովք:

Բերելով զիւղս անուշունս ՚ի յօծումն կենարար մարմնոյ փրկչին մերոյ:

Եւ հրեշտակըն զօրութեամբ գոչելով աղաղակէր յարեաւ քրիստոս:

Ըզյարութիւն քրիստոսի ամենեքեան օրհնեսցուք. զի նա միայն անապական փառաւորեալ յաւիտեան:

Ըզճառագայթ յարութեանն տեսանելով հրեշտակին, նա զօրանայր ՚ի պատմել իւղկէնաւրէր յարութիւնն:

Ձայն աւետեաց լուէին առաւօտեան սուրբ կանայքն. ՚ի հրեշտակէն դառնային ուրախութեամբ յառաքեալսն:

Զուարթերական խնդութեանցն աւետիքս երանելի կանանցն ուսեալք ՚ի հրեշտակէն, աներկիւղ խնդութեամբ եւ բերկրանօք ուրախութեամբ ընթանային պատմել աշակերտացն աւետարանելով:

Զոր մահուն երկիւղիւ ընդ մեռեալս համարեալ կարծէաք, նա ինքնիշխանութեամբ յարուցեալ զմահու եղծ զիշխանութիւն, եւ կենդանութիւն պարգեւեաց ազգի մարդկան:

Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգման. քանզի նորոգողն էից հոգին էջ ՚ի սուրբ վերնատունն. որով նորոգեցան դասք առաքելոցն: հոգ

Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ հօր հաշտութեանն. քանզի որ եբարձ զհոգին ՚ի մարդկանէ մարմին եղելոց, դարձեալ վերստին ըղնոյն պարգեւէ:

Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցնծութեամբ զգալուստ սուրբ հոգւոյն. որով զարդարեցան 'ի զգեստուս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրովբէից զերեքսրբեանն։

Հան Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա տէր 'ի գնդիս նընջեցելոցն ընդ սուրբս քո, եւ դասաւորեա 'ի յաւուրն այցելութեան։

Որ կոչեցեր 'ի դրանց մահու ընդ սիրելին քո զղազարոս, եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա տէր 'ի գնդիս նընջէ։

Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո տէր 'ի գնդիս նընջէ։

ած Արիւն լուսոյ եւ ամպ հոլանի սուրբ կոյս, որ ցօղեցեր 'ի մեզ ըզցօղն երկնային. զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։

Անկէզ մորենի եւ սրովբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղըն կենաց 'ի քէն տուաւ մեզ. զքեզ բարեբանեմք աստ։

Անծին լուծիչ եւ քաւիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յերկնից 'ի գիրկըս քո բարձեր. զքեզ բարեբանեմք աստ։

խաչ Խաչին կենարար որ եղեւ մեզ փրկութիւն. ողորմեա ամենեքեան ըզքեզ բարեբանեմք։

Որ 'ի հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ 'ի յերկիր, եւ գաւազան զօրութեան հաւատացելոց. ողորմեա ամենեն։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցար 'ի յօգնութիւն ընդդէմ թըշնամւոյն. ողորմեա ամենեն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Այլ 'ի բաց եդեալ ըզհրեշտակն երկիւղին ըզկարծիս, նախաժամանեցին 'ի պատիւ այնորիկ որ մահուամբն եղծ ըզմահ, եւ անմահութիւն պարգեւեաց ազգի մարդկան։

---

Օրհնութիւն Հինգշաբաթի աւուրն։

Իւղաբեր եւ սուրբ կանայքն ողբալով փութապէս եկին 'ի գերեզման քո տէր, 'ի խնկել զանմահական մարմինդ։ օրհ գձ

Բարբառ աւետաւոր հրեշտակին որ գոչէր առ երջանիկ կանայսըն, զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. քանզի յարեաւ տէր եւ աւերեաց ըզդըժոխս։

Պատմեալ երանելի կանանցըն զյարութիւն տեառն աշակերտացն. ուրախացեալք ընթանային պետրոս եւ յովհաննէս 'ի կենատու գերեզմանն։

Այսօր յարութիւն քրիստոսի տօնեցէք հաւատացեալք. 'ի մի աստուած հայր ամենակալ։

Այսօր եւ կանայքն իւղաբերք աւետիս տալով առաքելոցն օրհնեն զաստուած զհայր ամէ։

Այսօր եւ հրեշտակք 'ի յերկինս հոգեւոր հընչմամբ երգով օրհնեն զաստուած զհայր ամէ։

Ի խաչանիշ փայտէն դղրդեցան դըժունք. զօրութեամբ սուրբ հոգւոյն նորոգեցաւ երկիր. ով է սա որ խափանեաց ըզմահ։

Հրեշտակն աւետէր կուսին մարիամու, սա է ՚ի սկզբանէ բանն որ յառաջ քան զյաւիտեանս որդին. սա է թագաւորն որ։

Յարեաւ յաւուր երրորդի. վէմըք պատառեցան երկիր շարժեցաւ սասանեցան դըժոխք. սա է կենդանին յաւիտենից քրիստոս։

Փառաւորեալ է քո յարութիւնդ։

Որ յարեարդ ՚ի մեռելոց յաւուր երրորդի, քրիստոս որդի աստուծոյ. փառաւորեալ։

Որ յահեղ բարբառոյ յարութեան քո տէր երկիր շարժեցաւ, վէմըք պատառեցան քրիստոս որդի աստուծոյ. փառաւորեալ է քո յարութիւնդ։

Ի ձայն ահեղ յարութեան քո տէր զարհուրեցան զինուորացըն գասքն յարփիափայլ հրեշտակին իջմանն, եւ դողալով շարժեցաւ երկիր։

Առաւօտեան սուրբ կանանցըն դիտելով ըզվիմափոր գերեզմանն. բերելով զիւղս անոյշս ՚ի յօծումըն կենարար մարմնոյն անպարագիր էականութեանն։

Եւ տեսեալ ըզքերովբէն վերանըստեալ ՚ի վիմին, տարփողելով սըրբուհեացըն ասէ դարձիր ողջոյն տուր փողոցն. քանզի յարեաւ որ յառաջն ասաց։

Հրաշալի յարութիւնն ըզպահապանսն զարհուրեցոյց, եւ հրեշտակն ՚ի յերկնից իջեալ ՚ի ձայն ահեղ յարութեան աստուածորդւոյն, կանանցն աւետէր յարեաւ աստուած։

Ի ձայնէ հրեշտակին զըւարճացան տըրտմազգեաց կանայքն, եւ դարձան խնդութեամբ ետուն աւետիս առաքելոցն, եթէ յարեաւ նախապատմելին։

Արեգակն արդարութեան քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգւով եւ ճշմարտութեամբ։ հոգ

Որ փոխանակ ծոցածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետիքըն հօր ՚ի բարձանց հոգին ճշմարտութեան, մըխիթարել զորս յադամայ տըրտմեցելոց եւ հրազինել զընտրեալ դասս առաքելոցն. վասն որոյ եւ։

Այսօր տըրտմական եւ գիշերային լուծան երկունք ծնընդեան նախամօրն. քանզի զծնեալսն մարմնով ՚ի մահ եւ յապականութիւն, վերստին ծնանի հոգին յորդիս լուսոյ հօրն երկնաւորի. վասն որոյ եւ։

Ի ձայն մեծի զուարթնոյն եւ ՚ի հընչումըն հրաշալի փողոյն, ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին, յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն, եւ հանգո ընդ սուրբըս քո։ հան

Յորժամ նըշան տէրունեան ճառագայթիւք փայլի, եւ թագաւ-

ւորըդ Թագաւորաց փառօք տեառ-
նի. յայնմ աւուր։
Յորժամ առեալ դատաւորին
դը նի, եւ դըպրութիւնըք հրաշի-
ցըն բանին. յայնմ աւուր։
ած Լոյս լուսոյ մայր, եւ կենարար
բանին բնակարան. քեզ երա-
նիցեն ազգ եւ ազինք ամենայն։
Սուրբ ծողին մայր, եւ հրաշութեան
կերպի նորոգողին. քեզ։
Լոյս ծագեցաւ 'ի քէն նըստելոցս
'ի խաւարի. քեզ։
խաչ Հրաշափառ տեսութիւն 'ի կա-
թուղիկէ եկեղեցւոյ տեառն, դար-
ձարան մինհու մինհուամբ ոսկի
գոլ կենաց, եւ մահայարուցիչ նա-
խաստեղծին մինհուամբ գոլ չնոր-
հօք յարութեան։
Պարգեւ գերագոյն պարգեւի այ-
սօր հաւատացելոց, եւ մահացուն
'ի կենաց առնու իւր զօրըս վերե-
լեանս. եւ թռուցեալ վերագոյն
բնակիլ 'ի տեղւոջըն սրբութեան։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Եկայք ժողովուրդք ընդ հոգեղի-
նացըն ուրախացարուք. երկըր-
պագեսցուք աստուածային նուրբ
նըշանիս, փառաւորեսցուք ընդ հրա-
շագործ պարգեւաց տուողին։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Եկայք լուսազգեացք յօրհնու-
թիւն նոր օրհնեսցուք ըզտէր.
քանզի մարմինն որ 'ի մէնջըն էառ,
'ի հրեշտակաց երկրպագութիւն
առնու, 'ի սրովբէից եւ 'ի քրով-
բէից։

Օրհնութիւն Ուրբաթի աւուրն։

Յարեաւ տէրն 'ի գերեզմա- օրհ / դկ
նէն։
Ընդ յառնել փրկչին մերոյ եր-
կիր շարժեցաւ, վէմըք պատա-
ռեցան։
Ճառագայթեալ լոյս 'ի վերայ
վիմին, զարհուրեցոյց ըզպահա-
պանն առ դրանըն գերեզմա-
նին։
Զաստուածային ըզգերեզմանա-
ւըն բոլորեալ դասըք հրեշտա-
կաց, տեառնէին ըզտէրըն յա-
րուցեալ 'ի գերեզմանէն։
Աստուածածնէր կանայքըն եկին 'ի
գերեզմանն փրկչին անուշ հո-
տօք եւ խընկօք, յօծանել զմար-
մինըն տէրունական։
Լուսապայծառ հրեշտակն նըստէր
'ի վերայ վիմին, աւետարանէր
կանանցն, յարեալ փրկչին
տիեզերաց։
Ընդ քո յարութիւնդ օրհնեմըք
մարդասէր, աղաղակելով տէր փա-
ռըք քեզ։
Զոր օրհնեն սերովբէքն եւ գովեն
քերովբէքն, աղաղակ։
Անդադար բերանով անհանգիստ
բարբառով, աղաղակ։
Առեալ եւ մեր զօրհնութիւ-
նըս հրեշտակացն երգեմք եւ
ասեմըք, փառք յարութեան քո
տէր։
Որ խաչեցար վասըն մեր թաղե-
ցար եւ յարեար, ազատեցեր
'ի մեղաց։
Սուրբ աստուած, սուրբ եւ հը-
զօր, սուրբ անմահ թագաւոր։

Տեսիլ փայլականաձեւ զուարթնոյն 'ի վիմին հընչեցեալ առ խընկազգեաց կանայն փարատեցոյց զերկիւղալից տրտմութիւնն:

Պահապանքըն պակուցեալ ահաբեկ լինէին, եւ կանանցն աւետարանեալ, մահ մահու յաղթեաց եւ ծանուցանէ մահ:

Քարոզս առաքելով առ երջանիկ առաքեալսն, փութացարուք 'ի գալիլեա եւ տեսանիցէք զկենագործողն ըզքրիստոս:

Յանճառ փառաց խոնարհեցար եւ ըզգեցար ըզհողեղէն բնութիւնս. վերառեր զանկեալն 'ի գլորմանէ յանմահական 'ի կեանս. ըզքեզ օրհնեմք անսպականն բանդ աստուած:

Անպարտականըդ մահու դատապարտեցար 'ի վերայ խաչին. որ փոխանակ դառնութեան պըտղոյն արբուցեր մեզ 'ի տիգախոց կողէդ. ըզքեզ օրհ:

հոգ Զանըսկըզբնաբար բըղխումն 'ի հօրէ պըտղին ճըշմարիտ. որ հընչմամբ ձայնի էջ 'ի վերնատունն այսօր նըման սաստիկ հողմոյ. զոր փառաւորեմք հոգեւոր երգով:

Զհամագոյակիցըն հօր եւ որդւոյ ըզբաշխողըն շնորհաց. որ 'ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ճըշմարտութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. զոր փառաւ:

Զաղբիւրն խոնարհութեան ըզկատարեալն անձնաւորութեամբ. որ խօսեցաւ յօրէնս եւ 'ի մարգարէս եւ յաւետարանս. զոր փառաւ:

հան Փառք քեզ աստուած փառաւորեալ յաւիտեան. որ կենարարդ ես մարմնոյ եւ գոյացուցիչ հոգւոյ մեր նընջեցելոցն:

Որ բարձրացար 'ի խաչին վասն ադամայ նորոգման. եւ իջանելով քո 'ի դըժոխս աւար առեր ըզգերեալսն:

Ըզգինս արեան քո յիշեա կենագործող աշխարհի. եւ հանգըստեան արժանաւորեա յերուսաղէմըն վերին:

Աստուածածին խորան լուսոյ անվայրափակ արփւոյն կենաց. որ եղեւր արեւելք արեգականն արդարութեան, եւ նըստելոցս 'ի խաւարի լոյս ծագեցեր. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք: ած

Անապական տաճար եւ մաքրենի անկիզելի. որ զանշէջ հուր աստուածութեանն 'ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն որոյ ամենեքեան ըզ:

Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտիս. որով եղեւք յերկիր աւետեաց հորդեալ հոգւով 'ի քեզ որպաւորեալ բանիւն. վասն որոյ ամենեքեան ըզ:

Ով քառաթեւ լուսածին գերապանծ նիշ կառուցող կենացն ամենից. միշտ բազկատարած առ քեզ էն: խաչ

Քառակուսի ոդանց հովանի եւ պահապան 'ի յելս եւ 'ի մուտս. փրկութիւն 'ի յայսոց եւ պարիսպ ամրութեան:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Դրոշմ ըզգայութեան եւ կնիք 'ի դէմս ամենից. դու ես յաստուածայինըն կատարիս խորհրդոց.

յորմէ արեգակնային փայլին ճառագայթք։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Առաքեցար 'ի դժոխս ցուցանելով ըզզօրութիւն աստուածութեանդ. ջախջախեցեր ըզգլուխ խարդախողին, խախտեցեր ըզզօրութիւն մահու. ըզքեզ օրհնեմք անապական բանդ աստուած։

Օրհնութիւն Տաքարի աւուրն:

օրհ դձ

Փառաբանակից հօր որդի որ վասն մեր խաչեցար, դըժոխս աւերեալ յարեար յաւուր երրորդի. փառք յարութեան քո տէր։

Հրեշտակապետին իջուցին որ ըզպահապանն երկիւղիւ, զարհուրեցոյց առ դրանն գերեզմանին. փառք յարու։

Եւ սքանչելի սուրբ կանանցն աւետարանէր ասելով, յարեաւ քրիստոս յարուցիչն մեռելոց. փառք յարու։

Կանանցն կանխելով 'ի թաղումն կենդանութեան տեսին ըզվէմն 'ի դրանցն 'ի բաց մերժեալ։

Թափուր ըզգերեզմանն եւ ունայն տեսանէին, եւ տրտմութեամբ լային յուսահատեալք։

Մայր խաչեցելոյն զի լուր յուսահատեալ, քանզի քրիստոս փառօք մեծաւ յարեաւ։

Ահագին ձայնիւ ըրդ. քո քրիստոս 'ի վերայ խաչին դողացուցեր զարարածս ամենայն զերկնային եւ զերկրաւոր բնութիւնս։

Ահագին երեւումն հրեշտակին զարհուրեցոյց ըզկանայս ասելով, զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։

Եւ յահէ զօրութեան աստուածորդւոյն զարհուրեալն կարապետըք դըժոխոցն ասելով. համբարձէք իշխանք ըզդրունս ձեր 'ի վեր։

Որ 'ի վերդ ես քան ըզմիտս եւ զխորհուրդս, համագոյական եղելոցս արարող, 'ի հօրէ առաքեցար վասն մեր եւ մարմնացար ի սուրբ 'ի կուսէն։

Անքննին 'ի յէութեան աստուած. տնօրինեցար յարգանդի կուսին, ապրեցուցանել զնախաստեղծին ծընունդն, եւ վերստին նորոգել 'ի փառս։

Ոչ շատացար մարդ եղանիլ աստուած, այլ եւ խաչի համբերեալ ըզթաղումն յանձն առեր զերեքօրեայ, եւ յարուցեալ նորոգեցեր զաշխարհս։

Զյարութիւն աստուածորդւոյն հրեշտակապետն այսօր աւետէր կանանցն ասելով, յարուցեալ է տէրն 'ի գերեզմանէն։

Ընթացեալ կանանցն խնդութեամբ պատմէին աշակերտացն ասելով, յարու։

Վասն որոյ եւ մեք ընդ հրեշտակին գոչեսցուք զյարութիւնն քրիստոսի, որ փրկեացն ըզմեզ 'ի ձեռաց մահու։

Փառաւորեալ անճառելի յարութիւնն քրիստոսի։

Որ կամաւ հօր եւ հոգւոյն 'ի վերայ քառաթեւին պատարագեալ գառն աստուծոյ. փառաւոր։

հոգ Առաքելոյդ անուանդ իջաներով մեծաձայն հնչմամբ 'ի բարձանց, 'ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտս, մինչդեռ նստէին 'ի սուրբ վերնատանն ։

Աննիւթական անուանի, անքըննելի որ քննէ ըզխորս աստուծոյ. զոր առեալ 'ի հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյական ։

Օրհնութիւն 'ի բարձունս, եղողին 'ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս 'ի յերկինս ։

հան Ժամանակ դարձի խնդոյ եհաս 'ի յերկիր. արդ տէր ընկալ ըզծառայս քո, եւ հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ ։

Խոստովանող հոգիս որ ելից զունայնութեան ընթացս աշխարհի. արդ տէր ընկալ ըզծառ ։

Ի վերջնումն աւուր մեծի, յորժամ առնես զայցելութիւն քոյոց սիրողաց. յայնժամ խնայեա 'ի ծառայս քո, եւ հոգի ։

ած Աստուածածին մայր լուսոյ սուրբ կոյս լուսեղէն տաճար, որում երկինըք չէին բաւական առ 'ի բնակութիւն, 'ի քէն մարմնացաւ ։

Ըզքեզ անհարսնացեալ որ միայնդ 'ի կանայս օրհնեալ, կոչելով 'ի քեզ զանտանելի զբնութիւնն. օրհնութեամբ մեծացուցանեմք ։

Ուրախ լեր աթոռ փրկութեան, յոյս հաստատութեան մարդկան, միջնորդ օրինաց եւ շնորհաց, օրհնութեամբ անդադար գոհութեամբ մեծամ ։

Ի թաբօր 'ի լերինն ձեւացուցեր ըզքո բնութիւնդ անտանելի գոյացութեամբ. ընդ որս եւ մեք ցնծութեամբ երգեմըք քեզ, ողորմեա մեզ մարդասէր ։ խաչ

Աշակերտըք հիացեալ բարբառէին ըզխորհուրդս 'ի տագնապիլ սրտից իւրեանց. ընդ որս եւ մեք ցնծու ։

Աքանչելի մեծ խորհուրդ զերրորդութեանդ քոյ սրբոց առաքելոցըն ծանուցեր բարերար. ընդ որս եւ մեք ցնծու ։

Անսկալի հիացմամբ զայլակերպութիւն քո տէր առաքելոցըն տեսեալ յօրինէին քեզ տաղաւար. ընդ որս եւ մեք ցնծու ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ ։

Հովանացեալ ամպ լուսեղէն եւ ըզհայրականըն լուեալ ըզձայն, եթէ դա է որդի իմ սիրելի. ընդ որս եւ մեք ցնծութեամբ երգեմըք քեզ, ողորմեա մեզ մարդասէր ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ։

Քրիստոս անմահ թագաւորն հետազօտեալ 'ի դըժողս, կապեաց զիշխանըն մեղսասէր. զմահու դերեալըն յադամայ կենագործեաց 'ի կեանս անմահ. փառաւորեալ անճառելի յարութիւնըն քրիստոսի ։





## ՇԱԲԱԹ ՕՐ ՅԻՇԱՏԱԿ ԳԼԽԱՏՄԱՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐՏՉԻՆ

հրց / աձ Նախայարութեան բանին պատմող առաքեցար աշխարհի սուրբ յովհաննէս մկրտիչ. աղաչեա զաստուած հարցն մերոց։

Որ ընդհրեշտակացն անտեսանելին յարգանդի կուսին տեսեալ քո եւ երկրպագեալ. աղաչեա զաստուած հարցն։

Որք հաւատով ըզյիշատակըս քո տօնեմք, եւ անդադար ձայնիւ ընդքեզ ունիմք բարեխօս. աղաչեա զաստուած հար։

գ Ըզտէր. Գովեցէք ըզտէր քրիստոս միշտ եւ յաւիտեան։

Զմեծին 'ի ծնունդըս կանանց զկարապետին եւ զմկրտչին յովհաննու զառաքինութեանն ընդհանդէս, տօնելով այսօր 'ի ձայն հնչման. գովե։

Խայտացելոյն յորովայնի հոգւով 'ի ծնընդեանըն քրիստոսի. որ 'ի փրկութիւն աշխարհի յայտնեցաւ աստուած բանն. գովե։

Յանապատի բարբառոյ ձայնի ըզմկրտչին յովհաննու զյաղթանակ մարտի ըզգըլխատմանըն կատարեմք այսօր ըզյիշատակ. գովեցէք ըզտէր քրիս։

մեծ Որ ըզբանն աստուած բանական եղեր ընդունիլ յորովայնի միշտ կոյս. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես 'ի կանայս։

Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ 'ի գիրկըս քո մարմնով. զքեզ մեծա։

Անարատ տաճար տընօրէնութեան կոչեցար հոգւոյն սըրբոյ միշտ կոյս. զքեզ մեծա։

Կարապետ արքայութեանն երկնից սուրբ յովհաննէս մըկըրտիչ, որ եղեւ աշխարհի քարոզ փըրկութեան յաւիտենից. աղօթիւք սորա տէր լուր մեզ եւ ողորմեա։ օղր

Որ առաւել քան ըզմարգարէս մեծ 'ի ծնունդըս կանանց. որ ըզքեզ մեզ յայտնեաց աստուած եւ մարդ յերկրի երեւեալ. աղօ։

Ձայն բարբառոյ յանապատի եւ կատարիչ խորհրդոյ, գըլխատեալ այսօր 'ի հերովդիայ վերափոխեցաւ 'ի դաս անմարմնոց. աղօ։

Երկնաքաղաքացին յովհաննէս մեծ 'ի ծնունդըս կանանց քարոզէր յանապատի ազգ արարող բարբառովն ըզծագումըն լուսոյ արեգականն արդարութեան։ տէր

Ճըշմարիտ մարգարէ եւ ձեռնադրող որդւոյն աստուծոյ, յառաջընթաց կարապետ եւ պատմող աստուածային օրինացն, հորդէր ճանապարհս թագաւորին յաւիտենից։

Յանօրէն գինարբուսըն մոլեգնեալ հերովդիադայ, 'ի պարգեւի մահին խընդրէր ըզգլուխ մարգարէին, շիջուցանել զարուսեակն եւ զանաղօտ լապտերն։





# ԿԱՆՈՆ

## ՆՈՐ ԿԻՒՐԱԿԷԻՆ ԿՐԿԻՆ ԶԱՏԿԻՆ

օրհ. դկ

ՆՈՐՈԳԵԱԼ կղզիք նոր նուաստ Եկեղեցիք հեթանոսաց, 'ի գլխոյ լերանց գոչմամբ ձայնի տուք ըզփառս աստուծոյ. եւ պատմեցէք զքաջութիւն յարուցելոյն 'ի մեռելոց:

Երկնաւոր փեսային հարսնացեալ Եկեղեցի աստուծոյ, զարդարեալ 'ի ներքոյ 'ի հանդերձս յոսկեհուռըն պճնակեալ. քանզի ահա գայ առ քեզ քրիստոս փառաց Թագաւորն:

Բախացեալ որդիք սիոնի 'ի Թագաւորըն քրիստոս, տօնեցէք ցընծութեամբ զնաւակատիս հոգւոյ մերոյ նորոգեալք 'ի հնութենէ. եւ ընդ հրեշտակս օրհնեսցուք զքրիստոս փառաց Թագաւորն:

Սքանչելի է խորհուրդ տնօրէնութեան քո քրիստոս. որ իջեր 'ի հօրէ 'ի սէր հարսին եկեղեցւոյ զոր ընտրեցեր. որով փառաբանիս քրիստոս անմահ Թագաւոր:

Այսօր հրեշտակք 'ի բարձունս ուրախանան ընդ մարդկան. որք իջեալ 'ի յերկնից տան զաւետիս աշխարհի. ցընծացէք այսօր, քրիստոս յարեաւ 'ի մեռելոց:

Այսօր զուարթունն 'ի վիմին խընկաբերից սուրբ կանանցն փողէր ձայնիւ ցընծութեամբ պատմել աշակերտացն աւետիս. ցընծացէք այսօր, քրիստոս յար:

Այսօր վիմին հաւատոյ եւ յովհաննու սիրելւոյ ընդ հակառակս ընթացեալ 'ի գերեզմանն յարուցելոյն. զոր տեսեալ պատմէին, քրիստոս յար:

Այսօր եւ մեք զուարճացեալք պայծառացուք տօնիւս. ընդ հաշտութեանն աստուծոյ միմեանց արկցուք գիրկըս սիրով. եւ միաբան գոչեսցուք, քրիստոս յարեաւ 'ի մեռելոց:

Յորժամ եկին 'ի գերեզմանն իւղաբեր կանայքն, եւ բերին ըզխունկսն 'ի խընկել զանապական մարմինն:

Յայնժամ հրեշտակն աւետարանէր յարութեան քրիստոսի. պատմեցէք աշակերտացըն զյարութիւնըն տեառն:

Իսկ նոքա զարհուրեալ վասն ահագին տեսլեանն. պատմէին աշակերտացըն զահագին տեսիլն:

Էջ հրեշտակն յերկնից աւետաւոր երջանիկ եւ սուրբ կանանցըն քարոզէր ասելով. է ձեզ վերստին լոյսըն ծագեալ 'ի յաշխարհ:

Այսօր տեսիլ ահեղակերպ հրեշտակապետին մերձեալ 'ի գունդ զինուորացն. այսօր սրտաբեկեալ պահապանացըն զարհուրեալ մեռանէին. է ձեզ վէ:

Այսօր ցընծայ երուսաղէմըն վերին. այսօր ցընծայ սիոն մայր եկեղեցի. քանզի փրկիչըն մեր յարեաւ եւ աւերեաց ըզդըժոխս. եւ մեզ վերստին լոյսըն ծագեալ 'ի հօրէ:

Հրեշտակ քո տէր որ զյարութիւնըն քարոզեաց:

Զպահապանեալն զարհուրեցոյց, ըղկանայսն լուսաւորեաց աւետելով: Զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս, չէ աստ այլ յարեաւ:

**հոգ** Ի հայրաշաւիղ անքերբէն անհատահոսդ վտակ, կենդանարար սուրբ Հոգի, օրհնեալ ես լոյս Ճշմարիտ:

Այսօր 'ի սուրբ վերնատունն եկեալ աստուած ճշմարիտ, հրաշափառեաց զառաքեալսն 'ի լոյս փառաց քոց Հոգի:

Հրճուածական խնդութեամբ աշակերտացն լցեալ, փառաւորելով երգէին, օրհնեալ ես լոյս գերագոյն:

**հան** Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ 'ի հրեղէն կառս. յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո ընդ սուրբս քո:

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան եւ ներող յանցանաց մերոց. յիշեա զհո:

Որ միւսանգամ գալոցդ ես հայրենի փառօք նորոգել զնախաստեղծին ծնունդ. յիշեա զհո:

**ած** Աստուածածին մայր եւ կոյս ծագող արեգականն արդարութեան, որ լուսաւորեացն զմեզ, հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք զմիածին քո զորդին:

Եղծ զօրէնս բնութեան մարդկան հրաշափառ քո ծնունդ, եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեաց, եւ կուսութեանդ քո ոչ խախտեցան կնիք. հոգեւոր երգով զքեզ բարե:

Զքեզ մորենի անկէզ, լեառն վիմածին դուռն փակեալ եւ աղբիւր կնքեալ. նախատեսացն գուշակեալ մայր եւ կոյս. հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք զմի:

**խաչ** Խաչի քո քրիստոս երկրպագեն արարածք ամենայն, որ 'ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սա եղիցի մեզ պահապան յաղթող, ապաւինեցուցանել զմեզ 'ի պատրանաց բանսարկուին:

Ի սմա բարձրացար բարձրեալդ անծին, որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողովել զհեռացեալսն կենարարիւ փայտիւն. ապրեցոյ:

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սա սպասէին մարգարեաւքն 'ի մերձանէր բանին. որ ազատեաց զմեզ 'ի պատրա:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Երեւեցար յարուցեալ եկեղեցւոյ քո հիմանցն. յորմէ Թովմաս հրաժարէր ոչ հաւատալ զքեզ տեղանցն. որում ցուցեր այսօր փափաքողին զվէրս մարմնոյդ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Սորուելով Թովմասի շօշափէր զխոցուած տիգին եւ զբեւեռացն, եւ գոչելով վերամբարձէր տէր եւ աստուած դաւանելով ըզյարութեանդ. որով առաք զերանին ոյք ոչ տեսեալ հաւատացեալք:

Որ խոնարհեցար յանճառ փառաց փեսայդ անմահ եւ երկնաւոր 'ի սէր հարսին քո եկեղեցւոյ. զոր մաքրեցեր աւազանին վերստին ծննդեամբն. օրհնեմք ըզքեզ ատրուած հայցն մերոց:

Որ կենդանարար նոր յարութեամբ քո նորոգեցեր զհնացեալքս մեզօք. որով ցնծայ այսօր եկեղե-

ցի ընդ նորոգումըն բնութեան մերոյ. օրհնեմք զ:

Այսօր մանկունք առաջատարի պայծառացեալք վայելչութեամբ, տօնեն ընդ զօրս հրեշտակաց զնաւակատիս փրկութեան մերոյ. օրհնեմք զքեզ տէր:

գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Նորոգեցարուք նորոգութեամբ կենաց այսօր յարութեամբըն քրիստոսի նոր ժողովուրդք. եւ բարձր արա:

Նոր իսրայէլ կոչեցեալք 'ի քրիստոս նոր օրհնութիւնս վեր առաքեսցուք նորոգողին տիեզերաց, յարուցելոյն 'ի մեռելոց. եւ բար:

մեծ Նոր խորանիդ արեգակնային արդարութեան նոր օրհնութիւնս տայցուք, եւ անդադար բարեբանեսցուք:

Նոր տաճարիդ անձեռ լուսոյն որ 'ի հօրէ նոր երգս երգեսցուք, եւ անդադար բարե:

Զնոր խառնարանըդ հրաշալի նոր խառնըման բանին եւ մարմնոյն հոգեւոր երգով բարե:

ողբ Որ վերստին նորոգեցեր զմեզ 'ի հնութենէ հինն ադամայ, եւ զսկզբնատիպին գեղեցկութիւնըն նկարեցեր նորաստեղծեալ յոգիս հրաշափառապէս. աղաչեմք զքեզ քրիստոս ողորմեա:

Որ զբարձրագոյն նաւակատեաց խորհուրդ հանդերձելոցն այսօր ծանուցեր կենդանարար եւ սքանչելի քո յարութեամբդ 'ի մեռելոց. աղաչեմք զ:

Ընդ քեզ յարուցեր յուսով յանմահութիւն զմահացու բնութիւնս, որով նըստար ընդ աջմէ հօր գլուխդ եկեղեցւոյ, հրաւիրելով զանդամս քո 'ի նոյն միութիւն. աղաչեմք զ:

Այսօր նոր ժողովուրդք ընդ երկնայնոց լուսեղինացըն համաձայնեալք, նորոգողին ազգի մարդկան վեր երգեսցուք, որ վասըն մեր մեռաւ եւ յարեաւ. ասելով փառաւորեալ է քո յարութիւնդ: տէր

Այսօր որդիք սիոնի ծնեալք աւազանին շնորհօք յորդիս աստուծոյ, 'ի նաւակատիս տաճարի բնութեան մերոյ գովեցէք զփեսայն ելեալ յառագաստէ նոր գերեզմանին. ասելով փառ:

Այսօր մանկունք հաւատոյ կատարելով զնաւակատիս վերինն երուսաղէմի. նորոգեցէք զպատմուճան հոգւոյ ձերոյ, եւ ընդ որդւոց լուսոյ նոր սիոնի բարեբանեցէք զքրիստոս թագաւորն. ասելով փառաւորեալ է քո յարութիւնդ:



Կարգ Աւագ օրհնութեանց Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Յաւուրս Յինանց եւ ամենայն կիւրակէից 'ի վերայ ութ ձայնից:

Առաջին ձայն:

Երգեսցուք երգ նոր աստուծոյ փրկչին մերոյ, որ փրկեացն 'ի թըշնամւոյն ծառայութենէ զմեզ հզօրն իւր կարողութեամբ. և ապրեցոյց փառաւորեալըն փառօք: օրհ ած

Դու յանձն առեր մարմնացեալ լինել 'ի խաչ վասըն մեր, եւ ընդ

նըմին բեւեռել ըղձողութիւն մե-ղաց մերոց. վասն որոյ երկրպա-գեմք եւ վեր օրհնեմք ըզքո զան-ճառ խոնարհութիւնդ։

Զոր ընտրեալ աստուած յամենայն ազգաց երկրէ ծնանիլ 'ի նմանէ, մաքրեցուցանել զմեզ կուսին 'ի պաշտելութենէ. որպէս զաստուա-ծածին մինչ փառաւորեսցուք։

նայ Նայեցայ՞յ ես յամենազօր 'ի քո տնօրէնութիւնդ. եւ երկիւղի՛ւ փառաւորեցից ըզքեզ քրիստոս։

Ի խաչելըն քո մեռուցեր ըզմահ. եւ յաղբերէ կողի քո տիեզերաց արբուցեր զանմահութիւն։

Աստուածածին անարատ կոյս առ քեզ ապաւինիմք. բարեխօ-սեա՛ առ քրիստոս վասն անձանց մերոց։

գեհ Հրով աստուածութեանըդ քո քրիստոս այրեցեր ըզդրունս դը-ժոխոց եւ լուծեր ըզմահ եւ զան-մահութիւն պարգեւեցեր ազգի մարդկան։

Յայգուցդ անմահութեան ճաշա-կեցաք եւ տեսաք զի քաղցր եւ ուղիղ ես տէր. եւ վասն ամե-նեցուն փրկութեան եկիր յաշ-խարհս։

Սրբուհւոյ աստուածածնին բա-րեխօսութեամբ պարգեւեա երկր-պագուացս ամենասուրբ երրորդու-թեանդ զյարութիւն յուսոյ կե-նացըն յաւիտենից։

ծան Ծանեաք ըզքեզ քրիստոս թա-գաւոր յաւիտենից, եւ տեսաք ըզքեզ իշխան մահու եւ կենաց. զի դու ես տէր, եւ չիք այլ ոք բաց 'ի քէն։

Աջով քո բարձրելոյ առցես ըզ-

վրէժս 'ի թշնամւոյն, եւ նետըք քո արբեցին զսիրտն նորա. զի դու։

Որ յարեար 'ի մեռելոց նորոգե-ցեր զազգըս մարդկան. սըրբուհւոյն աղաչանօք հաստատեա զհիմունս եկեղեցւոյ սրբոյ քո. զի դու։

Հաստատութիւն իմ լեր տէր, որ յաղթող խաչիւ քո ըզդըժոխս աւերեցեր. քանզի յարեար երեք-օրեայ, զանկեալսն կանգնեցեր զա-դամ։ հաս

Օգնեա՛ փրկիչդ աստուած պար-ծելոցս 'ի խաչ քո, յուսացելոցս 'ի քեզ տէր. եւ փրկեա՛ միայն բա-րերար 'ի վտանգէ զանձինս մեր։

Միայն օրհնեալդ 'ի կանայս, մայր եւ մինչ կոյս եւ խնամօղ լոյս. ծը-նող արարչին մերոյ անդադար բա-րեբանեսցուք։

Ի գերերանց կանխելով վեր օր-հնեմք ըզքեզ քրիստոս աստուած, որ վասն մեր խոնարհեցար, յանձն առեր զամենայն եւ խաչի համբե-րեցեր։ գեր

Լուսաւորեցաք 'ի հրամանաց քոց թագաւոր թագաւորաց աստուած, որ ըզմահու լուծեր զիշխանու-թիւն. յանձն առեր զմե։

Քերովբէական թեւօք պարածած-կեցար սըրբուհի աստուածածին կոյս եւ մայր եւ բնակարան աս-տուածութեանն, վերօրհնեալ յա-մենայն առաքելական քարոզու-թեանց։

Յոյս եւ յարութիւն ազգի մարդ-կան քրիստոս աստուած, զհիւան-դութիւն հոգւոյ իմոյ կենդանացո, որպէս երբեմն զեզեկիայն։ եաս

Զչարչարանս եւ ըզմահ յանձն ա-ռեր կենդանատու ամենեցուն.

զՀիւանդութիւն հոգւոյ իմոյ առողջացո. որպէս երբեմն:

Առ քեզ ապաւինիմք խորան եւ տաճար անմատոյց բանին Մարիամ մայր եւ կոյս. բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց:

օրհ Զփառաւորեալըն յամենայն արարածոց, եւ ՚ի ծագաց մինչ ՚ի ծագս երկրի զերկրպագեալն. ընմարմնացեալ բանն ՚ի կուսէն, ձայնիւ երգով օրհնեսցուք:

Որ դիմեալ գայ յեդովմայ բարձրացեալ փառօք. յարուցեալ ՚ի պատերազմ ընկղմեաց զաներեւոյթն ամաղէկ. զիջեալ բանն ՚ի դժոխս ձայնիւ եր:

Ծագումն ՚ի հօրէ փառակից սուրբ հոգւոյն, կենդանութիւն ազգի մարդկան, որ յարեան այսօր ՚ի մեռելոց. զհամբարձեալ բանն ՚ի յերկինս ձայնիւ եր:

նեղ Որ լուսոյ աստուած դուշմաննըն յովհաննու յորդանանէ կիտին, մարեցո եւ զիս յաներեւոյթ թըշնամւոյն փըրկիչ գոլով, որ նըստիս ՚ի քրովբէական յաթոռ:

Որ ընտրեցեր քեզ վերըստին քարոզող նինուէացւոց զյամփըշտակեալն ՚ի կիտէն երեքօրեայ նինջմամբ ՚ի դըժոխս. եւ զիս ըղեադմամեղս արձակեա ՚ի կապանաց մահու ՚ի կեանըս յաւիտենից:

Եկեալդ ՚ի փրկութիւն ըստեղծուածոց քոց, պատկերակից եղեր հողեղէն մարդոյն ըզմեղս ըստաներ, եւ զմահու գերեալսն ազատեցեր ՚ի մեղաց:

տրլ Հիացան զօրք երկնից ընդ քո յանձն առնուլ ըզծառայի ըզկերպ, եւ մարգարէն զարհուրեալ ասէր. լուայ ըզլուր քո եւ երկեայ. նայեցայ ՚ի գործըս քո եւ զարհուրեցայ:

Քանզի դու որ յառաջ քան զյաւիտեանս որդի հօր եւ հոգւոյն փառակից, եկեալ ՚ի մէջ երկուց կենդանեացն երեւեալ. բարձրացար ՚ի խաչին առնելով զհեծելութիւն փրկութեան. քանզի լուծեալ եղեն երկունքըն մահու:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Սրբեցար ՚ի փրկութիւն ըստեղծուածոց քոց. ոչ մեկնելով ՚ի հօրէ յանձն առեր կամաւ զխաչն եւ զթաղումն. եւ յարուցեալ ՚ի մեռելոց իշխանութեամբ. քանզի լուծեալ եղեն եր:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Աստուածածին անհարսնացեալ սրբուհի. ընդ քեզ աղաչեմք անդադար ձայնիւ, որ զէակ բանըն հօր ՚ի քեզ կրեցեր, եւ ծընար անճառապէս. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց:



## Օրհնութիւն: Առաջին կողմ:

Երգեցէք տեառն երգ նոր եւ օրհնեցէք զանուն նորա յաղթական օրհներգութեամբ. զի նա փառօք է փառաւորեալ: օրհ ակ

Որ սեամբք հրոյ եւ ամպոյ առաջնորդեաց ժողովըրդեանն իսրայէլի ՚ի յանապատ. եւ ընկըղմեաց զփարաւոն զօրօքն իւրովք ՚ի ծով կարմիր. Երգեցէք տեառն երգ նոր, զի նա փա:

Ընդ քեզ աղաչեմըք հանապազ սուրբ աստուածածին. բարեխօսեա Քրիստոսի աստուծոյ մերոյ փըրկել

ըղձեղ 'ի փորձութենէ եւ յամե-
նայն վտանգից մերոց։

նայ Նայեցարուք ժողովուրդք 'ի
սքանչելիս աստուծոյ մերոյ. ուն-
կնդիր լերուք հաւատացեալքդ
քրիստոսի, եւ 'ի միտ առէք զար-
դարութիւն ճշմարտութեան. զի
նա է յոյս հաւատացելոց։

Էութիւն անեղ անքննելի
բանն աստուած կամաւորութեամբ
յանձն էառ ըզմահ խաչի, եւ թա-
ղեցաւ 'ի նոր 'ի գերեզմանի. եւ
յարութեամբն իւրով շնորհեաց
մեզ կենդանութիւն։

Ուրախ լեր մայր անճառ լուսոյ
մարիամ սուրբ աստուածածին.
քանզի 'ի քեզ կրեցեր ըզհուր աս-
տուածութեանն լուսեղէն տա-
ճար աստուծոյ բանին. առ նա
միշտ բարեխօսեա վասն անձանց
մերոց։

զեհ Հուր բորբոքեցաւ 'ի զօրութե-
նէ խաչի քո քրիստոս, կիզելով
ըզթշնամին 'ի վերայ երկրի. որ
հակառակէր բանեղծուածոց ձե-
ռին քո։

Իջանելով քո 'ի դժոխս գերա-
պանծ իշխանութեամբ յաղթեցեր
մահու հզօր զօրութեամբ, կե-
նագործելով զըմբըռնեալսն առ 'ի
նմանէ։

Ծանուցար տիեզերաց աստուած
եւ մարդ գոլով. մարմնացար 'ի
սուրբ կուսէն 'ի փրկութիւն ազ-
գի մարդկան. միշտ փառաւորեալ
յանմարմնոց զինուորութեանց։

ծան Ի սուրբ երրորդութենէն ծա-
նեաք որ յառաջ քան ըզյաւի-
տեանս բանն աստուած, 'ի հայ-
րական ծոցոյ խոնարհեալ վասն
մեր, եւ ոչ ոք իցէ այլ աստուած
բայց 'ի նմանէ։

Որ բարձրացեալ բազկաւ 'ի վերայ
խաչին խորտակեաց զապըստամբ
ըզթշնամին. իջանելով 'ի ստորինս
ազատութիւն շնորհեաց նստելոցն
'ի խաւարի. եւ ոչ ոք իցէ։

Անարատ տաճար աստուծոյ բա-
նին, որ ըզնախամօրն եւայի զա-
նէծսն բարձեր անճառելի ծը-
նընդեամբըն 'ի քէն. առ նա միշտ
բարեխօսեա վասն անձանց մերոց։

Միտս իմ հաստատեցաւ 'ի քեզ հաս
հաւատով քրիստոս աստուած.
եւ բարձրացաւ յոյս իմ 'ի փառս
քո. որ յանճառելի ծոցոյ հօր խո-
նարհեցար վասն մեր. եւ երեւե-
ցար մարդ ճշմարտապէս։

Որ զկենդանարար մարմին եւ զա-
րիւնդ քո բաշխեցեր քաղցելոց.
եւ 'ի խաչին բացեր ըզկողահոս
աղբիւրդ, արբուցանելով տիեզե-
րաց զանմահութիւն 'ի ճաշակմա-
նէ մահաբեր պտղոյն։

Մայր քրիստոսի եւ բնակարան
բանին աստուծոյ, անհասութեան
խորհրդոյն ըսպասաւորեցեր, միջ-
նորդ եղեր աստուծոյ եւ մարդկան.
առ նա միշտ բարեխօսեա վասն ան-
ձանց մերոց։

Լոյս ճշմարիտ քրիստոս աստը- գէշ
ւած, առ քեզ հոգի իմ առաւօ-
տէ. 'ի յերկրի երեւեցո ինձ զե-
րեսըս քո։

Քոյով պատուական խաչիւ քրիս-
տոս աստըւած, եւ հրաշափառ քո
առաւօտու յարութեամբդ երեւե-
ցո ինձ զերե։

Հոգւոյն ըզքեւ հովանացեալ մի-
այն սըրբուհի, ծընար ըզբանն աս-

տըւած զանճառելւոյ հօր ծնունդ, եւ յայտնեցաւ միութիւն երրորդութեանն։

եսա Աղաչեցի ըզբազումողորմ աստուած, եւ լուաւ ձայնի խնդրուածոց իմոց, զի նուաղեցան աչք իմ ի տեսանելոյ, եւ յինէն փարատեցոյց զցաւս անձին իմոյ։

Զթագաւո[ձեր]րըն քրիստոս բարեբանեցէք, որ ի յանձն էառ ըզմահ խաչի եւ խափանեաց ըզմահու թագաւորութիւն. եւ յինէն փարատե։

Փութացի[ձեր]ր յօգնութիւն սուրբ աստուածածնին. եւ աղաչեա զնա ի քէն ըզմարմնացեալ բանն աստուած. զի յահաւոր եւ ի միւսանգամ գալըստեանն իւրոյ պարգեւեսցէ մեզ ըզկեանսըն յաւիտենից։

օրհ Աստուած երեւեցաւ մարմնով, ապրեցուցանել զազգս մարդկան կուոցն ի պաշտելութենէ. նմա միայնոյ երգեսցուք։

Քրիստոս բեւեռեցաւ ի խաչին, եւ ելոյծ զդատապարտութիւն ադամայ նախաստեղծին. նմա մի։

Քրիստոս յարեաւ ի մեռելոց, եւ յարոյց ընդ իւր զադամ, զանկեալն ի պատրանաց. նմա մի։

նեղ Աստուած զքեզ փառաւորեմք որ ի յերկնից խոնարհեցար. ծառայի առեր ըզկերպարան. եւ ըզտիեզերս ազատեցեր ի մեղաց։

Զմարգարէն ապրեցուցեր տէր ի կիտէն որպէս մարգարէ. որ նըշանակէր ըզքո ի մեռելոց զերեքօրեայ յարութիւնդ։

Զհայր փառաւորեսցուք եւ որդւոյ երկրպագեսցուք. եւ սուրբ զհոգին հաւատացեալքս ամենեքեան օրհնեսցուք։

Որ անքննելինդ ես յէութեան ընդ հօր անբաժանելի բանդ աստուած. խոնարհեցար ի լուսոյ օրինաց եւ մարգարէից, եւ ի մէջ երկուց կենդանեացըն բարձրացեալ եղեր ի վերայ խաչին, զոր յառաջն երգեաց մարգարէն ամբակում։ մրլ

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ ի կառս քերովբէականս վերամբարձեալ հանգչէիր նմանակից հօր եւ սուրբ հոգւոյն. հաճեցար ելանել ի կառս հողեղէնս, եւ հեծելութեամբըդ քո փրկեցեր ըզտիեզերս, վերականգնելով զանկումն ադամայ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ առաքեցեր զերփնվարըս քո սուրբ ըզմարգարէսն աւետարանել ըզկենսաբեր տնօրէնութիւնըդ քո ի սրբոյ կուսէն. եւ երեւեցար մարդ ճշմարտապէս։



Օրհնութիւն: Երկրորդ ձայն:

Օրհնեսցուք ըզտէր որ օրհնեացըն զիսրայէլ, եւ փրկեաց ըզժողովուրդն ի ձեռաց փարաւոնի ամենազօր եւ սքանչելի փառօքն իւրովք։ օրհ բձ

Տէր խորտակէ զպատերազմունըս տէր է յոյս անուն նորա. որ փրկեաց զամենեսեան ի ձեռաց նեղչաց իւրեանց ամենազօր։

Բարեխօսեա վասըն մեր աստուածածին մարիամ, որ ծնար զտէր աստըւած որ հովուէրըն զիսրայէլ. ամենազօր։

նայ Աստուած խօսեցաւ ՚ի բարձանց, լուարուք բնակիչք երկրի, որ եկն եւ փրկեաց զամենայն արարածս. զի զանուն տեառն կարդասցուք, եւ տուք օրհնութիւն ՚ի բարձունս։

Նոր Իսրայէլ կոչեցայք ՚ի Քրիստոս, եղէ՞ք բաժին տեառն եւ ժառանգակից Քրիստոսի. զի զա։

Ի վիմէն կենդանութեան ճաշակեցայք զի քաղցր է տէր, եւ յիւղ սրբութեան օծայք հաւատով. զի զանուն տեառն կոչ։

Ի քեզ եմք ապաւինեալ որ մայրդ ես եւ աղախին Քրիստոսի. լեր բարեխօս վասն մեր, զի զանուն տեառն կարդասցուք եւ զքեզ մեծարեալ պատուեսցուք։

գհն Սքանչելի հուր աստուածութեան քո տէր՝ տարածեցաւ առ հաստարան ընդ սրբեղերս. եւ հրադեհեալ բոցակիզեաց ըզպատրանս նախաստեղծին. զի զամենեսեան վերակոչեաց ՚ի մահուանէ յանմահութիւն։

Յայգւոյդ անմահութեան ճաշակեցին սուրբ առաքեալքն. եւ լուցին ըզտիեզերս աւետեօք սուրբ յարութեանն. զի ընդ նոսին վայելեսցուք յանվախճան ուրախութիւնս։

Որ ըզհուրն աստուածային յորովայնի քում ընկալար, եւ ծնար անճառապէս զկենդանարարն ամենեցուն. բարեխօս ըզքեզ ունիմք որ երանեալդ ես ՚ի կանանս։

ծան Ծանեաք ըզքեզ տէր էակից հօր եւ հոգւոյն, որ վասն մեր խոնարհեցար ՚ի յերկնից. ծանեաք ոչ այլ աստուած բաց ՚ի քէն։

Ծանեաք ըզքեզ Քրիստոս որ ՚ի խաչին բեւեռեցար, եւ հեղմամբ արեանդ քո փրկեցեր ըզտիեզերս. ծանեաք ոչ այլ աստուած բաց ՚ի քէն։

Որ զթագաւորն ամենեցուն յորովայնի քում կրեցեր սրբուհի մայր եւ կոյս եւ աղախին Քրիստոսի. բարեխօսեա առ տէր վասն մերոյ փրկութեան։

Հաստատեցաւ սիրտ իմ ՚ի տէր եւ բարձրացաւ յոյս իմ ՚ի փառս քո. որ նստիս ՚ի քրովբէական աթոռ. հաստատութիւն իմ լեր տէր քոյով յարութեամբ։ հաս

Որ զանարատ բազուկս քո տարածեցեր ՚ի վերայ խաչին. ժողովել ըզհեռացեալսն ամենակալդ զօրութեամբդ. հաստատու։

Յոյս մեր եւ ապաւէն մայր տեառն եւ կոյս սուրբ, որ հուր աստուածութեանն ոչ բոցակիզեաց զքո սուրբ զորովայն. բարեխօսեա՛ առ տէր վասն մերոյ փրկութեան։

Ի գիշերայց կանխեցից փառաւորել ըզբանն աստուած, որ վասն իմ խոնարհեցար ՚ի յերկնից. արարեր զխաղաղութիւն ՚ի յերկինս եւ ՚ի յերկրի։ գէչ

Տուող խաղաղութեան Քրիստոս որ ըզդատակնիք մահու լուծեր ՚ի վերայ սուրբ խաչին. եւ հաշտեցուցեր ըզհայր ընդ արարածս. արարեր զխաղաղու։

Փառաբանակից հօր եւ սուրբ հոգւոյն, որ լուսափայլ յարութեամբդ քո կենդանացուցեր զազգս մարդկան. տուր մեզ տէր զքո զխաղաղու։

եսա Զեղեկրային քեզ մաղթեմ հառաչմամբ սրտի իմոյ, որ վասն իմ խոնարհեցար 'ի յերկնից. յոյս կենդանութեան եւ փրկութեան իմոյ տէր։

Որ 'ի խաչին բարձեր ըզդատակնիք մահու, տարածելով ըզբազուկս քո. արձակեա եւ զիս 'ի կապանաց բանսարկուին. յոյս կենդանութեան եւ փր։

Որ յամենայն ազգաց երանեցար սրբուհի եւ կոյս մարիամ. աղաչեա զառ 'ի քէն ըզմարմնացեալն աստուած, ապրեցուցանել ըզմեզ 'ի սպառնալեաց գեհենոյն։

օրհ Զեկեալն 'ի փրկութիւն մեզ ըզբանն աստուած, խորհրդով տնօրէնութեամբ ընտիր երգով օրհնեսցուք զանուն նորա. զի 'ի բարձունս է փառաւորեալ յանմարմնոյ։

Զխաչեցեալն պատմեսցուք զքաջութիւն, որ գոչմամբ ձայնի ըզպատերազմն չարին վանեաց. եւ մահուամբ ըզմահացեալսն կենագործեաց. զնջելոյն 'ի դըժոխս վերածեաց զհոգին։

Ուրախացան զօրք երկնից 'ի վերուստ. քանզի ցօղն անապական 'ի քէն հեղեալ ըմիշտ կոյս, եւ մայր բանին տընտեսութեան, լուսածին անամպ ծագելով 'ի մեզ զարդարութեան արեգակն։

նեղ Ի նեղութեան իմում աղաղակեցի առ տուողն կենդանութեան, եւ լուաւ ձայնի աղօթից իմոց, եւ եհան ըզկեանս իմ յապականութենէ։

Յորժամ ընկլայ ես 'ի խորս անդընդոց, ըմբռնեցայ 'ի ժանիս վիշապին. եւ փրկեաց զիս փըրկիչն աշխարհի. եւ եհան ըզ։

Միայն օրհնեալ սրբուհիդ 'ի կանայս, բընակարան եւ տաճար արարչին. բարեխօսեա առ տէր վասն անձանց մերոց, զի փրկեսցէ ըզմեզ 'ի սպառնալեաց գեհենոյն։

Լուայ զլուր սքանչելի տնօրէնութեան քո ըզլուր. քանզի անձամբ դու բանդ աստուած մարմնացար 'ի կուսէն, ը վերածեր ըզբեկումն ադամայ. եւ պարմացոյ ընդ քո ընդ անհաս մարդասիրութեանդ։ տրլ

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Մարդարէին ձայնեալ ըզքո քաջութիւնդ, ասէ ելեր դու 'ի կառըս քո փրկութեան. եւ խաչիւն ջախջախեալ ըզգլուխ վիշապին, սուրբ յարութեամբդ ըզմեզ կենագործեցեր։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ուրախացիր սրբուհի եւ միշտ կոյս. քանզի որ 'ի քէն մարմնացաւ զդըժոխս աւերեաց, սուրբ եւ անհամեմատ 'ի կանայս. բարեխօսեա առ տէր վասն անձանց մերոց։



Օրհնութիւն։ Աւագ կողմ։

Փարաւոն հանդերձ կառօք ընկըղմեցաւ 'ի հոսանս ջուրց. օրհ բկ
եւ որդիքն իսրայէլի գնացին ընդ ցամաքն 'ի մէջ ծովուն։

Յորժամ հերձեաց մովսէս խաչանիշ գաւազանաւն, պատառեցան անդունդք, եւ առաջնորդէր նոցա անմեկնելի լոյսն։

Սա է բանն աստուած որ յառաջ
քան զյաւիտեանս . անճառելի
գալստեամբն իւրով յայտնեցաւ
տիեզերաց ծնեալ 'ի կուսէն։

նայ Ի յերկնից խոնարհեցար եւ
նայեցար 'ի սքանչելիս օրինաց քոց
տէր . կենդանութեանց տուող
ազգի մարդկան։

Իսկ փայտ խաչի քո կենսատու
դաւազան զօրութեան յայտնե-
ցաւ տիեզերաց . եկիր կամաւ 'ի
խաչ վասն արարածոց փրկու-
թեան։

Ուրախ լեր մարիամ նորատունկ
բուրաստան , երկնաբերձ աշտա-
նակ , ձոյլ ոսկի եւ ճեմարան բա-
նին աստուծոյ։

վիհ Հրով աստուածութեանդ քո
քրիստոս իջեր 'ի ստորին վայրս
մահու , եւ զնիգս դժոխոյն այ-
րեցեր հզօրեղապէս . զքեզ բա-
րեբանեմք ընդ հրեղէն օրհնա-
բանիւ։

Որ ողորմեցար յերկրի որթ ճշմա-
րիտ , եւ ճմլեցար 'ի խաչին ող-
կոյզ անապական ուրախութիւն
ամենայն տրտմեցելոց . զքեզ բա։

Որ զհուրն աստուած յորովայնի
քում կրեցեր անբոցակէզ մարե-
նի . դառնաճաշակ պտղոյն քաղց-
րացուցիչ . զքեզ ունիմք բարեխօս
առ տէր վասն անձանց մերոց։

ծան Դու ես աստուած անճառ ծա-
նուցար մարգարէից . եւ միայնոյ
քեզ ճշմարտի եւ անմահի միշտ
երկրպագեն ամենայն հաւատա-
ցեալք։

Որ զօրութեամբ բազկի քո խնդ-
րեցեր զվրէժս յատելեաց , եւ
հաստատեցեր զհաւատացեալքս 'ի
քեզ . նշանաւ խաչիւդ ազատեցեր
յաւիտենից 'ի մահուանէն։

Արդ խնդրեմք 'ի քէն թագա-
ւոր փառաց քրիստոս . աղաչանօք
սրբուհւոյ անարատ ը մօր քո եւ
կուսի ապրեցո զմեզ յաւիտենից
'ի մահուանէն։

Հաստատութիւն իմ լեր տէր հաս
եւ յոյս փրկութեան , որ զանա-
ջին ադամն ազատեցեր 'ի մեղաց .
նորոգեա եւ զիս զապականեալս
մեղօք։

Որ յատենի կացեր անպարտ կո-
ղին պատրանօք , եւ արբուցեր մեզ
'ի կողահոս աղբերէդ . նոյն։

Աստուածածին անարատ մայր
տեառն եւ կոյս մարիամ , որ եղեր
ընդունող բանին աստուծոյ . բա-
րեխօսեա առ տէր վասն մերոյ
փրկութեան։

Ի գիշերաց կանխեալ վեր օր- գեղ
հնեմք զանճառ տնօրէնութեան քո
խորհուրդ , որ վասն մեր խոնար-
հեցար 'ի յերկնից . խաղաղացո զ-
կեանս մեր միայն մարդասէր։

Որ բարձրացար 'ի խաչին յաղագս
դատապարտութեանն ադամայ , եւ
բարձեր զփշաբեր անիծադրու-
թիւնն հեղմամբ արեան քո սր-
բոյ . խաղաղացո զկեանս։

Որ 'ի վեր քան զքերովբէսն երե-
ւեցար աստուածածին մարիամ .
տանելով յորովայնի զանիմանալի
զբնութիւնն . բարեխօսեա առ տէր
վասն մերոյ փրկութեան։

Անմահ թագաւոր որ կամիս եսա
զկեանս ամենայն մարդկան որ
կարդան առ քեզ . լուր աղաչա-
նաց մերոց եւ նորոգեա հոգւով
գիտութեան։

Որ զաւժամանակեայ ըզցաւսըն բարձեր 'ի մարմնոյն եղեկին, մըշտընջենաւոր ցուցանելով նըմա զհոգեւորական առողջութիւն. լուր աղաչանաց մեր:

Անխափան եւ բարեգութ, բարեխօսութեամբ սըրբուհւոյ անարատ ը մօր քո եւ կուսի լուր աղաչանաց մեր:

օրհ Զաստուածն ամենեցուն օրհնեն սըրբասաց բանականն կենդանիք. յաղթական երգով եւ մեք օրհնեսցուք զանուն նորա:

Որ 'ի վերայ խաչին դատապարտեաց ըզխաւարականին բռնութիւնն. յաղթա:

Անպարտ տաճար անխայրափակ բանին աստուծոյ մարիամ սուրբ կոյս, բարեխօսեա առ տէր վասըն մերոյ փըրկութեան:

նեղ Անապականութեան աղբիւր եւ 'ի մահու կեանք ըզքեզ ծանեան հրանիւթիցըն սեռք եւ բանականն կենդանիք, որ ըզյովնան 'ի կիտէն կորզեալ արտաքսեցեր. գովասանական ձայնիւ եղանակեմըք քեզ զերգս օրհնութեան ներմարդացեալ բանին աստուծոյ:

Յանապարթաբեր արմատ փայտին մակադրեալ ըզքեզ անհըպելի հրամանաւ եւ սեւեռեալ բեւեռօք. եւ 'ի հրացայտ կողէ քո 'ի ձեռըն զինու տիգի հոսանըս կենականաց գործեցեր. գովասա:

Իմանալի բանաւոր տախտակ անտրամադրելի տառիցըն մովսիսական օրինաց. որ զաստուածն ամենեցուն իսկապէս մարմնով 'ի գիրկըս քո բարձեր մարիամ. ներբողական ձայնիւ եղանակեմըք քեզ զերգս օրհնութեան ամէնօրհնեալդ 'ի կանայս:

Անեղին եղեալ մայր տեսեալ զարմանայր մարգարէն. եւ հեղուսեալ բեւեռօք զմարմինն 'ի խաչին, ներգործեալ 'ի մէջ երկուց կենդանեաց: տըղ

Պատմեսցեն երկինք ըզվայելչութիւն փառաց քրիստոսի. եւ ընկալեալ լուսաձեւ տարերցն ըզգոյն արեան անեղին. եւ օրհնութեամբ խաչելոյն լըցան տիեզերք:

Զիւաւորեալ ոչ միայն 'ի վերայ բուսաբեր արմատոյն, այլ քրովբէական կառօքն բարձրացեալ 'ի դըժոխս կենագործեաց հըզօրեղականաւ զերանս ադամայ:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Աղաղակէր աստուածային բարբառոյն տէր յիսուս 'ի խաչին. եւ ընդդէմ անտեղաց կընքէր հրացեալ աստուածային սուրբ ձեռօքն. եւ բարկութեամբ զարթուցեալ 'ի վերայ խաւարային իշխանին:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Տիրուհի անարատ մայր տեառն եւ կոյս մարիամ, քրովբէական աթոռ ըզքեզ տեսաք 'ի յերկրի. բարեխօսեա առ տէր վասըն մերոյ փըրկութեան:



Օրհնութիւն: Երրորդ ձայն:

Ոգնական ընդունելի եղեւ իմ տէր ինձ 'ի փըրկութիւն. սա է իմ աստուած, եւ փառաւորեցից ըզսա: օրհ գձ

Ի խաչին բեւեռեցաւ եւ զգը-

ժողովոյն եղծ ըղըլընութեան. սա է իմ աստուած, եւ։

Որ մահուամբն եղծ ըզմահ, եւ յարութեամբն զնախահօրըն ջըն-ջեաց ըզմեղս. սա է։

Աստուածածին դու ես յոյս եւ ապաւէն խնդրողացս ըզքեզ. որդւոյ քո եւ աստուծոյ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

նայ

Նայեցարուք երկինք և խօսեցայց, եւ վերօրհնեսցից զքրիստոս փառաց Թագաւորն։

Փառըք քեզ որ յարեար 'ի մեռելոց քրիստոս, պարգեւեցեր մեզ ըզկեանսըն յաւիտենից։

Բարեխօսեա անդադար առ որդին քո եւ աստուած մեր, ծընող եւ ամլախին տեառն։

գիհ

Աստուածայինն հուր կենդանի զօրութեամբ սուրբ հոգւոյն այրեաց զպրունս դըժոխոց, եւ զարդարեալսն 'ի նմա կոչեաց 'ի կեանս. եւ պարգեւեաց մեզ կենդանութիւն։

Յանմահական 'ի յայդւոյն ճաշակեցին սուրբ առաքեալքն, եւ ըղհրաքաժակ դառնութեան այրմանն ընկալեալ անդուստ 'ի յաւուրըն տօնորման։

Ի բարեխօսութիւն փութացիր մեզ սուրբ աստուածածին. առ 'ի փրկել ըզժողովուրդս 'ի մեղաց եւ յապականութենէ։

ծան

Ի սուրբ երրորդութենէն ծանեաք ըզտէր մեր յիսուս քրիստոս ըզբանն աստուած, որ 'ի ծոցոյ հօր յառաջ քան զյաւիտեանս որդի. փառաւորեմք որ եկիր 'ի փրկել զարարածըս քո։

Անճառ տնօրէնութեամբ 'ի միշտ կուսէն զանբիծիցըն բարձեր ըզդատապարտութիւն. եւ կամաւոր խաչելութեամբ քո տէր կեանս շնորհեցեր անոխակալ փրկիչ անուանել վերօրհնեմք եւ երկըրպագեմք, որ ուրախութիւնդ ես երկնի եւ երկրի քրիստոս թագաւոր։

Ապաւինիմք 'ի քո բարեխօսութիւնդ աստուածածին մարիամ, մայր տեառն եւ կոյս սուրբ, հարսն երկնից եւ դուռըն կնքեալ, զոր մարգարէքն տեսին։

Հաստատեցաւ սիրտ իմ 'ի տէր եւ բարձրացաւ եղջիւր իմ յաստուած իմ. զի փառաւոր յարութեամբն իւրով աներեւոյթ ըզդըժոխս։ հաս

Ընդարձակեցաւ բերան իմ տէր 'ի վերայ թշնամեաց իմոց. քանզի հարեր ըզպատերազմ քո հըզօր զօրութեամբդ։

Որ տարար ըզբանն աստուած յարգանդի քում, եւ ծընար ըզնա մարմնով ապլեցուցիչ աստուածածին. բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

Հոգի իմ յամենայն ժամ զքեզ փառաւորէ տէր. վասն զի լոյս են հրամանք քո 'ի վերայ երկրի։ գեղ

Հոգի քո սուրբ եւ բարի զէն ինձ քրիստոս եղիցի յամենայն ժամ ընդդէմ թշնամւոյն հակառակողին։

Հոգւոյն սրբոյ հովանացեալ զքեզ աստուածածին, մարմնացեալ հօր հաճութեամբ զորդին միածին մեզ 'ի փրկութիւն։

Հառաչեցի զանկըրաւելի ըզհեծութիւն առ բարեգութին աստու- եաս

ւած, եւ լոյս ծնեալ 'ի լուսոյ սրբոյ Հօրմէ. եւ եհան ըզկեանս իմ յապականութենէ։

Աւետեաց ըզմանկան կարողութիւնն որ խաչեցաւ վասն մեր, եւ յարեաւ 'ի մեռելոց որպէս յամենայնի կարող. փրկելով ըզկեանս իմ յոյժ։

Աստուած է որ ծնաւ 'ի մէջ կուսէն 'ի փրկութիւն ազգի մարդկան, լուսաւորելով ըզտիեզերս 'ի գիտութիւն Աստուածութեան. եւ բարեբանեմք ըզնորա բարեգթութիւնն։

Զանարատն օրհնեսցուք զաստուածածինն, որ կոյս մնաց յետ ծննդեանն, եւ տարաւ յորովայնի զանտանելին ամենեցուն, զհամանակիցն Հօր եւ ամենասուրբ Հոգւոյն։

օրհ Յօրհնութիւն նոր օրհնեսցուք զտէր, որ 'ի վերայ քերովբէիցն հանգչի, եւ 'ի զօրաց երկնաւորաց փառաբանի սրբասաց ձայնիւ։

Որ կամաւոր խաչելութեամբն իւրով աներեւոյթ ըզզօրութիւն մահու. եւ երեքօրեայ յարութեամբն իւրով պարգեւեաց մեզ կենդանութիւն։

Բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին պահեսցէ զեկեղեցի իւր սուրբ. եւ 'ի միւսանգամ գալստեան իւրում նորոգեսցէ 'ի փառս։

նեղ Զհրաշալի խորհուրդ տնօրէնութեան քո տէր ցուցանելով մարգարէիւն 'ի փոր կիտին լինել զերիս տիւս եւ զերիս գիշերս պահելով 'ի խաղաղութեան։

Համանգոյից հաստիչ գոլով խոնարհեցար յերկնից եւ խաչեցար կամաւ Հօր վասն մեր. թաղելով 'ի սիրտ երկրի զերիս տիւս եւ զերիս գիշերս պահէ։

Այլ մեք ձայնիւ վերնոց փառաւորեսցուք ըզքեզ քրիստոս, որ համագոյ ես Հօր եւ սուրբ Հոգւոյն. զի միաբանեսցես զեկեղեցի քո սուրբ պահէ։

Տէր ըզլուր քո լուայ ես եւ զարհուրեալ դողացայ յոյժ. նայեցայ 'ի գործս քո եւ փառաւորեցից ըզքեզ քրիստոս որպէս մարգարէն։ տրլ

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Զի աղբիւրըն կենաց քրիստոս անապական մարմնացաւ 'ի քէն կոյս. ըզմեղս մեր բոցակիզեալ շիջոյց. վասն որոյ ըզքեզ անդադար բարեբանեսցուք։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Զի 'ի քէն ցնծութիւն ծնաւ տիեզերաց նախայաւիտեան բանն, փառակից Հօր եւ սուրբ Հոգւոյն. ըզնա անդադար աղաչեա վասն անձանց մերոց։



Օրհնութիւն: Վառ ձայն:

Երգեցէք տեառն երգ նոր ձայնիւ ցնծութեամբ, որ խոնարհեցաւ 'ի հայրական ծոցոյ փրկել զարարածս. օրհնութիւնք նմա յաղթական երգով։ օրհ գկ

Որ բաժանեաց ըզծով անշաւիղ խաչին խորհրդով, եւ ազատեաց յանմարդին փարաւոնէ ըզնորա իսրայէլ. օրհնեա։

Աստուածածին սուրբ լուսոյ անամպ հովանաւոր, եւ բնակարան բանին որ բանիւ հոլովէր զլուսայէն. բարեխօսեա նորին վասն անձանց մերոց:

Նայ Նայեցարուք ժողովուրդք 'ի սքանչելիս փրկութեան մերոյ. որ մարդասիրաբար բանն 'ի հօրէ որպէս ցօղ խոնարհեալ յերկիր. տուք օրհնութիւն տեառն աստուծոյ մերոյ:

Որ զանմարմին բանակս իւր միածինն առաքեաց 'ի վերայ խաչին. եւ ըզդաժանեալ որդին ադամայ ժողովեաց ընդ թեւօքն իւրովք. տուք օրհնու:

Զանապականն կոյսն մարիամ աստուածածին խոստովանին սուրբ եկեղեցիք. սմա տուաւ հայցն անմահութեան եւ բաժանի մեզ ուրախարար, տուք օրհնութիւն նորին հոգեւոր երգով:

գեհ Որ ընդհանուր աստուածութեան քո քրիստոս բարբառեցեր ընդ առեղելս ամենեցուն, բացայայտեալ ըզերրորդութիւն թշնամեացն:

Ի յայտնութեան անմահութեան եղեմայ ճաշակեցին դասք առաքելոցն, զպտուղ կենաց քոց տէր եւ մեզ արքայուցին:

Զտաճար անապական բանին հօր բարեբանեն դասք հոգեղինացն. գովեմք եւ մեք ձայնակցելով երկնայնոցն:

ծան Որ յանսկզբնական հօրէ ծնեալ նախ քան զյաւիտեանս որդի, եւ ծանուցար մարգարէիւք աստուած ընդ հօր գոլով. ըզքեզ օրհնեմք զեկեալդ 'ի փրկութիւն արարածոց քոց տէր:

Որ 'ի խաչին մարմնով պատարագեալ հեղեր զարիւն քո սուրբ, եւ արբուցեր ըզնոյն քո յարեան խորհրդախողին մերոյ. ըզքեզ:

Որ ընդհանուր աստուած 'ի քեզ կրեցեր մարմին անկիզելի, զանմաճաշակ պտղոյն քաղցրացուցիչ անճառելի քոյին ծննդեամբդ, 'ի քէն հայցեմք մաղթեա փրկել ըզմեզ 'ի հրոյն յաւիտենից:

Հաստատեցան սիրտք մեր առ քեզ փառաց թագաւոր. որ 'ի յերկնից խոնարհեալ իջեր փրկել զարարածս: Հաս

Պահեա ըզմեզ նշանաւ յաղթող խաչի քո քրիստոս, յոր բեւեռեցար կամաւ հօր, բարձեր զանէծսն ադամայ:

Որ զնախամարդն ըզյանցեալս լուծեր ծննդեամբ քո սուրբ կուսէ. բարեխօսեա անդադար վասն մերոյ փրկութեան:

Լոյս որ ընդ հօր նախ քան զյաւիտեանս, եկիր լուսաւորել ըզխաւար մեղաց աշխարհի, ծագեալ 'ի սուրբ ըզլոյս հրամանի. առ քեզ հոգի իմ առաւօտէ: գեղ

Կեանք 'ի կենաց եւ յոյս յարութեան, որ արարեր խաչիւ քո ըզխաղաղութիւն յերկինս եւ յերկիր. տուր մեզ տէր զքո զխաղաղութիւնդ, որպէս սրբոց քոց առաքելոց:

Զմայրդ լուսոյ բանին աստուծոյ, որ եղեր արեւելք արեգականն 'ի մեզ ծագողին. բարեխօս ունիմք փրկել ըզմեզ 'ի փորձութենէ:

Զեզեկիային քեզ մաղթեմ փրկիչ, որ կենարար բանիւ քո լուծեր զերկունս մահու. փառա- եսա

տես եւ զիմ զհիւանդութիւնս. յոյս կենդանութեան մեր կեցո ըզմեզ։

Որ անմահական քո մեռելութեամբն աւերեցեր ըզդրունս դըժոխոց մեռուցեր ըզմահ. կենդանագործեա եւ զիս զմեղօք ըմեռեալս. յոյս կենդանի։

Մաքուր եւ անարատ կոյս յետ ծնընդեան. որ մարմնով ծընար զարձակողն 'ի կապից մահու. բարեխօսեա վասն անձանց մերոց. փրկել 'ի տանջանաց գեհենոյն։

օրհ

Զփառաւորեալն 'ի հրեշտակաց զամենասուրբ զերրորդութիւնն օրհնեցէք 'ի սրբութեան նորա դասք հոգեղինաց յօրհնութիւն 'ի նոր։

Զյաղթողն 'ի մահու պատարագն զխաչեալ կամաւ 'ի մահ խաչին գովեցէք, որ էառ աւար բանսարկուին որդւոց մարդկան բարձրացեալ փառօք։

Ուրախութիւն երկնի եւ երկրի առնէ թեթեւ ցնծալ 'ի մեզ զարդարութիւն. բարերարանեսցուք ըմբռնեալն 'ի քէն մարմնով յարմարեալն յերանեալ պատուականն ծանեալ։

նեղ

Ընդ յափշտակին անձն իմ ծըփեալ յալիս մեղաց ծովու, ապաւինեալ 'ի նեղութեան իմում առ փրկողդ եւ յոյս, լուր ձայնի իմում։

Որ փրկեցեր ըզմարգարէն յորովայնէ կիտոյն, ապրեցո եւ զիս բըռնեալս 'ի ժանեաց չար վիշապին կենարար խաչիւդ։

Բարեխօսեա առ միածինն յարուցեալ 'ի մեռելոց, մայր աստուծոյ, փրկել զանձինս մեր 'ի յաւիտենից 'ի հրոյն. աղաչեմք ըզքեզ։

տրլ

Որ յանքննին ծոցոյ հօր խոնարհեալ որդի, երեւեցար 'ի մէջ երկուց կենդանեաց. զոր նախագուշակ տեսլեամբ ծանոյց մարգարէն։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ յաթոռս հրակերպեանս բազմեալ ընդ հօր բարձրացեալ կամաւ 'ի կառս խաչին. եւ հեծելութեամբ քո ազատեցեր ըզգերեալս։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ կուսական ծնընդեամբ 'ի փըրկութիւն յայտնեցար. եւ առաքեցեր զերկոտասանս քո քարոզս, աւետարանել ըզկենարարն յարութիւնդ։



Օրհնութիւն։ Չորրորդ ձայն։

օրհ / դձ

Օրհնեցուք զտէր եւ զյաղթող զօրութիւն նորա փառօք երգեսցուք նմա, զի փրկիչ եւ ապաւէն եւ օգնական մեր է։

Նա է աստուած մեր որ յաթոռ փառաց ընդ հօր յերկրի երեւեալ տեսանք. նմա փառօք երգեսցուք, զի փրկիչ եւ ապա։

Յաղթական օրհներգութիւնս որ ապրեցոյցն զիսրայէլ 'ի ձեռաց փարաւոնի. քրիստոսի փրկչին մերոյ ամենեքեան երգեսցուք, զի փառաւորեալ է։

Որ մահու խաչին իւրոյ կենդանացոյց ըզմահացեալս, եւ մարմնոյն իւր բեւեռմամբ ըզկապանս մահու եհերձ. ամենեքեան եր։

Որ տարար յորովայնի զանտանելին ամենեցուն, եւ ծնար անճառապէս զքրիստոս լոյս ազգի մարդկան. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել զմեզ։

Զկամարս փարաւոնի, եւ զզօրութիւն նորա տէր ընկէց 'ի ծով կարմիր, այն որ հզօրն է կարողութեամբ, նմին փառօք երգեսցուք զի փառաւորեալ է տէր։

նայ Նայեցան զխոնարհութիւնս երկնայինք յահաւոր տնօրէնութեան քո խորհուրդ. եւ փառաւորեցին զանպատում ըսքանչելիս քո մարդասիրութեանդ։

Բոցեալ սրբամտութեան քո քրիստոս 'ի խաչին կողէր բղխանարկուսին բնութիւնս. եւ կենարար յարութեամբ քո զեկեղեցի քո փրկեաց. փառս քեզ վեր առաքել ուսուցեր։

Տեսին դասք խմանայլ զօրութեանց զանսպարուած մարմնով առ 'ի քէն ծնեալ. իսկ եկեղեցի որդւոյ քո աստուածածին ըզքեզ խոստովանի. որ միայն կուսութեանց ես մայր։

գի Աստուածային բարկութեամբ հրոյ քո քրիստոս կիզէր զդժոխս, եւ զխաւարին արձակեցեր զըմբռնեալսն առ 'ի նմանէ. զըքեզ օրհնեմք թագաւոր յաւիտենից։

Որ փոխանակ դառնութեան տընկոյն եդեմայ ըզխաչ քո եդեր մեզ քրիստոս. եւ մըրբուցեր 'ի կողահոս աղբերէդ զանկապառ եւ զանվախճան ուրախութիւն։

Աստուածածին մայրն մեր եւ լոյս, բարեխօսեա առ որդիդ քո միածին, զի փրկեսցէ ըզմեզ 'ի հրոյն տանջանաց, եւ պարգեւեսցէ մեզ զերկնից արքայութիւն։

Տեսեալ ըզքեզ մահու լուծաւ. եւ դժոխոց սարսեալ դրունքն որ ըզմահ մահու ծանուցեր մահ։ ծան

Որ հոգւովդ քովլ սըրբովլ ծանուցար քո սարարծոյս. որ էնդ եւ ե ոդ եւ էդ աստուած։

Հովանացեալ սուրբ հոգւոյն 'ի վերայ քո սուրբ կոյս մարիամ. որ ծնար մարմնով ըզբանն աստուած։

Աւեղըն հզօրաց նուագեցան, եւ որք 'ի նըւաստութեան էին ակարքն զգեցան զօրութիւն. վասն այնորիկ հաստատեցաւ սիրտ իմ եւ խորհուրդ իմ 'ի տեառնէ իմմէ։ հաս

Զէն ընդունելութեան քրիստոս մեք ընկալաք սուրբ ըզխաչ քո, որչափ անպարտելի զօրութեան. վասն այնորիկ հաւատամք մեք 'ի յօրհնել ըզքո սուրբ ըզչարչարանս։

Զգրաւնս դըժոխոց պղնձիս խորտակեցեր քրիստոս յորժամ յարեար 'ի մեռելոց հըզօր զօրութեամբ. վասն այնորիկ հաւատացաք մեք 'ի յօրհնել ըզքո սուրբ ըզյարութիւնդ։

Որ բանիւ հրամանի քո հաստատեցեր զերկինս եւ զերկիր արարիչդ ամենայն եղանութեանց. վասն զի լոյս են հրամանք քո 'ի վերայ երկրի։ գեղ

Որ 'ի ձեռըն փրկական խաչի քո լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի. եւ եդեր պարիսպ ամրութեան հաւատացելոց. վասն։

Որ եկիր 'ի կատարումըն կանխասաց մարգարէիցն, յանձն առեր մարմնանալ 'ի սրբոյ կուսէն մօրդ ճշմարտապէս. փա:

եաա Յոյս կենդանութեան եւ փրկութեան իմոյ տէր աստուած իմ, յիշեա զիս որպէս երբեմն զեղեկիցն. եւ դարձո զհոգի իմ 'ի դրանց դժոխոց:

Որ կամաւոր մահուամբ քո մեռուցեր ըզմահ քրիստոս աստուած. եւ լուսափայլ յարութեամբ քո կենագործեցեր զաշխարհս. կենագործեա եւ զի՛ս զմեղօք մեռեալս:

Առ քեզ ապաւինիմք սուրբ աստուածածին. բարեխօսեա առ աստուած որդի քո եւ աստուած մեր, փրկել ըզմեզ 'ի փորձութենէ եւ յամենայն վտանգից մերոց:

օրհ Զանձնառելդ քո քրիստոս փառաւորեմք ըզմարդանալդ, 'ի դժոխոց լերանց հրաշատարանեմք ըզքո քաջութիւնդ, քանզի հարեր ըզպատերազմ եկեալդ 'ի փրկութիւն մեզ:

Զյաղթողդ քո քրիստոս գովեմք ըզզօրութիւնդ. քանզի վանեցեր զընդդիմամարտ թշնամին, եւ դարձուցեր ըզգերութիւն, եկեալդ 'ի փրկել:

Բղխեսցէ երկիր զողորմութիւն եւ նորացուսցէ զօրհնութիւն. քանզի աստուած ծննդեամբ 'ի միշտ կուսէն 'ի փրկութիւն մեզ յայտնեցաւ, աւերեաց ըզդժոխս:

նեղ Որ լուար աստուած մարգարէին ձայնի գոչմանն. եւ ես նովին ձայնիւ գոչեմ. եւ զիս մի անտես առներ, այլ պահեա պատուական եւ սուրբ խաչիւ քո:

Որ քոյին հրամանաւդ ըզմահու լուծեր զիշխանութիւն, եւ անիծիցն եղեր քակտումն. եւ զիս:

Որ իջեր 'ի յերկնից եւ մարմնացար 'ի սուրբ կուսէն անճառելի քոյին ծննդեամբդ. եւ:

Տէր ըզլուր քո լուայ վերօրհնեալդ 'ի բարձունս, եւ տեսաք ըզքեզ մարմնով 'ի վերայ խաչին 'ի մէջ երկուց կենդանեացըն, զոր երգեաց Ամբակումն նախնեաց սուրբ հոգւովն: տրլ

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Հեծելութիւնդ քո քրիստոս փրկութիւն եղեւ ազանց. յելանելըն քո 'ի կառս զուարճացան աբարանք. եւ օրհնութեամբ նոր երգով լցան տիեզերք:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Երեւեցար 'ի փրկութիւն նախահօրն ադամայ. եւ առաքեցեր զերկիրըս քո քարոզս աշխարհի, աւետաւոր յարութեանն. որք ընդհանուր պատմեցին ըզմիասանդամ քո գալուստ:



Օրհնութիւն: Վերջ ձայն:

Յաղթական քեզ օրհնութիւնք, տէր որ ըզխորոց ծովուն հերձեր ըզջուրն, զի 'ի նմա զբռնաւորին ջախջախեցեր ըզգլուխ. եւ զմարդեղեալն 'ի ձեռըն խաչի քո վերածեր 'ի կեանս: օրհ գ-կ

Կամաւոր մահուամբդ 'ի քէն տէր արձակեցեր զհոգի զօրութեան.

՚ի մէջ մահու ըզմահ աւերեալ վանեցեր. եւ զարգելեալսն ՚ի ձեռըն խաչի քո վերածեր ՚ի կեանս։

Միայնոյ քեզ ՚ի կանայս կոյս յետ ծընընդեան երգեմք զօրհնութիւն. զի լոյս ՚ի լուսոյ քեւ յայտնեցաւ աշխարհի. եւ զնախամօրն եբարձ զանէծս անճառ ծընընդեամբըն ՚ի քէն։

նայ Նայեցարուք ՚ի բարբառ մարգարէին եւ ՚ի պատգամըս կենդանիս, որ քարոզեաց մեզ ըզցօղըն կենաց ՚ի յերկնից։

Զիջումըն քո քրիստոս գուշակեաց մեզ մարգարէն, եւ զկամաւոր չարչարանըս խաչին գուշէր առելով. տարածեալ զթեւս իւր ընկալաւ ըզնա, եւ բարձեալ բերէ ՚ի փըրկութիւն աշխարհի։

Քեզ միայնոյ մարմնացելոյդ ՚ի սուրբ կուսէն օրհնութիւն ՚ի բարձունըս վերերգեմք առելով. փառըք քեզ քրիստոս, որ եկիր կամաւ հօր կեցուցանել ըզմեզ։

գհ Ծափս հարէք ամենայն հեթանոսք եւ օրհնեցէք զաստուած. զի հուրն աստուած բանըն մարմնացաւ ՚ի կուսէն. աւերեաց ըզդըժոխս եւ զզօրութիւն մահու եղծ։

Ընկալեալք ըզքաժանն ուրախութեան յայգւոյն անմահութեան սըրբոց առաքելոյն. որք ընդհանուր ընթացան ընդ տիեզերս. լուսաւորեցին հրաւիրելով յերկնից յարքայութիւնն։

Յաւուր վըճռոյ հատուցման ամենաբարըշտոյ վերածիցես ըզմեզ ընդ հոգեղինաց դասն ՚ի տեղին անկելոց հրեշտակաց, բարեխօսութեամբ սըրբուհւոյ աստուածածնին։

Ծանեաք ըզքեզ քրիստոս փառակից հօր եւ հոգւոյն. նախապատմող մարգարէիցն ըզխոնարհիլըն քո յերկնից. ծաներուք եւ տեսէք զի սքանչելիս արար տէր։ ծան

Յարեւելից մեզ փայլեաց արեգակն արդարութեան. իշխանութեամբ բազմեալ տեսաք ըզնա ՚ի կառըս խաչին. ծաներուք եւ տեսէք զի սքանչէ։

Որում երկինք եւ երկիր ոչ բաւէին տանել լուսոյն. բնակարան բնութեան բանին ըստացաւորեցեր. աղաչեա վասըն մեր ըզմիածին քո զորդին։

Հաստատեցան սիրտըք մեր առ քեզ քրիստոս աստուած, եւ ուրախացաք մեք ՚ի փըրկութեան քում. ընկալ զաղաչանըս մեր միայն մարդասէր։ հաս

Որ պատրաստեցեր քո իմաստութեամբդ ըզգիտութիւն յարարածս. եւ ծանուցեր քո յարութեամբդ ըզյարութիւն մեր. ընկալ զաղա։

Խընդա մարիամ, որ եղեր մայր քրիստոսի. եւ աղաչեա զառ ՚ի քէն ըզմարմնացեալ բանն աստուած, զի փրկեսցէ ըզմեզ ՚ի փորձութենէ։

Ի գիշերայս կանխեալ աղաղակեմըք լուր մեզ տէր. վասըն զի բաց ՚ի քէն զայլ ոք ոչ գիտեմք մարդասէր։ գիշ

Տուր մեզ տէր զքո զխաղաղութիւնդ, եւ փըրկեա ՚ի ձեռաց անօրինաց խռովաց ամբըստամբողաց. վասըն զի բաց ՚ի։

Բարեխօսութեամբ ծընողի քոյ եւ միշտ կուսի հայցեմք ՚ի քէն քրիս-

տոս փրկիչ աշխարհի․ վասըն զի բաց ՚ի քէն զայլ ոք ոչ գիտեմք մարդասէր։

Եսա Ի վերանալ յինէն աւուրց իմոց, տէր օգնեա ինձ միայն մարդասէր։

Զչարչարանըս խաչի եւ մահու յանձն առեր, տէր օգ։

Բարեխօսութեամբ սուրբ աստուածածնի եւ միշտ կուսի, տէր օգնեա ինձ մի։

Օրհ Ամենասուրբ երրորդութեանդ երկրպագեն զօրք երկնայինք, եւ ստեղծուածք անճառ ձեռացդ փառաւորելով զտէրութիւնըդ քո հանապազ։

Ամենազօր խաչի քո տէր՝ երկըրպագեսցուք․ որով բարձեր ըզդատակնիք մահու քո արարածոց․ փառաւորելով զտէրու։

Ամենօրհնեալ աստուածամայր մարիամ, քերովբէական աթոռ անբարչին մերոյ տնօրէնութեան․ զոր երանեն ամենայն ազինըք հանապազ։

Նեղ Մարգարէն ՚ի փորոյ կիտին աղաղակէր եւ ասէր․ տէր նայեաց յիս եւ մի տար զիս հըզօրիս այս։

Զայն բարձի ՚ի խորոց անդընդոց առ աստուած ողորմած․ եմմեմ մեւ ձայն աղաղակի իմոյ հասցէ ՚ի լըսելիս քո տէր։

Բարեխօսութեամբ սուրբ աստուածածնի եւ միշտ կուսի աղաչեմ․ տէր փրկեա զիս ՚ի յորդայթէ անէրեւոյթ թըշնամւոյն։

Տրլ Լուսոյ զըսքանչելի տնօրէնութեան քո ըղձուր․ քանզի յերկնից խոնարհեալ մարմնացար ՚ի սուրբ կուսէն, եւ խաչեցար ընդ աւազակսն․ եւ զարհուրեալ հիացայ ընդ քո ընդ անհաս մարդասիրութիւնդ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Զիշխանաբար զյարութիւնըդ գուշակեաց մեզ մարգարէն․ ասէ ելեր դու ՚ի կառըս քո․ հեծելութիւնըդ քո քրիստոս փրկութիւն եղեւ յեղանելոյդ քո։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Երեւեցար ՚ի փրկել զարարածս ՚ի մահուանէ․ եւ դըժոխք հիացեալ սասանեցան ՚ի յահէ ամենազօր փառաց քոց։



Հարցք Յարութեան
կարգաւ ըստ ութ ձայնից:

Հարց․ Առաջին ձայն:

Որ եկիր ՚ի փրկութիւն տիեզերաց թագաւոր յաւիտենից քրիստոս․ զքեզ փառաւորեմք աստուածն հարցըն մերոց։ Հըց աձ

Յանձն առեր ըզչարչարանըս կամաւորապէս, եւ ըզմահ ճաշակեցեր վասըն մեր․ զքեզ փա։

Կընքեցար վիմով ՚ի գերեզմանի եւ լուծեր ըզկնիք մահու յանցանաց․ զքեզ փա։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Գ

Զյարուցեալն ՚ի մեռելոց քրիստոս աստուած, որ ըզմահ խափանեաց յարութեամբըն իւրով․ բար։

Զըսքանչելի յարութիւնըն քրիստոսի աստուծոյ, ամենայն ժողովուրդք բարեբանելով բար։

ձեձ Յանձառ փառաց խոնարհեցար 'ի մեր բնութիւնըս, բանդ աստուած եւ մարմնացար 'ի սրբոյ կուսէն։

Եւ ծնար 'ի սուրբ կուսէ անապական մարմնով. ընդ քեզ անդադար բարեբանեալ մեծացուցանեմք։

Այսօր զեկեալդ 'ի փրկութիւն ազգի մարդկան, միաբանութեամբ ամենեքեան մեծամ։

ողր Բանդ որ 'ի Հօրէ իջեալ մարմնացար 'ի կուսէն, խաչեցար կամաւ Հօր վասըն մեր ըզմեղս բարձեր. սուրբ աստուած ողորմեա մեզ։

Որ յարարածոց ես անբովանդակելի, 'ի խաչափայտին բեւեռելով ըզմահ կոխեցեր. սուրբ ես։

Որ 'ի նախնումըն զանկեալըն 'ի ծառայութիւն մահու, պատուական մարմնով եւ արեամբըդ քո ազատեցեր. սուրբ ես։

տէր Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքըն 'ի գերեզմանն, 'ի խընկել զանապական մարմինն։

Եւ գտին ըզվէմըն բարձեալ 'ի դրանց գերեզմանին, եւ լուեալ բարբառ 'ի հրեշտակէն, եթէ յարեաւ քրիստոս եւ խափանեաց ըզմահ։

Եւ հանդիպեալ քո տէր առաքելոցն եւ տուեալ ողջոյն կենդանարար, առաքեցեր զնոսա 'ի փրկութիւն տիեզերաց։

Այս երկուշաբթի մեռելոց է:
Հանգստեան սաս՛ իւր սարօքն:

հրց Օրհնեալ ես դու քրիստոս, որ յարեար 'ի մեռե։

ձեձ Յարուցելոյն։ Արարողին։ Կենարարողին։

Պայծառացիր եկեղեցի հեթանոսաց յարութեամբ քրիստոսի հրց
որ յարեաւն այսօր 'ի մեռելոց, պըսակեաց զքեզ խաչիւն իւրով. աստուած հարցըն մերոց։

Այսօր ողբայ յինքեան ըզկործանումն իւր մահ. քանզի որ յադամ մեռեալքն էին, կենդանացան յարութեամբ քրիստոսի աստուծոյ հար։

Այսօր ցընծան մանկունք աւագանի. քանզի քրիստոս յարուցեալ փարատեաց զսուգ եւ ըզտրտմութիւն, եւ լուսաւորեաց զաշխարհս. աստուած հար։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Այսօր է զոր արար տէր եկայք ցընծասցուք. տօնեցէք ուրախութեամբ մինչեւ յանկիւնըս սեղանոյ. բարձր արա։

Բարձրացուցէք ըզտէր աստուած մեր գոչէ մարգարէն, երկիրպագեցէք պատուանդանի ոտից նորա, որ երբարձ ըզդատակնիք մահու 'ի մէջ նջ. բարձր արա։

Որ զաւետիս հրդոյն 'ի հրեղէն 'ի հրեշտակէն ընկալար, ուրախ լեր երկրեալդ տէր ընդ քեզ մարիամ անհարսնայեալ։ ձեձ

Անըսկիզբըն բանըն հաճեցաւ սանուլ մարդեղութեամբըն ըսկիզբն 'ի կուսէդ, քրիստոս աստուած թագաւորն յաւիտենից։

Աղաչեմք ըզքեզ սուրբ աստուածածին առ քրիստոս բարեխօսեա փրկել ըզժողովուրդս իւր, զոր գընեաց արեամբն իւրով։

Թիւնս իմ. Ողորմեա ինձ աստուած։ ողր

Լուսեղէն ամպ ինձ տէր ըղձային յարութեան աւետաւոր հրեշտակին, որ քարոզեաց զյարութիւն. ողորմեա ինձ սա։

Որ յարեարդ 'ի մեռելոց քրիստոս աստուած, եւ մեզ կեանս շնորհեցեր պարգեւատու ամենեցուն. ողորմեա ինձ սա։

տէր Ի՛ բարձանց. Փառք յարութեան քո տէր։

Պատրանօք նախաստեղծին մերկացաք 'ի լուսոյն. իսկ յարութեամբ միածնիդ ըզգեցաք զանմահութիւն. փառք յա։

Խաբանօք փայտին ճաշակեցաք ըզմահ. իսկ 'ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան. փառք յարութեան քո տէր։

հրց Օրհնեալ ես տէր աստուած հարցն մերոց։

Որ բարձրացար 'ի խաչին փոխան ազգի մարդկան. առաքեա զքո զողորմութիւնս 'ի պաշտօնեայս եւ յերկրպագուս. աստուած։

Որ զամենայնսն յանձն առեր փոխան մեր բարերար. խնայեա յարարածս քո յարութեամբդ քո. աստուած։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ յանապական աթոռ նստի բարեբանեալն 'ի հրեշտակաց, կամաւոր չարչարանաց համբերեր մահու խաչի մարմնացեալ բանն. անդադար օրհնեցէք եւ գովեցէք, բարձր արա։

Եւ իջեալ 'ի գերեզման անապական մարմնով, զի նորոգեսցէ ըզհինութիւն մեռելութեան մերոյ յարութեամբն իւրով. անդա։

Մեծացուցանեմք ըզքեզ որ 'ի հօրէ բանդ եւ անճառելի ծնունդ, որ 'ի կուսէն մարմնացար ցուցար մեզ։ մեծ

Մեծացուցանեմք ըզքեզ որ կոխեցեր ըզմահ աստուածապէս, եւ լուծեր ըզկնիք մահու. որ 'ի խաչին բարձրացար կամաւ հօր։

Մեծացուցանեմք ըզքեզ որ թաղեցար 'ի նոր 'ի գերեզմանի, եւ յերրորդ աւուր յարեար. որ 'ի յերկինս համբարձար փառօք հօր։

Անճառելի հօր էակից, 'ի խաչ ելեր կամաւ հօր. ողորմեա։ ողբ

Անմահութեանց տուող քրիստոս, 'ի գերեզման իջեր որպէս մարդ. ողորմեա։

Եւ յերրորդ աւուր յարեար, լոյս յարութեան ցուցար մեզ. ողորմեա։

Ընդ կանայսն իւղաբերսն առ քեզ առաւօտեմք կենդանիդ յաւիտենից քրիստոս, ընկալ եւ ըզմերս փոխանակ խնկոցն զօրհնաբանութիւնս։ տէր

Փոխանակ ուրախ աւետաւոր զուարթնոյն զխնդութիւն քո մեզ հանդիպեսցի յուսով գիտութեան, մխիթարել ըզհոգիս եւ լուսաւորել։

Ընդ նոսին աւետարանութեամբ քարոզեսցուք ըզքո միայն զսքանչելիդ. որ յարեարդ 'ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ։

Ընդ երիս մանկունսն օրհնաբանեմ բարեբանեմք ըզքեզ քրիստոս. աստուած հարցն մերոց։ հրց

Որ իջեր 'ի յերկնից խոնարհութեամբ եւ խաչի համբերեալ փրկեցեր ըզմեզ. աստ։

Թաղեցար 'ի նոր 'ի գերեզմանի
եւ յարուցեալ նորոգեցեր զտի-
եզերս. աստը:

Գ Ընդունէր օրհնեցէք բարձր արա-
րէք զնա յաւիտեան:

Զթագաւորն անմահ եւ զանստ-
ւածըն յաւիտենից, ամենայն
ժողովուրդք բարեբանելով բարձր
արարէք զնա:

Որ մարմնացար ընդ մեզ խոնար-
հեալ եւ յարութեամբըն քո
զյարութիւն մեզ պարգեւեաց.
բարձր արարէք զնա:

ձեծ Որ ըզհրեշտակին ընծայիցն ըզ-
ւեալ հրացեալ բերկրեցար,
բարեխօսեալ վասն մեր. մեք
օրհնաբանեմք զօրհնեալդ 'ի կա-
նայս:

Որ ըղձիւն աստուած յորովայնի
քում կրեցեր անկիզելի մորենի.
բարեխօս:

Որ զանշօշափելին յեղց 'ի գիրկս
քո բարձեալ դիեցուցեր կաթնա-
սուն. բարեխօս:

ողր Որ խոնարհեցար 'ի յերկնից եւ
իջեր 'ի յերկիր մարմնովն որդի եւ
բանդ աստուած. ողորմեա բա-
նաւոր հօտի:

Որ կանգնեցեր զխաչ քո 'ի մէջ
երկրի. եւ ելեալ բարձրացար փըր-
կեցեր զտիեզերս, ողոր:

Թաղեցար 'ի նոր 'ի գերեզմանի,
եւ յարուցեալ յերրորդ աւուր 'ի
յերկինս համբարձար. ողոր:

տէր Որ անճառ էութեամբ հօրդ
ես փառակից, չարչարիլ մարմնով
յանձն առեր վասն մեր. միշտըն-
ջենաւոր օրհնութեամբ 'ի հրեշտա-
կաց օրհնեալդ ես տէր:

Որ էակից ես ընդ հօր եւ սուրբ
հոգւոյն, խաչեցար եւ թաղեցար
կամաւ հօր վասն մեր. միշտըն:

Որ միասնագամ գալոց ես հայրե-
նի փառօք, շնորհելով աստուածա-
պէս յարութիւն տիեզերաց. յա-
մենայն արարածոց յաւիտենից օր-
հնութեամբ 'ի հրեշտա:

Լոյս որ 'ի հրեղէն. աթոռ Հրց
բարձրացեալ հանգչիս, երեքսըր-
բեան ձայնիւ 'ի դասուց հոգեղի-
նաց օրհնաբանիս. աստուած հար-
ցըն մերոց:

Պատկերակից եղեր հողեղէն բը-
նութեանս, մարդասիրապէս գը-
թացար կուսական ծննդեամբդ
ազատեցեր զմեզ. աստը:

Քանզի միայն յանցանօք ամենե-
քեան մեռաք. այլ 'ի խաչիլըն քո
քրիստոս ամենեքեան նորոգեցաք
'ի փառս. աստուած հար:

Ընդունէր օրհնեցէք եւ բարձր Գ
արարէք զնա յաւիտեան:

Որ բազմեալ հանգչիս յանսպառս
'ի յաթոռ, ըզմահ խաչիւ 'ի յանձն
էառ վասն ազգի մարդկան. օրհ:

Եւ 'ի կողմնակա արեան աղբերէն
նորոգեցան արարածք եւ անմա-
հացան. օրհնեցէք եւ բար:

Ընդ քեզ երեւեալ գուսն առ ձեծ
եղերկելու մարդարէիւ, ընդ որ ոչ
որ էանց եթէ ոչ աստուած միայն.
աստուածածին կոյս, օրհնու-
թեամբ մեծացուցանեմք:

Ընդ քեզ որ 'ի մորենւոջն առ
մովսէսիւ մարգարէիւ ըզնոր խոր-
հուրդ կուսի յայտնեցեր մարդ-
կան ազգի, օրհնու:

Ընդ քեզ որ 'ի հօրէ անժամանա-
կապէս եւ 'ի մօրէ անժամանա-
կար, 'ի ժամանակի ծննդեան 'ի

բոլորից փրկութեան յայտնեցար
որդի բարձրելոյն. օրհնութեամբ
մեծացուցանեմք։

ողր Անսկիզբըն բանդ անբաժա-
նելի ծընունդ հօր, որ վասըն մեր
մարմնացար 'ի կուսէն. ըզմահ խա-
չի 'ի յանձն առեր եւ թաղեցար
յերկրի։

Այսօր զանմահ եւ զանապական
մարմինըն տեառն կանայքըն որպէս
մեռեալ խընկել խընդրէին. այլ
հրեշտակին ձայնեալ ասէր, զի
խընդրէք ըզկենդանին ընդ մե-
ռեալս։

Նա ըզթըշնամին կապեաց և զդը-
ժոխս աւերեաց, յարուցեալ 'ի
մեռելոց քրիստոս աստուած. պար-
գեւէ ազգի մարդկան զմեծ զո-
ղորմութիւն։

տէր Սոսկալի տեսիլ հրեշտակին 'ի
փառաւոր քո գերեզմանին, ըզպա-
հապանսըն զարհուրեցոյց։

Իմաստնին մարմնական ձայնիւ
բարբառէր առ սուրբ կանայսն.
փարատեցոյց զսուգ եւ զտըրտ-
մութիւն։

Ով կանայք ըզգաստք աստուածա-
սէրք զամենեցուն զլոյսն եւ զյա-
րութիւն ընդ մեռեալս զի
խընդրէք։

տէր Փայլակնաձեւ հրեշտակն իջեալ
յերկնից զարհուրեցոյց ըզպահա-
պանսն. եւ սուրբ զկանայսըն խըն-
դութեամբ լըցոյց։

Աստուածասէր կանայք, ցընծա-
ցէք այսօր յարեաւ քրիստոս 'ի
մեռելոց եւ լոյս մեծ աշխարհի
ծագեաց։

Աւետիս լըւեալ 'ի սուրբ հրեշ-
տակէն ընթանային առ աշա-
կերտսն, պատմելով նոցա զյա-
րութիւնըն տեառն։

Զթագաւորըն փառաց քրիս- ճչւ
տոս, որ վասըն մեր մարմնացաւ
'ի սըրբոյ կուսէն եւ խաչի համ-
բերելով. միաբանութեամբ եր-
գով բարեբանեսցուք։

Որ ըզթաղումն երեքօրեայ յանձն
էառ յարուցեալ 'ի մեռելոց իշխա-
նութեամբ. միաբանու։

Կարողապէս ըզդրունըս դըժոխոց
խորտակեաց, Եկեղեցւոյ իւրում
զգեցոյց զմեծ վայելչութիւն. մի-
աբանութեամբ երգով բարե։



Հարց. Առաջին կողմն:

Որ եկիր 'ի փրկութիւն վասն հրց
ազգի մարդկան. ըզքեզ անդադար ակ
բարեբանեմք աստուած հարցըն
մերոց։

Յանձն առեր ըզչարչարանս եւ խա-
չի համբերեցեր. ըզքեզ անդադար
բարեբանեմք աս։

Կընքեցար մըմով յարուցիչըդ մե-
ռելոց. ըզքեզ անդադար բարե։

Զտէր օրհնեցէք բարձր ա- գ
րարէք ըզնա յաւիտեան։

Որ անմահըն մարմնով վասըն փըր-
կութեան մերոյ ըզմահ ճաշա-
կեաց եւ խափանեաց ըզմահու
թագաւորութիւն. բարձր։

Որ յաւէժ կենդանութեան առ-
հաւատչեայ ըզյարութիւն աս-
տուածային մարմնոյն պարգեւ-
եաց մարդկան. եւ եւս առաւել
բարձր արա։

մեծ Ո՛ւրախ լեր աստուածածին, տա֊
ճար անխախտելի. ընդ քեզ մեծա֊
ցուցանեմք։
Ցնծացար անարատաբար, եւ զաս֊
տուած փայլեցուցեր ծնար. ու։
Ե՛րգէ մարգարէն, սուրբ է տաճար
քո սքանչելի արդարութեամբ, եւ
դուռն երկնային. ուրախ լեր աս֊
տուածածին, տաճար ան։
ողր Սուրբ աստուած որ վասն մեր
ընդ մահ ճաշակեցեր, եւ յերրորդ
աւուր յարեար. ողորմեա։
Սուրբ աստուած որ ըզդժոխս ա֊
ւերեցեր, եւ զգերեալսն փրկե֊
ցեր 'ի նմանէ. ողոր։
Սուրբ աստուած որ 'ի յերկինս
համբարձար, ընդ աջմէ հօր նստար
'ի բարձունս. ողոր։
տէր Ա՛ռաքեցար 'ի հօրէ բանդ աս֊
տուած 'ի փրկութիւն ազգի
մարդկան. օրհնեմք ըզքեզ սուրբ
աստուած։
Ի՛ գերեզմանն իջեր թագաւոր ան֊
մահ եւ 'ի հօրէ ոչ մեկնեցար. օր֊
հնեմք ըզ։
Ի՛ յերրորդ աւուր յարեար աս֊
տուածապէս եւ'ի յերկինս համ֊
բարձար. փառք յարութեան քո
տէր. օրհնեմք ըզ։
հրց Ո՛ր վասն մերոյ փրկութեան
իջեր 'ի յերկնից միածին որդի քրիս֊
տոս փրկիչ մեր. փրկեա զմեզ
տէր աստուած հարցն մերոց։
Ի՛ խաչին բեւեռեցար բանդ ըմ֊
բռնելի մարմնով, եւ լուծեր ըզ֊
կապանս մեղաց քրիստոս փրկիչ
մեր. փրկեա զմեզ տէր աս։
Ո՛ր երեքօրեայ թաղմամբ քո մե֊
ռուցեր ըզմահ, եւ յարութեամ֊
բըդ քո կենդանագործեցեր զաշխարհս.
առաւել գովեալ քրիստոս փրկիչ
մեր. փրկեա զմեզ տէր աս։
Ը՛զտէր օրհնեցէք եւ բարձր գ
արարէք ըզնա յաւիտեան։
Ո՛ր ըսպան ըզմահ թաղմամբն իւ֊
րով. եւ յարութեամբն իւրով մեզ
կեանս պարգեւեաց. միայն հա֊
ւատացեալք. օրհ։
Ո՛ր նստիս ընդ աջմէ հօր ծնողի
իւրոյ, եւ մարդասիրապէս խընա֊
մէ զարարածս. քահանայք հոգե֊
ւոր երգով. օրհ։
Ա՛նարատ տաճար բնակարան մեծ
անբաւ բանին աստուծոյ, մարի֊
ամ սուրբ կոյս, զքեզ եւ ըզծը֊
նեալն 'ի քէն մեծացուցանեմք։
Յարգանդի կրեցեր որ յառաջ քան
զյաւիտեանս 'ի հօրէ ըզբանն, եւ
ծնար մարմնով. զքեզ եւ։
Արդ խնդրեմք 'ի քէն անդադար
բարեխօսեա վասն անձանց մերոց,
առ որդին քո միածին, փրկել
ըզմեզ 'ի փորձութենէ եւ յամե֊
նայն վտանգից մերոց։
Դու ես քրիստոս կեանք եւ ողր
յարութիւն ազգի մարդկան. ո֊
ղորմեա։
Դու յարուցեալ նորոգեցեր ըզտի֊
եզերս. ողոր։
Յոյս յարութեան մերոյ աղբիւր
կենաց եւ փրկութեան, ողոր։
Յարուցեալ տէրն 'ի գերեզմա֊ տէր
նէն միածինն որպէս փայլակն, եւ
լոյս փառաց ծագեաց յաշխարհս,
եւ երկինք եւ երկիրըս ցնծային։
Մեծ է յարութիւն աստուածոր֊
դւոյն քանզի դրունք երկնից բա֊
ցեալ եղեն եւ հոտ անուշ բու֊
րեաց յաշխարհս, եւ լըցոյց զարա֊
րածս ամենայն։

Զօրք երկնից իջեալ էին եւ բանակեալ շուրջ ըզգերեզմանաւն, եւ հոգեղէն բարբառովն երգէին. տէր օրհնեալ է քո յարութիւնդ:

հրց Անսկիզբըն բանըդ մարմնացար 'ի կուսէն յանձն առեր կամաւ զխաչն եւ զչարչարանս. անտըւած հարցըն մերոց:

Էակից հօր եւ հոգւոյն բանդ տնտըւած 'ի գերեզման իջեր միանալով անապական. անտը:

Յարեար 'ի մեռելոց յաւուր երրորդի, լուծանելով զիշխանութիւն մահու. անտը:

Դ Որ տէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Հրաշալի ըզյարութիւն աստուածորդւոյն ժողովուրդք բարեբանելով բարձր արա:

Մեսիան գովեցէք ըզյարուցեալն 'ի մեռելոց. քահանայք հոգեւոր երգով բարձր արա:

մեծ Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յեդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս եւայի. յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք:

Դու լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւու լուսոյն ճշմարտի. որով հերքեալ խաւարն անցին. օրհ:

Ըզքեզ ունիմըք բարեխօս կոյս անհարանացեալ. մայր աներատ էմմանուէլի. տաճար բանին հօրն երկնաւորի. օրհ:

ողր Իջեր յերկնից որդի աստուծոյ եւ մարմնացար 'ի սըրբոյ կուսէն, որ անմեկնելիդ ես 'ի հօրէ. ողորմեա:

Եկիր 'ի չարչարանըս կամաւորապէս մատնեալ եւ խաչեցար վասն ազգի մարդկան, եւ 'ի գերեզման իջեր անապական. ողոր:

Զմահ լուծեր եւ զանչխարհս ազատեցեր կարողութեամբ տէր, եւ 'ի մեռելոց յարեար իշխանութեամբ. ողորմեա:

տէր Աքանչելի հրեշտակըն տեառն ցընծութեամբ իջեալ 'ի գերեզմանըն համբաւեր փող յարութեանըն տեառն:

Ի հարկանել փողոյն պահապանքըն զարհուրեցան եւ եղեն 'ի յահէն որպէս մեռեալ:

Զայն եղեւ 'ի հրեշտակէն բարբառ եղեւ ուրախութեան տէր յարեաւ. փառք յարութեանըն տեառն:

Դրօշըն փակելովք երեւեալ յիսուս աշակերտացն եւ ասէր. խաղաղութիւն ընդ ձեզ:

հրց Որ յաթոռ փառաց նըստիս ընդ հօր, օրհնաբանիս 'ի դասուց քերովբէից. օրհնեալ տէր աստուած հարցըն մերոց:

Որ եկիր 'ի փրկել ըզնախահայրն ադամ 'ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն. օրհ:

Որ փոխանակ ծառոյն գիտութեան եղեր ըզխաչ քո տէր. եւ սուրբ ներեցեր մեղ 'ի կողահոս արեբեդ. օրհ:

Դ Որ տէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Որ եղեւ ըզվտանգաւոր երկունըս նախամօրն, ծընանելով 'ի սըրբոյ կուսէն. օրհ:

Որ եբարձ ըզվիշաբեր անիծաբերութիւն բուսաբերին, բեւեռելով 'ի վերայ խաչին. օրհնեցէք եւ բարձր արա:

Որ ճաշակեաց զլեղի դառնութեան վասն ազգի մարդկան. եւ պարգեւեաց ըմպել զարիւն իւր զանապական. օրհնե:

մեծ Զանճառելի զլոյս աստուածութեանն տընօրինաբար կրեցեր ՚ի քում յորովայնի Մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք:

Ի մանանաւոր լուսոյն զարհուրեցան դասք սրովբէիցն. այլ ՚ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր աստուածութեանն Մարիամ մայր եւ կոյս, օրհնու:

Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսեղէն, գերագոյն քեզ հոգւոյն սրբոյ, եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ աստուածածին. օրհնու:

ողբ Որ խոնարհեցար յերկնից ՚ի հայրական ծոցոյ միածին որդի աստուծոյ, եւ առեր մարմին ՚ի սրբոյ կուսէն վասն մերոյ փրկութեան. ողորմեա:

Ընդ մեզ աստուած շրջեցար ընդ մեղաւորացս. եւ կոխեցեր ըզգլուխ վիշապին. եւ շիջան խայթոցք մահաբերին. եւ փրկեցեր ըզտխեղերս. ողորմեա:

Բեւեռեցեր ըզմեղս մեր ՚ի վերայ խաչին. եւ համբերեալ մահու իջեր ՚ի գերեզման. կենդանութիւն շնորհեցեր նըստելոցն ՚ի խաւարի. եւ զօրութեամբ յարեար. ողորմեա:

տէր Հրաշալի ըզյարութիւն աստուածորդւոյն այսօր տեսեալ առաքելոցն. եւ բազմութիւնք հրեշտակացն երգէին երգ նոր անլըռելի ձայնիւ:

Զայն ահեղ գաբրիէլեան փողոյն այսօր գոչէր աւետարանէր, աւետիք են աշխարհի. երգէ:

Լոյս մեծ եւ ահաւոր այսօր ծագեաց սուրբ եկեղեցւոյ յարութեանն ՚ի մեռելոց քրիստոս. երգեսցուք երգ նոր անլռելի ձայնիւ:

Անեղանելիդ աստուած իջեր յերկնից ՚ի յեղականս. եւ անճառելի ծագմամբ տընօրինեցար յարգանդի կուսին արեգակն արդարութեան. օրհնեմք ըզքեզ աստուած հարցն մերոց: հրց

Անմեկնելիդ ՚ի հօրէ եկիր կամաւ ՚ի մահ խաչին. եւ ընդ չարագործսն պատժեալ ՚ի սպանդ վարեցար, այլ ՚ի ծոցոյ հօր ոչ բաժանեցար. օրհնեմք ըզքեզ աստը:

Անմահութեանց տուող քրիստոս իջեր ՚ի հող մահու. կատարելով զբուռումն հոգերգողին եդար ՚ի գբի ներքնումն. այլ ակնարկելով քո ՚ի դժոխս հաներ ըզկապեալսն քաղցրութեամբ, եւ որ նըսջէին ՚ի տապանս. օրհնեմք ըզ:

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա² յաւիտեան: գ

Որ անապական թաղմամբն ելոյծ զանէծս երկրի. իջանելով ՚ի ստորինս ազատութիւն շնորհեաց նըստելոցն ՚ի խաւարի. օրհնե:

Որ կենսաբեր յարութեամբն իւրով ազատեաց զադամեանս ՚ի կեանս անմահ. եւ սուրբ մարմնով եւ արեամբըն հրաւիրեաց ըզմեզ յերկնից յարքայութիւնն. օրհնեցէք եւ բարձր արա:

Որ ըզկեանսն անմահարար մահկանացու բնութեամբս ՚ի քեզ կրեցեր սուրբ կոյս մարիամ. որով մեծ

մեռեալքս որ յադամայ կենդանացաք յուսով յարութեան. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

Որ ըզբանն անեղական զէակն էից գոյացութեանց, անճառաբար ծընար մարմին եղեալ ՚ի փրկութիւն եղականացս. առ նա։

Որ ըզպըտուղն ՚ի քէն կենաց ընծայեցեր մեռեալն ադամայ. զորդ պանծօք քառասնօրեայ քաւեաց զպըտղոյն ճաշակումն, եւ յանվախճան ըզնոյն վերածեաց ՚ի կեանս. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

ողբ. Եկիր ՚ի տեսութիւն անտեսանելիդ աստուած, եւ մարմին զգեցար ՚ի սրբոյ կուսէն. կեցուցիչ եւ յոյս մեր կեցո ըզմեզ։

Խաչի համբերեցեր վասն ազգի մարդկան. եւ մեռեալս չարչարեալ փրկեցեր ՚ի մահուանէ. կեցու։

Եդար ՚ի գերեզմանի կեանք աշխարհի. եւ յարուցեալ յերրորդ աւուր զմարդիկ ՚ի կեանս փոխեցեր. կեցուցիչ եւ յոյս մեր կեցո ըզմեզ։

տէր Երգեսցուք քեզ ընդ հրեշտակս յաղթական օրհներգութիւն։

Որ մահուամբ քո մեռուցեր ըզմահ, եւ յարութիւն պարգեւեցեր համանիւթ բընութեանս. երգեսցուք քեզ ընդ հրեշ։

Որ ցուցար մեզ ճանապարհ նորոգման, եւ մաքրեցեր զաղտեղութիւն յանցանացըն զոր պատրեաց թըշնամին. երգես։

տէր Կանխեցին կանայքն իւղաբերք ՚ի գերեզմանն, եւ տեսին զյարութիւնըն տեառն։

Բացաւ դուռըն յարութեան գերեզմանին կընքելոյ. լոյս ծագեաց տիեզերաց։

Յարեաւ տէրն ՚ի մեռելոց հըզօր զօրութեամբ. հաստատեաց զհիմունս եկեղեցւոյ սըրբոյ։

Թագաւորեաց աստուած ՚ի վերայ հեթանոսաց, եւ լուսաւորդեալ պայծառացոյց աւուրբ զեկեղեցի. ժողովուրդք ըզքրիստոս բարեբանեցէք։ ճշւ

Զգեցաւ տէր զօրութիւն ընդ մէջ իւր էած. քանզի շիջոյց զխայթոց մահու խաչիւն իւրով սըրբով. ժողո։

Յարեաւ աստուած եւ տիեզերք ամենայն նորափետուր զարդարեցան. եւ մանկունքը հաղորդեցան մարմնոյ եւ արեան կենարարին. ժողովուրդք ըզքրիս։



Հարց. Երկրորդ ձայն:

Որ ՚ի յերկնից իջեր անըսկիզըն աստուած բան եւ լոյս. զքեզ ամենեքեան օրհնեսցուք աստուած հարցըն մերոց։ հրց բձ

Որ ՚ի խաչին բեւեռեցար եւ հեղեր զարիւնդ ՚ի փրկութիւն տիեզերաց. զքեզ ամենե։

Որ ՚ի գերեզմանի եդար եւ յարեար ՚ի մեռելոց քրիստոս յաւուր երրորդի. զքեզ ամենե։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ ՚ի խաչին բեւեռեցաւ. եւ ՚ի գործոց ձեռաց իւրոց ապտակեցաւ. եւ կերակուր ընկալաւ ըզ-

լեալ․ ամենայն արարածք գովելով բարձր առա։

Վասն որոյ արեգակն խաւարեալ եւ ցելոյր վարագոյր տաճարին վերուստ ՚ի վայր․ վէմք պատառեալ երկիր շարժեալ․ ամենայն արարածք գովէ։

Թաղեցաւ ՚ի մէջ երկրի եւ ՚ի յերրորդ աւուր յարեաւ աստուածապէս․ եւ ՚ի յերկինս համբարձաւ ատրուած․ ամենայն արարածք գովելով․ բարձր առա։

մեծ Սուրբ եւ աստուածածին մայրն ցանկալի կուսից եւ պարծանք ազգի մարդկան, մայր եւ աղախին մեծացուցանեմք։

Անկէզ մորենի և տաճար ընդհանուր լուսոյն, անարատ եւ անխախտելի կուսութիւն․ մայր եւ։

Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան, եւ առագաստ հրափայլ ծագմանն․ մայր եւ աղ։

ողր Իջեր յերկնից որդի աստուծոյ ազատեցեր զարարածս․ անկանիմ առաջի քո․ ողորմեա ինձ աստուած։

Ի խաչին բեւեռեցար աստուած եւ ըզմարդն ՚ի կապանաց մահու արձակեցեր․ եւ զիս մի անտես առներ, որ մեղօքս եմ մեռեալ։

Ծագումն հօր յանմատոյց լուսոյն․ որ իջեր ՚ի գերեզման կենդանացուցեր զարարածս քո․ եւ զիս մի անտես առներ․ քանզի քեզ միայնոյ մեղայ։

տէր Ի գերեզման քո կանխեցին կանայքն, զիւղս եւ զխունկս բերին ՚ի պատիւ թաղման քո, զի զմեղօք ըզհոտացեալս վերածեր ՚ի կեանս։

Փոխանակ իւղոյն զհաւատս անբերցս եւ զաղաչանս մեր ընդ առաւօտեան կանանցն ընկալ․ որք զողջոյն կենաց լուան Եւայի ունկամբն։

Նոցուն աւետիս առաքելոցն յարեաւ յարուցիչն մեր աւերեաց ըզդժոխս, եւ զթշնամին կապեաց ՚ի յանլոյծ կապանս։



# ԿԱՆՈՆ

## ԱՇԽԱՐՀԱՄԱՏՐԱՆ ԿԻՐԱԿԷԻՆ

Հարց յատուկ. Երրորդ ձայն:

ԵՐԿՐՊԱԳԵՄՔ քեզ քրիստոս որ ՚ի ձեռն սրբոց առաքելոցն ծանուցար մեզ, տէր աստուած հարցն մերոց։ հրց գձ

Եւ աշակերտեալք ՚ի սրբոց առաքելոցն ուսաք փառաւորել զքեզ ՚ի տաճարի սրբութեան քո․ զոր հիմնեցուցեր ՚ի վերայ վիմի հաւատոյ․ տէր աստ։

Նկայք ժողովուրդք որք ՚ի հեթանոսաց, ցնծութեամբ տօնեսցուք զնաւակատիս սուրբ եկեղեցւոյ․ բարեբանելով զտէր աս։

Ըզտէր օրհնեցէք եւ առաւել բարձր արարէք զնա յաւիտեան։ գ

Ընդ անմարմնական բազմութիւնս զքրիստոս թագաւորն որ եկուորի այսօր ՚ի սուրբ եկեղեցի, ամենայն ազինք գովեցէք եւ առա։

Նկայք հաւատացեալք սուրբ երրորդութեանն յեկեղեցիս օրհնեցէք զաստուած․ արարէք տօնս ուրախութեան մինչեւ յանկիւնս սեղանոյ․ եւ առա։

մեծ Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարաներ հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ։

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անմարմնաբար բնակիլ հաճեցաւ 'ի քում յորովայնի. ու։

Որ բոցեղէն սրովբէիւք շուրջանակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հողեղինի յայտնեցաւ. ու։

ողր Այսօր հրեշտակաց բազմութիւնքն տօնակից լինին ընդ մեզ. քանզի երկնաւոր թագաւորն եկաւ 'ի սուրբ եկեղեցի։

Խնդա եւ ցնծացիր հարսանցեալդ աստուծոյ եկեղեցի. քանզի ընդ քեզ տէրն տերանց ընտրեաց եւ հաճեցաւ բնակիլ 'ի քեզ։

Լուսաւորեա լուսաւորեա կաթողիկէ եկեղեցի. քանզի 'ի քեզ շող աստուածեղէն 'ի հօրէ լուսոյ ծագեաց. եւ լուսաւորեաց ըզմանկունս քո։

տէր Որք արժանաւորեցայք 'ի կոչումն փառաւորութեան քրիստոսի աստուծոյ մերոյ. եկայք ժողովուրդք երգեցէք տեառն երգ նոր. երգեցէք զանուն նորա ձայնիւ ցնծութեամբ յօրհնութիւն 'ի նոր։

Զօրացեալքս 'ի քեզ քրիստոս ժողովուրդք հաւատացելոց, ճշմարիտ խոստովանութեամբ օրհնեմք զխորհուրդ աստուածային կենաբեր տնօրէնութեան քո. փառաւորելով զահաւոր եւ զըսքանչելի անուն քո, տէր տէր ըմեծ 'ի վերայ ամենայն երկրի։

Ուրախ լեր եկեղեցի սուրբ հարսն երկնաւոր խորհրդոյն 'ի փառս ամենասուրբ երրորդութեանն. որ համագոյ իշխանութեամբն իւրով զարդարեաց ծագմամբ լուսոյ, պսակեալ զքեզ 'ի պատիւ ամենայն սրբովք իւրովք։

---

Անպատկան բանդ աստուած որ իջեր 'ի մէջ հնոցին, փրկեցեր զերիս մանկունսն ցողովն օրհնութեան. օրհնեալ ես տէր աստուած։ հրց բձ

Որ 'ի բաբելոնի ըզբոց հրոյն շիջուցեր, եւ զմանկունսն անպարտեցուցեր. եւ նոքա երեքեանքն գովէին սաելով. օրհ։

Որ յարգանդի կուսին բնակեցար, եւ ծնար որպէս մանուկ. որ ըզմահ կոխեցեր եւ զյարութիւն քո ցուցեր. օրհ։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք յաւիտեան։ գ

Զանսկիզբն զամենասուրբ զերրորդութիւնն, որ նոյն ինքն իւր անեղ բնութեամբն գոյացոյց յոչընչէ զամենայն արարածս. ընդ նմա հոգեւոր երգով օրհ։

Զհամագոյական էութեան բանն 'ի հօրէ, որ լոյս մեծ ծագեաց անճառելի ծագմամբ, որ հաստատեաց զերկինս եւ զիմանալի զօրս հրեշտակաց. ընդ նմա։

Զանմահ զերկնաւոր զթագաւորութիւնն, որ արարչագործ ստեղծմամբ վայելչացոյց զերկինս եւ զերկիր 'ի փառս ամենասուրբ երրորդութեանն. երեքսրբեան հրեշտակային օրհնութեամբ ընդ։

ժեծ Ընդ քեզ կոյս եւ մայր եւ բնա-
կարան աստուածային ներմարդու-
թեանն, գոհաբանեմք եւ վերօր-
հնեմք զեղեալ փրկող կենդանու-
թեան ազգի մարդկան. վասն որոյ
ընդ քեզ աստուածածին եւ կոյս բա-
րեբանեմք ընդմայր եւ զաղախին
փրկչին մերոյ։

Ծընունդըն հօր եւ հին աւուրց
անժամանակն յաւիտենից. ժամա-
նակաւ յորովայնէ քում բնակեցաւ
եւ ի հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ։

Ծնեալն ի քէն ի խաչ ելեալ եւ
ի յաթոռ փառաց ընդ հօր. անար-
գեալ ի մարդկանէ փառաւորու-
թեամբ էութեամբ երկըրպագեալ.
վասն որոյ։

Ընդ քեզ ոչ միայն որդիք մարդկան
այլ եւ վերին զօրութիւնք. դասք
անմարմնոց հոգեղինաց հրեղինաց
զուարթնոց եւ հրեշտակաց, գո-
հաբանեն եւ վերօրհնեն եւ փա-
ռաւորեն ընդմայր եւ զա։

ուղ Առաջին պտուղն առաջին
ծառոյն ըզնախաստեղծըն մահացոյց.
իսկ որդին միածին եկն եւ փըր-
կեաց զմեզ։

Զչարչարանս ի յանձն առեր ըզ
խաչի յարուցիչ մեռելոց. ջընջեա
զձեռագիր իմոյ յանցանաց։

Կենդանութիւն ի գերեզմանի
եդար վասն ի հողոյ ստեղծեալ
մարդոյն. ըզմեղօք մեռեալ զանձն
իմ կենդանացո։

ուէր Եկին ի գերեզմանն առաւօ-
տեան սուրբ կանայքն. յօծանել
խընկել զանմահական մարմինն։

Գուշումըն հրեշտակին քաջալերէր
ըզկանայս ասելով. ցընծացէք յա-
րեաւ որպէս յառաջն ասաց։

Լուեալ ի հրեշտակէն զաւետիս
յարութեանըն, պատմէին աշա-
կերտացն եթէ յարեաւ քրիստոս։

Որ թագաւորդ ես յաւիտե- հրց
նից, տէր եւ արարիչ ամենայն լի-
նելութեան. օրհնեալ ես տէր աս-
տուած հարցըն մերոց։

Որ սպասաւորեալդ ես ի սերով-
բէից եւ փառաւորեալ յանմար-
մնական բանականութեանց. այսօր ի
դահճացըն մերկացեալ եւ ի զի-
նուորաց բաժանեցար վասըն մե-
րոյ փրկութեան. օրհ։

Այսօր ըզկենարարըն մեր սուրբ
ըզխաչն օրհնեսցուք. քանզի ի վե-
րայ նորա բաշխեցաւ մեզ պարգեւ
անմահութեան. տէր աստ։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր գ
արարէք ընդ նա յաւիտեան։

Այսօր նշան սուրբ խաչին ի
յերկրի երեւեցաւ. օրհ։

Այսօր ընդդէմ թշնամւոյն զէն
անպարտելի ցուցաւ մեզ.
օրհնե։

Զքեզ հայր յառաջ քան զյաւ- ժեծ
իտեանս բարեբանեն դասք ան-
մարմնոց հրեշտակաց. ձայնիւ եր-
գով գոչեն եւ աղաղակեն. աս-
տուած աստուծոց եւ տէր տերանց
փրկիչ գովեալ։

Առաքեցեր զքո միածին որդի մար-
մնանալ ի սուրբ կուսէն. եւ անա-
րատ ծնանիլ յորովայնէ անա-
պական, բառնալով ըզմեր նեղու-
թիւնս. աստուած աս։

Տնօրէնք բարի յերուսաղէմ երե-
ւեցաւ հեթանոսաց. զի արարիչն
յաւիտենից տղայ եղեւ յոր-
դեգրութիւն կենաց կուսէ. աս-
տուած աստու։

ողր Որ կամաւոր խաչելութեամբ քո տէր բարձեր ըզմեղս. ըզքեզ բարեբանեմք ամենեցուն յարութիւն։

Որ երեքօրեայ թաղմամբ քո տէր մեռուցեր ըզմահ. ըզքեզ բա։

Որ լուսափայլ յարութեամբ քո տէր կենագործեցեր զաշխարհս. ըզքեզ բարեբա։

տէր Զայն աւետաւոր հրեշտակին զուարճացոյց զառաւօտեան կանայսն. ըզքրիստոսի պատմելով ըզյարութիւն։

Մի յուսահատիք տրտմութեամբ այլ ցնծացէք բերկրելով, խընկաբերք աստուածայնոյն եւ փափագողք յարութեանն։

Փութացարուք 'ի գալիլեա աւետարանեցէք աշակերտացն, եթէ յարեաւ քրիստոս եւ խափանեաց ըզմահ։

հրց Այսօր բեւեռեալ քո 'ի խաչին. եւ զինուորին խոցեալ զանարատ ըզկողդ. տէր աստուած հարցըն մերոց։

Իսկ բըղխումըն սուրբ արեան քո լուացն ըզտիեզերս յանիծիցն ադամայ. տէր աստ։

Պարգեւատու բարեաց եւ տըւող ողորմութեան, եդար 'ի գերեզմանի. տէր աստ։

դ Ըզտէր. Ամենայն գործք օրհնեցէք։

Որ յանէից գոյացոյց արարողըն իւր կերպմամբ, զգաստացեալ օրհնաբանիչք եղաք. ամե։

Որ զդատակնիք մահու եղեալ իւրով անշընչացեալ մարմնովն ըզհոգացեալ մարդոյն. ամե։

Որ զառաջնածնականըն քաղցրացոյց ճաշակմամբ դառնութեան. զի հաղորդեսցուք մարմնոյ եւ արեանն տեառն. ամենայն գործք օրհնեցէք։

Բանն անապական 'ի հօրէ, որ վասըն մեր մարմնացաւ եւ ցընծութիւն աշխարհի յայտնեցաւ. ըզքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։ մեծ

Զի որում ոչըն հանդուրժէին բոցանըշոյլ սերովբէքն. նա բնակեցաւ 'ի քում յորովայնի. ըզքեզ բարեբա։

Յորմէ սարսեալ դողային փայլակնացայտ 'ի լուսոյն. 'ի գիրկըս քո ըզնա ընկալար. ըզքեզ բարե։

Հայր անսկըզբըն, որ վերօրհնեալդ ես 'ի դասուց քերովբէից. ըզքեզ աղաչեմք ողորմեա քոյոց հաւատացելոց։ ողր

Բանդ 'ի հօրէ որ յառաջ քան զյաւիտեանս որդի փառակից հօր. ողորմեա քոյոց հաւա։

Որ նըստիս 'ի քերովբէս եւ տեսչութեամբ խընամես զարարածըս քո ճըշմարիտ սուրբ հոգի. ողորմեա քոյոց հաւա։

Այսօր զուարճացան տիեզերք ամենայն ճըշմարիտ յարութեամբ աստուածորդւոյն. քանզի զդըժոխս աւերեաց եւ գերեաց զարգելեալսն 'ի նմա։ տէր

Այսօր լուսափայլեալ մեծապայծառ ծագմամբ հրեշտակապետն 'ի վերայ վիմին, կանանցն աւետէր ասելով. զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։

Այսօր բերկրեցան կանայքն իւղաբերք աւետեօք յարութեան աստուածորդւոյն. դարձան յա-

ռաքեալսն առելով, յարեաւ աստուած:

հրց Որ գթացար 'ի սուրբ մանկունս եւ իջեալ փրկեցեր 'ի բորբոքեալ բոցոյն. ընդ քեզ միշտ օրհնեմք աստուած հարցն մերոց:

Որ ողորմեցար ազգի մարդկան եւ իջեալ մարմնացար 'ի սուրբ կուսէն. ընդ քեզ միշտ:

Որ երեքօրեայ թաղմամբ քո տէր շարժեցան հիմունք երկրի. ըզգերեզմանս բացեր ըզմեռեալսն յարուցեր. ընդ քեզ միշտ օրհ:

գ Եցէք. Որ պայծառացոյցն ըզփայտ խաչին, տարածանելով զիւր զանարատ բազուկսն, եւ ետ զէն յաղթութեան արարածոց իւրոց. ամենայն գործք օրհնեցէք:

Իջանելով 'ի ստորին կողմ երկրի, եւ դողալով սասանեցան դըժոխք. քանզի որ 'ի նմա արդարեալքն աղաղակէին առ տէր. ամէ:

Եւ զարդարեալսն 'ի բռնութենէ մահու ազատեցոյց երեքօրեայ յարութեամբն իւրով. ամէ:

մեծ Ըզխոստութիւնդ քո աստուածածին անարատ. զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեանն, մեծացուցանեմք:

Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ քրիստոս աստուած եւ փրկիչ անձանց մերոց, մեծա:

Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք:

ողղ Որ խաչեցար եւ թաղեցար վասն մերոյ փրկութեան եւ յարեար 'ի մեռելոց. խնայեա 'ի ժողովուրդս քո միայն մարդասէր:

Որ ըզդըժոխս աւերեցեր եւ ըզգերեալսն փրկեցեր, եւ մեզ կեանս շնորհեցեր. խնայ:

Որ 'ի յերկինս համբարձար եւ ընդ աջմէ հօր նստար. 'ի միւսանգամ քո գալստեանն խնայ:

Աքանչելի կանայքն աներկիւղ եկին 'ի տեսանել ըզգերեզմանն. զի կատարեալ սէրն մերժեաց զերկիւղն: տէր

Եկին 'ի խընկել ըզտէրունեան մարմինն, եւ տեսին յարուցեալ 'ի գերեզմանէն. եւ վերստին լոյսն ծագեաց յաշխարհս:

Քարոզեաց հրեշտակն ըզյարութիւնն տեառն, եւ բացան գերեզմանք ննջեցելոց. եւ յարութիւն տեառն յաղթեաց մահու:

Որ զարդարեալ նորոգեցեր զարարածոց գոյացութիւնս համագոյ հօր եւ հոգւոյն. ընդ քեզ միշտ օրհնեմք աստուած հարցն մերոց: հրց

Որ կամաւոր խոնարհութեամբդ քո յանձն առեր ըզչարչարանս 'ի խաչին բեւեռեցար. ընդ:

Որ զմահացու մեր բնութիւնս վերստեղծեր կենդանութեամբ հրաշափառ քո յարութեամբդ. ընդ քեզ միշտ օրհ:

Ըզտէր օրհնեցէք գովեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Որ էջն 'ի գերեզման եւ աւերեաց ըզդըժոխս մեծ եւ հզօր զօրութեամբ, եւ յարեաւ 'ի մեռելոց. օրհնեցէք գովէ:

Լուսաւորիչն աշխարհի որ ազատեաց 'ի մեղաց ըզտիեզերս ամենայն, նորահրաշ յարութեամբն իւրով. օրհնեցէք գովէ:

մեծ Ըզքեզ ամենօրհնեալ աստուածածին, մայրդ լուսոյ եւ անագաստ աստուածոյ բանին, մեծացուցանեմք:

Ըզքեզ պայծառ երկինք եւ ամպ լուսեղէն, ծնող արարչին եւ մորենի անկիզելի, մեծացու:

Ըզքեզ դուռն երկնից եւ ճանապարհ արքայութեան, բարձող անիծից եւ տուիչ հոգեղէն, մեծա:

ողբ Եկիր ՚ի չարչարանըս չարչարանացըն լուծիչ, բեւեռեցար ՚ի խաչին, լուծեր ըզկապանըս մեղաց մերոց. Քրիստոս յոյս յարութեան մերոյ ողորմեա:

Իջեր ՚ի գերեզման աւերեցեր ըզդըժոխս, եւ յարուցեալ յերրորդ աւուր զաշխարհըս լըցուցեր խընդութեամբ. Քրիստոս յոյս յա:

Մըտեր առ աշակերտսըն քաջալերել ըզնոսա. եւ խոստացար լինել ընդ մեզ զամենայն աւուրըս կենաց մերոց. Քրիստոս յոյս յա:

տէր Կանխեցին սուրբ կանայքն ընդ առաւօտն ՚ի գերեզմանն, եւ զաւետիս յարութեան ըզձայն ՚ի հրեշտակէն լուեալ, եթէ յարեաւ աստուած:

Թողեալ ըզտրտմութիւն երջանիկ եւ սուրբ կանանցն, եւ խընդութեամբ ընթանային պատմել աշակերտացն, եթէ յար:

Զըսքանչելի եւ ըզհրաշագործ ըզյարութիւնըն Քրիստոսի առաքելոցն ըստուգապէս տեսեալ, ընդհանուր քարոզէին, եթէ յար:

ճչու Թագաւորին յաւիտենից մատուցուք զօրհնութիւն որ ՚ի կուսէն մարմնացաւ. հաստատեաց զաշխարհս ՚ի հաւատս անսասանելի. փառք նըման այժմ եւ յաւիտեան:

Որ կամաւ համբերեր մահու խաչի աստուած բանն եւ եհեղ զարիւն իւր սուրբ ՚ի փրկութիւն տիեզերաց. փառք նմ:

Աստուածապէս յարուցեալ ՚ի նորափոր ՚ի վիմէն լուսազարդեաց զեկեղեցի իւր սուրբ, ՚ի փառս եւ ՚ի գովեստ անուան իւրոյ. փառք նըման այժմ եւ:



Հարց. Աւագ կողմն:

Որ յերկնային զինուորութեանցըդ միշտ երկրպագիս Քրիստոս Թագաւոր ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն, օրհնեալ ես Տէր աստուած հարցըն մերոց: հրց բկ

Որ խոնարհեցար յանճառ փառաց եկեալ իշխանութեամբ ՚ի մահ խաչին, դըղըրդեցան դըժոխք յահեղ փառաց քոց. օրհ:

Եւ հրաշափառ քո յարութեամբըդ կենագործեցեր զիս զմեղօք ըմեռեալս. եւ համբարձար փառօք ՚ի յերկինս. օրհ:

Ըզտէր. Ըզքրիստոս թագաւորըն քաղցրաձայն երգով օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Որ պատուական խաչելութեամբ հրաշագործեաց ըզփրկութիւն յաւիտենից նընջեցելոցն. քաղց:

Զյարուցեալն իշխանութեամբ ըզփառակից Հօր եւ սուրբ Հոգւոյն. ընդ վեցթեւեան սրովբէագունդ դասս. գովեցէք եւ:

Ըզքեզ աստուածածին որ վերօրհնիս ՚ի զօրաց հրեշտակաց, ազգ մեծ

մարդկան կենդանենայց մեծացուցանեմք։

Ընդ քեզ բնակ հրեղէն աստուածութեանն յիմանալի զօրացն երանեալ, անզգ մայր։

Ընդ քեզ մայր էմմանուէլի, մարգարէին յառաջ գուշակեալ, անզգ մարդկան կեն։

ողր Թուլնս իմ. Ողորմեա ինձ աստուած իմ ողորմեա։

Որ 'ի յերկնից իջեր բանդ աստուած, եւ վասն մեր մարմնացար 'ի սրբոյ կուսէն. ողորմ։

Որ 'ի խաչին տարածեցեր զանարատ բազուկս քո, եւ վասն մեր հեղեր զարիւն քո սուրբ. ողորմ։

Որ 'ի գերեզմանի եդար անապական, եւ յարուցեալ նորոգեցեր զաշխարհս. ողորմ։

Որ 'ի յերկինս համբարձար ամենակարող, եւ ընդաջմէ հօր նստար յաթոռ փառաց. ողորմ։

տէր Քո յարութեանդ փառք վայելէ երկրպագնամբս տէր։

Օրհնեալ է քո յարութիւնդ աստուած, որ ըզմահ մահու ծանուցեր քոյին կամաւոր մահուամբդ. քո յարու։

Գոչումն ահեղ հրեշտակին 'ի վիմին որ քարոզէր առ սուրբ կանայսն, յարեաւ տէրն 'ի մեռելոց. քո յարու։

հրց Անսկիզբն աստուած եւ ամենազօր, որ առաքեցեր զմիածին որդիդ քո 'ի փրկութիւն մեզ. օրհնեմք զքեզ աստուած հարցն մերոց։

Ծնար 'ի հօրէ անճառ միութիւն, 'ի կուսական որովայնէ երեւեալ մարմնով 'ի փրկութիւն մեզ. օրհ։

Որ նստիս 'ի քրովբէս եւ յանմարմնոց վերօրհնիս քրիստոս սրբառաց ձայնիւ. համբերելով չարչարանաց 'ի խաչին բարձրացար, խորտակեցեր զզօրութիւն մահու. օրհնեմք զքեզ աստուած հարցն մերոց։

Ընդ տէր. Ամենայն ազինք զքրիստոս գովեցէք, զյարուցեալն 'ի գերեզմանէն անապական մարմնով։ գ

Զքարոզ հրեշտակին լուեալ կանայսն ընթացեալ պատմէին աշակերտացն ասելով, յարեաւ աստուած. ամե։

Եւ մեք ընդ նոսին երգակցեալ հանցուք զօրհնութիւն փրկողին զմեզ ասելով յարեաւ աստուած. ամե։

Սուրբ լոյս եւ ամպ հովանի մեծ

սուրբ կոյս, որ ցօղեցեր 'ի մեզ զցօղն երկնային. զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։

Անկէզ մորենի եւ սափոր հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղն կենաց 'ի քէն տուաւ մեզ. զքեզ բարեբանեմք աստ։

Անծնից լուծիչ եւ քաւիչ մեղաց սուրբ կոյս, որ զանտանելին յեւց 'ի գիրկս քո բարձեր. զքեզ բարեբանեմք աստ։

Իջեր տէր եւ մարմնացար 'ի ողր

կուսէն. եւ զհողեղէն բնութիւնս ազատեցեր 'ի մեղաց։

Ելեր տէր բեւեռեցար 'ի խաչին. ըզմեռանիլ յանձն առեր կենդանատու մեռելոց։

Եդար տէր 'ի նորափոր 'ի վիմի. եւ մատնեալ կընքեցար զանձըդ կենաց աշխարհի։

Յարեար տէր աւերեցեր ըզդը-

ժողս. 'ի յերկինս համբարձար
եւ ընդ աջմէ հօր նստար։

տէր Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։
Ընդ արշալուսն առաւօտուն կանխեալ կանանցն 'ի գերեզմանն ասելով, քրիստոս յար։

Եւ առ նոսա ասէր հրեշտակն, զի խնդրէք զկենդանին ընդ մեռեալս, քրիստոս յար։

Փութացարուք ով սուրբ կանայք եւ պատմեցէք աշակերտացն ասելով, քրիստոս յար։

հրց Որ զծառայի զկերպարանս յանձն առեր վասն մեր, եւ խոնարհեալ քո կամաւ 'ի մեր բնութիւնս. օրհնեալ ես տէր աստուած հարցն մերոց։

Որ խաչեցար հաճութեամբ հօր միածին որդի, եւ թաղմամբն երեքօրեայ զզարթնութիւն մահու լուծեր. օրհ։

Որ փառաւոր յարութեամբդ քո կանգնեցեր զմահացեալսն. 'ի յերկինս համբարձար ընդ աջմէ հօր նստար. օրհ։

գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։

Հրաշալի յարութեամբ փրկչին նորոգեցան արարածք. միաբանութեամբ օրհ։

Դողալով սարսեցին դժոխք տեսանելով զթագաւորն անմահ. միաբանութեամբ օրհ։

մեծ Որ ողորմեցար 'ի մեղս ծնելոյ մարդկան հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ զկոյսն սուրբ զծնող որդւոյդ միածնի. մաղթանօք սորա տէր մեզ ողորմեա։

Որ ցօղեցեր 'ի մեզ յամպոյ օրհնութեան որդիդ այսօր զկոյսն մարիամ. յորմէ ծնար մարմնով եւ բարձեր նովաւ զմեղս նախաստեղծին ադամայ. մաղ։

Որ մաքրեցեր հոգիդ սուրբ զսիրտ եւ զմարմին մօր քո փառակցին. այսօր ամուլ ծնողաց նորին ետուր զմայր բանին զօրհնիչն եւայր. մաղ։

Թիւնս իմ. Որ իջեր յերկնից բանդ աստուած, առեր մարմին ըստ մերոյ բնութեան, վասն յանցանաց նախաստեղծին. ողորմեա մեզ աստուած։ ողբ

Ի խաչին բեւեռեցար կամաւորապէս փրկիչ, եւ զխոցումն յանձն առեր 'ի զինուորէն, վասն յանցա։

Ի գերեզմանի եդար անապականաբար փրկիչ, եւ զթաղումն յանձն առեր զերեքօրեայ. յարուցեալ լոյս ծագեցար ստուերականացս. ողորմեա մեզ աստուած։

Առաւօտեան սուրբ կանայքն տէր
հանդերձ իւղովք եւ խնկովք եկին 'ի սուրբ գերեզմանն. եւ ողբալով խնդրէին զանմահ փառաց թագաւորն։

Եւ 'ի ձայնէ հրեշտակին զուարճացան տրտմագգեացք առաւօտեան սուրբ կանայք. զի խնդրէք զկենդանին ընդ մեռեալս. յարեաւ փառաց թա։

Աստուածասէր սուրբ կանայք փութացարուք հետեւեալ, պատմող լինել պետրոսի եւ յովհաննու սիրելւոյ. յարեաւ փառաց թագաւորն։

հրց Որ էիր յառաջ քան զյաւիտեանըս Բանդ Աստըւած. վասն մերոյ փրկութեան առեր մարմին 'ի սուրբ կուսէն. ընդ քեզ օրհնեմք Աստըւած հարցըն մերոց։

Որ ըզկերպարանըս ծառայի ճըշմարտապէս յանձն առեր. եւ խաչի եւ մահու համբերելով իջեր 'ի գերեզման. ընդ քեզ օրհնեմք Աստը։

Որ երեքօրեայ թաղմամբ փրկիչ սուրբ զյարութիւնդ քո ցուցեր. եւ վերըստին նորոգեալ կեցուցեր ըզհընացեալըս մեղօք. ընդ քեզ օրհնեմք Աստը։

գ Ըզտէր օրհնեցէք. Ամենայն ազինք բարձր արարէք։

Զխաչեալն 'ի մէջ երկրի եւ զեդեալն 'ի նոր գերեզմանի, ամե։

Զյարուցեալն իշխանութեամբ եւ զաւերողըն դըժոխոց, ամենայն ազինք բար։

մեծ Ուրախ լեր մայր լուսոյ մարիամ, երկիր բանաւոր արեգականն օթարան. լեր բարեխօս վասն անձանց մերոց։

Խընդա տաճար բանին Աստուծոյ. բարձող տրտմութեան նախամօրն եւայի. լեր բա։

Ցընծա իմանալի արեւելք. քանզի քեւ ծագեաց մեզ լոյս երեւանց քրիստոս. լեր բա։

ողր Որ համագոյդ ես հօր եւ սուրբ հոգւոյն, անբաժանելի էակ միութիւն, խոնարհեցար 'ի բարձանց եւ առեր մարմին 'ի կուսէն յաղագս անկելոյն յանլուծիչ կենաց բանսարկուին խաբմամբ։

Որ դատաւորդ ես ծածկելոց գիտող. այսօր 'ի հողոյ դատապարտեալ բարձար 'ի խաչ եւ լեղեաւ կերակրեցար յաղագս անկելոյն 'ի ճաշակմանէ մահաբեր պըտղոյն։

Որ կենդանութիւնդ ես ամենեցուն. այսօր ըզմահ խաչի 'ի յանձն առեր. եդար 'ի սիրտ երկրի եւ յերրորդ աւուր յարեար. շնորհեա մեզ վերածիլ ընդ քեզ յանապատում 'ի կեանս։

Կանխեցին կանայքն ընդ առաւօտն 'ի գերեզմանն հանդերձ խընկովք։ աէր

Բերելով զիւղս անուշունս 'ի յօծումըն կենարար մարմնոյ փըրկչին մերոյ։

Եւ հրեշտակըն զօրութեամբ գոչելով աղաղակէր յարեաւ քրիստոս։

Կամաւորութեամբ եկիր 'ի չարչարանս եւ 'ի ծառայէ ապտակեցար. օրհնեմք ըզքեզ Աստըւած հարցըն մերոց։ հրց

Տարածեցեր ըզձեռըս քո 'ի վերայ խաչին եւ ընդ անօրէնըս համարեցար. օրհ։

Որ զմեռանիլ յանձն առեր վասն արարածոց, եւ 'ի զինուորէն գեղարդեամբըն խոցեցար. օրհ։

Ըզտէր. Ըզնա հոգեւոր երգով բարձր արարէք. գ

Որ ճոխաբար յօժարութեամբ եկեալ 'ի նորոգումն եղծեալ մարդոյն, եւ խաչի յանձն առնու ըզմահ. ըզնա հո։

Որ էջն 'ի ստորին կողմ երկրի եւ դողալով սատանեյան դըժոխք. այսօր յարուցեալ վերածեաց ըզնընջեցեալսն. ըզնա հո։

մեծ Մայր լուսոյն Մարիամ անհարսնացեալ, օրհնեալդ ի կանայս։

Զլոյսն անստուեր յարգանդի կրեցեր, օրհ։

Մի՛ դադարիր վասն մեր բարեխօսել, օրհ։

ողր Որ յաթոռ փառաց նստիս Բանդ Աստուած, խոնարհեցար ի հայրական ծոցոյ, առեր մարմին ի Կուսէն, վերականգնելով ի տեղի ըստորանկեալ լուսոյն զհողացեալ բնութիւնս։

Որ կանգնեցեր ըզխաչ քո ի մէջ երկրի, եւ սովաւ ըզպարտեալսն դուռըն դրախտին բացեր նախաստեղծին, կենագործելով ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն։

Եւ զօրութեամբ խաչի քո Քրիստոս հիմնեցուցեր զկաթուղիկէ եկեղեցի բնակարան սուրբ Երրորդութեանդ. լուսաւորելով ըզհեթանոսս ի սմա կըրկնակի ծնընդեամբ։

տէր Ըզպայծառութիւն Քրիստոսի ամենեքեան օրհնեսցուք. զի նա միայն Աստուած փառաւորեալ յաւիտեան։

Ըզճառագայթ յարութեանն տեսանելով հրեշտակին, նա զօրանայր ի պատմել զկենսաբեր յարութիւնն։

Զայն աւետեաց լսէին առաւօտեան սուրբ կանայքն. ի հրեշտակէն դառնային ուրախութեամբ յառաքեալսն։

տէր Զտիեզերական խնդութեանցն աւետիքս երանելի կանանցն ուսեալք ի հրեշտակէն, աներկիւղ խնդութեամբ եւ բերկրալից ուրախութեամբ ընթանային պատմել աշակերտացն ասելով։

Զոր մահուն երկիւղիւ ընդ մեռեալս համարեալ կարծէաք, նա ինքնիշխանութեամբ յարուցեալ զմահու ելոյծ զիշխանութիւն, եւ կենդանութիւն պարգեւեաց ազգի մարդկան։

Այլ ի բաց եդեալ ըզհրէական երկիւղին ըզկարծիս, նախաժամանեցին ի պատիւ այնորիկ որ մահուամբն ելոյծ ըզմահ, եւ անմահութիւն պարգեւեաց ազգի մարդկան։

Օրհնութիւն ի բարձունս տնօրինեցելոյն ի կուսէն թագաւորին մերոյ. ալէլուիա ալէլուիա։ ճչւ

Օրհնութիւն ի բարձունս անսասանելի եւ հաստատուն յուսոյն մերոյ. ալէ։

Օրհնութիւն ի բարձունս անբաժանելի եւ միանական սուրբ երրորդութեանն. ալէ։



Հարց. Երրորդ ձայն:

Փառաւորեմք ըզքեզ տէր աստուած հարցըն մերոց։ հրց գձ

Որ ըզցօղ անապական արեանդ ցօղեցեր տիեզերաց ի վերայ խաչին. օրհնեմք ըզքեզ միշտ եւ փառաւորեմք։

Որ թաղմամբն երեքօրեայ յարուցեալ ըզլոյս ծագեցեր տիեզերաց. օրհ։ գ

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ ի բարձունս ել եւ գերեաց ըզգերութիւն, եւ ետ պարգեւս որդւոց մարդկան. օրհ։

Եւ 'ի մեռեալս ազատ անուանց օգնականի, քահանայք օրհ:

ձեձ Աստուածածին երկնային դրան աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ:

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անպականաբար բնակիլ հաճեցար 'ի քում յորովայնի. ու:

Որ բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հոգեղինի յայտնեալ. ու:

ողբ Եկիր հօր կամաւորութեամբ եկիր 'ի չարչարանս. զչարչարանս յանձն առեր. խաչի համբերելով իջեր 'ի գերեզման:

Իւղաբերիցն եկեալ 'ի գերեզման փրկչիդ. զիւղս անոյշս բերին, 'ի խնկել զանապական մարմինդ:

Աւետիս լուեալ 'ի հրեշտակէն որ ասէր, տէր յարեաւ 'ի մեռելոց ձեզ կեանս պարգեւեաց:

տէր Իւղաբեր եւ սուրբ կանայքն ողբալով փութապէս եկին 'ի գերեզման քո տէր, 'ի խնկել զանապական մարմինդ:

Բարբառ աւետաւոր հրեշտակին որ գոչէր առ երջանիկ կանայսն, զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. քանզի յարեաւ տէր եւ աւերեաց ըզդժոխս:

Պատմեալ երանելի կանանցն զյարութիւն տեառն աշակերտացն. ուրախացեալք ընթանային պետրոս եւ յովհաննէս 'ի կենսատու գերեզմանն:

հրց Փառաւորեալ որդի աստուծոյ. որ եկիր կամաւ 'ի չարչարանս. տէր աստուած հարցն մերոց:

Տարածեցեր զամենազօր բազուկս քո 'ի վերայ խաչին. եւ երկիրս հիացեալ սասանեցաւ եւ դողալով երերիւր 'ի յահէ փառաց քոց. տէր աստուած:

Եւ տեսեալ արեգականն զարարիչդ 'ի վերայ խաչին, չհանդուրժեալ չարչարանաց արարչին խաւարեցոյց ըզլոյսն 'ի մէջօրէի 'ի յահէ փառաց քոց. տէր աստուած հարցն մերոց:

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան: գ

Եւ զինուորըն գեղարդեամբըն յարձակեալ խոցեաց զկող կենարարին. բարձր արա:

Ուստի աղբիւր կենդանարար բըղխեալ լուաց զտիեզերս 'ի մեղաց. բարձր արա:

Զանճառելի լուսոյ մայր, եւ ըզբնակարան անսկզբնակից որդւոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք: ձեձ

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանձնաւոր տաճար աստուծոյ բանին. օրհ:

Զբոլորից փրկութեան մայր, որ զանտանելին յղեց 'ի յարգանդի եբարձ. ըզնա ամենեքեան օրհնութեամբ մեծամք:

Յամենայնի բազումողորմ աստուած. նայեա յիս գթութեամբ եւ խնայեա. զի դու միայն ես մարդասէր: ողբ

Եւ խաչիւդ քո կենարարաւ պահեա եւ յարութեամբդ քո փրկեա եւ ապրեցո. զի:

Եւ 'ի միւսանգամ 'ի գալստեան քո տէր, վերըստին զիս նորոգեա եւ ապրեցո. զի:

տէր Այսօր յարութիւն Քրիստոսի տօնեցէք հաւատացեալք ՚ի մի Աստուած Հայր ամենակալ։

Այսօր եւ կանայքն իւղաբերք աւետիս տալով առաքելոցն օրհնեն զԱստուած զՀայր ամէ։

Այսօր եւ հրեշտակք ՚ի յերկինս հնչեւոր հնչմամբ երգով. օրհնեն զԱստուած զՀայր ամէ։

հրց Որ յաւիտենից ես Աստուած եւ տէր ամենայն կենդանութեան. խոնարհեցար ՚ի չարչարանս համբերելով խաչի եւ մահու. զքեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց։

Որ ամենայն բարութեանց ես տէր եւ ՚ի քրովբէական աթոռն նստիս, եդար ՚ի նորաձեւ վիմի անապական մարմնով. զքեզ օրհ։

Որ էակից ես Հօր եւ սուրբ Հոգւոյն, իջեր ՚ի դժոխս փրկեցեր զգերեալսն աւերելով զմահ. զքեզ օրհ։

գ Ըզտէր. Երգով օրհնութեամբ բարձր արարէք յաւիտեան։

Որ ելեալ ըզզօրութիւնս դժոխոց խորհրդով տնօրէնութեան իւրոյ. Քրիստոս թագաւոր փառաց փառաւորեալ ՚ի զօրաց զուարթնոց. եկայք ժողովուրդք երգով օրհնեսցուք։

Որ բանիւ գոյացոյց զարարածս էակից բանն ՚ի Հօրէ Քրիստոս. եւ մահու խաչի զամենայնսն վասն մեր համբերեալ յաղթեաց մահու իշխանութեամբ. եկայք ժողովուրդք երգով օրհնեսցուք։

մեծ Ուրախ լեր Աստուածածին յոյս եւ փրկութեան մայր. ընդ քեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք։

Ընդ քեզ լուսոյ մայր եւ կոյս, ընդ քեզ գանձդ կենաց աստուածային ձայնիւ ցնծութեամբ մե։

Մայր սուրբ անարատ լուսոյն. հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ընդ քեզ մեծացու։

Քրիստոս Աստուած, որ տարածեցեր զձեռս քո ՚ի խաչին եւ լուծեր զկնիք դատապարտութեան մերոյ. ողորմեա։ ողբ

Ի խաչին բեւեռեցար, եւ հեղմամբ արեանդ քո փրկեցեր զտիեզերս ՚ի մեղաց. ողոր։

Թաղեցար ՚ի մէջ երկրի, եւ յերրորդ աւուր յարեար, ընդ դժոխս աւերեցեր բանիւ. ողորմեա։

Ի խաչանիշ փայտէն դղրդեցան դժոխք. զօրութեամբ սուրբ հոգւոյն նորոգեցաւ երկիր. ով է սա որ խափանեաց զմահ։ տէր

Հրեշտակն աւետէր կուսին Մարիամու, սա է ՚ի սկզբանէ բանն որ յառաջ քան զյաւիտեանս որդին. սա է թագաւորն որ խա։

Յարեաւ յաւուր երրորդի. վէմք պատառեցան երկիր շարժեցաւ սասանեցան դժոխք. սա է կենդանին յաւիտենից Քրիստոս։

Կամաւորութեամբ եկիր ՚ի չարչարանս տէր. եւ ՚ի վերայ նախաստեղծին ողորմեալ յանձն առեր. տէր Աստուած հարցն մերոց։ հրց

Անպարտական մահու որպէս մահապարտ դատապարտեալ ՚ի խաչ ելեր վասն ազգի մարդկան. տէր Աստուած։

Անմահութեանց տուող Քրիստոս Աստուած. ՚ի գերեզմանի իջեր յարուցիչ մեռելոց. տէր Աստու։

Գ Ըզտէր օրհնեցէք. Բարձր արարէք զլամզմեալն 'ի վերայ խաչին։

Որ կանգնեաց ըզքառանկիւն սեղան խաչին, յաղագս քառակողմ աշխարհի պատարագեալ. յորմէ սեղանոյ բուրեաց անուշահոտ հոգի. բարձր արա։

Որ փոխանակ մեղսամէր մահացու պղտոյն պարգեւեաց մեզ կերակուր արդարութեան, 'ի կեանսըն յաւիտենից նորոգելով ըզմեզ. բարձր արա։

մեծ Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։

Աւետաւոր հրեշտակն աւետարանէր ըզծնունդ փրկչին 'ի սուրբ կուսէն։

Ասէ ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ։

ողր Լոյս ճշմարիտ որ 'ի հօրէ առաքեցար. առեր մարմին պարագրիլ 'ի կուսէն ոչ մեկնելով յանքըննին յէութենէ բանդ աստուած. ողորմեա։

Որ անհաս ես յարարածոց եւ քան զամենայն միտս գերազանց. զոր երկինք ոչ բաւէին տանիլ, յարգանդի կուսին կրեցար բանդ աստուած. ողոր։

Զչարչարանս յանձն առեր, ախտակիր հողեղինացս եղեր. վասն մերոյ փրկութեան 'ի գերեզմանի եդար, աներկուստ պահելով զարարածս բանդ աստուած. ողորմեա։

տէր Փառաւորեալ է քո յարութիւնդ։

Որ յարեարդ 'ի մեռելոց յաւուր երրորդի, քրիստոս որդի աստուծոյ. փառաւոր։

Որ յահեղ բարբառոյ յարութեան քո տէր երկիր շարժեցաւ, վէմք պատառեցան քրիստոս որդի աստուծոյ. փառաւորեալ է քո յարութիւնդ։

Ի ձայն ահեղ յարութեան քո տէր զարհուրեցան զինուորացն դասք յարփիափայլ հրեշտակին նշմանն, եւ դողալով շարժեցաւ երկիր։ տէր

Առաւօտեան սուրբ կանանցն դիմելով ըզվիմափոր գերեզմանն. բերելով զիւղս անուշս 'ի յօծումըն կենարար մարմնոյն անպարագրի էականութեանն։

Եւ տեսեալ ըզքերովբէն վերանըստեալ 'ի վիմին, տարփողելով սրբուհւոյն ասէ. դարձիր ողջոյն տուր փողոցն. քանզի յարեաւ որ յառաջն ասաց։

Արարիչդ արարածոց քրիստոս աստուած 'ի խաչին բեւեռեալ, եւ զինուորքն գեղարդեամբքն յարձանկեալ ըզկող քո խոցեաց. տէր աստուած հարցն մերոց։ հրց

Կենդանիդ յաւիտենից քրիստոս աստուած 'ի գերեզմանի եդար. եւ պահապանքն պահէին ըզգուշութեամբ ըզգերեզման քո. տէր աստուած հար։

Յարեար 'ի մեռելոց քրիստոս աստուած ըզդժոխս աւերեալ, եւ կենդանութիւն պարգեւեցեր արարածոց քոյովդ յարութեամբդ. տէր աստուած հար։

Ըզտէր. Ըզնա օրհնելով բարձր արարէք յաւիտեան։ Գ

Զոր կարապետն յովհաննէս մարգարէիցն 'ի դժոխս աւետարանէր ըզգալուստ արեգականն արդարութեան. ըզնա։

Որում սպասէին արգելեալքն 'ի մեղսամահ բանտին ազատեցուցիչ յուսոյ գալըստեանն աստուածորդւոյն 'ի յերկնից. ըզնա։

Որոյ եկեալ կատարեաց զմարգարէիցն ըզտեսութիւն, աւերելով ըզդրունըս դժոխոց եւ ըզզօրութիւն մահու. ըզնա։

մեծ

Լոյս լուսոյ մայր, եւ կենարար բանին բնակարան. քեզ երանիցեն ազգ եւ ազինք ամենայն։

Ստեղծողին մայր, եւ հընութեան կերպին նորոգողին. քեզ։

Լոյս ծագեցաւ 'ի քէն նըստելոցս 'ի խաւարի. քեզ։

ողր

Իջեր յերկնից 'ի Հօրէ եւ մարմնացար 'ի կուսէն. համբերող փրկիչ վասն մեր ըզմահ ճաշակեցեր։

Եկիր 'ի չարչարանըս չարչարանացըն լուծիչ, խաչեցար թաղեցար եդար 'ի գերեզմանի քրիստոս աստուած մեր։

Եւ յերրորդ աւուր յարեար ամենակալդ տէր. պարգեւելով աշխարհի զխաղաղութիւն եւ ըզմեծ ողորմութիւն։

տէր

Հրաշալի յարութիւնն ըզպահապանսըն զարհուրեցոյց, եւ հրեշտակն 'ի յերկնից իջեալ 'ի ձայն ահեղ յարութեան աստուածորդւոյն, կանանցն աւետէր յարեաւ աստուած։

Ի ձայնէ հրեշտակին ըզուարճացան տըրտմազգեաց կանայքն, եւ դարձան խընդութեամբ ետուն աւետիս առաքելոցն, եթէ յարեաւ նախապատմելին։

Եկայք լուսազգեացք յօրհնութիւն նոր օրհնեսցուք ըզտէր. քանզի մարմինն որ 'ի մէնջն էառ 'ի հրեշտակաց երկրպագութիւն առնու, 'ի սրովբէից եւ 'ի քրովբէից։

տէր

Տուք ըզփառս 'ի բարձունս Թագաւորին յաւիտենից, որ փըրկեաց ըզազգս որդւոց մարդկան 'ի ծառայութենէ թըշնամւոյն. օրհնութիւն առաքողին 'ի բարձունս։

Նա ինքնիշխանութեամբ բազմեցաւ 'ի վերայ խաչին, կապեաց ըզիշխանըսն մեղսամահ. ըզմահու գերեալըսն յադամայ կենագործեաց 'ի կեանս անմահ. օրհնու։

Նախայաւիտեան որդին փառակից Հօր եւ սուրբ Հոգւոյն դընի 'ի նոր գերեզմանի, նոր նորոգել զմեզ ըզհընացեալըս մեղօք. օրհնու։

Հրաթեւեան սերովբէն նըստեալ 'ի վերայ վիմին հարկանէր փող յարութեանն տեառն. պակուցեալ պահապանացն յահէն եղեն որպէս մեռեալ. օրհնու։

Հանգոյս արա եւ ըզմեզ տէր ընդ սըրբոց քոց առաքելոցն, որք արժանի եղեն տեսանել ըզքեզ 'ի յարութեան քո. արժանաւորեա տէր տեսանել ըզքեզ 'ի միւսանգամ քո գալըստեանն. օրհնու։

ճշւ

Զթագաւորըն քրիստոս օրհնութեամբ երգով բարեբանեցէք ամենայն երկիր։

Արարողին երկնի եւ երկրի մատուցէք երգով գոհաբանութիւն ամենայն երկիր։

Երրորդութեանն եւ մի աստուածութեանն մատուցէք պատիւ երկրպագութիւն յաւիտեանս, ամէն։

Հարց. Վառ ձայն:

հրց գկ Ընծառելի բնութիւն եւ բան
Հօր, առաքեցար 'ի հայրական ծո-
ցոյ, եւ առեր մարմին 'ի սրբոյ
կուսէն. սուրբ աստուած հարցըն
մերոց:

Ե՛կեալդ 'ի փրկութիւն մեզ թա-
գաւոր անմահ յանձն առեր ըզ-
մահ խաչի, եւ իջեր 'ի գերեզման
անապական. սուրբ աստը:

Ե՛ւ յարուցեալ 'ի մեռելոց երեք-
օրեայ լոյս ծագեցար տիեզերաց.
իշխանութեամբ լուծեր զերկունս
մահու. սուրբ աստը:

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արա-
րէք զթագաւորն ամենեցուն իշ-
խան հայր միշտ եւ յաւիտեան:

Զյարուցեալն 'ի մեռելոց քրիս-
տոս աստուած. ժողովուրդք առա-
ւել բարձր արարէք ըզնա յա:

Զանապական լոյսն 'ի հօրէ ծա-
գեալ սուրբ զհոգին. քահանայք
ընդ սերովբէսն գովեցէք, եւ ա-
ռաւել բարձր արարէք ըզ:

մեծ Զաստուածածինն եւ զմիշտ
կոյսն անդադար օրհնեսցուք. քան-
զի ծագեաց մեզ լոյս երեսաց, եւ
փրկիչ անձանց մերոց:

Խընդա եւ ուրախ լեր անհարս-
նացեալ մայր. քանզի որ 'ի քէն
ծնաւ մեզ աստուած 'ի փըր-
կութիւն անձանց մերոց:

Գանձ անապական գըտար սուրբ
աստուածածին. բարեխօսեա քրիս-
տոսի աստուծոյ մերոյ, կեցուցա-
նել զանձինս մեր:

օղր Որ յարեարդ 'ի մեռելոց քրիս-
տոս աստուած, եւ մեզ կեանս
շնորհեցեր. ողորմեա:

Որ զանկեալն 'ի նախնումն 'ի մե-
ղըս, պատուական արեամբըդ քո
կանգնեցեր. եւ մեզ կեա:

Եւ յարութեամբըդ քո զաշխար-
հըս կեցուցեր, եւ ըզդրունըս դը-
ժոխոց փըշրեցեր. եւ մեզ կեա:

Յարեաւ տէրն 'ի գերեզ- տէր
մանէն:

Ընդ յառնել փրկչին մերոյ եր-
կիր շարժեցաւ, վէմըք պատա-
ռեցան:

Ծառագայթեալ լոյսն 'ի վերայ
վիմին, զարհուրեցոյց ըզպահա-
պանսն առ դրանըն գերեզմա-
նին:

Զաստուածային ըզգերեզմա- տէր
նաւըն բոլորեալ դասք հրեշտա-
կաց, տեսանէին ըզտէրըն յա-
րուցեալ 'ի գերեզմանէն:

Աստուածածին կանայքն եկին
'ի գերեզման փրկչին անուշ
իւղովք եւ խնկովք, յօծանել
զմարմինըն տէրունական:

Լուսապայծառ հրեշտակն նըստէր
'ի վերայ վիմին, աւետարանէր
կանանցն, յարեաւ փրկիչըն
տիեզերաց:

Նախայաւիտեան որդի փառա- հրց
կից հօր եւ սուրբ հոգւոյն. որ
միշտ յանձառ փառս բարեբա-
նիս 'ի վերին զօրացդ. ըզքեզ օր-
հնեմք աստուած հարցըն մերոց:

Եղեալ մարդ ճըշմարիտ եկիր կա-
մաւ 'ի չարչարանս, եւ բարձեր
ըզփայտ խաչի անպարտականդ մա-
հու. ըզքեզ օրհ:

Ի գերեզման իջեր խափանիչ մա-
հու. երեքօրեայ յարուցեալ լոյս
ծագեցար ստուերականացս. ըզ-
քեզ օրհնեմք աստը:

գ Ընդունէր օրհնեցէմք բարձր ա-
րարէմք ըզնա յաւիտեան։
Զթագաւորըն քրիստոս որ վասըն
մեր յանցանաց ընդմահ ճաշակեաց.
բարձր արա։
Զէակից բանըն հօր որ երեքօ-
րեայ թաղմամբ զդըժոխս աւե-
րեաց. բարձր արա։
մեծ Ամենագովելի եւ քան զերկի-
նըս բարձրագոյն, որ զանհաս-
նելի ըզտէրըն յորովայնի քում
կրեցեր, եւ ցընծութիւն աշխար-
հի ծընար. վասն որոյ ամենեքեան
ըզքեզ միշտ մեծացուցանեմք։
Ամենապայծառ բերկրեալ միշտ
կոյս, որ զանբաւելի ըզբանն
անճառաբար յղացար, եւ ըզմար-
մնացեալն աստուած ծընանելով 'ի
քէն. վասն որոյ ամե։
Ի լեռնէ վէմն առանց ձեռին
հատեալ դանիէլ գուշակեաց
զանսերմն ըզծընունդ քո հարսն
երկնաւոր, մայր եւ յետ ծնըն-
դեան մնալով կոյս. վասն որոյ ա-
մենեքեան ըզ։
բար Անըսկիզբըն բանդ անճառելի
ծընունդ, որ առաքմամբ հօր ի-
ջեր 'ի յերկնից վասըն մերոյ փըր-
կութեան. զքեզ աղաչեմք ո-
ղորմեա քո արարածոց։
Որ անեղ աստուածութեամբ եւ
անփոփոխելի բընութեամբ 'ի
կուսէն ծընար նախաստեղծին
կերպմամբ, եւ եկիր կամաւ 'ի
չարչարանս. զքեզ ա։
Ի խաչին բեւեռեցար կամաւ
հօր եւ սուրբ հոգւոյն. եւ իջեր
'ի գերեզման անմահ բընութիւն.
եւ յարեար 'ի մեռելոց քրիստոս.
զքեզ աղաչեմք ողորմ։

Ըզքո յարութիւնդ օրհնեմք տէր
մարդասէր, աղաղակելով տէր
փառք քեզ։
Զոր օրհնեն սերովբէքն եւ գովեն
քերովբէքն, աղաղա։
Անդադար բերանով անհանգիստ
բարբառով, աղաղա։
Առեալ եւ մեր զօրհնութիւ- տէր
նըս հրեշտակացն երգեմք եւ
ասեմք, փառք յարութեան քո
տէր։
Որ խաչեցար վասըն մեր թաղե-
ցար եւ յարեար, ազատե-
ցեր 'ի մեղաց։
Սուրբ աստուած, սուրբ եւ
հզօր, սուրբ անմահ թագաւոր։
Այսօր զենաւ մեզ պատարագ հրց
անարատ գառն աստուծոյ 'ի վե-
րայ խաչին, էակից հօր եւ սուրբ
հոգւոյն. աստուած հարցըն մերոց։
Այսօր բացաւ մեզ սրովբէափակ
դուռըն դրախտին հրաւիրելոցս
'ի կոչումն արքայական սեղանոյն
տէրունեան մարմնոյ եւ արեան
աստուծոյ հայր։
Եւ հրաշալի յարութեամբ քո
քրիստոս տիեզերք ամենայն նո-
րափետուր զարդարեալ, մըտանեն
'ի յառագաստ ընդ փեսայիդ քրիս-
տոսի աստուծոյ հայր։
Ընդունէր օրհնեցէք. Առաւել գ
բարձր արարէք ըզնա յաւիտեան։
Զաստուածային զգեցեալ մարմինն 'ի
քառանկիւն սեղան խաչին բար-
ձրացեալ, սերովբէք սարսեալ դո-
ղային. առա։
Որ ըզցօղ անապական արեանն 'ի
կողանհոս աղբերէն արբոյց տիե-
զերաց. ժողովուրդք հեթանոսաց.
առաւել բար։

մեծ Մայր և կոյս անապական քրիստոսի, որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. քեզ երանեն ամենայն ազինք:

Մաքուր աղաւնի եւ հարսն երկնից Մարիամ, տաճար եւ աթոռ աստուծոյ բանին. քեզ երան:

Քեւ հաճեցան իմանալիքն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք 'ի փառսն կենաց. քեզ երան:

ողբ Որ տրտմահաղորդ քո չարչարանօք խաչին ազատեցեր զմարդն 'ի տրտմագգեաց փայտէն եւ 'ի մեղսաճաշակ պտղոյն. քրիստոս աստուած եւ մեզ ողորմեա:

Որ մահուամբ քո կենդանի և մեռելութեամբդ յերկրի նորոգեցեր դարձեալ զաշխարհս եւ պառաւեցեալ բնութիւնս. քրիստոս աստուած եւ:

Որ երեքօրեայ յարութեամբ քո եւ համբարձմամբդ յերկինս վերածեր զմարդն առ կենաց փայտն եւ յանմահական ճաշակն. քրիստոս աստուած եւ:

տէր Տեսիլ փայլականաձեւ զուարթնոյն 'ի վիմին հռչակեցեալ առ խնկազգեաց կանանցն փարատեցոյց զերկիւղալից տրտմութիւնն:

Պահապանքն պակուցեալ ահաբեկ լինէին, եւ կանանցն աւետարանեալ, մահ մահու յաղթեաց եւ ծանուցաւ մահ:

Քարոզս առաքելոց առ երջանիկ առաքեալսն, փութացարուք 'ի գալիլեա եւ տեսանիցէք զկենագործողն ըզքրիստոս:

տէր Յանձանս փառաց խոնարհեցար եւ ըզգեցար ըզհողեղէն բնութիւնս. վերաբեր զանկեալն 'ի գլորմանէ յանմահական 'ի կեանս. ըզքեզ օրհնեմք անապական բանդ աստուած:

Անպարտական նորոգ մահու դատապարտեալ 'ի վերայ խաչին. որ փոխանակ դառնութեան պտղոյն արբուցեր մեզ 'ի տիգախոց կողէդ. ըզքեզ օրհն:

Առաքեցար 'ի դժոխս ցուցանելով ըզզօրութիւն աստուածութեանդ. ջախջախեցեր ըզդրունս խաւարդային, խափանեցեր ըզզօրութիւն մահու. ըզքեզ օրհն:

Լուսով աստուածութեան քո քրիստոս լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի. պահեա ըզսա անշարժ յաւիտեան: ճչւ

Տօնէ այսօր եւ ուսանէ հաւատացելոց բազմութեամբ զնաւակատիս սուրբ եկեղեցւոյ. պահեա ըզսա ան:

Բացան դրունք հաւատոյ նոր սիոնի ընդունել զանմահ փեսայդ յառագաստ. բաշխէ զմարմին քո եւ զարիւն. պահեա ըզսա անշարժ յա:



Հարց. Չորրորդ ձայն:

Որ եկիր կամաւ հօր 'ի խաչ ելանել վասն ազգի մարդկան. թագաւոր փառաց քրիստոս ամենաքեան օրհնեսցուք: հրց գձ

Որ մահու խաչի համբերեցեր վասն մեր անմեկնելիդ 'ի հօրէ. թագաւոր փա:

Որ երեքօրեայ թաղմամբ պահեցար կենդանի, յարութիւն մեր եւ կեանք. թագաւոր փա:

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ 'ի վերայ խաչին եհեղ զարիւն իւր քրիստոս, եւ փրկեաց զարարածս 'ի մեղաց. օրհ։

Որ ըզմահ կոխեաց զդըժոխս աւերեաց, յարուցեալ 'ի մեռելոց ազատեաց ըզմեզ. օրհնեցէք եւ բարձր արա։

մեծ Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։

Որ ըզբանն աստուած յարգանդի կրեցեր սըրբուհի անարատ, եւ անճառապէս ծընար ըզվերածնօղն երկնից. ըզքեզ։

Որ էից լուսոյն արժանի եղեր բնակելոյ 'ի քո գիրկս. եւ արեգական արդարութեան եղեր արեւելք. ըզքեզ օրհ։

ողր Թիւնս եմ. Ողորմեա փըրկիչ։

Որ կամաւ հօր ըզչարչարանըս յանձն առեր բանդ աստուած. ողոր։

Որ համասար սուրբ հոգւոյն ըզգերեալըս փըրկեցեր քո յարութեամբդ. ողոր։

տէր Փառաբանեմք հօր որդի որ վասըն մեր խաչեցար, զդըժոխս աւերեալ յարեար յաւուր երրորդի. փառք յարութեան քո տէր։

Հրեշտակապետին իջումն որ ըզպահապանսն երկիւղիւ, զարհուրեցոյց առ դրանըն գերեզմանին. փառք յարու։

Եւ սքանչելի սուրբ կանանցն աւետարանէր ասելով, յարեաւ քրիստոս յարուցիչըն մեռելոց. փառք յարութեան քո տէր։

հրց Որ բարեբանեալդ ես 'ի դասուց քերովբէից անմահ թագաւոր. օրհնեալ ես եւ գովեալ յաւիտեան։

Որ խոնարհեցար յերկնից եւ առեր մարմին ըզնախաստեղծին ադամայ. օրհնեալ ես եւ գո։

Որ նըստիս 'ի վերայ չորեքկերպեան կենդանեաց քրիստոս աստուած. օրհնեալ ես եւ գո։

գ Գործըք տեառն ըզտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան։

Գիշերք ըզտէր օրհնեցէք.

Ըզնըստեալն 'ի յաթոռ փառաց ըզբարեբանեալն 'ի հրեշտակաց. ըզնա անդադար օրհ։

Իսրայէլ ըզտէր օրհնեսցէ.

Որ յահէ փառաց աստուածութեանն դողան զըւարթունք երկնից. ըզնա անդադար օրհ։

մեծ Անարատ կոյս աստուածածին մարիամ, սըրբուհի եւ մայր քրիստոսի, յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. օրհնութեամբ ըզքեզ աստուածածին մեծացուցանեմք։

Ըզքեզ երկնային դուռըն զոր ետեսն եզեկիէլ, եւ այրըն զոր ծանեաւ գեդէօն. սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից. օրհ։

Երբեմն խորհուրդըս սոսկալիս 'ի քեզ տեսանի աստուածածին. յըղութիւն անսերմնական, ծնունդ անարատ. կուսութիւն յետ ծնընդեան միայն անապական. օրհ։

ողր Ի խաչ ելեր բանդ աստուած, մարմնացեալդ 'ի կուսէն կամաւ հօր եւ հոգւոյն, 'ի փըրկութիւն ազգի մարդկան։

Ի գերեզմանի եդար անապական,
զի զմեռելութիւնս մեր բարձեր,
ընդերեւալսն փրկեցեր 'ի ձեռաց
մահու։

Եւ յերրորդ աւուր յարեար աս-
տուածապէս, 'ի յերկինս համ-
բարձար ընդաջմէ հօր նստար. փա-
ռաւորեալդ 'ի հրեշտակաց եւ եր-
կրպագեալդ 'ի սերովբէից։

տէր Կանանցն կանխելով 'ի թա-
ղումն կենդանութեան տեսին ըզ-
վէմն 'ի դրանցն 'ի բաց մերժեալ։
Թափուր ըզգերեզմանն եւ ու-
նայն տեսանէին, եւ տրտմու-
թեամբ լային յուսահատեալք։
Մայր խաչեցելոյն զի լուաւ յուսա-
հատեալ, քանզի քրիստոս փառօք
մեծաւ յարեաւ։

հրց Որ 'ի քառակերպեան նստիս
յաթոռ, անլռելի ձայնիւ օրհնիս
'ի պայծառ դասուց հոգեւոր եր-
գով. աստուած հայրըն մերոց։
Որ 'ի վեցթեւեան սրովբէսըդ
հանգչիս եւ խնամես զքո զարա-
րածըս, նշանաւ խաչի քո ըզմեզ
ապրեցուցեր. աստուած հայր։
Որ նստիս 'ի յաթոռ փառաց ա-
ռաւել բարձրեալ զովեալ, նշա-
նաւ խաչի քո ըզմեզ ապրեցուցեր.
աստուած հայր։

դ Ըզոտէր. Այսօր մեռեալն զօր-
ծըք տեառն ըզոտէր օրհնեցէք։
Այսօր փրկականն սուրբ խաչի-
ւըն զուարճացան արարածք. ա։
Այսօր մըտեալ 'ի գերեզման ա-
ւերեաց ըզդըժոխս. ա։
Այսօր 'ի յերկինս համբարձաւ
ընդ աջմէ հօր նստաւ. ա։

մեծ Աստուածածին մայր լուսոյ
սուրբ կոյս լուսեղէն տաճար, ո-

րում երկինք չէին բաւական առ
'ի բնակութիւն, 'ի քէն մարմնա-
ցաւ։
Ըզքեզ անհարսնացեալ որ միայնդ
'ի կանայս օրհնեալ, կրելով 'ի քեզ
զանտանելի զլոյսն. օրհնու-
թեամբ մեծացուցանեմք։
Ուրախ լեր աթոռ փրկութեան,
յոյս հաստատութեան մարդկան,
միջնորդ օրինաց եւ շնորհաց,
օրհնութեամբ անդադար գոհու-
թեամբ մեծամ։

Թիւ նս իմ. Ողորմեա մեզ աս- ողր
տուած։
Որ 'ի յերկնից 'ի հօրէ իջեր անըս-
կիզբն որդի, նոյն ինքն ըզդըժոխս
աւերեցեր. ողոր։
Որ ըզճառագայթս աստուածու-
թեանըդ երեւեցուցեր փրկիչ,
ըզպանդապանսըն զարհուրեցուցեր.
ողոր։
Որ ձեռօքըն թովմայի շօշափեցար
փրկիչ. առ աշակերտըսըն մըտեր
դրօքըն փակելովք. ողոր։

Ահագին ձայնիւըդ քո քրիստոս տէր
'ի վերայ խաչին գոչացուցեր զա-
րարածս ամենայն զերկնային եւ
զերկրաւոր բնութիւնս։
Ահագին երեւումըն հրեշտա-
կին զարհուրեցոյց ըզկանայսն ա-
սելով, զի խնդրէք ըզկենդանին
ընդ մեռեալս։
Եւ յահէ զօրութեան աստուած-
որդւոյն զարհուրեցան կարապե-
տըք դըժոխոցն ասելով. համբար-
ձէք իշխանք ըզդրունըս ձեր 'ի
վեր։

Յորժամ 'ի խաչին բեւեռեցար հրց
քրիստոս աստուած. եւ զադամ
նորոգեցեր 'ի նախամտեղծ բընու-

թեանն. օրհնեալ տէր աստուած հարցն մերոց։

Որ ՚ի սպասաւորէն ապտակեցար եւ ՚ի զինաւորէն գեղարդեամբքն խոցեցար. օրհ։

Թաղեցար ՚ի մէջ երկրի եւ յերրորդ աւուր յարեար ամենակարող փրկիչ. օրհ։

գ Գործք տեառն զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։

Գիշերք զտէր օրհնեցէք.

Որ էիր յէութեան ՚ի բարձունս, եւ ՚ի հօրէ առաքեցար ՚ի յերկիր վասն մեր մեղաւորացս. յիշեա զմեզ տէր։

Իսրայէլ զտէր օրհնեսցէ.

Որ բանիւ քո բարձեալ ունիս զամենայն արարածս, եւ ՚ի խաչին վասն մեր բեւեռեցար. յիշեա զմեզ տէր։

մեծ Ուրախացիր աստուածածին որ կուսութեանց ես պարծանք եւ մայր հաստատութեան մարդկան. օգնական եւ շնորհ աշխարհի, մարեամ մայր եւ աղախին փրկչին մերոյ։

Երանելիդ ամենեցուն զաստուած տանելով ընդունութեամբ անտանելին, զամենեցուն ամենակալն արժանի եղեր կրել յորովայնի, որ երեւեցաւ ազգի մարդկան։

Քերովբէական աթոռ ցուցար աստուածածին, ՚ի գիրկս բառնալով զաստուածն ամենեցուն, որ նստի ՚ի քերովբէս. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել զմեզ։

ողր Անեղական բանդ հօր եւ եղելոց պատճառ. որ ծնար ՚ի կուսէն, ընդ քեզ ծանեաք աստուած աղաչեմք ողորմեա ազգի մարդկան։

Սերովբէից անհաս եւ դատաւոր կենդանեաց եւ մեռելոց, որ ՚ի խաչին բեւեռեցար. ըզ։

Կենդանութեան աղբիւր եւ պարգեւատու անսահման ողորմութեան, որ յարեար ՚ի մեռելոց. ընդ քեզ ծանեաք աստուած աղաչեմք ողորմեա ազգի մարդկան։

Որ ՚ի վերոյ ես քան զմիտս եւ զխորհուրդս, համագոյական եղելոցս արարիչ, ՚ի հօրէ առաքեցար վասն մեր եւ մարմնացար ՚ի սուրբ ՚ի կուսէն։ տէր

Անքննին ՚ի յէութեան աստուած, տնօրինեցար յարգանդի կուսին, ապրեցուցանել զնախաստեղծին ծնունդն, եւ վերստին նորոգել ՚ի փառս։

Ոչ շատացար մարդ եղանիլ աստուած, այլ եւ խաչի համբերեալ զթաղումն յանձն առեր զերեքօրեայ, եւ յարուցեալ նորոգեցեր զաշխարհս։

Սրբածին որդի աստուծոյ, զաւետարանութիւնն սրբոց մարգարէից աստուածոր լուսափայլեալ պայծառացուցեր. օրհնեալ տէր աստուած հարցն մերոց։ հրց

Կամաւորութեամբ եկիր ՚ի չարչարանս, եւ զմահաբեր փայտն բարձեր ՚ի վերայ կենաբեր ուսոյդ, եւ զնոյն կենաց փայտ մեզ շնորհեցեր. օրհ։

Քանզի կողին վիրաւորեալ ընախահօրն, ՚ի քո յանարատ ՚ի կողդ ընկալեալ զխոցումն գեղարդեանն. եւ անապականն արեամբդ քո լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի. օրհ։

գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան։

Միածին որդին ՚ի խաչին բեւեռեալ, արեամբ մաքրելով դընի ՚ի գերեզմանի. ամենայն գործք օրհնելով բարձր արա։

Նուեալ երանելին կանանցն զաւետիս սուրբ յարութեանն, պատմէին աշակերտացն եթէ յարեաւ տէր. ամենայն։

Ընթացեալք ՚ի միասին պետրոս եւ յովհաննէս, տեսանէին ընդ գերեզմանն յաստուածային մարմնոյն ունայն. ամենայն գործք օրհնելով բարձր։

ձնձ Ուրախացիր աստուածածին վերօրհնեալդ ՚ի սրբուհեաց. ծագելով ՚ի քէն մեզ լոյս մայր եղեր վերաձգողին ազգ եւ ազինք ընդ քեզ մեծացուցանեմք։

Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ, ՚ի հրեշտակաց սպասաւորեալ գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ։

Տեսանեմք ընդ ոսկեայն զհրաշալի խորհուրդ յայտնեալ ՚ի հոգւոյն սրբոյ յղացեալ. զբանն աստուած մարմնով ծնար. ազգ եւ ազինք ընդ քեզ մեծ։

ողր Եկիր ՚ի փրկութիւն թագաւոր անմահ, եւ ընդ մահ ճաշակեցեր փրկիչ աշխարհի. ողորմեա։

Խաչի համբերեցեր աստուած վասն մարդկան, եւ զթաղումն յանձն առեր զերեքօրեայ. ող։

Եւ ՚ի մեռելոց յարեար իշխանութեամբ որպէս տէր. զի զմեզ ընդ մեռեալս նորոգեա եւ կեցո։

տէր Զյարութիւն աստուածորդւոյն հրեշտակապետն այսօր աւետէր կանանցն ասելով, յարուցեալ է տէրն ՚ի գերեզմանէն։

Ընթացեալ կանանցն խնդութեամբ պատմէին աշակերտացն ասելով, յարու։

Վասն որոյ եւ մեք ընդ հրեշտակին գոչեսցուք զյարութիւնն քրիստոսի, որ փրկեաց զմեզ ՚ի ձեռաց մահու։



# ԿԱՆՈՆ

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ՀԱՄԲԱՐՁԱՒ տէրն մեր յերկինս, ասելով աշակերտացն, նստարուք ՚ի քաղաքիդ երուսաղէմ, մինչեւ զգենուցուք զզօրութիւն ՚ի բարձանց։ օրհ գձ

Միաբանեալ սուրբ առաքեալքն միախորհ եւ միակրօն, միաբան նստէին ՚ի սուրբ վերնատանն, եւ ակն ունէին գալստեան սուրբ հոգւոյն։

Ցանկածակի եհաս ՚ի նմանութիւն լուսոյ փայլման. եւ եկեալ բնակեցաւ ՚ի սուրբ առաքեալսն, մինչդեռ նստէին ՚ի սուրբ վերնատանն։

Համբարձաւ տէրըն մեր քրիստոս օրհնութեամբ ընդ ամպս երկնից, եւ առաքելոցն երկրպագեալ դարձան յերուսաղէմ. միաբանութեամբ վեր առաքէին զաղօթս :

Ահագին ձայնիւդ քո քրիստոս 'ի վերայ խաչին դողացուցեր զարարածս ամենայն զերկնային եւ զերկրաւոր բնութիւնս :

Ահագին երեւումըն հրեշտակին զարհուրեցոյց ըզկանայսն ասելով, զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս :

Եւ յահէ զօրութեան աստուածորդւոյն զարհուրեցան կարապետըք դըժոխոցն ասելով. համբարձէք իշխանք ըզդրունս ձեր 'ի վեր :

Փառաւանակից հօր որդի որ վասըն մեր խաչեցար, զդըժոխս աւերեալ յարեար յաւուր երրորդի. փառք յարութեան քո տէր :

Հրեշտակապետին իջմամբ որ ըզպահապանսն երկիւղիւ, զարհուրեցոյց առ դրանըն գերեզմանին. փառք յարու :

Եւ սքանչելի սուրբ կանանցն աւետարանէր ասելով, յարեաւ քրիստոս յարուցիչըն մեռելոց . փառք յարութեան քո տէր :

Զանձառըդ քո քրիստոս փառաւորեմք ըզմարդանալդ, 'ի գըլխոց լերանց հրապարակեմք ըզքո քաջութիւնդ, քանզի հարեր ըզպատերազմ եկեալդ 'ի փրկութիւն մեզ :

Զյաղթողըդ քո քրիստոս գովեմք ըզզօրութիւնդ. քանզի վանեցեր զընդդիմամարտ թըշնամին, եւ դարձուցեր ըզգերութիւն, եկեալդ 'ի փըրկել :

Բըղխեսցէ երկիր զողորմութիւն եւ նորոգեսցէ զօրհնութիւն. քանզի աստուած ծընընդեամբ 'ի միշտ կուսէն 'ի փըրկութիւն մեզ յայտնեցաւ, աւերեաց ըզդըժոխս :

Անեղանելից բանիդ հօր եւ եղելոց պատճառ. որ ծընար 'ի կուսէն, ըզքեզ ծանեաք աստուած աղաչեմք ողորմեա ազգի մարդկան :

Սերովբէիցն ահաւոր եւ դատաւոր կենդանեաց եւ մեռելոց, որ 'ի խաչին բեւեռեցար . ըզ :

Կենդանութեան աղբիւր եւ պարգեւատու առատ ողորմութեան, որ յարեարդ 'ի մեռելոց. ըզքեզ ծանեաք աստուած աղաչեմք ողորմեա ազ :

Առաքելոց աղաւնոյն իջանելով մեծաձայն հընչմամբ 'ի բարձանց, 'ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեայ անկիզելի զաշակերտսն, մինչդեռ նստէին 'ի սուրբ վերնատանն : Հոգ.

Անհիւթական աղաւնի, անքըննելի որ քննէ ըզխորս աստուծոյ. զոր առեալ 'ի հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյական :

Օրհնութիւն 'ի բարձունս, ելողին 'ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս 'ի յերկինս :

Բարձրեալ թագաւոր յաւիտենից հայր անըսկիզբըն, որ զմիածինդ առաքեցեր 'ի փըրկութիւն Համ

անդին մարդկան մաղթեմք ընդ քեզ յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո 'ի քում յարքայութեանդ։

Բանդ աստուած Երեւեալ մարմնով յերկիր քահանայապետ ճշմարիտ, որ 'ի վերայ խաչին պատարագեալ բարձող մեղաց գառն անարատ. աղաչեմք զքեզ։

Երբանական չնորհաց բաշխող սուրբ հոգիդ ճշմարիտ. որ վերնատանն ծնընդեամբ աւազանին կոչեցեր յորդեգրութիւն ընտանեգերդս. գթութեամբդ քո նորոգեա զհոգիս նոցին։

ած Որ խոնարհեցար յերկնից անմեկնելիդ 'ի հօրէ որդի աստուծոյ, եւ առեր մարմին 'ի սրբոյ կուսէն. հայցմամբ ծառայից քոց լուսոյդ եւ մեզ ողորմեա։

Որ մահուամբ քով կեցուցեր ըզմեզ, եւ յարուցեալ համբարձար առ հայր 'ի յերկինս. այսօր երկնաւոր զօրօք իջեր 'ի փոխումն մօր քո եւ կուսի. հայց։

Որ յիմանալի խորանդ բարձրացոյց ընդ քեզ մայր աստուծոյ, անձառելի փառօք միածին որդին. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց։

խաղ Ցնծայ այսօր փառօք միածնին լեառն Թաբօր հանդերձ հերմոնիւ, բարձրացեալ գերագոյն սինայի, եւ էջք աստուծոյ դուռն երկնից 'ի նմա։

Ցնծան այսօր լերինք աստուծոյ, մարգարէին եղեալք ընդ առաջ, պարակցին յաւիտենական լերանցն դասք առաքելոց եւ մարգարէից։

Ցնծայ այսօր լեառն վերին սիոնի, հարսնարան անմահ արքային, տեսանելով զերկնաւոր փեսայն, զարդարեալ լուսով հայրական փառօք։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Մտեալ 'ի յերկինս բիւրաւոր զօրօք բազմութեամբ հրեշտակաց. որք աղաղակէին եւ ասէին, օրհնեալ եկեալ 'ի յանունըն տեառն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Նստեալ ընդ աջմէ ծնողին, կատարելով ըղխոստացեալ պարգեւս. մըխիթարիչ սուրբ հոգին գայ առ ձեզ, աղբերացուցանել զմեծ պտղաբերութիւն։

Օրհնեսցի պսակ քաղցրութեան քո տէր, որ պահեցեր ըզմեզ յերկրի. այսօր համբարձար փառօք յերկինս առ հայր հրեշտակաց դասուք. օրհնեալ տէր աստուած հարցն մերոց։ հրց դկ

Հրաշան վերինքն ընդ մարդկային քո կերպ, հարցաբանեալք զեսայեայն, ով է սա դիմեալ յերկրէ արիւնազգեստեալ. օրհ։

Երգէին հրեշտակքն ըզդաւթեան տուածն առ բարձրականս դրանց երկնից. առէն համբարձէք իշխանք ըզդրունս ձեր 'ի վեր եւ մտցէ արքայ. օրհ։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ ելն 'ի կառս հուր եւ ընկճեաց զիշխանն մահու. օրհնեա։

Որ եդ յամպս ըզգընացս հուր եւ վերացաւ առ հայր 'ի յերկինս. օրհնեցէք եւ։

Որ նստի ընդ աջմէ հօր հաւասար սուրբ հոգւոյն. օրհնեա։

մեծ Աստուածածին մայր լուսոյ արեգականն արդարութեան արեւելք, որ ի խաւար աշխարհի ծագեցեր ըզլոյսըն գերազանց. օրհնութեամբ ըզքեզ բարեբանեալ մեծացուցանեմք:

Ամպ թեթեւ լուսաւոր անընդունակ խոնարհութեան, որ ըզցօղըն կենաց ի ցամաքեալ բնութիւնս ցօղեր. օրհնու:

Սերովբէ հողեղէն եւ մարմնաւոր քերովբէ, որ զանտեսն ի նոցունց յորովայնի քում կրեցեր. օրհնու:

ողբ Որ ողորմութեամբ քո հնազանդեցեր զաշխարհս, եւ իջեալ փրկեցեր ի յանիծիցն ադամայ. այսօր համբարձար փառօք յերկինս տէր. ողորմեա մեզ աստուած:

Որ ելեր ի բարձրագունին քառաթեւին առնելով զհեծելութիւն փրկութեան. այսօր համ:

Որ երեքօրեայ թաղմամբ քո դատապարտեցեր ըզդաւաճանող վիշապն. այսօր համբար:

տէր Իշխանութիւնք երկնից զարհուրեցան տեսանելով զելըս քո քրիստոս, ընկեր առ ընկեր սարսեալ ասէին. ով է սա թագաւոր փառաց:

Սա է մարմնացեալ բանն աստուած որ ի խաչին ըզմեղս ըսպան, եւ վերասլացեալ փառօք գայ յերկինս տէր հզօր զօրութեամբ իւրով:

Սա է որ ի գերեզմանէն յարեաւ եւ աւերեաց ըզդըժոխս, եւ վերհամբարձեալ փառօք գայ առ հայր տէր կարող ի պատերազմի:

Որ համբարձար այսօր աստուածային իշխանութեամբ ի հայրական ի կուս, սպասաւորեալ ի հրեշտակական դասուցն, որք նուագէին ասելով, համբարձէք իշխանք ըզդրունըս ձեր ի վեր, եւ մըտցէ թագաւոր փառաց: ձչւ ած

Հիացան վերնական իշխանութիւնքն եւ ասկալի ձայնիւ աղաղակէին առ միմեանս, ով է սա թագաւոր փառաց, եկեալ մարմնով եւ սքանչելի զօրութեամբ. համբար:

Եղանակէին վերնական պետութիւնքըն հրաշալի ձայնիւ, երգէին երգ նոր ասելով. սա ինքն է թագաւոր փառաց, փրկիչ աշխարհի եւ ազատիչ ազգի մարդկան. համբար:

Որք տնկակից եղայք նըմանութեան մահու քո որդի աստուծոյ. արժանաւորեա ըզմեզ կերպարանակից լինել քեզ փառաց թագաւոր. քեզ երգեսցեն եկեղեցիք սրբոց ըզերգըս հոգեւորս: հմբ գձ

Զհին մարդըն խաչակից քեզ արարեր, եւ ըզխայթոց մեղացըն շիջուցեր. ազատեցեր ըզմեզ կենարար փայտիւն յորում մածար, եւ շիթք արեան քո արբուցին ըզտիեզերս. քեզ եր:

Վասըն գըթութեանըդ քո աստուածային մարդեղութեանըդ հաւասարեցեր ըզմեզ մարմնոյ քո եւ արեան, պատարագաւըդ հօր ի հոտ անուշից ըզմարմինդ առ ի մէնջ, եւ համբարձար լուսափայլ ամպովք. յայտնեցար իշխա-

նութեանց եւ պետութեանց, որք
հիացեալ հարցանէին եթէ այս ով
է որ դիմեալ գայ յԵդովմայ. եւ
յեկեղեցւոյ քո ուսան ընդա֊
մնապատիւ զխնամատութիւնս քո.
քեղ եր։

---

հրց դձ Ծագումն միածնի որդւոյ քո
յերկնից անըսկիզբն անեղ.
մարմնացաւ ՚ի սրբոյ կուսէն տը֊
նօրինաբար. օրհնեալ տէր աստը֊
ուած հարցն մերոց։

Որ վճարն յանցանացն ադամայ
նախաստեղծին ՚ի վերայ խաչին,
զինուորքն դեղարդեամբքն բանայր
ընկղմահաս աղբիւրն. օրհ։

Որ ընդմահ կոխեաց քրիստոս աս֊
տուած, եւ մեզ կեանս պար֊
գեւեաց հրաշալի յարութեամբն
իւրով. օրհ։

դ Ըզտէր. Ամենայն գործք
տեառն ըզտէր օրհնեցէք։

Այսօր խնդեալն ՚ի տնօրէն հա֊
մեղ մարմնովն քաղցրացոյց ընձա֊
չանացն ըզդառնութիւն. ա։

Այսօր ամպ լուսոյ սիւն գործեալ
՚ի հրալից վիմին. պահապանքն
պակուցեալ ՚ի հրակիզմանէ լու֊
սոյն. ա։

Այսօր հրաճեւ փայլակնացայտ
լոյսն ազդեաց ըզգաստիցն ՚ի հրա֊
շագործ յարութեանն. ա։

մեծ Ծագումն հրաշալի որ անյայտ
էր ՚ի մէնջ. եւ բանն հայրական
անըմբռնելի. հուր փայլակնա֊
ցեալ եւ ՚ի մարմնի բնակեցաւ,
անվրէպ պահելով զարարածս ա֊
մենայն։

Ծագումն հրաշագործ որ ՚ի կու֊
սէն ծագեցաւ, ճառագայթելով
զարարածս ամենայն. երկինք ցըն֊
ծային եւ երկիր ուրախանայր.
եւ քրիստոս աստուած ընդ մարդ֊
կան շրջեցաւ։

Առ քեզ ապաւինիմք ամենասըր֊
բուհի. գերագոյն եւ հրաշալի
եւ բազխող բարութեանց. աղբիւր
ես ծարաւեաց եւ հանգիստ աշ֊
խատելոց. եւ եղեր միջնորդ ա֊
տուածային բանին։

Ըզքեզ աղաչեմք ողորմեա մար֊ ողր
դասէր։

Որ էիցս էակ փառակից ընդ հօր
եւ արարչակից հոգւոյն, խոնար֊
հեալ ՚ի մերս վերառեր զմարմին.
ըզքեզ աղա։

Որ զխոցուեան սուրբ դառնու֊
թեամբ լեղւոյն քաղցրացուցեր
ըզճաշակն, դառնեալ ըզքեզ տէր
աղաղակին. եւ մեք աղա։

Փառաւորեալ անճառելի յա֊ տէր
րութիւնդ քրիստոսի։

Որ կամաւ հօր եւ հոգւոյն ՚ի վե֊
րայ քառաթեւին պատարագեալ
գառն աստուծոյ. փառա։

Քրիստոս անմահ թագաւորն հե֊
տազօտեալ ՚ի դըժոխս, կապեաց
զիշխանն մեղսանէր. զմահու գե֊
րեալսն յադամայ կենագործեաց
՚ի կեանս անմահ. փառա։

Փառաւորելով զանուն քո սուրբ, հրց
աստուած հարցն մերոց։

Որ յանսկզբնական ՚ի հօրէ ա֊
ռաքեցար, եւ առեր մարմին ՚ի
սրբոյ կուսէն. աստ։

Որ չարչարեցար մարմնով վասն
մեր, եւ բարձեր զմեղս մեր ՚ի
խաչափայտն. աստ։

Ըզտէր օրհնեցէք բարձր արա֊ դ
րէք ըզնա յաւիտեան։

Որ 'ի խաչին բեւեռելով քրիստոս
ըզմահ կոխեցեր, եւ ըզնախաստեղծն
'ի ծառայութենէ մահու ազատե-
ցոյց. բարձր արա:

Որ 'ի գերեզմանի եդար որպէս
մարդ, եւ 'ի հրեշտակաց մշտընջե-
նաւորականց հօր քարոզեցար. բար:

Որ սոսկալի հրաշմամբ ըզպահա-
պանսըն զարհուրեցոյց, եւ ըզ-
տրտմութիւն իւղաբերիցըն փա-
րատեցոյց. բարձր արա:

մեծ Աստուածածին գերանգոյն եր-
կնից ցուցար խորան եւ առագաստ.
քանզի ծագեալ լոյսն 'ի հօրէ
բնութեանց էից անտանելին պա-
րագրեցաւ 'ի քում յորովայնի. հո-
գեւոր երգով ըզքեզ միշտ մեծա-
ցուցանեմք:

Դուռըն փակեալ զքեզ եզեկիէլ
յառաջագոյն ծանոյց կոյս անարատ,
ընդ որ եմուտ անտես յէից,
բանն անմարմին որ 'ի հօրէ եւ ել
մարմնով անխափանելի պահելով կու-
սութեանդ. հոգե:

Վերափոխեալ զքեզ 'ի յերկնա-
յին խորանսն այսօր որդին քո մի-
ածին. ուստի եւ դասք առաքե-
լոցն եւ խմբատուն սուրբ կուսա-
նացըն միաձայնելով գովէին ըզքեզ
մայր անհարսնացեալ. հոգե:

ողր Անժամանակդ աստուած ա-
նըսկիզբն եւ անճառելի, անտես
սրովբէից, որ միշտ ընդ հօր օրհնա-
բանիս 'ի յանմահից, զդա-
տայցեալ օրհնաբանիչք եղաք. որ-
դի աստուծոյ ողորմեա:

Որ առաքեցար 'ի հօրէ եւ մար-
մնացար անճառապէս 'ի սուրբ 'ի
կուսէն. հաճեցար ըզմահ խա-
չին 'ի յանձն առնուլ փոխանակ
դատապարտութեան նախաստեղ-
ծին. որդի ան:

Որ բեւեռեցար 'ի խաչին յաղագս
մերոյ յանցանաց փրկիչ բոլորից.
ահաւոր գոչմամբ ձայնիւ զարա-
րածըս դողացուցեր, եւ ըզլու-
սաւորսն խաւարեցուցեր. որդի
աստուծոյ ողոր:

Որ ընդ մեռեալս համարելով
զթաղումն ընկալար բովանդակելի
մարմնով. յարուցեալ յերրորդ
աւուր հրեշտակացն աւետարա-
նութեամբ քարոզեցար յաշակեր-
տեալ կանանցն. որդի աստուծոյ
ողորմեա:

Զանճառելի յարութիւնըն հրա- տէր
շացեալ հրեշտակըն գոչէր առ կա-
նայսն ասելով. յարուցեալ է տէրն
'ի գերեզմանէն:

Որ էակից ես ընդ հօր զահա-
ւոր յարութիւն քո 'ի գերեզմա-
նէն, սրբասնեալ կանայքըն խըն-
դութեամբ քարոզէին:

Յարեաւ տէրն 'ի մեռելոց եւ ըզ-
զօրութիւնս դժոխոց խորտա-
կեաց, եւ զարդարեալսն 'ի նմա կոր-
զեաց ըսքանչելի յարութեամբն
իւրով:

Թագաւոր քրիստոս էակից հօր ճշ
եւ հոգւոյն, որ վասըն մեր մար-
մնացար 'ի սուրբ կուսէն. թագա-
ւոր փառաց քրիստոս քեզ փառք:

Որ կամաւոր մահուամբ ըզմահ
մեռուցեր, եւ անապական յա-
րութեամբըդ քո նորոգեցեր զաշ-
խարհս. թագա:

Որ կենդանարար արեամբըդ քո
լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի.
երգեմք քեզ ընդ հրեշտակս ասե-
լով. թագաւոր փառաց քրիս:



# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԾԱՂԿԱԶԱՐԴԻՆ

օրհ / դկ

ՄԵԾԱՀՐԱՇ այս խորհուրդ անմնդութեամբ առ մեզ հասեալ, զոր հոգւոց լուսատուն ՚ի պաշտպանէն իւրմէ լուեալ. Եթէ տօն մեծ է այսօր իմոյ դասուն որ ՚ի յերկինս։

Քանզի ՚ի յելսն վերին երկնաւորին որ ՚ի յերկրէ, ըստ դասուց երկնայնոցն տօնէին ուրախութեամբ, ՚ի հրեշտակացն ընկալեալ մինչ ՚ի յաթոռսն կատարեալ։

Իսկ ՚ի չորրորդումն դասէ պաշտպան եղեալ լուսաւորչին, ՚ի դասուն իւր փութացեալ ուրախութեամբ տօնակցութիւն. զոր հարցմամբ ՚ի նմանէ տեղեկանայր մարմնով հրեշտակն։

Եւ քանզի մեծ այս խորհուրդ ՚ի փրկութիւն բանաւորաց, հրեշտակաց եւ մարդկան առ հասարակ կատարեալ. երկոցունց սեռից ՚ի միասին յարմարութիւն։

Եւ զի շարժեալ նախանձու երիցագոյն զաւակին ՚ի գիւտ մոլորեալ եւ կորուսեալ անառակին, հրամայէ հայրն վերին ուրախանալ ՚ի միասին։

Վասն որոյ եւ մեք հանդիսացեալք ընդ նոսին. երգեսցուք օրհնութիւն հասարակաց փրկողին. որ եբարձ ըզխռովութիւն եւ հաստատեաց զխաղաղութիւն։

Այսօր ցնծայ եկեղեցի երկրաւորաց եւ երկնայնոց. քանզի մեկնեալն ՚ի միմեանց ըստ նախահօրն յանցանաց, միաւորի վերստին անպարտական խոնարհութեամբն։

Այսօր զէակն համայնից իմանալեաց եւ զգալեաց, որ եւ զմարդն ՚ի պատկեր իւր ստեղծ զանկեալն ՚ի պատրանաց. օրհնեցէք որդիք մարդկան կանգնեալք երկրորդ արարչութեամբն։

Որ զհանդերձեալսն խորհուրդ հոգւոյն յայտնեաց տեսանողացն, եւ եկեալ կատարեաց հօր եւ հոգւոյն առաքմամբ. օրհ։

Որ ՚ի լռութիւն բոլորից տնօրինական մեծ խորհրդոյն, առեցելոյն առ ՚ի մէնջ փառօք առ հայր վերհամբարձաւ. օրհ։

Իշխանութիւնք երկնից զարհուրեցան տեսանելով զերս քո քրիստոս, ընկեր առ ընկեր սարսեալ ասէին. ով է սա թագաւոր փառաց։

Սա է մարմնացեալ բանն աստուած որ ՚ի խաչին ըզմեղս ըսպան, եւ վերամբարձեալ փառօք գայ յերկինս տէր հզօր զօրութեամբ իւրով։

Սա է որ ՚ի գերեզմանէն յարեաւ եւ աւերեաց ըզդժոխս. եւ վերհամբարձեալ փառօք գայ առ հայր տէր կարող ՚ի պատերազմի։

Այսօր հրեշտակք ՚ի բարձունս ուրախանան ընդ մարդկան. որք իջեալ ՚ի յերկնից տան զաւետիս աշխարհի. ցնծացէք այսօր, քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց։

Այսօր զուարթունքն ՚ի վիմին խընկաբերից սուրբ կանանցն փողէր ձայնիւ ցնծութեամբ պատմէր

աշակերտացն ասելով. ցընծացէք
այսօր, քրիստոս յար։

Այսօր վիմին հաւատոյ եւ յով-
հաննու սիրելւոյ ընդ հակառակս
ընթացեալ ՚ի գերեզման յարու-
ցելոյն. զոր տեսեալ պատմէին,
քրիստոս յար։

Այսօր եւ մեք զուարճացեալք
պայծառասցուք տօնիւս. ընդ հաշ-
տութեան աստուծոյ միմեանց
արկցուք գիրկս սիրով. եւ միա-
բան գոչեսցուք, քրիստոս յար։

Հրեշտակացն դասք յերկնից
՚ի յերկիր վայրաբերեալ ՚ի սպաս
որդւոյն աստուծոյ։

Հրեշտակին ձայնիւ ցնծայր կոյ-
սին սուրբ. եւ ընթացեալ առ ա-
շակերտսն պատմէր։

Կենդանին յարեան զերկուսնս մա-
հու ելոյծ, եւ կեանս պարգեւեաց
աշխարհի։

Յայտնեցաւ է տէրն ՚ի գերեզմա-
նէն անհեղալերպ փայլմամբ, պա-
տառեցան վէմք, եւ երկիր սա-
սանեցաւ ՚ի յահեղ բարբառոյ
մեծ կայծակեալին։

Էջ հրեշտակն ՚ի յերկնից ՚ի գե-
րեզմանն տեառն. հնչեցուցա-
նէր ըզձայն ահեղ գոչման փո-
ղոյն ՚ի վերայ գերեզմանին։

Իսկ եկեալ սուրբ կանանցն ՚ի
խնկել զմարմինն տեառն. եւ լը-
ւեալ ՚ի հրեշտակէն եթէ յա-
րեաւ ՚ի մեռելոց կենդանին
յաւիտենից։

հոգ Ի համբառնալ բանին յերկինս
եւ ՚ի նըստիլ ընդ աջմէ հօր, զուար-
ճացեալ առաքելոցն երկրպագե-
լին. օրհնելով ըզհայր զառաքող
հոգւոյն։

Համահաւաքեալ գունդըք սըրբոցն
՚ի վերնատունն խորհրդոյ, համ-
բարձմամբ աչաց սպասէին հոգւոյն.
օրհնեմ։

Յանկարծահաս հընչմամբ հեղեալ
կենդանարար աղբիւր լուսոյ. ան-
մահական կենաց լուսով զարդա-
րեալ. որք օրհնէին ըզհայր զառա-
քող հոգւոյն։

Որ ՚ի հօրէ առաքեցար մար- հան
դանէր կարող փրկիչ. եւ ըզմե-
զուցեալ ըզմարդն բըժըշկեցեր.
ողորմեա տէր հրաժարելոյս զոր
հրաւիրեալ առ քեզ կոչեցեր։

Որ ՚ի խաչն բեւեռեցար մար-
դանէր կարող փրկիչ. եւ ըզցօղ
անապական արեանդ ցօղեցեր ան-
եղերաց. ողոր։

Որ ըզդըժոխս աւերեցեր եւ ըզ-
գերեալսն փրկեցեր. եւ զարդե-
լեալսն վերածեր ՚ի յոյս կենացն
յաւիտենից. ողոր։

Այսօր բանն ՚ի հօրէ անձեռ- ած
նելի եւ անճառելի խորհրդով,
՚ի ձեռն կուսական որովայնի
անօրինաբար յերկրի երեւեալ։

Մանուկ անժամանակ ՚ի հօրէ ան-
սերմն ՚ի կուսէ. ՚ի գիրկս մօր
գրգուեցաւ այսօր արարիչն երկնի
եւ երկրի։

Որ մարքեացն ըզյորդանան եւ
լուաց ըզմեղս աշխարհի. զոր օր-
հնեն անդադար արարածք ա-
մենայն զէակիցն հօր եւ հոգւոյն։

Այսօր նըշան յաղթող երեւ- խաչ
եալ ՚ի յերկրի պայծառացոյց ըզ-
տիեզերս. զէն յաղթութեան ե-
տուր ըզխաչ քո տէր, ապրեցու-
ցանել ըզմեզ ՚ի պատրանաց թըշ-
նամւոյն։

Փայտ կենաց կանգնեալ 'ի մէջ տիեզերաց. յոյս եւ ապաւէն ազգի մարդկան. սա պահեսցէ զմեզ յամենայն վտանգից մերոց. ապրեցու։

Յաղթող զօրութեամբ խաչիւ քո պահեա զմեզ քրիստոս աստուած. որ տարածեցեր զձեռս քո 'ի նմա. եւ լուծեր զկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեցու։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Զոր տեսեալ աւռակածնին 'ի հիացման զմերինան, բարբառելով առ միմեանս եթէ այս ով եկեալ յերկրէ, կարմրացեալ հանդերձիւ 'ի տիգախոց բզխեալ կողէն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ուստի լուեալ 'ի նմանէ զարժանահամ պատասխանին, եթէ զգեցեալ ազգ մարդկան 'ի գերողէն արեամբ գնեցի. յորմէ օրհնութիւնք նըմա 'ի փրկելոցս արեամբ նորա։

Այսօր արարիչդ արարածոց, որ նորահրաշ արարչութեամբ զարդարեցեր զեկեղեցի. ընդ քեզ բարեբանեմք աստուած հարցըն մերոց։

Այսօր կենդանիդ յաւիտենից, որ զմեզօք մեռեալ բնութիւնս բարձրացուցեր փառօք յերկինս. ընդ քեզ բա։

Այսօր որ զտարագրեալքս ըստ յանցանացն, դարձուցեր անդրէն զաւաջինն ընդ քեզ յաթոռ հօր հանգուցեր. ընդ քեզ բարեբանեմք աստուած հարց։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Ժողովուրդք հեթանոսաց որք ընդ հրեշտակըս բարձրացայք. որով զանձառ փառսն ընկալայք. օրհնե։

Քահանայք եւ պաշտօնեայք որք ընդ քրովբէսըն դասեցայք. ընդ նոսին համաձայնեալք որ դասեցայն. օրհնե։

Աստուածածին մայր լուսոյ արեգականն արդարութեան արեւելք, որ 'ի խաւար աշխարհի ծագեցեր ըզլոյսըն գերազանց. օրհնութեամբ ընդ քեզ բարեբանեալ մեծացուցանեմք։ ժեծ

Անմայ թեթեւ լուսաւոր ամպն դունակ խոնաւութեան, որ ըզցօղըն կենաց 'ի ցամաքեալ բնութիւնս ցօղեր. օրհնու։

Սերովբէ հողեղէն եւ մարմնաւոր քերովբէ, որ զանտեսն 'ի նոցունց յորովայնի քում կրեցեր. օրհնութեամբ ընդ քեզ բարեբանեալ մեծացուցանեմք։

Որ բանիւ բանըդ հօր գոյացուցեր զխմանալիսդ, 'ի պաշտօն փառաց քոց եւ էակից փառակցացդ. որպէս մաղթանօք սոցա երկրորդ բանաւորացս։ ողբ

Որ անձառ պարգեւօք քո զառաջինս ըզնոյն լցուցեր, եւ 'ի ձեռըն նոցա որ 'ի խոնարհ քան ըզնոսա. որպէս մաղ։

Որով եւ մեք վերջացեալքս յամենառատ քո շնորհէ, ճոխանամք նոքօք դեր 'ի վերոյ քան զարժանն. որպէս մաղ։

Վասն որոյ եւ մեք հանդիսացեալ ընդ նոսա, տօնեմք ցընծութեամբ զհասարակաց զփրկութիւն. վայելեալք յաննախանձ աստուածային քո պարգեւս։

Margin notes: հրց / գկ (left, beside "Այսօր արարիչդ"); գ (left, beside "Ըզտէր օրհնեցէք").

տէր Քահանայապետք առաջինք հանդիսաք անախտ բնութեան, բազմաչեայք քերովբէք եւ վեցթեւեան սերովբէք. բարեխօս լերուք առ տէր հանդիսակից ձեր տօնողացս։

Տէրութիւնք վերինք եւ զօրութիւնք հզօրին, իշխանութիւնք վեհագոյնք եւ քահանայապետք երկրորդք. բարեխօս լե։

Հրեշտակապետք երկնաւորք եւ հրեշտակաց զինուորութիւնք, պետութիւնք բարձրացեալք ՚ի քահանայապետութիւն երրորդ. բարեխօս լերուք առ։

Որք ՚ի սկզբեան փրկութեան ՚ի քաջ հովուին յայտնութիւնն, ամբան հօտիցն հովուաց երգակցելով երգէին. ընդ նոսին համաձայնեալ երգեմք եւ մեք զփառս ՚ի բարձունս։



Հարց. Վերջ ձայն:

հրց
գկ Որ զամենազօր զօրութիւնդ քո ցուցեր ՚ի բաբելոնի փրկելով զերիս մանկունսն ՚ի հնոցին. ընդ քեզ օրհնեմք աստուած հարցըն մերոց։

Որ ըզբազմազեղ ներողութիւնդ քո ցուցեր զօրաց երկնաւորաց տարածելով զբազուկըս քո ՚ի խաչին. ընդ քեզ օրհ։

Որ ըզբազմագութ ողորմութիւնդ քո ցուցեր առ ազգըս մարդկան թաղելով ՚ի սիրտ երկրի, զի զմահու բարձցես զերկիւղ. ընդ քեզ օրհնեմք աստ։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Բանն անեղական խոնարհեալ ՚ի հողեղէն գոյացութիւնս. համբերեալ չարչարանաց զմահ խաչին ՚ի յանձն էառ. բարձր ա։

Եւ իջեալ ՚ի գերեզման անապական եւ սուրբ մարմնով, յարուցեալ յերրորդ աւուր լոյս ծագեաց տիեզերաց. բարձր ա։

Իսկ հրեշտակապետն իջեալ ՚ի գերեզմանըն կենսատուին, աւետէր առ սուրբ կանայսն տէր յարեաւ ՚ի մեռելոց. բարձր ա։

Աստուածածին մայր եւ կոյս ծագող արեգականն արդարութեան, որ լուսաւորեացն ըզմեզ, հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք ըզմիածին քո զորդին։ մեծ

Ելոյծ զօրէնս բնութեան մարդկան հրաշափառ քո ծնունդ, եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ, եւ կուսութեանդ քո ոչ խախտեցան կնիքք. հոգեւոր երգով զքեզ բա։

Զքեզ մորենի անկէզ, լեառըն վիմածին դուռըն փակեալ եւ աղբիւր կնքեալ. նախատեսացըն գուշակեալ մայր եւ կոյս. հոգեւոր երգով զքեզ բա։

Յորժամ երեւեցար առաքելոցն, եւ մեզ փրկիչ ողորմեա։ ողբ

Քեզ քրիստոս թագաւորիդ անմահի երկիրպագանեմք, եւ զյարութիւնդ քո փառաւորեմք։

Փառք փրկողիդ եւ միածնիդ անմահի. փրկեա ըզժողովուրդըս քո զոր ըստացար պատուական արեամբըդ քով սրբով։

տէր Յորժամ եկին 'ի գերեզմանն իւղաբերք կանայքն, եւ բերին ըզխունկսն 'ի խնկել զանապականն մարմինն։

Յայնժամ հրեշտակն աւետարանէր յարութեան քրիստոսի. պատմեցէք աշակերտացըն զյարութիւնըն տեառն։

Իսկ նոցա զարհուրեալ վասն ահագին տեսլեանն. պատմէին աշակերտացըն զահագին տեսիլն։

հրց Այսօր ցնծան երկինք եւ երկիր յարութեամբ քո տէր. աստուած հարցըն մերոց։

Այսօր նորոգեցան տիեզերք ամենայն յարութեամբ քո տէր. աստուած հայր։

Այսօր հրեշտակապետքն աւետարանէր զյարութիւն քո տէր. աստուած հայր։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ չարչարանօք խաչին փրկեցեր զտիեզերս. եւ հեղմամբ արեանն իւրոյ զթողութիւն մեզ շնորհեցեր. բարձր արա։

Որ երեքօրեայ թաղմամբ զդժոխս աւերեցեր. եւ յարութեամբն իւրով զյարութիւն մեզ պարգեւեցեր. բարձր արա։

մեծ Աստուածածին պայծառ քան զերկինս, որ 'ի մեզ ծագեցեր ըզլոյսըն մեծ եւ գերազանց, որով խաւարն անգիտութեան հալածեցաւ. սրովբէական ձայնիւ զքեզ բարեբանեմք, եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք։

Ամպ թեթեւ եւ լուսաւոր, որ զանձրեւըն կենաց 'ի քեզ հեղեալ 'ի յերկնային ծովէն, զոր հոսեցեր 'ի յերկիր ծարաւուտ. սրովբէական ձայնիւ զքեզ բարե։

Պարտէզ փակեալ աստուածատունկ եղեմ, որ եւ ծառըն կենաց 'ի մէջ դրախտի քո 'ի հոգւոյն տնկեալ, անմահական պտղովն ելից ըզտիեզերս. սրովբէ։

Որ ըզկերպարանս մահացու բնութեան ազգի մարդկան յանձն առեր աստուած բանդ էակից հօր, եւ եկիր կամաւ 'ի խաչ։ ողր

Որ 'ի վերայ նախաստեղծին ըզմեռանիլ յանձն առեր համբերելով չարչարանաց 'ի խաչին բարձրացար բանդ գոյակից հօր, եւ իջեր 'ի գերեզման։

Եւ յերրորդ աւուր յարեար զմահու լուծեր զիշխանութիւն, արձակելով զըմբռնեալսն 'ի նմանէ բանդ փառակից հօր. եւ նստար ընդ աջմէ հօր։

Էջ հրեշտակն յերկնից աւետաւոր երջանիկ եւ սուրբ կանանցըն քարոզէր ասելով. է ձեզ վերըստին լոյսըն ծագեալ 'ի յաշխարհ։ տէր

Այսօր տեսիլ ահեղակերպ հրեշտակապետին մերձեալ 'ի գունդ զինուորացն. այսօր սըրտաբեկեալ պահապանացըն զարհուրեալ մեռանէին. է ձեզ վե

Այսօր ցընծայ երուսաղէմըն վերին. այսօր ցընծայ սիոն մայր եկեղեցի. քանզի փրկիչըն մեր յարեաւ եւ աւերեաց ըզդժոխս. եւ մեզ վերըստին լոյսըն ծագեալ 'ի հօրէ։

Փառաւորեալ է անուն քո սուրբ. տէր աստուած հարցըն մերոց։ հրց

Որ ՚ի բարձունս բնակեալդ ես, եւ հայիս յարարածս քո քաղցրութեամբ. փառա:

Որ ՚ի յերկրի երեւեցար, եւ ընդ մարդկան շրջեցար, Թագաւոր յաւիտենից. փառա:

գ Ըղոէմր. Ամենայն արարածք օրհնեցէք, եւ բարձր արարէք զեկեալքն ՚ի փրկութիւն մարդկան:

Որ էակիցն ես հօր եւ սուրբ հոգւոյն ՚ի յերկրի երեւեցաւ. ամե:

Որ հրեշտակաց անտեսանելի ես, ՚ի վերայ խաչին տեսաւ. ամե:

Որ սովբէից անհասանելի ես, ՚ի գերեզմանի եդաւ. ամե:

Որ քրովբէից անմատչելի ես, ՚ի յերրորդ աւուր յարեաւ. ամե:

մեծ Ըղբեղ աստուածածին, աղբեւր անապական լուսոյն, որ լուսաւորէ զհաւատացեալս. միաբանակամն ձայնիւ երգով մեծացուցանեմք:

Դու պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձրոյ անբիծ ծնի. վասն որոյ ըղբեղ աստուածածին մեծա:

Դու Ճշմարիտ արեւելք արեգականն արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց. միաբանա:

ողբ Թիւնս իմ. Ողորմեա ինձ աստուած:

Որ ՚ի հօրէ առաքեցար անբաժանելի որդի, եւ ՚ի սրբոյ կուսէն ծնար. ողոր:

Որ ՚ի խաչին բեւեռեցար աստուածդ բանդ, եւ ՚ի հօրէ ոչ մեկնեցար. ողոր:

Որ ՚ի գերեզմանի եդար Թագաւոր անմահ, եւ ՚ի յերրորդ աւուր յարեար. ողոր:

Որ ՚ի յերկինս համբարձար ամենակարող, եւ ընդ աջմէ հօր նստար. ողոր:

Հրեշտակացն դասք յերկնից ՚ի յերկիր փութաբերեալ ՚ի սպաս որդւոյն աստուծոյ: տէր

Հրեշտակին ձայնիւ ցնծայր կուսին սուրբ. եւ ընթացեալ առ աշակերտսն պատմէր:

Կենդանին յարեաւ զերկունս մահու եղծ, եւ կեանս պարգեւեաց աշխարհի:

Որ յառաջ քան զարեւ անուն քո, ՚ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան շրջեցար. աստուած հարցն մերոց: հրց

Կամաւորապէս անշնչացար, եւ ՚ի ծոց հօր աւանդեցեր զքո սուրբ զհոգին. աստ:

Եւ ըղհրաշալի անուանդ քո մարգարէն վերադոչեաց, հոգի երեսաց ըմբերոց տէր քրիստոս. աստ:

Ըղոէր. Միաբանութեամբ օրհնեսցուք, եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Զյարուցեալն ՚ի մեռելոց քրիստոս եւ զկենդանին յաւիտենից, միաբան:

Որ զդրունս դժոխոց փշրեաց եւ զարգելեալսն ՚ի նմա կորզեաց ՚ի կեանս, միաբան:

Որ զխոցելն կենաքով յարեաւ եւ զբոքըն փակելովք եմուտ առ աշակերտսն, միաբան:

Աստուածածին եւ սրբուհի. որ ըզբանն աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. մեծ

անդադար երգով մեծացուցանեմք։

Զքեզ մայր կուսութեան եւ յղութեան լուսոյ, եւ առագաստ անճառելւոյ բնակողին ՚ի քեզ փեսայացեալ բանին. անդա։

Քեւ լուծան կնիք դատապարտութեան. եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ. վասն որոյ ըզքեզ աստուածածին եւ կոյս. անդադար երգով մեծացուցանեմք։

ողր Իջեր յերկնից միածին անմեկնելիդ ՚ի հօրէ. հովանացեալ սուրբ հոգւոյն, բանըդ մարմնացար ՚ի կուսէն։

Ելեր ՚ի չարչարանս չարչարանացըն լուծիչ. ձեռք որ զերկինս արարին տարածեցեր ՚ի խաչին։

Համբերեցեր վասըն մերոյ փրկութեան. ըզմեռանիլ յանձն առեր կենդանատու մեռելոց։

տէր Հրեշտակ քո տէր որ զյարութիւնըն քարոզեաց։

Զպահապանըն զարհուրեցոյց, ըզկանայսըն լուսաւորեաց աւետեօք։

Զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս, չէ աստ այլ յարեաւ։

հրց Անսկիզբըն բանդ որ յանճառ աթոռ նստիս, զքեզ տեսաք ՚ի խաչին վասն արարածոց քոց փրկութեան. աստուած հարցըն մերոց։

Զքեզ որ անքննինդ ես յէութեան ըսպասաւորին ապտակեալ. եւ զինուորըն գեղարդեամբըն խոցեալ զանարատ ըզկողդ քո ՚ի խաչին. աս։

Որ թագաւորդ ես անմահ ըզմեռանիլ յանձն առեր եւ ըզթաղումն երեքօրեայ. վասն արարածոց քոց փրկութեան. աս։

Ըզտէր օրհնեցէք. Առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Զթագաւորըն մեսիայ եւ ըզխաչեալն ՚ի մէջ ՚ի յանօրինաց, եւ ըզլեղի դառնութեան ճաշակեալ վասըն մեր. առա։

Անարատ գառն աստուծոյ պատարագեալ. եւ ըզխոցումըն գեղարդեանն առեալ ՚ի կողն. եւ ըզփրկական արիւնն եհեղ ՚ի վերայ ամենայն տիեզերաց. առա։

Որ զանճառելին ծընար սուրբ աստուածածին կոյս. օրհնեալ ես յաւիտեան։ մեծ

Որ զարարչակիցըն հօր զի սկըզբանէ բանն աստըւած. յորովայնի քում կրեցեր. օրհ։

Զքեզ եզեկիէլ ետես երկնային դուռն եւ հարան անփորձ. օրհնեալ ես յաւիտեան։

Վասըն մերոյ փրկութեան խոնարհեցար ՚ի յերկնից եւ ՚ի կուսէն մարմնացար աստուած բանդ. ողորմեա մեզ։ ողր

Ճշմարտապէս մարմնացար եւ ընդ մարդկան շրջեցար կատարեցեր զամենայն, եւ օրհնեցեր յառաջին անիծից. աս։

Քրիստոս որդի աստուծոյ ՚ի մեռելոց յարուցեալ եւ ՚ի յերկինս համբարձար. աս։

Փառք յարութեան քո տէր։ տէր

Խաչիւ ՚ի յանձն առեր գթած եւ ըզմահ ճաշակեցեր. զամենեսեան յարուցեր զհաւատացեալսն ՚ի քեզ, որք աղաղակէին ասելով. փառք յարու։

Վէմըք պատառեցան 'ի խաչելու-
թեան քո տէր, եւ գերեզմանք
բացան. դըժոխք զարհուրեցան եւ
մեռեալըք յարուցեալ աղաղակէ-
ին աւետելով. փառք յարու:

տէր Յարուցեալ է տէրն 'ի գերեզմա-
նէն անհեղակերպ փառօքն, պա-
տառեցան վէմք, եւ երկիր սա-
սանեցաւ 'ի յահեղ բարբառոյ
մեծ կարապետին:

Իջ հրեշտակն 'ի յերկնից 'ի գերեզ-
մանըն տեառն. հընչեցուցանէր
ըզձայն ահեղ գուժման փառացն 'ի
վերայ գերեզմանին:

Իսկ եկեալ սուրբ կանանցն 'ի
խընկել զմարմինըն տեառն. եւ լը-
ւեալ 'ի հրեշտակէն եթէ յա-
րեաւ 'ի մեռելոց կենդանին
յաւիտենից:

հրց Որ յահեղակերպ աթոռ նըս-
տիս եւ ընդ հօր ես յէութեան.
խոնարհեցար յերկնից վասըն մե-
րոյ փըրկութեան. ընդ քեզ բարե-
բանեմք աստուած հարցըն մերոց:

Ուստի սերովբէքն 'ի խոնարհ ու-
նելով ըզդէմս յարփիահրաշ փա-
ռացն քո քրիստոս. իսկ յուդայի
ըրբութեամբ մերձեալ 'ի համբոյր
նըշանակ եւ առիթ մատնութեան.
ընդ քեզ բարե:

Որ 'ի բարձրութիւնս երկնից էիր
բնակակից հօր եւ սուրբ հոգւոյն,
եւ 'ի դասուց եբրայեցւոց դըպրաց
եւ փարիսեցւոց բարձար 'ի խաչ
վասըն մեր. ընդ քեզ բարեբանեմք
աստուած հարցըն մերոց:

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արա-
րէք ըզնա յաւիտեան:

Համբարձաւ աստուած օրհնու-
թեամբ եւ զօրք երկնից երգէ-
ին, որ է սա թագաւոր փառաց.
բարձր արա:

Սա է նա որ 'ի հովանաւոր
եւ 'ի լուսեղէն ամպոյն ձայն եղեւ,
դա է որդի իմ սիրելի. բարձր ա-
րարէք ըզ:

Ի քեզ եմք ապաւինեալ քրիս-
տոսի միայն աստուծոյ մերոյ: մեծ

Որ քան զերկինըս բարձրագոյն մա-
րիամ, պարծանք եկեղեցւոյ. քրիս-
տոսի միայն աս:

Որ քան զարեգակըն պայծառագոյն
մարիամ, մի դադարիր բարեխօսել
վասըն մեր. քրիստոսի միայն աս:

Որ վասըն մեր յերկնից խո- ողր
նարհեցար նորոգել ըզտիեզերս.
ծընեալ եւ ինձ փըրկիչ ողորմու-
թեամբ եւ կեցո:

Որ ըստ հողեղէն բնութեան
մարդկան զգեցար զմարմին. զկե-
րպաւորեալըս մեղօք զանձն իմ
մխիթարեա ողոր:

Որ ըզդատակնիք մահու լուծեր
զնախաստեղծին. զդատապարտեալ-
ըս մեղօք զհոգիս իմ նորոգեա
ողոր:

Փառըք քրիստոսի ամենազօր տէր
յարութեանն:

Քրիստոսի ամենազօր յարութեանն
երկըրպագեն քերովբէքն. եւ վեց-
թեւեան սերովբէքըն հոգեւորա-
կան հընչմամբ երգեն ասելով.
փառըք քրիս:

Այսօր անուշահոտ բուրմամբ ըն-
թանային սուրբ կանայքն, տե-
սանելով ըզհրեշտակն արեգակնա-
կերպ փայլմամբ 'ի վերայ վիմին
գոչէր ասելով. փառըք քրիս:

Այսօր արձակեցաք 'ի կապանաց
նախահօրն, եւ վերըստին նորոգ-

մամբ յաւիտենական կենաց եղաք ժառանգորդք. փառըք քրիս։

տէր Իւղաբերից կանանցն եկեալ ՚ի սուրբ գերեզմանն, եւ զաւետն ըղհրեշտակապետին ընդ ձայնիւն լուեալ. ուրք զխաչեցեալըն խնդրէք յարեաւ քրիստոս անմահ թագաւորն։

Արփիահրաշ լոյս մեծ ծագեալ ՚ի սուրբ գերեզմանն. եւ զարհուրեալ պահապանացն երկիւղալից ը մեռանէին. այլ քաջորդ հրեշտակապետին որ գոչէր առ կանայսն, ուրք զխաչեցեալըն խընդ։

Ընթացեալ պետրոս եւ յովհաննէս ՚ի սուրբ գերեզմանն, եւ հանդիպեալ վարշամակին եւ սուրբ կտաւոցն. այլ քաջորդ հրեշտակապետին որ գոչէր առ նոսա. ուրք զխաչեցեալըն խընդ։

ձյու Որ անքննելի յաղթող զօրութեամբ թագաւոր ես երկնի եւ երկրի քրիստոս աստուած. օրհնաբանեմք ըզքեզ։

Որ փառակցութեամբ ընդ հօր վերօրհնիս յանմահից. եւ խոնարհեալ մարմին ըզգեցար փառաց թագաւոր. օրհ։

Որ կարողապէս ըզմահ կոխեցեր. եւ յարուցեալ լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի անմահ էութիւն. օրհնաբանեմք ըզքեզ։





## ԿԱՆՈՆ

### ՊԷՆՏԷԿՈՍՏԷԻՆ ԱՌԱՋԻՆ ԱՒՈՒՐՆ

ԱՌԱՔԵԼՈՑ աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ ՚ի բարձանց, ՚ի նմանութիւն լուսոյ փայլման հրաղենեաց անկիզելի զաշակերտսն, մինչդեռ նստէին ՚ի սուրբ վերնատանն։ օրհ դձ

Անհիւթական աղաւնի, անքննելի որ քննէ ըզխորս աստուծոյ. զոր առեալ ՚ի հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիաւանգամ գալըստեան. զոր քարոզեցին համագոյական։

Օրհնութիւն ՚ի բարձունս, երգին ՚ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս ՚ի յերկինս։

Կենդանարար աստուած մարգարէր հոգի, ըզժողովեալսըն միաբանական սիրով լուսաւորեցեր հրեղինօք լեզուօք. վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ։

Անմահական բաժակ հեղեալ յերկնից սուրբ հոգի. զոր արբին ՚ի վերնատանն դասք սուրբ առաքելոցն. օրհնեալ ես սուրբ հոգի ճշմարիտ։

Առատապէս ծաւալեալ ՚ի մեզ հուրն կենդանի. քանզի արբեալ առաքելոցն, եւ արբուցին տիեզերաց. օրհ:

Այսօր մեծապէս ցնծան եկեղեցիք հեթանոսաց ընդունելով ուրախութեամբ ՚ի քէն կենդանարար բաժակ. օրհ:

Հոգին սուրբ էր միշտ եւ է եւ եղիցի. ոչ սկսեալ եւ ոչ դադարեալ. այլ միշտ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ կարգեալ եւ թուեալ, եւ միշտ օրհնեալ է ՚ի յաւիտեան:

Էր միշտ ընդունող սրբոց եւ լցուցիչ աստուածացուցիչ. եւ միշտ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ կարգեալ եւ թուեալ. եւ միշտ:

Միշտաշարժ ինքնաշարժ ինքնիշխան ինքնազօր ամենազօր. վասն զի շնչէ ուր կամի, որքան ախորժէ, յորժամ եւ որքան. եւ միշտ օրհնեալ է ՚ի յաւիտեան:

համ Համբարձաւ տէրն մեր Քրիստոս օրհնութեամբ ընդ ամպս երկնից, եւ առաքելոցն երկրպագեալ դարձան յԵրուսաղէմ. միաբանութեամբ վեր առաքէին զաղօթս:

Մտեալ ՚ի յերկինս բիւրաւոր զօրօք բազմութեամբ հրեշտակաց. որք աղաղակէին եւ ասէին, օրհնեալ եկեալ ՚ի յանուն տեառն:

Նստեալ ընդ աջմէ ծնողին, կատարելով զխոստացեալ պարգեւս. մխիթարիչ սուրբ Հոգին գայ առ ձեզ, աղբերացուցանել զմեծ զողորմութիւն:

հան Ժամանակ դարձի իմոյ եհաս ՚ի յերկիր. արդ տէր ընկալ զծառայս քո, եւ Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ՚ի յերկիր ուղիղ:

Խոստովանիմ Հոգիս որ ելից զունայնութեան ընթացս աշխարհի. արդ տէր ընկալ զծառայս քո, եւ Հոգի քո բա:

Ի վերջնումն աւուր մեծի, յորժամ ամենես զայցելութիւն քոյոց սիրողաց. յայնժամ խնայեա ՚ի ծառայս քո, եւ Հոգի քո բա:

Նոր սիոնի ծնեալ մանկունք սուրբ աւազանաւն. շնորհազարդեալք Հոգւովն Աստուծոյ. օրհնեցէք զՀայրն երկնաւոր յաւուր ծննդեանն սրբուհւոյ կուսին. յոր օրհնեցայք յանիծից նախնւոյն: ած

Արեամբ զանճառ անարատին փրկեալ ժողովուրդք. յաւուր ծննդեան Մօր անտանելւոյն. զովեցէք զմիածինն որ հաճեցաւ առնուլ մարմին անսերմն ՚ի նմանէ. յոր օրհ:

Յառատաբուղխ շնորհաց Հոգւոյն լուսազարդեալ ազգք հեթանոսաց. յաւուր ծննդեան Մօր Բանին ծնողի. զփառակից Որդւոյ զՀոգին բարեբանեցէք հոգեւոր երգով. որ մաքրազարդեաց զմայր Միածին Որդւոյն:

Ըզքեզ որ Հոգւով եւ հրով մաքրեցեր ըզմարդկան աղտեղութիւն, որպէս զԱստուած եւ զփրկիչ ամենեքեան օրհնեսցուք: յայ

Փրկիչն երեւեցաւ եւ զաշխարհս ապրեցոյց ՚ի պատրանաց թշնամւոյն. որդեգրութիւն շնորհելով ՚ի ձեռն մկրտութեան:

Ջրով կիզու ըզմեղըս մեր այսօր երեւեալ սրբեցուցիչն, եւ զովացուցանէ զաշխարհս աստուածային ջերմին։

ած Թագաւոր փառաց աստուած հոգիդ կենդանարար, 'ի շնորհաբաշխ աւուր մեծի ծննդեան մկրտման, դըստեր դաւթի թագաւորի. Նորոգեա զկենդանութիւն մերոյ թագաւորին. զի օրհնեսցուք ըզքեզ տէր այժմ եւ յաւիտեան։

Աղբիւր կենաց եւ փրկութեան մերոյ հոգի հօր եւ որդւոյ. 'ի յորդանանու յեսսեայ բըղխման գաւազանի հանեալ ժամու. շնորհազարդ պայծառացո զգաւազան իշխանութեան մերոյ հայրապետին. զի օրհ։

Լրումն աշխարհի եւ ճառագայթ իմանալի հոգի սուրբ աստուծոյ. 'ի ցնծութեան աւուր լուսման ուրախութեան յիշխանաց եւ աննայի. անձինք սոցա լոյս զպետս կարեաց հայաստանեայց եկեղեցւոյ. զի օրհնեսցուք ըզքեզ տէր այժմ եւ։

խաչ Որ հաստատեցեր բանիւ զեկեղեցի քո քրիստոս 'ի վերայ առաքելական վիմի, երգել 'ի սմա զերգըս հոգեւորս։

Կանգնեալ 'ի սմա սեղան սրբութեան բաշխէ զմարմին քո եւ զարիւն, եւ տայ 'ի սմանէ մեզ նորոգութիւն, 'ի թողութիւն մեղաց մերոց։

Իջեալ հոգւոյն սրբոյ աղաւնակերպ երեւմամբ 'ի վերայ մարմնոյ եւ արեանն տեառն, 'ի բժշկութիւն հոգւոց մերոց։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Զուարճացան քո գալստեամբըն սուրբ առաքեալքըն. կոչելով 'ի միամին ըզցըրուեալսն 'ի միմեանց բազմաձայն լեզուօք, վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Հոգեւորական սուրբ մկրտութեամբ զարդարեցեր նոքօք ըզաեղերս 'ի ըզգեստս լուսափայլս եւ նորափետուրս. վասն որոյ եւ մեք այ։

Զհոգւոյն զգալուստըն տօնեմք, որ մխիթարեաց զառաքեալըսն հանգչելով 'ի նոսա հրեղէն լեզուօք. օրհնեալ է յաւիտեան։ հրց աձ

Զերեւումըն հոգւոյն տօնեմք, վերաբերեալ աստուած խոստմանիւքըս նորոգող եւ կենդանարար. օրհնեալ է յա։

Այսօր ուրախացեալք հոգւովն, խոստանալին աստուած զհոգին սուրբ բղխումն եւ լըցուցիչ զամենայն. օրհնեալ է յա։

Ըզտէր օրհնեցէք եւ գերառաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Զեղօղըն 'ի հօրէ զէակից որդւոյ սուրբ զհոգին, օրհնեցէք։

Զեկեալըն այսօր աստուած հրեղինօք լեզուօք առ բանն ընտրութեան օրհնեցէք։

Այսօր ը նոր ժողովուրդք, ցնծացէք ընդ գալուստ հոգւոյն սրբոյ. մեծացուցանելով զեղօղն 'ի հօրէ։ մեծ

Այսօր ցնծան առաքեալքն, զարդարեալք 'ի շնորհաց հոգւոյն սրբոյ. մեծ։

Այսօր զուարճացան արարածք ճշմարիտ գալստեամբ հոգւոյն սրբոյ. մեծա։

ողր Որ յամենայնի ես ամենատութիւն, եւ 'ի ձայն հնչման իջեր յերկնից սուրբ հոգի. ողորմեա մեզ։

Որ զամենայն լնուս զօրութեամբ քո, եւ 'ի դաս առաքելոցն իջեր բնակիլ սուրբ հոգի. ողորմ։

Որ անբաժանելի ես յաստուածութեան. եւ 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի. ողորմ։

տէր Որ 'ի քրովբէական կառսդ հանգչիս, այսօր իջեր յերկնից 'ի դաս առաքելոցն սուրբ հոգի. օրհնեալ ես Թագաւոր անմահ։

Որ գնաս 'ի վերայ թեւոց հողմոց, այսօր 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի. օրհ։

Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր 'ի հաստատել զեկեղեցի քո սուրբ հոգի. օրհնեալ ես թա։

տէր Ժողովեալ ընտրելոց մեծաստանիցն, սպասեալ մնային աւետեացն հօր հաստատել 'ի վերնատանն։

Սուրբ հոգին երեւեալ սրբոցն, լեզուաց խնդութեամբ սուրբ զառաքեալսն հաստատել 'ի վերնա։

Որք արբին ըզհուրն կենդանի, եւ ընթացեալ արբուցին տիեզերաց. որք արբին նովին կենդանացան։

ճշւ բձ Որ 'ի հայրական 'ի յանճառ գրկերէն յառաջ բղխեալ անհամառբար 'ի յորդւոյ տիրապէս սուրբ հոգին. այսօր 'ի յերկնից սաստիկ հնչեալ 'ի դաս առաքելոցն լուսացեալ բոցոց. ընդնմա օրհնեսցուք երկրպագելով։

Որ յանըսկզբն եւ 'ի միշտ 'ի յէութենէն նոյնագոյ բնութեամբ անորիշ բաժանմամբ 'ի յորդւոյ արարչակից սուրբ հոգին, այսօր հրով բաժանեալ լեզուս քարոզիցն, 'ի լոյս ածեալ զազգս մարդկան բաժանմամբ պէս պէս շնորհաց. ընդնմա։

Որ 'ի վերայ ջուրցն գոլով գոյացոյց զարարածս, անանջրպետն 'ի հօրէ եւ յորդւոյ իշխանակից սուրբ հոգին. այսօր վերածնեալ զազգս ամենայն, ջրոյ կենդանւոյ բղխեալ յերուսաղէմ, ընդնմա։

Երրորդութիւնն անբաժանելի հմք բկ
եւ զօրութիւն երկնային լոյս ծագեալ յաշխարհ. նմա հանցուք զօրհնութիւնս երգով։

Որ էջն յերկնից, այսօր եւ հանգեաւ յառաքեալսն ճշմարիտ սուրբ հոգին. նմա։

Որ 'ի խորհուրդս փրկական. այսօր ընդ իջանել յառաքեալսն ծանուցաւ մարգարէին. նմա հանցուք զօրհնութիւնս երգով։





# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

օրհ
բձ

ՍՈՅՆ եւ նման հօր եւ որդւոյ հոգիդ անեղ եւ համագոյ. բղխումն հօր անքննաբար աուղ յորդւոյ անճառաբար. 'ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց արբուցեր. արբո եւ մեզ ողորմութեամբ 'ի բաժակէդ իմաստութեան։

Էջից ստեղծող արարածոց որ շրջէիր 'ի վերայ ջրոց. նոյն եւ 'ի ջուրսն աւազանին 'ի շնորհել մեզ քում էակցին, գրգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպս. արբո։

Բամբուն վերնոցն իմանալեաց եւ ստորին այսր ըզգալեաց. որ մարգարէս տաս 'ի հովուաց եւ առաքեալս 'ի ձկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. արբո։



Սարսափելի հողմոյ նման ահեղագոչ սաստիկ հնչմամբ, երեւեցար 'ի վերնատանն հոգիդ դասուն երկոտասան. որք առ 'ի քէն մկրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. մաքրեա 'ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց։

Հայր անսկիզբն, որ վերօրհնեալդ ես 'ի դասուց քերովբէից. ըզքեզ աղաչեմք ողորմեա քոյոց հաւատացելոց։

Բանդ 'ի հօրէ որ յառաջ քան զյաւիտեանս որդի փառակից հօր. ողորմ։

Որ նստիս 'ի քերովբէս եւ տեսչութեամբ խնամես զարարածս քո ճշմարիտ սուրբ հոգի. ողորմեա քոյոց հա։

Անեղն 'ի հօրէ ծնեալ որդի յանէից գոյացոյց զեղեալս զերկնային եւ զերկրաւորս էութիւն. արարածք ամենայն տուք փառս արարչին արարածոց։

Պատկեր աներեւոյթ փառացն հօր, 'ի պատկեր բարերարութեան իւրոյ արար ըզմարդկային բնութիւնս. արարածք ամէ։

Լոյս 'ի հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զադամ, 'ի դրախտին եդեալ անմահ տնկոցն երկրագործ. արա։

Ըստ աւետեաց մարգարէին որ առ փրկեալքս արեամբ գառինդ, ցնծամք եւ մեք ծառք անտառի ընդ գալուստ տեառնդ կրկնակի. շնորհեա մեզ տէր ընդ արդարոցն ընդ առ 'ի քէն տնկեալ ծառոցն, այժմ յուսով զուարճանալ եւ յերկրորդին ընդ քեզ ցնծալ։

Սովին նման տայ աւետիս զաքարիաս նոր սիոնի, եթէ ուրախ լեր ահա գայ առ քեզ խոնարհ եւ հեզ արքայ. նստեալ 'ի յէշ եւ յաւանակ կրկին ազանց գոլ օրինակ. նստեալդ յաթոռ քերովբէից նիստ գթութեամբ 'ի մեր հոգիս։

Զանհեղ փառաց քոց երեւումն որ լինելոց է յերկրորդումն, ետես դաւիթ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազդմամբ հոգւոյն. թէ յայտնապէս աստուած գայցէ հուր առաջի իւր բորբոքէ. յայնժամ

յիսուս 'ի մեզ խնայեաւ գըթած քրիստոս եւ ողորմեաւ:

Աստուածածին անհասանելեանն յերկրէ յերկինս հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ նման քո միածնին յաջակողմեան. յայնժամ մաղթեա ընդ մեր ըղձոյն փրկել ըզմեզ յահեղ բոցոյն, համագաւիլ ընդ արդարոց երգել ըզփառս ընդ երկնայնոցն:

ծնն Բանն առաքեալ 'ի հօրէ, որ վասըն մեր մարմնացաւ եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցաւ. ըզքեզ բարեբանեմք աստուածածին կոյս:

Զի որում ոչըն հանդուրժէին բոցանըշոյլ սերովբէքն. նա բնակեցաւ 'ի քում յորովայնի. ըզ:

Յորմէ սարսեալ դողային փայլակնացայտ 'ի լուսոյն. 'ի գիրկս քո ըզնա ընկալար. ըզ:

ապշ Օրհնեմք ըզքեզ անընկլիզելին հայր. յամենայն ժամ օրհնութիւն 'ի բարձունս:

Գովեմք ըզքեզ միածին որդի. յամենայն ժամ գոհութիւն 'ի բար:

Բարեբանեմք ըզքեզ սուրբ հոգի. յամենայն ժամ փառըք քեզ աստուած:

Հընչմամբ փողոյ սաղմոսարանաւ եւ քնարիւ օրհնեցէք ըզտէրն 'ի յերկինս:

Որդիք սիոնի, ցնծութեամբ եւ ուրախութեամբ գովեցէք զորդին միածին:

Եւ սուրբ զհոգին ամենայն շնորհօք բարեբանեցէք, երգով եւ ձայնիւ ցնծութեամբ:

հան Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զերրորդութիւնըն, փառաւորելով ըզհայր. որ վերակոչեաց զամենեսեան 'ի մահուանէ յանմահութիւն:

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց, քրիստոսի երկրպագելով. որ վերակոչեաց զա:

Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք, հոգեւորական հնչմամբ գովեսցուք, սուրբ զհոգին փառաւորելով. որ վերահանգոյց զա:

Ուրախացիր սրբուհի գաբրիէլի աւետեօքն. որ քարոզեացն ըզգալուստ արքային տեառն 'ի յերկնից: ած

Ողջոյն ընդ քեզ մարիամ 'ի քեզ սուրբ հոգին եկեսցէ. եւ զօրութիւն բարձրելոյն 'ի վերայ քո հովանասցի:

Որ ծնանելոցն է 'ի քէն իսրայէլի առաջնորդ. եւ ընդհանուր քարոզի աստուած հզօր անմահ բանն:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Էակիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար, ընդ արդարութեան եւ ընդ մեղաւոց եւ ընդ չարին դատաստանեաց. բացեր ըզդանձս անհիւթականն պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաղթեա 'ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Տէրն 'ի սիրոյ զմէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. ընդունես 'ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաղթեա 'ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց:

հրց ակ Որ անխմանալի ես յէութեան եւ անպատում հոգիդ ճշմարիտ. անըսկըզբնաբար բըղխումն 'ի հօրէ, եւ համագոյակից որդւոյն միածնի. օրհնեմք ըզքեզ աստուած հարցըն մերոց:

Որ կատարեալ անձնաւորութեամբ յերից կատարելոց մի եւ նոյն բնութիւն. որով ընդ հօր եւ ընդ որդւոյ միշտ երկրպագիս յարարածոց հոգի աստուծոյ. օրհ:

Որ համապատիւ հօր եւ որդւոյ քարոզեցին ըզքեզ աստուածաբանքն եկեղեցւոյ. յոր մըկրտիմք եւ դաւանիմք համագոյ երրորդութիւն անբաժանելի. օրհնեմք ըզքեզ աստուած հար:

գ Ըզտէր օրհնեցէք բարձր րձր ա-րարէք զբաշխողըն շնորհաց:

Եկայք նոր արարածք 'ի քրիստոս նորածնեալք աւազանաւն 'ի հոգւոյն սրբոյ. բա:

Նոր քահանայութիւն վերապատուեալ 'ի քրիստոսէ օծմամբ սուրբ հոգւոյն. բա:

մեծ Զանճառելի ըզլոյս աստուածութեանն աննօրինաբար կրեցեր 'ի քում յորովայնի մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք:

Ի մանաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն. այլ 'ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր աստուածութեանըն մարիամ մայր եւ կոյս. օրհնու:

Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսեղէն, գերագոյն քեզ հոգւոյն սրբոյ, եւ զօրութիւն բարձրելոյն հովանաւորեալ սուրբ աստուածածին. օրհնու:

Որ առաքեցար 'ի հօրէ հոգիդ ողր
անեղ եւ համագոյ. աղաչանօք աննօրինաբար քում էակցին. լինել մըխիթարիչ սուրբ առաքելոցն. աղաչեմք ըզքեզ ողորմեա:

Որ իջեր տիրաբար յերկնից սաստիկ հողմոյ նըման աստուած յայտնապէս, եւ 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար 'ի դասս առաքելոցն. աղա:

Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին տըրտմեցելոց որդւոց ադամայ ըզբաժակն ուրախարար յայգւոյն եդեմայ. աղա:

Որ յերկնային զօրս անմարմնո- տէր
ցըն նախ հեղեր առատապէս հոգիդ ճշմարիտ. զաստուածային եւ զգերագոյն քո իմաստութիւնդ. լինել փառաբանիչ սուրբ երրորդութեանդ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ:

Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ երրորդութեանդ խորհրդակցութեամբ. զարդարեցեր փըչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ 'ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ նո:

Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մըտեալ 'ի վերնատունն դրօքըն փակելովք. շնորհելով ըստ առաջին փըչմանն ըզքեզ մետասանից. առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նո:

# ԿԱՆՈՆ

## ԵՐՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

օրհ բկ Ա՛ՅՍՕՐ երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգման. քանզի նորոգողն էից հոգին էջ ՚ի սուրբ վերնատունն. որով նորոգեցան դասք առաքելոցն։

Այսօր հոգանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ հօր հաշտութեան. քանզի որ երբեմն զհոգին ՚ի մարդկանէ մարմին եղելոց, դարձեալ վերստին ըզնոյն պարգեւէ։

Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցնծութեամբ զգալուստ սուրբ հոգւոյն. որով զարդարեցան ՚ի զգեստս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրովբէսն զերեքսրբեանն։

Որ զխաբանեալսն յաշտարակին բաժանմամբ լեզուացն քակեցեր. այսօր ըզբաժանեալ լեզուս ազգաց միաբանեալ դարձեալ ՚ի սուրբ վերնատունն. ամենայն հոգիք օրհնեցէք զհոգին աստուծոյ։

Այսօր անքնին գիտութեան բղխեալ ՚ի սուրբ վերնատանն, յորմէ լըցան տիեզերք գնացիւք գետոյն ոռոգմամբ։

Այսօր իջեալ ՚ի յերկնից հօր աւետիքն ՚ի բարձանց, տալ աւետիս ադամայ դառնալ յեդեմ վերստին։

Այսօր խնդայ նոր սիոն որդւովք իւրովք զոր ծնաւ, ծծմամբ հոգւոյն նորոգեալ յորդիս լուսոյ եւ տուընջեան։

Այսօր ՚ի ձայն գոհութեան զհոգին ընդ հօր եւ որդւոյ, հոգիք ամենայն օրհնեցէք զերեքսրբեանն երգելով։

Այսօր ցնծամք երկրաւորքս ընդ գալստեան երկնայնոյն, եւ պարելով ընդ հրեշտակս երգեմք ըզփառս ՚ի բարձունս։

Օրհնեցէք մանկունք ընդ երկնայնոցն ըզհայրն երկնաւոր. որ մարմնացեալ բանին վկայեաց յերկնից այսօր ՚ի Թաբօր լերինն։ վար

Գովեցէք ընդ սերովբէսն զորդին միածին. որ փայլեաց մարմնով զլոյս աստուածութեան այսօր ՚ի։

Բարեբանեցէք ընդ քերովբէսն զհոգին ճշմարիտ. որ լուսափայլ ամպով էակցին հովանացեալ այսօր ՚ի Թաբօր լերինն։

Ի՞ջեր տէր ողորմութեամբ քո յաշխարհ, եւ ըզմեռեալ բնութիւնս ՚ի կեանս վերափոխեցեր։

Ելեր տէր առ հայր փառօք ՚ի յերկինս, եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զհոգիդ։

Բացեր տէր այսօր ըզգանձդ երկնային, եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բնութեանս։

Որ օրհնիս ՚ի հրեշտակաց անդադար հայր երկնաւոր, ընկալ զաղաչանս մեր։ այլ

Առաջի քո անկանիմք փրկիչ. խնդրեմք զթողութիւն բազում յանցանաց մերոց։

Որ գիտակ ես գաղտնեաց մարդկան հոգի սուրբ, տէր եւ կենդանարար ընկալ զաղս։

Օրհնեցէք ըզտէր ընդ երկնայինսն նմանեալ դասուց, նոր

ժողովուրդք ասելով, քեզ Հօր տուողիդ մեզ ըզկեանըս փառք:

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք ընտրելոց որդիք սիովնի ասելով, քեզ որդւոյ շնորհողիդ մեզ ըզկեանըս փառք:

Բարեբանեցէք զաստուած 'ի ըսքանչելիս սրբութեան նորա ձայնիւ ցնծութեամբ ասելով, քեզ հոգւոյդ պարգեւողիդ մեզ ըզկեանըս փառք:

հրշ Որ յանէից ստեղծեր ըզպաշտօնեայս քո 'ի հուր կիզելոյ հուրդ անեղական. ընդ նոսին օրհնեմք ըզքեզ եւ մեք հողեղէնքս:

Որ բանիւ գոյացուցեր զիննեակ դասըս հրեղինաց բանդ 'ի սկըզբանէ. ընդ նոսին գովեմք ըզ:

Որ արարեր յոգիս իմանալիս ըզհրեշտակըս քո հոգի աստուծոյ. ընդ նոսին բարեբանեմք ըզ:

հան Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա տէ՞ր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբըս քո, եւ դասաւորեա 'ի յաւուրն այցելութեան:

Որ կոչեցեր 'ի դրանց մահու ըզսիրելին քո ղազարոս, եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա տէ՞ր զհո:

Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո տէ՞ր զհոգիս նոցա:

ած Որ ողորմեցար 'ի մեղս ծնելոյ մարդկան հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնող որդւոյդ միածնի. մաղթանօք սորա՛ տէր մեզ ողորմեա:

Որ ցուցեր 'ի մեզ յամպոյ օրհնեալ որդիդ այսօր զկոյսըն մարիամ. յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ զմեղս նախաստեղծին ադամայ. մաղ:

Որ մաքրեցեր հոգիդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո փառակցին. այսօր ամուլ ծնողաց նորին ետուր ըզմայր բանին զօրհնիչն եւայի. մաղթա:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Որ էջ հոգին տեառն եւ առաջնորդեաց երկոտասան ցեղիցն իսրայէլի 'ի յանապատին. այսօր երկոտասան առաքելոցն առաջնորդէ 'ի յաւետարանն. ամենայն հոգիք օրհնեցէ՞ք զհոգին աստուծոյ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Որ ելից հոգին տեառն ըզբեսելիէլ ճարտարապետ խորանին. այսօր շինէ զմարդիկ խորան սուրբ երրորդութեանն. ամենայն հոգիք օրհնեցէ՞ք զհոգին աստուծոյ:

Որ բոլորից ես պատճառ էից հրց
անպատճառակից եւ որոց պատճառաւ հայր անծին եւ անսկիզբըն. որդւոյ պատճառ անժամանակ ծնընդեամբ, եւ հոգւոյդ բըղխման անքըննաբար. օրհնեալ տէր աստուած հարցն մերոց: դձ

Որ կամաւ հօր եւ սուրբ հոգւոյն անեղակից բանդ աստուած 'ի հայրական ծոցոյ իջեր աւետօք գաբրիէլի որ ըզհոգին բերկրեալ կուսին. յորմէ ծընար մարմնով անճառաբար 'ի հոգւոյն սրբոյ. օրհ:

Որ մարգարէիւքըն գուշակեցեր հոգիդ յառաջագոյն զգալուստ

քում էակցին. եւ 'ի յորդանան վըկայեցեր աղաւնակերպ իջմամբ 'ի վերայ մկրտութեան բանին. օրհնեալ տէր։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Այսօր համագոյակիցըն հօր եւ որդւոյ հոգին հրախոյլ ծագմամբ իջեալ 'ի վերնատունըն մըկըրտեաց ըզգասս առաքելոցն 'ի հուրն անկիզելի. ըզտէր օրհ։

Այսօր արարչակիցըն հօր եւ որդւոյ հոգին բըղխեալ անհիւթական ջուր կենդանի յերուսաղէմ իմաստութեան եւ մաքրութեան մեղաց. ըզտէր օրհ։

մեծ Ուրախացիր աստուածածին վերօրհնեալդ 'ի սրովբէից. ծագելով 'ի քէն մեզ լոյս մայր եղեր վերածնողին. ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք։

Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ. 'ի հրեշտակաց սպասաւորեալ գովրիլ քեզ աւետեաց. ազգ եւ ա։

Տեսանեմք ըզլուսկայլի զհրաշալի խորհուրդ յայտնեալ. 'ի հոգւոյն սրբոյ յղացեալ զբանն աստուած մարմնով ծընար. ազգ եւ ազինք ըզքեզ մեծացու։

ողր Որ 'ի վերայ բըղխեալ գաւազանին յեսսեայ հանգեաւր եօթնարփեան շնորհօք, հոգի աստուծոյ եւ խորհըրդոյ, հոգի հեզութեան եւ զօրութեան, հոգի իմաստութեան եւ գիտութեան, հոգի երկիւղի աստուածպաշտութեան. աղաչեմք շնորհեա եւ մեզ ողորմութեամբ 'ի քոց պարգեւացդ։

Որ զգուշակեալըն քո եսայեաւ եկից օծեալն 'ի քէն մարմնով. աւէ հոգի տեառն 'ի վերայ իմ. զոր 'ի տնօրէնութեանըն խոնարհութեամբ ընթերցեալ որ վասն իւր զբան մարգարէին. աղա։

Որ զառաքումն առ 'ի հօրէ եւ 'ի հոգւոյդ բանին յաշխարհ մարգարէիւըն ծանուցեր. զոր 'ի դիմաց մարդացելոյն բարբառէր առ մարդկութիւնս. տէր տէր առաքեաց զիս եւ հոգի նորա. աղա։

Ընդ երկնայնոց հոգեղինաց դասուցն հոգւոյդ ստեղծողին երգեմք. փառաւորեալ է գալուստ հոգւոյն սրբոյ։ տէր

Ընդ առաքելոց խմբիցն այսօր զուարճացեալ վերադոչեմք հոգւով. փառաւ։

Աստանօր վերնատունս սիոնի որդիք նորոյ երգեցէք ձայնիւ վերնոցն. փառաւ։

Ի ձայն ցընծութեան ամենայն հոգիք տացուք զմեզ նորոգողին ըղխնդուս. փառաւորեալ է գալուստ հոգւոյն սրբոյ։



## ԿԱՆՈՆ

### ՉՈՐՐՈՐԴ ԱԻՈՒՐՆ

ԱՐԵԳԱԿՆ արդարութեան քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծագեացն. որ երկրպագի օրհ գձ

յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգւով եւ ճշմարտութեամբ։

Որ փոխանակ ծոցածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետաքըն հօր 'ի բարձանց հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս յաղամմայ տրտմեցելոց եւ հրազինել զընտրեալ դասս առաքելոյն. վասն ո։

Այսօր տրտմականքն եւ գիշերայինքն լուսաւորին երկնինք ծնընդեամբն նախամօրն. քանզի զծնեալսն մարմնով 'ի մահ եւ յապականութիւն, վերստին ծնանի հոգին յորդիս լուսոյ հօրն երկնաւորի. վասն ո։

Որ համագոյդ ես հօր եւ որդւոյ, անճառաբար բղխումն 'ի միշտ էէն. այսօր բղխեցեր ջուր կենդանի յերուսաղէմ. հոգի աստուծոյ ողորմեա։

Հոգիդ ճշմարիտ որ զաստուածայինն ըղհրամանելն քո զաւածըն դաւթեան լուցեր, մրբուցանելով աշակերտացն ըղպատրաստութիւն քո 'ի սուրբ վերնատանն. ողորմեա։

Որ առաքեցար 'ի հօրէ կենդանարար վտակ եւ լոյս ճշմարիտ. մրբուցանելով նորօք որդւոց սիոնի զուղղեալս փրկութեան. ողորմեա։

Որ կատարեցեր ըղխոստումդ ցանկութեան սրտից նոցա. որք լուսաւորեալ մընային մեծի պալատեան քո 'ի սուրբ վերնատանն. ողորմեա։

Որ 'ի թեւս թեթեւս աննիւթ սաւառնեալ եւ հրացայտըն սերովբէից վերանըստեալ տեսչութեամբ խնամես զարարածս. հոգի սուրբ օրհնեալ ես յարարածոց քոց։

Որ սքանչելագործս հրաշալի ձայնիւ ընդ հօր եւ ընդ որդւոյ միշտ փառաբանիս, եւ քաղցրութեամբ հայիս յարարածս. հո։

Այսօր աստուածային տեսչութեամբ 'ի վերնատունն հընչեալ հողմաձայն հընչմամբ, եւ զառաքեալսըն նորոգեալ բաշխեցար յարարածս. հո։ ապչ

Որ տիրական ես 'ի քէն կարգեալ տընտես բնութեան մերոյ, իմաստութեամբ ըզպարտս եթող քոյոց պարտապանաց. թող եւ ըզմեր ըզյանցանս ողորմութեամբըդ քո քրիստոս։

Որ զպատմուճանն առաջին զոր զգեցուցեր օծմամբ հոգւոյն, մերկացաք մեզօք ըստ նախահօրըն պատուիրանաց. զգեցո ըզնոյն վերըստին ողորմեա։

Յաստուածային կայծակունս 'ի սրբելէիցն անհընարելին, անմարմնապէս մերձեցաք դող պատարագն քում խորհրդոյ. շնորհեա ըզնոյն մաքրութեամբ 'ի թողութիւն մեղաց մերոց։

Որ վառեցար 'ի յարկոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ ետուր ըզհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ քրիստոս ջնջել ըզգիր մեղաց մերոց։

Ըզհոգին երկնաւոր օրհնեցէք ընդ հրեշտակս, որ միայն է թագաւոր փառաց։

Զորդին միածին գոհութեամբ բարեբանեցէք, որ եկն եւ փրկեաց զմեզ։

Զմխիթարիչ սուրբ զհոգին ամենայն շունչք բարեբանեսցէք, որ լուսաւորեաց զմեզ։

ծնն Հոգի իմ յամենայն ժամ զքեզ փառաւորէ տէր. վասն զի լոյս են հրամանք քո ի վերայ երկրի։

Հոգի քո սուրբ եւ բարի զէն ինձ քրիստոս եղիցի յամենայն ժամ ընդդէմ թշնամւոյն հակառակորդին։

Հոգւոյն սրբոյ հովանացեալ զքեւ աստուածածին, մարմնացեալ հօր հաճութեամբ զորդին միածին մեզ ի փրկութիւն։

Այսօր Գաբրիէլ ցնծութեամբ երգեաց սրբոյ կուսին աւետիս բերկրեաց ասելով. որ ծնաւ ըզփրկիչ անձանց մերոց։

Անքննելին երկնի եւ երկրի, ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ. աստուած այցելու մարդկան։

Յառաջընթաց փայլումն լուսաւորիլ աստեղն, մոգուցն հետեւելով նշանին ի ծնունդ աստուածորդւոյն։

ած Անսկզբնական բանին հօր բնակարան, տաճար եւ առագաստ, տեղի անտանելի լուսոյն. զքեզ մեծացուցանեմք արժանապէս երգով աստուածամայր եւ կոյս։

Յորմէ կենդանաստեղծեալք յանեղէն հաստեցան ամենայն եղականքս, անսերմնապէս տղայացաւ յորովայնի քում, եւ ծնաւ առ ի քէն մարմնացեալ աստուածորդին բոլորից. զքեզ մե։

Յորմէ զարհուրեալ դողային դասք վերին զուարթնոցն, տղայապէս առ ընկալեալ բարձեր ի գիրկս, եւ արբուցեր որպէս մայր բստացողին ըզքեզ ըզկուսական քո սուրբ ըզկաթն. զքեզ մե։

խաչ Ի խաչանիշ փայտէն դողդողեցան դժոխք. զօրութեամբ սուրբ հոգւոյն նորոգեցաւ երկիր. ով է սա որ խափանեաց զմահ։

Հրեշտակն աւետէր կուսին մարիամու, սա է ի սկզբանէ բանն որ յառաջ քան զյաւիտեանս որդին. սա է թագաւորն որ խա։

Յարեաւ յաւուր երրորդի. վէմք պատառեցան երկիր շարժեցաւ սասանեցան դժոխք. սա է կենդանին յաւիտենից քրիստոս։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ աթոռակից ես հօր եւ որդւոյ, որով կենդանածնեալք ի ջրոյս արարածք. այսօր որդիս աստուծոյ ծնանիս ի ջուրց. հոգի աստուծոյ ողորմեա։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ փառակից ես հօր եւ որդւոյ, եւ քննես զխորս աստուծոյ. այսօր խորագէտս իմաստից զյիմարս աշխարհի արարեր. հոգի աստուծոյ ողորմեա։

հրց դկ Որ անքննելի ես յէութեան համագոյ երրորդութիւն. երեքսրբեան մի տէրութիւն միով բնութեամբ աստուածութիւն. զքեզ բարեբանեմք աստուած հարցն մերոց։

Որ ես պատճառ որդւոյ ծննդեամբ հայր յառաջ քան զյաւիտեանս. յորմէ հոգիդ ճառագայթեալ անորին բաժանմամբ. զքեզ բարե։

Ո՛ր էակից ես հօր որդի լոյս ’ի լուսոյ ծագումն անճառ, անեղա-կից սուրբ հոգիդ հօր եւ որդւոյ հաւասար. ընդ քեզ բարե:

Գ Ը՛նտիր օրհնեցէք բարձր առա-քելք զփրկեալն ’ի հօրէ:

Ա՛յսօր ամենայն հոգիք բանաւո-րաց, սուրբ զհոգին ճշմարտու-թեան. որ բոցանման լեզուօք ա-հեղագոչ սաստիկ հողմոյ հնչմամբ իջեալ ’ի յերկնից. օրհնեցէք ’ի ձայն գոհութեան բարձր առա-քելք ընդ նմա յաւիտեան:

Ա՛յսօր քահանայք եկեղեցւոյ, սուրբ զհոգին կենդանարար որ բաշխէ առատապէս զբազմապա-տիկ պարգեւս յեկեղեցիս արդա-րոց. գովեցէք հոգեւոր երգով բարձր առա:

մեծ Ը՛նդ քեզ աստուածածին, ան-բիծ անապական լուսոյն, որ լուսա-ւորէ զհաւատացեալս. միաբանա-կան ձայնիւ երգով մեծացուցա-նեմք:

Դու պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձող անի-ծից. վասն որոյ ընդ քեզ աստուա-ծածին մեծա:

Դու ճշմարիտ արեւելք արեգա-կանն արդարութեան. յորմէ ծա-գեաց փրկութիւն տիեզերաց. միաբանականն ձայնիւ երգով մե-ծացուցանեմք:

ողբ Ա՛ղբիւր կենաց բաշխող շնոր-հաց հոգիդ իջեալ ’ի բարձանց. զանապական պարգեւքս քո բա-ժանեցեր յառաքեալս:

Ո՛ր ’ի վերայ ջուրցն գոլով ստեղ-ծանէիր զարարածս իջեալ ’ի ջուրս աւազանին ծնանիս որդիս աս-տուծոյ:

Ո՛ր զարդարեալ նորոգես միշտ ըզ-նոր քո զեկեղեցի. պէս պէս շնոր-հաց քոյ պարգեւօք փայլին ման-կունք սորա:

Հոգիք հրեղինացն այսօր տօնեն ընդ մեզ ընդգալուստ հոգւոյն աս-տուծոյ: տէր

Տեառնողն յառաջ նշանակէր զա-ռատաբուղխ վտակ խմմոնից ’ի մեզ հեղեալ ’ի հոգւոյն:

Վէմըն հաւատոյ զմայլեալ անմա-հական բաժականն այսօր բաշխէր ծարաւեաց:

Գետոյս այս զնացիւք ցընծայ քա-ղաքն աստուծոյ սիոնի մայր եկե-ղեցի:

Վասն որոյ եւ մեք երրեակ եւ մի աստուածութեանն երգեմք ըզ-փառս ’ի բարձունս:



# ԿԱՆՈՆ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

Զ ԱՆԸՍԿԸԶԲՆԱԲԱՐ բըղ-խումն ’ի հօրէ զհոգին ճըշ-մարիտ. որ հընչմամբ ձայնի էջ ’ի վերնատունն այսօր նըման սաստիկ հողմոյ. զոր փառաւորեմք հոգե-ւոր երգով: օրհ գկ

Զհամագոյակիցըն հօր եւ որդւոյ զբաշխողըն շնորհաց. որ ’ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ընտրու-թեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. զոր փա:

Զաղբիւրն իմաստութեան ըզկա-
տարեալն անձնաւորութեամբ. որ
խօսեցաւ յօրէնս եւ ՚ի մարգարէս
եւ յաւետարանս. զոր փառ։

Այսօր ցնծան դասք առաքե-
լոցն գալըստեամբ հոգւոյն աս-
տուծոյ. զոր մխիթարեաց փոխա-
նակ բանին մարմնացելոյ եղեալ
ընդ նոսա. փառըս տացուք նմին
սըրբասաց ձայնիւ։

տաղ Օրհնեմք ընդ քեզ անըսկիզբըն
հայր որդւոյդ միածնի, զոր առա-
քեցեր ՚ի դարձուցն մոլորեալ ոչ-
խարին. դարձո եւ զմեզ ՚ի մեղաց
որդւոյ քո չարչարանօք։

Գովեմք ընդ քեզ բան եւ լոյս որ զտի-
րական քո պատկեր լուսով ծրագրի
քո գրոտեալ վերակենդանեցեր. կենդա-
նեա զանկեալքս մեղօք քոյին
սուրբ չարչարանօք։

Բարեբանեմք զփառակիցդ հօր
զհոգիդ ճշմարիտ. որ նորոգեցեր
ըզհնացեալքս մեղօք հընոյն ադա-
մայ. նորոգեա եւ զմեզ ՚ի մեղաց
նորոգութեամբ քո շնորհաց։

Ուրախացիր բարձրելոյն հովանա-
ցեալ զօրութեամբ, եւ բնակա-
րան սուրբ հոգւոյն որով ծընար
զբանն աստուած. բարեխօսեա
վասն մեր աստուածածին մա-
րիամ։

Զանըսկիզբըն աստուած զհայրն
ամենակալ բարեբանեցէք ընդ զը-
ւարթունս երկնից։

Զսա ՚ի հօրէ ծընեալ զորդին մի-
ածին բարեբանեցէք հրեշտակային
ձայնիւ։

Եւ զնորին գոլ սուրբ զհոգին ձայ-
նիւ ցընծութեամբ բարեբանեցէք
անլըռելի ձայնիւ։

Անըսկիզբըն աստուած եւ թա-
գաւոր երկնաւոր. բարեբանեալ
՚ի զօրաց անմարմնից երկնաւորաց.
ընդ քեզ օրհնեմք հայր անըս-
կիզբն։

Խոնարհեցար ՚ի բարձանց վասն
մերոյ փրկութեան. արձակիչ կա-
պելոց եւ բժիշկ հոգւոց մերոց.
ընդ քեզ գովեմք որդի միածին։

Որ էակից ես ընդ հօր եւ փա-
ռակից միածնիդ. բաշխող պարգե-
ւաց եւ տուող ողորմութեան.
ընդ քեզ բարեբանեմք սուրբ հո-
գիդ ճշմարիտ։

Որ ընդհանուր աստուածութեան ծնն
քո քրիստոս բարբառեցեր ընդ տի-
եզերս ամենայն, բոցակիզեալ
ըզբռնութիւն թշնամւոյն։

Ի յայգւոյն անմահութեան եդե-
մայ ճաշակեցին դասք առաքե-
լոց. զբաժակ կենաց քոց տէր եւ
մեզ արբուցին։

Զտաճար անապական բանին հօր
բարեբանեն դասք հոգեղինաց.
գովեմք եւ մեք ձայնակցելով եր-
կնայնոց։

Աստուածածին խընկաբեր
ծառ յանուշահոտ բուրաստա-
նէն, որ ՚ի գնացս հոգւոյն վըր-
տակաց տընկեցար, եւ զանմա-
հութեան պտուղն ՚ի ժամու ե-
տուր մեզ. վասն որոյ ամենե-
քեան ընդ քեզ միշտ մեծացուցա-
նեմք։

Զանապական բողբոջն յաստուա-
ծային դրախտէն յորովայն քո տըն-
կեալ բղխեցեր յարմատոյն յես-
սեայ ծաղիկ վայելուչ կուսական
ծընընդեամբ. վասն որոյ ամենե-
քեան ընդ։

Յարփւոյն լուսոյ ծագմամբ ՚ի քէն վառեալք ըղձիւք մարմնոյն լոյս աշխարհի. որով գտեալ զպատկերն բնական, զոր վերստին նորոգեալ յառաջին կերպարանն. վասն որոյ բարեխօսեա նորոգել զմեզ ՚ի հնութենէ մեղաց։

ծնն Ծառ կենաց տնկեալ յադին սուրբ կոյս. որ ըզհայրածինն բըղխեցեր ըզծաղիկ. եւ ետուր ՚ի ժամու զօրդին պտուղ մարդկան. զորոյ զմարմինն ճաշակեալ անմահացան յուսով. վասն որոյ օրհնաբանեմք ըզքեզ յաւուր քո ծննդեան։

Բանաւոր երկիր սրբուհի. եւ անդաստան մաքուր ՚ի փշոց մեղաց. որ ըզբոյսն երկնային անտանց սերմանց ծնար. որով զկենացն ետուր ըզհաց տուեալ բնութեանս. վասն որոյ օրհ։

Ամպ թեթեւ յերկրային ցանկութեանց սուրբ կոյս, եւ վառարան աստուածային բոցոյն. որ ըզցօղն հայրաբուղխ անձրեւեցեր ՚ի բանական երկիր. որով բնութեանս բուսան արդարութեան սուրբ բոյսք. վասն որոյ օրհնաբանեմք ըզքեզ յաւուր քո ծննդեան։

հան Լեառն վիմածին աղբիւր յորդառատ. բարունակ ծաղկեալ այգի փայելուչ պտղովք հոգեղէն. բաբունոյ բանին տուն անծրէնութեան տաղաւար հոգւոյն. առ ծնեալն ՚ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր ննջեցելոցն։

Փափկութեան դրախտին բացող բանալի. քրիստոսի բարձող նմանող երկնից. սափոր ոսկեղէն լի մանանայիւ. գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսսեայ տաճար լուսոյ մայր. առ ծը։

Ցօղ քաղցրածաւալ ցանկալի զուարթնոցն. նիւթեղէն սրովբէ գեղ մարդասիրալից հիմն եկեղեցւոյ. մաքուր աղաւնի ամպ հեղանաւոր սուրբ կոյս մարիամ. առ ծնեալն ՚ի։

Աստուածածին խորան լուսոյ անխայրափակ արփւոյն կենաց. որ եղեր արեւելք արեգականն արդարութեան. եւ նշմարեցա ՚ի խաւարի լոյս ծագեցեր. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ ած

Անապական տաճար եւ մաքուր անկիզելի. որ զանշէջ հուր աստուածութեանն ՚ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն ո։

Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտիս. որով ելք յերկիր աւետեաց հորդեալ հոգւով ՚ի քեզ տպաւորեալ բանին. վասն որոյ ամե։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր բըղխեաց ջուր կենդանի յերուսաղէմ յորմէ ըմպան գետք աստուածայինք. եւ ընթացեալ արբուցին տիեզերաց զքառավտակ աղբիւրն եդեմայ. փառք տացուք նմա սրբասաց ձայնիւ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Այսօր ցօղով նմանալեան յամպոց հոգւոյն զուարթացան բոյսք եկեղեցւոյ. պարարտացան դաշտք արդարութեամբ եւ գեղեցկացան անապատք մաքուր կուսութեամբ. փառք տա։

հրց բկ Անեղանելիդ աստուած եւ եղելոյս էակ, որ առաքեցեր յաշխարհ զանեղակից քո զհոգիդ 'ի փառս միածնի որդւոյ քո. օրհնեալ ես տէր աստուած հարցն մերոց։

Ծագումն 'ի հօրէ անճառ ծննդեամբ, որ եղեւ մխիթարիչ առաքելոց քոց սրբոց զհոգիդ քո տիրակից գոլով. օրհ։

Հոգիդ աստուծոյ անեղ էութիւն, կատարեալ անձնաւորութեամբ եւ կատարող բոլորից, ընդ հօր եւ ընդ որդւոյ միաւորեալ բնութեամբ. օրհ։

գ Ըղտէր. Ամենայն հոգիք զհոգին սուրբ գովեցէք. զէակիցն հօր եւ որդւոյ երեքսրբեան ձայնիւ։

Ընդհանուրն երկնային զարկեալ բանին յերկիր բանաւոր, որ մխիթարեաց այսօր զառաքեալսն 'ի սուրբ վերնատանն. ամե։

Ջեռոյն 'ի հօրէ զառատաբուղխ աղբիւրն խնամոց, որ խօսեցաւ ընդհին եւ զնոր օրէնս աստուծոյ. ամենայն հո։

մեծ Ուրախ լեր մայր լուսոյ Մարիամ, երկիր բանաւոր սրբեզականն օթարան. լեր բարեխօս վասն անձանց մերոց։

Խընդա տաճար բանին աստուծոյ. բարձող տրտմութեան նախամօրն եւայի. լեր բա։

Ցընծա իմանալի արեւելք. քանզի քեւ ծագեաց մեզ լոյս երեւանց քրիստոս. լեր բա։

ողր Իջեր տէր ողորմութեամբ քո յաշխարհ, եւ ըզմեռեալ բընութիւնս 'ի կեանս վերանորոգեցեր։

Եղեր տէր առ հայր փառօք 'ի յերկինս, եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զհոգիդ։

Բացեր տէր այսօր ըզգանձ երկնային, եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բընութեանս։

Այսօր աղբիւր գիտութեան բըղխեալ 'ի սուրբ վերնատանն, տէր
յորմէ լըցան տիեզերք գնացիւք գետոցն ոռոգմամբ։

Այսօր իջեալ 'ի յերկիր հօր աւետիքն 'ի բարձանց, տալ աւետիս ադամայ դառնալ յեդեմ վերստին։

Այսօր խընդայ նոր սիոն որդւովք իւրովք զոր ծընաւ, ծնմամբ հոգւոյն նորոգեալ յորդիս լուսոյ եւ տուընջեան։

Այսօր 'ի ձայն գոհութեան զհոգին ընդ հօր եւ որդւոյ, հոգիք ամենայն օրհնեցէք զերեքսրբեանն երգելով։

Այսօր ցընծամք երկրաւորքս ընդ գալըստեան երկնայնոյն, եւ պարելով ընդ հրեշտակս երգեմք ըզփառս 'ի բարձունս։



## ԿԱՆՈՆ

ՎԵՑԵՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

ԱՆՄԱՀԱՐԱՐ բաժակ հեղեալ յերկնից սուրբ հոգի. զոր արբին 'ի վերնատանն օրհ
դասք սուրբ առաքելոցն. օրհնեալ ես սուրբ հոգիդ ճըշմարիտ։ դձ

Առաւօտապէս ծագեալ ՚ի մեզ հուրն կենդանի. քանզի տրուեալ առաքելոցն եւ արբուցին ոգեղէրաց. օրհ:

Այսօր մեծապէս ցնծան եկեղեցիք հեթանոսաց ըղձալեալք ուրախութեամբ ՚ի քո կենդանարար բաժակ. օրհ:

Անըմպելին ատուած սուրբ հոգի. զմարգարէութեանց նախագուշակութիւն առատափայլեալ լուսազարդեցեր. առատապէս հեղեալ յառաքեալսն:

Առաքելոց աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ ՚ի բարձանց, ՚ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն, մինչդեռ նստէին ՚ի սուրբ վերնատանն:

Աննիւթական աղաւնի, անքննելի որ քննէ ըզխորս աստուծոյ. զոր առեալ ՚ի հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյական:

Օրհնութիւն ՚ի բարձունս, եկեալն ՚ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս ՚ի յերկինս:

Ինքըն յինքեան, նոյն միշտ ընդ որոց գտանի, աներեւոյթ անժամանակ, անսպառելի անխախտելի. եւ միշտ օրհնեալ է ՚ի յաւիտեանս:

Առանց սկզբնութեան, առանց [illegible], առանց տեսութեան, անշօշափելի. եւ միշտ:

Տէր առաքիչ, բաշխիչ, տաճար առնէ ինքըն ինքեանց, առաջնորդէ զօրացուցանէ, որպէս եւ կամի բաժանէ ըզշնորհս. եւ միշտ:

Համբարձաւ տէրն մեր յերկինս, ասելով աշակերտացն, նստարուք ՚ի քաղաքիդ երուսաղէմ, մինչեւ զգենուցուք զօրութիւն ՚ի բարձանց:

Միաբանեալ սուրբ առաքեալքն միախորհ եւ միակրօն, միաբան նստէին ՚ի սուրբ վերնատանն, եւ ակն ունէին գալըստեան սուրբ հոգւոյն:

Յանկարծակի եհաս ՚ի նմանութիւն լուսոյ փայլման. եւ եկեալ բնակեցաւ ՚ի սուրբ առաքեալսն, մինչդեռ նստէին ՚ի սուրբ վերնատանն:

Ընդ երկնայնոց հոգեղինաց դասուցն հոգւոյ ստեղծողին երգեմք. փառաւորեալ է գալուստ հոգւոյն սրբոյ:

Ընդ առաքելոց խմբին այսօր զուարճացեալ վերանորոգեմք հոգւով. փառաւորեա:

Այսօր վերնատունս սիօնի որդիք նորոյ երգեցէք ձայնիւ վերնոյն. փառաւորեա:

Ի ձայն ցընծութեան ամենայն հոգիք տացուք զմեզ նորոգողին ըզփառս. փառաւորեա:

Լոյս ՚ի լուսոյ ՚ի հօրէ առաքեցար եւ մարմնացար ՚ի սուրբ կուսէն, զի վերըստին նորոգեսցես զապականեալն ադամ: ծնն

Դու ատուած ՚ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան շրջեցար, եւ փրկեցեր ըզախտեալըս յանիծիցն ադամայ:

Քեզ ՚ի յերկնից վկայեաց հայր քո ձայն. ասէ դա է իմ որդի. եւ սուրբ

հոգին ընդ քեզ յայտնեաց աղաւնակերպ երեւմամբ։

հան Հայր անըսկիզբն արարիչ յաւիտենից, առ քեզ կարդամք եւ պաղատիմք. հանգո՜ զննջեցեալսն մեր ՚ի սուրբ անուն քո։

Որդիդ միածին էակից հօր եւ հոգւոյ. ՚ի միւսանգամ քո գալըստեանն հանգո՜ զննջէ։

Հոգիդ ճշմարիտ փառակից հօր եւ որդւոյ. աղաչանօք աստուածածնին հանգո՜ զննջէ։

ած Անըսկիզբն աստուած անհասանելի բնութիւն եւ հանգուցեալ ՚ի հրեղէն կառս. վասն որոյ գովելով ասեմք, օրհնեալ ես հայր անըսկիզբն աստուած։

Մարգարէատեսիլ եւ ծիրանազգեաց հրաշափառագոյն կոյս. զոր առեալ որդւոյ վերափոխեաց գասեաց յանպատում ՚ի կեանս. վասն որոյ գովելով ասեմք, օրհնեալ ես որդիդ միածին աստուած։

Անհասանելի հոգւոյն զօրութիւն, որով փայլեալ համատարած լոյսն ըղկուսական անձամբն. վերափոխելով յանպատմելի եւ յանհասանելի եւ յանանց լոյսն. վասն որոյ բարեբանելով ասեմք. օրհնեալ ես հոգիդ ճշմարիտ աստուած։

խաչ Լուսաւորեա երուսաղէմ զարդարեա զամուրս քո. քանզի մերձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր. փրկութիւն քեզ շնորհելով պըսակեաց սքանչելի փառօքն իւրովք։

Այսօր ծագեաց քեզ դշխոյ դստեր սիոնի արդարութեան արեգակըն քրիստոս. եւ սփռեցան

ընդ քեւ շնորհք սուրբ հոգւոյն մեծապէս պարգեւօք։

Այսօր ցընծա սուրբ սիոն մայր եկեղեցի. փայլեցո զմանկունս քո որպէս զարեգակն. զի անճառ խնդութեամբ լըցոյց ընդ քեզ քրիստոս թագաւորն։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Անժամանակ որդի միածին. ընդ խոստացեալ պարգեւս աւետեացն ՚ի վերնատունն առաքեալս լըցեր. առատապէս հեղեալ յառաքս։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Անմեկնելի հայր երկնաւոր. զանբաժանելի լուսոյ ծնունդն հոգեղինացս շնորհեցեր. առատապէս հեղեալ յառաքեալսն։

հրց ակ Անճառելի բղխումն ՚ի հօրէ հոգիդ ճշմարիտ, այսօր ՚ի վերնատունն խորհրդոյ խոնարհեալ հանգեար յառաքեալսն. աստուած հարցն մերոց։

Անքննելի խորհուրդ աստուածոյ քննող ընդ հօր միաւոր, այսօր ՚ի հրեղէն թեւոյքն խոնարհեալ հանգեար յառաքեալսն. աստը։

Անըսպառ աղբիւր լուսոյ սուրբ հոգի, այսօր ՚ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն. աստուած հար։

գ Ըղտէր օրհնեցէք բարձր արարէք զհոգին ճշմարիտ։

Որ անճառ խոնարհութեամբ հանգեաւ յառաքեալսն. պանծալի արփիափայլ պայծառ եղեալ ՚ի նոսա, բարձր արա՜։

Որ զանճառելի խորհուրդ երրորդութեանն յայտնեաց նոցա. իմաստութեան աղբիւր կենդանի բըղխեալ ՚ի նոսա. բարձր արա՜։

ձեծ Նոր խորանիդ արեգակնն արդարութեան նոր օրհնութիւնս տացուք, եւ անդադար բարեբանեսցուք ։

Նոր տաճարիդ անճառ լուսոյն որ ՚ի հօրէ նոր երգս երգեսցուք, եւ անդադար բարե ։

Զնոր խառնարանըդ հրաշալի նոր խառնըման բանին եւ մարմնոյն հոգեւոր երգով բարեբանեսցուք ։

ողր Որ ՚ի հայրական խնամութենէն յառաջ բղխեալ աղբիւր լուսոյ եւ ճառագայթաձայն լուսովըն զուարճացուցեալ լցեր զառաքեալսն. աղաչանօք սոցա ողորմեա ։

Որ զէութիւն քո հրեղինացն հիացմամբ ցուցեր, նոյն ինքն իմանալի աստուածային լուսովըն զուարճացուցեալ լցեր զառաքեալսն. աղաչեմ ։

Որ զաշխարհածած խաւարն ՚ի սկըզբանն ՚ի լոյս փոխեցեր, այսօր հրաշալի աստուածային լուսովըդ զուարճացուցեալ լցեր զառաքեալսն. աղաչեմ ։

Որ հրաբորբոք ծառայմամբ յառաջ խաղացեալ հոգւոյդ ճըշմարիտ. եւ հրածորան աստուածային լուսովըդ զուարճացուցեալ լցեր զառաքեալսն. աղաչեմ ։

ուեր Որ ՚ի հրացայտ սաւառնաթեւիցըդ վերանըստիս, այսօր ՚ի դասըս հողեղինաց անպատմելի սիրով հեղեալ ՚ի յերկնից. օրհնեալ ես սուրբ հոգի աստուած ։

Որ ՚ի հրեղէն լեզուացն եռահիւսեակ սըրբաբանիս, այսօր ՚ի շըրթունըս հողեղինացըն հրածորան հեղեալ ՚ի յերկնից. օրհ ։

Որ հրակերպիցն արփիափայլ բոցով միշտ երեւիս, այսօր հողեղինացըն հրաճաճանչ բաժանակ հեղեալ ՚ի յերկնից. օրհ ։



# ԿԱՆՈՆ

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

Ի հարաշարժ աղբերէն անհատահոսըդ վըտակ, կենդանարար սուրբ հոգի, օրհնեալ ես լոյս ճշմարիտ ։ օրհ գկ

Այսօր ՚ի սուրբ վերնատունն եկեալ աստուած ճըշմարիտ, հրաշագործեաց զառաքեալսն ՚ի լոյս փառաց քոց հոգի ։

Հըրճուողական խնդութեամբ աշակերտացըն լըցեալ, փառաւորելով երգէին, օրհնեալ ես լոյս գերագանց ։

Ի համբառնալ բանին յերկինս եւ ՚ի նըստել ընդ աջմէ հօր, զուարճացեալ առաքելոցն երկըրպագելին. օրհնելով ըզհայր զառաքող բանին ։ 

Հոգիք հրեղինացն այսօր տօնեն ընդ մեզ ըզգալուստ հոգւոյն աստուծոյ ։

Տեսանողն յառաջ նըշանակէր զառատաբուղխ վըտակ իմաստից ՚ի մեզ հեղեալ ՚ի հոգւոյն ։

Վէմըն հաւատոյ զմայլեալ անմահական բաժակաւն այսօր բաշխէր ծարաւեաց ։

Գետոցս այս գնացիւք ցընծայ քաղաքն աստուծոյ սիոնի մայր եկեղեցի ։

Վասն որոյ եւ մեք երրեակ եւ մի
աստուածութեանն երգեմք ըզփառս
'ի բարձունս ։

Աղբիւր կենաց բաշխող շնոր-
հաց հոգիդ իջեալ 'ի բարձանց . զա-
նապականն պարգեւըս քո բաժա-
նեցեր յառաքեալսն ։

Որ 'ի վերայ ջուրցըն գոլով ստեղ-
ծանէիր զարարածս . իջեալ 'ի
ջուրս աւազանին ծնանես որդիս
աստուծոյ ։

Որ զարդարեալ նորոգես միշտ ըզ-
նոր քո զեկեղեցի . պէս պէս շնոր-
հաց քոց պարգեւօք փայլեն ման-
կունք սորա ։

յար Իջեր յերկնից միածին անմեկ-
նելիդ 'ի հօրէ հովանացեալ սուրբ
հոգւոյն, բանըդ մարմնացար 'ի
կուսէն ։

Ելիր 'ի չարչարանս չարչարանացըն
լուծիչ . ձեռք որ զերկինս արա-
րին տարածեցեր 'ի խաչին ։

Համբերեցեր վարըն մերոյ փըր-
կութեան . ըզմեռանիլ յանձն ա-
ռեր կենդանատու մեռելոց ։

տպղ Օրհնեմք ըզքեզ անեղ անըս-
կըզբըն հայր . անհասանելի եւ
փառաւորեալ յանմարմնոց զին-
ուորութեանց ։

Գովեմք ըզքեզ որդի հօր արար-
չակից բանդ, նորոգող եւ կեանք
ազգի մարդկան թագաւոր յա-
ւիտենից ։

Զքեզ բարեբանեն ամենայն ա-
զինք . մըշտընջենաբուղխ անըս-
պառ աղբիւր սուրբ հոգիդ ճըշ-
մարտութեան ։

Մի աստուածութիւն երրոր-
դութիւն անբաժանելի, որ 'ի հրեշ-
տակաց անդադար օրհնաբանիս ։

Անմարմնոց զինուորութիւնք փա-
ռաբանեն ըզքեզ, իշխան հայր
աստուած ։

Չորեքկերպեան կենդանիքըն վա-
յելուչ աղաղակեն առ քեզ, իշ-
խանակից որդի եւ բանդ աս-
տուած ։

Իշխանութիւնք աթոռոց գովեն
ըզքեզ, ամենասուրբ հոգի եւ բո-
լորից աստուած ։

Հայր անըսկըզբըն բարեխնամ հան
մարդասէր . որ ստեղծիչդ ես հո-
գւոց եւ մարմնոց . յիշեա զնըն-
ջեցեալըսն մեր եւ հանգո ընդ
սուրբըս քո ։

Որդիդ միածին որ գըթածդ ես
առ ամենեսեան . եւ խաչիւ եւ ա-
րեամբ գնեցեր ըզքո ժողովուրդս .
յիշեա զգինս արեան քո տէր եւ
հանգո ընդ ։

Հոգիդ ճըշմարիտ որ աղբիւրդ ես
անըսպառելի, եւ լըցուցիչ ամե-
նայն բարութեանց . յիշեա զնըն-
ջեցեալըսն մեր եւ հանգո ընդ
սուրբըս քո ։

Որ անատես եւ անքըննին քառա- աձ
կերպիցըն վեհագոյն, 'ի փըրկել
ըզմեզ եկեալ անմահից թագա-
ւորն, օրհնութիւն առաքողին ։

Առաքի հրեշտակապետն առ սե-
րովբէն հողեղէն . սա է տէրն եւ
արարողն առաքեալն 'ի հօրէ մար-
մնանայ 'ի քէն փըրկողն ։

Մըկըրտի 'ի յորդանան վըկայելով
հօր եւ հոգւոյն . ովսաննայ 'ի բար-
ձունս երգէին մանկունքն օրհնու-
թիւն որդւոյ դաւթի ։

Էջ միածինն 'ի հօրէ եւ լոյս փա- խաչ
ռաց ընդ նմա, ձայնք հընչեցին
սանդարամետք անդընդոց ։

Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին գրիգորի, պատմէր զծնութեամբ հաւատացեալ ազգային:

Եկայք շնորհացուք սուրբ ըզլուսաւորն լուսոյ. քանզի 'ի սմա ծագեաց մեզ լոյս 'ի հայաստան աշխարհի:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Համահաւասարեալ գունդքն սրբոյն 'ի վերնատանն խորհրդոյ, համբարձմամբ աչաց ապասէին հոգւոյն. օրհնելով ըզհայր զառաքողն բանին:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Յանկարծահաս հնչմամբ հեղեալ կենդանարար ամպիւր լուսոյ. անմահական կենաց լուսով զարդարեալ. որք օրհնէին ըզհայր զառաքողն հոգւոյն:

Հրց գձ Անեղանելի հոգիդ սուրբ որ ես ընդ հօր փառակից, եւ էակից գոլով ծոցածին բանին. անհասանելիդ աստուած հարցն մերոց:

Որ 'ի քառանկերպեան աթոռոյդ բազմեալ հանգչիս, եւ սրբաբանեալ օրհնիս 'ի հրեղէն լեզուացն. անհասան:

Այսօր մարդասիրապէս աստուածաբար իջեալ 'ի սուրբ վերնատունն, եւ ըզհրեղէն լեզուս բաժանեալ հանգչելով 'ի նոսա, անհասան:

գ Ընտրեր օրհնեցէք բարձր արարէք զհոգին ճշմարիտ աստուած:

Զմխիթարիչ սուրբ հոգին որ փոխան միածնին իջեալ 'ի հօրէ, որ հրաշազարդեաց ըզսուրբ զառաքեալսն. բարձր արա:

Զերկնային ծորանօքն հեղեալ 'ի սուրբ վերնատունն, որ աստուածազարդ հրաշլինեաց ըզսուրբ զառաքեալսն. բարձր արա:

Աստուածածին երկնային դրունն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ: մեծ

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անապականաբար բնակիլ հաճեցաւ 'ի քում յարգանդի. ու:

Որ բոցեղէն սրովբէիւք շրջանակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հողեղինիդ յայտնեալ. ու:

Հոգիդ ճշմարիտ որ զաստուածային ըզհրամանն քո զաւածըն դաւթեան լցեր, սրբացանելով աշակերտացն ըզպարարտութիւն քո 'ի սուրբ վերնատանն. ողորմեա: ողր

Որ սուրբեցար 'ի հօրէ կենդանարար վտակ եւ լոյս ճշմարիտ. սրբացանելով նորօք որդւոց սիոնի զուղխս փափկութեան. ողորմեա:

Որ կատարեցեր ըզփափագ ցանկութեան սրտից նոցա. որք ըսպասեալ միայնին մեծի գալըստեան քո 'ի սուրբ վերնատանն. ողորմեա:

Որ 'ի թեւս թեթեւս աննիւթ սաւառնեալ եւ հրացայտող սերովբէից վերանըստեալ տեսչութեամբ խնամես զարարածս. հոգի սուրբ օրհնեալ ես յարարածոց քոց: տէր

Որ սքանչելապայծառ հրաշալի ձայնիւ ընդ հօր եւ ընդ որդւոյ միշտ փառաբանիս, եւ քաղցրութեամբ հայիս յարարածս. հոգի սուրբ օրհ:

Այսօր աստուածային տեսչութեամբ 'ի վերնատունն հնչեալ հողմանձայն հնչմամբ, եւ զառաքեալսն նորոգեալ բաշխեցար յարարածս. Հոգիդ սուրբ օրհ։

Հմբ դձ

Հոգին սուրբ էր միշտ եւ է եւ եղիցի. ոչ սկսեալ եւ ոչ դադարեալ. այլ միշտ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ կարգեալ եւ թուեալ, եւ միշտ օրհնեալ է 'ի յաւիտեան։

Էր միշտ ընդունօղ սրբոց եւ լըցուցիչ աստուածացուցիչ. եւ միշտ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ կարգեալ եւ թուեալ. եւ միշտ օրհ։

Մշտաշարժ ինքնաշարժ ինքնիշխան ինքնազօր ամենազօր. վասն զի շնչէ ուր կամի, որքան ախորժէ, յորժամ եւ որքան. եւ միշտ օրհ։

Ինքըն յինքեան, նոյն միշտ ընդ որս գոյացեալ, աներեւոյթ անժամանակ, անպարագրելի անփոփոխելի. եւ միշտ օրհ։

Առանց որքանութեան, առանց որպիսութեան, առանց տեսութեան, անշօշափելի. եւ միշտ։

Տէր առաքիչ կոչիչ, տաճար անուանէ ինքըն ինքեան, առաջնորդէ զօրացուցանէ, որպէս եւ կամի բաժանէ ըզշնորհս. եւ միշտ օրհ։

Կեանք եւ կենդանարար, լոյս եւ գոյացուցիչ լուսոյ. ինքըն բարի աղբիւր բարութեան հոգի ուղիղ առաջնորդական. եւ միշտ օրհ։

Հոգի զօրութեան եւ երկիւղի, որով հայր ճանաչի եւ որդի փառաւորի. որոց մի կարգ, մի պատիւ, մի երկրպագութիւն, կատարելութիւն սրբութեան. եւ միշտ օրհ։



# ԿԱՆՈՆ

## ԾՆՆԴԵԱՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐՏՉԻ

ԱՐԵԳԱԿԱՆՆ արդարութեան ծագման արուսեակդ առաւօտեայ, նախընթաց ճանապարհի Որդւոյն աստուծոյ անօրէնութեան սուրբ յովհաննէս. առ Քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց։ օրհ ակ

Բարձրելոյն անճառ խորհրդոց տեսանող իմաստունք հօրդւոյն. 'ի յորովայնէ մաքրեալ տաճար աստուծոյ եւ բնակարան սուրբ երրորդութեանն. առ Քրիստոս բա։

Գաբրիէլ հրեշտակապետն առաքեալ առ զաքարիաս. աւետարանէ ըղհրաշալի ծնունդ քո սուրբ, յամուլ ծերոյն եղիսաբեթէ. առ Քրիստոս բա։

Գառնապետն երկնից զօրացն երեւեալ քահանայապետին, յորժամ մտանէր 'ի սրբութիւն սրբոցն խնկարկելով ըստ օրինացն 'ի տաճարին. առ Քրիստոս բա։

Եւ տեսեալ զանհնութականն 'ի ձեւ մարմնոյ յաջմէ սեղանոյն, պապկուցեալ յերկիւղ մահու սաստանելով, եւ հաստատիւր բանիւ հրեշտակին. առ Քրիստոս բա։

Զգերանդոյն քան ըզբնութիւն լուեալ զեղանակ ծննդեանն քո, սոսկացեալ հիանայր զաքարիաս, եւ համրացեալ պատժիւր պապանձեալ լեզուաւ. առ Քրիստոս բարեխօսեա վասն ան։

Էակից բանն ՚ի հօրէ իջեալ յերկնից ըզկնի ձայնիդ. ուստի գաբրիէլ վերանուքէր զկոյսըն մարիամ առ ամլութեամբ յղացեալն ըզքեզ յորովայնի. առ քրիստոս բարեխօսեա վասն ան։

Ընդ ժամանել ձայնի ողջունին մարիամու առ եղիսաբեթ, խայտացեր ձայնդ ընդ առաջ բանին աստուծոյ, յորովայնէ ամլոյն երկրպագելով. առ քրիստոս բա։

Թագաւորըն բոլորից պարածածկեալ յարգանդի կուսին, զոր ծառայդ հաւատարիմ տեսեալ հոգւովըն սրբով, եւ բերանով մօր քո օրհնաբանէիր. առ քրիստոս բա։

Ժառանգաւոր հին օրինացն արդարութեան ընդ մարգարէիցն. եւ նախաշաւիղ հետեւողաց անձուկ ճանապարհին նոր օրինացս ընդ առաքելոցն. առ քրիստոս բա։

Ի՝ յանապատի հրեշտակական վարուք բնակեցար ըստ եղիայի. կերակրելով մարախ եւ մեղր վայրենի. հին եւ նոր պատուիրանաց օրինակաւ. առ քրիստոս բա։

Լուսապայծառ շնորհօք հոգւոյն զարդարեալ ըստ ներքին մարդոյն. իսկ արտաքուստ անմարմնական ստեւոլըն ծածկեալ ըստ տըխրագոյն զգեստու նախահօրն. առ քրիստոս բարեխօ։

Խորհրդով մաքրագունիւ արգարապէս արիացեալ, ՚ի յօրինակ մեռելութեան գօտի մաշկեղէն ընդ մէջ ածեալ քո երեւեցար. առ քրիստոս բա։

Ծընընդեան հոգւոյն սրբոյ զորս յադամայ յորդիս աստուծոյ, ՚ի քէն ըսկիզբն եւ օրինակ եղեւ, ՚ի յորդանան մկրտութեամբն յապաշխարութիւն. առ քրիստոս բա։

Կարապետ թագաւորին երկնաւորի առաքեցար, պատրաստել ըզճանապարհս նորա յոգիս մարդկան ըստ եսայեայ քարոզելոյն. առ քրիստոս բա։

Հուր կիզանող զմեղս մարդկան գուշակեցեր զառաջին գալուստըն տեառն. իսկ դատողական հեծանոցաւ մաքրել ըզկալ աշխարհի, ըզմիւսանգամ գալըստեան խորհուրդ. առ քրիստոս բա։

Զայն բարբառոյ յանապատէ զքեզ անուանեաց եսայիա. եւ հրեշտակ տեառն առաջի առաքելով, ծանոյց հոգւովըն մաղաքիա. առ քրիստոս բա։

Ղեւտական քահանայութեանն յահարօնէ ՚ի քեզ կատարումն, եւ ճըշմարիտ քահանայութեանն որ ՚ի քրիստոսէ, ՚ի քէն ըսկիզբըն հաստատութեան. առ քրիս։

Ճրագ օրինացըն մոխեալ լուսատու տանն իսրայէլի, եւ իմանալի արեգականըն յառաջընթաց առ ՚ի յերկիր ծագմանն ՚ի կուսէն. առ քրիստոս բա։

Մըկըրտել ըզբոլորից աստուածն առ քեզ եկեալ հրաժարէիր, տեսանելով զգերապայծառ լոյս աստուածութեանն ընդ հողեղէն բնութեանս պատուականեալ. առ քրիստոս բա։

Յորժամ էջ ՚ի յորդանան հուրն աստուած ՚ի քէն մկրտիլ, վերնական իշխանութիւնքըն զահի հարեալ զարմանային նորահրաշ տեսլեամբըն. առ քրիստոս բարեխօսեա վասն ան։

Նոր հեղեալս նախ գալըստեանս
քարոզ ըստ հընոյն որ 'ի յերկրոր-
դին, արժանի եղեր լսել հայրա-
կան ձայնին ըղմիածնէն, դա է որ-
դի իմ սիրելի. առ. քրիս։

Շնորհատուն սրբարածոյ որ 'ի հօ-
րէ հոգին ճըշմարիտ. աղաւնա-
կերպ տեսլեամբ քեզ երեւեցաւ,
զաստուածութիւն իւր էակցին
յայտնեալ աշխարհի. առ. քրիս։

Որ ըզխրանցս անճառելի տնօրէ-
նութեանըն քրիստոսի ոչ լուծա-
նէիր. զհամագոյ երրորդութեանն
անձնաւորութիւն տեսանել 'ի
յորդանան արժանի եղեր. առ.
քրիստոս բա։

Զար իշխանին խաւարին յաշխար-
հական մեղաց ծովէս հալածեցաւ
ջըրովըն յորդանանու, մկըրտեալն
'ի քէն ընդլուլս վիշապին 'ի նմա
խորտակեաց. առ. քրիստոս բա։

Պարզըլուս մարգարէիցն օրինա-
դրէր զգառն օրինակին. իսկ դու
ըզճըշմարիտ ծեւալն ըզքրիստոս ա-
նուանեցեր գառն աստուծոյ եւ
բարձող մեղաց. առ. քրիս։

Ջուր մաքրութեան 'ի քէն մըկըր-
տելոցն յարբումն իմաստից, ապըս-
տամբիցն յերկիւղ համամբ տա-
պարին, եւ խոնարհացն 'ի խորս
իմաստութեան. առ. քրիս։

Ռահ լուսոյ արդարութեան եղեր
անձուկ ճանապարհաւն. առաջնոր-
դեցեր որդւոց մարդկան ելանել
յերկինս, անմարմնական վարուց
քոց օրինակաւ. առ. քրիս։

Սիրոյ անմահ եւ երկնաւոր սուրբ
փեսային եկեղեցւոյ փեսաւէր եւ
հրաւիրակ առաքեցար հարսին որ-
դւոյ թագաւորին. առ. քրիս։

Վարդապետին տիեզերաց աւան-
դեցեր զքո աշակերտեալսն, եւ ըզ-
լոյս գիշերային ճրագի քո բանի
համապայծառ արեգականն աւե-
տարանի. առ. քրիստոս բա։

Տիրական սուրբ օրինացն եղեր
քարոզ առ օրինաւորացն. որով
մատնեալ բանիւ եւ կապանաց
մոլեգնութեամբըն հերովդիայ. առ.
քրիստոս բա։

Բամբեալ խընջոյս արբեցութեան
յաւուր ծննդեան մահաբերին,
ըզքեզ որ խայտալով ծընար տա-
րակդ անապատի, կաքաւելով խըն-
դրեաց 'ի մահ դուստր հերովդիա-
դայ. առ. քրիստոս բա։

Ցընծութեան աւետաբեր եղեր
հոգւոցն որք 'ի դըժոխս, կարապետ
կըրկին իջման տեառն 'ի ստորին
կողմն երկրի, որով լուծան երկա-
նըք մահու. առ. քրիստոս բա։

Նիւթական մարմնով յերկրի յա-
շակերտաց քոց պարածածկեալ. եւ
աննիւթական հոգւով ընդ քրիս-
տոսի յարքայութիւնն երկնից վե-
րափոխեցար. առ. քրիստոս բա։

Որ յերկնային զօրս անմարմնոցըն հոգ
նախ հեղեր առաքեալս հոգիդ ճըշ-
մարիտ. զաստուածային եւ զգե-
րազոյն քո իմաստութիւնդ. լի-
նել վառաւքանիչ սուրբ երրորդու-
թեանդ. ընդ նոսին փառաւորեմք
զերրեակ միութիւնդ։

Որ զկերպարանն աստուածային
առեղծեալ երրորդութեանդ խոր-
հըրդականութեամբ. զարդարեցեր
փըշմամբ շնորհաց քոց կենդանա-
րար. եւ ընդ ծնեալսն առ 'ի նմանէ
խօսեցար օրինօք եւ մարգարէիւք.
ընդ նոսին փառ։

Որ յերկրորդ լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մըտեալ 'ի վերնատունն դրօքըն փակելովք. շնորհելով ըստ առաջին փըչմանն ըզքեզ մետասանից. առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նոսին փառս:

հան Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն անսելով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնժամ անուր ահեղին յիշեա տէր և ըզմեր ըզննջեցեալս. և հանգո ընդ սուրբըս քո:

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին 'ի յարեւելից. և զըպրութիւնք հրաշիցըն բանին. յայնժամ անուր ահեղին յիշեա տէր և:

Զօրհնութեան դողան սրարամբք 'ի ձայնէ որոտընդոստ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն և կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ անուր ահեղին յիշեա:

ած Որ առաքեցեր զմիածինդ 'ի փրկութիւն տիեզերաց. անեղ էութեամբ եղանիլ մարմին 'ի սուրբ կուսէն հայր երկնաւոր. զոր առ քեզ ունիմք բարեխօս վասն անձանց մերոց:

Որ զնախագրեալսն առ 'ի քէն մարգարէիւք եկիր կատարել. անմայր 'ի հօրէ անըսկըզբնաբար լինել անհայր 'ի սրբոյ կուսէն. զոր առ:

Որ 'ի լրումն անճառից 'ի քէն յայտնեալ ծածկեալ խորհրդոյ. 'ի քէն մաքրեալ երջանիկ կուսին հօր զօրութիւնն հովանաւորեալ. զոր առ քեզ ու:

Որ զնախամօրն անիծից երկանց լուծեր ըզդատակնիք. որ ըզտըղամարդկան սահմանեաց ծընընդեան անախտաբար ծնանելով 'ի քէն. առ նա միշտ բարեխօսեա վասն ան:

Որ 'ի սկըզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր իմաստութիւն. զոր նախանըկար տեսութեամբ նըշանակեաց մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերինն, լուսաւորելով փառօքն աստուծոյ: խաղ

Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանըդ քո 'ի սրբոյ կուսէն. տըպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց բանից աստուծոյ. փառաց անեղին տեղի հանգըստեան:

Որ 'ի կեանս վերադարձի բնութեանս դարձմամբըն յորդանանու օրինակեցեր. և ըզբընութիւն մահու և զըժոխոց կործանմամբըն երիքովի տապանակաւ խաչին հրաշագործեալ նոր իսրայելի. օրհնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք:

Փառք հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ:

Փութացի՛ր մեզ յօգնութիւն առ 'ի վերուստ սուրբ յոհաննէս, առաքեալ և մարգարէ և կարապետ և մըկրտիչ որդւոյն աստուծոյ. առ քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց:

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից:

Քահանայապետին քրիստոսի որ 'ի խաչին պատարագեալ. քահանայդ ինքնանըւէր մատո զպաղատանս, երգաբանիս և տօնողացս շնորհել զքաւութիւն. առ քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց:

հրց դձ Ո՛ր աւետաւոր քում գալըստեանդ առաքեցեր զհրեշտակապետըն գաբրիէլ, աւետարանել զաքարիայ զաւետեօք ծընընդ յառաջընթաց կարապետին քում յոհաննու. աղաչանօք սորա կեցո զմեզ տէր աստուած հարցըն մերոց։

Ո՛ր յարգանդին լըցեալ հոգւով երկըրպագեաց քեզ յորովայն սըրբոյ կուսին. զոր եւ սըրբոյն վերագոչեաց ձայն բարբառոյ յանապատէ որ պատրաստեաց զեկեղեցի հարսըն մաքուր սուրբ փեսային. ալլ։

Ո՛ր բոցեղէն հոյլք քրովբէիցն ոչ իշխէին հայիլ 'ի փառս աստուածութեանդ, սա հողանիութեայ գոլով բնութեամբ, մկըրտեաց ըզքեզ մարմնով 'ի ջուրըն յորդանանու. ալլ։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Ո՛ր աւետաբեր գալըստեան բանին առաքեցաւ ձայնին յանապատէ. ըզտէր օրհնե։

Ո՛ր սըրբութեանց սուրբ կուսածին որդին 'ի յամլորդւոյն հայցէր մաքրել յորդանանու. ըզտէր օրհնե։

Ո՛ր զծածկեալ խորհուրդ սուրբ երրորդութեանն կարապետին յայտնեալ հոգին աղաւնակերպ իջմամբ. ըզտէր օրհնե։

մեծ Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զուարթարար. այսօր մարիամ սըրբուհին. 'ի փառս քո քրիստոս ծագեաց մեզ լոյս յորդւոցն օրհնաց. անդադար երգով սըրբոք ըզքեզ ըմիշտ մեծացուցանեմք։

Դրախտ աստուածային եւ անեւէլք իմանալի. այսօր հրաշագեղ. ծնեալ 'ի յաննայէ 'ի մայրութիւն քո հրաւիրեալ քրիստոս որդի աստուծոյ. անդա։

Տապանակ ապրեցուցիչ եւ տաղաւար աբրահամեան աստուածընկալ. այսօր մարիամ լուսապայծառ. մայրն ծընունդ յայտնեալ ծնողաց. 'ի ծնողութիւն քո կոչեցեալ միածին որդի աստուծոյ. անդադար եր։

Երկնաւոր փեսայ անըստուեր լոյս իմանալի. որ 'ի յերկնից իջեր 'ի սուրբ հարսին քո եկեղեցւոյ. զոր խօսեցաւ քեզ, բարեկամն եւ փեսաւէրըն քո յանձնանես. սորին մաղթանօք ողորմեա։ ողմ

Քառակերպիցն անհաս եւ անտես 'ի սերովբէից, սըրբութեանց սուրբ եւ տէր բոլորից. խոնարհեցար 'ի յորդանան. հայցելով 'ի ծառայէն, մաքրութիւն ջրոյ 'ի լուանալ ըզմեղս ադամայ. սորին մաղ։

Ո՛ր յամլորդւոյն վըկայեցար գառն աստուծոյ բարձող մեղաց. զոր գերագոյն արդարոց ծանուցեր մեծ 'ի ծնունդս կանանց, եւ ճրագ օրհնեացն. որ եւ 'ի դըժոխս ըզփըրկական գալուստըն քո քարոզեաց. սորին մաղ։

Այսօր ցընծան հրեշտակք 'ի յերկինս, յիշատակաւ հողանիւթ հրեշտակին. որք համադասեալք ձայնին բարբառոյ, երգեն զօրհնութիւնս հօր 'ի բարձունս։ տեր

Այսօր ցընծան հոգիք արդարոց, նահապետաց եւ մարգարէից. ձայնակից լինել մեծին 'ի ծնունդս

կանանց, երգեն զօրհնութիւնս որդւոյն միածնի։

Այսօր ցընծան դասք առաքելոցն, տօնախմբելով զյիշատակ մեծի մկրտչին. որ առաքելոցն է սկիզբն եւ մարգարէից լրումն. ընդ նոսին եւ մեք բողոքեցելոյն ՚ի հօրէ երգեմք ըզփառս ՚ի բարձունս։

ողկ / դկ Մարգարէից գերագոյն եւ մեծ ՚ի ծնունդս կանանց. որ ըզտնօրէնութիւն աստուածորդւոյն ՚ի յորդանան ծանեար հոգւովն. աղաչեա զաստուած վասըն մանկանց եկեղեցւոյ։

Յորովայնէ յորովայն երկրպագօղ Քրիստոսի. որ ըզհուրն աստուած մերով բնութեամբ մըկրտեցեր ՚ի յորդանան. աղա։

Կատարումն օրինաց եւ նախասկիզբն շնորհաց. որ հոգւոյն ՚ի դըժոխս քարոզեցեր ըզփրկութիւն գալըստեամբըն Քրիստոսի. աղաչեա զաստուած։

ճշու Այսօր ցընծայ եկեղեցի ՚ի հոգեւոր հարսանիս. զոր պատրաստեաց ձայն բարբառոյ հարսըն մաքուր փեսային։

Այսօր փեսաւէրն եւ բարեկամն ընդ երկնաւոր փեսային, միաւորեաց զեկեղեցի փոխանորդելով ՚ի յերկինս։

Այսօր շնորհեցաւ մեզ դեղ կենաց նշխարք սուրբ ոսկերաց, ՚ի ձեռըն սուրբ լուսաւորչին հայաստանեայց աշխարհի։



# ԿԱՆՈՆ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐՏՉԻՆ

ԶՄԱՐԳԱՐԷ բարձրելոյն եւ զթագաւորին զինուոր. որ եւ ՚ի ծնունդս կանանց մեծ կոչեցաւ. յօրհնութիւնս հոգեւորս պատուեսցուք։ օրհ / դձ

Զմիածնին կարապետ եւ ըզբանին ըզձայն. որ յորովայնէ զքրիստոս յառաջ գուշակեաց. յօրհ։

Զյանապատի բընակիչ եւ շընորհացըն քարոզող. որ եւ ՚ի դըժոխս ըզփրկութիւն քարոզեաց. յօրհ։

Որ յորովայնէ ընտրեցար յաստուծոյ քարոզող ճշմարիտ որդւոյն աստուծոյ, տէր յովհաննէս. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։ դկ

Որ յանապատէ կոչեցար ՚ի տեառնէ մըկըրտել ըզարարիչ բարձողըն մեղաց, տէր յով։

Որ զմարգարէիցն ընկալար ըզպատիւ եւ ըզշնորհս ճշմարիտ սուրբ առաքելոցն, տէր յով։

Այսօր ուրախացեալ սուրբ եկեղեցի քրիստոսի, տօնէ խընդութեամբ զտօն վերին երուսաղէմի. սըրբասաց ձայնիւ փառաւորելով ըզքրիստոս։ հրշ

Այսօր համաձայնեալ որդիք սիօնի երկնայնոյ, տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին սիօնի. սըրբեա։

Այսօր դասք անմարմնոցն երգս առնեն պարեն ընդ մարդկան, զերգըս հոգեւորս յանմահ փեսային յառագաստ. սըրբեա։

մրգ Այսօր ցնծայ զուարճացեալ եկեղեցի հեթանոսաց, տօնելով զյիշատակ մեծի նահապետին եւ հօրըն հաւատոյ Աբրահամու. օրհնեցէք մանկունք Սիովնի զհայրըն լուսոյ անկողնելի:

Այսօր նոր Իսրայէլ կոչեցեալ մարգարէիւքն առ աստուած, տօնեա ցնծութեամբ ըզտօն հովուացն Իսրայէլին առաջնոյ. գովելով ըզգլուխ անկեան երկուց որմոց յարմարութեան:

Այսօր 'ի գլուխըս լերանց տուն աստուծոյ հաստատեալ, որ եւ յաւէտ ոռոգիս յանմպոյ հոգւոյն աստուածաբուղխ առատահոս անձրեւօք. բարեբանեա զտնկողըն կենաց զարդուցանողըն ծառուեաց:

գրէ Այսօր վիմանալի լուսոյն ծագողն 'ի խաւարի նստելոցս. զԳրիգորիս սուրբ հայրապետին եկայք վերապատուեսցուք:

Այսօր զանապական հոգւոյն պարգեւս բաշխող որդւոյ Թորգոմայ, յորդոր լուսոյ նորա ծընեալք, եկայք վերա:

Այսօր զաստուածային բանին պատմող 'ի հայաստան աշխարհի, աշակերտեալ նորա մանկունք, եկայք վերա:

Այսօր երգէ եկեղեցի որդովք նորովք ընդ հրեշտակս, յիշատակի լուսաւորչին փառք 'ի բարձունս աստուծոյ:

մկց Երանելի սուրբ մանկունքն որպէս քաջ նահատակք ետուն զանձինս նուրեանց 'ի մահ փոխանակ որդւոյն աստուծոյ:

Եւ դիակունք սուրբ մանկանցն որպէս ըզծաղիկ նռնենեաց հարեալ 'ի կարկտէ, եւ անկեալ 'ի սուրբ բեթղեհէմ:

Եւ հոգիք սուրբ մանկանցն որպէս զերամս աղաւնեաց թռուցեալք 'ի յերկինս. եւ դասեալք ընդ զուարթունս երկնից:

Աղբիւր կենաց բաշխող շնորհաց հոգին իջեալ 'ի բարձանց. զանապական պտղաբերըն քո բաժանեցեր յառաքեալսն: հոգ

Որ 'ի վերայ ջուրցըն գոլով սաւառնայեր զարարածս իջեալ 'ի ջուրս աւազանին ծնանիս որդիս աստուծոյ:

Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլեն մանկունք սորա:

Որ 'ի հօրէ առաքեցար մարդանէր կարող փրկիչ. եւ ըզմեղուցեալ ըզմարդըն բըժըշկեցեր. օրհնեալ տէր հրաժարելոցս զոր հրաւիրեալ առ քեզ կոչեցեր: հած

Որ 'ի խաչին բեւեռեցար մարդանէր կարող փրկիչ. եւ ըզզօղ անապական արեանըդ ցօղեցեր անեղերաց. ողոր:

Որ ըզգըժոխս աւերեցեր եւ ըզգերեալըսն փրկեցեր. եւ զարգելեալըսն վերածեր 'ի յոյս կենացըն յաւիտենից. ողոր:

Ըզգեղ աստուածածնին, աղբիւր անըսպառ լուսոյն, որ լուսաւորէ զհաւատացեալս. միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք: ած

Դու պարծանըք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձող անի-

ծիցն. վասն որոյ ընդ քեզ աստուա-
ծածին մեծա։

Դու ճշմարիտ արեւելք արեգա-
կանն արդարութեան. յորմէ ծա-
գեաց փրկութիւն ամենայնից. մի-
աբանական ձայնիւ երգով մեծա։

խաղ Սուրբ գլխաւ քո շնորհեցեր զէն
եկեղեցւոյ քում սրբոյ. որով դա-
տապարտեալ պարտեցաւ թշնա-
մին։

Սովաւ պանծացեալ զժողովուրդս
քո քրիստոս, որով երկրպագեմք
քեզ ընդ հօր եւ հոգւոյն։

Ի քեզ ապաւինիմք քրիստոս որ
գալոց ես խաչիւ. որպէս զի փրկ-
եսցես զմեզ յայնմ աւուր ա-
հեղ ատենին։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ մոլեգնութեամբըն հերովդիայ
ընկալար ըզվախճան, եւ ի դա-
սս հրեշտակաց վերակարգեցար,
տէր յովհաննէս. անդադար բարե-
խօսեա վասն անձանց մերոց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ մարգարէից լծելոց ի դը-
ժոխս աւետարանեցեր ըզգալուստ
որդւոյն աստուծոյ, տէր յովհան-
նէս. անդադար բարեխօսեա վասն
անձանց մերոց։

հրց գձ Զուարճանայ այսօր եկեղեցի քո
քրիստոս ի սօնախմբել զօր
յիշատակի կարապետին քում յով-
հաննու. սովաւ ընդ քեզ միշտ օր-
հնեմք աստուած հայրըն մերոց։

Որ մեծ ի ծնունդըս կանանց ի
քէն վկայեցաւ, ի յորդանանէ
յառաջ գուշակեաց զանճառ քո
զմարդեղութիւն. սովաւ ըզ։

Յոր վեցթեւեան սրովբէքն ոչ իշ-
խէին հայել ի փառըս քո քրիստոս.
սա արժանացաւ ձեռնադրել
ըզքեզ ի յորդանանըն յորդանանու.
սովաւ ընդ քեզ։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր գ
արարէք ըզնա յաւիտեան։

Զկարապետին յովհաննու կատա-
րելով ըզյիշատակս. անդադար
ձայնիւ զաստուած հայր օրհնեա։

Զերանեալ մըկրտչին մեծարելով
ըզտօնս. հոգեւորական ձայնիւ
ընդ քրիստոս թագաւորին օրհնեա։

Յանապատի բարբառոյ ձայն, եւ
աւետաւոր արքայութեանն. ընդ
նմին զճշմարիտ սուրբ հոգին
օրհնեա։

Աստուածածին երկնային դուռն մեծ
աստուածային ձայնիւն աւետարա-
նէր հրեշտակն. ուրախ լեր բեր-
կրեալդ տէր ընդ քեզ։

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր ա-
նապականաբար բնակիլ հաճեցաւ
ի քում յորովայնի. ու։

Որ բոցեղէն սրովբէիւք շուրջանա-
կեալ պահիւր, այսօր ի մէջ մարդ-
կան ի գիրկս հողեղինի յայտ-
նեալ. ու։

Ծրագ ճշմարտութեան սուրբ ողբ
յովհաննէս մըկրտիչ, որ ծագե-
ցաւ ի յերկրի. աղօթիւք սորա
տէր լուր մեզ եւ ողորմեա։

Մարգարէ և առաքեալ աստուած-
որդւոյդ, եւ ձայն բարբառոյ անդ-
արարող ամենեցունց. աղօ։

Որպէս զարուսեակըն ծագեալ ի
յերկրի եղեւ կարապետ արեգա-
կանդ արդարութեան. աղօթիւք
սորա տէր լուր մեզ եւ ողորմեա։

Աւաքեալըն յաստուծոյ կա- տէր
րապետ մեծն ի մարգարէս մը-
կրտիչըն յովհաննէս. պատարագէր

ճանապարհս թագաւորին յաւիտենից։

Վկայեաց եւ ասէ չեմ ես քրիստոսն, այլ առաքեալ եմ առաջի նորա. եւ հարսին եկեղեցւոյ փեսայ քրիստոս է որդին երկնից։

Տեսանէր ըզյիսուս զի գայր առ նա, աղաղակեաց եւ ասէ. ահա գառն աստուծոյ որ եկն 'ի բառնալ ըզմեղս աշխարհի։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ ԵԼԱՆԵԼՈՅՆ Ի ՎԻՐԱՊԷՆ

օրհ բձ ՈՎ երջանիկ տէր սուրբ գրիգոր, սրբութեանցըն պաշտօնեայ եւ առաջնորդ բանաւոր հօտի։

Ընդ քեզ ուխտիւք բարեխօս առ յիսուս միածինն, եւ աղաչող վասն քո ուխտաւորացս։

Կանխեալ խնդրեա ըզթողութիւն յանցանաց, 'ի քէն աշակերտելոցս։

Ով երանելի տէր սուրբ գրիգոր. ընդ քեզ ուխտիւք բարեխօս առ. քրիստոս վասն անձանց մերոց։

Որ 'ի մոլութեանց բռնաւորին ոչ զանգիտեցեր. ընդ քեզ ու։

Որ ընդ անմարմնոցըն դասս վերակարգեցար. ընդ քեզ ու։

գկ Արմատ ճշմարիտ աստուածային օրհնութեանցն, եւ հաստատութիւն հաւատոյ ազգի մարդկան տէր սուրբ գրիգոր. 'ի մաղթողական աղօթս քո հայցեա վասըն մեր 'ի քրիստոսէ։

Ընտրեալ յաստուծոյ քահանայապետ ճշմարտութեան, եւ հովիւ հոգեւոր բանաւոր հօտի տէր սուրբ գրիգոր, 'ի մաղթ։

Պսակի վայելչութեան եկեղեցւոյ քրիստոսի, եւ առաջնորդ կենացըն յաւիտենից տէր սուրբ գրիգոր. 'ի մաղթ։

Որ քրիստոսանուէր կոչմամբըն ծագեցար որպէս զարեգակն, եւ լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհս աստուածգիտութեամբ, տէր սուրբ գրիգոր. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։

Արեգակն արդարութեան 'ի հայաստան ծագեալ պայծառացուցեր սուրբ զեկեղեցի հեղմամբ արեան սրբոցն. մաղթանօք սոցա խնայեա 'ի մեզ պարգեւատու բարեաց. եւ ողորմեա քո արարածոց։ ղեգ

Պանծալի սուրբ զաւակօք հոգեւորքըն զուարթունք, հրով հոգւոյն շնչեցին ըզլոյսն ըզկրակապաշտ պարսիցն. մաղթանօք սո։

Պարթեւական տեսանողին յաւաջագոյն աղերսութեամբ զհաւատոյ որդիս սրբոյն գրիգորի պլանակալարդ տեսեալ. մաղթանօք սոցա խնայեա 'ի։

Որ կոչեցեր ըզհետեւեալսն 'ի հարսանիս քո միածնին, ընդել զամենայն խնամատութեան 'ի ձեռըն սրբոյն գրիգորի. բարեխօսութեամբ սորա ողորմեա մեզ աստուած։ դրէ

Որ գերագոյն քան ըզբնութիւն չարչարանօք քո ընտրելոյն զօրացուցեր ըզհամբերութիւն 'ի գիտութիւն ճշմարտութեան. բարե։

Ո՛ր ՚ի վերնային անդընդային ջրո-
խեր նոյնու պղնուն մշտապէն, ՚ի
գետ ներքնումն իջմամբ նորին բարձ-
րացուցեր զմեզ ՚ի յերկինս. բա։

հոգ Ի՛ հանգստեան բանին յերկինս եւ ՚ի նըստիլ ընդ աջմէ հօր, զուարճացեալ առաքելոցն երկրպագեցին. օրհնելով ըզհայր զանուաքող բանին։

Համահաւասարեալ գունդքն սրբոյն ՚ի վերնատունն խորհրդոյ, հաւբարձմամբ անչափ պարգեւին հոգւոյն. օրհնելով ըզհայր զանուաքող բանին։

Յանկարծահաս հընչմամբ հեղեալ կենդանարար սրբոյ լուսոյ. անմահական կենաց լուսով զարդարեալ. որք օրհնէին ըզհայր զանուաքող հոգւոյն։

հան Խնդրեմք ՚ի քէն Թագաւոր փառաց փառաւորեալդ ՚ի զուարթնոց. ըննջեցեալսն մեր ընկալ մարդասէր տէր, եւ հանգո ընդ սուրբս քո։

Յորժամ գաս փառօք հօր դատել զերկիր արդարութեան արեգակն. ըզնընջէ։

Ի՛ նըստիլ քո յաթոռն դատաւոր ահեղ քրիստոս փրկիչ մեր եւ յոյս. ըզնընջէ։

ած Աստուածածին սուրբ կոյս աննապական տաճար. անպարագիծ էին բոլորից բնութեանց լինածուալ տեղի. այսօր ընդ բերկրական զուարթնոյն կրեցեր աւետեօք զտէրն տերանց ՚ի քեզ. առ որ մաղթեմք բարեխօսել վասն մեր անլըռելի ձայնիւ։

Յիմանալի վառակաց տանն աստուծոյ հրամանց. վերծանեալ տեսանողացն ձայնիւ սրբամաք ըզմայլեցար. այսօր զանթառամն ծաղկեցար ըզծաղիկ ՚ի ժամու տալով զպտուղ. առ որ մաղ։

Այսօր ՚ի քեզ լըցեալ անմեկնածնին բարբառ. որ ՚ի փրկութիւն համարակից տուեալ նըշան բնութեան ազգի մարդկան. անհաս կոյս յղացար եւ ծընար որդի զմեր մեզ յայտնեալն աստուած. առ որ մաղթեմք բարեխօսել վա։

խաղ Էջ մարմին ՚ի հօրէ եւ լոյս փառաց ընդ նըմա, ձայնիք հընչեցին սանդարամետք անդընդոց։

Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին գրիգորի, պատմէր ցընծութեամբ հաւատացեալ արքային։

Եկայք շինեսցուք սուրբք ըզխորանըն լուսոյ. քանզի ՚ի սմա ծագեաց մեզ լոյս ՚ի հայաստան աշխարհի։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ քոյին առաքինասէր ճըգնութեամբդ մերանփոխեցար ՚ի լուսեղէն յերկնային խորանսն, տէր սուրբ գրիգոր. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Քեւ պայծառացան եկեղեցիք քրիստոսի, փառաւորելով ըզմիանական սուրբ զերրորդութիւնն, տէր սուրբ գրիգոր. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։

հրշ բձ Որ տաճարեցեր ըզսիրելի եւ զհաւատարիմ քո պաշտօնեայն ըզսուրբ գրիգոր. եւ ՚ի ձեռըն նորա լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհս. ըզքեզ միշտ օրհնեմք աստուած հարցըն մերոց։

Որ ետուր համբերութիւն անտանելի չարչարանաց սրբոյն գրիգորի. եւ նովին ժուժկալութեամբըն լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհս, ըզքեզ միշտ օրհ։

Որ նորին սուրբ աղօթիւք բարձեր զխաւար կռապաշտութեան 'ի հայաստան աշխարհէ, եւ արարեր երկրպագուս ամենասուրբ երրորդութեանդ. ըզքեզ միշտ օրհնեմք աստուած հարցըն մերոց։

գ Ըզտէր օրհնեցէք, եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Արդ եկայք հաւատացեալք եւ կոչեցեալք յորդեգրութիւն սրբոյն գրիգորի, օրհնեցէք եւ բարձր արարէք զաստուածն ամենեցուն։

Ցնծութեամբ տօնեսցուք ըզյիշատակ հայրապետին մերոյ. եւ ընդ նմին գովեցէք, եւ բարձր արարէք զթագաւորըն մեր քրիստոս։

Քահանայք եւ պաշտօնեայք հոգեւորական հնչմամբ գովեցէք ընդ սրբոյ հայրապետին. եւ բարձր արարէք սուրբ զհոգին ճշմարտութեան։

մեծ Ըզկուսութիւնդ քո աստուածածին անարատ. զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեանն, մեծացուցանեմք։

Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ քրիստոս աստուած եւ փրկիչ անձանց մերոց, մեծացու։

Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ, անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

Թիւնս իմ. Բարեխօսութեամբ քահանայապետին քո եւ վկային, կեցո զմեզ բազումողորմ։ ողղ

Աղաչանօք սրբոյն գրիգորի լուր մեզ, որ միայնդ ես բազումողորմ։

Նորին աղօթիւք որով ուսաք ճանապարհ կենաց, քաւեա տէր ըզյանցանս մեր։

Առաջնորդ հաւատոյ եւ լուսաւորիչ անձանց մերոց տէր սուրբ գրիգոր. եկայք հաւատացեալք 'ի ձեռըն նորա հանցուք աստուածոյ գոհութիւն։ տէր

Մեծ խոստովանողըն քրիստոսի, եւ ըզչարչարանս յանձն առեալ վասըն մեր տէր սուրբ գրիգոր. եկայք լուսաւորեալք 'ի ձէ։

Քահանայապետ աստուծոյ եւ պատմիչ աստուածային օրինաց. տէր սուրբ գրիգոր. եկայք աշակերտեալք ընդ նմա երգեսցուք փառք 'ի բարձունս աստուծոյ։

Հրաշափառ աստըւած եւ միշտ բարեխնամող. որ յառաջ գիտութեամբ ըզփրկութիւն հայաստանեայց ըսկըզբնաւորեալ, 'ի պարթեւական մեղապարտ ազգէն լուսաւորիչ մեզ շնորհեցեր. վասն որոյ բարեխօսութեամբ սորա փրկիչ կեցո ըզմեզ այժմ եւ 'ի քո յահաւոր գալստեանն։ Ձկ դձ

Հրաշալի զարմացմամբ երանելին սուրբ գրիգոր զանտանելի ըզչարչարանս 'ի յանձն էառ. եւ երիւք հընգօք ամօք 'ի մէջ թունաւորացըն բնակէր անդընդային տանջանօքն 'ի վիրապին. վասն որոյ։

Հրաշագործ քո բանիւդ եւ մեծ ողորմութեամբ, ելեալ բըժըշկէր ըզհարուածեալսն 'ի գիւղաքաղս

սաստիցն, երկրպագուս առնելով
զամենեսեան սուրբ երրորդու-
թեանդ. վասն որոյ։

Հմբ գձ Որ կոչեցար յորդեգրութիւն
հօրն երկնաւորի ով երանելի
տէր սուրբ գրիգոր, և եղեր վը-
կայ ճշմարիտ քրիստոսի աստու-
ծոյ մերոյ. վասն ժողովր-
դեան քո հայցեմք ՚ի տեառնէ
ըզքաւութիւն։

Որ համբերութեամբըդ քո ստա-
ցար քեզ ժողովուրդ սեպհա-
կան և ընտրեալս, և նորա-
փետուր զարդարեցեր ծնըն-
դեամբ սուրբ աւազանին. վա-
սըն ժողո։

Որ մոլորեալս ՚ի խաւարի բացեր
զդուռն լուսոյ ճշմարիտ աստ-
ուածգիտութեան, և արժանա-
ւորս արարեր ըզմեզ ժառան-
գորդ լինել կենացն յաւիտենից.
վասըն ժողո։

ճշւ գկ Հովիւ քաջ բանաւոր հօտի տէր
սուրբ գրիգոր, հաստատեցեր զհի-
մունս եկեղեցւոյ ՚ի հայաստան
երկրի ՚ի վերայ հիման սուրբ
առաքելոցն։

Հովիւ բարի և անաչառ կենա-
ցըն յաւիտենից տէր սուրբ գրի-
գոր, հաստատեա զանձինս մեր
հաւատով ճշմարտութեան ՚ի
վերայ հիման սուրբ եկեղեցւոյ։

Արդ աղաչեմք ըզքեզ հայր վար-
դապետ և տէր, բարեխօսեա
քրիստոսի աստուծոյ մերոյ կե-
ցուցանել զանձինս մեր։

# ԿԱՆՈՆ

## ՈՐԴԻՈՑ ԵՒ ԹՈՌԱՆՑ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ

Որ ըզլոյս աստուածային քո գի- Հրց ակ
տութեան հիւսիսական ա-
զանց ծագեցեր. և ՚ի խաւարէ
կռապաշտութեան վերածեր ըզ-
մեզ ՚ի ձեռըն սուրբ լուսաւորչին.
օրհնեմք ըզքեզ աստուած հարցըն
մերոց։

Որ վերըստին զարդարեցեր զեկե-
ղեցիս հայաստանեայց. արփիա-
փայլ ճառագայթիւք լուսազար-
դեալ շառաւիղօք սրբոյն գրիգորի.
օրհնեմք ըզքեզ։

Որ ըզբան քո հրամանի քարոզե-
ցին հաւատացելոց, յանդիմանե-
լով ըզբռնութիւն թագաւորաց,
և ՚ի վերայ աստուածային քո օ-
րինաց նահատակեցան. օրհնեմք
ըզքեզ տէր։

Ըզտէր օրհնեցէք և բարձր ա- գ
րարէք ըզնա յաւիտեան։

Որ գերագոյն հնոց օրինաց քահա-
նայութեան զնորս զարդարեաց,
եկեղեցիք հեթանոսաց ըզնորո-
գող բնութեանս քրիստոս օրհն։

Զքահանայապետըն ճշմարիտ լոյս
կարգին մելքիսեդեկի, ՚ի յիշատա-
կի քահանայապետացս աստուա-
ծայնոց, քահանայք հոգեւոր եր-
գով օրհնէ։

Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ մեծ
յեդեմայ. հոտ անմահութեան
ծնընդոցս եւային. յորմէ սփռեցաւ
մահ ընդ տիեզերս. օրհնութեամբ
ըզքեզ մեծացուցանեմք։

Դու լուծիչ երկանց բարձող ա-
նիծից. ծագումն արեւու լուսոյն
ճշմարտի. որով հերքեաւ խաւարն
առաջին. օրհնու։

Ըզգեցեալ ունիմք բարեխօս կոյս ան-
հարսնացեալ. մայր անարատ էմ-
մանուէլի. տաճար բանին հօրն եր-
կնաւորի. օրհ։

ողմ Որ հրաւիրեցեր զորդիս մարդ-
կան յորդեգրութիւն հօր քո որդի
աստուծոյ. եւ կոչեցեր յարքայու-
թեան քո ժառանգութիւն 'ի ձե-
ռըն սուրբ հայրապետաց. աղօթիւք
սոցա ողորմեա։

Որ լուսաւորեցեր զեկեղեցիս հա-
յաստանեայց լուսով քո քրիստոս,
եւ զարդարեալ նորոգեցեր պայ-
ծառ ծագմամբ շնորհաւորօք սրբոյն
գրիգորի. ողո։

Որք զընծայս խոբեանց կատարե-
ցին ըստ հաճոյից կամաց քոց քրիս
տոս, նահատակեալք ճգնու-
թեամբ ընդդէմ թշնամւոյն, եւ
փոխեցան յերկնից յարքայու-
թիւնդ. ողո։

տէր Այսօր ընդ երկնային զուար-
թունըն ժողովուրդք հայաստա-
նեայց, տօնելով ըզյիշատակ սուրբ
հայրապետաց շառաւիղաց սրբոյն
գրիգորի. օրհնեցէք ըզհայրն եր-
կնաւոր։

Այսօր որդիք թորգոմայ ծընեալք
աւազանաւն յորդւոյ սիոնի. 'ի յի-
շատակի հարցըն սրբոց որդւոց
մեծի լուսաւորչին, գովեցէք զոր-
դին միածին։

Այսօր երկնաւոր քահանայու-
թեանն հաղորդ քահանայք սուրբ
եկեղեցւոյ. ընդ քահանայապետս
աստուածային օրինօք պատուեա-
լըս բարեբանեցէք զհոգին ճըշ-
մարիտ, երգելով ըզփառս 'ի բար-
ձունս։

Աստուածային հաւատոյ հար- Յւկ
ցըն սրբոց դաւանութեամբն ծա- հմբ
գեցաւ քեզ ընդհանուր լոյս հա- դկ
յաստանեայց սուրբ ուղտակէս.
անդադար բարեխօսեա վասն ան-
ձանց մերոց։

Բանաւոր հօտին քրիստոսի ընտ-
րեալ հովուապետ քաջ, 'ի հօրէն լու-
սոյ բըղխեալ շառաւիղ բարի տէր
վըրթանէս. անդա։

Գովեալդ 'ի վըկայս հօրըն մեծի
համանման, քաջութեամբ զա-
նօրինաց խորտակեալ զպատկերն,
տէր սուրբ յուսիկ. անդա։

Դասակցեալ առաքելոցն մաքուր
կուսութեամբ, ճշմարիտ քա-
հանայապետ վըկայ քրիստոսի սուրբ
գրիգորիս. անդա։

Երկնայնոցն 'ի յերկրի հաղորդ
ճըգնութեամբ, յանդիմանելով
ըզթագաւորըն կատարեցար վասն
անուանըն տեառն սուրբ դանիէլ.
անդադար բարե։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑՆ ՄԵԾԻ ՆԵՐՍԷՍԻ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

օրհ Որ ըզլոյս անճառ շնորհաց աս-
բկ տուածային քո գիտութեանդ
ծագեցեր յաշխարհս հայաստա-
նեայց. գըթած հայր երկնաւոր
գըթա 'ի մեզ մեղուցեալքս։

Որ ընտրեցեր յորովայնէ զմաք-
րեալն հոգւով սուրբըն ներսէս,

ժառանգել ըղձալի հայրենին,
հասնել արդարութեամբ եւ
իրաւամբք:

Որ օրինօք ճշմարտութեանն
զարդարեալ զեկեղեցի. կարդա-
ւորեալ բարեպաշտութեամբ, ա-
րին աղաչանօք խնայեա՛ 'ի մեզ
Քրիստոս:

✠ Որ յերջանիկ ընտրեալ սըր-
բոց հայրապետացըն ժամոյն
գերագոյն փառօք պատուեցաւ
սուրբըն Ներսէս, զաւանեալ
աստուած զհոգին ճշմարիտ ընդ
հօր եւ որդւոյ:

Հրշ Անդադար յերկինս օրհնաբա-
նող հօրն երկնաւորի զօրք լու-
սեղինաց. բարեխօս լերուք ընդ
մեղաւորացս:

Քաղցրաձայն երգով գոհաբանող
որդւոյն միածնի դասք հրեշտա-
կաց. բարե:

Անլռելի հնչմամբ բարեբա-
նող հոգւոյն ճշմարտի հոյլք հրե-
ղեղինաց. բարե:

Երեքսրբեան ձայնիւ փառաբա-
նող սուրբ երրորդութեանն
գունդք սերովբէից. բարեխօս լե-
րուք ընդ մեղաւորացս:

Թգ Ով երանելիդ ամենեցուն տիե-
զերականն իշխանութեամբ ընկա-
լար 'ի Քրիստոսէ ըզթոռ պարծա-
նաց. ո՛վ Թէոդոս մեծ թագա-
ւոր. վասն մեր բարեխօսեա առ
թագաւորն երկնաւոր:

Որ քոյին սուրբ աղօթիւքըդ վա-
նեցեր ըզթշնամին. կոխելով ըզ-
սատանայ ընդ երկնայինսըն դա-
սեցար. ո՛վ թէո:

Ուստի եւ մեք հաւատացեալքս
տօնեմք զքո յիշատակս, օրհնու-
թիւն առաքելովն ընդ քեզ պսակո-
ղին. ո՛վ թէո:

Մկց Որ ըզհուր սիրոյ քո Քրիստոս
բորբոքեցեր յոգիս արդարոց. ո-
րով վառեալ իմաստութեամբ ե-
րանելին Եւստաթիոս. ընծայեաց
զանձն ողջակէզ քեզ կամօք.
բարեխօսութեամբ սորա շնոր-
հեա մեզ անմոլայս ըզքաւու-
թիւն:

Որ զարքայութեան քո Քրիստոս
տարածեցեր ըզյոյս յաշխարհի. ո-
րում տենչացեալ փափագեաց
հոգւով երանելին Օգոստինոս,
ըզբաժակն արեան արբեալ ուրա-
խութեամբ ընդ քեզ մկրտելով.
բարեխօսու:

Որ ըզլոյս փառաց քոց Քրիստոս
ծաւալեցեր ընդ տիեզերս. որով
զարթեալ հաւատոյ լուցեալ ե-
րանելին Եւգինէոս, հետեւեաց
լուսաշաւիղ քեզ 'ի յերկինս ա-
րեամբ մահու. բարեխօսու:

Որ ըզնշան խաչի քո Քրիստոս ե-
տուր մեզ զէն յաղթութեան.
որով զինեալ ընդդէմ մահու
երանելին սուրբն Որեստէս, բո-
ցակէզ պատարագաւ քեզ խաչակ-
ցեցաւ. բարեխօսու:

Որ ըզբան կենաց քոց Քրիստոս
սերմանեցեր յերկիր բանաւոր, զոր
ընկալեալ պտղաբերեաց յին-
քեան երանելին Մարդարիոս, 'ի
մարմնի անմարմնաբար չարչարե-
լով պսակեցաւ. բարեխօսու-
թեամբ սորա շնոր:

Յիշեա զմեզ աստուած փրկիչ Մրտ
մեր. յորժամ գաս թագաւորու-
թեամբքդ քո կեցո ըզմեզ. բարե-
խօսութեամբ սրբոց քոց:

Շնորհեա մեզ թողութիւն եր-
կնաւոր Թագաւոր. ընկալ զաղա-
չանս մեր կեցո զմեզ. բարե։

Յօրհնութիւն 'ի նոր օրհնեցաւք
զքեզ քրիստոս Թագաւոր. որ
վասն մեր մարմնացար կեցո զմ-
եզ. բարե։

Զհայր եւ զորդի և զսուրբ զհո-
գին փառաւորեմք ասելով. երեք-
սրբեան տէրութիւն կեցո զմ-
եզ. բարեխօսաւ։

հոգ Որ զխաբանեալսն յաշտարա-
կին բաժանմամբ լեզուացն քա-
կեաց. այսօր զբաժանեալ լե-
զուս ազգաց միաբանեաց դար-
ձեալ 'ի սուրբ վերնատունն. ամե-
նայն հոգիք օրհնեցէք զհոգին
աստուծոյ։

Որ էջ հոգին աստուածն եւ առաջ-
նորդեաց երկոտասան ցեղիցն իս-
րայէլի 'ի յանապատին. այսօր եր-
կոտասան առաքելոցն առաջնորդէ
'ի յաւետարանն. ամե։

Որ եկեց հոգին աստուած ըզգեցե-
լել ճառագայթաւ խոսանին. այ-
սօր չինէ զմարդիկ խօսան սուրբ
երրորդութեանն. ամե։

հան Գովեալ է միածինն փառօք եւ
փառօք հօր, եւ զհոգւոյն բնու-
թիւնս հրեղէն նորոգէ։

Լուսաւոր են ճառագայթք ա-
դամայց, եւ 'ի բերաւոր բանիւքս
հրեշտակաց անմահ ընծայեն։

Ի վերինն երուսաղէմ թռչին ան-
ողք ընդ առաջ տեառն յօրդս.
եւ այնպէս յամենայն ժամ ընդ
տեառն լինին։

ած Որ ողորմեցար 'ի մեղս ծնեալ
մարդկան հայր երկնաւոր ըստ մար-
գարէին եւ Եսաւր բնութեանս
այսօր պարգեւ զհոգւոյն սուրբ
զծնող որդւոյդ միածնի. մաղթա-
նօք սորա տէր մեզ ողորմեա։

Որ ցուցեր 'ի մեզ յանմեղս օրի-
նաց որդիդ այսօր զհոգւոյն մար-
մն. յորմէ ծնար մարմնով եւ
բարձեր նովաւ զմեղս նախաստեղ-
ծին ադամայ. մաղ։

Որ մաքրեցեր հոգիդ սուրբ զ-
սիրտ եւ զարգանդ մօր քո փա-
ռակցին. այսօր անմեղ ծնողաց նո-
րին եսաւր զմայր բանին զօր-
հնիչն եւայի. մաղթանօք սորա
տէր մեզ ողորմեա։

Ի վերայ վիմի հաւատոյ շինե- խաչ
ցեր զքո սուրբ զեկեղեցի. զսա
պահեա 'ի խաղաղութեան։

Որ շնորհեցեր ողորմութիւն 'ի
բնակարանս հրեշտակաց եւ մարդ-
կան քաւարան. տուր սմա պան-
չառ քո զխաղաղութիւն։

Ի տաճարի փառաց սրբութեան
քո քեզ երգեն մանկունք. տուր
սոցա զառատ քո զողորմութիւն։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Որ զծածկեալ խորհուրդ աստուա-
ծային ժամանակաց յայտնեցեր
սրբոյն ներսէսի. որին աղաչա-
նօք խնայեա 'ի մեզ քրիստոս։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Որ 'ի վերայ պատուիրանաց թա-
գաւորին երկնաւորի զբաժակ
մահու ընկալար 'ի թագաւորէն.
եւ փոխեցար 'ի յերկինս 'ի լուսե-
ղէն յառագաստն։

Այսօր տօնէ եկեղեցի զյի- հրց
շատակ սրբոյն ներսէսի, հայա- դձ
ստանեայց լուսաւորչի, որ եւ
քաջ հովուապետ ընտրեալ 'ի
գլուխ հօտին քրիստոսի. աղաչա-

Նօք սորա կեցո զմեզ տէր աստուած հարցն մերոց։

Որ յարմատոյն աբրահամու վերաբուսեալ ծաղիկ հաւատոյ. սուրբքն Ներսէս սիւն հայաստանեայց, շառաւիղ անմահ տնկոյն պտուղ լուսոյ սուրբ լուսաւորչին. ալէ։

Որ օրհնիս ՚ի հրեղինաց անլռելի ձայնիւ հընչմամբ, շնորհեցեր մեզ դեղ կենաց զանմարմնականն վարուք մաքրեալն ընդհողանիւթ նըշխար սրբոյն Ներսեսի. ալէ։

Գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ յայտնեացն այսօր զգանձն աստուածային հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ, զհայրն երկնաւոր օրհնեցէք. բարձր արա։

Որ ծագեացն այսօր լոյս խաւարելոց, ՚ի յորդւոց հօրըն լուսոյ, զորդին միածին գովեցէք, բարձր արարէք ըզնա յա։

Եկայք մանկունք սուրբ եկեղեցւոյ, զարդարեալք ՚ի շնորհաց հոգւոյն, զհոգին ճշմարիտ բարեբանեցէք, բարձր արա։

Մեծ Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։

Որ ըզբանն աստուած յարգանդի կրեցեր սրբուհի անարատ, եւ անճառապէս ծնար ըզվերանձգողն երկնից. ըզքեզ օրհ։

Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ ՚ի քո գիրկս. եւ արեգականն արդարութեան եղեր արեւելք. ըզքեզ օրհ։

ողր Որ ասացեր ողորմութեամբ շինել զաշխարհս ՚ի սկզբանէ. ողորմելով որդւոց ադամայ, ետուր յազգէն արշակունեաց հովիւ ընտրեալ զսուրբըն Ներսէս. աղօթիւք սորա ողորմեա մեզ աստուած։

Որ ՚ի ստուգանել թագաւորացն աստուածային քո օրինաց, ըզպատուհաս բարկութեան մերոյ յառաջագոյն ժամանակօք յայտնեալ ցուցեր սրբոյն Ներսեսի. աղօ։

Որ պատուական արեամբըդ քո ազատեցեր զաշխարհս յանիծիցն. փրկեա ըզմեզ ՚ի նեղչաց մերոց, եւ ազատեա յանօրինաց բարեխօսութեամբ սրբոյն Ներսեսի. աղօթիւք սո։

Այսօր զուարճացեալ տօնեն երկնայինքն ընդ մարդկան, պարակից եղեալ փրկութեան մերոյ. քանզի յայտնեցաւ մեզ հոգեւոր գանձըն լուսոյ, արեւելեան արեգականն ճառագայթ սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սորա տէմր պարգեւեա զխաղաղութիւն հայաստանեայց աշխարհի։ տէր գձ

Այսօր վերնատուն նորոգեցաւ քահանայականն դասուն, գեղեցկապէս ծաղկեալ պայծառութեամբ. քանզի շնորհեցաւ հովուըն քոյ բանաւոր հօտի, յարմատոյ լուսաւորչին բողբոջ բուսեալ սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սորա տէմր հաստատեա զխաղաղութիւն հայրապետական աթոռոյ։

Այսօր մեծապէս փառօք ցնծայ թագաւորականն դասուն ընդ հաշտութեան սիրոյ սուրբ հայրապետին. քանզի եհաս ՚ի յօգնութիւն օրինադրողըն թագաւորաց, մարտակից զինուորականն դասուն սուրբըն Ներսէս. բարեխօ-

սութեամբ սորա Տէր բարձ-
րացո զիշխանութիւն Թագաւո-
րական աթոռոյ։

Թկ/դձ Որ ընտրեցար յԱստուծոյ հօ-
վիւ բանաւոր հօտին ով երա-
նելի տէր սուրբ Ներսէս, արժա-
նաւոր ծնման սուրբ հոգւոյն
աղաւնակերպ իջմամբ որպէս յոր-
դանան. վասն ժողովրդեան
քո խնդրեա 'ի Քրիստոսէ զթո-
ղութիւն։

Որ յարմատոյ բղխեալ բարեաց
ծաղիկ սուրբ հաւատոյ ով երա-
նելի տէր սուրբ Ներսէս. լուսա-
ւորեցեր իմաստութեամբ զե-
կեղեցիս հայաստանեայց ընդ սըր-
բոյ հօր լուսաւորչին. վա։

Որ յանդիմանելով ըզթագաւորն
հանդգնեալն մեծին յովհաննու ով
երանելի տէր սուրբ Ներսէս. եւ
'ի վերայ պատուիրանաց ըզբան-
ժակ մահու արբեալ ընդ անմահի-
ցըն դասս վերակարգեցար. վա։

ճչւ/դկ Այսօր ցնծայ եկեղեցի ընդ
անմարմնոցըն դասակցեալ, տօնե-
լով զյիշատակս քո տէր սուրբ
Ներսէս. որ 'ի հոգւոյն սրբոյ ա-
ղաւնակերպ իջմամբ վերկայեցար.
բարեխօսեա առ Քրիստոս վասն
անձանց մերոց։

Քահանայապետ ընտրեալ արժա-
նապէս շնորհօք հոգւոյն բաշխե-
ցեր զփրկական մարմին եւ
զարիւնն տեառն. յորում հրե-
ղէն սիւն 'ի յերկնից իջեալ. բա։

Արդ աղաչեմք ըզքեզ լուսաւո-
րիչ հոգւոյ մերոց նմանեալ
մովսէսի նախամարգարէին մեծի,
լուսափայլեալ դիմօք աստուա-
ծահրաշ տեսլեամբ. բարե։

ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑՆ ԻՍԱՀԱԿԱՅ
ՀԱՅՐԱՊԵՏԻ ՀԱՅՈՑ

Որ յարմատոյ հարցըն սրբոց Ձկ/դկ
մեզ զաւազան բղխեցեր ըզի-
սահակ սուրբ հայրապետ հովուել
ըզհօտ քո Քրիստոս։

Որ ըզխաւարն անգիտութեան
հայաստանեայցըս լուծեր. զիմաս-
տութեան ծագեալ ըզլոյս սովա-
որդւոց Թորգոմայ։

Որ զհանդերձեալ խորհուրդ քո
տէր տեսլեամբ սրբոյն ծանուցեր.
յիշատակի սորա ընկալ ըզտօնո-
ղացս աղաչանս։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ

ԱՆՁԻՆՔ նուիրեալք սիրոյն օրհ/դկ
Քրիստոսի, երկնաւոր նահա-
տակք եւ կուսանք իմաստունք.
'ի պարծանս ձեր բարձրացեալ
տօնէ մայր սիոն դըստերօքըն
իւրովք։

Բարբառք երկնաւորք լցին զեր-
կիր. քանզի հոտ անուշից բուրե-
ցայք 'ի Քրիստոս. ողջակէզք բա-
նաւորք եւ զոհք փրկութեան,
եւ որոջք անարատք ընծայեալք
աստուծոյ։

Գեղեցկութիւնք մարմնաւոր պայ-
ծառութեան ձերոյ յիմարեցոյց
զթագաւորն եւ պակեան հեթա-
նոսք. 'ի գեղ սքանչելի աստուա-
ծատուր կուսանացն տարփացեալ
զուարթունքն ընդ մարդկան տօ-
նեցին։

Դարձեալ վերստին արարչագործ զօրութիւն. եւ դարձեալ եդեմ աստուածատունկ զարդարի. քանզի ծառըն կենաց տընկեցաւ 'ի դրախտին, բերելով մեզ պտուղ զերանելին Հռիփսիմէ։

Երկունք մահաբերք անիծիցըն լուծան, եւ ադամ վերստին աստուածակերպ ճոխանայ. փոխանակ եւայի դստերըք նորա, մարտիրոսք եւ կուսանք ընծայեալք աստուծոյ։

Զօրք հրեշտակաց ընդ մարդկան տօնեցին, եւ կանայք 'ի յերկինս գրեցան զինուորք, կուսութեամբ ընդ մահու պատերազմեալք յաղթեցին, խաչակից լինելով կուսածին արարչին։

Է զարմացումն եւ 'ի վեր քան զհրաշս խորհրդոց եւ բանից հրեշտակաց եւ մարդկան. քանզի էին աստուած ամենազօր զօրութեամբն խոնարհեալ տեսանէր զհանդէս կուսանացն։

Ընկերք միամիտք մարմնական կենցաղոյս, նահատակք հաւասարք եւ հոգւով միացեալք. միաբան ընթացեալք 'ի տեղի ճակատու, զինեցան հաւատով եւ կացին յանդիման։

Թուլացան կորովիք հաստաձիգ աղեղանց, եւ տըկար կանայքն վառեցան զինու. թագաւորն պերճացեալ զօրութեամբ եւ փառօք 'ի մանուկ 'ի կուսէն պարտեալ ամաչէր։

Ժողովեալ բազմութեան ազգաց եւ ազանց. ոչ զօրէին առ մի նահատակ. քանզի հասեալ 'ի թիկուն աներեւոյթ օգնութիւնն, խորտակեաց յայտնապէս ըզգաղտնի պատերազմն։

Ի վերայ մեծ պատուական մարգարտի, խաղացին ցընծալով ամենայն հեթանոսք. արեւմուտք յարեւելս ընթացեալ հասին, քարոզել յայտնապէս ըզչըքնաղ տեսութիւն։

Լուեան թագաւորք եւ լըցան խընդութեամբ, որպէս յանձն առին ըզգաղտնի մեծութիւնն. պարգեւել իրերաց խոստանային բանիւք եւ ծածուկ հընարիւք գողանալ 'ի միմեանց։

Խորհուրդք հոգեւորք յըղութեանցըն յայտնէր, եւ երկունք փըրկութեան աշխարհի ճեպէին. քանզի կամըք վերին հրամանին քաղցրացեալ իջուցին 'ի վերուստ ըզպարգեւս փըրկութեան։

Ծընան կուսանք ազգըս բազում, եւ մարք մանկունք զհրապարակըս ծերոց. 'ի գիրկս սըրբութեան աղօթից եւ պահոց աճեցին հաւատով զարդացեալք 'ի քրիստոս։

Կանայք պատուականք քաղաքաւ եւ ազգաւ, վաճառականք ուսուք անգին մարգարտին. եդին զանձինս գրաւականըս բազմաց, եւ եղեն փըրկանք անծանօթ աշխարհին։

Հռիփսիմէ մեծ խորհուրդ եւ անուն ցանկալի, ընտրեալ 'ի յերկրի եւ դասեալ ընդ հրեշտակս. եղեր օրինակ սըրբութեան կուսանաց, վարդապետութիւն արանց արդարոց։

Զեզ նըմանիլ կարօտին ամենայն հոգիք, միացեալք սըրբութեամբ

եւ սիրոյն քրիստոսի. զի մահուամբ ձերով մեզ ճանապարհ հորդեցիք ելանել ամենայն մարդոյ առ աստուած:

Ղեկավարք ճարտարք հոգեւոր հրխտութեամբ, թեթեւաբեռն մարմնով եւ մտօք սլացեալք. ընդ երկայն ասպարէզս ծովածուփ կենցաղոյս անվնաս նաւեցիք եւ հասիք առ քրիստոս:

Ճշմարիտ որթոյն քրիստոսի շառաւիղք, եւ ողկոյզք ճմլեալք երկնաւոր մշակին. կոխեցայք ճգնութեամբ 'ի հնձանս ձեր, զի ուրախ լինիցիք անմահական բաժակաւն:

Մերժեցիք զկարիս մարմնական կենցաղոյս, զի ծանեաք եթէ երագ է եւ սուտ պաճուճանք. ոչ հեշտացայք 'ի գրգանս փափկութեան, իմացայք եթէ սնոտի է անցաւոր մեծութիւնս:

Յանդաստանս հոգեւորս աղօթից եւ պահոց վաստակեալք յուսով զամենայն ժամանակս. ժուժկալեալք փորձութեանց եւ պէս պէս լլկանաց, եւ եղեալք ժառանգորդք անթառամ պսակին:

Նախանձելի յօրինեցին զնագաստ կուսութեան, նոր նորոգեալ արեամբ եւ հրով. մանեցին զանձինս ուսերաց եւ ջահից. եւ անշէջ լապտերօքն հետեւեալ մտին յառագաստն:

Տնուածք երկնաւորք 'ի յերկրի հաստատեալք, եւ արձանք լուսեղէնք 'ի յերկինս կանգնեալք. ինքեանք ելին եւ այլոց ցուցին զճանապարհս ցանկալի զվերինն երուսաղէմի:

Ով զգաստութեան իմաստուն կուսանացն, որոց ոչ յաղթեաց հեղգութիւն եւ քուն. այլ արթունք եւ պատրաստք մնալով երկնաւոր հարսանեացն, զի մտացեն 'ի յառագաստ անմահ փեսային:

Ջուրն որ 'ի Նոյա անուն չարութեան. եւ ոչ նախատինս յիմար կոչելոյ. քանզի միով պնդութեամբ հոգւով արութեան միաբան քաջացան, առ հասարակ ցնծասցեն:

Պարակցեալք քաջազէն բռնութեամբ 'ի յերկրէ 'ի յերկինս տարադէմ գնացին փախստեայք. ինքեանք ելին եւ մեզ ուսուցին, բազում նեղութեամբ մտանել յայն հանգիստն:

Ջերմեռանդն աղօթիւք եւ սիրովն առ աստուած, հայցեցին ընդհընարս փրկութեան. բառնալով ըզխաւար դիւապաշտ մոլորութեանց յաշխարհէ. պայծառացեալք լուսովն որ 'ի հօրէ ծագեցաւ:

Ռահվիրս յոլով առաքինութեան յայտնեցին որդւոց մարդկան վերանալ յաշխարհէ. անխոտորիւ հոգեւորական վարուք ելանել 'ի բանակս երկնաւորս անմարմնոց հրեշտակացն:

Սորա են քարինք սուրբք հիմնեցեալք 'ի յերկրի, զոր կանխաւ տեսեալ գուշակեաց մարգարէն. 'ի նոյն 'ի նուլթոյ շինեցաւ կաթողիկէ եկեղեցի. բարձրացեալ փառօք 'ի պարծանս խաչին:

Վասն ձեր երանեալ նահատակք զօրք հրեշտակաց անմարմնոց զի-

ւարթնոյն 'ի յերկնից 'ի յերկիր հեղման, եւ մարդիկ խառնեցան 'ի գունդս զինուորաց քրիստոսի աստուծոյ։

Տօնեսցուք առուգութեամբ 'ի հրաշանս նոցունց, զի արբեալք լեցուք անմահական բաժակաւն. քանզի բաշխեն զբժշկութիւն հոգւոյ եւ մարմնոյ, եւ զպարգեւս երկնաւորս սիրողաց իւրեանց։

Բարձրելոյն հրամանաւ աներեւոյթ ազդմամբ յարեւմտից յարեւելս եկեալ հասին. զի լուսով հրեշտակական վարուք կուսութեան փարատեցին զխաւար դիւապաշտ մոլորութեանցն։

Ցնծութեամբ տօնեսցուք զյիշատակս նոցունց, զի եւ նոցին հաղորդեսցուք փրկութեան. խնդրելով յարարչէն ըզպարգեւս երկնաւորս եւ զդասին ընդ նոսին 'ի յարկսն լուսեղէն։

Իւծեալք մաշեցան յուսացեալք 'ի մեծութիւն, եւ կանայք վեհաղինք գերագանցեալք յաղթեցին. բուրվառք ոսկեղէնք հրով հոգւոյն վառեցան, ջահազգեստեալք 'ի քրիստոս եւ դասեալք ընդ հրեշտակս։

Հող Ա՞ղբիւր կենաց բաշխող շնորհաց հեղեղ իջեալ 'ի բարձանց. զանապական պարգեւս քո բաժանեցեր յառաքեալսն։

Ո՞ր 'ի վերայ ջուրցն գոլով ստեղծանէիր զարարածս. իջեալ 'ի ջուրս աւազանին ծնանիս որդիս աստուծոյ։

Ո՞ր զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլէն մանկունքս սորա։

Խնդրեմք 'ի քէն թագաւոր փառաց փառաւորեալդ 'ի զուարթնոց. ըզննջեցեալսն մեր ընկալ մարդասէր տէր, եւ հանգո ընդ սուրբս քո։ Հան

Յորժամ գաս փառօք հօր դատել զերկիր արդարութեան արեգակն. ըզննջեն։

Ի՞ նստել քո յաթոռն դատաւոր ահեղ քրիստոս փրկիչ մեր եւ յոյս. ըզննջեն։

Հոյլք վերին զօրացն իջեալ շուրջ ըզկուսիւքն պար առեալ. զերգս օրհնութեան եղանակեալ քաղցր ձայնիւ ակումբ առեալ. զեռահրեսեակսն նուագեալ զմի տէրութիւն երգաբանեալ։ Ած

Զայնակից նոցին եղեալ դասք երջանիկ պետացն ընտրեալ. 'ի հոգւոյն վերաբերեալ որք յընդհանուր աշխարհ սփռեալ. անմարմնոցն համաձայնեալ ըզկոյսն սուրբ օրհնաբանեալ։

Լամպարափայլ ջահիւք լուցեալ սուրբ կուսանացն գումարեալ. զերգս օրհնութեան նուագեալ 'ի պատիւ մօրն ամէնօրհնեալ, բարեբանեալ եւ կոյս գովեալ յամէ աստուած բանին ծնեալ։

Խաչիւ քո քրիստոս երկրպագեն արարածք ամենայն, որ 'ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սա՞ եղիցի մեզ պահապան յաղթող, ապրեցուցանել ըզմեզ 'ի պատրանաց բանսարկուին։ Խաչ

Ի՛ սմա բարձրացար բարձրեալդ անխծից, որ փառաւորեալդ ես ընդ հօր. ժողովեա՛լ ըզհաւատացեալսն կենաբեր փայտիւն. ապրեա։

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա ապաւինին անդեղեալքն 'ի մեղաւոր բնութիւն. որ ազատեաց ըզմեզ 'ի պատո։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Փառաց 'ի փառս բարձրացեալ պարծանս 'ի պատիւ եւ 'ի փառս երեսուն եւ եօթեանքն. քանզի այս է թիւ երանեալ կուսանացն, որք անթառամ պսակեցան յանվախճան յաւիտեանն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Քեզ որ ցնծութիւնդ ես քրիստոս աստուած եւ ուրախութիւն ամենայն արդարոց, քաղցրացին վասն մեր աղաչանք սրբոցն, շնորհելով զթողութիւն մեր բազում յանցանացն։

հրց դկ Այսօր զանյաղթելի սրբոյն հռիփսիմեայ ըզյիշատակս տօնէ սուրբ եկեղեցի, բարեբանելով ընդ անմարմնական զինուորութիւնն, ըզոհէր աստուած հարցն մերոց։

Այսօր հրաւիրեցաւ յերկնից արքայութիւնն սուրբն հռիփսիմէ, եւ արիաբար ընդդիմամարտեալ յաղթեաց բռնաւորին. խոստովանելով զքրիստոս թագաւորն, ըզոհէր սա։

Այսօր պայծառացեալ 'ի կամարս լուսեղէնս սուրբն հռիփսիմէ, եւ հրեշտակաց տօնողաց ուսոյց փառաւորել սուրբ զերրորդութիւնն, ըզոհէր սա։

գ Ըզոհէր. Ըզքրիստոս թագաւորն օրհնեցէք ըզնա նոր երգով օրհնութեամբ։

Որ պայծառազգեաց վայելչութեամբ պսակեաց ըզսուրբն հռիփսիմէ եւ զգայիանէ, օրհնեցէք ըզնա նոր երգով օրհնու։

Որոց վարդագոյն հեղմամբ սուրբ արեանցն նորոգեաց զաշակերտեալսն 'ի ձեռն սրբոյն գրիգորի. օրհնեք։

Ըզքեզ աստուածածին, անբիծ անարատ լուսոյն, որ լուսաւորէ զհաւատացեալս. միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։ մեծ

Դու պարծանք կուսութեան մարդկան. դու ուրախութիւն հրեշտակաց. դու բարձող անիծիցն. վասն որոյ ըզքեզ աստուածածին մեծա։

Դու ճշմարիտ արեւելք արեգականն արդարութեան. յորմէ ծագեաց փրկութիւն ազգերաց. միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք։

Քրիստոս աստուած բացեր ըզդրունս հաւատոյ սրբոյն հռիփսիմեայ խոստովանել զաստուածութիւնդ քո մարտիրոսութեամբ 'ի մէջ հայաստանեայց։ ողջ

Յաղթող զօրութեամբ պայծառացեալ 'ի կամարս լուսեղէնս ընդ անմարմնոց բազմութիւնս խոստովանելով ըզքրիստոս թագաւորն։

Ծաղկեալքս հայոց բարեխօսութեամբ սրբոց հռիփսիմեանցն. ընկալ եւ ըզմեզ փրկիչ յորդեգրութիւն 'ի դըպրութեան կենաց։

Պարկեշտ կանայքն սուրբքն հռիփսիմեանք եղեն սիրողք քրիստոսի, եւ ընկալան զանապական ըզպըսակն։ ոէք

Եղեն տաճար սրբութեան որդւոյն աստուծոյ շինեալք

՚ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից։

Առաւելեցաւ քան զլուսաւորս ՚ի մէջ աստեղաց փայլեցան ՚ի դասս հրեշտակաց դրօշմեալք վերին երուսաղէմի։

Յկ Յիշատակ քրիստոսի սրբոց վկայիցն, եկայք հաւատացեալք ըղձերգնութիւնս սոյն հրաշածկեցուսցուք, եւ օրհնութեամբ զնատուած փառաւորեսցուք։

Զուարճացի՛ր Հռիփսիմէ քոյին սուրբ ընկերօք. զի ՚ի տեղւոջ հեղման արեան ձերոյ դասք հրեշտակաց տօնեն ընդ մեզ. եկայք։

Ի տաճարի Հռիփսիմեանց մեծ վկայուհեաց, եկեղեցիք սրբոց պայծառազգեաց վայելչութեամբ տօնեն այսօր. եկայք։

Հմբ դկ Անըսկիզբըն բանն Աստուած որ վասն մեր համբերեր մահու, բառնալով ըզդատակնիք անիծիցն առ ՚ի մէնջ, դերապանծ մաքրութեամբ ըզմարդիկ վերագրեաց խաչակից իւր եւ վկայք կամաւոր մահուամբն իւրեանց։

Դիմամարտ գոլով սրբոցն ընդ կռապարիշտ պաշտամունսն, երջանիկ ճակատամարտք յայտնեցան անպարտելիք. զի զԱստուած բոլորից տիրաբար սիրեցին. Էակցին հօր հետեւեալ առաջին ըզթագըն պարծանաց։

Ընթադրեալք զմահու խոստումն ընդդէմ մեղացըն վառեցան. Թռուցեան յերկինս դանից գերիվերոյ քան զընութիւնս. ժուժկալեալք ՚ի փորձ բանտից գելարանաց եւ կապանաց, ՚ի մրցմունս դաշանաց սրոյ եւ հրոյ մեծամարտեալք։

Լուկանօք եւ քերանօք զարեան վըտակսըն հոսեցին, խորհրդոց ոչ խոտորումն եւ ոչ փոխադրութիւն բարուց. ծաղիկքըն նիւթեղէնք յաննիւթ ծաղիկըն յօդեցան. կատարեալք քաջութեամբ պչարին մուրհակըն կապտեցին։

Հրով հոգւոյն զինու վառեալք ըզհալածիչսըն վանեցին. ձօնեցան զենմամբ սրոյ ՚ի բանաւոր ողջակիզումն. զամբարանն լուսոյ կենաց զխաւար մեղաց փարատեցին. Ճոխաբար հետեւեցան լուսաշաւիղ ընդ պողոտայն։

Մերժեցին կործանեցին ըզմահահոտ ըզմեքենայսն, յաղթեցին կառեաց մարմնոյ եւ հեշտալի գըրգանաց. նուաճեալք հնազանդ ընդ կրանեղեն կռապաշտութիւնսն, շնորհազարդ փայլմամբ փայլեալք ՚ի յերկնային նուաճանգիստն։

Որոշեալք ՚ի կրից կարեաց եւ ՚ի քրիստոս արձանացեալք, չարաչար չարչարանօք զչարին մուրհակըն կապտեցին. պատրաստեալք չարադիւթիցն զհրեղէն գետոցն ըզ-կիզմունս. Ջրոյն կենաց գետահետեալք բղխեցին մեզ յորբուցումն։

Ոաշհ գործեալք ՚ի լուսաձեւ յաստուածակերտ ՚ի խորանս, սրբափայլ զգեստուք պըճնեալք ըստ զարդու նոր սիոնի. վեր առեալ վկայօրէն ըզմարգարիտըն հաւատոյ, տենչացեալք անճառ լուսոյն վերանալացան ՚ի կեանս անմահս։

Բարունեացըն հրաշալեաց գըտցուք եւ մեք աշակերտեալք. ցօղեսցին մեր արտասուք ընդ ցօղ արեան նահատակացն. ուսուեա-

ցին թեւլըք հոգւոց ընդ հրեշից պըսակելոցն. փայլեսցին գործըք բարեաց ընդ լուսաթուիչ մարտիրոսն:

Քրիստոսի պըսակողըն զաղօթանուէր ըզմաղթանս զերանեալ նահատակացըն մատուցանեք 'ի յընծայումն. զի հաճութեամբ խոնարհեալ ընկալցի վասըն մեր. թողութիւն շնորհեսցէ մեր բազում յանցանաց:

ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՒՀԻՈՅՆ ՍԱՆԴԽՏՈՅ

ձկ դկ Քեւ պարծի այսօր սուրբ եկեղեցի, ով վըկայուհի սուրբ Սանդուխտ. որ ըզհայրականըն քո թողեր զպաշտօն, վասըն քրիստոսի հեղեր զարիւն քո սուրբ:

Աշակերտեցար առաքելոյն Թադէոսի եւ 'ի հաւատըս ճըշմարիտըս հաստատեցար, ոչ խոնարհելով ընդ հեթանոսական պաշտօնն, արժանի եղեր վերանալ առ հայր:

Որ ըզտիկնութեանըն քո թողեր ըզփառս, եւ աստուածային փառօքըն զարդարեցար. այսօր դասակցեալ ընդ զուարթունս երկնից, վասըն մեր առ տէր բարեխօսեա:



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՅ ՏԱՊԱՆԱԿԻՆ

ԸՁՔԵՆՁ քաղաք աստուծոյ եւ տաճար անապական, աստուածազարդ եւ լուսազգեաց անվախճան փառօքըն պըսակեաց սուրբ հոգին. եւ յաւէժ ուրախանամն միշտ հաւատացեալք: օրհ ակ

Ի քեզ ծագեալ 'ի համագոյիցն աստուծոյ արդարութեան արեգակն, որ լուսաւորեալ փառաւորեաց 'ի քէն ըզխաւարն անգիտութեան եւ հաստատեաց ըզհիմունըս քո 'ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից:

Ի քեզ կանգնեալ սեղանն սրբութեան եւ բըղխեալ աղբիւր անապական, որ յորդառատ վըտակօք սրբութեանն յաւէտ ըզտիեզերըս գեղեցկապէս բըղխեալ ըզլողողս անուշից. եւ յաւէժ ուրախանամն միշտ հաւատացեալք:



Ի վերայ վիմի հաւատոյ հիման առաքելոց եւ մարգարէից շինեցեր ըզքո սուրբ զեկեղեցի. եւ 'ի սմա միաձայնեալ եղեն մարդիկ ընդ հրեշտակս, փառաւորելով սուրբ զերրորդութիւնդ:

Այսօր նոր ժողովուրդք ընդ երկնայնոց լուսեղինացըն համաձայնեալք, նորոգողին ազգի մարդկան վերերգեսցուք. որ վասըն մեր մեռաւ եւ յարեաւ. ասելով փառաւորեալ է քո յարութիւնդ: յար

Այսօր որդիք սիոնի ծընեալք աւազանին շնորհօք յորդիս աստու-

ծոյ, 'ի նաւակատիս տաճարի բնու-
թեան մերոյ գովեցէք զփեսայն
ելեալ յառագաստէ նոր գերեզ-
մանին. անեղով փառաւ։

Այսօր մանկունք հաւատոյ կա-
տարելով զնաւակատիս վերինն ե-
րուսաղէմի. նորոգեցէք ըզպատ-
մուճան հոգւոյ ձերոյ, եւ ընդ
որդւոց լուսոյ նոր սիոնի բարե-
բանեցէք զքրիստոս թագաւորն.
անեղով փառաւորեալ է քո յա-
րութիւնդ։

ապշ Որ անմարմնոց հոգեղինաց դա-
սակցեցեր քրիստոս սուրբ զեկե-
ղեցի. որք ընդ նոսին համաձայ-
նեալ փառաւորեմք սուրբ զերրոր-
դութիւնդ, որովբէական սրբա-
սացութեամբ երգելով ըզփառս
'ի բարձունս։

Որ յաղթեցեր մերով բնութեամբս
'ի փորձութեան կամակոր օձին.
որով ետուր իշխանութիւն որ-
դւոց ադամայ կոխել ըզգլուխ չար
վիշապին, եւ ընդ երկնայնոցն եր-
գել ըզփառս։

Որ գալստեամբ քո վերածեր ըզ-
մեզ յաշխարհական մեղաց ծովէս,
տպաւորեալ լերամբ ուռկանի
վիմին հաւատոյ, զոր 'ի ծովուն
հրաշագործեցեր. երգեմք քեզ
ըզփառս 'ի բարձունս։

յար Թագաւորեաց աստուած 'ի վե-
րայ հեթանոսաց, եւ լուսազար-
դեալ պայծառացոյց սուրբ զեկե-
ղեցի. ժողովուրդք ըզքրիստոս բա-
րեբանեցէք։

Զգեցաւ տէր զօրութիւն ընդ մէջ
իւր անձն, քանզի չէջոյց զխայ-
թոց մահու խաչիւն իւրով սըր-
բով. ժողով։

Յարեաւ աստուած եւ տիեզերք
ամենայն նորափետուր զարդարե-
ցան. եւ մանկունք հաղորդեցան
մարմնոյ եւ արեան կենարարին.
ժողովուրդք ըզքրիս։

Որ նախիմաց իմաստութեամբ ծնն
տնօրինեցեր զխորհուրդ սուրբ ե-
կեղեցւոյ. խորանօքն արկեալ հի-
մունս հաստատութեան ըզդաս
արդարոց. աղաչանօք սոցա խնա-
յեա 'ի մեզ։

Որ զօրհնութիւն նախատեղծիցն
աստուածապէտ արուաց եւ իգաց.
պայծառացեալ վայելչապէս ծաղ-
կեցուցեր. այսօր 'ի յովակիմ եւ
'ի յաննա. աղա։

Որ ըզխոստումն աբրահամու նա-
հապետին մեր ըստ հոգւոյ. քա-
հանայական եւ թագաւորական
զաւազանացն միացեալ ցուցեր
այսօր 'ի յաննայէ. աղա։

Որ յերկնային զօրս անմարմնոցն հոգ
նախ հեղեր առատապէս հոգւոդ
ճըշմարիտ. զաստուածային եւ
զգերագոյն քո իմաստութիւնդ.
լինել փառաբանիչ սուրբ երրոր-
դութեանդ. ընդ նոսին փառա-
ւորեմք զերրեակ միութիւնդ։

Որ զկերպարանն աստուածային
ստեղծեալ երրորդութեանդ խոր-
հրդակցութեամբ. զարդարեցեր
փըշմամբ շնորհաց քոց կենդանա-
րար. եւ ընդ ծնեալսն առ 'ի նմանէ
խօսեցար օրհնօք եւ մարգարէիւք.
ընդ նո։

Որ յերկրորդի լինելութեանս յետ
յարութեան քում էակցին. մը-
տեալ 'ի վերնատունն դրօքըն փա-
կելովք. շնորհելով ըստ առաջին
փըշմանն ըզքեզ մետասանից. առա-

քելոցն ասաց անէք հոգւոյ սուրբ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ:

Հան Յորժամ յերկնից գոչէր փողն ազդեցութիւն անհնելով տիեզերաց ՚ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզնընջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո:

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին ՚ի յարուելից. եւ դըպրութիւնք հրաշիցըն բանին. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ:

Զարհուրեալ դողան սրարածք ՚ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ՚ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր ահեղին յիշեա:

ած Նոր խորանիդ արեգականն արդարութեան նոր օրհնութիւնս տացուք, եւ անդադար բարեբանեսցուք:

Նոր տաճարիդ անճառ լուսոյն որ ՚ի հօրէ նոր երգս երգեսցուք, եւ անդադար բարե:

Զնոր խառնուրանըդ հրաշալի նոր խառնըման բանին եւ մարմնոյն հոգեւոր երգով բարեբանեսցուք:

խաչ Էութիւն անեղ անբաժանելի բանն աստուած կամաւորութեամբ յանձն էառ ըզմահ խաչի, եւ թաղեցաւ ՚ի նոր ՚ի գերեզմանի. եւ յարութեամբն իւրով շնորհեաց մեզ կենդանութիւն:

Որ բարձրացեալ բազկաւ ՚ի վերայ խաչին խորտակեաց զապըստամբ ըզթըշնամին. իջանելով ՚ի ստորինս ազատութիւն շնորհեաց նըստելոցն ՚ի խաւարի. եւ ոչ ոք ինչ այլ աստուած բաց ՚ի նմանէ:

Որ զկենդանարար մարմին եւ զարիւնդ քո բաշխեցեր քաղցելոց. եւ ՚ի խաչին բացեր ըզկողահոս աղբիւրդ, արբուցանելով տիեզերաց զանմահութիւն ՚ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Տեղի ապաւինի եւ ժողովարան բանաւոր հօտի. բնակարան հրեշտակաց, նուահանգիստ արդարոց եւ մեղաւորաց քաւարան. զարդարեալ առաքելովք եւ մարգարէիւք:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Բանն աստուած եւ ծածկեալ խորհուրդըն յաւիտենից, իջեալ ՚ի յերկնից մարմնացեալ ՚ի կուսէն խաչեալ յերկրի եւ թաղեալ ՚ի նոր ՚ի գերեզմանի, եւ յարուցեալ յերրորդ աւուր, զի զմարգարէիցն ըզտառսըն կատարեսցէ:

Այսօր ցընծան դասք հրեշտակաց ՚ի նաւակատիս քրիստոսի սուրբ եկեղեցւոյ. բարեբանելով ըզտէր աստուած հայրցըն մերոց: հրց / գձ

Այսօր տօնեն դասք սուրբ առաքելոցն ըզտօն վերինն երուսաղէմի. յիմանալի տաճարին մատուցանեն զերգս հոգեւոր երգով. տէր աստը:

Այսօր երգս առեալ գոչեն դասք հաւատացելոց միաբանութեամբ. արժանի արա ըզմեզ ՚ի տաճարի քում սրբութեան փառաւորել զամենասուրբ զերրորդութիւնդ. ըզտէր աստուած:

Ըզտէր օրհնեցէք եւ առաւել գ

բարձր արարէք ընդ նմա յաւիտեան։

Որ լուսաւորեաց զկաթողիկէ մայր սուրբ եկեղեցի աստուածային լուսովն. ամենայն ազինք գովեցէք եւ առաւել բարձր արա։

Որ բարձրացուցեր զմանկունս սուրբ եկեղեցւոյ 'ի դասս վերին զօրացն. քահանայք օրհնեցէք եւ առաւել բարձր արա։

մեծ Զանճառելի լուսոյ մայր, եւ ընդունակարան անբովանդակելի որդւոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք։

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանձնաւոր տաճար աստուծոյ բանին օրհնութեամբ մեծամք։

Զքերովբէից փառաւորութեան մայր, որ զանտանելին յէից 'ի յարգանդի եբարձ. ընդ ամենեքեան օրհնութեամբ մեծամք։

ողր Լուսաւորեա երուսաղէմ զի հասեալ է լոյս քո. զարդարեա զամուրս քո. եւ փառք տեառն 'ի վերայ քո ծագեսցի։

Օրհներգութեամբ սաղմոսիւք քեզ վայելէ աստուած օրհնութիւն 'ի սիովնէ, եւ քեզ մատուսցին աղօթք յերուսաղէմ։

Գովեա երուսաղէմ զտէր, եւ օրհնեա զաստուած քո. ընդ որ ժողովուրդ դշխոյ դուստր սիովնի։

տէր Այսօր աստուածութիւնն զուարճանայ նոր հաստատելով զերկիր. պարք սուրբք փառաբանեն զուարթնոց. եւ մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեսցուք սուրբ ըզտօնս։

Այսօր եւ մեք ցնծամք տօնիւս ընդհանուր հրճուանօք. մեծապէս փայլմամբ երեւեցաւ յաշխարհի. առ աստուած գոհութիւնք ընծանան. պատմեն անդադար ըզբան կենդանի։

Խնդա եւ զուարճացիր եկեղեցի կոյս սուրբ եւ հարսն երկնաւոր փեսային, ահա տեսանեմք պօծեալն ընդ քրիստոս, գոլով առ քեզ լուսոյն հեթանոսաց։

Որ 'ի սկզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր իմաստութիւն. զոր նախանկար տեսութեամբ նշանակեալ մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերինն, լուսաւորելով փառօքն աստուծոյ։ Ճնկ ակ

Որ ըղխորհուրդ անպատում տնօրէնութեանդ քո 'ի սրբոյ կուսէն. տիպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց բանին աստուծոյ. փառաց անեղին տեղի հանգստեան։

Որ 'ի կեանս վերադարձի բնութեանս դարձմամբն յորդանանու օրինակեցեր. եւ ըղբնութիւն մահու եւ դժոխոց կործանմամբն երիքովի տապանակաւ խաչին հրաշագործեալ նոր խորհրդի. օրհնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք։



# ԿԱՆՈՆ

## ՎԱՐԴԱՎԱՌԻ ԱՌԱՋԻՆ ԱՒՈՒՐՆ

օրհ ած

Ո՛Ր 'ի լերինն պայծառակերպեալ ցուցեր զաստուածային քո զօրութիւնդ. զքեզ փառաւորեմք իմանալի լոյս։

Որ ըզճառագայթ փառաց քոց ցուցեր արեգակնակերպ փայլմամբ զարարածս լուսաւորեցեր. զքեզ փառաւորեմք իմ։

Որ ահագին տեսլեամբ զարհուրեցուցեր զքո զաշակերտսն, 'ի թմբրութիւն հրաշիցն 'ի սէր աստուածային փառաց քոց. զքեզ։

Երեւի երբեմն աշակերտացն հրաշալի տեսլեամբ, պայծառացեալ 'ի Թաբօր լերինն։

Եւ զերրեակ միութեան զանտանելի ըզլոյսն տեսանելով կենդանւոյն մահացան։

Ի տաճարի սրբութեան փառաց քոց քրիստոս, զոր 'ի յերկնից լուսաւորեցեր աստուածային ծագմամբ. 'ի սմա ըզքեզ անդադար բարեբանեսցուք։

Որ ըզխորհուրդս փրկական աստուածգիտութեան, շնորհեցեր մեզ 'ի ձեռն քահանայապետին քո եւ վկայի. նորին աղաչանօք խնայեա 'ի մեզ։

Զհաւատացեալ ժողովուրդս սուրբ երրորդութեան, եւ զապաւինեալս 'ի խորան փառաց քոց պահեա անխռով 'ի խաղաղութեան։

Այսօր զանըմբռնելին բանն որ յաթոռ փառաց ընդ հօր յերկրի երեւեալ տեսաք. բովանդական ձայնիւն օրհնեսցուք, օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

Այսօր յաւանակ քերովբէ, եւ տըղայքն եբրայեցւոց բարբառեն. օրհնութիւն որդւոյ դաւթի. օրհ։

Այսօր զուարձացան տիեզերքս գալըստեամբ աստուածորդւոյն յերուսաղէմ. եւ գոչէին հընչմամբ երգով. օրհ։

յար

Զթագաւորըն փառաց քրիստոս, որ վասըն մեր մարմնացաւ 'ի սըրբոյ կուսէն եւ խաչի համբերելով. միաբանութեամբ երգով բարեբանեսցուք։

Որ ըզթաղումն երեքօրեայ յանձն էառ յարուցեալ 'ի մեռելոց իշխանութեամբ. միաբա։

Կարողանայէս ըզդրունս դժոխոց խորտակեաց, եկեղեցւոյ իւրում զգեցոյց զմեծ վայելչութիւն. միաբանութեամբ եր։

Զփառաւորեալըն յամենայն արարածոց, եւ 'ի ծագաց մինչ 'ի ծագս երկրի զերկրպագեալն. զմարմնացեալ բանն 'ի կուսէն, ձայնիւ երգով օրհնեսցուք։

Որ դիմեալ գայ յեդովմայ բարձրացեալ փողով. յարուցեալ 'ի պատերազմ ընկըղմեաց զաներեւոյթն ամաղէկ. զիջեալ բանն 'ի դժոխս ձայնիւ եր։

Ծագումն ’ի Հօրէ փառակից սուրբ հոգւոյն, կենդանութիւն ազգի մարդկան, որ յայտնեցան այսօր ’ի մեռելոց. զՀամբարձեալ բանն ’ի յերկինս ձայնիւ եր:

ծաղ Ուրախ լեր յոյժ դուստր սիովնի. պայծառացիր երուսաղէմ զարդարեալ ընդունելս քո քաղաքդ աստուծոյ:

Քանզի քրիստոս որ էնն ’ի յաթոռ փառաց, այսօր մտանէ ’ի քեզ նստեալ ’ի վերայ յաւանակի նորոյ:

Ծերք եւ տղայք ոստովք ձիթենեօք միաբանութեամբ երգէին. օրհնութիւն որդւոյ դաւթի, օրհնեալ եկեալդ անուամբ տեառն:

հող Որ ’ի քրովբէական կառսդ հանգչիս, այսօր իջեր յերկնից ’ի դաս առաքելոցն սուրբ հոգի. օրհնեալ ես թագաւոր անմահ:

Որ գնաս ’ի վերայ թեւոց հողմոց. այսօր ’ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի. օրհնեալ ես թագաւոր անմահ:

Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր ’ի հաստատել զեկեղեցի քո սուրբ հոգի. օրհ:

հան Զայն արկեալ կենարարին աստուածային բարբառովն, ասէ եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն ’ի հանդերձեալ երկրին:

Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ’ի յօդըս վերինս, աստուածազգեաց լուսով պայծառացեալ ’ի դաս անմարմնոցն. ’ի լսել ըղձայն երանաւէտ կոչմանն:

Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանան, ’ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ’ի դաս անմարմնոցն, ’ի ժողովս անդրանկաց գրելոց ’ի յերկինս:

Մարմնացեալդ ’ի կուսէն նախայաւիտեան բանդ, այսօր ’ի տաճարն եկիր կատարել զօրէնս, վասն փրկութեան հեթանոսաց: ած

Որ յանորուեստ աթոռ նստիս բարեբանեալդ ’ի հրեշտակաց, այսօր ’ի սիմէօնի բառնալով ’ի գիրկս. որ ընծայեցես ըզմեզ ’ի կեանսըդ յաւիտենից:

Որ արձակիչդ ես կապելոց պարգեւատու ամենեցուն. այսօր հայցմամբ ծերունւոյն արձակեա եւ զիս ըզբազմամեղս ’ի կապանաց մահու ’ի կեանսըդ յաւիտենից:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Հանդիպեալ նախահարցըն տեսութեամբ հայցէին ’ի տեառնէ. ասեն բարւոք է մեզ աստ լինել:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Արասցուք երիս տաղաւարըս տեառն եւ մովսէսի եւ եղիայի. եւ փառաւորեսցուք հանապազ զերրեակ միութիւնն:

Զանճառելի խորհուրդ սուրբ երրորդութեանդ այսօր ’ի լերինն երեւեցուցեր աշակերտաց քոց տէր. աստուած հարցըն մերոց: հրց / ակ

Սոսկալի հիացմամբ զայլակերպութիւն քո տէր, այսօր տեսեալ առաքելոցն յօրհնէին քեզ տաղաւար. աստուած հար:

Հովանացեալ ’ի վերայ լուսեղէն ամպոյն, եւ ձայն ’ի յերկնից հայրական որ ասէ, դա է որդի իմ սիրելի. աստուած հար:

գ Ընդ որ օրհնեցէք եւ բարձր ա-
րարէք ընդ յաւիտեան։
Գովեցէք զարփիական ընդ ե-
րեւեալ ՚ի Թաբօր լերինն. եւ
բարձր արա։
Բարեբանեցէք զաստուածու-
թեանն երեւումն աշակերտացն
յայտնեալ. եւ բարձր արա։
մեծ Զանճառելի լոյս աստուա-
ծութեանն տեսողականաբար կրեցեր ՚ի
քում յորովայնի Մարիամ Մայր եւ
կոյս. օրհնութեամբ զքեզ մեծա-
ցուցանեմք։
Ի մանաւոր լուսոյն զարհուրե-
ցան դասք առաքելոցն. այլ ՚ի քեզ
բովանդակ կրեցեր զհուր աս-
տուածութեանն Մարիամ Մայր
եւ կոյս. օրհ։
Առաքելոցն հովանացեալ ամպ
լուսեղէն, գերագոյն քեզ հոգւոյն
սրբոյ, եւ զօրութիւն բարձրե-
լոյն հովանաւորեալ ուրբ աստուա-
ծածին. օրհ։
ողոր
դձ Ի Թաբօր ՚ի լերինն ձեւացու-
ցեր զքո բնութիւնդ անմահելի
գոյացութեամբ. ընդ որս եւ մեք
ցնծութեամբ երգեմք զքեզ, ողոր-
մեա մեզ մարդասէր։
Աշակերտքն հիացեալ բարբա-
ռէին զխորհուրդս ՚ի տագնապի
սրտից իւրեանց. ընդ որս։
Անքննելի մեծ խորհուրդ զերրոր-
դութեանդ քոյ սրբոյ առաքե-
լոցն ծանուցեր բարերար. ընդ ո։
Սոսկալի հիացմամբ զայլակերպու-
թիւն քո տէր առաքելոցն տե-
սեալ յօրինէին քեզ տաղաւար.
ընդ որս։
Հովանացեալ ամպ լուսեղէն եւ
զհայրականն լուեալ զձայն,
եթէ դա է որդի իմ սիրելի. ընդ
որս եւ մեք ցնծութեամբ եր-
գեմք զքեզ, ողորմեա մեզ մար-
դասէր։
Քրիստոս աստուած մեր շնոր-
հեա մեզ ընդ Պետրոսի եւ ընդ
որդւոցն Զեբեդեայ արժանա-
ւորիլ քում աստուածային տես-
լեանդ։ տէր
Համբարձցես զմեզ տէր առաւել
քան զզգալի զԹաբօրական զլ-
լեառն, յերկնաբերձ եւ յիմա-
նալի խորանդ։
Վասն որոյ եւ մեք զքանկտելիս
մեր յարմարեսցուք քեզ հոգեւո-
րական տաղաւար, որպէս միայնոյ
մարդասիրի եւ փրկչի։
Այսօր զխորհուրդ քո կեր-
կնակի գալստեանն աշակերտաց
քոց յայտնեցեր Քրիստոս ՚ի Թա-
բօր լերինն։ տէր
Այսօր զփրկականն քո վասն աշ-
խարհի զմահ վկայեալ քեզ ե-
րեւեցան Մովսէս եւ Եղիա։
Սրբեա տէր զմեղուցեալս քո
ծառայիցս զգայարանս, եւ շնոր-
հեա տեսանել զքեզ եւ լսել
զհայրական զձայնն. եթէ դա է
որդի իմ սիրելի։
Լերինք ցնծասցեն առաջի ձնկ
քո տէր. որ երեւեցար ՚ի փառս դկ
աստուածոյ հօր, միասնգամ գու- ստղ
շակելով զգալուստն. վասն որոյ
աստուածային լուսովն զարդա-
րեալ զքեզ հրաշալի ձայնիւ
ընդ երկնայինսն երկրածինքս
զքեզ բարեբանեմք ՚ի Թաբօր
լերինն։
Զոր տեսեալ սոսկալի զանապական
լուսոյն ծաւալումն յայլակերպի-

լըն քո քրիստոս որդի աստուծոյ առաքելոց եւ մարգարէիցըն պակուցեալ զարհուրեցան. վասն որոյ աստուած:

Որ զանճառելի խորհուրդ սուրբ երրորդութեանդ սիմովնի վիմի ծանուցեր երանելի տաղաւարացըն յօրինմամբ. եւ սիրելի ՚ի հօրէ վկայեալ ճըշմարիտ միածին որդի. վասն որոյ աստուած:

ճշւ գկ մեծ Ուրախացիր պըսակ կուսից տիրամայր, այսօր որդին քո զհայրենին փայլեաց ըզփառս. Նըմա յաւէժ յանձըն արարեր զանձինըս մեր:

Նըմա մովսէս եւ հեզըն սպասէին, յանուն նորա ցընծան Թաբօր եւ հերմոն. Նըմա յաւէժ յան:

Եսայիաս ըզքեզ Թէթեւ ամպ ետես, եւ հայր յամպոյն զքո զորդին իւր դաւանեաց. Նըմա յա:

հմբ Այսօր ՚ի լերինըն Թաբօր ցուցեր ընտրելոց քոց ՚ի փառաց քոց որդի աստուծոյ. օրհնեմք ըզքեզ ՚ի փառըս հօր, որ ես տէր կենդանեաց եւ մեռելոց:

Այսօր յայտնեցար առաքելոցն ՚ի խօսելըն մովսէսի եւ եղիայի վասն ելիցըն քոց յերուսաղէմ, որդի աստուծոյ. օրհ:

Այսօր եւ բարբառ ՚ի վերուստ յաստուծոյ հօրէ վասըն քո հընչեաց յառաքելոցն, ասէ դա է իմ որդի, դըմա լուարուք, օրհ:



# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԱԻՈՒՐՆ

ԾԱՌԱԳԱՅԹ փառաց հօր որդիդ միածին, որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ, օրհ բկ
այսօր ՚ի Թաբօր փառօք փայլեցեր:

Որ անտես սրովբէիցն անհաս ՚ի վեր քան ըզլեան, ծառայի կերպիւ պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր, այսօր ՚ի:

Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեանդ, ՚ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական, այսօր ՚ի Թա:

Որ գերագոյն փառօք պայծառացոյց զադամա առաջին, զոր ճաշակմամբ պըտղոյն մերկացաւ ըզփառս անպատումս. այսօր վերըստին փառօք զարդարեաց: ✠

Որ պատուիրան ճըշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ աղչ
քո քրիստոս, անսահման ժամանակաւ աղօթել միշտ առ աստուած հոգւով եւ մըտօք:

Որ ըզլեան քո օրինաց հաստատեցեր գործով մեզ օրինակ. հանելով ըզգիշերն ՚ի գլուխ յաղօթսն աստուծոյ բնութեամբ մերով տնօրինաբար, որում կըրկնի ծունր ամենայն:

Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ քեզ քրիստոս. շնորհեա մեզ յամենայն ժամ լինել քեզ յանդիման, մաքուր աղօթիւք ըստ անմարմնոց որ յերկինս:

Աղաչանօք աստուածածնին անապական քում ծննդեանն, զնմանալին անճառ սրտից մերոց բացցես ողորմութեամբ հայիլ 'ի լոյս քո քրիստոս։

Օրհնեցէք զտէր ընդ երկնայինսն նմանեալ դասուց, նոր ժողովուրդք ասելով. քեզ հօր տուողիդ մեզ զկեանս փառք։

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք ընտրելոց որդիք սիովնի ասելով, քեզ որդւոյ շնորհողիդ մեզ զկեանս փառք։

Բարեբանեցէք զաստուած 'ի սքանչելիս սրբութեան նորա ձայնիւ ցնծութեամբ ասելով, քեզ հոգւոյդ պարգեւողիդ մեզ զկեանս փառք։

յոր Օրհնութիւն 'ի բարձունս տնօրինեցելոյն 'ի կուսէն թագաւորին մերոյ. ալէլուիա ալէլուիա։

Օրհնութիւն 'ի բարձունս անսասանելի եւ հաստատողին յուսոյն մերոյ. ալէ։

Օրհնութիւն 'ի բարձունս անբաժանելի եւ միանձնական սուրբ երրորդութեանն. ալէ։

Հաստատութիւն իմ լեր տէր եւ յոյս փրկութեան, որ զառաջին ադամն ազատեցեր 'ի մեղաց. նորոգեա եւ զիս զապականեալս մեղօք։

Որ յատենի կացեր անպարտ կողին պատրանօք, եւ արբուցեր մեզ 'ի կողահոս աղբերէդ. նորո՛։

Աստուածածին անարատ մայր տեառն եւ կոյս մարիամ, որ եղեր ընդունող բանին աստուծոյ. բարեխօսեա առ տէր վասն մերոյ փրկութեան։

Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգմամբ. քանզի նորոգողն էից հոգին էջ 'ի սուրբ վերնատունն. որով նորագեցան դասք առաքելոցն։ հոգ

Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ հօր հաշտութեան. քանզի որ երբեմն զհոգին 'ի մարդկանէ մարմնին եղելոց, դարձեալ վերստին ընծայի պարգեւէ։

Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցնծութեամբ զգալուստ սուրբ հոգւոյն. որով զարդարեցան 'ի զգեստս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրովբէին զերեքսրբեանն։

Գալոց է միածինն փառօք եւ հան
փառօք հօր, եւ զհոգեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ։

Լուսաւոր են ճանապարհք սրբոց, եւ 'ի բիւրաւոր բանակս հրեշտակաց ամպովք ընթանան։

Ի վերին երուսաղէմ թռչին ամպովք ընդ առաջ տեառն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ տեառն լինին։

Ուրախ լեր մայր լուսոյ մարիամ, երկիր բանաւոր արեգականն օթարան. լեր բարեխօս վասն անձանց մերոց։ ած

Խնդա տաճար բանին աստուծոյ. բարձող տրտմութեան նախամօրն եւայի. լեր բա՛։

Ցնծա իմանալի արեւելք. քանզի քեւ ծագեաց մեզ լոյս երեւաց քրիստոս. լեր բարեխօս վասն անձանց մերոց։

Եկայք ժողովուրդք 'ի տաճարի խաչ
փառաց քրիստոսի, տուք ամենեքեան օրհնութիւն 'ի բարձունս։

Քանզի Թագաւորն քրիստոս պըսակեաց ըզսա սքանչելի փառօքն իւրովք. տուք սմա:

Ի սմա եւ զօրքն հրեշտակաց դասաւորեալ տօնեն տեառն. տուք ամենեքեան օրհնութիւն 'ի բարձունս:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Որ 'ի նախնումն երեւեալ մովսէսի ամպովքն 'ի սինա. այսօր լուսափայլ ամպովք 'ի Թաբօր յայտնեալ վկայեաց, դա է իմ որդի դըմա լուարուք:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Որ 'ի յերկինս վերացոյց հրեղէն կառօք զհեղիա, այսօր վայրաբերեալ 'ի Թաբօր հանդերձ մովսէսիւ, խօսէին զելիցն որ յերուսաղէմ:

հրց
դձ Այսօր ըզխորհուրդ անճառելի աստուածութեանդ քո քրիստոս ըզծածկեալն 'ի սկզբանէ յայտնեցեր աշակերտացն 'ի Թաբօր լերինն. օրհնեալ տէր աստուած հարցըն մերոց:

Այսօր զառաքեալսն մարգարէիւքն 'ի քէն ծանուցեր առաքելոցն, ըզմովսէս եւ զհեղիա աստուածաբար կոչմամբ 'ի Թաբօր լերինն. օրհ:

Այսօր անտեսըն յէութեան հայր 'ի բարձանց երեւելով, ըզծընեալդ 'ի սրբոյ կուսէն դաւանեաց որդի իւր սիրելի. օրհ:

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Որ փայլեացն այսօր 'ի կուսածին մարմնոյն զգերապայծառ լոյս աստուածութեանն. ըզտէր օրհ:

Որ յայտնեացն այսօր 'ի Թաբօր լերինն զմիութիւն սուրբ երրորդութեանն. ըզտէր օրհ:

Որ զմիասնգամ խորհուրդ գալըստեանն իւրոյ տըպաւորեաց ծագմամբ արփիական լուսոյն. ըզտէր օրհ:

Աստուածածին գերագոյն քերովբէից, բանին բարձող որ զամենայն կրէ զօրութեամբ. բարեխօսեա առ տէր վասըն մերոյ փրկութեան: մծ

Մայր սրբութեան բարձրագոյն սերովբէից, զանտեսն իմքեանց 'ի քեզ կրելով, ծագեցեր զլոյս աշխարհի. բարեխօ:

Տաճար կենաց որ զանմահութեան պըտուղն 'ի քէն ետուր նախնւոյ մօրն եւայի, 'ի մահաբեր երկանցն ազատելով. բարեխօ:

Որ զճառագայթս աստուածային ցուցեր այսօր մարգարէիցն, ողմ
որոց ցանկային տեսանել զանտեսըդ սերովբէից. լոյսդ անճառելի ողորմեա:

Որ զդաւանութիւնն պետրոսի ըզքեզ որդի հօր աստուծոյ, հայր 'ի յամպոյն վկայեալ այսօր որդի իւր դաւանէր. լոյսդ ան:

Շնորհեա տէր եւ մեզ մեղաւորացս 'ի միասնգամ քո գալըստեանն տեսանել ըզքեզ հայրական փառօք 'ի նորոգել ըզտիեզերս. լոյսդ անճա:

Ցընծայ այսօր փառօք միածնին լեառըն Թաբօր հանդերձ հերմոնիւ, բարձրացեալ գերագոյն սինեայ, եւ էջք աստուծոյ դուռն երկնից 'ի նմա: տէր

Ցընծան այսօր լերինք աստուծոյ, արարողին ելեալք ընդ առաջ,

պարակցին յաւիտենական լե-րանցն դասք առաքելոց եւ մարգարէից։

Ցընծայ այսօր լեառն վերին սի-ոն, հարսնարան անմահ արքա-յին, տեսանելով զերկնաւոր փե-սային, զարդարեալ լուսով հայ-րական փառօք։

Ձկ բկ սաղ

Օրհնեցէք մանկունք ընդ եր-կնայնոցն ըզհայրն երկնաւոր. որ մարմնացեալ բանին վկայեաց յեր-կնից այսօր ՚ի Թաբօր լերին։

Գովեցէք ընդ սերովբէսն զորդին միածին. որ փայլեաց մարմնով զլոյս աստուածութեանն այսօր ՚ի Թա։

Բարեբանեցէք ընդ քերովբէսն զհոգին ճշմարիտ. որ լուսափայլ ամպով ճանկցին հովանացեալ այ-սօր ՚ի Թա։



## ԿԱՆՈՆ

### ԵՐՐՈՐԴ ԱԻՈՒՐՆ

օրհ գձ

ԱՅՍՕՐ որ էն ՚ի յերկինս բան եւ ծընունդ հօր միածին, ըզծածկեալն ՚ի յէից խորհուրդ յայտնեաց աշակերտացն, ծառա-յի ըզկերպարանըն ծածկելով աս-տուածութեամբըն։

Այսօր հընչեաց յառաքեալըն հայրական բարբառ յերկնից, սա է որդի իմ սիրելի ընդ որ հա-ճեցայ. որ ըզբնութիւնն աստուա-ծային կերպիւ ծածկեալ ծառայա-կան։

Այսօր վիմին հաւատոյ յայտնեալ զխորհուրդ երրորդութեանն, եր-րակի յօրինմամբ տաղաւարացըն խորհրդոյ. որում ըզմեզ մաք-րեսցես լինել տաճար երրորդու-թեանն։

Որ յանարուեստ՚ի յաթոռ բազ-մեալ ընդ հօր եւ ընդ հոգւոյն. անըսկիզըն մտըւած բանդ ՚ի հօ-րէ առաքեցար. ծառային զգեցար ըզկերպարան ծածկելով զաստուա-ծութիւնդ։

ապշ

Որ արարեր զօրութեամբ զի-մանալեացն աշխարհ վերին, եւ ՚ի նմա հաստատեցեր տընաւես ըզ-պետըս հրեղինացն. օրհնեմք զան-հասանելի զօրութիւնդ։

Որ տիրապէս մեծատունդ ստեղ-ծեր երկրորդ աշխարհ զգալի. եւ ՚ի դրախտն որ յադենի տընտես եդեալ զմարդն առաջին. օրհ։

Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհրդեամբ. եւ ՚ի նմա կար-գեալ տընտես զքարոզս բանին ճշ-մարտութեան. օրհ։

Անտանելւոյն առաջաւոր բարձող էիցըս բարձրալին. որ ծընար զաս-տուած մարմնով զանմարմնաբար ծընունդըն հօր. բարեխօսեա վասըն մեր աստուածածին մարիամ։

Որ տիրական սու ՚ի քէն կար-գեալ տընտես բնութեան մերոյ, իմաստութեամբ ըզպարտիս եթող քոյոց պարտապանաց. թող եւ ըզ-մեր ըզյանցանս ողորմութեամբըդ քո քրիստոս։

Որ զպատմուճանն առաջին զոր զգեցուցեր օծմամբ հոգւոյն, մեր-կացաք մեղօք ըստ նախահօրըն պատրանաց. զգեցո ըզնոյն վերըս-տին ողորմու։

Ցաստուածային կայծակունս ՚ի սրովբէիցն անհըպելին, անմարմնա-

պէս մերձեցաք գոլ պատրաստական քում խորհրդոյ. շնորհեա ըզնոյն մաքրութեամբ 'ի թողութիւն մեղաց մերոց:

Որ վառեցար 'ի յարիւնն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ եոտուր զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց:

յար Զթագաւորըն քրիստոս օրհնութեամբ երգով բարեբանեցէք ամենայն երկիր:

Արարողին երկնի եւ երկրի մատուցուք երգով գոհաբանութիւն ամենայն երկիր:

Երրորդութեանն եւ միաստուածութեանն մատուցուք պատիւ երկրպագութիւն յաւիտեանս ամէն:

օրհ Յօրհնութիւն նոր օրհնեսցուք ըզտէր, որ 'ի վերայ քերովբէիցըն հանգչի, եւ 'ի զօրաց երկնաւորաց փառաբանի սրբասաց ձայնիւ:

Որ կամաւոր խաչելութեամբն իւրով աւերեաց ըզզօրութիւն մահու. եւ երեքօրեայ յարութեամբն իւրով պարգեւեաց մեզ կենդանութիւն:

Բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին պահեսցէ զեկեղեցի իւր սուրբ. եւ 'ի միւսանգամ գալըստեան իւրոյ նորոգեսցէ 'ի փառս:

հոգ Արեգակն արդարութեան քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգւով եւ ճըշմարտութեամբ:

Որ փոխանակ ծոցածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետիքըն հօր 'ի բարձանց հոգին ճըշմարտութեան, մըխիթարել զորս յադամայ տրտմեցելոց եւ հրազինել զընտրեալ դասս առաքելոցն. վասն ո:

Այսօր տըրտմական եւ գիշերային լուծան երկունք ծնընդեան նախամօրն. քանզի զծնեալըն մարմնով 'ի մահ եւ յապականութիւն, վերըստին ծնանի հոգին յորդին լուսոյ հօրն երկնաւորի. վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգւով եւ ճըշմարտութեամբ:

Ի ձայն մեծի զուարթնոյն եւ հան
'ի հընչումըն հրաշալի փողոյն, ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին, յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն եւ հանգո ընդ սուրբս քո:

Յորժամ նըշան տէրունեան ճառագայթիւք փայլի, եւ թագաւորըդ թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ ա:

Յորժամ ատեան դատաստանին դընի, եւ գըպրութիւնըք հրաշխցըն բանին. յայնժամ ա:

Որ յէութեանդ ես ընդ հօր եւ ած
սուրբ հոգւոյն անըսկիզբըն որդի, խոնարհեցար 'ի հայրական ծոցոյ, մարդ եղեալ մարմնացար 'ի կուսէն, բառնալով զյանցումըն մահու յանցանաց նախահօրն. քեզ երգեմք ընդ զօրս հրեշտակացն 'ի

մէջ հովուացն, օրհնեալ ես քրիստոս նախայաւիտեան բանդ։

Այսօր ծնեալ որ 'ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս որդի, ճառագայթ փառաց եւ ծագումն յանմեկնելի լուսոյն. մատաղագունչակ տեսլեամբքն յայրին իջեալն է եւ 'ի մսուր անբանից բազմեալ. քեզ երգեմք ընդ զօրս հրեշտակացն 'ի մէջ հովուացն, օրհ։

Թագաւոր փառաց քրիստոս եւ արարիչ բոլորից, աստուած հզօր իշխան հայր հանդերձեալ լուսոյն, մանուկ երեւեալ այսօր անիմանալի խելիդ 'ի յէութեան. քեզ երգեմք ընդ զօրս հրեշտակացն 'ի մէջ հովուացն, օրհ։

խաչ Այսօր ցնծան դասք հրեշտակաց ընդ հաստատեալ քո 'ի յերկրի ով լուսեղէն խորան երկնանմանն եկեղեցի սուրբ. որպէս լեր վէմ պատուական հովանի մեր եւ յոյս։

Զուարճացիր հարսն անարատ ընքօղարկեալ վայելչապէս. զարդարեալ հանդերձ փառօք եւ ել ընդ առաջ երկնաւոր փեսային. որպէս լեր ամուլ բազմածին, ահա փեսայն գայ առ քեզ։

Աստանօր նորոգեցաւ մեզ աւազան մկրտութեան, յարգանդ մօր հոգւոյն յղացեալ ծնանելով վերստին զհաւատացեալքս 'ի քրիստոս. որպէս լեր անմայր յառաջնումն ահա որդին գայ առ քեզ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր ցուցեր 'ի Թաբոր զանտանելի լուսոյդ փայլումն. ծագեցար աշխարհի արդարութեան արեգակն. յայտնելով աշակերտացն անպարագրեալ աստուածութիւնդ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Յորմէ անհիւ զարհուրեալ ընտրեալ դասուց առաքելոյն, երրակի խորհրդով յօրինէին քեզ տաղաւար. որով ըզմեզ սրբեսցես լինել տաճար քեզ հոգեւոր։

Այսօր ըղխորհուրդն անճառ զծածկեալն յաւիտենից եւ յազգաց, յայտնեցեր փառօք 'ի Թաբոր լերինն. աստուած հարցն մերոց։ հրց գկ

Այսօր բղխեալն մարմնով յարմատոյն յեսսեայ գաւազան, ծաղկեցաւ լուսով 'ի Թաբոր լերինն. աստ։

Այսօր անմահութեան հոտ անուշ բուրեաց 'ի Թաբոր. Թմրեալ ընդարմացելոց զդասս առաքելոցն. աստ։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։ գ

Զլոյս փառացն հօր ծագեալ այսօր 'ի լերինն Թաբօր. ժողովուրդք բարձր ա։

Զամենասուրբ հոգին որ 'ի նմանութիւն լուսափայլ ամպոյ յայտնեցաւ 'ի Թաբօր. ժող։

Զյաւիտենիցն հայր որ երեւեցաւ այսօր յերկնից վկայեաւ միածնին. քահանայք բարձր արարէք զնա յաւիտեան։

Աստուածածին պայծառ քան զերկինս, որ 'ի մեզ ծագեցեր զլոյսն մեծ եւ գերազանց, որով խաւարն անգիտութեան հալածեցաւ. սրովբէական ձայնիւ զքեզ բարեբանեմք, եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք։ մեծ

Ամպ թեթեւ եւ լուսաւոր, որ զանձրեւըն կենաց 'ի քեզ հեղեալ 'ի յերկնային ծովէն, զոր հանեցեր 'ի յերկիր ծարաւուտ. սրովբէա:

Պարտէզ փակեալ աստուածատունկ եղեմ, որ եւ ծառըն կենաց 'ի մէջ դրախտի քո 'ի հողոյն տընկեալ, անմահական պտղովն եկից ըզտնկեցերս. սրովբէա:

Դար Որ յանըմկիզն էին անկեզապէս ծընեալ, եւ սրովբէականըն ծածկէիր թեւօք. այսօր ըզպարագրեալն մարմնով ցուցեր զաստուածութեան քո զփառս աշակերտաց քոց տէր. քո ամենապայծառ ծագմամբդ ողորմեա մեզ աստուած:

Որ զլուսաւորական օրէնս մովսիսական տառիցն 'ի սինեական խօսէիր լերին. այսօր ըզմովսէս եւ զհեղիաս ածեալ 'ի մեռելոց եւ կենդանեաց 'ի տեսիլ փառաց քոց. քո ամենա:

Որ զօրինակ մեծի գալստեան քո տէր 'ի թաբօրականըն ծանուցեր լերին. քանզի տեսին դասք առաքելոցն ըզնախահայրն եկեալ փառօք, խօսէին զելիցն յերուսաղէմ զխորհուրդ. քո ամենա:

Տէր Այսօր ընդ հրեշտակս 'ի բարձունս ցընծացուք տօնիւս 'ի ծագել իմանալի լուսոյ աստուածութեանդ. օրհնեմք զքեզ էակիցըդ հօր որ եկիր 'ի փրկել ըզտնկեցերս:

Այսօր յայտնեցեր 'ի թաբօր ընտրելոց դասուցն առաքելոց եւ մարգարէից, զաստուածային քո զփառս անճառելիս. օրհ:

Այսօր հայր յամպոյն վկայեալ էակից բանիդ միացեալ ընդ կուսածին մարմնոյդ, ասէ դա է իմ որդի ընդ որ հաճեցայ. օրհ:

Այսօր ըզծագումն արդարոյն արեգականակերպ փայլմամբ, ծանուցեր ծագմամբ փառաց քոց տէր յայտնութեանն. օրհ:

Երկինք ամենայն այսօր ցընծան ընդ ելանել քո տէր 'ի թաբօր. յորում պայծառեն ընդ երկնայնոցն դասք առաքելոց եւ մարգարէիցն. ընդ որս եւ ըմեք օրհնեմք յաւագ քան զարեւ ըզլոյսդ: Ճեկ տող

Որ յառաջ տեսանելով մարգարէին զաստանօր ծագումըն լուսոյ քո տէր, գոչէր. թաբօր եւ հերմոն 'ի յանուն քո ցընծասցեն. ընդ որս եւ:

Որ ցուցեր 'ի թաբօր զքեզ կենդանեաց եւ մեռելոց տէր եւ արարիչ. զմովսէս եւ զհեղիա 'ի տեսիլ փառաց քոց կոչելով ընդ ընտրեալ քոց առաքելոցն. ընդ որս եւ:



# ԿԱՆՈՆ

## ՇՈՂԱԿԱԹԻՆ

ՈՒՐԱԽ լեր սուրբ եկեղեցի, քանզի քրիստոս արքայն երկնից այսօր պսակեաց ըզքեզ խաչիւն իւրով. եւ զարդարեաց զամուրըս քո սքանչելի փառօքն իւրովք: օրհ գձ

Խընդա յոյժ դուստրը սիովնի. քանզի երկիրս երկինք եղեն այսօր

վերըստին քո նորոգմամբ, եւ թա-
գաւորն երկնաւոր հաճեցաւ բը-
նակել 'ի քեզ։

Ընդ գառս երկնաւոր զօրացն
վեր առեալ տօնեմք քեզ այսօր
զանդադար փառաւորութիւնս. ու-
րախ լեր հարսն անարատ անքննին
քո խորհրդով։

Խորան սրբութեան կանգնե-
ցաւ սուրբ եկեղեցի, եւ քրիս-
տոս թագաւորն 'ի սմա պատարա-
գեալ. եկայք հաւատացեալք եր-
գեսցուք քրիստոսի երգ նոր։ յար

Այսօր հրեշտակաց բազմու-
թիւնքն տօնակից լինին ընդ մեզ.
քանզի երկնաւոր թագաւորն ե-
կաւորի 'ի սուրբ եկեղեցի։

Խնդա եւ զուարճացիր հարսնա-
ցեալդ աստուծոյ եկեղեցի.
քանզի ըզքեզ տէրն տերանց ըն-
տրեաց եւ հաճեցաւ բնակել
'ի քեզ.

Լուսաւորեա լուսաւորեալ կա-
թուղիկէ եկեղեցի. քանզի 'ի քեզ
շող աստուածեղէն 'ի հօրէ լուսոյ
ծագեաց. եւ լուսաւորեաց ըզ-
մանկունս քո։

Որք արժանաւորեցայք 'ի կո-
չումն փառաւորութեան քրիս-
տոսի աստուծոյ մերոյ. եկայք ժո-
ղովուրդք երգեցէք տեառն երգ
նոր. երգեցէք զանուն նորա
ձայնիւ ցնծութեամբ յօրհնու-
թիւն 'ի նոր։

Զօրացեալքս 'ի քեզ քրիստոս ժո-
ղովուրդք հաւատացելոց, ճըշմա-
րիտ խոստովանութեամբ օրհ-
նեմք զխորհուրդ աստուածային
կենսաբեր տնօրէնութեան քո.
փառաւորեալ զահաւոր եւ զը-

քանզի եղեւ անուն քո, տէր տէր մեր
'ի վերայ ամենայն երկրի։

Ուրախ լեր եկեղեցի սուրբ հարսն
երկնաւոր խորհրդոյն 'ի փառս
ամենասուրբ երրորդութեանն. որ
համագոյ իշխանութեամբն իւրով
զարդարեաց ծագմամբ լուսոյ, պը-
սակեալ զքեզ 'ի պատիւ ամե-
նայն սրբովք իւրովք։

Լուսաւորեալ երուսաղէմ զի
հասեալ է լոյս քո. զարդարեա զա-
մուրս քո. եւ փառք տեառն
'ի վերայ քո ծագեսցի։ ադ

Օրհներգութեամբ սաղմոսիւք
քեզ վայելէ աստուած օրհնու-
թիւն 'ի սիոնի. եւ քեզ մա-
տուսցին աղօթք յերուսաղէմ։

Գովեա երուսաղէմ ըզտէր, եւ
օրհնեա զաստուած քո. ընդ
ժողովուրդ դըշխոյ դուստր սի-
ոնի։

Այսօր աստուածութիւնքն
զուարճանալ նոր հաստատելով
զերկիր. պարըք սուրբք փառաբա-
նեն զուարթնոց. եւ մեք ձայ-
նիւ օրհնութեամբ զարդարեսցուք
սուրբ ըզտօնս։

Այսօր եւ մեք ցնծամք տօնիւս
ընդհանուր հրնչմամբ. մեծապէս
փայլմամբ երեւեցաւ յաշխարհի.
առ աստուած գոհութիւնք ըն-
թանան. պաամեն անդադար
ըզբան կենդանի։

Խնդա եւ զուարճացիր եկեղեցի
կոյս սուրբ եւ հարսն երկնաւոր
փեսային, ահա տեսանեմք զօ-
ծեալն ըզքրիստոս, գոլով առ քեզ
լոյսըն հեթանոսաց։

Որ սրբեր զօրութեամբ զի- ադշ
մանալեացն աշխարհ վերին, եւ

՚ի նմա հաստատեցեր տնտես ըղձապետըս հրեղինացն. օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ :

Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի. եւ ՚ի դրախտն որ յադենի տնտես եդեալ զմարդն առաջին. օրհ :

Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհրդեամբ. եւ ՚ի սմա կարգեալ տնտես զքահանայս բանին ճշմարտութեան. օրհ :

Անսասանելոյն տաճարաւր բարձրոյ էիցըս բարձրոյն. որ ծնար զաստուած մարմնով զանմարմինաբար ծնունդըն հօր. բարեխօսեա վասն մեր աստուածածին մարիամ :

հող Որ ՚ի թեւըս թեթեւս աննիւթ սաւառնեալ եւ հրացայտըդ սերոբէից վերամբարձեալ տէրութեամբ խնամես զարարածս. հոգիդ սուրբ օրհնեալ ես յարարածոց քոց :

Որ սքանչելապայծառ հրաշալի ձայնիւ ընդ հօր եւ ընդ որդւոյ միշտ փառաբանիս, եւ քաղցրութեամբ հայցես յարարածս. հօ :

Այսօր աստուածային տէրութեամբ ՚ի վերնատունն հնչեալ հողմաձայն հնչմամբ, եւ զառաքեալըն նորոգեալ բաշխեցար յարարածս. հօ :

Հան Որ երկայնամիտդ ես տէր քաղցր եւ անոխակալ հանգո զհոգիս քոց ծառայից. զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յանուրն ահեղ ատենին :

Զյիշատակ հրաժարելոցն ՚ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զուխտըս մեր ընկալ որպէս զաբելին զընծայն եւ զաբրահամուն. զի մի :

Ի խորան քում սիրողաց հանգուսցես ըզծառայս քո. եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբըս քո. զի մի դարձ :

Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք : ած

Աւետաւոր հրեշտակն աւետաբանէր ըզծընեալն փրկիչն ՚ի սուրբ կուսէն :

Ասէ ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ :

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ :

Դասք հրեշտակացըն վայր իջեալ յերկնից երգեն ասելով, հրաշալի ձայնիւն եղանակելով երգեն զերգս օրհնութեան երրեակ սըրբասաց ձայնիւ :

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից :

Ուրախ լեր բերկրեա հարսնացեալ սուրբ եկեղեցի, պայծառացո զմանկունըս քո յօրհնաբանութիւն ծագողըն ըղշող լուսոյ ՚ի քեզ մայր եկեղեցի :

Ուրախ լեր այսօր սուրբ եկեղեցի եւ տօնեա ըզտօն քո դուստր սիոնի. քանզի ՚ի քեզ հանգեցաւ բընակին տէր աստուած հարցըն մերոց : հրց / գձ

Ուրախ լեր դըշխոյ դուստր սիոնի, եւ ցընծա վերինդ երուսաղէմ. քանզի քրիստոս արքայն երկնից գայ առ քեզ. տէր ան :

Ուրախ լեր սիոն մայր եկեղեցի. քանզի ՚ի քեզ շող աստուածեղէն ՚ի հօրէ լուսոյ ծագեաց. տէր ան :

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան : գ

Որ պըսակեացն այսօր սուրբ զեկեղեցի նըշանաւ խաչին իւրով. ըզտէր օրհնե :

Որ վերըստին ծնընդեամբ սուրբ աւազանին լուսաւորեաց զազգս որդւոց մարդկան. երգով ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

մեծ Ուրախացիր աստուածածին վերօրհնեալդ 'ի սրովբէից. ծագեալ 'ի քէն մեզ լոյս մայր եղեր վերաձգողին. ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք:

Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ. 'ի հրեշտակաց սպասաւորեալ գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ եւ ա:

Տեսանեմք ըզսոսկալի զհրաշալի խորհուրդ յայտնեալ. 'ի հոգւոյն սրբոյ յղացեալ զբանն աստուած մարմնով ծընար. ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք:

ողր Որ հաստատեցեր բանիւ զեկեղեցի քո քրիստոս 'ի վերայ առաքելական վիմի, երգել 'ի սմա զերգըս հոգեւորս:

Կանգնեալ 'ի սմա սեղան սրբութեան բաշխէ զմարմին իւր եւ զարիւն, եւ տայ 'ի սմանէ մեզ նորոգութիւն, 'ի թողութիւն մեղաց մերոց:

Իջեալ հոգւոյն սրբոյ աղաւնակերպ երեւմամբ 'ի վերայ մարմնոյ եւ արեանըն տեառն, 'ի բըժշկութիւն հոգւոց մերոց:

Լուսաւորեա երուսաղէմ զարդարեա զամուրըս քո. քանզի մերձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր. փրկութիւն քեզ շնորհելով պըսակեաց սքանչելի փառօքն իւրովք: տէր

Այսօր ծագեաց քեզ դըշխոյ դուստըր սիոնի արդարութեան արեգակըն քրիստոս. եւ սըփռեցան ըզքեւ շընորհք սուրբ հոգւոյն մեծապէս պարգեւօք:

Այսօր ցընծա սուրբ սիոն մայր եկեղեցի. փայլեցո զմանկունըս քո որպէս զարեգակըն. զի անճառ խընդութեամբ լըցոյց ըզքեզ քրիստոս թագաւորն:

Էջ միածինն 'ի հօրէ եւ լոյս փա- ձկ
ռաց ընդ նըմա, ձայնք հընչեցին դկ
սանդարամետք անդընդոց:

Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին գրիգորի, պատմէր ցընծութեամբ հաւատացեալ արքային:

Եկայք շինեսցուք սուրբ ըզխորանըն լուսոյ. քանզի 'ի սմա ծագեաց մեզ լոյս 'ի հայաստան աշխարհի:





# ԿԱՆՈՆ

## ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ ԱՌԱՋԻՆ ԱՒՈՒՐՆ

օրհ. ձ ԱՅՍՕՐ ժողովեալ սրբոցն ՚ի մի ամբոխն երանելի առաքեալքն եւ սուրբ կուսանքն ջահազգեստք պայծառացեալք լուցանէին ըզլապտերս իւրեանց. եւ միաձայնեալ ասէին, օրհնեալ ես ամենօրհնեալդ ՚ի կանայս։

Այսօր դնելով ըզսուրբ կոյսն առ դրանըն գերեզմանին, սպասէին եւ ակն ունէին տեսանել իսկ ինքնին գոլով, գեր ՚ի վերոյ տեսեալ զարարիչն եկեալ բազում հրեշտակօք. եւ նոցա միաձայն։

Այսօր տեսեալ ըզսուրբ կոյսըն թռուցեալ յօդս, եւ ամպեղէն կառօքն ՚ի վեր համբարձեալ յերկինս. մըտանելով յերկնային խորանսն ընդ իմաստուն կուսանսն. եւ նոցա միաձայն։

Այսօր ընդ բազմաչեայ քրովբէսն եւ ընդ վեցթեւեան սրովբէսն մըտանելով յեօթնաստեղեան խորանսն. տեսանելով զանճառն աթոռսըն զոր պատրաստեալ է քեզ տէրունոյդ. երգեմք եւ մեք ասելով. օրհ։

Այսօր զազատիչըն յանցանաց նախամօրն ըզկուսութեան մայրն փոխադրեաց բանն աստուած, յերկնայինսըն դասելով յաստուածակերտ խորանսն եւ յանպատում ՚ի կեանս. վասն որոյ հրճուողական ձայնիւ քեզ երգէ եկեղեցի սուրբ ըզընոր զօրհնաբանութիւն։

Այսօր տիրամայր սրբուհի կոյսն աւանդեալ ըզսրբանեալ հոգին ՚ի ձեռըն հրեշտակական դասուցն, որպէս գերարփի փայլեալ, ահեղեցըն նըմանեալ հրեղինաց դասուցն. վասն որոյ հրճ։

Այսօր հրաշափառ կոչմամբ հոգւոյն ժողովեալ սրբոց առաքելոցն եւ իմաստուն սուրբ կուսանացն, պայծառացեալք իմաստութեամբ ՚ի յերկնային փոխումն աստուածամօրն. եւ համաձայնեալք անմարմնոցն օրհնէին զամէնօրհնեալ սրբուհին։

Այսօր տեսեալ հրակերպ դասուք վայր իջեալ յերկնից զորդին միածին արփիափայլ հրաշալի փառօք, գերապայծառ մաքրեալ հոգւոյն յաւանդումն ամենասուրբ ծընողին իւրոյ. եւ համա։

Այսօր ըզընակարան հոգւոյն սըրբոյ վերնական հրաբուն սեռիցըն փոխադրեալ յերկինս, մըտանելով ՚ի վերինն երուսաղէմ ՚ի յաւագաստն անապական յանմըտանելին եղականացս ընդ երրորդութեանն. եւ համա։

Այսօր ըզնախամօրն երկանց բարձողըն կուսական ծնընդեամբ

զանհամառնացեալ մայրն, միածնին Բնէեալ փառօք փոխադրեցաց յանանալի եւ յանապատում գերագոյն բնութիւնն. վասն որոյ սրբեական ձայնիւ քեզ երգեմքս սրբութեանց սուրբ ըզ ի միշտ փառաբանութիւն:

Այսօր ըզհոգեղէն բնութիւնս տեսեալ հրեղինացն անկացեալ դասք, մարմին հրաշիւթ կուսօք յանմարմնոց վերաբերեալ 'ի յերկնային եւ յանմահից լուսեղէն խորանս. վասն ո:

Այսօր տօնակից հոգեղինաց դասուց հարանացեալ եկեղեցի սուրբ, տօնէ ուրախութեամբ ըզփոխումն անապական անարատ կուսի աստուածածնին. վասն ո:

Որ 'ի բարձրութիւնս երկնից բարձր բանիւք բարեբանին սրբուհի 'ի Լիբանանէ դիմեալ հարսն ըզգեցեալ այսօր. զարեգակն արկեալ ըզքեւ, եւ ընդ ոտիւք զլուսինն ըստորոտեանն. օրհնութեամբ երգով եկեղեցիք տիեզերաց այսօր տօնեն ըզփոխումն ծնընդեան քո 'ի մօրէ:

Վերհանգոյն սերոբէից եւ բազմաչեայ քերոբէից տիրամայր աստուածածին. տապանակն կըտակի անփոր ոսկի խորհրդական խորան բանին հօր բարձրելոյ. օրհ:

Մարգարէից հանդիսարան եւ գրաւական կենաց մարդկան մարիամ աստուածածնայր. ընդունարան եօթնարփեան շնորհացն, խարիսխ յուսոյ հաստատութեան, զուգաթիւ աւուրց դարուցս անցաւորաց. օրհնութեամբ երգով եկեղեցիք տիեզերաց այսօր տօ:

Ուրախ լեր մարիամ սուրբ աստուածածին. զի 'ի տաճարին մաքրեցելոյ յանկարծակի եկն տէր. ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք:

Ուրախ լեր դուռն փակեալ ընդ որ ոչ ոք մըտեալ. բայց տէր աստուած իսրայէլի. ըզքեզ օրհ:

Ուրախ լեր աղբիւր կնքեալ ջրոյն կենդանութեան. զոր ծարաւելոյ բնութեանս ետուր 'ի յարբումն. ըզքեզ օրհնու:

Մայր լուսոյ մարիամ սուրբ կոյս. որ ըզլոյսն ան 'ի հօրէ ծընար մարմնով. եւ եղեր արեւելք արեգականն արդարութեան. հոգեւոր երգով ըզքեզ սրբուհի մեծացուցանեմք:

Քերովբէից գերագոյն էին անթիւ եւ ծաւ կենաց անմահական պըտուղոյն. տապանակ կտակի բանին եւ անփոր ոսկի երկնային մանանայի. հոգեւոր եր:

Քեւ բացաւ արքայական դուռըն դրախտին, եւ քեւ տըւաւ մեզ փայտն անմահութեան. զոր 'ի նմա գենեալն անմահ այսօր յերկնից լուսաւորեաց. հոգ:

Անարատ կոյս աստուածածին մարիամ, սրբուհի եւ մայր քրիստոսի, յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. օրհնութեամբ ըզքեզ աստուածածին մեծացուցանեմք:

Ըզքեզ երկնային դուռն զոր ետեսն եզեկիէլ, եւ ապա զոր ծանեան գեդէօն. սերովբէ հոգեղէն վեհագոյն քերովբէից. օրհ:

Երբեւ խորհուրդս անկանին 'ի քեզ տեսանի աստուածածին.

յղութիւն անսերմնականին, ծնունդ անմարմին, կուսութիւն յետ ծննդեան միայնոյ անապականին. օրհնութեամբ ըզքեզ աստուածածին մեծացուցանեմք:

Հոգ Առաքելոյ աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ ՚ի բարձանցն, ՚ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեայց անկիզելի պաշտակերպաւն, մինչդեռ նստէին ՚ի սուրբ վերնատանն:

Աննիւթական աղաւնի, անքննելի որ քննէ ըզխորս աստուածոյ. զոր առեալ ՚ի Հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին հաւադպականն:

Օրհնութիւն ՚ի բարձունս, եկեալն ՚ի Հօրէ Հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս ՚ի յերկինս:

Հան Հայր անսկիզբն արարիչ յաւիտենից, առ քեզ կարդամք եւ պաղատիմք. հանգո զննջեցեալսն մեր ՚ի սուրբ անունդ քո:

Որդի միածին էակից Հօր եւ Հոգւոյ. ՚ի միւսանգամ քո գալըստեանն հան:

Հոգի ճշմարիտ փառակից Հօր եւ Որդւոյ. աղաչանօք աստուածածնին. հան:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Այսօր վերամբարձեալ ըզմաքրական մարմինն աստուածամօր կուսի անմարմինն զուարթնոցն, ամփոփեալ ՚ի տեղի դերակայից յերեւելի ըզգայութեանցս անճառիցն առնել հանդերձ. վասն որոյ հրճուողական ձայնիւ քեզ երգէ եկեղեցի սուրբ. ընդ նոր զօրհնութիւն:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Այսօր յուսապատար խընդութեամբ եւ յանէժամբար հնչմամբ նուագեմք քեզ հողեղէնքս ընդ հրաբուն սերոբին, առնախմբելով զյիշատակ կուսի ազգաց եւ մօր քո. վասն որոյ հրճ:

Որ ընդնախառօրն գոյնցանս երկանցն եբանձ, եւ զորդիդ քո միածին մարմնով ծընաւ. այսօր առ ՚ի մէնջ ՚ի վերին զօրացն փոխեցեր զնախաստեղծին ծընօղին. զոր միշտ ունիմք բարեխօս առ քեզ տէր աստուած հարցն մերոց: Հրց դձ

Որ էակից ես Հօր եւ սուրբ Հոգւոյն, մարմնացար ՚ի յանձն առեր ՚ի սրբոյ կուսէն. այսօր փոխադրեալ գանձեցեր յերկնային խորանն ըզքոյին ծընօղըն. զոր միշտ ունիմք բա:

Որ յամենայնի ես լըցուցիչ բարերարն սուրբ հոգի, այսօր պարգեւօք հանգուցեր յանապատում ՚ի կեանս ըզխոստութեանց ըզմայրըն. զոր միշտ ունիմք բա:

Ըզուէր օրհնեցէք. Բարձր արարէք ըզծընօղ անտանելի բանին ըզմիշտ կոյսն: Գ

Որ ՚ի կուսական դասակարգութեանց եւ ՚ի սրբոց ճգնաւորաց փառաբանիս սրբուհի, ուստի եւ մեք հաւատացեալքս վերապատուեմք ըզփոխումըն քո ՚ի յերկինս. որ անուանել բարձրացեալդ ես յաւիտեան:

Զբարեբանեալդ անդադար միշտ ՚ի վերին զօրաց, եւ ըզվերափոխեալդ ՚ի դասս առաքելոց եւ մար-

գարէից · ընդ որս եւ մեք հաւատացեալքս վերամպատուեմք ըզքոյին աստուածամայր ըզհանգըստեան տօնս · որ առաւել բարձրացեալդ ես յաւիտեան :

մեծ Խորանայարկ կամարանըման յօրինեցար սուրբ կոյս աստուածածին, զանհասանելին զբանն աստուած բնաւորապէս անսերմնաբար կրեցեր 'ի քում յորովայնի · անդադար երգով ըզքեզ ը միշտ մեծացուցանեմք :

Դուռն երկնից ըղձագումն անճառելի անապական որ 'ի հօրէ առաքեցաւ, 'ի գիրկըս քո բարձեալ կրեցեր, դիեցուցանելով մարմնացելոյն 'ի քէն ըզկուսական քո սուրբ ըզկաթն · անդա :

Տեղափոխեալ զքեզ 'ի վերնական 'ի կառս քերովբէականս աստուածամայր, սպասաւորեալդ 'ի սերովբէից, եւ երկրպագեալդ յանմարմնական զօրաց · անդա :

ողր Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց քրիստոս թագաւոր փառաց · ողորմեա մեզ աստուած :

Տօնելով ըզյիշատակ կուսի աստուածորդւոյ մօր հրրճուին հրեշտակք 'ի յերկինս եւ ցընծան զաւք առաքելոց եւ մարգարէից ընդ կուսական տօնս · ողոր :

Քեզ միայնոյ մօր եւ կուսի մաղթեմըք հայցելով 'ի քէն · բարեխօսեա անդադար առ որդիդ քո եւ աստուած մեր, փրկել ըզմեզ 'ի փորձութենէ եւ յամենայն վըտանգից մերոց :

տէր Անըսկիզբն աստուած անհասանելի բնութիւն եւ հանգուցեալ 'ի հրեղէն կառս · վասն որոյ գովելով ասեմք, օրհնեալ ես հայր անըսկիզբն աստուած :

Մարգարտատեսիլ եւ ծիրանազգեաց հրաշափառագոյն կոյս · զոր առեալ որդւոյ վերափոխեաց դասեաց յանպատում 'ի կեանս · վասն որոյ գովելով ասեմք, օրհնեալ ես որդիդ միածին աստուած :

Անհասանելի հոգւոյն զօրութիւն, որով փայլեալ համատարած լոյսն ըզկուսական անձամբն · վերափոխելով յանպատմելի եւ յանհասանելի եւ յանանց լոյսն · վասն որոյ բարեբանելով ասեմք, օրհնեալ ես հոգիդ ճըշմարիտ աստուած :

Անթառամ ծաղիկ անդաստապարտ չառաւիլ վերաբուսեալ յարմատոյն յեսսեայ · զքեզ եսայիաս կանխաւ վերակոչեաց եօթնարփեան շնորհաց հոգւոյն ընդունարան գոլ · աստուածածին եւ կոյս զքեզ ը մեծացուցանեմք : ճշւ բձ

Համեղաճաշակ պըտղոյն բանաւոր բարունակ, յորմէ կթեցաւ մեզ ողկոյզն անըրպատ յարութիւն տըրտմեցելոյն 'ի ճաշակմանէ ծառոյն գիտութեան · արբուցեր անարատ ամենեքեան զքեզ ը մեծացուցանեմք :

Քաղաքավարեալ 'ի մարմնի անարատ վարուք · այսօր յառաքելոյն ամփոփեալ վերին անկարկութեամբըն վերափոխեցար յարքայութիւն որդւոյ քո եւ աստուծոյ մերոյ · բարեխօսս խոստովանողաց զքեզ ը մեծացուցանեմք :



# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

օրհ / դկ ԱՅՍՕՐ զանճառելի ծնընդեան քո տէր ըսպասաւոր խորհրդոյ, 'ի հողանիւթ գոյացութեանց փոխադրեցեր 'ի յերկինս։

Այսօր զանտանելի բանիդ բարձողն ըղքերովբէն հողեղէն, բարձրացուցեր 'ի ստորինայնոյս գերակայիցըն կայանս։

Այսօր զանապական կոյսն որ ըղքեզ մաքուր կաթամբ կերակրեաց, 'ի զգայական փոխեալ բնութեանց յիմանալեացըն խորանս։



Լոյսն անքննին ծագեալ 'ի ծոց հօր, որ ծագեցաւ 'ի քէն մայր եւ կոյս. այսօր իջեալ անմարմնական դասուք հրեղինացըն փոխադրեաց ըղքեզ լուսափայլ ամպովք 'ի լոյսն անստուեր։

Օրհնեալք գերափառին եւ օթարան լուսածին, զանմայր ծնեալն առաջին ծընար անհայր յերկրորդին. բարեխօսեա միածնին աստուածածին մայր բանին։

Բանին հօր մարմնարան եւ առագաստ բնակութեան. որ կաթամբ կուսական կերակրեցեր զէակըն բան. բարե։

Գերագոյն սրբութեամբ եւ կուսական մաքրութեամբ, բարձեր զանհասըն բնութեամբ 'ի գիրկըս քո սնընդեամբ. բարե։

Դու ծաղիկ անթառամ տոհմի սեռիս մարդկութեան, եւ շառաւիղ օրհնութեան նախնւոյ ծնողին մեր բընութեան. բարե։

Երկնաւոր արքային եղեր տաճար ըստ երգողին. յանկարծակի փեսային 'ի յառագաստ բազմեալ քոյին. բարե։

Զօրք երկնից անմարմնոց իմանալեացըն զուարթնոց, իջեալ յերկնից 'ի յերկիր սպասաւորել մեծ արքային. բարե։

Էիցս էակ բանըն հօր պարագրեցաւ 'ի մարմնի. լոյսըն ծընունդծոցածին էառ զբնութիւն նախաստեղծին. բարե։

Ընտրեալ յառաջ քան զհիմունս 'ի սկըզբանէ աշխարհի, տուեալ անճառ անքըննին եւ ամպ թեթեւ լուսածին. բարե։

Թագ հիւսեալ երկնային յեռեալ յականց անմարմնին. բերեալ պըսակ սուրբ կուսին յորժամ փոխէր յաշխարհ վերին. բարե։

Ժողովեալ սուրբ գընդին երկոտասան դասուց խմբին, սլացեալք որպէս զարծուին յերուսաղէմ քաղաք մեծին. բարե։

Իսկ եկեալ բազմութիւն աշակերտաց նորոց կտակին, 'ի փոխումն աստուածածնին մարգարտափայլ սըրբոյ կուսին. բարե։

Լոյս 'ի լուսոյ հօր ծագածին իջեր յերկնից յաշխարհ ստորին. դասք անմարմնոց ընդ քեզ իջին 'ի պատիւ մօր քո եւ կուսին. ներբողեալ զայս աւէրին դու ես տաճար աննեղ բանին։

Խորին խորհուրդ անքըննին ծածկեալ յազգաց յաւիտենին, յայտ-

նեցաւ յամըս վերջին 'ի փրկու- թիւն մարդկան սեռին. զոր տեսա- նողքըն ծանուցին կուսին ծընող լինել բանին ։

Ծածկեալ խորհուրդն յաւիտենին լուսեղէնք եւ անճառին, 'ի հասա- նել ժամանակին պարգեւեցաւ մարդկան ազգին. էական բնութիւն բանին խառնեալ անշփոթ 'ի մեր բնութիւն ։

Կատարեալ անօրէնութեամբ քո 'ի յերկրի նորմարդութեամբ. զոր 'ի վերջին դարուցս փախճան կատա- րեցեր վասն մարդկան. այսօր յեր- կնից իջեր հօր բան 'ի յոր կուսի մօր քո ննջման ։

Հոյլք վերին զօրացն իջեալ շուրջ ըզկուսիւըն պար առեալ. զերգս օրհնութեան եղանակեալ քաղցըր ձայնիւ անկումբ առեալ. զեւեհիւ- սեանքն նուագեալ զմի տէրու- թիւնն երրորդութեան ։

Ձայնակից նոցին եղեալ դասք եր- ջանիկ պետացն ընտրեալ. 'ի հո- գւոյն վերարկեալ որք յընդհա- նուր աշխարհ սփռեալ. անմա- հիցն համաձայնեալ ըզկոյսըն սուրբ օրհնաբանեալ ։

Ղամպարափայլ ջահիւք լուցեալ սուրբ կուսանացըն գումարեալ, զերգս օրհնութեան նուագեալ 'ի պատիւ մօրն ամենօրհնեալ, բարե- բանեալ եւ կոյս գովեալ յորմէ աստուած բանըն ծընեալ ։

Ճառագայթ հօր ծագածին յոր- ժամ ելեր առ հայր յերկին, խոս- տանայիր բանիւ քոյին 'ի կատա- րումն աստուածածնին, քեզ միայ- նոյ զօրօք քոյին գալ 'ի փոխումըն միշտ կուսին ։

Մարգարիտ լուսափայլ հոգւոյն սրբոյ տուն եւ տաճար, մարդա- րէից բանք նախաճառ այսօր լըցան 'ի քեզ գումար. մինչեւ դասուքն խմբովք հրապառ 'ի պատիւ քո անդ ողջանայր ։

Յարմարեալ ձայն նէրբոյլն յուրա- խութեան օր քո տօնի, հանդերձ նորին նորբոյլն սուրբերուց դա- սուց խմբի. աւանդեցեր զքո սուրբ զհոգի 'ի ձեռն որդւոյ քո միածնի ։

Նորաքանչ անդ հրաշից նորա- կերպեալ 'ի յերկրի, քանզի պայ- ծառ քան զարփի փայլեալ որդւոյ կուսին հոգի. զոր զարհուրեալ պետարանի ցանէր հարցանէր զխոր- հուրդն յայտնի ։

Շնորհալիրդ փառօք փայլեալ, որ- պէս ըզլուսոյ քո միշտ գովեալ, 'ի մարդկանէ ով քարոզեալ, հոգւով պայծառ արփւոյ նմանեալ, որպէս փայլակն բարբառեալ յերկնաւորաց վերաբերեալ ։

Ով պետարէ լուր ձայնի զոր հար- ցանէս պատասխանի. լեալն առա- ջին հայր կոչի, եւ յետ նորա որ 'ի կարգի, պայծառ զհոգիս մարդկան ստեղծի, որպէս ըզմօրս իմ զոր ցուցի ։

Չորեքնիւթեայ բնութեամբ խառ- նեալ, շաղկապ ըզշունչն 'ի մէջ եդեալ. զորս 'ի դրախտին զարդա- րեալ փառօք եդի վայելել. եւ այժմ ըզնոյն ձեզ շնորհեալ, ա- րեամբ խոյլ պայծառ մաքրեալ ։

Պար առեալ անմահիցըն շնոր- հազարդ զուարթնոց, ողջացեալ երկնայնոց զկոյսըն բարձեալ յեր- կրայնոց. յոր վերակնեալ առաքե-

լոյն զերգս օրհնութեան հնչէին
երգոց։

Զանհանգստեալ սուրբ կուսին հանդերձ մաքուր դասուց խմբից, երկոտասան սուրբ գնդից եւ աշակերտք նոյին բանին, ձայնակից եղեալ միմեանց եղանակեն զերգս
օրհնութեան։

Որոց լուսոյ սրբութեան հորդեալ զօրաց աննմանից, եւ գունդք հրեղէն զուարթնոց յանմարմնաց յաշխարհ վերնոյ, հրճուալական ձայնիւ երգոց գովեն ըզքեզ սուր-
բըդ սըրբոց։

Առաքելոց գունդք հրաշեալ յորժամ տեսին ըզտէրն իջեալ 'ի փոխումն աստուածածնին անապական եւ միշտ կուսին. զարհուրեալ զայս ասէին օրհնեալ ես սուրբ աստուա-
ծածին։

Վեհագոյն սերովբէից եւ բարձրագոյն քերովբէից, վերհամբարձար 'ի բարձունս յերկնայնոց անհասելին. փառաւորեալ ընդ միածնին հրճուալական ձայնիւ
երգոց։

Տէրութիւնք եւ զօրութիւնք իշխանութիւնք եւ պետութիւնք, հրեշտակապետք եւ հրեշտակք եղանակեն զերգս օրհնութեան. օրհնեալ ես կոյս տաճար մաքրեալ յորում ստեղծողն էջ բնա-
կեալ։

Բանականացն խմբից աշակերտացն դասուց բարձեալ զմարմինըն մաքուր աստուածածնի սուրբ բազկօք, եդին 'ի գիր հանգըստեան քաղցրաձայնեալ սաղ-
մոսիւք։

Ցընծալից բերկրանօք եւ յորդահոս սպասաւօք, եղանակեն քաղցըր երգօք երկրորեայ խմբեալ պարուք. բարթողմէ յետոյ եկեալ, եւ զտենչալին իւր ոչ տե-
սեալ։

Լուեալ բանից դասուց սրբոց, զըղձումն եղբօրըն վըճարեալ. բացեալ զտապանն ամենօրհնեալ եւ զանձկալին իւր ոչ գըտեալ. քանզի եղեւ վերափոխեալ 'ի փառս ան-
ճառ նախ պատրաստեալ։

Փառք հօրն էականին պատիւ որդւոյն իւր էակցի, ընդ հոգւոյն համագոյի որ զարդարեաց զկոյսն 'ի յերկինս. ժառանգել զանճառ բարիսն զոր պատրաստեաց իւր
միածնին։

Քանզի անճառ է խորհուրդ փառաց կուսին յանմարմնոց. զոր 'ի դարուցըս վերջնոց եհեղ մարդկան ստորայնոց. զոր այժմ յուսով բերկրելոց յայնժամ շնորհէ
յուսացելոց։

Այսօր բոլոր եղելոց Իմանալեաց եւ ստորայնոց. Բարեխօսն բարի անմարմնոց Աւեր պատուի յերկրայնոց, Կուսականն տօնիւ փոխումանս Որդեգրութեան լցուք ար-
ժանս։

Վասն որոյ աղաչեմ Աստուածածին մայր բանին, Բանեալ զհոգի եւ զմարմին Դարձեալ 'ի սէր փեսային, Արժանի լցուք Պըտղոյ դրախտին Երանաւէտ կենաց
Տընկին։

Ի՞ համբառնալ բանին յերկինս հոգ
եւ 'ի նստիլ ընդ աջմէ հօր, զուարճացեալ առաքելոցն երկըրպագեին. օրհնելով ըզհայր զառաքող
բանին։

Համահաւաքեալ գունդքս սըր-
բոցն 'ի վերնատունն խորհրդոյ,
համբարձմամբ աչաց տեսանէին հո-
գւոյն. օրհնելով ըզհայր զանա։

Յանկարծահաս հընչմամբ հեղեալ
կենդանարար ամպեղէն լուսոյ. ան-
մահական կենաց լուսով զարդա-
րեալ. որք օրհնէին ըզհայր զանա-
քով հոգւոյն։

Հան Խընդրեմք 'ի քէն թագաւոր
փառաց փառաւորեալդ 'ի զուարթ-
նոց. ըզննջեցեալսըն մեր ընկալ
մատուցանէր տէր, եւ հանգո ընդ
սուրբս քո։

Յորժամ գաս փառօք հօր դատել
զերկիր արդարութեամբ արեգամբն.
ըզննջէ։

Ի՛ նըստիլ քո յաթոռն դատաւոր
ահեղ քրիստոս փրկիչ մեր եւ
յոյս. ըզննջէ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Բանն անմարմին որ 'ի քէն մար-
մնացաւ, եւ 'ի գիրկս քո բազ-
ձեալ կրեցաւ մայրամ, այսօր ե-
կեալ բազմութեամբ զօրօք հրեշ-
տակացն վերայօյց ըզքեզ հրա-
կերպ կառօք 'ի լոյսն անստուեր։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ի՛ տեսիլ հրաշից փառաց միածնին
զուարճացան դասք սուրբերոյն.
եւ ընդ վերին զուարթունսն
համաձայնեալ նոր օրհնութիւն
քեզ եղանակէին ծննդեանդ 'ի
կանայս։

Հրց
դձ Ո՞ր զմիածին որդւոյ քո զանա-
կարան զնախամօրն երկանց բար-
ձողն այսօր դարձուցեր 'ի փառս
առաջին. ըզքեզ բարեբանեմք ա-
տըւած հայրցըն մերոց։

Ո՞ր զ'ի ծոցոյ հօր լուսոյդ ըզծա-
գողն որ մարմնով ծընաւն ըզքեզ,
այսօր փոխեցեր 'ի կեանս անպա-
տում. ըզքեզ բարե։

Ո՞ր զփառաւորն հօր հոգւոյդ ըզը-
տաճարն զոռ 'ի քէն հովանա-
ցեալն այսօր հանգուցեր 'ի լոյսն
անմատոյց. ըզքեզ բարե։

Ըզմէր. Ընդ որդւոյն միածնի Գ
զմայրն ամենօրհնեալ մայրամ գո-
վելով բարձր արարէք ըզնա յաւի-
տեան։

Այսօր ընդ վերին զուարթնոցն
երկնից, որք վայր իջեալ ընդ մի-
ածնին 'ի փոխումն աստուածա-
մօրն երգէին. օրհնեցէք ըզ-
հայրն երկնաւոր, բարձր ա։

Այսօր ընդ դասուց սերովբէից,
որք պարանցեալ շուրջ ըզդերեզ-
մանաւ սրբոյ կուսին երգանակէ-
ին. գովեցէք զորդին միածին,
բարձր արա։

Այսօր ընդ հրեղէն քերովբէից,
որք ըզբարձեալ հողեղէն վերհամ-
բարձին ձայնիւ փողոյ 'ի յեր-
կինս. բարեբանեցէք զհոգին
ճշմարիտ, բարձր արա։

Աստուածածին ամպ լուսա- Մեծ
ւոր որ ըզցօղըն կենաց հեղեր յեր-
կիր բանիւոր եւ զնախամօրըն շի-
ջուցեր պատուհասն ըզհուր. անդա-
դար ձայնիւ զքեզ բարեբանեմք,
եւ հոգեւոր երգով մեծացուցա-
նեմք։

Տե՜ղի անտանելի բանին, եւ եր-
կիր վայրափակ յորում լոյսն անդա-
նիցի. եւ արեւելք արեգական
արդարութեան. անդա։

Զքեզ կատարումն մարգարէից
կուսական քո ծնընդեամբ ամոլ
բնութեանս քակտեցան օրէնք,

հրաբուն սեռիցըն փոխադրեալ 'ի լուսաձեւ խորանսն. մնդա։

ողր Որ անմարմին բնութեամբ աստուածութեան քո տէր միացար մարմնով յորդանդի կուսին անյեղապէս գոլով. այսօր փոխեցեր զուրախութիւնդ երկնի եւ երկրի յանտրոտումն 'ի կեանս. աղաչանօք մօր քո ողորմեա մեզ որդի աստուծոյ։

Որ անապական մարմնով ծընար 'ի սուրբ կուսէն եւ 'ի խանձարուրս պատեցար արկողդ ըզլոյս, եւ 'ի մըսուր հանգեար. այսօր ըզկուսութեանց ըզմայրըն հանգուցեր 'ի լուսեղէն խորանս. աղաչա։

Որ 'ի քրովբէական աթոռ նըստիս ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. համբեցար բառնիլ մարմնով 'ի գիրկս կուսին եւ կաթնասուն եղեր. այսօր քրովբէիւք վերհամբարձեր յաթոռ փառաց ըզհօրեղէն քրովբէն. աղաչա։

տէր Այսօր զուարճացան հրեշտակք 'ի յերկինս, ընդունելով յերկրէ զմայր բանին աստուծոյ յիմանալի խորանս անմահից։

Այսօր ցընծացան դասք առաքելոցն տեսանելով զտէրըն տերանց խոնարհեալ յաւանդումն ամենասուրբ հոգւոյ մօր եւ կուսին։

Այսօր եւ մանկունք եկեղեցւոյ ուրախութեամբ տօնեն յերկրի ըզփոխումըն կուսին յերուսաղէմ քաղաքըն վերին։

Ճաշու։

Աստուածածին ամպ լուսա։

---

# ԿԱՆՈՆ

## ԵՐՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ

օրհ դձ ԱՅՍՕՐ հրաշափառ կոչմամբ հոգւոյն ժողովեալ սրբոց առաքելոցն եւ իմաստուն սուրբ կուսանացն, պայծառացեալք իմաստութեամբ 'ի յերկնային փոխումն աստուածամօրն. եւ համաձայնեալք անմարմնոցն օրհնէին զամենօրհնեալ սրբուհին։

Այսօր տեսեալ հրակերպ դասուք վայր իջեալ յերկնից զորդին միածին արփիափայլ հրաշալի փառօք, գերապայծառ մաքրեալ հոգւոյն յաւանդումն ամենասուրբ ծընողին իւրոյ. եւ համա։

Այսօր ըզընակարան հոգւոյն սըրբոյ վերնական հրաբուն սեռիցըն փոխադրեալ յերկինս, մըտանելով 'ի վերին երուսաղէմ 'ի յառագաստն անապական յանմըտանելին եղականացս ընդ երրորդութեանն. եւ համա։

✻ Այսօր ըզնախամօրն երկանց բարձողըն կուսական ծնընդեամբ զանհարսնացեալ մայրն, միածին իջեալ փառօք փոխադրեաց յիմանալի եւ յանպատում գերագոյն բնութիւնն. վասն որոյ սրովբէական ձայնիւ քեզ երգեմք սրբութեանց սուրբ ըզ ը միշտ փառաբանութիւն։

Նոր սիովն ծընեալ մանկունք սուրբ աւազանաւն. շնորհազարդեալք հոգւովն աստուծոյ. օրհնեցէք զհայրն երկնաւոր յաւուր ծնընդեան սրբուհւոյ կուսին.

յոր օրհնեցայք յանիծից նախնւոյն։

Արեամբ գառինն անարատի փրկեալ ժողովուրդք. յառաջ ծննդեան նոր առատանելւոյն. գովեցէք ըզմիածինն որ հաճեցաւ առնուլ մարմին անսերմն 'ի նմանէ. յոր օրհ։

Յառաստաղելս չնորհաց հոգւոյն լուսազարդեալ ազգք հեթանոսաց. յառաջ ծննդեան նոր բանին ծնողի. զփառաւորից որդւոյ զհոգին բարեբանեցէք հոգեւոր երգով. որ մաքրազարդեաց զմարմնարան որդւոյն։

Ուրախ լեր մարիամ կոյս անապական. զի 'ի հայրական ծոցոյ անմեկնելի որդին 'ի քո յանձն առնու բընակիլ յորովայնի։

Ուրախ լեր երկին վեհագոյն քրովբէ հողեղէն. որ զանտանելին երկնից եւ հրեղինաց դասուցն 'ի քո ընկալար մաքրական որովայնի։

Ուրախ լեր սուրբ հրեղէն լուսոյն աշտանակ. որ զարարչական եղականաց լուսոյ 'ի քեզ տանելով ծագեցեր խաւարելոյս։

Ուրախ լեր սափոր ոսկի երկնային հացին, որ զառ 'ի վերուստ իջեալ ըզմանանայն կենաց, նորոյս պարգեւեալ կերակուր ծառայելի։

Ուրախ լեր ամպ թեթեւ գեղմն նմանալի. որ 'ի բանական երկիր հեղեր զանձրեւ կենաց. արդիւնս ընդ գործոյ հաւատոյ պտղաբերեալ։

Ուրախ լեր գաւազան լուսոյ մայր անհասանացեալ. քանզի յղացելոյն 'ի քէն համախմբեալ վերնոցն որդիք սուրբ երգեն ընդ փառս 'ի բարձունս։

Ծնունդն հրաշալի որ անյայտ էր 'ի մէնջ. եւ բանին հայրական անըմբռնելի. հուր փայլակնացեալ եւ 'ի մարմին բնակեցաւ, անկիզանս պահելով զարարածս ամենայն։

Ծնունդն հրաշագործ որ 'ի կուսէն ծագեցաւ, ճառագայթելով զարարածս ամենայն. երկինք ցնծային եւ երկիրս ուրախանայր. եւ քրիստոս աստուած ընդ մարդկան շրջեցաւ։

Առ քեզ ապաւինիմք ամենասրբուհի. գերագոյն եւ հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային բանին։

Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զուարթարար. այսօր մարիամ սրբուհին. 'ի փառս քո քրիստոս ծնաւ մեզ լոյս յորդւոցն օրինաց. անդադար երգով սոքօք ըզքեզ ի միշտ մեծացուցանեմք։

Դրախտ աստուածային եւ արեւելք իմանալի. այսօր մարիամ հրաշագեղ. ծնեալ 'ի յաննայէ 'ի մայրութիւն քո հրաւիրեալ քրիստոս որդի աստուծոյ. ան։

Տապանակ ապրեցուցիչ եւ տաճար աբրահամեան աստուածընկալ. այսօր մարիամ լուսապայծառ. միածին ծընունդ յայտնեալ ծնողաց, 'ի ծնողութիւն քո կոչեցեալ միածին որդի աստուծոյ. ան։

Աստուածածին մայր լուսոյ սուրբ կոյս լուսեղէն տաճար, որում երկինք չէին բաւական առ 'ի բնակութիւն, 'ի քէն մարմնացաւ։

Ընդ քեզ անհամանացեալ որ միայնդ

'ի կանոնս օրհնեալ, կրելով 'ի քեզ զանտանելի զբնութիւնն. օրհնութեամբ մեծացուցանեմք:

Ուրախ լեր աթոռ փրկութեան, յոյս հաստատութեան մարդկան, միջնորդ օրինաց եւ շնորհաց, օրհնութեամբ անդադար գոհութեամբ մեծա:

Ուրախացիր աստուածածին որ կուսութեանց ես պարծանք եւ մայր հաստատութեան մարդկան. օգնական եւ շնորհ աշխարհի, մարիամ մայր եւ աղախին փրկչին մերոյ:

Երանելիդ ամենեցուն զաստուած տանելով բնութեամբ անտանելին, զամենեցուն ամենակալն արժանի եղեր կրել յորովայնի, որ երեւեցաւ ազգի մարդկան:

Քերովբէական աթոռ ցուցար աստուածածին, 'ի գիրկս բառնալով զաստուածն ամենեցուն, որ նստի 'ի քերովբէս. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել զմեզ:

Հոգ Անմեկնելի աստուած սուրբ հոգի, զմարգարէութեանց նախագուշակութիւն պատմիչեալ լուսազարդեցեր, առաքեալս հեղեալ յառաքեալսն:

Անժամանակ որդի միածին, ընդ խոստացեալ պարգեւս անճառեանցն 'ի վերնատունն աւարտեալ լցեր. առաքեալս հեղ:

Ամենակալ հայր երկնաւոր, զանբաժանելի լուսոյ ընծայութիւն հոգեղինացս շնորհեցեր. առաւ:

Հան Քանզի զքեզ օրհնեն իշխանութիւնք երկնից, թագաւոր փառաց ամենակալ ամենակարող. թող զմեղս մեր ննջեցելոցն, եւ հանգո 'ի խորանի քում 'ի յարքայական 'ի հանգստեան:

Որ 'ի նախնումն ըզմարգարէն մովսէս լուսաւորեցեր աստուածային փառօք տեսլեամբ աստուածութեանդ քո. լուսաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալսն, եւ հանգո 'ի խորս:

Բարեխօսութեամբ սուրբ աստուածածնի ծնողի եւ մօր քո յիշեա զգինս արեան քո տէր, եւ դասաւորեա յերանաւէտ յանթառամ եւ յանտրտում 'ի կեանսդ 'ի յարքայական 'ի հանգստեան:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Այսօր ըզհողեղէն բնութիւնս տեսեալ հրեղինացն տօնակցեալ դասք, մարմին հրանիւթ կառօք յանմարմնոց վերացեալ 'ի յերկնային եւ յանմատոյց լուսեղէն խորանս. վասն որոյ սրովբէական ձայնիւ քեզ երգեմք սրբութեանց սուրբ ըղ ը միշտ փառաւորութիւն:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Այսօր տօնակից հոգեղինաց գոլով հարսնացեալ եկեղեցի սուրբ, տօնէ ուրախութեամբ ըզյիշատակ անապական անարատ կուսի աստուածամօրն. վասն ո:

Որ ըզդատակնիք երկանց անիծից նախամօրն ելոյծ միածնի որդւոյ քո ծնընդեամբ կուսին մարիամ, այսօր յառաջին յանպատում փառսն դարձուցեր առ ըզնախաստեղծըն, զոր միշտ ունիմք բարեխօս առ քեզ տէր աստուած հարցըն մերոց: Հրց գձ

Որ 'ի հօրէ անմարմնաբար ծնեալ որդի նախ քան զյաւիտեանս. եւ

մարմնով ծընար 'ի սըրբոյ կուսէն,
այսօր խոնարհեալ յերկնայինսըն
փոխեցեր զանօրէնութեան քո
զբնակարանըն. զոր միշտ ու:
Զոր մաքրեցեր 'ի բնակութեան
քում էակցին հոգւդ ճըշմարիտ,
եւ լըցեր անճառելի եօթնարփեան
շնորհօք, այսօր գերագոյն հրեղէ-
նացըն դասեցեր ըզհողեղէն բնու-
թիւնըն. զոր միշտ ու:
Գ Ըզտէր օրհնեցէք. Բարձր արա-
րէք ըզծագող իմանալի լուսոյն
ըզմիշտ կոյսն:
Որ յանմարմնոց զինուորութեանց
եւ 'ի դասուց հոգեղինաց վերհամ-
բարձար այսօր աստուածամայր.
ուստի եւ դարք հողեղինացըս փա-
ռաբանեմք, ըզծա:
Որ 'ի վեցթեւեան սրովբէից եւ 'ի
բազմաչեայ քրովբէից փառաբանիս
երգով աստուածածին. ընդ որս եւ
մեք համաձայնեալ բարեբանեմք,
ըզծագող իմա:
մեծ Աստուածածին գերագոյն եր-
կնից ցուցար խորան եւ առա-
գաստ. քանզի ծագեալ լոյսն 'ի հօ-
րէ բնութեանց էից անսասանելին
պարագրեցաւ 'ի քում յորովայնի.
հոգեւոր երգով ըզքեզ ը միշտ
մեծացուցանեմք:
Դուռըն փակեալ ըզքեզ եզեկիէլ
յառաջագոյն ծանոյց կոյս անարատ,
ընդ որ եմուտ անտեսն յէից, բանն
անմարմին որ 'ի հօրէ, եւ էլ մար-
մնով անխախտելի մնալով կուսու-
թեանդ. հոգեւոր եր:
Վերափոխեալ ըզքեզ 'ի յերկնային
խորանսն այսօր որդին քո միածին.
ուստի եւ դասք առաքելոցն եւ
իմաստուն սուրբ կուսանացըն միա-
ձայնելով գովէին ըզքեզ մայր ան-
հարսնացեալ. հոգեւոր եր:
Որ խոնարհեցար յերկնից ան- ողբ
մեկնելիդ 'ի հօրէ որդի աստու-
ծոյ, եւ առեր մարմին 'ի սրբոյ
կուսէն. հայցմամբ ծագողին
լուսոյդ եւ մեզ ողորմեա:
Որ մանկունս քով կեցուցեր ըզ-
մեզ, եւ յարուցեալ համբարձար
առ հայր 'ի յերկինս. այսօր եր-
կնաւոր զօրօք իջեր 'ի փոխումըն
մօր քո եւ կուսին. հայցմամբ
ծագողին լու:
Որ յիմանալի խորանդ բարձրա-
ցոյց ըզքեզ մայր աստուծոյ, ան-
ճառելի փառօք միածին որդին.
առ նա միշտ բարեխօսեա վասն
անձանց մերոց:
Ուրախ լեր մայր անճառ լուսոյ տէր
սուրբ աստուածածին. քանզի դու
'ի քէն ծագեցեր մեզ լոյս 'ի լու-
սոյ, եւ ըզխաւարն անգիտութեան
փարատեաց անըստուեր լուսովն
իւրով:
Ուրախ լեր կոյս անարատ մայր
անհարսնացեալ. քանզի որ 'ի քէն
ծընաւ որդին միածին, վայր իջեալ
յերկնից այսօր վերածեաց ըզքեզ
սքանչելի փառօք:
Ուրախ լեր հարսն երկնային կոյս
անապական. քանզի երկնայնոցն ըզ-
քեզ այսօր ընկալեալ տօնէին ու-
րախութեամբ. ընդ որս եւ մեք
երգեսցուք քեզ օրհնութիւն մայր
տեառն:

Ճաշու:

Աստուածածին գերագոյն:



# ԿԱՆՈՆ

## ՆԱԽԱԿԱՏԵԱՑ ՍՐԲՈՑ ԽԱՉԻՆ

օրհ բկ Ի՛ վերայ վիմի հաւատոյ շինեցեր զքո տէր զեկեղեցի. զսա պահեա ՚ի խաղաղութեան։

Որ շնորհեցեր ողորմութիւն ՚ի բնակարանս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր սմա զանշարժ քո զխաղաղութիւն։

Ի՛ տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո զողորմութիւն։



Եկայք ժողովուրդք ՚ի տաճարի փառաց Քրիստոսի, տուք ամենեքեան օրհնութիւն ՚ի բարձունս։

Խաչին կենարար որ եղեւ ի մեզ փրկութիւն. սովաւ ամենեքեան զքեզ բարեբանեմք։

Որ ՚ի հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ՚ի յերկիր, եւ գաւազան զօրութեան հաւատացելոց. սովաւ ամենեն։

Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս ի մեզ ցուցար ՚ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն. սովաւ ամենեքեան զքեզ բարեբանեմք։

յար Որ համագոյ ես հօր եւ սուրբ հոգւոյն, անբաժանելի էակ միութեան, խոնարհեցար ՚ի բարձանց եւ առեր մարմին ՚ի կուսէն յաղագս անկելոյն յանլուծիչ կենաց բանսարկուին խաբմամբ։

Որ դատաւորդ ես ծածկելոց գիտող. այսօր ՚ի հողոյ դատապարտեալ բարձար ՚ի խաչ եւ լեղեաւ կերակրեցար յաղագս անկելոյն ՚ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն։

Որ կենդանութիւնդ ես ամենեցուն. այսօր զմահ խաչի ՚ի յանձն առեր. եդար ՚ի սիրտ երկրի եւ յերրորդ աւուր յարեար. շնորհեա մեզ վերածիլ ընդ քեզ յանապական ՚ի կեանս։

Անպատումելին կոյս անքննելի խորհրդոյն ընդունարան ով սուրբ քաւութեան, ՚ի սատուածանաթեւից յաթոռակալ սրովբէից անտեսաբար աստուածապատուեալդ քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յելս եւ ՚ի մուտս։

Անյաղթելի նշան անպարտելի զօրութեանն ընդունարան ով սուրբ քաւութեան. ՚ի յահարկութիւն ապստամբեցն երեւեցար, որք ՚ի քէն ահիւ սարսեալ դողան, եւ անդընդային կործանին. քեզ եր։

Յառաջագոյն տեսեալ զքեզ մարգարէն զսքանչելին, աշտանակ ոսկի եօթնաջահեան լուսով պայծառացեալ յերկիր ով սուրբ քաւութեան, եւ ՚ի վերայ քո տարածեալ անհիւթ գոյին գոյացեալ ՚ի մեր փրկութիւն, եւ աղբերահոս կողին մաքրեաց զաղտեղութիւն ազգի մարդկան. քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յելս եւ ՚ի մուտս։

Որ յաթոռ փառաց նստիս բանդ աստուած, խոնարհեցար ՚ի հայրական ծոցոյ, առեր մարմին ՚ի կուսէն, վերականգնելով ՚ի տեղի լուտրանկեալ լուսոյն զհողացեալ բնութիւնս։ յար

Որ կանգնեցեր ըզխաչ քո 'ի մէջ երկրի, եւ սովաւ ըզպարփակեալ փակ դուռն դրախտին բացեր նախաստեղծին, կենդանագործելով 'ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն։

Եւ զօրութեամբ խաչի քո քրիստոս հիմնեցուցեր զկաթուղիկէ եկեղեցի բընակարան սուրբ երրորդութեանդ. լուսաւորելով ըզհեթանոսս 'ի սուրբ կրկնածնընդեամբ։

ծաղ Ուրախ լեր եկեղեցի սուրբ 'ի գալստեան սուրբ միածնին. ուրախ լեր եւ ցընծա հանդերձ ամենայն սրբովք։

Խընդա յոյժ դուստր վերին սիոնի. ահա թագաւոր քո գայ նըստեալ 'ի յաւանակի նորոյ. արդար եւ փրկիչ փրկել եւ կեցուցանել։

Զըւարճացիր եւ բերկրեա ժողովուրդ աստուծոյ. մատո զոստըս ծաղկեալըս հաւատով եւ ասա. օրհնեալ որ եկիրըդ թագաւոր տիեզերաց։

հոգ Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգմանն. քանզի նորոգողն էից հոգին էջ 'ի սուրբ վերնատունն. որով նորոգեցան դասք առաքելոցն։

Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցընծայ ընդ հօր հաշտութեանն. քանզի որ եբարձ զհոգին 'ի մարդկանէ մարմին եղելոց, դարձեալ վերըստին ըզնոյն պարգեւէ։

Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցընծութեամբ զգալուստ սուրբ հոգւոյն. որով զարդարեցան 'ի զգեստըս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրովբէսն զերեքսըրբենին։

Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբըս քո, եւ դասաւորեա 'ի յաւուրն այցելութեան։ Հան

Որ կոչեցեր 'ի դրանց մահու ըզսիրելին քո զղազարոս, եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա տէր զհոգիս ննջե։

Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո տէր զհոգիս ննջե։

Սիւն լուսոյ եւ ամպ հովանի ած
սուրբ կոյս, որ ցուցեր 'ի մեզ ըզցօղն երկնային. զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։

Անկէզ մորենի եւ սափոր հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղըն կենաց 'ի քէն տուաւ մեզ. զքեզ բարեբանեմք աստուա։

Անծին լուծիչ եւ քաւիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յէից 'ի գիրկըս քո բարձեր. զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Քանզի թագաւորըն քրիստոս պըսակեաց ըզսա սքանչելի փառօքն իւրովք. տուք ամենեքեան օրհնութիւն 'ի բարձունս։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Ի սմա եւ զօրք հրեշտակաց դասաւորեալ տօնեն տեառն. տուք ամենե։

Ի նորահրաշ նաւակատիս որ Հրց
յերուսաղէմ պայծառանզգեաց վա- աձ
յելչութեամբ ցուցան խաչ քո տէր. աստուած հարցըն մերոց։

Կայ դշխոյ ընդ աջմէ սուրբ եկեղեցի, յոսկէհուռըն պըսակեալ նըշանաւ խաչի քո. Աստուած:

Եւ նորածնեալքս մկրտութեամբ սուրբ աւազանին այսօր տօնեմք ուրախութեամբ նըշանաւ խաչի քո. Աստուած հայր:

Գ Ընդ որ օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Քանզի քրիստոսի է հարսնացեալ սուրբ եկեղեցի, երկնաւոր փեսային պըսակեալ ըզսա խաչիւն. եւ յաջ եւ յահեակ թռուցեալ ըզհեթանոսս ժառանգելով. բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Եկայք ժողովուրդք քրիստոնեան երկրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս. բեւեռեալք ընդ նըմին 'ի սմա եւ ընդ նմին թագաւորեսցուք. բարձր արարէք ըզնա յաւիտեան:

մեծ Մեծացուցանեմք ըզքեզ որ 'ի հօրէ բանդ եւ անճառելի ծընունդ, որ 'ի կուսէն մարմնացար ցուցար մեզ:

Մեծացուցանեմք ըզքեզ որ կոխեցեր ըզմահ աստուածապէս, եւ լուծեր ըզկնիք մահու. որ 'ի խաչին բարձրացար կամաւ հօր:

Մեծացուցանեմք ըզքեզ որ թաղեցար 'ի նոր 'ի գերեզմանի, եւ յերրորդ աւուր յարեար. որ 'ի յերկինս համբարձար փառօք հօր:

ող Ի խորանի քում սրբութեան զոր ընտրեցեր գալստեամբդ քո քրիստոս, 'ի սմա միաձայնեալ աղաչեմք ըզքեզ լուր ձայնի աղաչանաց մերոց ընկալ եւ կեցո ըզմեզ:

Աստուածային լուսով քո պայծառ քան ըզարեգակն լուսաւորեցեր զքո սուրբ զեկեղեցի. 'ի սմա միաձայնեալ աղա:

Այսօր եւ հրեշտակք ուրախանան ընդ պայծառութիւն քո սուրբ եկեղեցւոյ. 'ի սմա միաձայնեալ աղաչեմք ըզքեզ լուր ձայնի աղաչանաց մերոց ընկալ եւ կեցո ըզմեզ:

Ի տաճարի սրբութեան փառաց քոց քրիստոս, զոր 'ի յերկնից լուսաւորեցեր աստուածային ծագմամբ. 'ի սմա ըզքեզ անդադար բարեբանեսցուք: տէր

Որ ըզխորհուրդս փրկականս աստուածգիտութեան, շնորհեցեր մեզ 'ի ձեռըն քահանայապետին քո եւ վըկայի. նորին աղաչանօք խընայեա 'ի մեզ:

Զհաւատացեալ ժողովուրդս սուրբ երրորդութեանդ, եւ զպատուիրանս 'ի խորան փառաց քոց պահեա անխռով 'ի խաղաղութեան:

Սեղան քո տէր զօրութեանց հաստատեալ կանգնեցաւ 'ի խորանի քում. եկայք ժողովուրդք երկըրպագեսցուք: Ձկ ակ

Վէմ պատուական 'ի խորանի քում հիմնեցաւ այսօր. եկայք ժո:

Ի սմա մատուցաւ. ճշմարիտ պատարագ եւ զենումն անարատն. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք:





# ԿԱՆՈՆ

## ՎԵՐԱՑՄԱՆ ՍՐԲՈՑ ԽԱՉԻՆ ԱՌԱՋԻՆ ԱՒՈՒՐՆ

օրհ / աձ Որ զանարատ բազուկս քո 'ի խաչին տարածեցեր քրիստոս աստուած, եւ նշան յաղթութեան ետուր մեզ. սովաւ ըզկեանըս մեր պահեա։

Որ զաշխարհակեցոյց բազկատարածութիւն խաչի քո քրիստոս աստուած գաւազան զօրութեան ետուր մեզ. սո։

Որ ըզմեռեալն 'ի ճաշակմանէ փայտին յանցանաց, կենաց փայտիւըն կենագործեցեր. սո։

✠ Սուրբ խաչն օգնական հաւատացելոց, կանգնեցաւ 'ի յերկրի յաղթող թշնամեաց. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

Հրաշակերտ եւ զօրեղ փայտ խաչի քո քրիստոս գաւազան զօրութեան 'ի յերկրի երեւեալ. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

Զոր հրէիցն ծածկեալ զանթաքչելի ըզգանձըն, փափագմամբ թագուհւոյն փայտ կենաց յայտնեցաւ. եկայք ժողո։

Սա է զէն յաղթութեան հաւատացելոց. ախոյեան եւ կնիք յաղթող ընդդէմ թշնամեաց. եկայք ժողովուրդք եր։

Անճառելի երեւումն երեւեալ դըշխոյին, նըստելով յատենի յերուսաղէմ խընդրէր ըզպատուական փայտ խաչին, յոր ըզմեսիայն բեւեռեցին։

Մեծասաստ հրամանաւն ժողովեալ հրէից, ցուցանելով նըմա ըզպատուական փայտ խաչին, յոր ելեալ բարձրացաւ արարիչն արարածոց։

Ընդ յայտնիլ սուրբ խաչին 'ի տեղւոջըն սրբութեան բուրմամբ անուշահոտ խընկոց. եւ լըցան տիեզերըք մեծապէս պարգեւօք։

յար Զթագաւորըն փառաց քրիստոս. որ վասըն մեր մարմնացաւ 'ի սուրբ կուսէն եւ խաչի համբերելով. միաբանութեամբ երգով բարեբանեսցուք։

Որ ըզթաղումն երեքօրեայ յանձն էառ յարուցեալ 'ի մեռելոց իշխանութեամբ. միաբա։

Կարողապէս ըզդրունըս դըժոխոց խորտակեաց, եկեղեցւոյ իւրում զգեցոյց զմեծ վայելչութիւն. միաբանութեամբ երգով բարեբանեսցուք։

Բանդ որ 'ի հօրէ իջեալ մարմնացար 'ի կուսէն, խաչեցար կամաւ հօր վասըն մեր ըզմեղս ըսպանէր. սուրբ աստուած ողորմեա մեզ։

Որ յարարածոց ես անբովանդակելի, 'ի խաչափայտին բեւեռեալ ըզմահ կոխեցեր. սուրբ աս։

Որ 'ի նախնումըն զանկեալն 'ի ծառայութիւն մահու, պատուական

մարմնով եւ արեամբըդ քո ազատեցեր. սուրբ աստուած ողորմեա մեզ։

Դու յանձն առեր աստուած ելանել 'ի խաչ վասն մեր, եւ ընդ նովին բեւեռել ըզհրնութիւն մեղաց մերոց. վասն որոյ երկրպագեմք եւ վեր օրհնեմք ըզքո զանճառ խոնարհութիւնդ։

Ի խաչին քո մեռուցեր ըզմահ. եւ յաղբերէ կողի քո տիեզերաց արբուցեր զանմահութիւն։

Յայգւոյդ անմահութեան ճաշակեցաք եւ տեսաք զի քաղցր եւ ուղիղ ես տէր. եւ վասն ամենեցուն փրկութեան եկիր յաշխարհս։

հոգ Որ 'ի քրովբէական կառսըդ հանգչիս, այսօր իջեր յերկնից 'ի դաս առաքելոցն սուրբ հոգի. օրհնեալ ես Թագաւոր անմահ։

Որ գնաս 'ի վերայ Թեւոց հողմոց, այսօր 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի. օրհ։

Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր 'ի հաստատել զեկեղեցի քո սուրբ հոգի. օրհնեալ ես Թագաւոր անմահ։

հան Զհոգիս ծառայից քոց քրիստոս, ընկալ 'ի դաս անդրանկաց գրելոց 'ի յերկինս։

Ընկալ վասն սոցա ըզբանաւոր պատարագս 'ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում։

Հաշտեա 'ի ձեռն սուրբ մարմնոյ եւ արեան քո տէր. եւ պարգեւեա նոցա դասիլ յաջակողմեանն քո։

Որ ըզբանն աստուած բանական եղեր ընդունիլ յորովայնի միշտ կուսի. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես 'ի կանայս։ ած

Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ 'ի գիրկս քո մարմնով. զքեզ մեծա։

Անարատ տաճար տնօրէնութեան կոչեցար հոգւոյն սրբոյ միշտ կուսի. զքեզ մեծա։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Արարիչն աստուած բարձրացաւ 'ի խաչին, եւ զմեռեալս մեղօք փայտին ճաշակմամբն, 'ի սմա նորոգեալ կենդանացոյց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ի միւսանգամ գալըստեան աստուածորդւոյն, սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց։

Այսօր պատուական խաչիւ քո ապրեցուցեր ըզժողովուրդս քո. հրց
որ է գաւազան զօրութեան եւ փայտ կենաց. աստուած հարցն մերոց։ գկ

Քանզի անմահացաք կենացն փայտիւ 'ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն. որ կանգնեցաւ քառակերպն 'ի միջակին դիտելով ընդ հարաւ. աստուած հար։

Եւ համբարձար կամաւ 'ի խաչ քո քրիստոս, տարածեցեր ըզբազուկս քո ժողովել ըզհեռացեալ ազգ մարդկան առ քեզ տէր. աստուած հար։

Ըզտէր օրհնեցէք. Առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Այսօր որդին միածին զանարատ բազուկս իւր տարածեաց 'ի վերայ սուրբ խաչին. առա։

Քանզի յաղթեաց մահու հզօր զօրութեամբ, եւ կոչեաց ըզտիեզերս 'ի փրկութիւն եւ 'ի կեանսըն յաւիտենից. առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան:

ձձ Մայր եւ կոյս Աղախին քրիստոսի, որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. քեզ երանեն ամենայն ազինք:

Մաքուր աղաւնի եւ հարսն երկնից Մարիամ, տաճար եւ աթոռ աստուծոյ բանին. քեզ երան:

Քեւ հաճեցան իմանալիքըն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք 'ի փայտըն կենաց. քեզ երանեն ամենայն ազինք:

սր / գձ Փայտ կենաց որ փոխանակ մահացու պտղոյն ըզքրիստոս պտղաբերեցեր. պարծանք պահեա զուխտս հաւատացելոց:

Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց 'ի սրովբէափակ պահպանութենէն. պարծ:

Քեւ ազատեցաւ նախահայրն 'ի ճաշակմանէ պտղոյն. եւ քեզ երկրպագեն ամենայն հաւատացեալք. պարծանք պահեա զուխտս հաւատացելոց:

տէր Անուանեալ փայտ գիտութեան ըզմեզ 'ի կենացըն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեաւ մայրն եւայ, եւ պատրեաց ըզնախահայրն:

Իսկ փայտ խաչի քո կենսատու գաւազան զօրութեան կենաց մարդկան եւ յոյս հաստատութեան. առաջնորդ եղեւ մեզ 'ի կեանսըն յաւիտենից:

Ետուր մեզ նշան յաղթող սուրբ զխաչ քո. զի սովաւ մտցուք ընդ նեղ դուռն անձկայեալ ճանապարհին. որում ցանկային երկրածին որդիք մարդկան:

Յաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ 'ի բարձունս երգեսցուք թագաւորին քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք: ճշւ / գկ / տէր / Թգ

Որ եկն 'ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւն նորա ըզփառս երգեսցուք:

Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փրկողին մատուցուք փառս եւ պատիւ յաւիտեան:

Խաչի քո քրիստոս երկրպագանեմք. եւ ըզթաղումըն քո մեծացուցանեմք. եւ զսուրբ զյարութիւնդ քո փառաւորեմք. եկայք հաւատացեալք երկրպագեսցուք քրիստոսի աստուծոյ մերոյ. վասըն զի եկն 'ի ձեռըն խաչին իւրոյ շնորհեաց պարգեւս աշխարհի: բկ

Փառք սուրբ խաչին ալէլուիա. սուրբ սիոնին ալէլուիա. սուրբ յարութեանն ալէլուիա: տկ

Նշանեցաւ. սրբասից մերոց:

Ի պտղոյ ցոր: Փառք սուրբ խաչ:

Փառք եւ երկիր. որդ հոգւոյն. այժմ. նից ամէն:

Փառք սուրբ խաչին ալէլուիա:





# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ ԱԻՈՒՐՆ

օրհ / գձ Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիստոս որ կանգնեցեր ՚ի փրկութիւն աշխարհի. սա պահեսցէ զմեզ յամենայն փորձութենէ:

Քանզի ՚ի սմա բարձրացար աստուած, եւ ՚ի սմա հեղեր զպատուական սուրբ զարիւնդ. սա:

Եւ զքո միւսանգամ զգալուստդ. նշանաւ խաչի քո ցուցեր աշխարհի. սա:

Ի տունկեղանելն ադամայ ՚ի կենապտուղ ՚ի դրախտին խաբմամբ պատրանօք փայտին ծառոյն գիտութեան, օձաջամբ պատրանօքըն ճաշակեալ ՚ի պտղոյն, եւ եղեւ վայրաբնակիլ մայրաքաղաքն Երուսաղէմ:

յար Թագաւոր Քրիստոս էակից հօր եւ հոգւոյն, որ վասն մեր մարմնացար ՚ի սուրբ կուսէն. Թագաւոր փառաց Քրիստոս քեզ փառք:

Որ կամաւոր մահուամբ զմահ մեռուցեր, եւ անապական յարութեամբդ քո նորոգեցեր զաշխարհս. Թագա:

Որ կենդանարար արեամբդ քո լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի. երգեմք քեզ ընդ հրեշտակս սաղմոսելով. Թագա:

Թիունս իմ. Ողորմեա փրկիչ:

Որ կամաւ հօր զչարչարանս յանձն առեր բանդ աստուած. ողոր:

Որ հաւասար սուրբ հոգւոյն զգերեալսըն փրկեցեր քո յարութեամբդ. ողոր:

Ի խաչ ելեր բանդ աստուած, մարմնացեալդ ՚ի կուսէն կամաւ հօր եւ հոգւոյն, ՚ի փրկութիւն ազգի մարդկան:

Ի գերեզմանի եդար անապական, զի զմեղուցելութիւնս մեր բարձցես, զգերեալսըն փրկեցեր ՚ի ձեռաց մահու:

Եւ յերրորդ աւուր յարեար աստուածապէս, ՚ի յերկինս համբարձար ընդ աջմէ հօր նստար. փառաւորեալդ ՚ի հրեշտակաց եւ երկրպագեալդ ՚ի սերովբէից:

Թիունս իմ. Ողորմեա մեզ աստուած:

Որ ՚ի յերկնից ՚ի հօրէ իջեր անբաւ կիզուն ոգի, նոյն ինքն զդժոխս աւերեցեր. ողոր:

Որ զճառագայթս աստուածութեանդ երեւեցուցեր փրկիչ, զպահապանսըն զարհուրեցուցեր. ողոր:

Որ ձեռօքըն թովմայի շօշափեցար փրկիչ. առ աշակերտսըն մտեր դրօքըն փակելովք. ողորմեա մեզ աստուած:

Որ մահու խաչին իւրոյ կենդանացոյց զմահացեալսն, եւ մարմնոյն իւր բեւեռմամբ զկապանս մահու եղծ. ամենեքեան երգեսցուք, զի փառաւորեալ է:

Բոցով սրտմտութեան քո Քրիստոս ՚ի խաչին կիզեր զբանսարկուին բռնութիւնն. եւ կենարար յարութեամբ քո զեկեղեցի քո փրկեալ. փառս քեզ վեր առաքել ուսուցեր:

Որ փոխանակ դառնութեան տըն-կոյն եդեմայ ըղխաչ քո եստուր մեզ քրիստոս. եւ արբուցեր 'ի կողահոս աղբերէդ զանըսպառ եւ զանվախճան ուրախութիւն:

հոգ Անդամնարար աստուած մարդասէր հոգի, ըզժողովեալըն միաբանական սիրով լուսաւորեցեր հրեղինօք լեզուօք. փառք որոյ եւ մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ:

Զուարճացան քո գալըստեամբըն սուրբ առաքեալքըն. կոչելով 'ի միասին ըզցրուեալսն 'ի միմեանց բազմաձայն լեզուօք. փառք ո:

Հոգեւորական սուրբ մըկըրտութեամբ զարդարեցեր նոքօք ըզտիեզերս 'ի ըզգեստըս լուսափայլս եւ նորափետուրս. փառք ո:

հան Փառք քեզ հայր, որ կենարարդ ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց. ընկալ զօրհնաբանութիւն հոգիս յանմահական քո հանգիստ:

Մարդասիրի հօր որդի, որ պատկերանկից եղեր հողեղինացս եւ խաչեցար. ընկալ զօրհ:

Ամենազօր սուրբ հոգի, որ անդորրիչ ես նեղելոց եւ մըխիթարիչ հոգւոց. ընկալ զօրհ:

ած Մայր լուսոյ մարիամ սուրբ կոյս. որ ըզլոյսն առ 'ի հօրէ ծընար մարմնով. եւ եղեր արեւելք արեգականն արդարութեան. հոգեւոր երգով ըզքեզ սըրբուհի մեծացուցանեմք:

Քերովբէից դերադոյն էիր աթոռ եւ ծառ կենաց անմահական պըտղոյն, տապանակ կտակի բանին եւ սափոր ոսկի երկնային մանանային. հոգեւոր եր:

Քեւ բացաւ ոսկեփակ դուռն դրախտին, եւ քեւ տըւաւ մեզ փայտն անմահութեան. զոր 'ի նմա զենեալն անմահ այսօր յերկնից լուսաւորեաց. հոգեւոր եր:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Արեւելք 'ի դրախտին ընծայեցին ըղփայտ խաչին, եւ եկեալ կատարիւր 'ի տեղւոջ կառափելման. բարձրանայր 'ի դիտին տարրեղէն փայտակերտըն, սուրբ քառաթեւըն պահապան անձանց մերոց:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Բանն անեղ համագոյ որ ընդ հօր եւ սուրբ հոգւոյն, երեւեալ 'ի յերկրի պայծառացան արարածք. հըզօրին կարողութեամբ եւ ըզմեզ վերագրեաց յորդեգրութեան շընորհս:

հրց դձ Այսօր ընդ ամպըս լուսաւորս երեւեալ նըշան տէրունական խաչին բոցանիշ փայլմամբ, տեառնացն ընծայեցաւ 'ի քաղաքըն պատոմէին ըզնըշան քո տէր, աստուած հայրըն մերոց:

Յարեւելից փայլեաց ճառագայթ սուրբ խաչին. արեգակնակերպ ճառագայթիւք միաբան տեսանիւր 'ի յերրորդ ժամու նըշան քո:

Ապաւէն ցուցաւ մեզ սուրբ խաչըն փրկչական, զի յաղթեսցուք նովաւ անօրէն թըշնամւոյն, կնիք հաստատութեան ընկալեալք 'ի յանձինըս մեր ըզնըշան քո:

գ Ըղտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Այսօր նըշան սուրբ խաչին 'ի յերկնից երեւեալ. եկայք նոր ժողովուրդք միաբանութեամբ ըզտէր օրհ:

Այսօր 'ի սուրբ գողգոթայ ցոլա-ցեալ երեւելի տեսիլ ահաւոր ժո-ղովին, քահանայք երգով ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

մեծ Մայր լուսոյ Մարիամ սուրբ կոյս. որ ընկալար անդ 'ի հօրէ ծընար մարմնով. եւ եղեր արեւելք արե-գական արդարութեան. հոգեւոր երգով ըզքեզ սըրբուհի մեծա-ցուցանեմք։

Քերովբէից գերագոյն էին աթոռ եւ ծառ կենաց անմահական պըտ-ղոյն. տապանակ կտակի բանին եւ սափոր ոսկի երկնային մանանային. հոգեւոր եր։

Քեւ բացաւ ոսկեփակ դու-ռըն դրախտին, եւ քեւ տըւաւ մեզ փայտն անմահութեան. զոր 'ի նմա զենեալն անմահ այսօր յեր-կնից լուսաւորեաց. հոգեւոր եր։

ողր Ի յերկնից երեւեալ նըշանըն յաղթութեան այսօր հեթա-նոսաց ծագեաց լոյսն ուղղափառու-թեան։

Եւ բազմութեան ժողովոյն տե-սանելին այսօր սուրբ ըզխաչըն լուսոյ ճառագայթիւք զարդա-րեալ։

Ընդ երեւումըն սըրբոյ խաչի քո քրիստոս այսօր երուսաղէմ մե-ծապէս պանծացաւ յոյժ։

Եւ ըզծագումըն լուսոյ աստուա-ծային նըշանի քո ճառագայ-թիւք տեսանիւր բազմութեան ժողովոյն։

Ամենայաղթ զօրութիւն խաչի քո քրիստոս, որ ցուցաւ 'ի յօգնու-թիւն ընդդէմ թշնամեացն պատե-րազմեալ զօրութեամբ քով։

տէր Գունազան զօրութեան ըզխաչ քո եդուր մեզ քրիստոս. եւ սո-վաւ յաղթեսցուք անօրէն թըշ-նամեաց։

Սա է զէն յաղթութեան սրբեալ արեամբ որդւոյն աստուծոյ. եւ սա։

Սա է աթոռ տէրունեան, եւ 'ի սմա է բազմեալ քրիստոս որդին աստուծոյ. եւ սա։

Սա է սեղան սրբութեան, եւ 'ի սմա է պատարագեալ քրիստոս գառն աստուծոյ. եւ սա։

Սա է կարապետ յաւուր գալըս-տեան փրկչին. եւ պըսակ պար-ծանաց հաւատացելոց. եւ սա։



## ԿԱՆՈՆ

### ԵՐԵՔՇԱԲԱԹԻ ԱՒՈՒՐՆ

ԽԱՉՐ՝Ն կենարար որ եղեւ մեզ փրկութիւն. սովաւ ամենեքեան ըզքեզ բարեբա-նեմք։ օրհ բկ

Որ 'ի հօրէ լուսոյ լոյս ճառագայ-թեալ 'ի յերկիր, եւ գաւազան զօրութեան հաւատացելոց. սովաւ ամենեք։

Որ լուսափայլ ծագմամբ հրաշա-փառապէս մեզ ցուցաւ 'ի յօգ-նութիւն ընդդէմ թշնամեացն. սովաւ ամենեք։

Որ յաթոռ փառաց նստեալ բան աստուած, խոնարհեցար 'ի հայրա-կան ծոցոյ, առեր մարմին 'ի կու-սէն, վերականգնելով 'ի տեղի ըս-տորանկեալ լուսոյն զհողացեալ բնութիւնս։

Որ կանգնեցեր ըզխաչ քո ՚ի մէջ երկրի, եւ անով ըզտարամերժեալսն դուռն դրախտին բացեր նախաստեղծին, կենդանարծելով ՚ի ճաշակմանէ մահաբեր պտղոյն։

Եւ զօրութեամբ խաչի քո քրիստոս հիմնեցուցեր զկաթուղիկէ եկեղեցի բընակարան սուրբ երրորդութեանդ. լուսաւորելով ըզհեթանոսս ՚ի սմա կրկնակի ծնընդեամբ։

գձ Սրբութիւն սրբոց շնորհեցեր եկեղեցւոյ սուրբ ըզխաչ քո տէր. քանզի հեղուսիւք ձրդմամբ անարատ ձեռին քո ՚ի սմա համահաւասարեալ ես քեզ զհամօրէն սեալս բանակին կենդանեաց. աղաչեմք ըզքեզ տէր պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ։

Տեսիլ անճառելի խորհրդոյն զոր յառաջագոյն ցուցեր լուսածին սուրբ նըշանն. քանզի սերովբէն բոցեղէն հրանիւթ պարունակեր ՚ի մէջ պանծալի եւ վայելուչ դրախտին. աղա։

Երկնաշարժ ցուցեր սանդուխք իմանալի ճանապարհ առնելով որդւոց մարդկան ընդ դուռն կենաց մըտին, քանզի խորհրդեամբ ցուցաւ ըսքանչելւոյն յակոբայ. երկնաւոր զօրացն էջք եւ ելք արարան. աղա։

Փայտ կենաց ըզսա հնգամըն վերագոչեաց զերահրաշ իմաստունն. քանզի արարիչն արարածոց բարձրացաւ ՚ի սմա. եւ կողահոս շիթք անապական արեանն ըզկողածնին ջընջեաց ըզմեղս. աղաչեմք ըզքեզ տէր պահ։

Առաջնորդ ցուցաւ սինատեսիլ փայլմամբ ժողովրդեանն իսրայէլի, գաւազանաւ հերձմամբ ըզլեռնացեալ ըզկուտակումըն ջուրցն ՚ի կարծրութիւն փախարկեալ մինմի. աղա։

Ներգործեալ հրաշք խաչանիշ համբարձմամբ ձեռացն մովսէսի ընդդէմ ամաղեկայ, ՚ի մարտի պարտէր ըզեբելինս. եւ ձուլադրոշմըն ձուլիւք ենթադրեալ կորղէր. աղա։

Նշանաւ խաչի քո տէր սատանայ հալածեցաւ աշխարհակուլ խաւարին. քանզի զմեղուցեալ ըզմարդըն յանցանօք փայտին կենաց խաչակից առնելով պըսակեցեր ամենայաղթ սուրբ նըշանաւդ. աղաչեմք ըզքեզ տէր պահ։

Քեզ քրիստոսի կաթուղիկէ եկեղեցւոյ շնորհողի զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նըշանս, մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ՚ի բարձունս։

Սա կամաւ քո քրիստոս եւ թեւօք ամենազօր սուրբ հոգւոյն, եւ դասուք հրեշտակաց թռուցեալ եկաւոր ՚ի լեառն վարագայ բընակիլ ՚ի նմա։

Եկայք ժողովուրդք երկրպագեցուք աստուածային սուրբ նըշանիս. համբարձէք միաբան ըզձեռըս ձեր ՚ի սրբութիւն, եւ ըզբնակեալըն ՚ի սմա միշտ փառաւորեսցուք։

Անուանեալ փայտ գիտութեան ըզմեզ ՚ի կենացըն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեաւ մայրն եւայ, եւ պատրեաց ըզնախահայրն։

Իսկ փայտ խաչի քո կենսատու դաւազան զօրութեան կենաց մարդկան եւ լոյս հաստատութեան. առաջնորդ եղեւ մեզ ՚ի կեանս յաւիտենից:

Ետուր մեզ նշան յաղթող սուրբ զխաչ քո. զի սովաւ մտցուք ընդ նեղ դուռն անձկացեալ ճանապարհին որ տանի ցանկալին երկրածին որդիք մարդկան:

հոգ

Արեգակն արդարութեան քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց զխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգւով եւ ճշմարտութեամբ:

Որ փոխանակ ծագման բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետիքըն հօր ՚ի բարձանց հոգին ճշմարտութեան, մխիթարել զուս յաղանց սրտամեցելոց եւ հրազինել զընտրեալ դաս առաքելոցն վասն որոյ:

Այսօր տէրունական եւ գիշերային լուծան երկունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալսն մահնու ՚ի մահ եւ յապականութիւն, վերստին ծնանի հոգին յորդիս լուսոյ հօրն երկնաւորի. վասն որոյ եւ մեք եր:

հան

Արարչագործ աստուած, որ յոչընչէ գոյացուցեր զերկինս եւ զերկիր. օրհնեմք զքեզ որ հանգուցիչդ ես ննջեցելոց հայր ամենակալ:

Բանդ աստուած եւ համագոյ փառաց հօր պատկեր. գովեմք զքեզ որ յարութիւնդ ես ննջեցելոց որդի միածին:

Աղբիւր անսպառ յորմէ բաշխի տիեզերականն շնորհք. բարեբանեմք զքեզ որ նորոգող ես ննջեցելոց հոգի ճշմարիտ:

ած

Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ:

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անապականաբար բնակիլ հաճեցաւ ՚ի քում յորովայնի. ուրախ:

Որ բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր, այսօր ՚ի մէջ մարդկան ՚ի գիրկս հողեղինի յայտնեալ. ուրախ:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Որ ՚ի վերջին աւուր համառօտի լուծանէ ժողովեալ զբուր ըզկարծեցեալ ճանճանչն. եւ անհեղահրաշ ճառագայթիւք ցոլանայ յերկնից դերահրաշ նշանն. եւ հեծեալ կոծին ամենայն ջոկք անհաւատիցն. աղաչեմք զքեզ տէր պահպանեա զմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Սրբուհի աստուածածին բարեխօսութեամբ ընկալ տէր ըզմաղթանս մեր, յորժամ յարեւելից լուսածագիս ահաւոր հրաշիւք, կարապետ անուանեալ զյաղթանակ սուրբ նշանն. ողորմ:

հրց դձ

Ուրախ լեր այսօր սուրբ եկեղեցի եւ տօնեա ըզտօն քո դուստր սիոնի. քանզի ՚ի քեզ հաճեցաւ բնակիլ տէր աստուած հարցըն մերոց:

Ուրախ լեր դըշխոյ դուստր սիոնի, եւ ցընծա՛ վերինդ երուսաղէմ. քանզի քրիստոս արքայն երկնից գայ առ քեզ. տէր ամ:

Ուրախ լեր սուրբ մայր եկեղեցի. քանզի ՚ի քեզ շող աստուածեղէն ՚ի հօրէ լուսոյ ծագեաց. տէր ամ:

գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Որ պըսակեաց այսօր սուրբ զեկեղեցի նըշանաւ խաչին իւրով. զտէր օրհնէ:

Որ վերըստին ծնընդեամբ սուրբ աւազանին լուսաւորեաց զազգս որդւոց մարդկան. Երգով զտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

մեծ Ուրախացի՛ր աստուածածին վերօրհնեալդ ՚ի սրովբէից. ծագելով ՚ի քէն մեզ լոյս մայր եղեր վերաձգողին. ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք:

Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ. ՚ի հրեշտակաց սպասաւորեալ գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ եւ ա:

Տեսանեմք ըզմոմակալն զհրաշալի խորհուրդ յայտնեալ. ՚ի հոգւոյն սրբոյ յղացեալ զբանն աստուած մարմնով ծընար. ազգ եւ ազինք ըզքեզ մեծացուցանեմք:

ող Որ հաստատեցեր բանիւ զեկեղեցի քո քրիստոս ՚ի վերայ առաքելական վիմի, երգել ՚ի սմա զերգըս հոգեւորս:

Կանգնեալ ՚ի սմա սեղան սրբութեան բաշխէ զմարմին իւր եւ զարիւն, եւ տայ ՚ի սմանէ մեզ նորոգութիւն, ՚ի թողութիւն մեղաց մերոց:

Իջեալ հոգւոյն սրբոյ աղաւնակերպ երեւմամբ ՚ի վերայ մարմնոյ եւ արեանն տեառն, ՚ի բըժշկութիւն հոգւոց մերոց:

Լուսաւորեա՛ երուսաղէմ զարդարեա զամուրըս քո. քանզի մերձեցաւ առ քեզ փեսայն երկնաւոր. փըրկութիւն քեզ շնորհելով պըսակեաց սքանչելի փառօքն իւրովք: տէր

Այսօր ծագեաց քեզ դըշխոյ դուստր սիոնի արդարութեան արեգակըն քրիստոս. եւ սըփռեցան ըզքեւ շնորհք սուրբ հոգւոյն մեծապէս պարգեւօք:

Այսօր ցընծա՛ սուրբ սիոն մայր եկեղեցի. փայլեցո զմանկունըս քո որպէս զարեգակըն. զի անճառ խընդութեամբ լըցոյց ըզքեզ քրիստոս թագաւորն:

Էջ միածինն ՚ի հօրէ եւ լոյս փառաց ընդ նըմա, ձայնք հընչեցին սանդարամետք անդընդոց: թկ դկ

Տեսեալ ըզլոյս մեծ հայրապետին գրիգորի, պատմէր ցընծութեամբ հաւատացեալ արքային:

Ընկալք շնորհեցուք սուրբ ըզխորանըն լուսոյ. քանզի ՚ի սմա ծագեաց մեզ լոյս ՚ի հայաստան աշխարհի:

Ճաշու:

Որ հաստատեցեր բանիւ:



# ԿԱՆՈՆ

## ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ ԱՒՈՒՐՆ

օրհ | գձ

ՈՒՐԱԽ լեր սուրբ եկեղեցի, քանզի քրիստոս արքայն երկնից այսօր պըսակեաց ըզքեզ խաչին իւրով. եւ զարդարեաց զամուրըս քո սքանչելի փառօքն իւրովք:

Խընդա յոյժ դուստր սիովնի. քանզի երկիրս երկինք եղեն այսօր վերըստին քո նորոգմամբ, եւ թագաւորն երկնաւոր հաճեցաւ բընակել 'ի քեզ:

Ընդ դասս երկնաւոր զօրացն վեր առեալ տօնեմք քեզ այսօր զանդադար փառաւորութիւնս. ուրախ լեր հարսն անարատ անքըննելին քո խորհըրդով:



Խորան սրբութեան կանգնեցաւ սուրբ եկեղեցի, եւ քրիստոս թագաւորն 'ի սմա պատարագեալ. եկայք հաւատացեալք երգեսցուք քրիստոսի երգ նոր:

յար

Այսօր հրեշտակաց բազմութիւնքըն տօնակից լինին ընդ մեզ. քանզի երկնաւոր թագաւորն եկաւորի 'ի սուրբ եկեղեցի:

Խընդա եւ զուարճացիր հարսնացեալըդ աստուծոյ եկեղեցի. քանզի ըզքեզ տէրըն տերանց ընտրեաց եւ հաճեցաւ բընակել 'ի քեզ:

Լուսաւորեա լուսաւորեալ կաթուղիկէ եկեղեցի. քանզի 'ի քեզ շող աստուածեղէն 'ի հօրէ լուսոյ ծագեաց. եւ լուսաւորեաց ըզմանկունս քո:

Որք արժանաւորեցայք 'ի կոչումըն փառաւորութեան քրիստոսի աստուծոյ մերոյ. եկայք ժողովուրդք երգեցէք տեառն երգ նոր. երգեցէք զանուն նորա ձայնիւ ցընծութեամբ յօրհնութիւն 'ի նոր:

Զօրացեալքս 'ի քեզ քրիստոս ժողովուրդք հաւատացելոց, ճըշմարիտ խոստովանութեամբ օրհնեմք զխորհուրդ աստուածային կենաբեր տնօրէնութեան քո. փառաւորելով զահաւոր եւ զըսքանչելի անուն քո, տէր տէր մեծ 'ի վերայ ամենայն երկրի:

Ուրախ լեր եկեղեցի սուրբ հարսն երկնաւոր խորհըրդոյն 'ի փառս ամենասուրբ երրորդութեանն. որ համագոյ իշխանութեամբն իւրով զարդարեաց ծագմամբ լուսոյ, պըսակեալ զքեզ 'ի պատիւ ամենայն սրբովք իւրովք:

Լուսաւորեա երուսաղէմ զի հասեալ է լոյս քո. զարդարեա զամուրըս քո. եւ փառք տեառն 'ի վերայ քո ծագեսցի: աղ

Օրհներգութեամբ սաղմոսիւք քեզ վայելէ աստուած օրհնութիւն 'ի սիովնէ. եւ քեզ մատուսցին աղօթք յերուսաղէմ:

Գովեա երուսաղէմ ըզտէր, եւ օրհնեա զաստուած քո. ը նոր ժողովուրդ դըշխոյ դուստր սիովնի:

Այսօր աստուածութիւնըն զուարճանայ նոր հաստատելով զերկիր. պարըք սուրբք փառաբանեն զըւարթնոց. եւ մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեսցուք սուրբ ըզտօնս:

Այսօր եւ մեք ցնծամք տօնիւս ընդհանուր հրնչմամբ. մեծապէս փայլմամբ երեւեցաւ յաշխարհի. առ աստուած գոհութիւնք ընծայանան. պատմեն անդադար ըղեան կենդանի։

Խնդա եւ զուարճացիր եկեղեցի կոյս սուրբ եւ հարսն երկնաւոր փեսային, ահա տեսանեմք զծնեալն ըզքրիստոս, գոլով առ քեզ լոյսն հեթանոսաց։

Հրաշափառ տեսութիւն 'ի կաթուղիկէ եկեղեցւոյս տեսանի, գործարան մահու մահուամբ առիթ գոլ կենաց, եւ մահացուցիչ նախաստեղծին մահուամբ գոլ շնորհող յարութեան։

Պարգեւ գերագոյն պարգեւի այսօր հաւատացելոց, եւ մնհացուն 'ի կենաց առնու իւր զօրս վերելեանկս. եւ թռուցեալ վերագոյն բնակիլ 'ի տեղւոջն սրբութեան։

Ընկալք ժողովուրդք ընդ հոգեղէնացըն սպասաւորեսցուք. երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս, փառաւորեսցուք ըզհրաշագործ պարգեւաց տուողն։

Արեգակն արդարութեան քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ եւ մեք երկրպագանեմք հօր հոգւով եւ ճշմարտութեամբ։ հոգ

Որ փոխանակ ծոցածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետիքըն հօր 'ի բարձանց հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս յադամայ տրտմեցելոց եւ հրամ զինել զընորեալ դասս առաքելոցն. վասն որոյ։

Այսօր տրտմական եւ գիշերային լուծան երկունք ծննդեան նախամօրն. քանզի զծնեալն մարմնով 'ի մահ եւ յապականութիւն, վերըստին ծնանի հոգին յորդիս լուսոյ հօրն երկնաւորի. վասն որոյ եւ մեք եր։

Որ երկայնամիտդ ես տէր քաղցր եւ անոխակալ հանգո զհոգիս քոց ծառայից. զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին։ հան

Զյիշատակ հրաժարելոցն 'ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զխնդրս մեր ընկալ որպէս զաբելին զնուէրն եւ զաբրահամուն. զի մի։

Ի խորան քում սիրողաց հանգուսցես ըզծառայս քո, եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբս քո. զի մի դարձ։

Զանճառելի լուսոյ մայր, եւ ըզբնակարան անըսկըզբնակից որդւոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք։ ած

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանձնաւոր տաճար աստուծոյ բանին. օրհ։

Զբոլորից փրկութեան մայր, որ զանտանելին յէից 'ի յարգանդի եբարձ. ըզնա ամենեքեան օրհ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Դասք հրեշտակացն մայր իջեալ յերկնից երգեն անելով, հրաշալի ձայնիւն եղանակելով երգեն զերգս օրհնութեան երրեակ սրբասաց ձայնիւ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ուրախ լեր բերկրեալ հարսնացեալ սուրբ եկեղեցի, պայծառացո զմանկունս քո յօրհնաբանութիւն ծագողին ընդ լուսոյ 'ի քէն մայր եկեղեցի։

հրց գձ Այսօր պայծառ եւ սուրբ լուսով լցեալ աստուածային շնորհիւ սուրբ եկեղեցի. 'ի սմա ընդ քեզ օրհնեմք աստուած հայրն մերոց։

Հարսնարան արանց արդարոց, եւ 'ի սմա շող աստուածեղէն 'ի հօրէ լուսոյ ծագեալ. 'ի սմա ընդ։

Տուող որդեգրութեան տէր, տուր սմա զանշարժ քո զխաղաղութիւնդ. 'ի սմա ընդ։

գ Զտէր օրհնեցէք եւ առաւել բարձր արարէք ընդ յաւիտեան։

Ընդ անմարմնական բանակութիւնն ըզքրիստոս թագաւորն, որ եկաւորի այսօր 'ի սուրբ եկեղեցի. ամենայն ազինք գովեցէք եւ առաւել բարձր արա։

Էկայք հաւատացեալք սուրբ երրորդութեանն յեկեղեցիս օրհնեցէք զաստուած. արարէք տօնս ուրախութեան մինչեւ յանկիւնս սեղանոյ. եւ առաւել բարձր արարէք ընդ յաւիտեան։

մեծ Ուրախ լեր աստուածածին յոյս եւ փրկութեան մայր. ըզքեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք։

Զքեզ լուսոյ մայր եւ կոյս, ըզքեզ գանձըդ կենաց աստուածային ձայնիւ ցընծութեամբ մեծացուցանեմք։

Մայր սուրբ անարատ լուսոյն. հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ըզքեզ մեծացուցանեմք։

Զորս ըստ պատկերի քում ըստեղծեր, նորոգելով քեզ տաճարս ցուցեր, զնորոգեալս 'ի մեզ ըզտաճարս ընկալ քեզ 'ի բնակութիւն։ ողբ

Որ շնորհես մեզ կենաց տունդ զկենդանագիր քո ծառայական կերպի, բերելով ըզօրութիւնց ըզվերբերողդ 'ի փառս սուրբ երրորդութեանդ։

Կեցո զորդի ծառայի քո, զոր 'ի հովուաց գահոյսն վերապատուեցեր. ուր եդին զվէմըն հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ։

Որ զվերջինս զայս հրաշագործեցեր, քեւ չափ բնակցութեամբ հիմնափոխեցեր, ըզպանծալի եւ ըզփոխեալ ըզփառս տանս այս վերջինս քան զառաջինն։

Որ զորդարեաց մեծապայծառ փառօք սուրբ զեկեղեցի. եւ լուսաճեմ բնակարան կարգեաց խորան դասուց հրեշտակաց. ընդ է նա ամենայն արարածք օրհնեցէք։ ոէք

Որ ինքնագոյ հրաշիւքըն հիմնեցոյց 'ի վերայ հիման սուրբ առաքելոցն. եւ շնորհեաց քաւութիւն 'ի սմա, որդւոց մարդկան վերադառնալ ընդ վերին զուարթունս. ընդ է նա։

Որ ամենակարող զօրութեամբն խորով անձառելի ծագմամբն աստուածապէս առատաձեռնեաց մարգի մարդկան. եւ պարգեւեաց շնորհս անապական զգեստս պայծառ է զարդս. եւ բոլորեալ պսակս յանմատոյց լուսոյն. ընդ է։

Ձկ Այսօր ուրախացեալ ցնծան երկնից բազմութիւնքն 'ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից 'ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. փառք գալստեան քո տէր։

Այսօր սուրբ լուսոյ հոգին եղեւ ը մեզ 'ի բարձանց. քանզի թագաւորն երկնաւոր եկաւորի 'ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծաւալեալ տօնեն ընդ մարդկան. փառք։

Այսօր քահանայապետ ճշմարիտ աստուածային օրինօքն պատուեալ կանգնէ զքառանկիւն սեղանն խաչին, արժանապէս պատարագեալ բաշխէ զմարմին եւ զարիւնն տեառն. մաքրապէս մերձեցարուք փրկեալքս նոր ժողովուրդք. եւ հայցեցէք 'ի քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս։



# ԿԱՆՈՆ

## ՀԻՆԳՇԱԲԱԹԻ ԱՒՈՒՐՆ

օրհ
բկ Անպատումըն կառք անքննելի խորհրդոյն ընդունարան ով սուրբ քառաթեւ, 'ի սաւառնաթեւից յարաթռուելոց սրովբէից անտեսաբար աստուածապատուեալ. քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յելս եւ 'ի մուտս։

Անյաղթելի նշան անպարտելի զօրութեանն ընդունարան ով սուրբ քառաթեւ. 'ի յահարկութիւն ապստամբիցն երեւեցար, որք 'ի քէն ահիւ սարսեալ դողան, եւ անդընդասոյզ կորնչին. քեզ եր։

Յառաջագոյն տեսեալ ըզքեզ մարգարէն զաքարիա, աշտանակ ոսկի եօթնաջահեան լուսով պայծառացեալ յերկրի ով սուրբ քառաթեւ, եւ 'ի վերայ քո տարածեալ աննիւթ գոյին գոյացեալ 'ի մեր բնութիւնս, եւ ամբերահոս կողիւ մաքրեաց զաղտեղութիւն ազգի մարդկային. քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յելս եւ 'ի մուտս։

Ընդ երեւումն քո 'ի թաղմանէ ով սուրբ քառաթեւ, 'ի յահէ քումմէ կործանին գունդքն զօրաց բանսարկուին. եւ ընդ յառնել պատանւոյն զուարճացան հաւատացեալքս. քեզ երկրպագեմք յօգնու։

Որ համագոյ ես հօր եւ սուրբ հոգւոյն, անբաժանելի էակ միութեան, խոնարհեցար 'ի բարձանց եւ առեր մարմին 'ի կուսէն յաղագս անկելոյն յանլուծիչ կենաց բանսարկուին խաբմամբ։ յար

Որ դատաւորդ ես ծածկելոց գիտող. այսօր 'ի հողոյ դատապարտեալ բարձար 'ի խաչ եւ լեղեաւ կերակրեցար յաղագս անկելոյն 'ի ճաշակմանէն մահաբեր պտղոյն։

Որ կենդանութիւնդ ես ամենեցուն. այսօր ըզմոհ խաչի 'ի յանձն առեր. եղար 'ի սիրտ երկրի եւ յերրորդ աւուր յարեար. շնորհեաց մեզ վերածիլ ընդ քեզ յանպատում 'ի կեանս։

Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր ըզքո սուրբ եկեղեցի. ըզսա պահեա 'ի խաղաղութեան:

Որ շնորհեցեր ողորմութիւն 'ի բնակարանըս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր որմս զանշարժ քո զխաղաղութիւն:

Ի տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո զողորմութիւն:

Եկայք ժողովուրդք 'ի տաճարի փառաց քրիստոսի, տուք ամենեքեան օրհնութիւն 'ի բարձունս:

Քանզի Թագաւորըն քրիստոս պըսակեաց ըզսա սքանչելի փառօքն իւրովք. տուք ամենե:

Ի սմա եւ զօրըք հրեշտակաց դասաւորեալ տօնեն տեառն. տուք ամենեքեան օրհնութիւն 'ի բարձունս:

Որ 'ի յերկնից իջեր բանդ աստուած, եւ վասըն մեր մարմնացար 'ի սրբոյ կուսէն. ողորմեա ինձ աստուած իմ ողորմեա:

Որ 'ի խաչին տարածեցեր զանարատ բազուկըս քո, եւ վասըն մեր հեղեր զարիւն քո սուրբ. ողոր:

Որ 'ի գերեզմանի եդար անապական, եւ յարուցեալ նորոգեցեր զաշխարհս. ողոր:

Որ 'ի յերկինըս համբարձար ամենակարող' եւ ընդ աջմէ հօր նըստար յաթոռ փառաց. ողոր:

Իջեր տէր եւ մարմնացար 'ի կուսէն. եւ զհոգեղէն բընութիւնս ազատեցեր 'ի մեղաց:

Ելեր տէր բեւեռեցար 'ի խաչին. ըմեռանիլ յանձն առեր կենդանատու մեռելոց:

Եդար տէր 'ի նորափոր 'ի վիմի. եւ մատանեաւ կընքեցար գանձըդ կենաց աշխարհի:

Յարեար տէր աւերեցեր ըզդըժոխս. 'ի յերկինըս համբարձար եւ ընդ աջմէ հօր նըստար:

Անեղին եղեալ մարդ տեսեալ զարմանայր մարգարէն. եւ հեղուսեալ բեւեռօք զմարմինն 'ի խաչին, ներգործեալ 'ի մէջ երկուց կենդանեաց:

Պատմեսցեն երկինք ըզվայելչութիւն փառաց քրիստոսի. եւ ընկալեալ լուսաձեւ տաճարըն ըզգոյնս արեան անեղին, եւ օրհնութեամբ խաչելոյն լըցան տիեզերք:

Ջրաւորեալ ոչ միայն 'ի վերայ բուսաբեր արմատոյն, այլ քրովբէական կառօքն ըստորիջեալ 'ի դըժոխս կենագործեաց հըզօրեղապէս զերամս մարգարոց:

Իջեր տէր ողորմութեամբ քո յաշխարհ, եւ ըզմեռեալ բընութիւնս 'ի կեանս վերափոխեցեր: հոգ

Ելեր տէր առ հայր փառօք 'ի յերկինս, եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զհոգին:

Բացեր տէր այսօր ըզդրանդ երկնային, եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բընութեանս:

Գալոց է միածինըն փողով եւ փառօք հօր, եւ ըզհոգեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ: հան

Լուսաւոր են ճանապարհք արդարոց, եւ 'ի բիւրաւոր բանակըս հրեշտակաց ամպովք ընթանան:

Ի վերին երուսաղէմ թըռչին ամպովք ընդ առաջ տեառըն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ տեառըն լինին:

ած Որ ողորմեցար 'ի մեղս ծնեալ մարդկան հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ըզկոյսըն սուրբ ըզծնող որդւոյդ միածնի. մաղթանօք սորա տէր մեզ ողորմեա։

Որ յղեցեր 'ի մեզ յանմահ ծոցոյ որդիդ այսօր զկոյսըն մարիամ. յորմէ ծընեալ մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախաստեղծին ադամայ. մաղթանօք սորա տէր մեզ ողորմեա։

Որ մաքրեցեր հոգիդ սուրբ ըզսիրտ եւ զարգանդ մօր քո փառակցին. այսօր անուն ծնողաց նորին ետուր ըզմայր բանին զօրհնիչն եւայի. մաղթանօք սորա տէր մեզ ողորմեա։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Ի յերկրի երկինք եւ 'ի յերկինս մեզ անբարբառ բարեխօս, ով սուրբ քառաթեւ, 'ի յահաւոր եւ 'ի հրացայտ փայլմանըն կառապետ գոլով, եւ նախագուշակ գալըստեան որդւոյն աստուծոյ. քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յելս եւ 'ի մուտս։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Յորժամ յարեւելից փայլիս անձառ լուսով լուսաւորես զհաւատացեալս. եւ դատապարտես զազգըն հրէից անհաւատից ով սուրբ քառաթեւ. եւ զիս լուսաւորեա ըզխաւարեալս մեղօք. եւ դասակարգեա 'ի դաս մատենագրի յանձառ երկնից արքայութեանդ. զի անդադար օրհնաբանիս եւ քո են փառք յաւիտեանս ամէն։

հրց գձ Այսօր ցընծան դասք հրեշտակաց 'ի նաւակատիս քրիստոսի սուրբ եկեղեցւոյ. բարեբանելով ըզտէր աստուած հարցըն մերոց։

Այսօր ամենայն դասք սուրբ առաքելոցն ըզատօն վերինն երուսաղէմի. յիմանալի տաճարին մատուցանեն զերգս հոգեւոր երգով. տէր աստուած հայր։

Այսօր երգս առեալ գոչեն դասք հաւատացելոց միաբանութեամբ. արժանի արա ըզմեզ 'ի տաճարի քում սրբութեան փառաւորել զամենասուրբ զերրորդութիւնդ. ըզտէր աստուած հարցըն մերոց։

գ Ըզտէր օրհնեցէք եւ առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ լուսաւորեաց զկաթողիկէ մայր սուրբ եկեղեցի աստուածային լուսովն. ամենայն ազինք գովեցէք եւ առաւել բար։

Որ բարձրացոյց զմանկունս սուրբ եկեղեցւոյ 'ի դաս վերին զօրացն. քահանայք օրհնեցէք եւ առաւել բարձր արա։

մեծ Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետաբանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ։

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անամպականաբար բնակիլ հաճեցար 'ի քում յորովայնի. ուրախ։

Որ բոցեղէն սրովբէիւք շրջանակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հողեղինի յայտնեալ. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ։

ողր Լուսաւորեա երուսաղէմ զի հասեալ է լոյս քո. զարդարեա զա-

մուրըս քո. եւ փառք տեառն
'ի վերայ քո ծագեցին։

Օրհներգութեամբ սաղմոսիւք քեզ վայելէ աստուած օրհնութիւն 'ի սիովնէ. եւ քեզ մատուցին աղօթք յերուսաղէմ։

Գովեա երուսաղէմ զտէր, եւ օրհնեա զաստուած քո. նոր ժողովուրդ դշխոյ դուստր սիովնի։

տէր Այսօր աստուածութիւնն զուարճանայ նոր հաստատելով զերկիր. պարք սուրբք փառաբանեն զուարթնոց. եւ մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեսցուք սուրբ զտօնս։

Այսօր եւ մեք ցնծամք տօնիւս ընդհանուր հրճուանօք. մեծապէս փայլմամբ երեւեցաւ յաշխարհի. առ աստուած գոհութիւնք ընծայեան. պատմեն անդադար զբան կենդանի։

Խնդա եւ զուարճացիր եկեղեցի կոյս սուրբ եւ հարսն երկնաւոր փեսային, ահա տեսանեմք զօծեալն զքրիստոս, գովել առ քեզ լոյսն հեթանոսաց։

ծնկ / ակ Որ 'ի սկզբանէ խնամողութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր խնամութիւն. զոր նախանկար տեսութեամբ նշանակեալ մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերինն, լուսաւորելով փառօքն աստուծոյ։

Որ զխորհուրդ անճառական տնօրէնութեանդ քո 'ի սուրբ կուսէն. տպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց բանիդ աստուծոյ. փառաց անեղին տեղի հանգստեան։

Որ 'ի կեանս վերադարձի բնութեանս դարձմամբն յորդանանու օրինակեցեր. եւ զզօրութիւն մահու եւ դժոխոց կործանմամբն երիքովի տապանակաւ խաչին հրաշագործեալ նոր իսրայէլի. օրհնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք։

Այսօր ցնծան դասք հրեշտակաց ընդ հաստատիլ քո 'ի յերկրի ով լուսեղէն խորան երկնանման եկեղեցի սուրբ. ուրախ լեր վէմ պատուական հովանի մեր եւ յոյս։ ճշու / գձ

Զուարճացիր հարսն անարատ լուսազարդեալ վայելչապէս. զարդարեալ հանդերձ փառօք եւ ել ընդ առաջ երկնաւոր փեսային. ուրախ լեր ամուլ բազմածին, ահա փեսայն գայ առ քեզ։

Աստանօր նորոգեցաւ մեզ աւազան մկրտութեան. յորդանան մօր հոգւովն յղացեալ ծնանելով վերստին զհաւատացեալքս 'ի քրիստոս. ուրախ լեր անմայր յառաջնումն ահա որդին գայ առ քեզ։



## ԿԱՆՈՆ

### ՈՒՐԲԱԹԻ ԱՒՈՒՐՆ

ԱՆԱՊԱԿԱՆ սուրբ զխաչն օրհնեսցուք, որ եղեւ աւանդորդ աւազանին, եւ յօրինեաց մեզ ճանապարհ. որ ձեւացոյց մեզ սովոր մտանել ընդ դուռն անեղաշէն դրախտին տեառն։ օրհ / բձ

Բանալի արքայութեան տուող հողածին մարդոյն, ուստի յաւաջին ճաշակմանէն արտաքս անկեալ 'ի յաւէժ կենդանութեանն. որ ծնաւ:

Գաւազանաձեւ երեւեալ եգիպտականն մոգքն, ցուցանելով ըզզօրութիւն սրբոյ խաչին, յափըշտակելով ըզգաւազանըն դիւթականն. որ ծնաւ:

Դրոշմ ըզգայութեան օրինակեալ 'ի վերայ սեմոց դրանց նոցա, աներկիւղ պահելով ըզժողովուրդն յանդրանկածախ սատակմանէն. որ ծնաւ:

Երեւեալ այլասանըման ակըն պատուական 'ի ձեւ խաչին, հերձանելով ըզծովըն կարմիր, առաջնորդելով ժողովրդեանըն սեամբ ամպոյ լուսոյն անմեկնելին. որ ծնաւ:

Որ նըշանաւ ամենայաղթ խաչին քո քրիստոս, բարձեր զդատապարտութիւն ազգի մարդկան:

Այսօր խընդրի պատուական փայտ խաչին աւանդեալն 'ի գողգոթա, 'ի ձեռն աստուածածնէր դըշխոյին. եկայք հաւատացեալք երկըրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս:

Այսօր ընծայէ գողգոթայ ըզծածկեալն 'ի յերկրի, վերաբերեալ անուշահոտ խընկովք, 'ի ձեռն երանելւոյն յուդայի. եկայք հաւատացեալք երկըրպա:

Այսօր 'ի ձեռըն փըրկական սուրբ խաչին կենագործի պատանին մեռեալ. եւ ողբայ սատանայ ըզկործանումն իւր. իսկ մեք քրիստոսի հաւատացեալք երկըրպա:

Ապաւինեցաք 'ի խաչ քո աստուածային յաւիտենից, որ ետուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թըշնամւոյն. աղաչեմք տէր փըրկիչ պահպանեա զանձինս մեր:

Բարձրեալ թագաւոր որ վասըն մեր ելեր 'ի խաչ, եւ բարձեր սովաւ զյանցանս նախաստեղծին ադամայ. աղա:

Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեալ, զոր տեսեալ այսոյն պըղծոյ կործանեցաւ անկանգնելի. աղա:

Գողացաւ թըշնամին ընդ յայտնիլ սըրբոյ խաչին, եւ 'ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. աղա:

Երկինք ցընծային եւ երկիրս ուրախանայր, քանզի փըրկիչ ցուցաւ սուրբ խաչն եւ լուսաւոր տիեզերաց. աղա:

Իջեր յերկնից որդի աստուծոյ ազատեցեր զարարածս. անկանիմ առաջի քո. ողորմեա ինձ աստըւած: յար

Ի խաչին բեւեռեցար աստուած եւ ըզմարդն 'ի կապանաց մահու արձակեցեր. եւ զիս մի անտես առներ, որ մեղօքս եմ մեռեալ:

Ծագումըն հօր անմահոյց լուսոյն. որ իջեր 'ի դերեզմանն կենդանացուցեր զարարածըս քո. եւ զիս մի անտես առներ. քանզի քեզ միայնոյ մեղայ:

Որ կամաւոր խաչելութեամբ քո տէր բարձեր ըզմեղս. ըզքեզ բարեբանեմք ամենեցուն յարութիւն:

Որ երեքօրեայ թաղմամբ քո տէր մեռուցեր ըզմահ. ըզքեզ բա:

Որ լուսափայլ յարութեամբ քո տէր կենագործեցեր զաշխարհս. ըզքեզ բարեբանեմք ամենեցուն յարութիւն։

Ծանեաք ըզքեզ քրիստոս որ 'ի խաչին բեւեռեցար, եւ հեղմամբ արեանըդ քո փրկեցեր ըզտիեզերս. ծանեաք ոչ այլ աստըւած բաց 'ի քէն։

Որ զանարատ բազուկս քո տարածեցեր 'ի վերայ խաչին. ժողովել ըզհեռացեալսն ամենակալով զօրութեամբ. հաստատութիւն իմ լեր տէր քոյով յարութեամբ։

Տնօրէն խնամողութեամբ քրիստոս որ զդատապարտեալքն մահու լուծեր 'ի վերայ սուրբ խաչին. եւ հաշտեցուցեր ըզհայր ընդ արարածս. արարեր զխաղաղութիւն 'ի յերկինս եւ 'ի յերկրի։

հոգ Նոյն եւ նման հօր եւ որդւոյ հոգիդ անեղ եւ համագոյ. բըղխումըն հօր անքննաբար առող յորդւոյ անճառաբար. 'ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց առաքեցեր. արբեա եւ մեզ ողորմութեամբ 'ի բաժակէդ իմաստութեան։

Էից ստեղծող արարածոց որ շըրջէիր 'ի վերայ ջրոց. նոյն եւ 'ի ջուրսն աւազանին 'ի շնորհել մեզ քում էակցին, գըգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ. առ։

Բաքուն վերնոցն իմանալեաց եւ ըստորին այսր ըզգալեաց. որ մարգարէս տաս 'ի հովուաց եւ առաքեալս 'ի ձկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. առ։

Ի ձայն փողոյ գալըստեան քո ձան
տէր, ամենայն հոգիք զարթիցեն կալ 'ի դատաստանի քում քրիստոս աստուած մեր։

Յորժամ հընչէ բարբառն ահագին, եւ հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմըք փառըք գալըստեան քո տէր։

Յորժամ առնես հատուցումըն տէր, եւ սուրբըք քո պարծեսցին 'ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փըրկիչ կալ 'ի յաջմէ քումմէ։

Զքեզ հայր յառաջ քան զյա- ած
ւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն. աստուած աստուծոց եւ տէր տերանց փրկիչ գոլով։

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ 'ի սուրբ կուսէն. եւ անարատ ծընանիլ յորովայնէ անապական, բանալով ըզմեր նեղութիւնս. աստուած աս։

Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցան հեթանոսաց. զի առաքիչն յաւիտենից առեալ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. աստուած աս։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ շնորհեցեր մեզ յաղթանակ ընդդիմամարտութեան, վանել զզօրութիւնս թշնամւոյն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Սուրբ ըզկեանըս մեր խաղաղացո միայն բարեգութ. եւ փրկեա յամենայն փորձութենէ։

Այսօր վերնոյ դասուն աստուծոյ հրց դձ
վասըն յանցանաց նախաստեղծին 'ի վերայ խաչին պատարագեալ հեղեր զարիւնդ 'ի փրկութիւն. օր-

հնեալ տէր աստուած հարցն է մերոց ։

Այսօր ընդ գիտութեան փայտին մահու որով նախահայրըն մահացաւ, ընդ փրկական քո նշան փոխանակեալ կենաց փայտ մեզ շնորհեցեր . օրհ ։

Այսօր ըզճանապարհ ծառոյն կենաց, զոր եւ քրովբէից պահպանակեալ պահէին ըզգուշութեամբ, տնկեալ ըզցեղէն սուրըն բարձեալ բացեր որդւոց ադամայ . օրհ ։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզ նա յաւիտեան ։

Որ բեւեռեցար 'ի խաչին քրիստոս եհան ըզկապեալսն եւ զթըշնամին անկեալ կապեաց կենարար խաչիւն նորով . բարձր ա ։

Որ փոխանակ պտղոյն մահաբեր ծառոյն, կենաց պտուղն որ 'ի վերայ քառաթեւին կերակրեաց զազգս որդւոց մարդկան, բարձր ա ։

Որ ըզգիր պարտեաց կողածնին լուաց հրահոս վտակօքն 'ի տիգախոց կողէն բըղխեալ զոր արբոյց տիեզերաց . բարձր ա ։

մեծ Մայր լուսոյ մարիամ սուրբ կոյս . որ ըզլոյսն առ 'ի հօրէ ծընար մարմնով . եւ եղեր արեւելք արեգական արդարութեան . հոգեւոր երգով ըզքեզ սրբուհի մեծացուցանեմք ։

Քերովբէից գերագոյն էին աթոռ եւ ծառ կենաց անմահական պըտղոյն . տապանակ կտակի բանին եւ սափոր ոսկի երկնային մանանային . հոգեւոր եր ։

Քեւ բացաւ սրովբէափակ դուռըն դրախտին, եւ քեւ տըւաւ մեզ փայտն անմահութեան . զոր 'ի նմա զենեալն անմահ այսօր յերկնից լուսաւորեաց . հոգեւոր եր ։

Ով քառաթեւ լուսածին գերապանծ նիշ կառուցող կենացն ամենից . միշտ բազկատարած առ քեզ են ։ ողր գկ

Քառակուսի ազգաց հովանի եւ պահապան 'ի յելս եւ 'ի մուտս . փըրկութիւն 'ի յայտնոց եւ պարիսպ ամրութեան ։

Դրօշմ ըզգայութեան եւ կնիք 'ի դէմս ամենից . զոր եւ յաստուածային կատարես խորհուրդ . յորմէ արեգակնային փայլին ճառագայթք ։

Ով պահապան որ ծագեցար յեդեմայ, նշան յաղթութեան ընդ դէմ աներեւոյթ թըշնամւոյն ։ տէր

Դու փակելոյ դրախտին բացող եւ առաջնորդ աւազակին . որ զըրցեղէն սուրըն կապեցեր անեղին հրամանաւ ։

Քեւ ցընծան բոլորայինքս ամենայն 'ի միաւանդամ քո գալըստեանն . եւ յաւէժ զուարճանան դասք անմարմնոցն առ էիցս ։

Ճաշու ։

Ով քառաթեւ լուսածին ։



# ԿԱՆՈՆ

## ՇԱԲԱԹՈՒ ԱՒՈՒՐՆ

Որ ծագեցեր մեզ լոյս մեծ ըզնշան յաղթութեան խաչի քո թագաւոր յաւիտենից . եւ ետուր պարիսպ ամրութեան հաւատացելոց քոց, աշտարակ հըզօր յերեսաց թըշնամւոյն . աղա- օրհ գձ

չեմք ընդ քեզ տէր պահպանեա ըզմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ։

Սա պըսակ զարդարեալ ՚ի շնորհաց իմանալի լուսոյն, եւ եդեալ ՚ի գլուխ մեղուցելոյն, փայլելով երանգօք ներկեալ արեամբ եւ ջրով ՚ի տիգախոց կողէդ զոր ՚ի զինուորէն ընկալար. աղաչեմք ընդ քեզ տէր պահ։

Որ զանդունդս մեղաց ծովուն ստուեր բաժանեցեր, եւ ըզկլունաւորն ծածկեցեր խորօքն յաւիտենականն հրով. հաներ ըզժողովուրդն քո ՚ի բնութենս երկնից անկեալ զօրացն. աղաչեմք ընդ քեզ տէր պահ։

Փայտ կենաց որ փափկանակ մահացու պտղոյն ըզդժնդակ պտուղաբերեցեր. պարըսպեալ պահեա ըզուխտ հաւատացելոց։

Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց ՚ի դրախտական պահպանութենէն. պարըն։

Քեւ աւետեցաւ նախահայրն ՚ի ճաշակմանէ պտղոյն. եւ քեզ երկըրպագեն ամենայն հաւատացեալք. պարըսպեալ պահ

Անուանեալ փայտ գիտութեան ըզմեզ ՚ի կենացն հանեալ արտաքսեցոյց. որով յանցեալ մայրն եւայ, եւ պատրեաց ըզնախահայրն։

Իսկ փայտ խաչի քո կենատու գաւազան զօրութեան կենաց մարդկան եւ յոյս հաստատութեան. առաջնորդ եղեւ մեզ ՚ի կեանսն յաւիտենից։

Ետուր մեզ նշան յաղթող սուրբ ըզխաչ քո. զի սովաւ մըտօք ընդ նեղ դրունն անձկացեալ ճանապարհին. որով ցանկային երկրածին որդիք մարդկան։

Լանկից հօր կամաւորութեամբ եկիր ՚ի չարչարանս. զչարչարանս յանձն առեր. խաչի համբերելով իջեր ՚ի գերեզման։ յոր

Իւղաբերիցն եկեալ ՚ի գերեզման փըրկչին. զիւղս անոյշս բերին, ՚ի խընկել զանապական մարմինդ։

Աւետիս լուեալ ՚ի հրեշտակէն որ ասէր, տէր յարեաւ ՚ի մեռելոց ձեզ կեանս պարգեւեաց։

Յամենայնի բազումողորմ աստուած. նայեա յիս գըթութեամբ եւ խնայեա. զի դու միայն ես մարդասէր։

Եւ խաչիւդ քո կենարարաւ պահեա եւ յարութեամբդ քո փըրկեա եւ ապրեցո. զի դու։

Եւ ՚ի միւսանգամ ՚ի գալըստեան քո տէր, մերըսարին զիս նորոգեալ եւ ապրեցո. զի դու։

Քրիստոս աստուած, որ տարածեցեր ըզձեռըս քո ՚ի խաչին եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան մերոյ. ողորմեա։

Ի խաչին բեւեռեցար, եւ հեղմամբ արեանդ քո փըրկեցեր ըզտիեզերս ՚ի մեղաց, ողոր։

Թաղեցար ՚ի մէջ երկրի, եւ յերրորդ աւուր յարեար, ըզդըժոխս աւերեցեր բանիւ. ողո։

Ի խաչանիշ փայտէն գըղըրդեցան դըժոխք. զօրութեամբ սուրբ հոգւոյն նորոգեցաւ երկիր. ով է սա որ խափանեաց ըզմահ։

Հրեշտակն աւետէր կուսին մարիամու, սա է ՚ի սկըզբանէ բանն

որ յառաջ քան զյաւիտեանս որ-
դին. սա է Թագաւորն որ խափա-
նեաց ըզմահ:

Յարեաւ յաւուր երրորդի. վէ-
մըք պատառեցան Երկիր շարժե-
ցաւ սասանեցան դըժոխք, սա է
կենդանին յաւիտենից Քրիստոս:

հոգ Արեգակն արդարութեան
Քրիստոս ծագեալ յաշխարհ հա-
լածեաց ըզխաւարն անգիտու-
թեան, եւ յետ մահու եւ յարու-
թեան համբարձաւ առ հայր յորմէ
ծագեաց. որ երկրպագի յեր-
կնաւորաց եւ յերկրաւորաց ընդ
հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ
եւ մեք Երկրպագանեմք հօր
հոգւով եւ ճըշմարտութեամբ:

Որ փոխանակ ծոցածին բանին
որ էր յերկինս, առաքեցաւ առե-
տիքըն հօր 'ի բարձանց հոգին
ճըշմարտութեան, մըխիթարել զոս
յադամեայ տըրտմեցելոց եւ հրա
զինել զընտրեալ դասս առաքե-
լոցն. վասն որոյ:

Այսօր տըրտմական եւ գիշերա-
յին լուծան երկունք ծընընդեան
նախամօրն. քանզի զծնեալն մար-
մնով 'ի մահ եւ յապականութիւն,
վերըստին ծնանի հոգին յորդւոց
լուսոյ հօրն երկնաւորի. վասն որոյ
եւ մեք եր:

հան Արարչագործ աստուած, որ
յոչընչէ գոյացուցեր զերկինս եւ
զերկիր. օրհնեմք ըզքեզ որ հան-
գուցիչդ ես նընջեցելոց հայր
ամենակալ:

Բանդ աստուած եւ համագոյ փա-
ռաց հօր պատկեր. գովեմք ըզ-
քեզ որ յարութիւնդ ես նընջե-
ցելոց որդի միածին:

Աղբիւր անըսպառ յորմէ բաշխի
տիեզերականն շընորհք. բարեբա-
նեմք ըզքեզ որ նորոգողդ ես
նընջեցելոց հոգի ճըշմարիտ:

Զանճառելի լուսոյ մայր, եւ ած
ըզբնակարան անըսկըզբնակից որ-
դւոյն. օրհնութեամբ մեծացու-
ցանեմք:

Զանհաս տնօրէնութեան մայր,
եւ զանձնաւոր տաճար աստուծոյ
բանին. օրհ:

Զբոլորից փըրկութեան մայր, որ
զանտանելին յեցիր 'ի յարգանդի
եբարձ. ըզնա ամենեքեան օր-
հնութեամբ մեծացու:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Զողաւարձ նըրպատակ օրինակեալ
քառաթեւ սուրբ խաչին ձեւա-
ցուցաներ մովսէս նըրպատելեան բա-
նակին զօձըն պըղընձի, ապրեցու-
ցանել զվիրաւորեալսն 'ի խածա-
նոյ անղնոց Թունից. աղաչեմք ըզ-
քեզ տէր պահպանեա ըզմեզ ընդ
հովանեաւ խաչի քո տէր:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Զկենդանատուիր անարատ ծընողի
քո արկանեմք առաջի անոխակալ
տէրութեանդ քո. յորժամ գաս
փառօք հօր դատել ըզթըշնամին
խաչի քո. ներեա յանցանաց մե-
րոց բարեխօսութեամբ մօր քո եւ
կուսի. աղաչեմք ըզ:

Քրիստոս աստուած որ առա- հրց
ւել քան զարեգակն ըզնըշան քո գկ
յաղթող հրաձեւ ցուցեր զերկ-
վերոյ սրբոյն գողգոթայ. վասն որոյ
ըզքեզ բարեբանեմք աստուած
հարցըն մերոց:

Քանզի պայծառ եւ սուրբ փըր-
կական խաչ քո տէր զարդա-

րեալ ՚ի լուսոյ յերկնից ցոլացեալ երեւիւր յերուսաղէմ. վասն որոյ։

Եւ բոցաճաճանչ փայլմամբ արեգակնայիցըն յաղթէր ճառագայթից. եւ ՚ի յաշխարհէն ընծայք եւ եկլք հետեւեալք ՚ի քաւարանն ՚ի մաղթանս. վասն որոյ ըզքեզ բարեբանեմք ասար։

Գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ զահաւոր խորհուրդ միանգամ գալըստեանն իւրոյ քրիստոս տըպաւորեալ այսօր փայլմամբ սուրբ խաչին, որով երկիրս պանծացաւ. Եւ բար։

Որ ահաւոր ձեւով ցուցաւ ցընծացաւ երուսաղէմ. եւ զարհուրեալ դողային դարք սանդարամետից. Եւ բար։

մեծ Աստուածածին պայծառ քան զերկինս, որ ՚ի մեզ ծագեցեր ըզլոյսըն մեծ եւ գերազանց, որով խաւարն անգիտութեան հալածեցաւ. սրովբէական ձայնիւ զքեզ բարեբանեմք, եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք։

Ամպ թեթեւ եւ լուսաւոր, որ զանձրեւըն կենաց ՚ի քեզ հեղեալ ՚ի յերկնային ծովէն, զոր հոսեցեր ՚ի յերկիր ծարաւուտ. սրովբէական ձայնիւ զքեզ բա։

Պարտէզ փակեալ աստուածատունկ եդեմ, որ եւ ծառըն կենաց ՚ի մէջ դրախտի քո ՚ի հոգւոյն տընկեալ, անմահական պտղովն ելից ըզտիեզերս. սրովբէա։

ողր Այսօր նշան յաղթող երեւեալ ՚ի յերկրի պայծառացոյց ըզտիեզերս. զէն յաղթութեան ետուր ըզխաչ քո տէր, ապրեցուցանել ըզմեզ ՚ի պատրանաց թշնամւոյն։

Փայտ կենաց կանգնեալ ՚ի մէջ տիեզերաց. յոյս եւ ապաւէն ազգի մարդկան. սովաւ պահեսցէ ըզմեզ յամենայն վտանգից մերոց. ապրեցուցանել ըզ։

Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա ըզմեզ քրիստոս աստուած. որ տարածեցեր ըզձեռըս քո ՚ի նմա. եւ լուծեր ըզկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեցուցանել ըզ։

Խաչի քո քրիստոս երկրպագեմք արարածք ամենայն, որ ՚ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սովաւ եղիցի մեզ պահապան յաղթող, ապրեցուցանել ըզմեզ ՚ի պատրանաց բանսարկուին։ տէր

Ի սմա բարձրացար բարձրոցդ անխծից, որ փառաւորեալդ ես ընդ հօր. ժողովեալ ըզհեռացեալսըն կենարարեր փայտին. ապրե։

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սովաւ ազատեցին որդեգրեալքն ՚ի մեղանէր բանսարկուին. որ ազատեաց ըզմեզ ՚ի պատ։

Պարունակեալ պահէին յանեղաչէն դրախտին ըղձանապարհըս ծառոյն կենաց քրովբէական հրեղէն բոցեղէն սրովբէիւք. այսօր արտափայլեալ ցուցար յերկրի աստուածազարդ փայտ կենաց եւ փրկութեան. զքեզ օրհնեմք մանկունք սուրբ եկեղեցւոյ։ Յւկ սող

Սաբեկայ ծառոյն վերաբերեալ խոյ յողջակէզ փոխանակ իսահակայ. այլ ՚ի վերայ քո զենաւ գառն անարատ ՚ի հաշտու-

Թիւն հօր եւ 'ի բառնալ ըզմեղըս
մեր. զքեզ օրհ:

Պարծանք պօղոսեան, դաւանեալ ըզքեզ աստուածային բանին տեղի եւ զէնարան. քանզի քեւ ապրեցաք 'ի խածանող եւ յանմարմին գազանէն. եւ 'ի վերայ քո հեղեալ շիթք անապական արեանն ըզկողածնին ջընջեաց ըզմեղս. զքեզ օրհ:

ճչւ Սուրբ զխաչ քո շնորհեցեր զէն եկեղեցւոյ քում սրբոյ. որով դատապարտեալ պարտեցաւ թշնամին:

Սովաւ պահպանեա զժողովուրդս քո քրիստոս. որով երկրպագեմք քեզ ընդ հօր եւ հոգւոյն:

Ի քեզ ապաւինիմք քրիստոս որ գալոց ես խաչիւ. որպէս զի փրկեսցես ըզմեզ յայնմ աւուր ահեղ ատենին:

հմբ գկ Այսօր երեւումն մեծի ճառագայթի նշանի տեառն աստուծոյ մերոյ փայլեալ 'ի նաւակատիսն որ յերուսաղէմ. ժողովուրդք բարեբանելով ըզքրիստոս տօնեցէք ուրախութեամբ:

Քանզի նշոյլք կենսատու սուրբ խաչին արեգակնակերպ փայլմամբքն թափանցին լուսովն 'ի յարեւելից յայտնեալ. ժողովուրդք բարեբեա:

Ի յերկնից ցուցեալ ահեղ եւ նորասքանչ հրաշիւք ցուցաւ սա սուրբ գողգոթայ, նշանն տէրունական. ժողո:



# ԿԱՆՈՆ

## ՎԱՐԱԳԱՑ ԽԱՉԻՆ

ՆՇԱՆԱՒ ամենայաղթ խաչիւդ քո քրիստոս պահպանեա զմեզ մարդասէր յաներեւոյթ թշնամւոյն. զի դու միայն ես թագաւոր փառաց օրհնեալ յաւիտեան: օրհ ակ

Որ 'ի վերայ սորա տարածեցեր զանարատ բազուկս քո. եւ հեղեր զարիւնդ 'ի փրկութիւն տիեզերաց. զի դու:

Ի միւսանգամ քո գալըստեանն յերեւիլ սուրբ նշանիս, արժանի արա ըզծառայս քո վերըստին նորոգման. զի դու:

Խաչ քո եղիցի մեզ ապաւէն բոցանիշ փայլմամբն լուսով. խորտակեաց ըզթշնամին, եւ ելոյծ ըզդատակնիք անուանեալ փայտին կենաց 'ի փրկութիւն տիեզերաց: ✠

Սեղան քո տէր զօրութեանց հաւատով կանգնեցաւ 'ի խորանի քում. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք:

Վէմ պատուական 'ի խորանի քում հիմնեցաւ այսօր. եկայք:

Ի սմա մատուցաւ ճշմարիտ պատարագ եւ զենումն անապական. եկայք ժողովուրդք երկրպագ:

Իջեր յերկնից որդի աստուծոյ եւ մարմնացար 'ի սրբոյ կուսէն, որ անմեկնելի ես 'ի հօրէ. ողորմեա: յար

Եկիր 'ի չարչարանս կամաւորապէս մատուցեալ եւ խաչեցար վասն ազգի մարդկան, եւ 'ի գերեզման իջեր անմահական. ողորմեա։

Զմահ լուծեր եւ զաշխարհս ազատեցեր կարողապէս տէր, եւ 'ի մեռելոց յարեար իշխանութեամբ.
ողորմեա։

Որ խոնարհեցար յերկնից 'ի հայրական ծոցոյ միածին որդի աստուծոյ, եւ առեր մարմին 'ի սրբոյ կուսէն վասն մերոյ փրկութեան. ողորմեա։

Ընդ մեզ մատուցեալ չարչարեցար ընդ մեղաւորաց. եւ կոխեցեր ըզգլուխ վիշապին. եւ ջնջեան խայթոցն մահաբերին. եւ փրկեցեր ըզստեղծեալս. ողորմեա։

Բեւեռեցեր ըզմեղս մեր 'ի վերայ խաչին. եւ համբերեալ մահու իջեր 'ի գերեզման. կենդանութիւն շնորհեցեր նստելոցն 'ի խաւարի. եւ զօրութեամբ յարեար.
ողորմեա։

Թագաւորեաց աստուած 'ի վերայ հեթանոսաց, եւ բազմապատկեալ պայծառացոյց սուրբ զեկեղեցի. ժողովուրդք ըզքրիստոս բարեբանեցէք։

Զգեցաւ տէր զօրութիւն ընդ մէջ իւր ածաւ. քանզի ջնջեաց զխայթոց մահու խաչիւն իւրով սրբով. ժողովուրդք ըզքրիս։

Յարեաւ աստուած եւ ոխեղէնք ամենայն նորափետուր զարդարեցան. եւ մանկունք հալածեցան մարմնոյ եւ արեան կենարարին.
ժողովուրդք ըզքրիս։

տպ Որ 'ի սկզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր իմաստութիւն. զոր նախանըշան տեսութեամբ նշանակեալ մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերինն, լուսաւորեալ փառօքն աստուծոյ։

Որ ըզխորհուրդ անճառական անօրէնութեանդ քո 'ի սրբոյ կուսէն. ուղղաւորեալ տապանակն աստուածային ուխտի կտակարանաց բանիդ աստուծոյ. փառաց անեղին տեղի հանգստեան։

Որ 'ի կենաց վերադարձի բնութեանս դարձմամբն յորդանանու օրինակեցեր. եւ ըզբըղխումն մահու եւ դժոխոց կործանմամբն երիքովի տապանակաւ խաչին հրաշագործեալ նոր իսրայէլի. օրհնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք։

Որ յերկնային զօրս անմարմնոցն նախ հեղեր առատապէս հոգւոյդ ճըշմարիտ. զաստուածային եւ զվերադոյն քո իմաստութիւնդ. լինել փառաբանիչ սուրբ երրորդութեանդ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։ հոգ

Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ երրորդութեանդ խորհըրդակցութեամբ. զարդարեցեր փըչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն ու 'ի նմանէ խօսեցար օրհնօք եւ մարգարէիւք.
ընդ նո։

Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մըտեալ 'ի վերնատունն գործըն փակելովք. շնորհելով ըստ առաջին փըչմանն ըզքեզ մեծատանեաց. առաքելոցն տայց անէք հոգի սուրբ.
ընդ նո։

Հան Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն աններով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո։

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին 'ի յարեւելից. եւ դրօշմութիւնք հրաշիցն բանին. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ։

Զարհուրեալ դողան արարածք 'ի ձայնէ սոսկալագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ։

ան Որ նախիմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հիմունս հաստատութեան ըզդաս արդարոց. աղաչանօք սոցա խնայեա 'ի մեզ։

Որ զօրհնութիւն նախաստեղծից աստուածայինդ արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր. այսօր 'ի յովակիմ եւ 'ի յաննա. աղա։

Որ ըզխոստումն ուրախական նահապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական եւ թագաւորական գաւազանացըն միացեալ ցուցեր այսօր 'ի յաննայէ. աղա։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Վերանուեալ ցընծան երկինք, եւ երկիրս ուրախանայ ընդ յայտնիլ սրբոյ խաչին սեւակնաձեւ քառաթեւին, որ զաշխարհս լուսաւորեաց արեգակնակերպ ճառագայթիւք։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Ցընծացաւ երուսաղէմ բերկրեցան հաւատացեալք, նորահրաշ զարդարեցան, քանզի տեսին զյաղթող նշանն. արարածք ամենայն 'ի լուսոյն պայծառացան։

Որ ըզլոյս անճառելի աստուածութեանդ քո քրիստոս 'ի վերայ խաչին ծագեցեր այսօր 'ի լեառըն վարագայ. օրհնեալ տէր աստուածն հարցըն մերոց։ Որհ դձ

Որ զահաւոր եւ զմիւսանգամ քո գալստեան երեւումն ծանուցեր այսօր նշանաւ խաչի քո ճառագայթելով յերկրի. օրհնեալ տէր աստուած։

Որ ետուր նշան երկիւղածաց եւ զէն ընդդէմ թշնամւոյն. պահպանեա սովաւ զհաւատացեալս անուանելով քում սրբոյ. օրհնեալ տէր աստուած։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ զարդարեացն այսօր ըզնշան խաչին երկնային լուսով պայծառ քան զարեգակն. ըզտէր օրհ։

Որ յայտնեցայն այսօր զխորհրդական նշանն հրեշտակացն ձեռամբ 'ի լեառըն վարագայ. ըզտէր օրհ։

Նկայք փրկեալք կենարար խաչին. քրիստոսի փրկչին մերոյ 'ի սմա երկրպագելով, ըզտէր օրհ։

Մայր լուսոյ մարիամ սուրբ կոյս. որ ըզլոյսն ան. 'ի հօրէ ծընար մարմնով. եւ եղեր արեւելք արեգականն արդարութեան. հոգեւոր երգով ըզքեզ սրբուհի մեծացուցանեմք։ մեծ

Քերովբէից գերագոյն էին սմթու եւ ծառ կենաց անմահական պտղո-

զոյն. տապանակ կտակի բանին եւ սափոր ոսկի երկնային մանանային. Հոգեւոր եր:

Քեւ բացաւ արքայական դուռն դրախտին, եւ քեւ տրուաւ մեզ փայտն անմահութեան. զոր 'ի նմա զենեալն անմահ այսօր յերկնից լուսաւորեաց. Հոգեւոր եր:

ողր գձ Քեզ քրիստոսի կաթուղիկէ եկեղեցւոյ շնորհողի զյաղթական ընդպատուական զաստուածընկալ սուրբ նշանիս, մատուցանեմք զօրհներգութիւն միշտ 'ի բարձունս:

Սա կանգնի քո քրիստոս եւ թեւօք ամենազօր սուրբ հոգւոյն, եւ դասուք հրեշտակաց թռուցեալ եկաւորի 'ի լեառն վարագայ բնակել 'ի նմա:

Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս. համբարձէք միաբան ըզձեռս ձեր 'ի սրբութիւն, եւ ըզբնակեալն 'ի սմա միշտ փառաւորեսցուք:

տէր Հրաշափառ տէրութիւն 'ի կաթուղիկէ եկեղեցւոյ տեսանի, գործարան մահու մահուամբ առիթ գոլ կենաց, եւ մահացուցիչ նախաստեղծին մահուամբ գոլ շնորհող յարութեան:

Պարգեւ գերագոյն պարգեւի այսօր հաւատացելոց, եւ մահացուն 'ի կենաց առնու իւր զօրս վերելեանս. եւ թռուցեալ վերագոյն բնակել 'ի տեղւոջն սրբութեան:

Եկայք ժողովուրդք ընդ հոգեղինացըն սպասաւորեսցուք. երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս, փառաւորեսցուք ըզհրաշագործ պարգեւաց տըւողն:

Ճաշու:

Քեզ քրիստոսի կաթուղիկէ:

Համբարձի:

Հրաշափառ տէրութիւն:



# ԿԱՆՈՆ

## ԳԻՒՏ ԽԱՉԻՆ

ՀՐԱՇԱԿԵՐՏ եւ զօրեղ փայտ խաչի քո քրիստոս գաւազան զօրութեան 'ի յերկրի երեւեալ. Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք: օրհ աձ

Զոր հրեշտակն ծածկեալ զանթաքչելի ըզգանձըն, փափագմամբ թագուհւոյն փայտ կենաց յայտնեցաւ. Եկայք ժողով:

Սա է զէն յաղթութեան հաւատացելոց. ախոյեան եւ կնիք յաղթող ընդդէմ թշնամւոյն. Եկայք ժողովուրդք եր:

Անձառելի երեւումն երեւեալ դշխոյին, նշմարելով յայտնի յերուսաղէմ խնդրէր ըզպատուական փայտ խաչին, յոր ըզմեռեալն բեւեռեցին:

Մեծապատիւ հրամանաւն ժողովեալ հրէից, ցուցանելով նոցա ըզպատուական փայտ խաչին, յոր եղեալ բարձրացաւ արարիչն արարածոց:

Ընդ յայտնել սրբոյ խաչին 'ի տեղւոջըն սրբութեան բուրմամբ անուշահոտ խնկոց. եւ լցան տիեզերք մեծապէս պարգեւօք:

Որ ըզնախնւոյն առիթ մահու փայտ կենաց շնորհեցեր. եւ ե- ✠

տուր յաղթութիւն մահացու բնութեանս. ՚ի սմա բանիդ հօր Երկրպագեսցուք:

Որ զանարատ բազուկս քո ՚ի խաչին տարածեցեր Քրիստոս Աստուած, եւ նշան յաղթութեան ետուր մեզ. սովաւ ըզկեանս մեր պահեա:

Որ զաշխարհակեցոյց բազկատարածութիւն խաչի քո Քրիստոս Աստուած զաւազան զօրութեան ետուր մեզ. սո:

Որ ըզմեռեալն ՚ի ճաշակմանէ փայտին յանցանաց, կենաց փայտիւն կենագործեցեր. սովաւ ըզկեանս մեր պահեա:

Սուրբ խաչն օգնական հաւատացելոց, կանգնեցաւ ՚ի յերկրի յաղթող թշնամւոյն. եկայք ժողովուրդք Երկրպագեսցուք:

Արարիչն Աստուած բարձրացաւ ՚ի խաչին, եւ զմեռեալս մեղօք փայտին ճաշակմամբն, ՚ի սմա նորոգեալ կենդանացոյց:

Ի միւսանգամ գալստեան Աստուածորդւոյն, սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց:

յար Անճառելի հօր էակից, ՚ի խաչ ելեր կամաւ հօր. ողորմեա:

Անմահութեանց տուող Քրիստոս, ՚ի գերեզմանի իջեր որպէս մարդ. ողոր:

Եւ յերրորդ աւուր յարեար, յոյս յարութեան ցուցար մեզ. ողոր:

Որ խոնարհեցար ՚ի յերկնից եւ իջեր ՚ի յերկիր միածին որդի եւ բանդ Աստուած. ողորմեա բանաւոր հօտի:

Որ կանգնեցեր ըզխաչ քո ՚ի մէջ երկրի. եւ ելեալ բարձրացար փրկեցեր ըզտիեզերս. ողոր:

Թաղեցար ՚ի նոր ՚ի գերեզմանի, եւ յարուցեալ յերրորդ աւուր ՚ի յերկինս համբարձար. ողոր:

Որ ՚ի քովբէական կառս հանգչիս, այսօր իջեր յերկնից ՚ի դաս առաքելոցն սուրբ հոգի. օրհնեալ ես թագաւոր անմահ: Հոգ

Որ գնաս ՚ի վերայ թեւոց հողմոց, այսօր ՚ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի. օրհ:

Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր ՚ի հաստատել զեկեղեցի քո սուրբ հոգի. օրհ:

Որ անճառ տնօրէնութեամբ ՚ի փրկութիւն ազգի մարդկան Հան
խոնարհեցար բանդ Աստուած. այսօր հանգստեամ եւ ըզմեռ ըզննջեցեալսն ընդ սուրբս քո. որ միայն ես մարդասէր:

Որ անչարչարելիդ մարմնով եկիր կամաւ ՚ի չարչարանս, եւ ՚ի խաչին բեւեռեցար, հեղեր զարիւնդ ՚ի փրկութիւն. այսօր:

Որ թաղմամբն երեքօրեայ ըզբռնութիւն մահու լուծեր, եւ կոխեցեր զիշխանն մահու, եւ վերածեր ըզննջեցեալսն. այսօր:

Որ հրաւիրեցեր յանմահութիւն զազգս մարդկան անմահութեանց բաշխող Քրիստոս, աղաչանօք Աստուածածնին. այսօր:

Որ ըզհրեշտակին ըզձայնն լըւեալ հիացեալ բերկրեցար, բարեխօսեա վասն մեր, մեք օրհնաբանեմք զօրհնեալդ ՚ի կանայս: ած

Որ ըզհուրն աստուած յորովայնի քում կրեցեր անկիզելի մորենի. բարե։

Որ զանշօշափելին յեւից 'ի գիրկս քո բարձեալ դիեցուցեր կաթնաւուն. բարե։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ զանճառ լուսոյդ բարձողըն ծածկելով հրեղինացն, 'ի յերկրէ ծագեցեր զերկնային ճառագայթ. 'ի սմա բանիդ հօր երկրպագեսցուք։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ ահաւոր հրաշիւք ցուցեր ըզնըշան խաչի քո, յայտնելով աշխարհի յարութեամբ պատանւոյն. 'ի սմա բա։

հրց բձ Որ փափագելի տենչմամբ եկեալ 'ի քաղաքն երուսաղէմ աստուածասէր դըշխոյն, խնդրէր ըզփայտ խաչին, որ բարձեալ մարմնով յինքեան զաւարըւած հարցըն մերոց։

Յորմէ զարհուրեալ զօրային դասք բազմութեան հրեղինացն 'ի յահէ թագուհւոյն. ազդմամբ սուրբ հոգւոյն ցուցան պատուական փայտ խաչին. որ բա։

Ուստի բուրելով խընկոց անուշահոտութիւն 'ի տեղւոջըն սրբութեան, ցընծացաւ Երուսաղէմ ընդ յայտնիլ սրբոյ խաչին 'ի տեղւոջըն գողգոթայ. որ բա։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Այսօր նըշան սուրբ խաչին 'ի յերկրի երեւեալ. օրհնը։

Այսօր ընդդէմ թըշնամւոյն զէն անպարտելի ցուցաւ մեզ. օրհնը։

Երանելի աստուածասէր սուրբ դըշխոյն եկեալ 'ի քաղաքն Երուսաղէմ խնդրէր ըզփրկական ծագումըն մեծի փայլմանն. եւ քարոզէր նոցա զմորենին վառեալ որ ոչ այրէր. մեծացուցանելով ըզծընեալն 'ի կուսէն։ մեծ ած

Եւ խոշտանգեալ ըզդասըս հրեղինացն, խոստովանէր յուդայ. եկեալ 'ի տեղին գողգոթայ հաւատով. եւ քարոզէր նոցա զդուռն ընդ որ եմուտ բանն աստուած. մեծացուցա։

Եւ համբարձեալ ըզձայնըն յուդայի խնդրելով 'ի տեառնէ ըզտենչալին ամենեցուն սուրբ ըզխաչն. եւ հաւատով գոչէր. Եկայք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս. մեծա։

Այսօր խնդրի պատուական փայտ խաչին աւանդեալն 'ի գողգոթայ, 'ի ձեռն աստուածասէր դըշխոյին. Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս։ ողբ բձ

Այսօր ընծայէ գողգոթայ ըզծածկեալն 'ի յերկրի, վերաբերեալ անուշահոտ խընկովք, 'ի ձեռն երանելւոյն յուդայի. Եկայք հաւատացեալք երկրպագ։

Այսօր 'ի ձեռըն փրկական սուրբ խաչին կենագործի պատահին մեռեալ. եւ ողբայ սատանայ ըզկործանումն իւր. իսկ մեք քրիստոսի հաւատացեալք երկրպագ։

Ապաւինեցաք 'ի խաչ քո արարիչ յաւիտենից, որ ետուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թըշնամւոյն. աղաչեմք սուրբ փրկիչ պահպանեա զանձինս մեր։ տէր

Բարձրեալ թագաւոր որ վասըն մեր ելեր 'ի խաչ, եւ բարձեր սովաւ զյանցանս նախաստեղծին ադամայ. ողոր:

Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեալ, զոր տեսեալ այսօր պըղծոյ կործանեցաւ անկանգնելի. ողոր:

Դողացաւ թըշնամին ընդ յայտնել սըրբոյ խաչին, եւ 'ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. ողոր:

Երկինք ցընծայցին եւ երկիր ուրախանայր, քանզի փըրկիչ ցուցաւ սուրբ խաչն եւ լուսատու տիեզերաց. աղաչեմք սովաւ փըրկիչ պահպանեա զանձինս մեր:

Ճաշու:

Այսօր խընդրի պատուական:

Համբարձի:

Ապաւինեցաք 'ի խաչ քո:



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՄԱՐԳԱՐԷԻՑ

օրհ / ակ Որ զաստուածային զօրութիւնդ քո ծանուցեր հոգիդ ճըշմարիտ, բաշխելով իշխանաբար ըզպարգեւըս քո տեսանողաց մարգարէիցն 'ի սկըզբանէ. բարեխօսութեամբ սոցա խընայեա 'ի մեզ:

Որ մաքրեցեր բնակարան աստուածութեանդ քո սուրբ ըզմարգարէսն, եւ աղբերաբար հեղեր յանձինս նոցա զանապական եւ զերկնային շնորհաց քոց բըղխումն. բարեխօսու:

Որ յայտնեցեր ըզծածկեալ խորհուրդ քոյոց սիրելեաց. եւ անճառելեաց ապագայից պատմողս արարեր տնօրէնութեան քում էակցի բանիդ աստուծոյ. բարեխօսութեամբ սոցա խնայ:

Որ առաքեցեր նախընթաց քում գալըստեանդ սուրբ ըզմարգարէսն, աւետարանել տիեզերաց ըզիջումըն քո 'ի հայրական ծոցոյ 'ի փըրկութիւն հեթանոսաց. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խընայեա 'ի մեզ: ✱

Ճրագ օրինացըն մովսէսի լուսատու տանն իսրայէլի, եւ իմանալի արեգականըն յառաջընթացն առ 'ի յերկիր ծագմանն 'ի կուսէն. առ քրիստոս բարեխօսեա վասն անձանց մերոց: յող

Մըկըրտել ըզտէրն աստուածն առ քեզ եկեալ հրաժարէիր, տեսանելով զգերազանցութիւն լոյս աստուածութեանն ընդ հողեղէն բնութեանըս պարունակեալ. առ քրիստոս բարեխօ:

Յորժամ էջ 'ի յորդանան հուրն աստուած 'ի քէն մըկըրտել, վերնական իշխանութիւնքըն զահի հարեալ զարմանային նորահրաշ տեսլեամբըն. առ քրիստոս բարե:

Ի յանսահման ծոցէն հօր գըթութեանց բըղխմունք եւ սուրբ առաքելովք. անդրանիկ խորհուրդք եւ լոյս գերազանց. երկոտասան ազգաց պըսակ սուրբ եկեղեցւոյ. բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց: առ

Աշխարհակիր բանին բազկաց եդեալ հիմունք սրբոյն սիոնի. լերինք անշարժք հովիւք ծաղկա-

ծինք. հարազատ վէմք հաւատոյ պետրոս եւ անդրէաս. բարե։

Ի բարեբանուն հնչւոյն վտակք եւ ոռոգմունք տիեզերաց. ցօղմունք հրեղէնք սատեղք լուսափայլք. յխաւարի թագաւորին վանկաս լանջաց սուրբ յովհաննէս եւ յակոբոս. բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց։

հայ Որ հրաւիրեցեր զորդիս մարդկան յորդեգրութիւն հօր քո որդի աստուծոյ. եւ կոչեցեր յարքայութեան քո ժառանգութիւն 'ի ձեռըն սուրբ հայրապետաց. աղօթիւք սոցա ողորմեա։

Որ լուսաւորեցեր զեկեղեցիս հայաստանեայց լուսով քո քրիստոս, եւ զարդարեալ նորոգուցեր պայծառ ծագմամբ շառաւիղօք սրբոյն գրիգորի. աղօ։

Որք զընթացս իւրեանց կատարեցին ըստ հաճոյից կամաց քոց քրիստոս, նահատակեալք ճըգնութեամբ ընդդէմ թշնամւոյն, եւ փոխեցան յերկնից յարքայութիւնդ. աղօ։

մրտ Ընդ յիշատակ սրբոց մարտիրոսացն այսօր տօնէ եկեղեցի հըռչակելով ըզճըգնութիւն սոցա հայր երկնաւոր. աղօթիւք սոցա ողորմեա։

Հրաշազարդ եւ պայծառ առաքինութեամբ քարոզեցին ըզքեզ տիեզերաց. քանզի իջեր 'ի հօրէ եւ մարմնացար 'ի սրբոյ կուսէն որդիդ միածին. աղօ։

Անուշահոտ բուրմամբքդ քո լըցին ըզտիեզերս կենարարք աւետեօք. եւ ընդ վերին դասակարգութիւնսըն համաձայնեալ բարեբանեն ըզքեզ հոգիդ ճըշմարիտ. աղօ։

Որ առաքեցար 'ի հօրէ հոգիդ հոգ
անեղ եւ համագոյ. աղաչանօք տնօրինական քում էակցին. լինել մըխիթարիչ սուրբ առաքելոցն. աղաչեմք ըզքեզ ողորմեա։

Որ իջեր տիրաբար յերկնից սնատիկ հոգւոյ նմանն աստուած յայտնապէս, եւ 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար 'ի դասս առաքելոցն. աղա։

Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին տըրմեցելոց որդւոց ադամայ ըզբաժակն ուրախարար յայդւոյն եդեմայ. աղա։

Յորժամ յերկնից գոչէ փողն հան
ազդեցութիւն անուանով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո։

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլեն 'ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշէկըն բանին. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ։

Զարհուրեալ դողան արարածք 'ի ձայնէ սրովբէագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ։

Որ նախիմաց իմաստութեամբ ած
տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հիմունս հաստատութեան ըզդասս

արդարոց. անլուչանօք սիրով խոնարհեալ ՚ի մեզ։

Որ զօրհնութիւն նախաստեղծին աստուածապտուղ արուաց եւ իգանց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր. այսօր ՚ի յովակիմ եւ ՚ի յաննա. ալլ։

Որ ըստ խոստմանն աբրահամու նահապետին մեր լոյս հօրդ. քահանայական եւ թագաւորական գաւազանացըն միացեալ ցուցեր այսօր ՚ի յաննայէ. ալլ։

խաղ Ի վերայ վիմի հաւատոյ հիման առաքելոց եւ մարգարէից շինեցեր ըստ քո սուրբ զեկեղեցի. եւ ՚ի սմա միաձայնեալ երգեն մարդիկ ընդ հրեշտակս, փառաւորելով սուրբ զերրորդութիւնդ։

Տեղի ապաւինի եւ ժողովարան բանաւոր հօտի, բնակարան հրեշտակաց, նաւահանգիստ արդարոց եւ մեղաւորաց քաւարան. պարգեւեալ առաքելովք եւ մարգարէիւք։

Բանն աստուած եւ ծածկեալ խորհուրդըն յաւիտենից, իջեալ ՚ի յերկնից մարմնացեալ ՚ի կուսէն խաչեալ յերկրի եւ թաղեալ ՚ի նոր ՚ի գերեզմանի, եւ յարուցեալ յերրորդ աւուր, զի զմարգարէիցն զբանսն կատարեսցէ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ խոնարհեցար յանպատում փառաց հօրդ աստուածոյ, եւ եկիր ՚ի կատարումըն մարգարէիցըն նախաձայն քարոզութեանցն անճառ խոնարհութեամբ. բարեխօսութեամբ սորա քրիստոս խնայեա ՚ի մեզ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Որ լուծեր կենարար մահուամբ քո տէր զերկունս մահու, իջանելով ՚ի դըժոխըս վերածեր ընդ քեզ զհոգիս արդարոց մարգարէիցն ՚ի լոյսն անստուեր. բարե։

Որ ընդ հողեղէն բնութեան մերում խառնեցեր ըզբանական հոգիս. ունել զօրութիւն ընդունելոյ զաստուածային եւ զհոգեւոր ըզշնորհս իջեալ ՚ի վերուստ. օրհնեալ տէր աստուած հարցըն մերոց։ հրց գձ

Որ շնորհեցեր մաքուր հօտիդ յիսրայէլի զհոգի մարգարէութեան, որով ծանուցեր յառաջագոյն բազմապատիկ օրինակօք զանճառելի խորհուրդ քո մարդեղութեանդ. օրհ։

Որ զանեղ գոյդ լինելութիւն իբրեւ զեղեալ տեսանէին, յառաջընորդական միտըս նոցա ուսուցեալ հոգիդ ըզկերպարան խորին զերադոյն դրոշմիւք ՚ի վեր քան ըզբան. օրհ։

Ըզտէր օրհնեցէք բոլոր արարածք ըզնա յաւիտեան։ գ

Ընդ աւետաւորն յառաջագոյն փրկութեան մերոյ, ծափս հարէք եկեղեցիք հեթանոսաց աղաղակելով, ըզտէր օրհ։

Ընդ տեսանողաց մարգարէից հնոյն իսրայէլի, քահանայք նորոյ ուխտիս բազմամբոխք, ըզտէր օրհ։

Անարատ կոյս աստուածածին մարիամ, սրբուհի եւ մայր քրիստոսի, յարգանդի տարար զանտանելին ամենեցուն. օրհնութեամբ ըզքեզ աստուածածին մեծացուցանեմք։ մեծ

Ըզքեզ երկնային դուռըն զոր տեսեալ եզեկիէլ, եւ ասացըն զոր

ծաննեան գեղեծոն. սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից. օրհ։

Երբես խորհուրդըս սոսկալիս 'ի քեզ տեսանի աստուածածին յըղութիւն անսերմնականն, ծնունդ անարատ, կուսութիւն յետ ծնընդեան մնալով անապական. օրհ։

ողր Որ աւետաւոր քում գալըստեանդ առաքեցեր յաշխարհ ըզսուրբ մարգարէսն. եւ եկեալ խոնարհութեամբ նոր օրինօք զթերին լըցեր 'ի գիրս օրինաց եւ մարգարէից. բարեխօսութեամբ սոցա քրիստոս ողորմեա մեզ։

Որ կոչեցեր մարգարէիւք յառաջագոյն ըզհեթանոսս քեզ նոր ժողովուրդ. եւ ըզդուստրըս սիոնի զեկեղեցի հեթանոսաց հարսըն սիրելի անմահ փեսային. բարե։

Որ ըզփառըս տաճարիս զոր շինեցեր շինող էից 'ի վերայ վիմին, բարձրագոյն քան զառաջինն, եւ գերազանց վայելչութեամբ տեսանողքն ծանուցին նմանիւք հոգւոյն. բարե։

տէր Այսօր ժողովուրդք որք 'ի հեթանոսաց, հրաւիրեալք յառաջագոյն մարգարէիւք, գան առ աստուածն աբրահամու յերկրպագութիւն. օրհնեցէք ըզտէր յերկինս ընդ երկնաւորացն։

Այսօր որդիք դըստեր վերին սիոնի, շինեալք 'ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից. որք եւ ըմպէք զառատաբուղխ վտակ հոգւոյն 'ի յաղբերացն իսրայելի յեկեղեցիս սրբոց. օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն 'ի նոր։

Այսօր վերին զօրացըն համաձայնեալք, գամք նահապետաց եւ մարգարէից, երգեն աստուծոյ զերգըս հոգեւորս. 'ի յիշատակի սոցա երգեմք եւ մեք ըզփառս 'ի բարձունս։

Այսօր ցընծայ զուարճացեալ եկեղեցի հեթանոսաց, տօնելով զյիշատակ մեծի նահապետին եւ հօրըն հաւատոյ աբրահամու. օրհնեցէք մանկունք սիոնի զհայրըն լուսոյ անլըռելի։ Ձկ / դկ

Այսօր նոր իսրայէլ կոչեցեալ մարգարէիւքն առ աստուած, տօնեա ցընծութեամբ ըզտօն հօլուացն իսրայէլին առաջնոյ. գովելով ըզգլուխ անկեան երկուց որմոց յարմարութեան։

Այսօր 'ի գլուխըս լերանց տուն աստուծոյ հաստատեալ, որ եւ յաւէտ ռոգիս յամպոց հոգւոյն աստուածաբուղխ առատահոս անձրեւօք. բարեբանեա զաղբիւրըն կենաց զարբուցանողըն ծարաւեաց։



## ԱՅԼ ՀԱՐՑ ՍՐԲՈՑ ՄԱՐԳԱՐԷԻՑՆ

Որ յերկնային զինուորութեանցդ անդադար ձայնիւ երեքսըրբեան օրհներգութեամբ փառաբանիս. հարցըն մերոց աստուած օրհնեալ ես յաւիտեան։ հրց / ած

Որ շնորհեցեր մարգարէիցն աւետարանել ըզկենաբեր տնօրէնութիւնըդ քո 'ի սուրբ կուսէն. հարցըն մե։

Որ պարգեւօք սուրբ հոգւոյդ վերափոխեցեր ըզսիրելիսն քո յերկնային խորանն. հարցըն մե։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս։

Եկեղեցիք հեթանոսաց կոչեցեալք 'ի քրիստոս յազգերացն իսրայելի. օրհնեցէք ըզտէր, եւ բարձր արա։

Քահանայք եւ պաշտօնեայք ընդ վերին զուարթունսն հոգեւոր հընչմամբ երգով գովեցէք ըզտէր, եւ բարձր արա։

մեծ Ըզքեզ երեւեալ դուռն առ եզեկիէլիւ մարգարէիւ, ընդ որ ոչ ոք էանց եթէ ոչ աստուած միայն. աստուածածին կոյս, օրհնութեամբ մեծացուցանեմք։

Ըզքեզ որ 'ի մորենւոջն առ մովսէսիւ մարգարէիւ ըզնոր խորհուրդ կուսի յայտնեցեր մարդկան ազգի. օրհնու։

Ըզքեզ որ 'ի հօրէ անժամանակապէս եւ 'ի մօրէ անթարգմանաբար, 'ի ժամանակի ծնընդեան 'ի բոլորից փրկութեան յայտնեցար որդի բարձրելոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք։

ողր Որ ըզծածկեալ խորհուրդ կենաց տնօրէնութեանըդ քո քրիստոս, ընդհանուր ազգի մարդկան յայտնեցեր մարգարէիւք ըզծագումըն լուսոյ արեգականդ արդարութեան։

Որք ուսուցին իսրայէլի երկրպագել քում տէրութեանդ. եւ յայտնի քարոզեցին ըզփրկութիւն հեթանոսաց, եթէ գայ մեսիայ թագաւոր իսրայէլի։

Որք տաճարի նըմանութեամբ ցուցին ըզարգանդ սուրբ կուսին, ուստի տուեալ եղեւ մեզ հաց կենաց անմահութեան. զոր օր-

հնեն անդադար երկնային զինուորութիւնքն։

Երգս աւետեաց մարգարէիցն հրաշալի ձայնիւ անդադար օրհնաբանեն ըզմարմնացեալն 'ի սուրբ կուսէն, որ երեւեցաւ մեզ 'ի փրկութիւն։ տէր

Զնեղութիւն եւ ըզչարչարանս յանձն առին կամաւորապէս, ժուժկալեալ համբերութեան վասն անուանըն տեառն, որ երեւե։

Աներկիւղ քարոզեցին յաշխարհի ըզճըշմարիտ մարդեղութիւն մարմնացելոյն 'ի սուրբ կուսէն, որ երեւե։

Ճառագայթ անճառ լուսոյ անքննելի տէրութիւն, յառաջագոյն հրաշագործեցեր ըզտեսութիւն մարգարէիցն. իջանելով 'ի սուրբս աստուածային տնօրէնութեամբ։ ճշւ

Որք ըզտաճար հաւատոյ հիմնեցուցին շնորհօք սուրբ հոգւոյն, յոր եմուտ բանն աստուած եօթնարփեան ճառագայթիւք. իջա։

Երեւեցաւ յաշխարհի ճըշմարիտ մարդեղութեամբ, զոր քարոզեցին մեզ հրաւիրողքըն համագոյ հօր եւ հոգւոյն, լուսաւորելով ըզտիեզերս աստուածային տնօրէնութեամբ։

Որ զյառաջագոյն ընտրեալսն առաքեցեր յաշխարհ սուրբ ըզմարգարէսն, աւետարանել ըզքո գալուստ անթարգմանելի տնօրէնութեամբ. սրբօք շնորհեա հաստատութիւն եկեղեցւոյ քում սրբոյ։ հվկ դձ

Որոց ետուր իշխանութիւն բացատրել ըզիջումըն քո յաշխարհ,

մստանօր կատարեցեր զմարգա-
րէիցն ըզգուշութիւն. սուրբ ես։
Որ ըզմահ գերի առեալ մահուամբ
ըզմահ կոխեցեր, արձակելով զե-
րամբս մարգարէիցըն յանըստուեր
քո հանգիստ. սուրբ ես։



ՀԱՐՑ ՍՐԲՈՑ ՆԱԽԱՀԱՐՑՆ

հրց դկ Որ քեզ աստուած հարցըն մե-
րոց խոնարհեալ անձամբք պաղա-
տիմք. մի անտես առներ տէր, որ
փառաւորեալդ ես յաւիտեան։
Յիշեա զուխտն աբրահամու ըզ-
սահակայ եւ զյակոբայ. եւ զնե-
ղելոց անձանց պաղատանս մի
անտես առներ տէր, որ փա։
Տնօրհնեա տէր խընդրողացս 'ի
քէն ըզլթողութիւն մեղաց, 'ի տա-
ճարի քում սըրբութեան, բարե-
խօսութեամբ սըրբոց քոց. որ փա։
գ Ըզտէր. Օրհնեցէք ըզտէր եր-
կինք եւ երկնայինն զօրութիւնք,
սերովբէք եւ քերովբէք զաստը-
ւածն աստուծոց. բարձր արարէք
ըզնա յաւիտեան։
Ըզտէր. Օրհնեցէք ըզտէր երկիր
եւ որ 'ի սմա են կենդանիք. համ-
բառնալով 'ի վեր ըզձայնս եւ եր-
գօք հոգեւորօք, բարձր արա։
Ըզտէր. Օրհնեցէք ըզտէր դասք
հրեշտակաց եւ մարդկան, զարա-
րիչն արարածոց. միաբանութեամբ
երգով բարձր արա։
մեծ Նահապետացն աբրահամու ի-
սահակայ եւ յակոբայ. պարգեւե-
ցար 'ի յաստուծոյ կոյս մարիամ
դուստր նոցին. երանեն ազգ եւ
ազինք այսօր ըզծնեալդ 'ի յաննայէ։

Աղախին եւ մայր կենաց անջոյն
ծընող հօր միածնին. որ առ 'ի քէն
մարմնով ընկեց զամբարտաւանըն
յաղթող. երա։
Որ բարձրացոյց զանկեալ բնու-
թիւնս 'ի քէն ծնընդեամբ որդին
յերկինս. ըզկարօտեալըն ելից հա-
ցիւ եւ զմեծատունըն եղոյծ ու-
նայն. երա։
Որ աւետաւոր քում գալըս- ողր գձ
տեանդ առաքեցեր յաշխարհ ըզ-
սուրբ մարգարէսն. եւ եկեալ խո-
նարհութեամբ նոր օրինօք վլթե-
րին լըցեր 'ի գիրս օրինաց եւ մար-
գարէից. բարեխօսութեամբ սոցա
քրիստոս ողորմեա մեզ։
Որ կոչեցեր մարգարէիւք յառա-
ջագոյն ըզհեթանոսս քեզ նոր ժո-
ղովուրդ. եւ ըզդուստր սիոնի
զեկեղեցի հեթանոսաց հարսըն սի-
րելի անմահ փեսային. բարե։
Որ ըզփառս տաճարիս զոր շինե-
ցեր շինողդ էից 'ի վերայ վիմին,
բարձրագոյն քան զառաջինն, եւ
գերազարդ վայելչութեամբ տե-
սանողքըն ծանուցին նմանիւք
հոգւոյն. բարե։
Այսօր ժողովուրդք որք 'ի հե- տէր
թանոսաց, հրաւիրեալք յառաջա-
գոյն մարգարէիւք, գալ առ աս-
տուածն աբրահամու յերկըրպա-
գութիւն. օրհնեցէք ըզտէր
յերկինս ընդ երկնաւորացն։
Այսօր որդիք դըստեր վերին սի-
ոնի, շինեալք 'ի վերայ հիման ա-
ռաքելոց եւ մարգարէից. որք եւ
ըմպէք զառատաբուղխ վըտակ հո-
գւոյն 'ի յաղբերացն խորայեղէ յե-
կեղեցիս սըրբոց. օրհնեցէք
ըզտէր յօրհնութիւն 'ի նոր։

Այսօր վերին զօրացըն համաձայնեալք, զամպ Նահապետաց եւ մարգարէից, երգեն աստուծոյ զերգըս հոգեւորս. 'ի յիշատակի սոցա երգեմք եւ մեք ըզփառս 'ի բարձունս։

ձկ / գկ

Այսօր ցընծայ զուարճացեալ եկեղեցի հեթանոսաց, տօնելով զյիշատակ մեծի Նահապետին եւ հօրըն հաւատոյ Աբրահամու. օրհնեցէք մանկունք սիոնի զհայրըն լուսոյ անլըռելի։

Այսօր Նոր Իսրայէլ կոչեցեալ մարգարէիւքն առ աստուած, տօնեա ցընծութեամբ ըզտօն հովուացն Իսրայէլին առաջնոյ. գովելով ըզգլուխ անկեան երկուց որմոց յարմարութեան։

Այսօր 'ի գլուխըս լերանց տուն աստուծոյ հաստատեալ, որ եւ յաւէտ ոռոգիս յանմպոյ հոգւոյն աստուածաբուղխ առատահոս անձրեւօք. բարեբանեա զաղբիւրըն կենաց զարբուցանողըն ծարաւեաց։

ճչւ / ած

Ճառագայթ անճառ լուսոյ անքննելի տէրութիւն, յառաջագոյն հրաշացուցեր զտեսողութիւն մարգարէիցն. իջանելով 'ի սուրբս աստուածային տնօրէնութեամբ։

Որք ըզտաճար հաւատոյ հիմնեցուցին շնորհօք սուրբ հոգւոյն, յոր եմուտ բանն աստուած եօթնարփեան ճառագայթիւք. իջա։

Երեւեցաւ յաշխարհի ճըշմարիտ մարգարէութեամբ, զոր քարոզեցին մեզ հրաւիրողքըն համագոյ հօր եւ հոգւոյն, լուսաւորելով ըզտիեզերս աստուածային տնօրէնութեամբ։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ

օրհ / ակ

Որք զմարգարէցին տնօրինաբար զիմաստս անեղին, հաստատելով յերկիր ըզգիր կենդանի հովուել ըզհօտ Նոր Իսրայէլի. երգով քաղցրութեան հընչմամբ զաստուած օրհնեսցուք։

Որք զերկրաւոր մեծութիւն փառաց խաւար կոչեցին, ապաւինելով 'ի յոյս անմահ փեսային՝ անճառ բանին արժանի եղեն. երգով քաղց։

Որք զօրութեամբ հօր իմաստութեան էին անեղի հաստատեցին զաթոռ սրբոյն գրիգորի թարգմանութեամբ նշանագրութեան. երգով քաղց։

Որք նորափետուր բանիւ զարդարեալ պայծառազգեցան եկեղեցիք հայաստանեայց 'ի ձեռըն սրբոյն սահակայ. երգով քաղցրութեան հընչմամբ զաստուած օրհնեսցուք։



Որք թագաւորաց ազգաց եւ ազանց գերագոյն ցուցին արփիափայլ զերգըս հոգեւորս ընտրեալ դասուց վերին սիոնի. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

Որ խորհրդեամբ ճըշմարիտ լուսոյ փառաց անեղին նըկարագրեցաւ մեզ գիր կենդանի յարգանդ մաքուր մեծին մեսրովպայ. անմա։

Որք ըզծածկեալ խորհուրդ աստուածգիտութեան տնօրինաբար

յայտնեալ ծննդեանն հանգոյն սրբոյ մեծին մովսէսի. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

առ Ի մաքրագործ հոգւոյն անօթ ընտրեալ եւ ձիւնափայլ, թագաւորք երկրի իշխանք աշխարհի. անպակաս գանձուց բաշխող յակոբ ալփեան յուդա յակոբեան, բարեխօս լերուք առ տէր վասն անձանց մերոց։

Երեքսրբեան մի տէրութեան խորհուրդ կամաց եւ հաղորդապետք, փողոց հնչմունք բարբառք աւետեաց. ընդ ամենայն երկիր սուրբքդ շմաւոն եւ մատաթիա. բարե։

Բանին կենաց կանոնս քարոզ եւ աւետարանիչ, երգ փրկութեան հնչումն ահաւոր, ազգի մարդկան պարծանք սուրբքդ մատթէոս, բարեխօս լեր առ քրիստոս վասն անձանց մերոց։

հայ Այսօր ընդ երկնային զուարթունս ժողովուրդք հայաստանեայց, տօնելով ըզյիշատակ սուրբ հայրապետաց շառաւիղաց սրբոյն գրիգորի, օրհնեսցէք ըզհայրն երկնաւոր։

Այսօր որդիք թորգոմայ ծնեալք աւազանաւն յորդիս սիօնի. 'ի յիշատակի հարցըն սրբոց որդւոց մեծի լուսաւորչին, գովեսցէք զորդին միածին։

Այսօր երկնաւոր քահանայութեանն հաղորդ քահանայք սուրբ եկեղեցւոյ. ընդ քահանայապետս աստուածային օրհնօք պատուեալըս բարեբանեսցէք զհոգին ճըշմարիտ, երգելով ըզփառս 'ի բարձունս։

Որ զարդարեալ գեղապանծ վայելչութեամբ սուրբ զեկեղեցի, պըսակեցեր առաքելովք եւ մարգարէիւք, եւ հաստատեալ ամրացուցեր սուրբ թագաւորօք. բարեպաշտութեամբ սոցա քրիստոս խընայեա 'ի մեզ։ թգ

Որք զինու զօրութեամբ հոգւոյն վառեալք 'ի պատերազմի, վանեցին ըզմոլորութիւն հերձուածողաց, եւ 'ի հաւատս ճշմարիտս հաստատեցին ըզտիեզերս. բարե։

Որ շնորհեցեր յաշխարհի թագաւորել մեծին թէոդոսի. եւ կատարեալ ըզկեանս հաւատով ուղղափառութեան, վերափոխեցեր այսօր յերկնից թագաւորութիւնդ. բարեպաշտութեամբ սորա քրիս։

Աղաչեմք ըզքեզ տէր բարեխօսութեամբ սրբոց ատովմանց, որք նահատակեցան 'ի ճակատամարտ պատերազմի, յաղթող գըտան ընդդէմ թըշնամւոյն. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խընայեա 'ի մեզ։ մկց

Որք առին զպատուագինութեան զրահըս հաւատոյ սըրտից իւրեանց, եւ ընկալան 'ի գլուխ սաղաւարտ փրկութեան ըզնըրշան խաչին, սուսեր ընդ մէջ ածեալ ըզճըշմարիտ սուրբ հոգին. բա։

Որք մաքրեցին զանձինս իւրեանց տաճար անուանեալ քում սրբոյ. եւ բուրեցին հոտ անուշութեան զաղօթս իւրեանց 'ի տեղւոջ հեղման սուրբ արեան իւրեանց. բա։

Որ յերկնային զօրս անմարմնոցըն նախ հեղեր առատապէս հոգւոյդ ճըշմարիտ. զաստուածային եւ զգերագոյն քո իմաստութիւնդ. հոգ

լինել փառաբանիչ սուրբ երրորդութեանդ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։

Որ զկերպարանն աստուածային առեղծեալ երրորդութեանդ խորհրդականութեամբ. զարդարեցեր փրկչական շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ 'ի նմանէ խօսեցար օրհնօք եւ մարգարէիւք. ընդ նո։

Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էակցին. միտեալ 'ի վերնատունն դրօքըն փակելովք. շնորհելով ըստ առաջին փչմանն ըզքեզ մետասանից. առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նո։

հան Յորժամ յերկնից գոչէր փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբըս քո։

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին 'ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշէկըն բանին. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ։

Զարհուրեալ դողան արարածք 'ի ձայնէ սոսկալատու փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ։

աձ Ով դերահրաշ ծաղիկ բուրեալ յեդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս եւայի. յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։

Դու լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւու լուսոյն ճըշմարտի. որով հերքեաւ խաւարն առաջին. օրհ։

Ըզքեզ ունիմք բարեխօս կոյս անհարսնացեալ. մայր աննարատ էմմանուէլի. տաճար բանին հօրն երկնաւորի. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։

Որ 'ի սկըզբանէ խնամատութեամբ հաստատեցեր զեկեղեցի հօր խնամատութիւն. զոր նախանըկար տեսութեամբ նըշմանակեալ մովսէս խորանաւն երկնահանգոյն 'ի սինա լերինն, լուսաւորելով փառօքն աստուծոյ։ խաչ

Որ ըզխորհուրդ անապական տնօրէնութեանըդ քո 'ի սրբոյ կուսէն. տըպաւորելով տապանակն աստուածային ուխտի կտակարանաց բանիդ աստուծոյ. փառաց անեղիդ տեղի հանգըստեան։

Որ 'ի կեանս վերադարձի բնութեանս դարձմամբըն յորդանանու օրհնակեցեր. եւ ըզբընութիւն մահու եւ դըժոխոց կործանմամբըն երկրորդի տապանակաւ խաչին հրաշագործեալ նոր իսրայէլի. օրհնութիւն քեզ տէր երգեսցեն մանկունք։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Որ յօրինակ ճըշմարիտ սիրոյ սուրբ առաքելոցն մըերաբար 'ի ձեզ էանցաւ հոգի շնորհաց բըղխումն անըսպառ. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Որ երկոքումբք սուրբ լուսաւորչօք տանըս թորգոմայ հաստատեցեր զեկեղեցիս հայաստանեայց, զոյս

խմաստից 'ի մեզ ծագելով. մաղ-
թանօք սոցա քրիստոս խընայեա
'ի մեզ։

հրց գձ Աքանչելագործ աստուած որ
ցուցեր զսքանչելիս քո ազգի
մարդկան. օրհնեմք զքեզ տէր
աստուած հարցըն մերոց։

Որ 'ի ձեռն երանելի վարդապե-
տին արարեր ողորմութիւն ազգի
մարդկան. օրհ։

Որ սովաւ լուսաւորեցեր զտիե-
զերս. առին բարեխօսութեամբ
պահեա զմեզ. օրհ։

գ Զտէր. Ամենայն գործք ստ-
տուծոյ եւ ամենայն արարածք օր-
հնեցէք. սուրբք եւ խոնարհ սըր-
տիւք գովեցէք. և առաւել բարձր
արարէք ըզնա յաւիտեան։

Հրեշտակ երեւեցար 'ի յերկրի եւ
վարս ունէիր աստուծոյ հաճոյա-
կան. յիշեսջիր զմեզ անդադար
երանելի սուրբ վարդապետ. որ
ընդ հրեշտակս օրհնես զաստուած
յաւիտեան։

Սոսացոյ եղեր պատուիրանաց
սուրբ հոգւոյն, եւ ապրեցար 'ի
հալածից հրապուրողին. կատարե-
ցեր զառաքինութիւն, եւ փոխե-
ցար 'ի հանգիստըն յաւիտենից։

Արդ եկայք ամենեքեան միաբան,
առցուք յօրինակ ճըգնութեան զե-
րանելւոյն. զի նմանեսցուք վարուց
նորա, եւ փոխեսցուք 'ի կեանսըն
յաւիտենից։

մեծ Զքեզ օրհնութեամբ մեծա-
ցուցանեմք։

Որ ըզբանն աստուած յարգանդի
կրեցեր սրբուհի անարատ, եւ
անճառապէս ծընար ըզվերանձգողն
երկնից. ըզքեզ օրհ։

Որ էից լուսոյն արժանի եղեր
բանալոյ 'ի քո գիրկս. եւ արեգա-
կանն արդարութեան եղեր արե-
ւելք. ըզքեզ օրհ։

Որ ըզշնորհս աստուածային առ. ողբ
'ի վերուստ իջեալ յերկնից պար-
գեւեցեր հիւսիսականացս 'ի ձե-
ռըն սուրբ վարդապետին. առա-
չանօք սորա ողորմեա մեզ աստը-
ւած։

Որ զանմարմին պարունակող բա-
նի զգրաւորական զիմաստ հոգւոյն
շնորհեցեր որդւոց թորգոմայ,
յայտնեալ տեսլեամբ 'ի ձեռըն
սուրբ վարդապետին. առա։

Որ զգիտութիւն քո զերկնային
եւ զհոգեւոր զիմաստութիւն ա-
ռատապէս ծաւալեցեր յեկեղեցիս
հայաստանեայց 'ի ձեռըն սրբոց
թարգմանչացն. առա։

Անճառելի շնորհօք լըցեալ 'ի տէր
յիշատակի սուրբ վարդապետին.
խընդրեմք 'ի քէն տէր կեցո զան-
ձինըս մեր։

Եւ ըզճըգնութիւն սրբոյ վարդա-
պետին ընկալցուք 'ի սիրտըս մեր
հաւատով. բարեխօսութեամբ սո-
րա տէր կեց։

Դասաւորեալ ընդ անմարմնական
բազմութիւնսն, եւ 'ի սրբոյ հո-
գւոյն է պըսակեալ. 'ի ձեռըն սո-
րին բարեխօսութեան տէր կեց։

Նըմանեալ մովսէսի տէր վար- Ձնկ գձ
դապետ, բերելով ըզգիր օրինաց
'ի հայաստան աշխարհս. որով
լուսաւորեցան ազգ որդւոց թոր-
գոմայ։

Քանզի նա արժանաւորեցաւ կալ
'ի սինէական փառաբանութեանն.
եւ ընկալեալ պատգամըս կեն-

դանիս տայր խորայելեան բանա-
կին. որով լուսաւորեցան ազգ
որդւոց յակովբեայ։
Արդ աղաչեմք ըզքեզ հեզու-
թիւնդ տէր վարդապետ. բարեխօ-
սեա առ հայր 'ի յերկինս վասն
քո տօնողացս. քանզի քեւ
լուսաւորեցան մանկունք սուրբ
եկեղեցւոյ։



## ԿԱՆՈՆ
### ՍՐԲՈՅՆ ՅԱԿՈԲԱՅ
### ՄԾԲՆԱՅ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

օրհ
դկ
ՅԱՂԹՈՂ եւ սուրբ հայրա-
պետ նըման մեծին մովսէսի,
բարձող խաչին պարծանաց ընդ-
դիմամարտ հանդիսիւ. ըզքեզ
ունիմք բարեխօս առ հայր յեր-
կինս վասն մեր։
Առաքինամբ սուրբ հոգւոյն յա-
նապատէ կոչեցար. առեր պատիւ
մեծութեան նըման մեծին յովհան-
նու, երգակցելով ընդ վերնոցն.
ըզքեզ ուն։
Կատարող եղեր գործութեամբ զարմա-
նագործ նշանիւք. նըման մեծին
պետրոսի հովիւ շնորհեալ յաս-
տուծոյ ընտրեալ հօտին քրիստոսի.
ըզքեզ ուն։
Ուրախացան զօրք երկնից ընդ
քո մեծի ճգնութեան. որ 'ի
մարմնի կառուցար նըման վերին
զուարթնոցն. ըզքեզ ուն։
Բըղխմամբ քո սուրբ արտասուաց
կենագործէիր ըզմեռեալս, նըման
փըրկչին յիսուսի կենագործողին
ղազարու. ըզքեզ ուն։

Որ ընտրեցար 'ի կոչումն, ա- առ
ռաքելական քարոզութեանցն ար-
ժանաւոր լինելով սուրբ ստեփան-
նոս. բարեխօսեա առ քրիստոս
վասն անձանց մերոց։
Որ խընդրեցեր զթողութիւն 'ի
վերայ քո քարաձիգ ժողովոյն սուրբ
ստեփաննոս. եւ այժմ վասն քո
ուխտաւորացս աղաչեա զընդաջմէ
հօր նըստեալն։
Որ արժանի եղեր զմարտիրոսա-
կանն առնուլ պսակ նախ 'ի մը-
կայս, առ պըսակիչըն որոց եւ
վասն մեր բարեխօսեա։
Հովիւ քաջ բանաւոր հօտի տէր գրծ
սուրբ գրիգոր, հաստատեցեր զհի-
մունս եկեղեցւոյ 'ի հայաստան
երկրի 'ի վերայ հիման սուրբ
առաքելոցն։
Հովիւ բարի եւ առաջնորդ կե-
նացըն յաւիտենից տէր սուրբ գրի-
գոր, հաստատեա զանձինս մեր
հաւատով ճըշմարտութեան 'ի
վերայ հիման սուրբ եկեղեցւոյ։
Արդ աղաչեմք ըզքեզ հայր վար-
դապետ եւ տէր, բարեխօսեա քրիս-
տոսի աստուծոյ մերոյ կեցուցա-
նել զանձինս մեր։
Այսօր ցընծայ եկեղեցի ընդ նեղ
անմարմնոցըն դասակցեալ, տօնե-
լով զյիշատակս քո տէր սուրբ
ներսէս. որ 'ի հոգւոյն սրբոյ ա-
ղաւնակերպ իջմամբ վըկայեցար.
բարեխօսեա առ քրիստոս վասն
անձանց մերոց։
Քահանայապետ ընտրեալ արժա-
նապէս շնորհօք հոգւոյն բաշխե-
ցեր զփըրկական մարմին եւ
զարիւնըն տեառն. յորում հրե-
ղէն սուրն 'ի յերկնից իջեալ. բարէ։

Արդ աղաչեմք ըզքեզ լուսաւորիչ հոգւոց մերոց նմանեալդ մովսէսի նախամարգարէին մեծի, լուսափայլեալ դիմօք աստուածահրաշ տեսլեամբ. բարեխօսեա առ քրիստոս վասն անձանց մերոց։

մրտ Այսօր հրեշտակաց դասքն 'ի յերկինս ուրախանան 'ի վերայ ճգնութեան սրբոցն։

Այսօր ճգնազգեաց սրբոց դասքն 'ի յերկրի պսակեցան երկնային աստուածեղէն փառօքն։

Այսօր անմարմնոց զինուորութիւնքն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինուորաց բազմութիւնքն ընծայեցան 'ի խորանն սրբութեան երկնից։

հոգ Այսօր ցընծան դասք առաքելոցն գալստեամբ հոգւոյն աստուծոյ. զոր մխիթարեաց փոխանակ բանին մարմնացելոյ եղեալ ընդ նոսա. փառք տացուք նմա սրբասաց ձայնիւ։

Այսօր բղխեաց ջուր կենդանի յերուսաղէմ յորմէ ըմպեան գետք աստուածայինք. եւ ընթացեալ արբուցին տիեզերաց զքաւանվըտանկ անզեղուրն եդեմայ. փառք տա։

Այսօր ցօղով նմանութեան յամպոց հոգւոյն զուարթացան բոյսք եկեղեցւոյ. պարարտացան դաշտք արդարութեամբ եւ գեղեցկացան անապատք մաքուր կուսութեամբ. փառք տա։

հան Փառք քեզ անըղուած փառաւորեալ յաւիտեան. որ կենարարդ ես մարմնոց եւ զուարճացուցիչ հոգւոց մեր ննջեցելոցն։

Որ բարձրացար 'ի խաչին վասն ադամայ նորոգման. եւ իջանելով քո 'ի դժոխս աւար առեր ըզգերեալսն։

Ըզգինս արեան քո յիշեա կենագործող աշխարհի, եւ հանգըստեան արժանաւորեա յերուսաղեմին վերին։

ած Ամենագովելի եւ քան զերկինս բարձրագոյն, որ զանհասանելի ըզտէրն յորովայնի քում կրեցեր, եւ ցնծութիւն աշխարհի ծնար. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։

Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս, որ զանբաւելի ըզբանն անճառաբար յղացար, եւ ըզմարմնացեալն աստուած ծնանելով 'ի քէն. վասն որոյ ա։

Ի լեառնէ վէմն անանց ձեռին հատեալ զանհասն գուշակեաց զանսերմն ըզծընունդ քո հայրն երկնաւոր, մայր եւ յետ ծննդեան մնալով կոյս. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։

խաչ Յաղթող եւ զնոր ծիծնութիւն միշտ 'ի բարձունս երգեսցուք թագաւորին քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք։

Որ եկն 'ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւն. նմա ըզփառս երգեսցուք։

Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փրկ կողին մատուսցուք փառք եւ պատիւ յաւիտեան։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այլ մեք ձայնիւ ցնծութեամբ տօնեմք զքո սուրբ զյիշատակս, պատուեալ վըկայ քրիստոսի սուրբ

հայրապետորդ յակոբ. ընդ քեզ ու-
նիմք բարեխօս առ հայր յերկինս
վասն մեր։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Յանձն առեր զչարչարանս վասն
նոյեան տապանին. 'ի հրեշտակէն
ընկալար զփայտ փրկութեան աշ-
խարհի. ընդ քեզ ու։

հրց գձ Սուրբ ես տէր եւ 'ի սուրբս
հանգուցեալ. բարեբանեալ 'ի
վերին զօրաց եւ 'ի սրբոց քոց.
տէր աստուած հարցն մերոց։

Զարժանահաս մահապարտ 'ի
ցասմանէ քում հրամանի բարձ 'ի
մէնջ բարեխօսութեամբ եւ ա-
ղօթիւք սրբոյն յակոբայ. տէր
աստուած հար։

Ի քէն հայցեմք զօգնութիւն ա-
մենասուրբ երրորդութիւն. օգ-
նեա մեզ 'ի նեղութեան մե-
րում բարեխօսու։

գ Ըղտէր օրհնեցէք. Զքրիստոս
թագաւորն յիշատակի սորա բարձր
արարէք յաւիտեան։

Որ ընտրեաց զերանելի ըղհայրա-
պետն, 'ի լուսաւորել զմանկու-
նս սուրբ եկեղեցւոյ. զքրիս։

Որ բազկատարած հայցմամբ խնդ-
րելով 'ի տեառնէ զողորմութիւն.
եւ աղբիւր բժշկութեան բղ-
խեալ 'ի հայաստան աշխարհի.
զքրիստոս թա։

Որ 'ի հրանիւթիցն սպասաւորե-
լով զարհուրեցոյց զթագաւորն,
հովիւըն քաջ բանաւոր հօտի,
եւ բժիշկ ախտացելոց անձանց.
զքրիստոս թա։

մեծ Սուրբ զաստուածածին օր-
հնութեամբ մեծացուցանեմք։

Աւետաւոր հրեշտակն աւետա-
րանէր ըղծընեալն փրկչին 'ի սր-
բոյ կուսէն։

Աստ ուրախ լեր բերկրեալդ. քան-
զի տէր տերանց է ընդ քեզ։

Երկրպագեմք առաջի տեառ- ողբ
նական նշխարաց ճգնաւորին
քրիստոսի եւ պատուական վկա-
յին. որ է պարծանք աշխարհի
եւ բարեխօս վասն մեր։

Ըզճգնութիւնս սորա առ քեզ
ունիմք բարեխօս. եւ անդաչեմք
սովաւ հրաշագործեա յերկրի ըղ-
բժշկութիւն հիւանդաց. որ է
պար։

Ցընծութեամբ տօնեսցուք ըզյի-
շատակս սորա հաւատացեալ ժո-
ղովուրդք 'ի փառս ամենազօր տէ-
րութեանն. որ է պար։

Ամոլք հաւատոյ եւ պարծա- տէր
նք սուրբ եկեղեցւոյ, եւ հովիւ
քաջընթաց երկնաւոր հօտապետին,
յառաքելական աթոռ նըստար ե-
րանելի սուրբ հայրապետ։

Մարգարիտ լուսափայլ եւ լուսա-
ւորիչ տիեզերաց. սիւն լուսոյ սր-
բութեան կանգնեալ 'ի մէջ հայաս-
տանեայց. յառա։

Հողանիւթ բարունակ եւ բարե-
խօս առ տէր վասն մեր. բարեբա-
նող բանին կենաց եւ պարծանք
եկեղեցւոյ. յառա։

Հայրապետ սուրբ եւ անբիծ ձմկ
եւ ընտրեալ յորովայնէ. պանծե-
լագործ վկայ եւ պարծանք ազգի
մարդկան. առ քրիստոս բարեխօ-
սեա վասն մեր քո տօնողացս։

Հովիւ հոգեւոր բանաւոր հօտի.
լուսաւորիչ տիեզերաց սիւն լու-
սոյ կանգնեալ 'ի մէջ եկեղեցւոյ.
առ քրիստոս բարե։

Հաստատութիւն հաւատոյ պըսակ 'ի գլուխ եկեղեցւոյ. պայծառ քարոզ տիեզերաց եւ պարծանք ազգի մարդկան. առ Քրիստոս բարե։

Ի տաճարի քում սրբութեան երկրպագեմք քո նշխարաց, փառաւորեմք զօր յիշատակի կատարման քո հանդըստեան. առ Քրիստոս բարեխօսեա վասըն մեր քո տօնողացս։

ճշւ գկ Որ յանպատմելի կոչեցար յառաքելական աթոռ բանիւ սուրբ յակոբ. բարձրացուցեր զեղջիւր սիոնի ճըշմարտութեամբ մասամբ նոյեան տապանին։

Որ արդարութեամբ եւ լուսով քո փայլման նոր արեգական, պայծառ քան զարփին վառեալ զօրութեամբ յառնել 'ի հրաշ պատանւոյն։

Որ միանգամ սրբութեամբ 'ի լոյսըն մաքուր որպէս զանմարմին. զարմացուցեր ըզզօրըս վերինս հիացուցեր զարարածս։

Արդ աղաչեմք ըզքեզ հայրըդ գըթած եւ հովիւ բարի. մաղթանօք հայցեա առ տէր վասն եկեղեցւոյ, միշտ անշարժ պահել յաւիտեան։



ՀԱՐՑ ՄԱՆԿԱՆՑՆ ԲԵԹՂԵՀԷՄԻ

հրց դձ Այսօր անմեղ սուրբ մանկունքն 'ի տղայական հասակի նախավախճան չարչարանօք վըկայք եղեն քո մարդեղութեանդ. տէր աստըւած հարցըն ը մերոց։

Դեռաբոյսք 'ի մօրէ նորաբողբոջք 'ի հասակի, նահատակեալք 'ի պատերազմի, եւ ընկալան ըզչարչարանս, վասըն քո համբերելով. տէր աստըւած հար։

Արդ բարեխօս առ քեզ ունիմք զերանելի սուրբ նահատակսն, որք վասըն քո չարչարեցան 'ի բեթղեհէմ նահատակեալք, վասըն քո համբերելով. տէր աստըւած հարցըն մերոց։

Ըզտէր օրհնեցէք. ժողովուրդք աստուծոյ յիշատակի սոցա բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Մատաղատունկ նահատակք 'ի տղայական երամոց, սրախողխող եղեալ 'ի գիրկըս մարցըն կատարեցան. ժողո։

Բանաւոր գառինք 'ի տանէն եփրաթայ, որք մատուցան սուրբ պատարագ 'ի հերովդէ որպէս զաբէլ 'ի կայենէ. ժողովուրդք աստուծոյ յիշատակի սոցա բար։

Ուրախացիր աստուածածին որ մեծ կուսութեանց ես պարծանք եւ մայր հաստատութեան մարդկան. օգնական եւ շնորհ աշխարհի, մարիամ մայր եւ աղաւնի փրկչին մերոյ։

Երանելիդ ամենեցուն զաստուած տանելով ըզլնութեամբ անտանելին, զամենեցուն ամենակալըն արժանի եղեր կրել յորովայնի, որ երեւեցար ազգի մարդկան։

Քերովբէական աթոռ ցուցար աստուածածին, 'ի գիրկըս բառնալով զաստըւածն ամենեցուն, որ նըստի 'ի քերովբէս. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել ըզմեզ։

ողր
գձ Այսօր տղայք բռնադեալք կոտորեալք 'ի Հերովդէայ, եղեն ճշմարիտ վկայք ծննդեանն քո Տէր. բարեխօսութեամբ սոցա փրկիչ ողորմեա։

Այսօր կատարիւր բան մարգարէին որ ասէր. ձայն գուժեաց 'ի Հռամայ լալումն ողբումն և աշխարումն. բարե։

Ծաղկեցաւ Բեթղեհէմ հեղմամբ արեան սուրբ տղայոցն. բերկրեցաւ և Հռաքէլ անուշահոտ պատարագօք. բարե։

տէր Այսօր ընդ դասս հոգեղինաց երկնաւոր զօրացն վեր առեալ տօնեմք զյիշատակս սրբոց մանկանցն. որք կոտորեցան 'ի Բեթղեհէմ. և դասեցան 'ի դասս վերին զուարթնոցն։

Սրտմտեալ Հերովդէս ցասմամբ մեծաւ և սպառնալեօք. քանզի ձայն լուեալ զարարչէն 'ի Բեթղեհէմ Հրէաստանի, զարհուրեալ դողացաւ 'ի նորածին Թագաւորէն։

Եւ բարկութեամբ զայրացեալ առաքէր 'ի Բեթղեհէմ, և զանօրէն ըզհրամանըն պատուիրէր զօրաց իւրոց. կոտորեցէք ասէ անողորմ ըզնորահաս մանկունսն։

Եւ փութացեալ զինուորացն յարձակեցան 'ի Բեթղեհէմ. և շուրջ պատեալ անողորմ կոտորեցին յերկեմենից և 'ի խոնարհ. խառնելով ըզկաթն ստեանցն ընդ արեան մանկանցն։

Խայտային սուրբ մանկունքն որպէս զգառինս 'ի մէջ հօտից. զի զվարդագոյն արիւնս իւրեանց փոխադրեցին փրկչին արեանն. վերճեմեալք ընդ զուարթունսն պսակեցան 'ի Քրիստոսէ։

Իսկ որդին միածին անժամանակն աստուած ըզվըճիռ չարաչար մահու ածեալ 'ի վերայ Հերովդէի. և զանձինս սուրբ մանկանցն ենթադրեաց 'ի գոգն Աբրահամու։

Երանելի սուրբ մանկունքն որպէս քաջ նահատակք ետուն զանձինս իւրեանց 'ի մահ փոխանակ որդւոյն Աստուծոյ։ ձկ
սող
դկ

Եւ դիակունք սուրբ մանկանցն որպէս ըզծաղիկ նորաներեաց հարեալ 'ի կարկտէ, և անկեալ 'ի սուրբ Բեթղեհէմ։

Եւ հոգիք սուրբ մանկանցն որպէս զերամս աղաւնեաց թռուցեալք 'ի յերկինս. և դասեալք ընդ զուարթունս երկնից։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑՆ ՄԻՔԱՅԷԼԻ ԵՒ ԳԱԲՐԻԷԼԻ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԵՐԿՆԱՅԻՆ ԶՕՐԱՑՆ

Որ յանէից ստեղծեր ըզպաշտօնեայս քո 'ի հուր կիզելոյ հուրդ անեղական. ընդ նոսին օրհնեմք ըզքեզ և մեք հողեղէնքս։ օրհ
բկ

Որ բանիւ գոյացուցեր զիննեակ դասս հրեղինաց բանդ 'ի սկըզբանէ. ընդ նոսին գովեմք ըզքեզ և մեք հողե։

Որ արարեր յոգիս իմանալի ըզհրեշտակս քո հոգի Աստուծոյ. ընդ նոսին բարեբանեմք ըզքեզ և մեք հողեղէնքս։

Անդադար յերկինս օրհնաբանողք հօրն երկնաւորի զօրք լուսեղինաց. բարեխօս լերուք ընդ մեղաւորացս։

Քաղցրաձայն երգով գոհաբանողք որդւոյն միածնի դասք հրեշտակաց. բարե։

Որ օրհնիս 'ի հրեշտակաց անդադար հայր երկնաւոր, ընկալ զաղաչանս մեր։

Առաջի քո անկանիմք փրկիչ. խնդրեմք զթողութիւն բազում յանցանաց մերոց։

Որ գիտակ ես գաղտնեաց մարդկան հոգիդ սուրբ, տէր եւ կենդանարար ընկալ զմ։

Օրհնեցէք ըզՏէր ընդ երկնայինսն նմանեալ դասուց, նոր ժողովուրդք աւետօք, քեզ հօր տուողիդ մեզ զկեանս փառք։

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք ընտրելոց որդիք սիոնի աւետօք, քեզ որդւոյ շնորհողիդ մեզ զկեանս փառք։

Բարեբանեցէք զաստուած 'ի սքանչելիս սրբութեան նորա ձայնիւ ցնծութեամբ աւետօք, քեզ հոգւոյդ պարգեւողիդ մեզ զկեանս փառք։

Յորժամ գայցես բազում հրեշտակօք տէր 'ի դատել զերկիր։

Յայնժամ շարժին զօրութիւնք երկնից տէր 'ի յահէ քումմէ։

Եւ յայնմ աւուր լեր իմ օգնական տէր իմ եւ ապաւէն իմ։

Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանեն ծերքն ոստովք, եւ տղայքն արմաւենեօք. ովսաննայ օրհնեալ եկեալ 'ի յանուն տեառն։

Զոր սերովբէքն ծածկաբար ընդունիլ ոչ բաւեն, 'ի վերայ յաւանակի նորոյ նստեալ բարեբանեցաւ 'ի տղայոց. ովսաննայ օրհնեալ եկ։

Այսօր ընդ ծերոց եւ ընդ տղայոց օրհնաբանութեանցն վերերգեալք, նորոյ արքայիդ եկեալ յերուսաղէմ. ովսաննայ օրհնեալ եկ։

Այսօր ամբիւր գիտութեան բղխեալ 'ի սուրբ վերնատանն, յորմէ լցան տիեղերք գնացիւք գետոցն ոռոգմամբ։ հոգ.

Այսօր իջեալ 'ի յերկնից հօր աւետիքն 'ի բարձանց, տալ աւետիս ադամայ դառնալ յեդեմ վերստին։

Այսօր խնդայ նոր սիոն որդւովք իւրովք զոր ծնաւ, ծնեալք հոգւոյն նորոգեալ յորդիս լուսոյ եւ տուընջեան։

Այսօր 'ի ձայն փողութեան զհոգին ընդ հօր եւ որդւոյ, հոգիք ամենայն օրհնեցէք զերեքսրբեանն երգելով։

Այսօր ցնծամք երկրաւորքս ընդ գալստեան երկնայնոյն, եւ պարելով ընդ հրեշտակս երգեմք ըզփառս 'ի բարձունս։

Սարսափելի որոտմամբ եւ ահագին զօրութեամբ գալոց է փրկիչն յաշխարհս յարուցանել զմեռեալսն։ հաճ.

Ահեղ եւ մեծ բարբառով հրեշտակապետըն գոչէ. արիք ասէ մի նընջէք, ահա եհաս ձեր փրկիչ։

Դողմամբ սրտիւք յարուցեալ, եւ ընթանան առաջի. եւ տեսանեն զփրկիչն եկեալ փառօք 'ի յաշխարհս։

Գաղտնի գործոցն ծածուկք յայտնին 'ի մեծ հրապարակն. եւ դողալով ընթանան 'ի յանվախճան 'ի տանջանս։

Ի յօթեվանս հօրն իւրոյ կոչէ զանդամս արդարոցն, եւ յանպատում 'ի բարիս զոր խոստացեալ է նոցա։

Սիրոյ անմահ փեսային եղեր դու մայր Մարիամ. բարեխօսեա վասն մեր 'ի յայնմ աւուր ահեղին։

ած Այսօր ցնծան երկնայինքն եւ պար առեալ 'ի բարձունս. երգեն զերգս հոգեւորս յաւուր ծննդեան սրբուհւոյն։

Այսօր վերինքն սիովն գոչեն զերգս սրովբէիցն. զերեքսրբեանն ասելով յաւուր ծնըն։

Այսօր աստեղք եւ լուսին ընդ արեւու հրճուելով. գովեն ըզլոյսն 'ի հօրէ յաւուր ծննդեան լուսոյ մօրն։

Այսօր ծերքն օրինականք մանկամբք նորոյ սիոնի. երիտասարդք եւ կուսանք խնդան ծննդեամբ տիրուհւոյն։

Այսօր գունդք առաքելոցն եւ պարք նախատեսացն. յաւուր ծննդեան մօր բանին երգեն ըզփառս 'ի բարձունս։

խաչ Անպատումըն կառք անքըննելի խորհրդոյն ընդունարան ով սուրբ քառաթեւ, 'ի սաւառնաթեւից յարաթուելոց սրովբէից անտեսաբար ահիւ պատուեալ. քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յելս եւ 'ի մուտս։

Անպաղթելի նշան անպարտելի զօրութեանն ընդունարան ով սուրբ քառաթեւ. 'ի յանհարկութիւն ապստամբեցն երեւեցար, որք 'ի քէն ահիւ սարսեալ դողան, եւ անդընդատայղ որընչին. քեզ եր։

Ցառաջագոյն տեսեալ ըզքեզ մարգարէն զաքարիաս, աշտանակ ոսկի եօթնաջահեան լուսով պայծառացեալ յերկրի ով սուրբ քառաթեւ, եւ 'ի վերայ քո տարածեալ ամնիւթ գոյին գծացեալ 'ի մեր բնութիւնս, եւ ալլեւրահոս կոլիւ մաքրեաց զանւտեղութիւն ազգի մարդկան. քեզ երկրպագեմք յօգնութիւն մեզ ժամանեա յելս եւ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Անլռելի հընչմամբ բարեբանողք հոգւոյն ճըշմարտի հոյլք հոգեղինաց. բարեխօս լերուք ընդ մեղաւորացս։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Երեքսրբեան ձայնիւ փառաբանողք սուրբ երրորդութեանն գունդք սերովբէից. բարե։

Անսկիզբըն հայր առաջին լոյս անճառելի, որ 'ի լուսոյ լոյս ներգործեալ զխմանալեաց գոյակս. ըզքեզ օրհնեմք աստուած հարցըն մերոց։ հրց գկ

Էակից հօր 'ի լուսոյ լոյս ծագումն որդի, որ արարեր 'ի պաշտօն փառաց քոց զհրեղինացըն զօրս. ըզքեզ օրհ։

Ի հօրէ բղխումն փառակից որդւոյ հոգիդ անեղ, որ ըստեղծեր 'ի յոգիս կատարեալ զհոգեղինացըն դասս. ըզքեզ օրհ։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Երկնային զուարթունք հրեշտակք եւ հրեշտակապետք, վերին պետութիւնք, բարձր ար բերէք ըզհայրն երկնաւոր։

Անմարմնոց բազմութիւնք իշխանութիւնք, զօրութիւնք, անմահ տէրութիւնք, բարձր ար բերէք ըզքրիստոս թագաւորն։

Վեցթեւեան սերովբէք քառակերպեան քերովբէք, աթոռք անեղծն, բարձր ար բերէք զհոգին ճշմարիտ։

մեծ Մայր և կոյս աղախին քրիստոսի, որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. քեզ երանեն ամենայն ազինք։

Մաքուր աղաւնի եւ հարսն երկնից մարիամ, տաճար եւ աթոռ աստուածոյ բանին. քեզ երա։

Քեւ հաճեցան իմանալիքն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք 'ի փայտըն կենաց. քեզ երա։

ողր / գձ Որ 'ի հրեղէն զօրաց երկնից փառաբանիս աստուած, որով զերկնային անապական աստուածային ըղշնորհս հեղեր յորդիս ադամայ. աղաչանօք սորա ողորմեա մեզ աստուած։

Երեւելով հողեղինացս անհասթականքն 'ի ձեռն մարմնոյ, որք եւ ծանուցին մարգարէիցն ըզխորհուրդ քո գալըստեանդ բազմապատիկ տեսլեամբ օրհնակելով. աղաչանօք սոցա։

Անճառելի տնօրէնութեանըդ քո աւետաբերք առաքեցան գաբրիէլ եւ միքայէլ, անմարմնական դասուքն իւրեանց յերկիր սպասաւորելով. աղաչա։

տէր Անմահ արքային անպարուեստ աթոռք, բազմաչեայ քերովբէք, սրբասաց ձայնիւ սովբէք, առաջին յերկինս քահանայապետք. բարեխօս լերուք առ տէրն վասն եկեղեցւոյ։

Բարձրելոյն փառաց բարձող տէրութիւնք, անյաղթելի զօրութիւնք, վեհագոյն իշխանութիւնք, երկրորդին դասու քահանայապետք. բարե։

Գերագոյն էին պետութիւնք վերին, հրեշտակապետք երկնաւորք, հրեշտակաց զինուորութիւնք, երրորդի յերկինս քահանայապետք. ձեզ համաձայնեալ երգեմք ըզփառս 'ի բարձունս։

Երկնաւոր հօտ ընտրեալ. զոր հովիւըն քաջ թողեալ յերկինս, եւ եկեալ 'ի խնդիր մեզ մոլորելոցս. որով լըցեալ զթիւ հարիւրոցդ, արար ուրախութիւն 'ի յերկինս երկնաւորացդ. աղաչեմք ըզձեզ բարեխօս լերուք առ տէր վասըն քաւութեան մեղաց մերոց։ Յկ / սող / գկ

Տեսանողք անտեսին, խորհըրդածուք խորոցն աստուծոյ. որք իջեալք ընդ միածնին սպասաւորել տնօրէնութեանն, 'ի ծնընդեանն աւետաւորք հովուացն, եւ կանանցն իւղաբերից կենաց քարոզք ըզկենդանւոյն. աղաչեմք ըզձեզ բարեխօս լե։

Պահապանք աշխարհի, բանակըք տեառն շուրջ զերկիւղածովք. բարեկամք ազգի մարդկան, միջնորդք մահու եւ յարութեան, միքայէլ եւ գաբրիէլ մեծք. որք կայք միշտ առաջի ամենասուրբ երրորդութեանն. աղաչեմք ըզ։

ճշ. դկ Այսօր ուրախացեալ սուրբ եկեղեցի քրիստոսի, տօնէ խընդութեամբ զտօն վերինն երուսաղէմի. սրբասաց ձայնիւ փառաւորելով ըզքրիստոս։

Այսօր համաձայնեալ որդիք սիոնի երկրայնոյ, տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին սիոնի. սրբ։

Այսօր դասք անմարմնոցն երգս առեալ պարեն ընդ մարդկան, զերգըս հոգեւորս յանմահ փեսային յառագաստ. սրբ։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՀԱՅՐԱՊԵՏԱՑՆ

օրհ. գձ Ա՛ՅՍՕՐ սրբոց հայրապետացըն ժողովեալք 'ի միասին եդին հաստատութեամբ ըզհիմունըս հաւատոյ, 'ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից։

Այսօր ըզբանն 'ի սկըզբանէ քարոզեցին սուրբ հայրապետքն, յառաջ քան զյաւիտեանս 'ի հօրէ ծընունդ անձառ, արարիչ գոլով յաւիտեանց ընդ հօր էակից հոգւոյն։

Այսօր զհոգին ճըշմարտութեան դաւանեցին սուրբ հայրապետքն, ծագումն առ 'ի հօրէ յառաջ բըղխեալ անհամաբար, ընդ նըմին յաւէտ մըշտընջենաւոր փառակից որդւոյ։

Ժողովեալ սուրբ հայրապետքըն հրամանաւ հոգւոյն սրբոյ, վերըստին հաստատեցին զառաքելական քարոզութիւնն, 'ի վերայ վիմի հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ։

դրբ Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյիշատակ սրբոյն գրիգորի. որով լուսաւորեալ պայծառացաւ վայելչապէս 'ի հանդերձըս յանկեհուրըս զարդարեալ եւ պըսակեալ. օրհնեցէք մանկունք զքրիստոս թագաւորն։

Այսօր ցընծան նորածնեալ որդիք լուսոյ յիշատակաւ սուրբ լուսաւորչին. որով հրաւիրեցան 'ի հարսանիսն անապական, մըտանել ընդ փեսային երկնաւորի 'ի յառագաստըն լուսեղէն. օրհ։

Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ. որով երկնայնոց քահանայութեանցըն հաղորդեալք. յոր վերափոխեալ այսօր մըտանէ 'ի սրբութիւն սրբոց միշտ բարեխօսել առ տէր վասըն մեր. օրհ։

նբր Այսօր զուարճացեալ տօնեն երկնայինքն ընդ մարդկան, պարակից եղեալ փըրկութեան մերոյ. քանզի յայտնեցաւ մեզ հոգեւոր գանձըն լուսոյ, արեւելեան արեգականըն ճառագայթ սուրբըն ներսէս. բարեխօսութեամբ սորա տէր պարգեւեա զխաղաղութիւն հայաստանեայց աշխարհի։

Այսօր վերըստին նորոգեցաւ քահանայական գաւազանն, գեղեցկապէս ծաղկեալ պայծառութեամբ. քանզի շնորհեցաւ հովուըն քաջ բանաւոր հօտի, յարմատոյ լուսաւորչին բողբոջ բու-

սեան սուրբըն Ներսէս. բարեխօ-
սութեամբ սորա տէր հա-
տուցեալ զիշխանութիւն հայրա-
պետական աթոռոյ։

Այսօր մեծապէս փառօք ցնծայ
թագաւորական գաւառն ընդ
հաշտութեան սրբոյ սուրբ հայ-
րապետին. քանզի եհաս ՚ի յօգ-
նութիւն օրինադրողին թագաւո-
րաց. մարտնչեց զկռապաշտական դա-
սուն սուրբըն Ներսէս. բարեխօսու-
թեամբ սորա տէր բարձրացո
զիշխանութիւն թագաւորական
աթոռոյ։

հայ Հայրապետ սուրբ եւ անբիծ
եւ ընտրեալ յորովայնէ. սքանչե-
լագործ վէմ եւ պարծանք ազգի
մարդկան. առ Քրիստոս բարեխօ-
սեա վասն մեր ՚ի քո տօնողացս։

Հովիւ հոգեւոր բանաւոր հօտի.
լուսաւորիչ տիեզերաց սուրբ լու-
սոյ կանգնեալ ՚ի մէջ եկեղեցւոյ.
առ Քրիստոս բարե։

Հաստատութիւն հաւատոյ պը-
սակ ՚ի գլուխ եկեղեցւոյ. պայ-
ծառ քարոզ տիեզերաց եւ պար-
ծանք ազգի մարդկան. առ Քրիս-
տոս բարե։

Ի տաճարի քում սրբութեան եր-
կրպագեմք քո նշխարաց. փառա-
ւորեմք զօր յիշատակի կատարման
քո հանգըստեան. առ Քրիստոս
բարեխօսեա վասն մեր քո տօնո-
ղացս։

մրտ Զանմարմնոցն ըզմաքրութիւն-
սըն մարմնական կրեւք տարեալ
՚ի յանձինս իւրեանց քաջ եւ յաղ-
թող երանեալ սուրբ հայրապետք.
սոցա բարեխօսութեամբ ողորմեա
մեզ աստուած։

Տէրունական եւ պայծառ առա-
քինութեամբ հետեւեցին զիշ-
խանն անօրէն իւրեանց գործակ-
ցօք ճըգնող հայրապետք. սոցա։

Հրեշտակք երկնից փափագին հան-
դիսի կատարման սոցա. որք ՚ի մա-
հուն իւրեանց կենդանացան ե-
լին ՚ի կամարն երկնից, խառնեցան
՚ի գունդս զուարթնոցն. սոցա բա-
րեխօսու։

Որ ՚ի թեւըս թեթեւս աննիւթ հոգ
սաւառնեալ եւ հրացայտ սե-
րովբէից վերանըստեալ տեսչու-
թեամբ խնամես զարարածս. հո-
գիդ սուրբ օրհնեալ ես յա-
րարածոց քոց։

Որ սքանչելապայծառ հրաշալի
ձայնիւ ընդ հօր եւ ընդ որդւոյ
միշտ փառաբանիս, եւ քաղցրու-
թեամբ հայիս յարարածս. հո-
գիդ սուրբ օրհ։

Այսօր աստուածային տեսչու-
թեամբ ՚ի վերնատունըն հընչեալ
հողմաձայն հընչմամբ, եւ զառա-
քեալսն արբուցեալ բաշխեցեր յա-
րարածս. հոգիդ սուրբ օր-
հնեալ ես յարարածոց քոց։

Արարչագործ աստուած, զա- հան
րարածըս քո մի անտես առներ.
այլ գթա ՚ի ննջեցեալսըն մեր,
եւ հանգո ընդ սուրբս քո ՚ի խո-
րան քում սրբոց։

Արարչակից հօր որդի, ՚ի միւս-
անգամ քո գալստեանն անդա-
տապարտ պահեա ըզնոսին։

Կենդանարար սուրբ հոգի. յոր-
ժամ նորոգես զերեսս երկրի նո-
րափետուր զարդարեա ըզնոսին։

Սուրբ զաստուածածինն օր- ած
հնութեամբ մեծացուցանեմք։

Աւետաւոր հրեշտակն աւետաւորանէր ըզծընեալն փրկիչն 'ի սուրբ կուսէն։

Ասէ ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ։

խաչ Այսօր ուրախացեալ ցընծան երկինք բազմութիւնքն 'ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից 'ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. փառք գալըստեան քո տէր։

Այսօր սիւն լուսոյ հովանի եղեւ ըմեզ 'ի բարձանց. քանզի թագաւորն երկնաւոր եկաւորի 'ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծաւալեալ տօնեն ընդ մարդկան. փառք գալըստեան քո տէր։

Այսօր քահանայապետ Քրիստոս աստուածային օրինօքըն պատուեալ կանգնէ զքաւանկիւն սեղանն խաչին, արժանապէս պատարագեալ բաշխէ զմարմին եւ զարիւնըն տեառն, մաքրապէս մերձեցարուք փրկեալըք նորա ժողովուրդք. եւ հայցեցէք 'ի քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որք զինու հոգւոյն սրբոյ արիաբար պատերազմեալք, վանեցին զընդդիմամարտ մոլութիւն հերձուածողացն. որպէս հովիւք քաջք հերքեցին ըզգայլսն 'ի հօտէ գառանց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Եւ ըզհաւատոյս Քրիստոսի սուրբ երրորդութեանն, ընդհանուր քարոզեցին յեկեղեցիս ուղղափառաց. հաւատալ 'ի հայր եւ յորդի եւ յամենասուրբ հոգի։

Որ էիր յառաջ քան զյաւիտեանս անըսկիզբն որդի. 'ի յերկնից կամաւ հօր իջեր 'ի փրկութիւն աշխարհի. օրհնեալ ես տէր աստուած հարցըն մերոց։ հրց գձ

Որ զանճառելի ծածկեալ խորհուրդ անպարագիր աստուածութեանդ. հարսին եկեղեցւոյ ցուցեր 'ի ձեռըն սուրբ հայրապետացն. օրհնեալ ես տէր աստուած հարցըն մերոց։

Որ խմանալի աստուածային ծագմամբ 'ի շնորհաց հոգւոյդ լըցեալք, լըցին ըղտիեզերըս հաւատով երրորդութեանդ. օրհնեալ ես տէր աստուած հայր։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Եկայք լուսաւորեալ ժողովուրդք հեթանոսաց 'ի ձեռըն լուսափայլ բըղխման յորդառատ վտակաց բանի երանելի հայրապետացն. օրհնեցէք եւ բարձր արարէք ըզհայրն երկնաւոր։

Որք զանհասանելի տնօրէնութիւն ներգործեալ բանին յաշխարհ, ծանուցին տիեզերաց անհաս գոլով արարածոց. օրհնեցէք եւ բարձր արարէք զքրիստոս թագաւորն։

Որք հրաշալի զօրութեամբ հոգւոյն սրբոյ ըզխաւարն անգիտութեան յաշխարհէ փարատեցին. եւ ուղիղ հաւատոյ հիմամբ հաստատեցին զեկեղեցի. քահանայք եւ պաշտօնեայք օրհնեցէք եւ բարձր արարէք սուրբ զհոգին ճշմարտութեան։

Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետա- մեծ

րանէր հրեշտակն. ուրախ լեր բեր-
կրեալդ տէր ընդ քեզ:

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր ա-
նապականաբար բնակիլ հաճեցաւ
'ի քում յորովայնի. ու:

Որ բոցեղէն սրովբէիւք շրջանա-
կեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդ-
կան 'ի գիրկս հողեղինի յայտ-
նեալ. ու:

ողմ Աստուածային ճառագայթ որ
'ի հօրէ մեզ ծագեցար, եւ լու-
սովդ քո լցեր ըզտիեզերս 'ի ձե-
ռըն սուրբ հայրապետացն. աղօ-
թիւք սոցա քրիստոս ողորմեա մեզ:

Որք անբաժանելի ըզմիութիւն
երրորդութեանդ ընդհանուր քա-
րոզեցին ուղղափառ դաւանու-
թեամբ. աղօթիւք սո:

Եւ զանճառելի տնօրէնութեա-
նըդ քո խորհուրդ ուսուցին ազ-
գի մարդկան գերագոյն քան ըզ-
բնութիւնս. աղօթիւք սո:

տէր Հանդիսացեալք ընդ երկնայ-
նոցն այսօր տօնեմք ըզյիշատակ
սուրբ հայրապետացն, որք զաս-
տուածային առաքեալս առընկա-
լեալ շնորհաց բաշխումն, ընդհա-
նուր ծաւալեցին յեկեղեցիս ար-
դարոց. օրհնեցէք ըզտէր ընդ ան-
մարմնոցն դասուն:

Որք բանիւ զանճառելի տնօրէ-
նութիւն բանին հօր քարոզեցին,
եւ լուսով իմանալեաւ զարդարե-
ցին ըզտիեզերս, 'ի շնորհս պան-
ծալիս երկնաձիր պարգեւացն.
օրհնեցէք ըզ:

Որք անձնուէր զէութիւն բըղ-
խեցելոյն 'ի հօրէ հոգւոյն սրբոյ
դաւանեցին, եւ նոյնագոյ բնու-
թեամբ հօր եւ որդւոյ հաւասա-
րեալ, անորիշ բաժանմամբ, հա-
մագոյ միութեամբ. օրհ:

Այսօր անպատում գերազար-
դեալ փառօք պայծառացաւ սուրբ
եկեղեցի. բարձրաձայն հնչմամբ
աւետարանչացն սիոնի, յառա-
գաստ հրաւիրելով զմանկունս եր-
կնաւոր փեսային. օրհ:

Այսօր երկնայնոցն ընդ մեզ ճշւ / գձ
տօնախմբելով զյիշատակ սուրբ
վարդապետացն, որք լուսաւորե-
ցին զհաւատոյ մանկունս, եւ
ընդ հրեշտակացն դասս վերա-
կարգեցան:

Այսօր առաքելոց եւ մարգարէի-
ցըն դասք տօնակից գոլով դըս-
տեր վերին սիոնի, 'ի յիշատա-
կի սուրբ վարդապետացն, որք
զխնամոց նոցին զխորոց յայտնե-
ցին զխորհուրդ:

Այսօր քահանայք և պաշտօնեայք
սուրբ եկեղեցւոյ վերապատուեն
զյիշատակ սուրբ վարդապետացն,
որովք զարդարեցան երկնային շնոր-
հօք. երգեն ընդ նոսին զփա-
ռըս յաւիտեան:

Ով հրաշալի նախահարք միշտ Ձկ / գձ
յաղթողք 'ի մարտի, որք գումա-
րեցայք 'ի նիկիայ գաւառ, դաւք
երջանիկ դիտողացըդ եզաբանից,
որք մերժեցիք զորոմն ապակա-
նիչ, սահմանեցիք տառըս կա-
նոնական համանգամայն ազանց:

Տէր ես յայնմ ատենի, բան ծա-
գեալ 'ի հօրէ. դաւանի ծընունդ
եւ ոչ արարած, միշտ համա-
գոյակից ընդ հօր եւ հոգւոյն,
եւ լուսազարդ բանիւք հերքեալ
զհերձուածս, նզովեցին զա-
րիոս եւ զաղանդն իւր պիղծ:

Արմատ անիծից կուսին ընձիւղեալ մանկեդն հայհոյիչ, գայլ ապականիչ յարձակեալ. խողխողէր զընտրեալսն 'ի հօտէ գառանց. եւ գահավէժ ցընդմամբ խարդաւանեալ 'ի վիհն. Նըզովեցին զմանկեդն ըզհայհոյիչ լեզուն։

Եւս 'ի յեզանակ հանդիսին հերքեցին զչար հերձուածսն, եւ դաւանեցին սուրբ զհոգին ելեալ 'ի հօրէ էակից որդւոյ, եւ կենդանարար ազանց բոլորեցունց. Նըզովեցին զմանկեդն զհայհոյիչ լեզուն։

Բանըն Թանձրանայ 'ի մարմնի, մարմինանայ անմարմինն. միացեալ բնութեամբ 'ի յերկուց, ախտակրեալ 'ի վերայ քառամթեւ խաչին, եւ վերառեալ 'ի թաղմանէ անապականն. Նըզովեցին ըզնեստոր եւ զաղանդն իւր պիղծ։

օրհ Ի սուրբ երրորդութենէն ծանեաք ըզտէր մեր յիսուս քրիստոս ըզբանն աստուած, որ 'ի ծոցոյ հօր յառաջ քան զյաւիտեանս որդի. փառաւորեսցուք որ եկիր 'ի փրկել զարարածըս քո։

Անճառ տնօրէնութեամբ 'ի միշտ կուսէն զանիծիցըն բարձեր ըզդատապարտութիւն. եւ կամաւոր խաչելութեամբ քո տէր կեանըս շնորհեցեր անոխակալ փրկիչ. առաւել վերօրհնեմք եւ երկրպագեմք, որ ուրախութիւնդ ես երկնի եւ երկրի քրիստոս թագաւոր։

Ապաւինիմք 'ի քո բարեխօսութիւնդ աստուածածին մարիամ, մայր տեառն եւ կոյս սուրբ, հարսն երկնից եւ դուռըն կընքեալ, զոր մարգարէն ետես։

Ծառագայթ եւ կերպարան էութեան հօր բանդ աստուած. ըզքեզ բարեբանեմք ասելով փառք 'ի բարձունս աստուծոյ։ ծնն

Որ միացար 'ի մարմնի անճառապէս ճըշմարիտդ աստուած. ըզքեզ բարեբա։

Որ զանիծիցըն բարձեր ըզդատապարտութիւն քրիստոս աստուած. ըզքեզ բարեբա։

Այսօր որ էին 'ի յերկինս բանն եւ ծընունդ հօր միածին, ըզծածկեալն 'ի յէից խորհուրդ յայտնեաց աշակերտացն, ծառայի ըզկերպարանըն ծածկելով աստուածութեանըն։ վար

Այսօր հընչեաց յառաքեալըն հայրական բարբառ յերկնից, սա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ. որ ըզընութիւնն աստուածային կերպիւ ծածկեալ ծառայական։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր վիմին հաւատոյ յայտնեալ զխորհուրդ երրորդութեանն, երբակի յօրինմամբ տաղաւարացըն խորհրդոյ. որում ըզմեզ մաքրեսցես լինել տաճար երրորդութեանն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Աղերսանցուցես 'ի մեզ ըղշնորհս քո զողորմութեան. տէր աստուած խոստովանեսցուք հաւատով սուրբ զերրորդութիւնդ, զհայր եւ զորդի եւ ըզսուրբ զհոգիդ յաւիտեանս ամէն։



# ԿԱՆՈՆ

### ԳԻՒՏԻ ՊԱՏՈՒԱԿԱՆ ՆՇԽԱՐԱՑ ՍՐԲՈՑ ՀՕՐՆ ՄԵՐՈՑ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

օրհ / գկ

ԼԵ՛ՐԻ՛ՆՔ ամենայն այսօր ցընծայէք ընդ մեծապայծառ փառսըն սեպուհն գերազանց լերինն. քանզի 'ի նմա բնակեցաւ սուրբըն գրիգորիոս սեւն լուսոյ հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ. որով ցընծայ 'ի փառս վերնոյն սիոնի:

Ո՛ր առաւել խորին խորհրդով խընդայ քան զարարատեանըն բարձըր մասիս. քանզի 'ի նմա հանգեաւ սուրբըն գրիգորիոս տապանն ապրեցուցիչ 'ի հոսանաց մեղաց հայաստան ազանց. որով փրկիմըք միշտ 'ի ջուրց հոսանաց:

Գեղապանծ լուսով բերկրեալ զուարճանայ լեառըն սեպուհ հանգոյն սինայի. յորում եկաց կամօքն ամպեղէն սուրբըն գրիգորիոս գերահրաշ լուսով զարդարեալ նըման մովսէսի. որով փայլեն երեսք շնորհօք սուրբ հոգւոյն:

Զօրօք հրեղինաց պարփակեալ պահի լեառըն հանգըստեան սըրբոյն գրիգորի տեսլեամբ կարմեղայ. զորըս պարըսպեն կառքըն կենդանի մաքրափայլ աղօթք սուրբ լուսաւորչին հօրըն հոգեւոր. զոր առ տէր ունիմըք միշտ բարեխօս:

Համանմանեալ ամովսածնին եսայեայ կայծակնամաքուր սուրբ մարգարէին տէր գրիգորիոս. վեցթեւեան սրովբէից կիզիչ կենդանեաց եղեւ տեսանող հոգւով կենդանին. զանդընդախոր ըղձօքն երկնից կամար յօրինեաց:

Շնորհաբաշխ աջոյն յիսուսի պատուեցաւ լեառըն սեպուհ 'ի տիպ սանիրայ եւ ահերմոնի. յորմէ բըղխեաց աղբիւրըն լուսոյ ջուրըս բարեհամս եւ վըտակս յորդախաղաց հոսանօք. որով ցընծայ երկիրս 'ի բերս արմըտեաց:

Ծընընդեամբ սուրբ կուսին յայրըն բեթղեհէմ յորդորեցան դըստերքն եւայի լինել կուսութեամբ 'ի մայր քրիստոսի. յորում ծագեաց խորհուրդըն պայծառ յերկնանըման լերինն 'ի յայրըն մանեայ մաքրական վարուք. որով սըրբիմըք միշտ 'ի յաղտոյ մեղաց:

Խորհուրդ խաչելոյն գերահրաշ տեղւոյն գողգոթայ ծանկալէս 'ի սմին լերին տեսանի. զէնն արքայական սպանմանըն գործի կենաց արքային 'ի կենաց գործիս նըւիրեալ. որով փրկեցաք ըզմեզ յաւիտենից մահուանէ:

Զխորհուրդ սեպուհոյ սեպհական փառաց հոգւովըն սըրբով մարգարէին ծանուցեալ. զոր եւ հարցանէր զխորան աստուծոյ եւ ըզլեառըն տեառն թէ ով բնակիցէ. զոր եւ տեսաք առ սուրբըն գրիգոր կատարեալ:

Առաքեա 'ի մեզ տէր ըզբազում գըթութեան քո զողորմութիւն, բարեխօսութեամբ սըրբոյ նախավըկային քո եւ ողորմեա:

Որում զերկնայինըն բացեր ըզդդուռն, ցուցանելով զանձառելի

խորհուրդ. սուրբ ն աղաչանօք խը-
նայեա ’ի մեզ տէր եւ ողո՛ր։
Որ ամօթանուէր հայցմամբ ըզ-
թողութիւն խընդրելով ’ի քէն
անօրէն լապանողաց իւրոց. սուրբ ն
աղաչանօք խընայեա ’ի մեզ տէր
եւ ողո՛ր։

ներ Այսօր ցընծայ եկեղեցի ընդ
անմարմնոցըն դասակցեալ, տօնե-
լով զյիշատակըս քո տէր սուրբ
ներսէս. որ ’ի հոգւոյն սրբոյ ա-
ղաւնակերպ իջմամբ վերկայեցար.
բարեխօսեա առ քրիստոս վասն
անձանց մերոց։

Քահանայապետ ընտրեալ արժա-
նապէս շնորհօք հոգւոյն բաշխե-
ցեր զփրկական մարմին եւ
զարիւնըն տեառն. յորում հրե-
ղէն սիւն ’ի յերկնից իջեալ. բարե-
խօսեա առ քրիս։

Արդ աղաչեմք ըզքեզ լուսաւո-
րիչ հոգւոց մերոց նըմանեալ
մովսէսի նախամարգարէին մեծի,
լուսափայլեալ դիմօք աստուածա-
հրաշ տեսլեամբ. բարեխօսեա առ
քրիստոս վասն անձանց մերոց։

մծբ Ուրախացան զօրք երկնից ընդ
քո մեծի ճգնութեան. որ ’ի
մարմնի կառուցար նըման վերին
զուարթնոցն. ըզքեզ ունիմք բա-
րեխօս առ հայր յերկինս վասըն մեր։

Բըղխմամբ քո սուրբ աղօթուաց
կենդանագործեցեր ըզմեռեալս, նըման
փրկչին յիսուսի կենդանագործողին
ղազարու. ըզքեզ ու։

Այլ մեք ձայնիւ ցընծութեամբ
տօնեմք զքո սուրբ զյիշատակս,
պատուեալ վերկայ քրիստոսի սուրբ
հայրապետըդ յակոբ. ըզքեզ ու-
նիմք բարե։

Յանձն առեր զչարչարանս վասըն
նոյեան տապանին. ’ի հրեշտակէն
ընկալար զփայտ փրկութեան աշ-
խարհի. ըզքեզ ու։

Այսօր զանյաղթելի մարտիրո-
սացն, եկեղեցի տօնէ ըզյիշատակ
ճգնութեան, որք ’ի սեբաստիա
պատերազմեալք ընդ թըշնամւոյն
յաղթեցին քաջութեամբ. սոցին ա-
ղաչանօք քրիստոս խընայեա ’ի մեզ։ քղ

Այսօր անտանելի չարչարանօք
նահատակեալք ’ի լըճին սառու-
ցելոյ երանելի քառասունքն. որք
’ի բարձանց անճառելի ճառագայ-
թիցըն նըշոյլիւք տպաւորեալք լի-
նէին. որ իջեր ’ի մէջ սրբոց քոց
քրիստոս խընայ։

Այսօր ’ի լոյսն աստուածային եր-
գոյն անցանէին ընդ ջուր, մա-
քրեալք որպէս զոսկի փորձելով ’ի
հուր. եւ համբարձեալք ’ի յեր-
կնային զինուորութիւնըն դասե-
լով ընդ անմարմին զուարթունսն.
որ ես փառաւորեալ ’ի մէջ սրբոց
քոց քրիստոս խընայ։

Այսօր ցընծան դասք առաքե- հոգ
լոցըն գալըստեամբ հոգւոյն աստու-
ծոյ. զոր մըխիթարեաց փոխանակ
բանին մարմնացելոյ եղեալ ընդ
նոսա. փառըս տացուք նըմա սըր-
բասաց ձայնիւ։

Այսօր բըղխեաց ջուր կենդանի
յերուսաղէմ յորմէ ըմպան գետք
աստուածայինք. եւ ընթացեալ ար-
բուցին տիեզերաց զքառավտակ
աղբիւրսն եդեմայ. փառըս տա։

Այսօր ցօղով իմանալեաւ յամպոց
հոգւոյն զուարթացան բոյսք եկե-
ղեցւոյ. պարարտացան դաշտք ար-
դարութեամբ եւ գեղեցկացան ա-

նմապատք մաքուր կուսութեամբ. փառըս տա։

Հան Լեառըն վիմածին անլեռւր յորդառատ. բարունակ ծաղկեալ այգի վայելուչ սրովբէ հողեղէն. բաբունեալ բանին տուն անօրէնութեան տաղաւար հոգւոյն. առ ծնեալն 'ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր ննջեցելոցն։

Փափկութեան դրախտին բացող բանալի. քրիստոսի բարձող նըմանող երկնից. սափոր ոսկեղէն լի մանանայիւ. գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսսեայ. տաճար լուսոյ մայր. առ ծնեալն 'ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր նոցին։

Յօդ քաղցրածաւալ ցանկալի զուարթնոցն. նիւթեղէն սրովբէ դեղ մարգարտափայլ հրեղէն եկեղեցւոյ. մաքուր աղաւնի ամպ հովանաւոր սուրբ կոյս մարիամ. առ ծնեալն 'ի։

ած Ամենագովելի եւ քան զերկինս բարձրագոյն, որ զանհասանելի ըզտէրըն յորովայնի քում կրեցեր, եւ ցընծութիւն աշխարհի ծնար. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։

Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս, որ զանբաւելի ըզբանն անճառաբար յղացար, եւ ըզմարմնացեալն աստուած ծնանելով 'ի քէն. վասն որոյ ա։

Ի լեառնէ վէմն առանց ձեռին հատեալ դանիէլ գուշակեաց զանսերմն ըղծընունդ քո հայրն երկնաւոր, մայր եւ յետ ծննդեան մնալով կոյս. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացու։

Յաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ 'ի բարձունս երգեսցուք թագաւորին քրիստոսի հաւատացելովք ժողովուրդք։ խաղ

Որ եկն 'ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւն. նըմա ըզփառս երգեսցուք։

Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փրկողին մատուսցուք փառք եւ պատիւ յաւիտեան։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Անբիծըն վարուք արդարըն հոգւով, բանիւ ճըշմարիտ եւ սուրբըն սըրտիւ տէր գրիգորիոս. որում ցանկացան զօրքըն սրովբէից բերանք հրեղէնք յերկնից յերկիր խոնարհեալ 'ի տես մարմնով ճըգնողին. որ եւ պատիւ տեղւոյն անուամբըն կոչի։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Հովուին հըսկողի ճըշմարիտ եւ քաջ հովուին պատկերի հովուըքն եղեն հետեւողք. զոր ամփոփեցին զմարմինըն մաքուր մերձ 'ի յայրըն մանեայ մեզ դեղ ախտից մաքրութեան. որով սըրբիմք հոգւով 'ի թունից վիշապին։

Որ առաքեցեր ըզսիրելին եւ Հրց բձ
զհաւատարիմ քո պաշտօնեայն ըզսուրբ գրիգոր. եւ 'ի ձեռըն նորա լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհս. ըզքեզ միշտ օրհնեմք աստուած հարցըն մերոց։

Որ ետուր համբերութիւն անտանելի չարչարանաց սըրբոյն գրիգորի. եւ նորին ժուժկալութեամբըն լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհս. ըզքեզ միշտ։

Որ նորին սուրբ աղօթիւք բարձեր զխաւար կռապաշտութեան 'ի հայաստան աշխարհէ, եւ արարեր երկրպագուս ամենասուրբ Երրորդութեանդ. ընդ քեզ միշտ օրհնեմք աստուած հայր։

գ

Ըզուարթ օրհնեցէք, եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Արդ եկայք հաւատացեալք եւ կոչեցեալք յորդեգրութիւն սրբոյն գրիգորի. օրհնեցէք եւ բարձր արարէք զաստուածն ամենեցուն։

Ցընծութեամբ տօնեսցուք ըզյիշատակ հայրապետին մերոյ. եւ ընդ նմին գովեսցէք, եւ բարձր արարէք ըզթագաւորըն մեր քրիստոս։

Քահանայք եւ պաշտօնեայք հոգեւորականն հընչմամբ գովեցէ՛ք ընդ սրբոյ հայրապետին. եւ բարձր արարէք սուրբ զհոգին ճըշմարտութեան։

ձեձ

Ըզկուսութիւնըդ քո աստուածածին անարատ. զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեանըն, մեծացուցանեմք։

Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ քրիստոս աստուած եւ փրկիչ անձանց մերոց, մեծացուցանեմք։

Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

ողր

Թիւնս իմ. Բարեխօսութեամբ քահանայապետին քո եւ վըկային, կեցո ըզմեզ բազումողորմ։

Աղաչանօք սրբոյն գրիգորի լուր մեզ, որ միայնդ ես բազումողորմ։

Նորին աղօթիւք որով ուսաք ճանապարհ կենաց, քաւեա տէր ըզյանցանըս մեր։

աէք

Առաջնորդ հաւատոյ եւ լուսաւորիչ անձանց մերոց տէր սուրբ գրիգոր. եկայք հաւատացեալք 'ի ձեռըն նորա հանցուք աստուծոյ գոհութիւն։

Մեծ խոստովանողըն քրիստոսի, եւ ըզչարչարանըս յանձն առող վասըն մեր տէր սուրբ գրիգոր. եկայք լուսաւորեալք 'ի ձե։

Քահանայապետ աստուծոյ եւ պահող աստուածային օրինաց, տէր սուրբ գրիգոր. եկայք աշակերտեալք ընդ նմին երգեսցուք փառք 'ի բարձունս աստուծոյ։

Յկ դձ

Հրաշափառ աստուած եւ միշտ բարեխնամող. որ յառաջգիտութեամբ ըզփըրկութիւն հայաստանեայց ընկըլընաւորեալ, 'ի պարթեւական մեղապարտ ազգէն լուսաւորիչ մեզ շնորհեցեր. վասն որոյ բարեխօսութեամբ նորա փըրկիչ կեցո ըզմեզ այժմ եւ 'ի քո յահաւոր գալըստեանն։

Հրաշալի զարմացմամբ երանելին սուրբ գրիգոր զանտանելի ըզչարչարանս 'ի յանձն էառ, եւ երիւք հընգօք ամօք 'ի մէջ թունաւորացըն բնակէր անդընդային տանջանօքն 'ի վիրապին. վասն որոյ բա։

Հրաշագործ քո բնութիւնդ եւ մեծ ողորմութեամբ, ելեալ բըժըշկէր ըզհարուածեալսն 'ի դիւաբաղխ սատանիցն. երկըրպագուս առնելով զամենեսեան սուրբ Երրորդութեանդ, վասն որոյ բա։

Որ կոչեցար յորդեգրութիւն հօրըն երկնաւորի ով երանելի տէր սուրբ գրիգոր, եւ եղեր վըկայ ճըշմարիտ քրիստոսի աստուծոյ մերոյ. վասըն ժողովըրդեան

քո հայցեմ ՚ի տեառնէ ըղձքանութիւն։

Որ համբերութեամբքդ քո ստացար քեզ ժողովուրդ սեպհականս եւ ընտրեալս, եւ նորափետուր զարդարեցեր ծննդեամբ սուրբ աւազանին. փա։

Որ մոլորելոցս ՚ի խաւարի բացեր զդրունս լուսոյ ճշմարիտ աստուածգիտութեան, եւ մրժանաւոր արարեր ըղձեալ ժառանգորդ լինել կենացըն յաւիտենից. փա։

ճշւ գկ Հովիւ քաջ բանաւոր հօտի տէր սուրբ գրիգոր, հաստատեցեր զհիմունս եկեղեցւոյ ՚ի հաստատուն երկրի ՚ի վերայ հիմանն սուրբ առաքելոցն։

Հովիւ բարի եւ առաջնորդ կենացըն յաւիտենից տէր սուրբ գրիգոր, հաստատեա զանձինըս մեր հաւատով ճշմարտութեան ՚ի վերայ հիմանն սուրբ եկեղեցւոյ։

Արդ աղաչեմք ըզքեզ հայր վարդապետ և տէր, բարեխօսեա քրիստոսի աստուծոյ մերոյ կեցուցանել զանձինըս մեր։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՀԱՅՐԱՊԵՏԱՑՆ

### ԲԱՐՍՂԻ, ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑՒՈՑ, ՍԵՂԲԵՍՏՐՈՍԻ ԵՒ ԱԲԲԱՑ ԵՓՐԵՄԻ

օրհ գձ Որ համանման մեծին եղիայի եւ յովհաննու մըկրտչին յանապատի բնակեցար հրեշտակական վարուք ճգնեալ. ՚ի փշաբեր ոստոց ծաղէկ վարդից, զանուշահոտութիւնըն քրիստոսի բուրեալ կենաց ՚ի կեանըս փրկելոցն. ով երանելի սուրբ եփրեմ, առ քրիստոս բարեխօսեա վասն քո տօնողացս։

Որ յերկնային վտակաց հոգւոյն արբեր զհոսանըս շնորհաց, որպէս ՚ի վերնատանըն գումք առաքելոցն ՚ի հրեղէն լեզուացն, զոր առատապէս մատուցանելով ծաւալեցեր ընդ տիեզերս յորդութե ոգւոյ ծարաւեաց. ով երանելի սուրբ եփ։

Որ աստուածատունկ իմանալի ծառոյն կենաց ողկոյզն ՚ի քէն պտղազարդեցաւ. որով կերակրեցեր եւ կերակրես միշտ ըզմանկունս եկեղեցւոյ, արքայութեանն երկնից դըպիր եւ վարդապետ հին եւ նոր կտակարանաց. ով երանելի սուրբ եփրեմ, առ քրիս։

Այսօր տօնէ եկեղեցի ուրախութեամբ ըզյիշատակ սրբոյն գրիգորի. որով լուսաւորեալ պայծառացաւ վայելչապէս ՚ի հանդերձըս յօսկեհուռըս զարդարեալ եւ պըսակեալ. օրհնեցէք մանկունք զքրիստոս թագաւորն։ գրէ

Այսօր ցընծան նորածնեալ որդիք լուսոյ յիշատակաւ սուրբ լուսաւորչին. որով հրաւիրեցան ՚ի հարսանիսն անապականն, մըտանել ընդ փեսային երկնաւորի ՚ի յառագաստըն լուսեղէն. օրհ։

Այսօր քահանայք հոգեւոր պատարագին ըսպասաւորք վերապատուեն ըզքահանայապետըն սուրբ. որով երկնայնոց քահանայութեանցըն հաղորդեալք. յոր վերա-

փոխեալ այսօր մըտանէ 'ի սըրբութիւն սըրբոց միշտ բարեխօսել առ տէր վասըն մեր. օրհ։

ներ Այսօր զուարճացեալ տօնեն երկնայինքն ընդ մարդկան, պարակից եղեալ փրկութեան մերոյ. քանզի յայտնեցաւ մեզ հոգեւոր գանձըն լուսոյ, արեւելեան արեգականըն ճառագայթ սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սորա տէր պարգեւեա զխաղաղութիւն հայաստանեայց աշխարհի։

Այսօր վերըստին նորոգեցաւ քահանայական գաւազանն, գեղեցկապէս ծաղկեալ պայծառութեամբ. քանզի շնորհեցաւ հովիւըն քաջ բանաւոր հօտի, յարմարոյ լուսաւորչին բողբոջ բուսեալ սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սորա տէր հաստատեա զիշխանութիւն հայրապետական աթոռոյ։

Այսօր մեծապէս փառօք ցընծայ թագաւորական գաւազանն ընդ հաշտութեան սիրոյ սուրբ հայրապետին. քանզի եհաս 'ի յօգնութիւն օրինադրողըն թագաւորաց. մարտակից զինուորական դասուն սուրբըն Ներսէս. բարեխօսութեամբ սորա տէր բարձրացո զիշխանութիւն թագաւորական աթոռոյ։

մծբ Հայրապետ սուրբ եւ անբիծ եւ ընտրեալ յորովայնէ. սքանչելագործ վըկայ եւ պարծանք ազգի մարդկան. առ քրիստոս բարեխօսեա վասըն մեր քո տօնողացս։

Հովիւ հոգեւոր բանաւոր հօտի. լուսաւորիչ տիեզերաց սիւն լուսոյ կանգնեալ 'ի մէջ եկեղեցւոյ. առ քրիստոս բարե։

Հաստատութիւն հաւատոյ պըսակ 'ի գլուխ եկեղեցւոյ. պայծառ քարոզ տիեզերաց եւ պարծանք ազգի մարդկան. առ քրիստոս բարե։

Ի տաճարի քում սըրբութեան երկըրպագեմք քո նըշխարաց. փառաւորեմք զօր յիշատակի կատարման քո հանգըստեան. առ քրիստոս բարեխօսեա վասըն մեր քո տօնողացս։

Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտութիւն առաքելոյն թադէոսի. եւ աստուածային հրով մըքրութեան, ոսկի փորձեալ գըտայք 'ի բնակարանըս հրեշտակաց. ով երանելի սուրբ ոսկեանք, բարեխօսեցէք առ տէր մաքրել զըմեզ 'ի մեղաց մերոց։ ռսկ

Որք անհրաժեշտ դաւանութեամբ քարոզեցիք զքրիստոս 'ի գրունըս թագուհւոյն, մըկըրտելով զքաջ նահատակն 'ի յակունս եփրատայ 'ի ծաղկազարդ վայելչութիւնն. ով երա։

Որք անպարտելի մնացիք 'ի հրապուրանաց որդւոյ թագաւորին, չարչարեալըք վասըն քրիստոսի, արագապէս խողխողեցայք պատարագ ընդունելի. ով երա։

Արեգակն արդարութեան հոգ քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց զխաւարն անգիտութեան, եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ հօր եւ սուրբ հոգւոյն. վասն որոյ

եւ մեք երկրպագանեմք հօր հոգւոյ եւ ճշմարտութեամբ։

Որ փոխանակ ծոցածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետիքըն հօր 'ի բարձանց հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս յադամայ տրտմեցելոց եւ հրազինել զընտրեալ դաս առաքելոցն. փառս որոյ։

Այսօր սըրտամակին եւ գիշերային լուծան երկունք ծնընդեան նախամօրն. քանզի զծնեալսն մարմնով 'ի մահ եւ յապականութիւն, վերստին ծնանի հոգին յորդիս լուսոյ հօրն երկնաւորի. փառս որոյ եւ մեք եր։

հան Արարչագործ աստուած, որ յոչընչէ գոյացուցեր զերկինս եւ զերկիր. օրհնեմք ըզքեզ որ հանգուցիչդ ես ննջեցելոց հայր ամենակալ։

Բանդ աստուած եւ համագոյ փառաց հօր պատկեր. գովեմք ըզքեզ որ յարութիւնդ ես ննջեցելոց որդի միածին։

Աղբիւր անսպառ յորդէ բաշխիչ տիեզերական շնորհաց. բարեբանեմք ըզքեզ որ նորոգողդ ես ննջեցելոց հոգիդ ճշմարիտ։

ած Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։

Աւետաւոր հրեշտակն աւետաբանէր ըղծընեալ փրկիչն 'ի սուրբ կուսէն։

Ասէր ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ։

Այսօր ուրախացեալ ցնծան երկնից բազմութիւնքն 'ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից 'ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. փառք գալըստեան քո տէր։

Այսօր սուրբ լուսոյ հոլանի եղեւ ըմեզ 'ի բարձանց. քանզի թագաւորն երկնաւոր եկաւորի 'ի սուրբ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծաւալեալ տօնեն ընդ մարդկան. փառք գալըստեան քո տէր։

Այսօր քահանայապետ ճշմարիտ աստուածային օրինօքըն պատուեալ կանգնէ զքառանկիւն սեղան խաչին, արժանապէս պատարագեալ բաշխէ զմարմին եւ զարիւնըն տեառն, մաքրապէս մերձեցարուք փրկեալք նորա ժողովուրդք. եւ հայցեցէք 'ի քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Եկայք լուսաւորեալ մանկունք առագաստի, աշակերտեալք սոյն բանին ճշմարտութեան. ցընծութեամբ կատարեսցուք ըզյիշատակ վարդապետին եկեղեցւոյ, որ զընթացս իւր կատարեալ այսօր վերափոխեցաւ յաստուածակերտ խորանն 'ի յանդրանկաց հոգւոցըն դասս. փառքն մեր առ տէր միշտ բարեխօսել, տալ ըզքաւութիւն յանցանաց։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Գոհութեամբ փառաւորեսցուք ըզքեզ քրիստոս փառաց թագաւոր, որ ընտրեցեր աստուածային քո օրինաց քարոզ ըզսուրբըն եփրեմ. որ զհաւատացեալս արծաթ բանին 'ի քէն արկ 'ի սեղանաւորս յոգիս որդւոց մարդկան. մաղթանօք սորա արժանաւորեա ըզ-

մեզ փառաւորել սուրբ զերրորդութիւնդ յաւիտեանս ամէն։

հրց դձ Սքանչելագործ աստուած որ ցուցեր զսքանչելիս քո ազգի մարդկան. օրհնեմք զքեզ տէր աստուած հարցն մերոց։

Որ ՚ի ձեռն երանելի վարդապետին արարեր ողորմութիւն ազգի մարդկան. օրհ։

Որ սովաւ լուսաւորեցեր զտիեզերս. սորին բարեխօսութեամբ պահեա զմեզ. օրհ։

գ Ըղտէր. Ամենայն գործք աստուծոյ եւ ամենայն արարածք օրհնեցէք, սուրբք եւ խոնարհ սրտիւք գովեցէք, եւ առաւել բարձր արարէք ընդ յաւիտեան։

Հրեշտակ երեւեցար ՚ի յերկրի եւ վարս ունէիր աստուծոյ հաճոյական. յիշեսջիր զմեզ անդադար երանելի սուրբ վարդապետ. որ ընդ հրեշտակս օրհնես զաստուած յաւիտեան։

Ստացող եղեր պատուիրանաց սուրբ հոգւոյն, եւ ապրեցար ՚ի հաղբից հրապուրողին. կատարեցեր զառաքինութիւն, եւ փոխեցար ՚ի հանգիստն յաւիտենից։

Արդ եկայք ամենեքեան միաբան, առցուք յօրինակ ճգնութեան զերանելւոյն. զի նմանեսցուք վարուց նորա, եւ փոխեսցուք ՚ի կեանսն յաւիտենից։

մեծ Թագաւոր փառաց աստուած հոգիդ կենդանարար. ՚ի շնորհաբաշխ աւուր մեծի ծննդեան մարմնով, դըստեր դաւթի թագաւորի. նորոգեա զկենդանութիւն մերոյ թագաւորին. զի օրհնեսցուք զքեզ տէր այժմ եւ յաւիտեան։

Աղբիւր կենաց եւ փրկութեան մերոյ հոգի հօր եւ որդւոյ. ՚ի յարմատոյն յեսսեայ բղխման գաւազանի հասեալ ժամու. շնորհազարդ պայծառացո զգաւազան իշխանութեան մերոյ հայրապետին. զի օրհնես։

Լուսոյ աշխարհի եւ ճառագայթ իմանալի հոգի սուրբ աստուծոյ. ՚ի ցնծութեան աւուր լրման ուրախութեան յովակիմայ եւ աննայի. աղօթիւք սոցա լցո զպէտս կարեաց հայաստանեայց եկեղեցւոյ. զի օրհնես։

Որ ըզշնորհս աստուածային լոյս ՚ի վերուստ իջեալ յերկնից պարգեւեցեր հիւսիսականացս ՚ի ձեռն սուրբ վարդապետին. աղաչանօք սորա ողորմեա մեզ աստուած։ ողր

Որ զանմարմին պարունակող բանի զգրաւորական զիմաստ հոգւոյն շնորհեցեր որդւոց թորգոմայ, յայտնեալ տեսլեամբ ՚ի ձեռն սուրբ վարդապետին. աղա։

Որ զգիտութիւն քո զերկնային եւ զհոգեւոր զիմաստութիւն առատապէս ծաւալեցեր յեկեղեցիս հայաստանեայց ՚ի ձեռն սրբոց թարգմանչացն. աղաչանօք սոցա։

Անճառելի շնորհօք լցեալ ՚ի յիշատակի սուրբ վարդապետին. խնդրեմք ՚ի քէն տէր կեցո զանձինս մեր։ տէր

Եւ ըզճգնութիւն սրբոյ վարդապետին ընկալցուք ՚ի սիրտս մեր հաւատով. բարեխօսութեամբ սորա տէր կեց։

Գովաւորեալ ընդ անմարմնական բազմութիւնս, եւ ՚ի սրբոյ հոգւոյն է պսակեալ. ՚ի ձեռն սու-

րին բարեխօսութեան տէր կեցո զանձինս մեր։

Մնկ սան Լուսապայծառ նմանութիւք լուսեղինաց աշխարհի համածածանգող գոլով, լուսաւորեաց զեկեղեցի աստուածային բանիւ երանելին Բասիլիոս. մաղթանօք սորա խնդրեսցուք զթողութիւն մեղաց։

Քրիստոսազօր զինուորաց հանդերձեալ 'ի հոգեւոր պատերազմին, սիւն հաւատոյ հաստատութեան, եւ առաջնորդ մարդկան 'ի կեանս երանելին Բասիլիոս. մաղթանօք սո։

Որ ըստ անմարմնոց 'ի մարմնի քաղաքավարեալ առաքինութեամբ 'ի մանկութենէ. այսօր վերափոխեալ 'ի յերկնային խորանս երանելին Բասիլիոս. մաղթանօք սո։

Ճշու բձ Որ լուսով աստուածային բանին զարդարեցեր զեկեղեցի. եւ զխաւարն անգիտութեան հալածեցեր յոգւոց մարդկան, ով տէր սուրբ գրիգոր. բարեխօս լեր վասն մեր առ միածին բանն հօր։

Որ զհամագոյ բնութիւն միասնական երրորդութեանն յայտնեցեր եկեղեցւոյ խոստովանել միութիւն. ով տէր սուրբ գրի։

Որ զփրկական տնօրէնութիւն մարդասիրին վասն մեր ուսուցեր մի յերկուց նոր խառնումն ըսքանչելի. ով տէր սուրբ գրի։



# ԿԱՆՈՆ

## ԱՄԵՆԱՑՆ ՍՐԲՈՑ ՀՆՈՑ ԵՒ ՆՈՐՈՑ

ԱՌ քեզ աստուած հարցն մերոց խնդրեմք անձամբք պաղատիմք. մի անտես առներ տէր. որ փառաւորեալդ ես յաւիտեան։ Հրց դկ

Յիշեա զուխտն աբրահամու զիսահակայ եւ զյակոբայ. եւ զնեղելոց անձանց պաղատանս մի անտես առներ տէր, որ փա։

Շնորհեա տէր խնդրողացս 'ի քէն ըզթողութիւն մեղաց, 'ի տաճարի քում սրբութեան, բարեխօսութեամբ սրբոց քոց. որ փառաւո։

Օրհնեցէր. Օրհնեցէք զտէր երկինք եւ երկնային զօրութիւնք, սերովբէք եւ քերովբէք զաստուածն աստուածոց. բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Գ

Օրհնեցէր. Օրհնեցէք զտէր երկիր եւ որ 'ի սմա են կենդանիք. համբառնալով 'ի վեր ըղձայնս եւ երգօք հոգեւորօք, բարձր ա։

Օրհնեցէր. Օրհնեցէք զտէր դասք հրեշտակաց եւ մարդկան, զարարիչն արարածոց. միաբանութեամբ երգով բարձր արա։

Նահապետացն աբրահամու իսահակայ եւ յակոբայ. պարգեւեցար 'ի յաստուծոյ կոյս մարիամ դուստր նոյին. երանեն ազգ եւ ազինք այսօր ըզծնեալդ 'ի յաննմանէ։ Մեծ

Ա՛ղախին եւ մայր կենաց անջրն ծնընող հօր միածնին. որ առ ՚ի քէն մարմնով ընկէց զամբարտաւանըն յաղթութ. Երա։

Ո՛ր բարձրացոյց զանկեալ բնութիւնս ՚ի քէն ծնընդեամբ որդին յերկինս. ընդկարծուեալսն ելից հացիւ եւ զմեծատուսն ելոյծ ունայն. Երա։

ողր / գձ / մրգ

Ո՛ր աւետաւոր քում գալըստեանդ առաքեցեր յաշխարհ ըզսուրբ մարգարէսն. եւ եկեալ խոնարհութեամբ նոր օրինօք զթերին լըցեր ՚ի գիրս օրինաց եւ մարգարէից. բարեխօսութեամբ սոցա քրիստոս ողորմեա մեզ։

Ո՛ր կոչեցեր մարգարէիւք յառաջագոյն ըզհեթանոսս քեզ նոր ժողովուրդ. եւ ըզդուստըր սիոնի զեկեղեցի հեթանոսաց հարսըն սիրելի անմահ փեսային. բարե։

Ո՛ր ընդփառըս տաճարիս զոր շինեցեր շնորհդ եկից ՚ի վերայ վիմին, բարձրագոյն քան զառաջինն, եւ գերազանց վայելչութեամբ տեսանողքըն ծանուցին իմաստիւք հոգւոյն. բարե։

տէր / գձ / հայ

Ա՛յսօր երկնայնոցն ընդ մեզ տօնախմբելով զյիշատակ սուրբ վարդապետացն, որք լուսաւորեցին զհաւատոյ մանկունս, եւ ընդ հրեշտակաց դասս վերակարգեցան։

Ա՛յսօր առաքելոց եւ մարգարէիցըն դասք տօնակից գոլով դըստեր վերին սիոնի, ՚ի յիշատակի սուրբ վարդապետացն, որք զիմաստից նոցին զխորոց յայտնեցին զխորհուրդ։

Ա՛յսօր քահանայք և պաշտօնեայք սուրբ եկեղեցւոյ վերապատուեն զյիշատակ սուրբ վարդապետացն, որովք զարդարեցան երկնային շնորհօք. երգեն ընդ նոսին ըզփառս յաւիտեան։

Յիշատակ քրիստոսի սրբոց վըկայիցն, եկայք հաւատացեալք ըզճըգնութիւնս սոցա հռչակեսցուք, եւ օրհնութեամբ զաստուածն փառաւորեսցուք։ Ձկ / գկ / կու

Զուարճացի՛ր Հռիփսիմէ քոյին սուրբ ընկերօք. զի ՚ի տեղւոջ հեղման արեան ձերոյ դասք հրեշտակաց տօնեն ընդ մեզ. եկայք հա։

Ի՛ տաճարի Հռիփսիմեանց մեծ վըկայուհեաց, եկեղեցիք սրբոց պայծառազգեաց վայելչութեամբ տօնեն այսօր. եկայք հա։

Ո՛րք եկեալ եմք ՚ի պատուել զյիշատակ սուրբ վըկայիցն, աղացուք ըսկիզըն ըզգօնութեան, աղաղակելով առ քրիստոս տէր փառըք քեզ, փառըք քեզ տէր աստուած։ մրտ

Ա՛հաւոր ես հրեշտակաց անուանս ՚ի սերովբէից. եկիր երեւեցար մարմնով, ուսուցեր մեզ ասել տէր փառըք քեզ, փա։

Յանմարմնոց ես մերօրհնեալ ՚ի մարդկանէ երկրպագեալ. քեզ փառըք վայելէ պատիւ յամենայն ժամ ասել տէր փառըք քեզ, փա։

Պարծանք եկեղեցւոյ եւ ուրախութիւն հրեշտակաց, ով սուրբ հայր անուն, զաղաչանըս մեր հանապազ մատո սուրբ երրորդութեանն։ ճշւ / բձ / ճրգ

Ո՛ր ՚ի մարմնի կառուցեալ եւ զանմարմնոցըն բերելով ՚ի քեզ ըզվերս. ով սուրբ։

Բաժա՛կ հոգեւորակա՜ն լցեալ ա՛ստուածայի՛ն ուրախութեամբ․ ո՛ղ։

Թգ Ա՛ստուա՜ծ փրկիչ մեր, լո՛ւր մեզ որ կարդամք առ քեզ, բարեխօսութեամբ սուրբ Թագաւորին։

Ո՛ր բարեպաշտութեամբ հիմնեցայց զեկեղեցի սուրբ, եւ կարգաւորեաց ուղղափառութեամբ ընդ քո ժողովուրդս։

Ա՛րդ ա՛նկեալ աղաչեմք ըզքեզ մարդասէր տէր, յիշատակի սորա պարգեւեա մեզ զերկնային քո զխաղաղութիւնդ։



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՆԱՆՑ ԶՕՐԱՎԱՐԱՑ

օրհ գկ Ն՞ՈՐԱՀՐԱ՜Շ պսակաւոր եւ զօրագլուխ առաքինեաց, վառեցար զինու հոգւոյն արիաբար ընդդէմ մահու. վարդա՛ն քաջ նահատակ որ վանեցեր զթշնամին, վարդագոյն արեամբըդ քո պսակեցեր զեկեղեցի։

Ե՞րկնաւո՜ր Թագաւորին զինու յաղթեալ պատերազմին, խոհական իմաստութեամբ խորհեմանցեալ անճառապէս. խորէն խորհրդական եւ ծանուցեալ անուն բարի, խաչելոյն վըկայ եղեալ հեղմամբ արեան պսակեցաւ։

Բ՞նակա՜ն լուսով լցեալ արխացեալքն քաջն արտակ, թաթաւեալ ՚ի կարմրութիւն բոսորային բըղխեալ աղբերն. զփրկականն ըմպեալ զբաժակ եւ մըկրտեալ արեամբն իւրով, դասակցեալ ընդ անմարմնոցն երրորդութեանն երգել ըզփառս։

Սրբափայլ զգեստուք պճնեալ ՚ի յերկնաւոր հանդիսադրէն, երրորդութեամբըն զօրացեալ վանեալ զամբոխս բանսարկուին. հըմայեա՜կ հօր ընծայեալ որդւոյ գոլով չարչարակից, հոգւովն յաղթեալ պատերազմին եւ չարասէր թագաւորին։

Ի՞ակա՜ն բարւոյն գիտմամբ ընդդէմ մեղացըն վառեցաւ, տարագնաց ելեալ յերկինըս պարակցեալ ընդ անմարմնոցն. տաճար զարմանալի տաճար եղեալ երրորդութեանն, տէրունեան սուրբ խորհրդոյն տուն եւ տեղի արժանացեալ։

Ստացեալ ըզհնազանդ վահան, յուսոյն զրահիւք ծածկեալ, զփրկականըն սաղաւարտ ՚ի գլուխ եդեալ զնըշան խաչին, վահա՜ն վեհ երեւեալ որ մանկութեամբ նահատակեալ, խաչելոյն վըկայ եղեալ պըսակեցաւ արեամբըն իւրով։

Ի՞ հոտ անո՜յշ ողջակիզեալ մատուցանէր զինքըն նուէր, բանաւոր պատարագաւ ընծայելով հօր ՚ի յերկինս. արսէնըն ցանկալի արդարութեամբըն ճոխացեալ, իմաստութեամբ պայծառացեալ յեօթնարփեան շնորհաց հոգւոյն։

Ե՞րկոքումբք հարազատօք ընտրելագոյն նահատակօք, յառաջեալ յամենեցունց գլուխ եւ աւագ մարտիրոսաց. նախաշաւիղ գոլով բարեաց յառաջադէմըն գարեգին. ընկալեալ ըզբրաբիոնըն յաղթանակ նահատակացն։

Անճառելի բանդ աստուած որ վասն մեր եղեր 'ի խաչ, բարձրացար 'ի մէջ երկրի բարձեր զյանցանս նախաստեղծին. զերահրաշ զօրութեամբ յաղթեցեր մահու, յարուցեալ Երեքօրեայ ընդ ծագեցար տիեզերաց:

Դասակարգեալ հողեղինացս ընդ հրեղինաց աննիւթ գոյից, երջանիկ արիութեամբ կատարեցան յանօրինաց. զոր ընկալցին 'ի քէն Քրիստոս զանապական փառաց պըսակն, երեւեալք լուսազգեցք յաւուր մեծի քում գալստեանն:

Ընդհանուր քարոզեցին զանուն կենաց ընդ տիեզերս, թօթափեալք ըզքուն մահու զուարթնոց երկնից հետեւեցան. ժուժկալեալք արիաբար զժանիս մահու խորտակեցին, իմաստունք երեւելով ընդ փեսային մտին յառագաստն:

Լուսաւորիչն ամենեցուն Ղեւոնդիէ սուրբ վարդապետն, խնդական մեծ խորհրդով խրատեալ լըցոյց զաշակերտեալսն. ծանուցեալ զլոյս գիտութեան յոգիս որոց կատարելոց, կամաւոր յօժարութեամբ կատարեցան սիրով փրկչին:

Հուր սիրոյ կենարարին բորբոքեցաւ յոգիս սրբոցն, ձայն տուեալք խրախուսեցին դիմեալք 'ի մահ յօժարութեամբ. զենկամաւորք հոգեւորք զալխ մեղաց խորտակեցին, ճանապարհ մեզ հորդեցին 'ի յերկնային նաւահանգիստն:

Մըկրտեալք արեամբն իւրեանց արբին զբաժակ մահու փրկչին, յառաջեալ յամենեցունց յովսէփ ընտրեալ աշակերտացն. նորահրաշ սիրով լըցեալ եւ նահատակ բարի ցուցաւ, շինեցաւ տաճար փառաց սըրբութեան անմահ բանին:

Ուսուցին ամենեցուն երկրպագել քում տէրութեանդ, չարչարեալք արիաբար ընդդէմ մահու չար իշխանին. պատրաստեալք 'ի պատերազմ զպատրանս չարին խափանեցին, ջուր կենաց մեզ արբուցին ըզհուր մեղացըն շիջուցին:

Ռահ լուսոյ մեզ ծանուցեալ զանգիտութեան խաւարն եղծ, Սահակ սուրբ հօտապետ առաքելական բարեացն հաղորդ. Վերբերին վարուց բարեաց վանիչ չարին պաշտօնէից, տարփացեալ անճառ լուսոյն վերամբարձաւ 'ի կեանս անմահ:

Բաքունեացըն ճըշմարտից եկայք եւ մեք հետեւեսցուք. ցընծութեամբ կատարեսցուք ըզյիշատակ հայրապետացն. ուսեսցուք յարմարութեամբ 'ի միութիւն մարմնոյ փրկչին. փայլեսցուք գործովք բարեաց 'ի յերկնային առագաստին:

Քրիստոսի թագաւորին առաքելական ձայնիւ հընչմամբ, երգեսցուք զերգս օրհնութեան փրկեալք արեամբն իւրով սրբով. զի գթութեամբ խոնարհեալ ընկալցի զաղաչանս, թողութիւն շնորհեսցէ մեր բազում յանցանաց:

Ի համբառնալ բանին յերկինս Հոգ
եւ 'ի նստիլ ընդ աջմէ հօր, զուարճացեալ առաքելոցն երկրպագելին. օրհնելով ըզհայր զանաքող բանին:

Համահաւասարեալ գունդք սըրբոցն 'ի վերնատունն խորհրդոյ, համբարձմամբ անճառ սպասէին հոգւոյն. օրհ:

Յանկարծահաս հընչմամբ հեղեալ

կենդանարար աղբիւր լուսոյ. անմահական կենաց լուսով զարդարեալ. ուր օրհնէին ըզհայր զառաքող հոգւոյն:

Հան Ողորմութեանց տուող քրիստոս 'ի միւսանգամ քո գալստեանն շնորհեա եւ մեր ննջեցելոցն կալ 'ի յաջմէ քումմէ. որ ողորմած ես յամենայնի:

Յորժամ զանմահութիւն կենաց շնորհեսցես, եւ 'ի կեանս հրաւիրես. ընդ կամարարս անուանըդ քո ըզննջեցեալսն մեր դասաւորեա. որ ողոր:

Ընդ սուրբս քո դասեա եւ ընդ արդարսն պսակեա 'ի տեղի անկելոց հրեշտակաց ըզննջեցեալսն մեր կարգաւորեա. որ ողոր:

ած Աստուածածին մայր եւ կոյս ծագող արեգականն արդարութեան, որ լուսաւորեաց զմեզ, հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք ըզմիածին քո զորդին:

Եւ լոյծ զօրէնս բնութեան մարդկան հրաշալիք քո ծննդեան, եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ, եւ կուսութեանդ քո ոչ խախտեցան կնիքք. հոգեւոր երգով զքեզ բարե:

Զքեզ մորենի անկէզ, լեառն վիմածին դուռն փակեալ եւ աղբիւր կնքեալ. նախատեսացն գուշակեալ մայր եւ կոյս. հոգեւոր երգով զքեզ բարե:

խաչ Խաչի քո քրիստոս երկրպագեն արարածք ամենայն, որ 'ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սա եղիցի մեզ պահապան յաղթող, ապրեցուցանել զմեզ 'ի պատրանաց բանսարկուին:

Ի սմա բարձրացար բարձրեալդ անիծից, որ փառաւորեալդ ես ընդ հօր. ժողովեալ ըզհեռացեալսն կենսաբեր փայտիւն. ապրե:

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սա սպանէին արդելեալքն 'ի մեղսասէր բանսարկուին. որ ազատեաց զմեզ 'ի պատրանաց բանսարկուին:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Բանական խումբ հանգամանց եւ երեւնից թիւ ընդ վերին, որք ընդ նոսին նմանակեալք արփիաբար պատերազմաւ. եւ հեղին զարիւնս իւրեանց 'ի նորոգումն եկեղեցւոյ, ընդ նոսին պսակելով 'ի յերկնաւոր հանդիսադրէն:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Գոհութեամբ փառաւորութիւն երրորդութեանդ նուագեմք, բազմութեամբ պսակելոյս ըզմեօք մածեալ առաքինեացս, եկեղեցիք հայաստանեայց պայծառապէս զարդարեցան, ունելով միշտ բարեխօս ըզծընդնութիւն մարտի սոցա:

Որ անդադար փառաբանիս յանմարմնոցն, քահանայք սուրբ լուսածընունդ զուարթօք, ընդ քեզ բարեբանեմք աստուած հարցն մերոց: Հրց դկ

Որ 'ի շառաւիղէ քոց սրբոց քահանայից, պսակեալ ցուցեր զհայաստան աշխարհս. ընդ քեզ բա:

Որք արբին ըզհոսուրսն կենդանի ընդ հրաւիրեալսն 'ի վերնատանն. յորդաբուղխ բանիւ շնորհաց լուսաւոր եղեն մանկանցն արեամբ մկրտելով ընդ քեզ. աստուած հարցն մերոց:

գ Ըղտէր. Ամենայն ազգ եւ ազինք ամենայն գործք աստուծոյ զԹագաւորն ամենեցուն օրհնեցէք զՀայրն երկնաւոր, եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Որ հալածեաց զխաւար մեղաց 'ի տանէ Թորգոմական. զհանդիսադիրն ամենեցուն գովեցէք զԱստուածորդին, եւ բարձր արա:

Որ պսակեաց ըզհայաստան նորանշան լուսաւորչօք. բարեբանեցէք ըզսուրբ հոգին որդիք լուսոյ նոր իսրայէլ. եւ բարձր ա:

մեծ Նահապետացն աբրահամու իսահակայ եւ յակոբայ. պարգեւեցար 'ի յաստուծոյ կոյս մարիամ դուստր նոցին. երանեն ազգ եւ ազինք այսօր ըզծնեալդ 'ի յանեղէ:

Աղախին եւ մայր կենաց աջոյն ծընող հօր միածնին. որ առ 'ի քէն մարմնով ընկեց զամբարտաւանն յաթոռոյ. երա:

Որ բարձրացուցեր զանկեալ բնութիւնս 'ի քէն ծննդեամբ որդին յերկինս. ըզկարօտեալսն ելից հացիւ եւ զմեծատունսն ելոյծ ունայն. երա:

ողր Արեգական արդարութեան 'ի հայաստան ծագեալ պայծառացուցեր սուրբ զեկեղեցի հեղմամբ արեան սրբոցն. մաղթանօք սոցա խընայեա 'ի մեզ պարգեւատու բարեաց. եւ ողորմեա քո արարածոց:

Պանծալի սուրբ զաւակօք հովուեքըն զուարթունք, հրով հոգւոյն շիջուցին ըզբոցն ըզկռապաշտ պարսիցն. մաղ:

Պարթեւական տեառնորդին յառաջագոյն ազդեցութեամբ զհաւատոյ որդիս սուրբն գրիգորի պըսակազարդ տեսեալ. մաղ:

Երկնային հրաւիրակօք կոչեցեալք 'ի սկըզբանէ, փըրկական բանին պատմողք եւ պարծանք հայաստանեայց, դասակցեալք ընդ զօրս անմարմնականացն: տէր

Ըզվիճակն անդընդային նըմանեալ փարաւոնի, զգազանացեալ ըզԹագաւորըն գործակցօք չարին սուզեալ. զյաղթականն երգեն զօրհնութիւնս տեառն:

Հաւատոյ զինուք վառեալ մարտիկոնեան զօրավարին, յաշխարհօրէն պատերազմին անսասանն եկեղեցւոյ, անճառելիցն եղեւ ժառանգորդ բարեաց:

Ախտակցաբար արտասուեսցուք զուրացողըն հաւատոյ, ընդ սրբոց հայրապետացն երգելով զփառս 'ի բարձունս, փըրկողին ըզմեզ մաղթանօք սոցա:

Արիացեալք ու հայկաւական, քաջութեամբ առնուլ ըզվերջ խաբէութեան. Հանճարեղք 'ի հատուցումըն դաւանոյն, զամբարշտացն արդարադատ չափըմամբ. զօրականք յաղթողք պըսակեալք 'ի քրիստոսէ: Փոխ հմբ սող

Փոխանակեալք զունայնութիւնս ընդ ճըշմարիտ լուսոյ անմահութեանն. փափագանաց ձերոց առիք ըզկատարումն, մաքրիլ արեամբ յաղտոյ մեղաց տըղմոյ. զօրականք յաղ:

Հայցեցէք զխաղաղութիւն ճըշմարիտ վըկայք սրբոյ երրորդութեանն, նըւերելոցս յանօրինաց բըռնութենէ. զի ցընծասցուք յաղթանակաւ մարտի ձե-

րոյ. Նահատակք արդարք պսակեալք 'ի քրիստոսէ:

Ճշւ Արեգակն արդարութեան 'ի հայաստան ծագեալ պայծառացուցեր սուրբ զեկեղեցի հեղմամբ արեան սրբոցն. մաղթանօք սոցա խնայեա 'ի մեզ պարգեւատու բարեաց. եւ ողորմեա քո ստեղծածոց:

Պանծալի սուրբ զուարակօք հոգեւորքն զուարթունք, հրով հոգւոյն շիջուցին զբոցն զկրակապաշտ պարսիցն. մաղ:

Պարթեւական տեսանողին յառաջագոյն ազդեցութեամբ զհաւատոյ որդիս սրբոյն գրիգորի պսակազարդ տեսեալ. մաղ:



# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՂԵՒՈՆԴԵԱՆՑ

օրհ | դձ Որ յառաջագոյն սահմանեցեր զփրկութիւն հայաստանեայց, շնորհելով մեզ հրաւիրակ զերանելին զսուրբ գրիգոր. օրհնեմք զքեզ ընդ զօրս անմարմնականացն հայր ամենակալ:

Որ նորին դաւանութեամբքն խաչակից քեզ ընտրեցեր ըզգաստս քահանայիցն. շնորհաբաշխ ծնութեամբ կարգեալ հոգւոյս եւ վարդապետս. գովեմք զքեզ ընդ զօրս անմարմնականացն որդի միածին:

Որ մաքրութեամբ աւազանին եւ փրկական հաղորդութեամբ զլուսաւորեալն անուանեալդ քո պայծառացեալ արեամբն իւրեանց յաղթող մարտիւ պսակեցեր. բարեբանեմք զքեզ ընդ զօրս անմարմնականացն հոգիդ ճշմարիտ:

✠ Օրհնեմք զքեզ շնորհատու բարեաց. որ ընտրեցեր յորովայնէ զհրաւիրեալսն 'ի սկզբանէ փառաց քոց հաղորդս. խնայեա 'ի մեզ մաղթանօք սոցա:

յոլ Այսօր ցնծան հրեշտակք 'ի յերկինս, յիշատակաւ հողանիւթ հրեշտակիցն. որք համագունեալք ձայնիւն բարբառոյ, երգեն զօրհնութիւնս հօր 'ի բարձունս:

Այսօր ցնծան հոգիք արդարոց, նահապետաց եւ մարգարէից. ձայնակից լինել մեծին 'ի ծնունդս կանանց, երգեն զօրհնութիւնս որդւոյն միածնի:

Այսօր ցնծան դասք առաքելոցն, տօնախմբելով զյիշատակ մեծի մկրտչին. որ առաքելոցն է գլուխն եւ մարգարէից լրումն. ընդ նոսին եւ մեք բողոքեցելոյն 'ի հօրէ երգեմք զփառս 'ի բարձունս:

դրբ Հրաշափառ տարուած եւ միշտ բարեխնամող. որ յառաջնորդութեամբ ըզփրկութիւն հայաստանեայց զսկզբնաւորեալ, 'ի պարթեւական մեղապարտ ազգէն լուսաւորիչ մեզ շնորհեցեր. վասն որոյ բարեխօսութեամբ սորա փրկիչ կեցո զմեզ այժմ եւ 'ի քո յահաւոր գալստեանն:

Հրաշալի զարմացմամբ երանելին սուրբ գրիգոր զանուանելի զչարչարանս 'ի յանձն էառ, եւ երիւք հնգօք ամօք 'ի մէջ թունաւորացն բնակէր անդնդային տանջանօքն 'ի վիրապին. վասն որոյ բարեխօսութեամբ սորա փրկ:

Հրաշագործ քո բանիւդ եւ մեծ զօրութեամբ, ելեալ բղխէր ընդհարուածեալսն 'ի դիւաբաղխ սաստիցն, երկրպագուս առնելով զամենեսեան սուրբ Երրորդութեանդ. վասն որոյ բարեխօսութեամբ սորա փրկ։

ձկց Որ հրաւիրեցեր զյառաջագոյն ընտրեալսն 'ի սկզբանէ աշխարհի 'ի հարսանիսն անմահական, կոչելով յուրախութիւն ընդ բազմելոցն յառագաստին զաստուածազգեացն. աղաչանօք սորա կեցո ըզմեզ փառաց թագաւոր։

Որ յաթոռս քերովբէականս վերանցեալ հանգչէիր որդի աստուծոյ, համբարձար խոնարհութեամբ բառնալ 'ի գիրկս յորդւոց ադամայ. աղա։

Որ ըզլուծանելն անմահութեան սիրոյ քո արբեալ երանելին իգնատիոս, որպէս ցորեան աստուածային գազանաց մանրեալ ժանեօք հաց սուրբ գտաւ աստուծոյ. աղաչանօք սորա։

մրգ Այսօր ժողովուրդք որք 'ի հեթանոսաց, հրաւիրեալք յառաջագոյն մարգարէիւք, գալ առ աստուածն աբրահամու յերկրպագութիւն. օրհնեցէք ըզտէր յերկինս ընդ երկնաւորացն։

Այսօր որդիք դըստեր վերին սիոնի, շինեալք 'ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից. որք եւ ըմպէք զառատաբուղխ վտակ հոգւոյն 'ի յաղբերացն իսրայելի յեկեղեցիս սրբոց. օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն 'ի նոր։

Այսօր վերին զօրացըն համաձայնեալք, դասք նահապետաց եւ մարգարէից, երգեն աստուծոյ զերգըս հոգեւորս. 'ի յիշատակի սորա երգեմք եւ մեք ըզփառս 'ի բարձունս։

Սուրբեալդ աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ 'ի բարձանց, 'ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեալց անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նստէին 'ի սուրբ վերնատանն։ հոգ

Աննիւթական աղաւնի, անքննելի որ քննէ ըզխորս աստուծոյ. զոր առեալ 'ի հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյական։

Օրհնութիւն 'ի բարձունս, Ելուղին 'ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս 'ի յերկինս։

Ժամանակ դարձի խոյ եհան 'ի յերկիր. արդ տէր ընկալ ըզծառայս քո, եւ հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ։ համ

Խոստովանեալ հոգիս որ ելից զունայնութեան ընդթացս աշխարհի. արդ տէր ընկալ ըզծառ։

Ի վերջնումն աւուր մեծի, յորժամ առնես զայցելութիւն քոյոց սիրողաց. յայնժամ խնայեա 'ի ծառայս քո, եւ հոգի քո բա։

Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք։ ած

Որ ըզբանն աստուած յարգանդի կրեցեր սրբուհի անարատ, եւ անճառապէս ծընար ըզվերանձգոյն երկնից. ըզքեզ օրհ։

Որ էից լուսոյն արժանի եղեր

բառնալով 'ի քո դիրկս. եւ արեգա-
կանն արդարութեան եղեր արե-
ւելք. ընդ քեզ օրհ:
խաղ Որ հաստատեցեր բանիւ զե-
կեղեցի քո քրիստոս 'ի վերայ ա-
ռաքելական վիմի, երգել 'ի սմա
զերգըս հոգեւորս:
Կանգնեալ 'ի սմա սեղան սրբու-
թեան բաշխէ զմարմին քո եւ զա-
րիւն, եւ տայ 'ի սմանէ մեզ նորո-
գութիւն, 'ի թողութիւն մեղաց
մերոց:
Իջեալ հոգւոյն սրբոյ աղաւնա-
կերպ երեւմամբ 'ի վերայ մարմնոյ
եւ արեանն տեառն, 'ի բժշկու-
թիւն հոգւոց մերոց:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Սահմանիւ եւ յօրինուածով սուրբ
հայրապետացն. զեւոնդիէ սուրբ
վարդապետըն հրամանաւ լուսաւո-
րել զարփիական քաջ ըմպանա-
զէնսն. խընդրեա 'ի մեզ մաղթա-
նօք սոցա:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Որ ընդմերկացեալըն յանձառ
լուսոյն, ըզգեցեալըն 'ի գոյն
մթեաց, որոշեալ 'ի սուրբ հօտէն
ընտրեալ ըզքոյըն հաւաքեցեր.
խընդրեա 'ի մեզ մաղ:
հրց գկ Որ անդադար փառաբանիս
յաննմարմնոյն, քահանայք սուրբ
լուսածընունդ զաւակօք, ըզքեզ
բարեբանեմք աստուած հարցըն
մերոց:
Որ 'ի շառաւիղէ քոյ սրբոց քա-
րոզչացն, պայծառացեալ ցուցեր զհա-
յաստան աշխարհս. ընդ քեզ բա:
Որք արբին ըզհոսըն կենդանի
ընդ հրաշիրեալըն 'ի վերնատանն.
յորդաբուղխ բանիւ շնորհաց լու-
սաւոր եղեն մանկանցն արեամբ
մըկըրտելով ընդ քեզ. աստուած
հարցըն մերոց:
Ըզատէր. Ամենայն ազգ եւ ա- գ
զինք ամենայն գործք աստուծոյ
զթագաւորն ամենեցուն օրհնեցէք
զհայրն երկնաւոր, եւ բարձր արա-
րէք ըզնա յաւիտեան:
Որ հալածեաց զխաւար մեղաց 'ի
տանէ թորգոմական. զհանդիսա-
դիրն ամենեցուն գովեցէք զաս-
տուածորդին, եւ բարձր արա:
Որ պըսակեացն ըզհայաստան նո-
րաքանչ լուսաւորչօք. բարեբա-
նեցէք ըզսուրբ հոգին որդիք լուսոյ
նոր իսրայէլ. եւ բարձր ա:
Նահապետացն աբրահամու ի- մեծ
սահակայ եւ յակոբայ. պարգեւե-
ցար 'ի յաստուծոյ կոյս մարիամ
դուստր նոցին. երանեն ազգ եւ
ազինք այսօր ըզծնեալդ 'ի յաննայէ:
Աղախին եւ մայր կենաց աջոյն
ծընող հօր միածնին. որ առ 'ի քէն
մարմնով ընկեց զամբարտաւանըն
յաթոռոյ. երա:
Որ բարձրացոյց զանկեալ բնու-
թիւնս 'ի քէն ծնընդեամբ որդին
յերկինս. ըզկարօտեալն ելից հա-
ցիւ եւ զմեծատունս եհան ու-
նայն. երա:
Արեգակն արդարութեան 'ի ողր
հայաստան ծագեալ պայծառացու-
ցեր սուրբ զեկեղեցի հեղմամբ ա-
րեան սրբոցն. մաղթանօք սոցա խը-
նայեա 'ի մեզ պարգեւատու բա-
րեաց. եւ ողորմեա քո արարածոց:
Պանծալի սուրբ զաւակօք հովիւ-
քըն զըւարթունք, հրով հոգւոյն
շիջուցին ըզդեօցն ըզկրակապաշտ
պարսիցն. մաղ:

Պարթեւական տեառնողին յառաջագոյն ազդեցութեամբ զհաւատոյ որդիս սրբոյն գրիգորի պըտակազարդ տեսեալ. մաղ։

ոէր Երկնային հրաւիրակօք կոչեցեալք 'ի սկըզբանէ, փրկական բանին պատմօղք եւ պարծանք հայաստանեայց, դասակցեալք ընդ զօրս անմարմնականաց։

Ըզվիճակն անդընդոցին նըմանեալ փարաւոնի, զզաւակնացեալ ըզթագաւորըն գործակցօք չարին սուզեալ. զյաղթականն երգեն զօրհնութիւնս տեառն։

Հաւատով զինուք վառեալ մախկոնեան զօրավարին, յաշխարհօրէն պատերազմին ախոյեանն եկեղեցւոյ, անճառելին եղեւ ժառանգորդ բարեաց։

Ախտակցաբար արտասուեցուք զուրացողըն հաւատոյ, ընդ սըրբոց հայրապետացն երգելով զխօսս 'ի բարձունս, փրկողին ըզմեզ մաղթանօք սոցա։

ձկ Անճառելի բանդ ամալուած որ վասըն մեր եկեր 'ի խաչ, բարձրացար 'ի մէջ երկրի բարձեր զյանցանս նախաստեղծին. զերահրաշ զօրութեամբ յաղթեցեր մահու, յարուցեալ երեքօրեայ լոյս ծագեցար տիեզերաց։

Դասակարգեալ հողեղինացս ընդ հրեղինաց աննիւթ գնդից, երջանիկ արիութեամբ կատարեցան յանօրինաց. զի ընկալցին 'ի քէն քրիստոս զանապական փառաց պըսակն, երեւեալըք լուսազգեացք յաւուր մեծի քում գալըստեանն։

Ընդհանուր քարոզեցին զբանըդ կենաց ընդ տիեզերս, թօթափեալք ըզքուն մահու զուարթնոց երկնից հետեւեցան. ժուժկալեալք արխաբար զժանիս մահու խորտակեցին, իմաստունք երեւելով ընդ փեսային մտին յառագաստն։

Լուսաւորիչն ամենեցուն զեւան-գլէ սուրբ վարդապետն, խոհական մեծ խորհրդով խրատեալ ըզցոյց զաշակերտեալսն. ծաւալեալ զլոյս գիտութեան յոգիս որանց կատարելոց, կամաւոր յօժարութեամբ կատարեցան սիրով փրկչին։

Հօր սիրոյ կենարարին բորբոքեցան յոգիս սրբոցն, ձայն տուեալք խրախուսեցին դիմեալք 'ի մահ յօժարութեամբ. զերկնաւորըք հոգեւորք զայլս մեղաց խորտակեցին, ճանապարհ մեզ հորդեցին 'ի յերկնային նաւահանգիստն։

Մըկըրտեալք արեամբն նուրեանց որքին զաժամկ մահու փըրկչին, յառաջեալ յամենեցունց յաւէտ ընտրեալ աշակերտացն. նորահրաշ սիրով լըցեալ եւ նահատակ բարեցուցան, չքնեցան տաճար փառաց սրբութեան անմահ բանին։

Ուսուցին ամենեցուն երկրպագել քում տէրութեանդ, չարչարեալք արիաբար ընդդէմ մահաչար իշխանին. պատրաստեալք 'ի պատերազմ զպատրանս չարին խափանեցին, ջուր կենաց մեզ արբուցին ըզհուր մեղացըն շիջուցին։

Ռահ լուսոյ մեզ ծանուցեալ զանգիտութեան խաւարն ելոյծ, անհակ սուրբ հօտապետ արժէական բարեացն հաղորդ. վերբերիչ վարուց բարեաց վանիչ չարին պաշտօնէից, տարփացեալ անճառ լուսոյն վերամբարձաւ 'ի կեանս անմահ։

Ռաբունեացըն ճշմարտից եկայք
եւ մեք հետեւեսցուք . ցընծու-
թեամբ կատարեսցուք ըզյիշատակ
հայրապետացն . ուխտեսցուք յար-
մարութեամբ 'ի միութիւն մար-
մնոյ փրկչին . փայլեսցուք գործովք
բարեաց 'ի յերկնային առագաստին։

Քրիստոսի թագաւորին սրտաբա-
կան ձայնիւ հընչմամբ, երգեսցուք
զերգս օրհնութեան փրկեալք ա-
րեամբն իւրով սրբով . զի գթու-
թեամբն խոնարհեալ ընկալցի զա-
ղաչանս , թողութիւն շնորհեսցէ
մեր բազում յանցանաց։

ծլւ գձ Պայծառացան այսօր սուրբ ե-
կեղեցիք լուսաւորչօք կենդա-
նեօք, որք 'ի գործոց իւրեանց ծա-
նուցին ըզլոյս անխաւարելի հա-
յելի աչաց ըզտէր սիրողաց։

Քահանայք պատուեալք օծմամբ
սուրբ հոգւոյն, նախակարգեալք
յառաջնորդութիւն փափագողաց
վերնոյ յարկին եւ անպատում
պատրաստեալ բարեացն . այսօր
փութացան երանել 'ի նոյն։

Զուարթնոց երկնից եղեւ ցըն-
ծութիւն, տեսանելով զարեամբ
զարդարեալսն կոչելով յուրա-
խութիւն աստուածային եւ լու-
սաւոր սուրբ առագաստին . պատ-
րաստեալ նոցա զյաղթանակ մար-
տին։

Ամբարըշտաց եւ անօրինաց մա-
տուցան ձեռօք նուիրակացն պա-
տարագ ընծայիւ թագաւորին եր-
կնաւորի որ հրաւիրեաց արեամբն
իւրով լինել կցորդ խաչին սե-
ղանոյ, կամակար մըտօք զինքեան
սիրողաց։

Հաշտարար ընծայ հօր ազգի
մարդկան քրիստոսի աստուած .
զեկեղեցի քո հաստատեա խըն-
դրուածովք նախահարցն 'ի քէն
ընտրելոց . բարեխօս փրկչին միայն
մարդասէր։

Որ խոստացար լինել ընդ մեզ
մինչ 'ի կատարած անանջրպետ տր
'ի քէն վարժողաց, եւ այցելու մե-
զաւորաց հրասցելոց 'ի բանտար-
կուէն 'ի խաւարայնոյն նորա կամս .
քաղցրութեամբ քո տէր իմ-
նայեա 'ի մեզ։

Հեզութեամբ սրբեան սրբոց քոց
հօտապետաց զեկեղեցւոյ քո
ցրուեալ մանկունս ժողովեա յու-
րախութիւն ըզվարդապետեալս տըրա-
մութեամբ եւ արտասուաց յոր-
դահոս բըղխմամբ . փրկութեան
մերոյ պարգեւաց բաշխող։

Մաղթանօք սոցա գթացիր 'ի
մեզ անոխակալդ եւ ամենատու .
որ ընտրեցեր 'ի մարդկանէ չարչա-
րանաց քոց զուգակիցս եւ գերա-
զանց բարեաց ժառանգորդս . օր-
հնութիւն քեզ տէր երգեսցեն
մանկունք։

Երգեսցուք ձեզ երգս ըզհրեշ- հմք բձ
տակական ըստ զձայնս , յաւէժս եւ
վայելուչս մըտերիմս եւ նէր-
բողեանս . ով սուրբք զե-
ընդեանք։

Առաքելոց պարծիմք ձեօք սուրբ
հօտապետք քրիստոսի . յօրի-
նեալք եւ յարդարեալք տաճա-
րք սուրբ մաքրեալք օծեալք
տէրութեան երկնաւոր թագա-
ւորին . ով սուրբք զե-
ընդեանք։

Որք եղեալ հանեալք լինէին
սեւագունդ զօրըն պարսից, զի յա-

փըշտակեսցեն զառաջնորդսն Հայաստանեայց ընդ սուրբ զՂեւոնդեանսն։

Որք չուեալ գնացեալք լինէին ՚ի պալատն անօրէն թագաւորին, զի մերկասցեն ճշմարիտ սուրբ երրորդութեանն. ընդ սուրբ զՂեւոնդեանսն։

Երանելեացն ՚ի մարտ մտեալ երանելեացն ՚ի մարտ մտեալ, զի վիրաւորեսցեն ՚ի մահ ըղձելեայք և կոխեսցեն ըզզօրութիւնս թշնամւոյն. ընդ սուրբ զՂեւոնդեանսն։

Որ խոցմակէրըն յախշութիւն պարտեալ, որ խոցմակէրըն յախշութիւն պարտեալ ընդ մեծ մաքաւմին սրբոց ճգնաւորացն, ընդ սուրբ զՂեւոնդեանսն։

Իսկ ՚ի հեղմանէ արեան ձերոյ հոտ անոյշ բուրեաց ՚ի յերկինս. և հաստատեցաւ տէր ՚ի հոտ անուշից ընդ կամաւոր պատարագս ձեր. որով ընդ սուրբ զՂեւոնդեանս։

Որք համբարձայք ՚ի կաճառըս սերովբէից և ՚ի դասըս քերովբէից. բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց. որով ընդ սուրբ զՂեւոնդեանս։

ՇԱՐԱԿԱՆ ԻԳՆԱՏԻՈՍԻ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

գձ Որ հրաւիրեցեր զյառաջագոյն ընտրեալսն ՚ի սիրելեանէ աշխարհի ՚ի հարսանիսն անմահական, կոչելով յուրախութիւն ընդ բազմելոյն յառագաստին զաստուածազգեանցն. աղաչանօք սորա կեցո ըզմեզ փառաց թագաւոր։

Որ յանթառամ քերովբէական փերանըսատեալ հանգչեիր որդի աստուծոյ, հաճեցար խոնարհութեամբ բնակել ՚ի գիրկս յորդւոց ադամայ. ալէ։

Որ ըզբաժակն անմահութեան սիրոյ քո արբեալ երանելին իգնատիոս, որպէս ցորեան աստուածային գազանաց մանրեալ ժանեօք հաց սուրբ գտաւ աստուծոյ. աղաչանօք սորա։

ՇԱՐԱԿԱՆ
ՍՐԲՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Որ յանըսկիզբն ՚ի հօրէ ընկալար ըզհոգի գիտութեան, ով երանելի տէր սուրբ յովհան. և լուսաւորեցեր աստուածային բանիւ զեկեղեցի սուրբ. մաղթեա փրկողին զթողութիւն մեղաց մերոց։ ձկ / սող / գկ

Որ անսպական բանին քարոզ կոչեցար բերան ոսկի, յորմէ առբեւր կենաց հոսեալ. ոռոգանելով քառավտակ բղխմամբ զընդհանուր տիեզերս. մաղ։

Որ յանձառելին մերձեալ ՚ի լոյս հօրն երրորդութեանն, ով երանելի տէր վարդապետ. այսօր տօնէ եկեղեցի ըզհանգըստեան քո սուրբ զյիշատակս. մաղ։

ՇԱՐԱԿԱՆ
ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻՆ

Որ լուսով աստուածային բանին զարդարեցեր զեկեղեցի. և զխաւարն անգիտութեան հալածեցեր յոգւոց մարդկան, ով տէր բձ

սուրբ զբնգօր. բարեխօս լեր վա-
սըն մեր առ միածին բանըն հօր։

Որ զհամագոյ բնութիւն միա-
նական երրորդութեանըն յայտնե-
ցեր եկեղեցւոյ խոստովանել միու-
թիւն. ով տէր սուրբ գրի։

Որ զփրկական տնօրէնութիւն
մարդացելոյն վասըն մեր ուսուցեր
մի յերկուց նոր խառնուածն ըմբռնա-
չելի. ով տէր սուրբ գրի։

ՇԱՐԱԿԱՆ ՆԻԿՈՂԱՅՈՍԻ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

Ձկ սող դկ Հրաշափառն անմարմնոցն տե-
սանելով զերանելին նիկողայոս.
որ ՚ի մարմնի վարս ըստացեալ
անհամեմատ մարմնաւորաց. աղօ-
թիւք սրբազան հայցեսցուք
զթողութիւն մեղաց։

Ուրախացիր մայր սիոն, եւ
զարդարեա զքո զանազանող ան-
ճառապէս. զի անմարմնին բե-
լիարայ յաղթեաց մարմնով երանե-
լին նիկողայոս. աղօ։

Մաղթանօք մեղուցեալքս հայ-
ցեմք ՚ի քէն ամենասուրբ երրոր-
դութիւն, զի ներեսցես մե-
ղաց մերոց աղաչանօք նիկողայոսի.
աղօթիւք սո։

Սրբուհի մարիամ. սափոր ոս-
կի եւ տապանակ կտակարանաց.
որ ըզ՚ի վերուստ զհացըն կե-
նաց պարգեւեցեր քաղցեալ բնու-
թեանս. առ նա միշտ բարեխօսեա
վասըն քաւութեան մեղաց մերոց։

ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑ ԵՒՍՏՈՒԱՏԻՈՍԵԱՆՑ

բկ Որ ըզհուր սիրոյ քո քրիստոս
բորբոքեցեր յոգիս արդարոց. որով
վառեալ իմաստութեամբ երանե-
լին եւստաթիոս, ընծայեաց զանձն
ողջակէզ քեզ կամաւոր. բարեխօ-
սութեամբ սորա շնորհեա մեզ սօ-
նալյցս ըղձքաւութիւն։

Որ զարքայութեան քո քրիստոս
տարածեցեր ըզլոյս յաշխարհի.
որում տենչացեալ փափագեաց
հոգւով երանելին ծոփանոսիոս,
ըզքաղցրն արեան արբեալ ուրա-
խութեամբ ընդ քեզ միաւորելով.
բարեխօսաւ։

Որ ըզլոյս փառաց քոց քրիստոս
ծաւալեցեր ընդ տիեզերս. որով
զարդարեալ հաւատոյ լուցեալ երա-
նելին եւգինէոս, հետեւեաց լու-
սաւորիլ քեզ ՚ի յերկինս արեամբ
մահու. բարեխօսաւ։

Որ զնշան խաչի քո քրիստոս ե-
տուր մեզ զէն յաղթութեան. ո-
րով զինեալ ընդդէմ մահու երա-
նելին սուրբն ակիւղէս, բոցակէզ
պատարագաւ քեզ խաչակցեցաւ.
բարեխօսաւ։

Որ ըզբան կենաց քոց քրիստոս
սերմանեցեր յերկիր բանաւոր, զոր
ընկալեալ պտղաբերեաց յինքեան
երանելին մարգարիս, ՚ի մարմնի
անմարմնաբար չարչարելով պսակե-
ցաւ. բարեխօսաւ։

ՇԱՐԱԿԱՆ ԵՐԿՈՒՑ ԲԻՒՐՈՒՑՆ

Այսօր ընդ անմարմնոցըն դա- դկ
սակցեալ պարէ եկեղեցի, տօնե-
լով ըզյիշատակ բիւրաւոր վըկա-
յիցն. որք ընթացան ՚ի վերին ե-
րուսաղէմ, փառաւորելով զթա-
գաւորըդ քրիստոս։

Այսօր բանաւոր ողջակիզաց դա-
սանց բիւրաւորաց ՚ի վերայ կայ-

ծածկանց բորբոքեալ բոցոյն, զերից մանկանցն երգեցին զօրհնութիւնս. փառա։

Այսօր կամաւոր քեզ պատարագ զանձինս ընծայեցին ՚ի վերայ սրբութեան սեղանոյ, եւ ընկալան ըզպըսակն անմահական. փառա։

Այսօր ընծայէ եկեղեցի զմանկունս տաճարական երկնաւոր փեսային. որք ընդ հրեշտակս երգակցեալ ցընծութեամբ, փառա։

Այսօր ժողովեալ հաւատացեալքս սուրբ եղբայրութեամբ ՚ի տաճարի ճըգնութեան վըկայիցս, խնդրելով զթողութիւն յանցանաց. փառա։

ՇԱՐԱԿԱՆ
ՍՐԲՈՅՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՈՒԼՆԵՑԻՈՅՆ

գձ Ցնծայ այսօր սուրբ եկեղեցի յիշատակաւ սրբոց վկայիցն. որք արիաբար մարտեան ընդդէմ բռնութեան չարին, կատարեալք արեամբ վասն անուանն տեառն։

Սրբոյն Ստեփաննոսի մեծ նահատակին այսօր նմանեալ նախավկային, զանուանակրութիւնն յինքեան բերեալ եւ զհանդէս մարտին. պսակեցաւ նմանեալ նըմին։

Երից տասանց եւ չորից ընտրելոյն ՚ի տէր նահատակեալք ՚ի փոքր տանջանաց, եւ ընկալան ՚ի քրիստոսէ զյաղթական մարտին. պարգեւեալ նոցա զանվախճան ըզկեանն։

Մաղթանօք հայցմամբ սուրբ ստեփաննոսեանց ընկալ տէր զաղաչանս մեր. պարգեւելով ըզթողութիւն մերոց յանցանաց. բարերար փրկիչ պարգեւաց տուող։

Մարտիրոս եւ վկայ քրիստոսի սուրբ ստեփաննոս. որ ըզչարչարանս յանձն առեր եւ երկնային դասուցն եղեր դասակից. աղաչեա զաստուած շնորհել մեզ ըզկեանս անվախճան։ գկ

Ըստ անուան քո եղեր պսակ եկեղեցւոյ, եւ հետեւող լուսազարդ ճանապարհին, եւ յորդորէր գըտար ընտրելոյն ընդ քեզ սրբոց. աղա։

Ցնծութիւն եկեղեցւոյ ընտրեցար ՚ի հոգւոյն, եւ լուսաւորեցեր զորդիս թագաւորաց. այսօր բերկրին հաւատացեալք եւ տօնեն ըզճըգնութեան քո զհանդէս. աղաչեա զսա։

ՇԱՐԱԿԱՆ ԵՕԹՆ ԽՈՏԱՃԱՐԱԿԱՑՆ

Յաւուրս վերջին ժամանակի շինեաց իւր տուն զեկեղեցի, հօրն գըթած երկնաւորի խնամութիւն բան եւ որդի. եւ ընտրեալն իւր ՚ի զենլի, զգենի արեան ՚ի խառնելի. որովք հրաշից ներգործողի տուք օրհնութիւն յամենայնի։ բձ

Որ եւ զծառայս իւր ուսուցեալ ՚ի խառնելոյն հրաւիրեաց. զքաղցեալսն ՚ի հաց մարմնոյն կոչեաց զգինի արեանն եւս ծարաւեաց. յայս կոչմանս աղըտամբեաց ընդ հիւսիսոյ հայաստանեայց. այն որ ըղհրաշս այս ներգործեաց մեզ նորագոյն յոյս հաստատեաց։

Հաւատարիմ եւ իմաստուն Գրիգորիս անուն արթուն, նման խաչին մահուամբ որդւոյն չարչարանօք իւր սուրբ մարմնոյն, զազգիս Հայոց կոչեաց ՚ի նոյն գանս եւ հարուածս եւ խիստագոյն. միայն բանիւն հօր իմաստուն տուք օրհնութիւն զօրըք հրաբուն:

Օծեալ մերոյ հայրապետին Գրիգորիս լուսաւորչին, զՂեւոնդիէ պատրիարգին ՚ի Կեսարիա հայք առաջին. մեզ մարգարիտ բերեալ անգին զնշխար սրբոյ Կարապետին. այժմ հրաշից ներգործողին տուք օրհնութիւն ազգ հողածին:

Նման աւուրն փրկական ՚ի գալ փրկչին ՚ի Յորդանան, նոյն արուսեակն արեգական ծագեալ յաշխարհիս Հայաստան. դրունք դժոխոց խորտակեցան որք յԻննակնեան տեղիս անկան. հոյլքն դիւաց հալածեցան հրեշտակք ընդ մեզ դասակցեցան:

Ի ձեռն առեալ լուսաւորչին զնշխար սրբոյ Կարապետին, շուրջ պարըսպեալ զկողմ աշխարհին շնորհօք աջոյն պլանն ծնողին. աստ թըշնամիք մի զօրասցին մի հերձուածոց աղանդ բուսցին. յերկնից գայր ձայն աստուածային թէ հայցուածք քո կատարեսցին:

Սուրբ երջանիկ երկնահանգէս ճգնող Անտոն եւ Կրօնիդէս. ՚ի հողանիւթ ծնեալ զարմէս գերազանցեալք ՚ի բնութենէս, զձեզ պարգեւեաց սուրբ Ղեւոնդէս մեզ երկնային հրեշտակք յերկրէս. ՚ի վշտալից մարմնոյ ախտէս փարատեցէք ՚ի խոցմանէս:

Ի մէջերկրեայ տանէն յունաց, հայոց տուեալ պարգեւք փառաց. վարժիչ կարգաց կրօնաւորաց, հարք միանձանց ճգնաւորաց, ծաղիկք բուսոյ բանաւորաց բժշկական դեղք հիւանդաց. ՚ի դիւական յայսոց չարաց զմեզ փրկեցէք ՚ի փորձանաց:

Էին լուսոյ հօր միածնի ճշմարտութեանն քարոզք, պարթեւազինն Գրիգորի պարգեւեցայք գանձ կենդանի. նոյն եւ նշխարքն հոգելի անթանագնեայ սուրբ վկայի. որով մարմնոյս վէրք ողջասցին յանցանք հոգւոց մեր քաւեսցին:

Ցօթնաստեղեան երկնից կամարք աստուածութեանն կամարարք, ճգնողք մարմնով խոտաճարակք մաքուրք հոգւով լուսոյ տաճարք. եկեղեցւոյ բարձր աշտարակք, տանս Հայոց ամուր պատուարք. զձեզ աղաչեմք ճգնողք սուրբ հարք, լինել անձանց մեր բարերարք:

Բանեալ զօրացն պարսկական մարտիւ ընդ զօրս Հայաստան, դուք մաղթեցէք աղերս հայցման, աղաչելով զաստուածն բան, վասն Յովհաննու ձայնին գոչման կարապետին սրբոյ հայցման, պահել զերկիրս այս անսասան, զտեղի արեանդ ձեր հեղման:

Գոչեմք առ ձեզ սուրբ նահատակք հողանիւթեայ մարմնով հրեշտակք, մարտիրոսք սուրբ եւ վկայք, որք սոյ մահուամբ կատարեցայք. յորդոր տօնիս ձեր յիշատակ արեան սրբոյդ հեղման վտանկք. առ Տէր լիցին սուրբ պատարագք պահել ընդ մեզ միշտ անվտանգ:

### ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑ ՍՈՒՔԻԱՍԱՆՑ

բձ Աստուածութեամբ տեղեկացեալ
հարցանելով ըզմարգարէն, ով ելցէ
’ի լեառըն տեառն, կամ ով կացցէ
’ի տեղւոջըն սրբութեան։
Ահա տեսաք ըզսուրբ կուսէս լեառըն
գիտակ եւ բնակարան վկայիցն որոց
անուան զօրութիւն յաստուծոյ
փրկչէն իւրեանց։
Որք բարձին ըզխաչ իւրեանց,
խաչեցելոյն խաչակցեցան. դիմելով
յօժարութեամբ առ սատակիչսն
որպէս ըզգառինս ’ի մէջ գայլոց։
Նոյն եւ զինքն իսկ տեառնանեմք
պրոբատիկէ աւազանին. յորս դը-
նին բազմութիւնք ախտաժետաց,
ակն ունելով մերձաւորին ջրոյն
յուզման։
Աստանօր նորոգեցաւ մեզ աւա-
զանըն սելովմայ, ’ի բանալ զաչս
սըրտից առ ’ի մերժել զախտս հո-
գւոց եւ մարմնոց։

### ՇԱՐԱԿԱՆ
### ՍՐԲՈՅՆ ՎԱՀԱՆԱՅ ԳՈՂԹՆԱՑՒՈՅՆ

բձ Զարմանալի է ինձ քան ըզ-
երգս երաժշտականաց ձայնս
ողոց քոց հընչմունք,
ով երանելի տէր ը Վահան ընտ-
րեալ յաստուծոյ։
Առաւել յորդորէ զիս ըզհո-
գւոյս ը մասունս, յօրինել քեզ
երգս ոչ ը զըղջականս, այլ հոգե-
ւորս եւ ուրախարարս, յորդորա-
կանս եւ ներբողեանս. ով երա-
նելի տէր ը Վահան, ծառայ
քրիստոսի։
Զարհուրեցուցանէ քո ճգնու-
թիւնդ ըզմարմնոյս բընութիւնս.
իսկ դոու առաւել գըտայր.
ով երանելի տէր ը Վահան սիրող
քրիստոսի։
Արտաքնոցն ըզգաստքն, ստեղ-
ծիչ բանք սընոտեացն ’ի պատերազմու-
թիւն. իսկ քոյդ սիրոյնք
աստուածայինք եւ ոգեշունչ. ով
երանելի տէր ը Վահան ընտրեալ
յազատաց։
Որպէս ըզքաջ նահատակ պա-
տերազմեալ ’ի պատերազմի, կատա-
րեցեր ըզնթացըս քո արիաբար
յազգայցըն հարանց ուայնց, դասա-
կարգեալ ընդ անմարմնականս. ով
երանելի տէր ը Վահան, գողթ-
նեացն իշխեցող։

### ՇԱՐԱԿԱՆ
### ՍՐԲՈՅՆ ԴԱՒԹԻ ԴՎՆԵՑՒՈՅ

Այսօր աստուածային շնորհիւ բկ
երանելի սուրբ ճգնաւոր տէր ըդ
դաւիթ. եւ անուն քաջութեան
քո ել յերկինս յուրախութիւն
հրեշտակաց. եւ ընդ աշխարհս ամե-
նայն ցընծութիւն մարդկան։
Աստացար քեզ անուն քաջութեան
յանպարտելի ճգնութեան ով տէ-
րըդ դաւիթ. յաղթեցեր թըշնամ-
ւոյն խաչիւըն քրիստոսի. լցու-
ցեր ուրախութեամբ ըզտիեզերս
ամենայն, եւ աղօթիւք առ աստը-
ւած եղեր մեզ զօրավիգ։
Եւ տուր ըզմարմինդ ընդ հոգւոյ
քում փրկանս, եւ խաչիւ եւ ա-
րեամբ գնեցեր զարքայութիւնն.
առեր իշխանութիւն բարեխօսու-
թեան. աղաչեա զաստուած զի
փրկեսցէ ըզմեզ ’ի հաւրաւային
կործանմանէն։

### ՇԱՐԱԿԱՆ
### ՍՐԲՈՑՆ ԿԻՐԱԿՈՍԻ ԵՒ ՅՈՒՂԻՏԱՅԻ

բկ Յարմարոց բարեաց քաղցր շաւաւիղ վերաբերեալ ծաղիկ հաւատոյ. գեղ վայելչութեան, զարդ եկեղեցւոյ պարզաբերեալ ընդ քեզ ով սուրբ Կիրակոս. տնկողին ընդ քեզ քրիստոսի բարեխօսեա վասն անձանց մերոց։

Աստուածնոր մօր բարեպաշտի որդի, եւ երկնաւոր հանդիսադիր նահատակ. քաջ ըսպառազէն զինուորեալ հոգւով, տղայ գոլով մարմնով. մարտ ընդ անօրէնն եդեալ պսակեցար ով սուրբ Կիրակոս. տնկողին ընդ։

Յօղ քաղցրութեան ծաւալեցաւ յանդաստանս ձեր, յորժամ պատուական արիւնքդ ձեր հեղան յերկիր. երկնայինքն ուրախացան ընդ ձեզ յինքեանս ընդունելով, մայր որդւով բերկրեալ ով սուրբ Յուղիտա, տնկողին ընդ ձեզ քրիստոսի բարեխօսեցէք վասն անձանց մերոց։

Վարդագոյն փթթեալ ծաղիկ ի նորատունկ բուրաստանի, լուսազարդեալ երեւեցար ով երանեալ սուրբ Կիրակոս. վասն մեր բարեխօսեա քրիստոսի փրկչին մերոյ։

Աղաւնի քաղցրաբարբառ հեզաբանեալ ըղձէր յիսուս. վտակահոս արեամբ ներկեալ ոսկեբողբոջ դեռաբուսիկ. վասն։

Բուրումնաւէտ վարդապատեան համեղ ողկոյզ արեամբ ճմլեալ. պսակեցար ի քրիստոսէ ընդ երջանիկ մարտիրոսացն. վասն։

Դու պարծանք սուրբ հաւատոյ լուսոյ պսակ եկեղեցւոյ. մայր որդւով բերկրեալ այսօր ով երանեալ սուրբ Յուղիտա. վասն մեր բա։

---

### ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑՆ ՄԻՆԱՍԱՅ, ԵՐՄՈԳԻՆԵԱՅ ԵՒ ԳՐԱԲՈՍԻ

Ընդ յիշատակ վկայիցն սրբոյն մեծին Մինասայ, Երմոգինեայ Գրաբոսի, յուսով եկայք տօնեսցուք։ բկ

Ով սուրբ վկայ քրիստոսի քաղցրաբարբառդ Մինաս. արագահաս օգնական յուսով ընդ քեզ խնդրողացս։

Ի տաճարի հանգստեան սրբոյն մեծին Մինասայ. եկայք հաւատացեալք յուսով երկրպագեսցուք։

---

### ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑ ՈՍԿԵԱՆՑ

Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտութիւն առաքելոյն Թադէոսի. եւ աստուածային հրով մաքրութեան, ոսկի փորձեալ գտայք ի բնակարանս հրեշտակաց. ով երանելի սուրբ ոսկեանք, բարեխօսեցէք առ տէր մաքրել ըզմեզ ի մեղաց մերոց։ գձ

Որք անհրաժեշտ դաւանութեամբ քարոզեցիք ըզքրիստոս ի դրունս Թագուհւոյն, մկրտեալ ընդ քաջ նահատակսն ի յակունս Եփրատայ ի ծաղկազարդ վայելչութիւնն. ով երա։

Որք անպարտելի միացիք ի հրապուրանաց որդւոյ Թագաւորին, չարչարեալք վասն քրիստոսի, արագապէս խողխողեցայք պատարագ ընդունելի. ով երա։

### ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑ ԱՏՈՎՄԱՆՑ

ակ

Աղաչեմք ըզքեզ տէր բարեխօսութեամբ սրբոց ատովմանց, որք նահատակեցան ի ճակատամարտի պատերազմի, յաղթող գտան ընդդէմ թըշնամւոյն. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ։

Որք սուրբն պատուականութեան զոհեցին հաւատոյ սիրոյ իւրեանց, եւ ընկալան ի գլուխ սաղաւարտ փըրկութեան ըզնըշան խաչին, սուսեր ընդ մէջ ածեալ ըզճըշմարիտ սուրբ հոգին. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ։

Որք մաքրեցին զանձինս իւրեանց տաճար անուանելըդ քում սրբոյ. եւ բուրեցին հոտ անուշութեան զաղօթս իւրեանց ի տեղւոջ հեղման սուրբ արեան իւրեանց. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա ի մեզ։

դձ

### ՇԱՐԱԿԱՆ ՄԻՒՌՈՆԻ ՕՐՀՆԵԼՈՑ

Որ յառաջնոցդ յօրէնս յօրինակ միածնի քո հայր երկնաւոր, ետուր զօրութիւն ի յիւղ սըրբութեան յօծումն օծելոց. հեղ եւ յիւղս յայս զերկնային քո զշնորհս։

Որ խոնարհեցար ի մեզ իւղ թափեալ անուն օծեալդ Աստուծոյ, խառնելով զաստուածութիւնդ օծեալ ըզմարդկային առեր բնութիւն. հեղ եւ յիւ։

Որ ի վերնատանն սուրբ իջանելով յառաքեալսն օծումն օծելոց. եւ օծմամբս այսու վերստեղծեր նորօք զհողեղէնս որդիս Աստուծոյ. հեղ եւ։

Որ զարդարես սովաւ ի հանդերձս լուսափայլս եւ զերապայծառս զհարսնացեալ եկեղեցի քո սուրբ. մանկունքս սորա ընդ հրեշտակս օրհնեն սուրբ զերրորդութիւնդ։

### ՄԵՂԵԴԻ ՄԻՒՌՈՆԻ
### Ի ՎԵՐԱՅ ՆՈՐԱՄՆԵԼՈՑՆ

Հայր ամենակալ, որ առաքեցեր ըզմիածին որդիդ ի փըրկութիւն մարդկան, հեղեր եւ զհոգւոյդ պարգեւս, հեղ զորդեգրութեան քո ըզշնորհս յիւղս յայս քեզ նուիրեալ։

Որդի Աստուծոյ իւղ թափեալ անուն, օծեալ քան զընկերս ուրախութեան իւղով. զոր հեղեր ի գլուխ առաքելոցն. հեղ զորդեգրութիւն։

Հոգիդ ճըշմարիտ, օծումն օծելոց, որ եւ ծընանիս օծմամբս այսու ըզմեզ Աստուծոյ շնորհիւ, հեղ զորդեգրութիւն։

Երրեակ միութիւն, մի Աստուածութիւն, քեզ վերառաքեմք ընդ սերովբէիցն սուրբ սուրբ սուրբ. օրհնեա զընծայս խորհրդոյ ի վերածնելոցն սովաւ երգել յաւէժ քեզ փառս։

դձ

### ՇԱՐԱԿԱՆ ԶԳԵՍՏՈՒ ՊԱՏԱՐԱԳԻՆ

Խորհուրդ խորին անհաս անսկիզբն, որ զարդարեցեր զվերին պետութիւնս, 'ի յաւագ անմատոյց լուսոյն գերապանծ փառօք զդասս հրեղինաց։

Անճառահրաշ զօրութեամբ ստեղծեր զմարդն պատկեր տիրականն. և նազելի փառօք զգեստաւորեցեր 'ի դրախտին Եդենի տեղի բերկրանաց։

Զարչարանօք քո Տէր միածնին նորոգեցան արարածք ամենայն. և վերստին մարդն անմահացաւ. զարդարեալ 'ի զգեստ անկողոպտելի։

Անձրևածին բաժակ հրաշնան, որ հեղար յառաքելային 'ի սուրբ վերնատանն, հեղ և 'ի մեզ հոգին սուրբ աստուածն ընդ պատմուճանի զքո զխնամութիւն։

Տուն քում վայելէ սրբութիւն, որ ըզգեցար ըզվայելչութիւն, սրբութիւն փառաց ընդ մեզ քո ածեալ. պատուեա ըզմեզ մեր ճշմարտութեամբ։

Որ զարդարչագործ բազուկս քո տարածեցեր ընդդէմ աստեղաց. հաստատեա զբազուկս մեր կարողութեամբ, համբառնալով ձեռաց առ քեզ միջնորդել։

Խնամովք թագ 'ի գլուխ պատուեցես ըզմեզս և ըզգայարանս խաչանիշ ուրարմամբ ըստ Ահարոնի, ծաղկեալ յոսկեթել 'ի զարդ խորանին։

Բանից բոլորից տիրապէս Աստուած պետականն, նախորոստապատ սրով զմեզ զգեստաւորեցեր, քում սուրբ խորհրդոյդ լինել պաշտօնեայ։

### ՇԱՐԱԿԱՆ
### ԽՆԿԱՐԿՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՅ ՊԱՏԱՐԱԳԻՆ

Յայս յարկ նուիրանաց ուխտի գկ
տեառն տաճարիս, ժողովեալքս սասանօր 'ի խորհուրդ պաշտաման պաղատանաց ուաջինկաց սուրբ պատարագիս. խնկօք անուշիւք խունկ ունեալ պարեմք 'ի վերնայարկ սրահիս խորանիս. ուղղութեամբ ընկալ զաղօթս մեր որպէս բուրուառ անուշահոտ խնկոց անուխից և կինամոնաց. և ըզմատուցողքս պահեա սրբութեամբ միշտ և հանապազ քեզ պաշտաւորել. բարեխօսութեամբ Մօր քո և կուսի ընկալ զաղաչանս քոց պաշտօնէիցս։

Որ դերադոյն քան զերկինս պայծառացուցեր սուրբ զեկեղեցի արեամբ քո Քրիստոս. և ըստ երկնանոցին կարգեցեր 'ի սմա զդասս առաքելոց և մարգարէից սուրբ վարդապետաց. այսօր ժողովեալ դասք քահանայից սարկաւագաց դպրաց և գլերիկոսաց. խունկ մատուցանեմք առաջի քո Տէր յօրինակ ըստ Հնումն զաքարիայ ընկալ առ 'ի մէնջ ըզխնկանուէր մաղթանս որպէս զպատարագն Աբելի զնոյն և զԱբրահամու. բարեխօսութեամբ վերին քո զօրացդ, միշտ անշարժ պահեա զաթոռ հայկազնեայս։

Խնդա յոյժ դուստր լուսոյ Մայր սուրբ կաթուղիկէ մանկամբք քո սիոն. զարդարեալ պճնեալ հարսն պանծալի երկնանման լուսաճեմ խորան. զի օծեալն Աստուած էն 'ի յէէն անծախապէս 'ի քեզ

միշտ պատարագի. հօր 'ի հաշտութիւն մեզ 'ի քաւութիւն բաշխէ զմարմին եւ զարիւն իւր սուրբ. վասն իւր կատարման սուրբ տնօրէնութեան. շնորհէ զթողութիւն կանգնողի տաճարիս:

Զանապական կուսին մարիամ աստուածածին խոստովանի սուրբ եկեղեցի. ուստի տուաւ հացն անմահութեան եւ բաժակ մեզ ուրախարար սուրբ օրհնութիւնք նըման հոգեւոր երգով:



Երգ Տեառն Ներսիսի՝ վասն առաջին աւուր միաշաբաթին, եւ 'ի խորհուրդ արարչութեանն, եւ 'ի յարութիւնն Քրիստոսի:

կէր Նախաստեղծեալ բանն յանէից 'ի սկզբանէ զերկինս երկնից, եւ զերկնային զօրս անմարմնոց իմանալեացըն զուարթնոց, եւ ըզգալի տարերց քառից հակառակաց միաբանից. որով յաւէտ փառաւորեալի երրորդութիւնն անճառելի:

Երեքանձնեան մի տէրութիւն միով բնութեամբ աստուածութիւն, լոյսն որ անեղ արարչական ասաց լինել լոյս եղական. զօր եւ ծագեաց յօրն առաջին միաշաբաթ կիւրակէին. որով յաւէտ:

Բաբունորէն բացատրեցուք զծածկեալ խորհուրդըն ծանիցուք. զի լոյսն անտես իմանալի մաքուր հոգւոց տեսանելի, 'ի սոյն ծագեաց միաշաբաթ մեզ յարութեան սուրբ ճառագայթ. Եկայք փըրկեալք ընդ զուարթնոյն սուրբ օրհնութիւն յարուցելոյն:

Սէրըդ սիրով խոնարհեցար 'ի փըրկութիւն մեր մարմնացար. նովին մարմնովըն խաչեցար, 'ի գերեզման մահու եդար. այսօր յարեար աստուածաբար 'ի հրեշտակաց քարոզեցար. Եկայք փըր:

Երեւեցար խընկաբերիցն յողջոյն կենացն ուրախալից. եւ 'ի լերինըն գալիլեայ առաքելոց մետասանից. արժանացո զմեզ ընդ նոսին զքեզ տեսանել յօրըն վերջին. Եկայք:

Սրովբէ որդիք զարթիք հարսին լուսոյ սուրբ աւետիք. եթէ փեսայն քո յարուցեալ յաղթեաց մահու իշխանութեանն. գայ պըսակէ ըզքեզ փառօք եւ ընդ առաջ պըճնեալ զարդուք. երգեա երգ նոր յարուցելոյն նընջեցելոց կենաց պըտղոյն:

Երգ վասն երկրորդի աւուր արարչութեանն, եւ վասն երկնային զօրացն:

Արարչական բանիւն հրաման 'ի յերկրորդումն աւուր սկզբան, ըզջուրսն 'ի ջուրցըն բաժանեաց հաստատութեամբ պարունակեաց. որով զաշխարհս հողեղինաց անջըրպետեաց 'ի հրեղինաց. ընդ նոսին որդիք լուսոյ սուրբ օրհնութիւն երրեակ լուսոյն: բշ

Բազմաչեայ հոյլք քրովբէից երեքսրբեանըդ սրովբէից, աթոռք անեղ աստուածութեանըն համագոյ երրորդութեանն, բարեխօս լերուք առ տէր վասն մանկանց եկեղեցւոյ. ընդ նո:

Գերագոյն իշխանութիւնք եւ անփոփոխ միշտ տէրութիւնք, ան-

յաղթելի սուրբ զօրութիւնք 'ի յարարչին փառաւորութիւնք. աղաչեցէք զտէրն ողորմած անտես չառնել զգործըս ձեռացն. ընդ նո:

Դասք անմարմնոցն պետութեանց հրեշտակապետութեանցն բարձրութեանց, հոգիք հրեղէնք եւ պաշտաւորք հրեշտակաց զինուորութիւնք. մաղթեցէք զտէրըն տերանց վասն մարդկան երկրաւորաց. ընդ նո:

Երկնաւորաց դասուց վերնոց օրհնաբանից քոց զուարթնոց, քաղցրայինն առ քեզ գըթած ու փառն մեր ձայն մաղթանաց. զորս եւ տացես մեզ պահապան յայսմհետէ մինչ 'ի վախճան. ընդ նո:

Զօրութեանց եւ տէրութեանց իշխանութեանց եւ պետութեանց. եւ ամենայն անուանելոց որք 'ի յերկինս պաշտամանօք, ընկալ քրիստոս ուրախութեամբ զմեզ յօր մահու եւ յարութեան. ընդ նոսին օրհնել հոգւով ըզքեզ ընդ հօր փառաւորելով:

Երգ վասն երրորդի աւուր արարչութեանն, եւ վասն երրորդի դարուն, եւ 'ի Յովհաննէս Մկրտիչն:

ԳՁ Էական բանն որ ընդ հօր արարչակից եւ համազօր, յերրորդ աւուր զջուրսն զատոյց զցոյս եւ ըզտունկս բըղխեցոյց. իսկ 'ի յերրորդ դարուն դարձեալ զջուրցն հեղեղ ցամաքեցոյց. զնոյ տապանաւն իւր ապրեցոյց ըզկենդանեաց սեռս աճեցոյց. տուք օրհնութիւն անճառ լուսոյն հօր եւ որդւոյ եւ սուրբ հոգւոյն:

Ընդ ծառոց երկրի զգալեաց տընկեաց եւ զտունկս իմանալեաց. զհեղեղ մեղացըն ցածուցեալ զդասս արդարոց բազմացուցեալ. յորոց եւ մեծն 'ի ծնունդս կանանց միջնորդ շնորհաց եւ օրինաց. տուք օրհ:

Թագաւորին երկնից զինուոր արքայութեանն աւետաւոր խընդրեա դընել ելս 'ի սրտի առ 'ի հոլտես տըրտմականս, յուխտեալ տեղին տէրունական 'ի խառնացեալն որդւոյ մարդկան. տուք օրհ:

Ժառանգին հօր ըսպասաւոր եւ յարգանդէ երկըրպագող. կարապետ եւ մըկրտիչ այնմ որ մեղաց մերոց քաւիչ. լեր բարեխօս առ նոյն գըթած ջնջել ըզգիր մեր յանցանաց. տուք օրհ:

Ի հօրէ լոյս ծագեցար մեռեալ բնութեանս կենդանարար. առաքեցեր յառաջընթաց սուրբ զյովհաննէս քարոզ կենաց. որին հայցմամբ ամենակալ ըզպաղատանըս մեր ընկալ. տուք օրհ:

Լուսաշաւիղ յերկինս ելին հովանիւթեայ սուրբ հրեշտակին, արժանացո ըզմեզ նորին նեղ եւ անձուկ ճանապարհին. զի հետեւող գոլով նորին հօր քո վերին օթեվանին, եւ երգեսցուք ընդ երջանկայն որդւոց լուսոյ քեզ երգս փառաց:

Երգ վասն չորրորդի աւուր արարչութեանն, եւ վասն չորրորդի դարուն, եւ վասն աւետեաց Աստուածածնին:

Խաւարն անգոյ եւ սկզբնածին հալածեցաւ յօրն առաջին, ընդ այն պայծառ յօր չորրորդին յարեգական նիւթ հաւաքեցաւ. լուսինն 'ի տիպ լուսոյ ստեղծեալ եւ ԳՁ

անտեղաց պարք յօրինեալ, որով
օրհնի ստեղծողն էից 'ի բանաւոր
պաշտօնէից։

Ծածկեալ խորհուրդըն ծանուցաւ
չորրորդ դարուն խաւհակաւ. 'ի չոր-
րորդ օր դարձեալ հրեշտակն եւ զա-
ւետիսըն կուսական, Թէ լոյսն որ
ոչ բովանդակի 'ի քէն մարմնով պա-
րունակի. յոր օրհնեցայք ազգ եր-
կրածինք, տուք օրհնութիւն պըտ-
ղոյ կուսին։

Կուսին նախնւոյ Մօրն Եւայի յոր-
մէ ծագաւմըն հին պարտի, բարձան
անէծքըն տըրտմական քո սուրբ
ծնընդեամբ կոյս Մարիամ. աղաչեմ
զքո միածինն թողուլ ըզմեղս որ-
դւոց նոցին. յոր օրհ։

Հարսն ընծայեալ յերկրէ յերկինս
յոր հարսնաւոր առ քեզ գնո-
գիս. յոր լուսոյ քո զաւետիս
խնդրեաւ լինել մեզ լուսոյ, զձայն
աւետեաց քո միածնին Եթէ ե-
կայք օրհնեալք Հօր իմ. յոր օրհ։

Զայնիւ առ քեզ տէր պաղատիմք
եւ առաջի քո անկանիմք. աղաչա-
նօք աստուածածնին չիջո 'ի մէնջ
ըզլուծ հնոյին. տուր արտասուօք
զմեղս ջնջել եւ վերըստին զմեզ
նորոգել. յոր օրհ։

Գեղապար ճարտարապետ անցեր
ընդ ծով կենցաղս անհետ, վերա-
բերեալ ընդ պետրոսի զմեզ 'ի յա-
լեաց մեղաց ծովէս, պաղատանօք
գերագունին առաքելական քում ծը-
նողին. յոր օրհնեցայք ազգ երկ-
րածինք, տուք օրհնութիւն պըտ-
ղոյ կուսին։

---

**Երգ վասն հինգերորդի աւուր արարչութեան, եւ վասն հինգերորդի դարուն, եւ ի սուրբ առաքեալսն Քրիստոսի:**

Լուսագայթեալ բանն 'ի Հօրէ ԵԼ
յոր հինգերորդըն հրամայէ,
բղխել 'ի ջրոյ սեռս կայտառաց
եւ թեւաւորս օդականաց. իսկ 'ի
դարուն հինգ մըկըրտին յամպն
եւ 'ի ծովն իսրայէլ հին. տացուք
հրաշից ներգործողին պատիւ եւ
փառս անեղ բանին։

Մարգարէս օրինակին առաքելոցըն
քրիստոսի, որք 'ի ծովէն տիեզերա-
կան 'ի յերկնային կոչեցան. անն-
ցին ընդ ծով աշխարհական եւ 'ի
հոգին մըկըրտեցան. տացուք հը-
րաշից ներգործո։

Յուրախութիւնն անզրաւական
'ի հարսանիսն անապական, զձեզ
առաքեաց հայրըն փառաց հրաւի-
րատուք տըրտմականաց. սուրբ հար-
սանեացն այն հայցեցէք ընդ ձեզ
լինել մեզ պարակից. տացուք հը-
րաշից ներգործո։

Նորոգողք տիեզերաց 'ի նախա-
հօրըն յանցանաց. նորափետուր
զարդարեցիք զեկեղեցիս հեթանո-
սաց. պաղատեցէք առ նոյն զըթած
զմեզ նորոգել 'ի հնոյ մեղաց. տա-
ցուք հրա։

Ծնող էիցըս հաւասարից արարա-
ծոց 'ի յանգոյից, նոյն շինեցեր զե-
կեղեցի վէմդ 'ի վերայ վիմին բա-
նի. ընդ եղեալ հիմունս 'ի նոր
սիոնի ըզմեզ յօդեա շինամբ 'ի
նոյն. տացուք հրա.

Ուրախացան գնացիւք գետոյ քա-
ղաք 'ի քէն շինեալ յիսուս. յորմէ
վըտակք շնորհաց հոսեն զոգիս

մարդկան ուղղանեն. որբո եւ մեզ 'ի ջրոյն կենաց հայցմամբ հոգւոյն մաքրութեան. զի բանաւոր երկիրս քո պսակեսցի 'ի փառս քո։

Երգ վասն վեցերորդի աւուր արարչութեանն, եւ վասն վեցերորդի դարուն, եւ 'ի խաչելութիւնն Քրիստոսի:

ութ

Չըհանդուրժեալ բնութեամբ բարութին ունել միայն զանձառ բարին. այլ ստեղծեալ մարդ յիւր պատկերին 'ի վեցերորդն աւուրին. եւ 'ի յերրորդ ժամ զկողածինն 'ի յօգնութիւն եւ հողածնին. զոր 'ի դրախտին եդ վայելել, բայց 'ի պտղոյն մահու արգել։

Պատանձեալ առ դատողին յետ յանցանաց ադամին հին. զկինն պատճառ եղեալ խաբմանն եւ կինն զօձըն դաւաճան. որով երկիրս այս անիծաւ, փուշ եւ տատասկ 'ի սմա բուսաւ. վճիռ մահու մարդոյն տուաւ դառնալ 'ի հող ուստի ստեղծաւ։

Ջընջել փութայր հայրըն փառաց ըզգիր պարտեաց մեր յանցանաց. որով զգեցաւ որդին գթած 'ի վեց դարուն զմարմին մեղաց. հօր հաճութեամբ 'ի մահ խաչին եկն կամաւ 'ի յուրբաթին. գառըն գենաւ 'ի հին զատկին փոխան գառանցն օրինակին։

Ռահիւ լուսոյ պատուիրանին արդարութեան ճանապարհին, բարձրանալով քո 'ի խաչին բարձրացուցեր զմեզ 'ի յերկինս. քո անպատուել խոնարհութեամբդ եւ կամաւոր խաչելութեամբդ, հաշտեաց ընդ մեզ տէր գթութեամբ եւ թող ըզմեղս ողորմութեամբ։

Անսկալըդ սերմնէնց եւ անհաւորըդ քրմնէնց. խոնարհեցար 'ի չարչարանս չարչարելի բնութեամբ մարդկան. 'ի խաչին ըզմեղս սպաներ եւ զդատապարտս մահու լուծեր. հաշտեաց ընդ մեզ։

Վերհագոյն բնութեանց էից եւ արարիչըդ բոլորից, յորժամ ծագեսցես զխաչին նշան 'ի գալըստեան քո միւսանգամ, զերկրպագուս այժմ հաւատով լուսաւորեա նորին լուսով. զի համարձակ խաչազգեցցիցն ըզքեզ օրհնեմք յաւիտեանս։

Երգ վասն եօթներորդի աւուր արարչութեանն, եւ վասն եօթներորդի դարուն, եւ 'ի խորհուրդ հանգստեանն:

Տէրն յետ ստեղծման արարածոց հանգեաւ յեօթն օրն 'ի գործոց. այն որ հանգիստ աշխատելոց, եւ կամքըն գործ է եղելոց. ուստի եւ մեզ յոյս հաստատուն եւ հանգստեամբըն շաբաթուն, թէ աստ գործել զգործս աստուծոյ, անդ է հանգչել ընդ աստուծոյ։ չոր

Բազմանուագ վարդապետիմք յօրինակէ տեառըն խրատիմք. որ 'ի յերկրորդ արարչութեանն յետ կատարման անօրէնութեանն, յեօթներորդ օր հանգըստեան իջեալ մարմնով 'ի գերեզման, զկապեալ հոգիսըն վերածեալ, զանանց հանգիստըն պատրաստեաց։

Ցօղդ որ 'ի քոյդ կողէ ցօղեալ բըժշկեսցէ ըզհանգուցեալսն, իջցէ

'ի հող մահու նոցին եւ բուսուցէ յօրէն վերջին. կենդանարար ձայնիւըդ քո կոչեաս զնոսա 'ի կեանս քո. եւ դասեցո ընդ արդարոցն երգել քեզ փառս ընդ զուարթնոցն։

Իւծեալ զբնութիւնս կենաց ունող դարձոյց յանցանքն 'ի մահուհող. իսկ անմահիդ մեռելութիւն շնորհեաց դարձեալ զանմահութիւն. զորս են ընդ քեզ թաղեալ մահուամբ աւազանին մկրտութեամբ, յարո ընդ քեզ քոյին փառօք արեգական նման լուսով։

Փայլին արդարքն յարքայութեան եւ ճգնաւորքն 'ի հանդերձեան, մարտիրոսքըն պսակին եւ կուսանաց լապտերք վառին. դասեցո տէր ընդ նոսին որք զքեզ աստուած խոստովանին. արդարութեամբ մի դատեսցին այլ գթութեամբ քո քաւեսցին։

Քո անպատում խոնարհութեամբդ որ թաղեցար մեռելութեամբ, եւ յարուցեր յորդւոց մարդկան որք հաւատով 'ի քեզ անկան. յարո եւ զմեզ արդարութեամբ եւ զննջեցեալսն ողորմութեամբ. զի կենդանեացըս բերանով տացին քեզ փառս ընդ հօր հոգւով։



Երգ արեւագալին զկնի *Եղիցի անուն Տեառն* սաղմոսին:

Յարեւելից մինչ 'ի մուտս 'ի հիւսիսոյ եւ 'ի հարաւոյ. ամենայն ազգ եւ ազինք, յօրհնութիւն նոր օրհնեցէք զարարիչն արարածոց, որ ծագեաց ըզլոյս արեգականն այսօր յաշխարհս։

Եկեղեցիք արդարոց փառաբանիչք ամենասուրբ երրորդութեանն. յառաւօտուս լուսոյ զառաւօտ խաղաղութեան քրիստոս գովեցէք ընդ հօր եւ հոգւոյն, որ ծագեաց ըզլոյս գիտութեանն իւրոյ 'ի մեզ։

Երգ զկնի *Աղաղակեցէք* սաղմոսին:

Ճգնաւորք աստուծոյ, եւ ժառանգորդք երկնից արքայութեանն. որք փոխանակեալք զանցաւորս առիք զանանցըն բարութիւնս. բարեխօսեցէք առ տէր վասըն մանկանց եկեղեցւոյ։

Նահատակք պանծալիք, եւ սիրեցեալք 'ի յերկնաւոր հօրէն. որք մկրտեցայք ընդ քրիստոսի արեամբ ձերով 'ի մահ խաչին. բարե։

Մարտիրոսք ցանկալիք, եւ օթեվանք հոգւոյն ճշմարտութեանն. որք յաղթեցիք հոգւով կարեաց եւ ցանկութեանց. բարե։

Գովելիք աշխարհի, եւ բաղձալիք վերնոցըն պետութեանց. որք երանութեան մասին հասիք քան զամենայն որդիս մարդկան. բարե։

Կամաւորք պատարագք, մանկունք տիօք եւ կատարեալք իմաստութեամբ. որք փոխանակ կաթին արբիք զգինին զմայլեցուցիչ. բարե։

Երգ զկնի *Աստուած Աստուած իմ* սաղմոսին:

Լոյս արարիչ լուսոյ առաջին լոյս բնակեալդ 'ի լոյս յանմատոյց հայր երկնաւոր, 'ի դասուց լուսեղինացն օրհնեալ. 'ի ծագել լուսոյ առաւօտուս, ծագեա 'ի հոգիս մեր ըզլոյս քո իմանալի։

Լոյս 'ի լուսոյ ծագումն արեգական արդար. անճառ ծնունդ Հօր որդի. յառաջ քան զարեւ անուն քո գովեալ ընդ Հօր. 'ի ծա։

Լոյս 'ի Հօրէ բղխումն աղբիւր բարութեան. Հոգիդ սուրբ աստուածոյ. մանկունք եկեղեցւոյ ընդ հրեշտակս ըզքեզ բարեբանեն. 'ի ծագել լու։

Լոյս երրեակ եւ մի անբաժանելի սուրբ երրորդութիւն. զքեզ ընդ երկնայնոցն երկրածինքս միշտ փառաւորեմք. 'ի ծա։

Երգ զկնի *Տէր հովուեսցէ* սաղմոսին:

Ճանապարհ եւ ճշմարտութիւն եւ կեանք քրիստոս. առաջնորդեա հոգւոյ մերոյ, յերկրէ երանել յերկինս։

Դուռըն կենաց մըտից յիսուս. մուծ եւ ըզմեզ առ հայր քո եւ հոգի. երգել միշտ ըզփառս։



Երգ երրորդ ժամու աւուրն՝ զկնի *Ողորմեա*ին:

գձ Օրհնեմք ըզքեզ Հայր անսկզբն, էիցդ էակ 'ի յանգոյից, բարձեր ձեռօք նիւթ 'ի հողոյ եւ ստեղծեր մարդ 'ի պատկեր քո. զլուխըն ոտից խոնարհեցաւ, զի զպատուիրան քո մոռացաւ. դարձեալ առեմք ըստ անառակին թէ Հայր մեղայ քեզ 'ի յերկինս։

Երկնաւորացն անքննելի եղեր մարդկան տեսանելի. զգեցար պատկեր հողեղինի. պատկերընդ Հօր անփոփոխելի եղեր յերրորդ ժամ 'ի խաչին վասն ադամայ նախաստեղծին. ընդ աւազակին քում խաչակցին արժանացո ըզմեզ դրախտին։

Թագաւոր թագաւորաց առատաբաշխ հոգի շնորհաց. ժողովելոցն 'ի վերնատանն առաքելոցն երկոտասան. 'ի հրոյ լեզուս երեւեցար յոգիս նոցա վերանորոգ. լուր յանուն քո ժողովելոցս էջ եւ առ մեզ յերրորդ ժամուս։

Երգ վեցերորդի ժամուն:

Խաւարեցաւ լոյս արեւուն 'ի վեցերորդ ժամ ուրբաթուն, ծանոյց թէ լոյս արարչական նըսեմացոյց զլոյս եղական, կախեալ ըզքեզ մերկ 'ի խաչին քօղով ստուերաւըն ծածկէին. Հերքեա 'ի մէնջ ըզծանրութիւն շըրջող դիւին միջօրէի։

Զանձրութիւն՝ մարտ այսոյն չարի որ յայս ժամուս պատերազմի, ջնջեալ յոգւոց մեր հերքեսցի քո նըշանաւ սըրբոյ խաչի. Ճըշմարտութեան քո ճառագայթ զառ 'ի յերկնից անկեալ փայլակն՝ մերժեալ 'ի մէնջ հալածեսցէ եւ զմեզ լուսով քո վառեսցէ։

Յայս միջօրեայ տուընջեան ժամուս վայելչական աչաց մարմնոյս, նետիւք դաղտնեաց մի խոցեսցուք 'ի խաւարէն որ 'ի ծածուկ. շուրջանակի բանակեսցեն ըզմեօք բանակըք հրեշտակաց, որք պարակից մեզ լինելով ըզքեզ ընդ հօր փառաւորելով։

Երգ իններորդի ժամուն:

Զարչարակցեալ քեզ տիւ լուսոյ երեք ժամու խաւարելոյ, պայծառացեալ յիններորդին 'ի տիպ լերման մահու սուրբին. Ջահերդ լուսոյ մեծապայծառ աւանդեցեր զհոգիդ առ հայր. ուստի կցորդ քեզ 'ի յերկինս ընդ մեզ ուղղեա հոգւով քոյին:

Սանդարամետք սարսեցին զկապեալ հոգիսն արձակեցին. վէմք 'ի վիմեդ պատառեցան 'ի տապանաց մեռեալք յարեան. տարերք երկրի տատանեցին եւ աշխարհի սիւնք դողային. բանեալքս առ քեզ պաղատեսցուք զի ընդ արդարսն դասեսցուք:

Ցուցեր յայնժամ սքանչելիս եւ այժմ մեզ ողորմեսցիս. ւիւծեալ բնութիւնս քեւ ողջացաւ շնորհեա եւ մեզ լինել անցաւ. փոխան մահու քո կենարար կեցո ընդ մեզ տէր բարերար. քեզ պաղատիմք լոյս անուանակին յիշեա ընդ մեզ յօրն ահագին:

բձ Նահապետին առաջնոյն հայցմամբ ընկալ տէր զաղաչանս: Եւ ծառային քում սահակայ խնդրուածովք 'ի մեզ գթա: Թէնատեսին նորայելի Միրոն սրբոյն 'ի մեզ խնայեա: Երեքսրբեան երիւք անձին Սրբեա զհոգի զմիտս եւ զմարմին:

Երգ երեկոյին ժամու խաղաղականին:

բձ Նայեցաւ սիրով հայրըդ գթած 'ի քո ստեղծեալ գործըս ձեռաց. եւ ըզբանակս հրեշտակաց տուր պահապան մեզ տըկարաց, փըրկեա զանձինս 'ի փորձանաց 'ի խաւարի շըրջող դիւաց. զի՛ 'ի տուընջեան եւ գիշերի տացուք քեզ փառս անլըռելի:

Էին անեղ անըսկըզբեան ծընունդ անձառ որդի եւ բան. որ արարեր ըզտիւ գործոյ եւ ըզգիշեր 'ի հանգիստ քնոյ. տուր 'ի նընջել աչաց մարմնոյ արթուն լինել մեզ ըստ հոգւոյ. զի՛ 'ի:

Բանաւոր հոգւոց բանաւորաց անդ-բիւր լուսոյ բաշխող շնորհաց. 'ի փակել դրանց բնութեանց մարմնոց լոյս տուր աչաց սրտից մերոց. 'ի գիշերայ առ քեզ կանխել ընդ հրեղինացն օրհնաբանել. զի՛ 'ի:

Սուրբըդ սրբոց երրորդութիւն ընդ մեզ մարմնով քեզ բնակութիւն. շնորհեա ընդ մանկանցն առաւօտու հանգչել ընդ քեզ 'ի յանկողնի. տուր ըզհանգուցեալ բարեկամին ըղփոխ երից նըկանակին. զի՛ 'ի:

Երեւելի լոյս ըստեղծեր զտիւ և զգիշեր բաժանեցեր. ծագեա մեզ տէր 'ի գիշերի ըզձառագայթս իմանալի. տուր յանմեղն ժամանակի զանհանգիստ առ քո հովանի. զի՛ 'ի:

Արդ քո հուր արկեալ յերկիր բորբոքեսցի 'ի հոգիս մեր. զխորհուրդ սրտից մեր մաքրեսցէ զլոյս գիտութեան քո փայլեսցէ. 'ի քոյ մահու զմեզ զարթուսցէ զմիտըս բոցով քո վառեսցէ. զի՛ 'ի:

Ի քեզ նայիմք լոյս անմատոյց 'ի զգայական ծածկեալ լուսոյ. որ վարըն մեր եղաւ 'ի գբի եւ նընջեցեր 'ի տապանի. տուր մեզ նընջեա արթուն բնութիւն հերքեա զչարին ներգործութիւն. զի՛ 'ի:

Էջք լուսոյ անստուերի պայծառանօք կամք առաջի. որ փակեալ դրամբք յերեկոյին երեւեցար մետասանին. ընդ Թովմայի առ քեզ գոչեմք տէր եւ աստուած զքեզ դաւանեմք, Էջ եւ առ մեզ յերեկոյիս և տուր զողջոյն քո 'ի հոգիս։

Բանեալքս ընդ քեզ տէր աղաչեմք մեզ յօգնութիւն նոյնպէս հայցեմք. պահապանդ խորշելի անձանց մերոց լեր հովանի. օծեալ առ մեզ խաղաղարար եւ նշխարեսցուք անխռովաբար. զի ընդ առաքեալս կանխեսցուք օրհնել զքեզ ընդ հօր հոգւով։

Գոչման փողոյն զարթիցեն որ 'ի վերջնումն գիշերի, լսել որպէս զմեզ արժանի եւ աջակողմն օթեւան գտանի. անշէջ վառեալ զլոյս լապտերաց իմաստուն հինգ կուսանաց. զի ընդ փեսային 'ի յառագաստ հարսանիք հոգւով մտցուք 'ի փառս։

Հալածեա 'ի մէնջ տէր նշանաւ խաչի քո զընդդիմամարտ եւ զանիրաւոյթ գազանն. եւ մի տար յանպատրաստութիւն զքո ժառանգութիւնս։

Բարեխօսեա վասն մեր աստուածածին մարիամ, որ ծնար զտէր աստուած որ հովուէրն զիսրայէլ մանանայով սքանչելի փառօքն նուրովք։

գձ Իքէն հայցեմք հայր գթութեան եւ աստուած մխիթարութեան, 'ի տրտմական գիշերային մերձեալ ժամուս, մխիթարեա զմեզ 'ի տրտմութեանց մեղաց, եւ շնորհեա զուարթութիւն գործովք արդարութեան. աղաչանօք սուրբ աստուածածնին եւ ամենայն արդարոց։

Ըստ քաղցրագոյն աստուածային քո հրամանի կոչման որդի աստուծոյ. եկեալ եմք առաջի քո յերեկոյիս աշխատեալք եւ ծանրաբեռնեալք. թեթեւացո 'ի ծանրութեանց մեղաց զանձինս, եւ զօրացո բանիւ կամաւ զքաղցր լուծ քոց պատուիրանաց. աղա։

Պաղատիմք առ քեզ հոգւով 'ի հանգստեան հասեալ ժամուս մարդասէր հօր աստուծոյ. յորժամ նորոգես զերեսս երկրի եւ վերստին ստանաս զհոգիս մարդկան, նորափետուր զարդարեա զննջեցեալսն մեր զծնեալսն 'ի քէն սուրբ աւազանէն. աղա։

Զկենդանատուր անապատ ծնունդ քո ակնկալեմք առաջի անխափան տէրութեանդ քո. յորժամ գաս փառօք հօր դատել զթշնամին խաչի քո. ներեա յանցանաց մերոց բարեխօսութեամբ մօր քո եւ կուսի. աղաչեմք զքեզ տէր պահպանեա զմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ։

Հովուեա սրա եւ զմեզ տէր ընդ սրբոց քոց առաքելոյն, որք արժանի եղեն տեսանել զքեզ 'ի յարութեան քո. արժանաւորեա տեսանել զքեզ 'ի միւս անգամ քո գալստեանն. օրհնութիւն առաքելոց 'ի բարձունս։

Ի նշանիլ քո յատենի դատաստանի ահեղ. աղաչանօք սուրբ աստուածածնին յիշեա զննջեցեալսն մեր, յորժամ գայցես անճառ փառօք. քանզի քո են փառք յաւիտեանս ամէն։



# ԿԱՆՈՆ

## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ՝ ԴԱՍԱՒՈՐԵԱԼ ԸՍՏ ՈՒԹՆ ՁԱՅՆԻՑ

Օրհնութիւն՝ Առաջին ձայն:

օրհ / ած Ժողովեալքս ՚ի յիշատակ սրբոց մարտիրոսացն միաբանութեամբ երգելով. օրհնութիւն ՚ի բարձունս երկնաւոր թագաւորին:

Քանզի հեղմամբ արեան սոցա պարտեցաւ թշնամին, և մեծաբեալ պարծէր սնոտի երգելով. օրհ:

Դասակցելոցն ընդ զօրս վերին զուարթնոցն յիշատակաւ բերկրեալ, ՚ի սրբութիւն սոցա երգեսցուք. օրհ:

Որք ըղձանօքն նահատակութեան ոտն բռնաւորացն յուզին, և յաղթեցին հաւատով երրեակ լուսոյն եղեն մեզ առիթ. աղաչանօք սոցա կեցո զմեզ:

Որք ըզխաւար կռապաշտութեանցն վանեալ հերքեցին, և կանգնեցին մեզ նշան յաղթող ընդդէմ թշնամւոյն. աղա:

Եւ հրաշափառ ճգնութեամբ պատերազմեալք ՚ի յերկրի, վերհամբարձեալք երկնային դասուցն եղեն երգակիցք. աղա:

Որք զանձինս իւրեանց քեզ հայր ընծայեցին, և որդւոյ քում քրիստոսի եղեն խաչակիցք. աղաչանօք սոցա կեցո զմեզ:

Որք զմարմինս իւրեանց քեզ տանջար մաքրեցին. և հոգւոյդ սրբոյ եղեն օթեվան. աղա:

Որք ըզկեանս իւրեանց քեզ փոխանակեցին, և երկնից արքայութեանդ եղեն ժառանգորդք. աղաչանօք սոցա կեցո զմեզ:

Պատուական վկայից զինուորութեանցն դասքն համաձայնեալք ընդ երկնային զօրսն երգեն ասելով. սուրբ ես տէր զօրութեանց բնակեալդ ՚ի լոյս:

Կարծրագոյն տանջանօք լուծին ըզկապ մարմնոյ. և բացարձակ փայլմամբ հոգւովն երգեն ասելով. սուրբ ես տէր զօ:

Համաձայնեալք ընդ նոսին արժանաւոր սիրով, ՚ի տաճարի ճգնաւորացն երգեմք ասելով. սուրբ ես տէր զօ:

Առաքինասէր վարուք հաճոյացան սուրբ վկայքն. և ընտրեցան կամաւոր մահուամբն իւրեանց, և հրաւիրեցան ՚ի կոչումն արքայութեանն երկնից:

Որք մատնեցին զանձինս իւրեանց ՚ի փորձ սրոյ և հրոյ. և հեղմամբ արեանն իւրեանց եղեն վկայք քրիստոսի. և հրաւի:

Որ ՚ի հանդէս քո ճգնութեան երկնային զուարթունքն նայեցեալ զարմանային. ՚ի մարմնի տեսանելով զանմարմին իւրեանց զվարս. ով սուրբ հայր անտոն, բարեխօսեա առ քրիստոս վասն անձանց մերոց: բշ / երգ

Որ գերագոյն քան զբնութիւն հողեղինաց ժուժկալեալ զանազան տանջանաց համբերելով յաներեւոյթ թշնամւոյն. ով սուրբ:

Ուստի և մեք տօնելով զճգնութեան քո սուրբ զյիշատակս,

որ եղեր նախընթաց բարեաց կենաց ճանապարհին, փոխեցար յերկրայնոցս յանմահից դասակցութեան.

Ով սուրբ հայր անտոն, բարե։

Գշ մրգ Երգս առեալ մարգարէիցն հրաշալի ձայնիւ անդադար օրհնաբանեն ընդմարմնացեալն 'ի սուրբ կուսէն, որ երեւեցաւ մեզ 'ի փրկութիւն։

Զնեղութիւն եւ զչարչարանս յանձն առին կամաւորապէս, ժուժկալեալ համբերեցին վասն անուանըն տեառն, որ երեւե։

Աներկիւղ քարոզեցին յաշխարհի ընդճշմարիտ մարդեղութիւն մարմնացելոյն 'ի սուրբ կուսէն, որ երե։

Եշ առ Որք 'ի սկզբանէ պատուեալ եղեն 'ի սէր բարձրից հօր, առաքելականն կոչմամբ ըզտիեզերս հրաւիրեցին յուսով հասանել մահին. վարդապետութեամբ սոցա ամենեքեան օրհնեսցուք ըզտէր։

Որք ականատեսք եւ սպասաւորք եղեն մարմնացելոյ բանին, գեր 'ի վերոյ անմարմնոց դասուցն հանդիպելով շնորհի. վար.

Որոց դատողական աթոռ ահեղ ատենին հանդերձեալ մնայ, կատարել 'ի մեզ դատաստան ըստ գրեալսն. առ սոսա անկցուք զըղջացեալ անձամբ պաղատելով, հաշտեցուցանել առ քօք ընդ մեզ զահաւ[illegible]ր զդատաւորն։

չաբ ճրգ Որ շնորհօք սուրբ հոգւոյն բարձեր ըզխաւարն փրկչական յորդեգրութեան շնորհս, ով սուրբ հայր անտոնիոս, արժանաւոր երկնային կոչմանն 'ի հրեշտակական դասակցութիւնն. օրհնեմքըզ միշտ սուրբ զերրորդութիւնն։

Այսօր եւ մանկունք սուրբ եկեղեցւոյ տօնեն ըզխաչակրօն քո սուրբ զյիշատակս, ով սուրբ հայր ճգնաւորաց, զի ընկալեր զանապական պարգեւս 'ի քրիստոսէ աստուծոյ մերմէ. օրհնեմքըզ միշտ սուրբ զերրորդութիւնն։

Զառաքինապարգեւս վերընկալեալ ըզփառս յաջակողմեանսն քրիստոսի ընդ իմաստուն կուսանն, հայցեսցես 'ի քրիստոսէ ըզթողութիւն մեղուցելոցս, 'ի լսել ըզձայնն եթէ եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք ըզկեանսն յաւիտենից։

Որ 'ի քրովբէական կառսն հանգչիս, այսօր իջեր յերկնից 'ի դաս առաքելոցն սուրբ հոգի. օրհնեալ ես Թագաւոր անմահ։ Հոգ

Որ գըմաս 'ի վերայ Թեւոց հողմոց, այսօր 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի. օրհնեալ ես Թագաւոր անմահ։

Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր 'ի հաստատել զեկեղեցի քո սուրբ հոգի. օրհ։

Զհոգիս ծառայից քոց քրիստոս, ընկալ 'ի դասս անդրանկաց գրելոց 'ի յերկինս։ Հան

Ընկալ վասն սոցա ըզբանաւոր պատարագս 'ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում։

Հաշտեա 'ի ձեռըն սուրբ մարմնոյ եւ արեան քո տէր. եւ պարգեւեա նոցա դասել յաջակողմեանըն քո։

Որ ըզբանն աստուած բաւական եղեր ընդունել յորովայնի

միշտ կոյս. զքեզ մեծացուցանեմք
որ օրհնեալդ ես 'ի կանայս։

Որ էից լուսոյն արժանի եղեր
բառնալոյ 'ի գիրկս քո մարմնով.
զքեզ մեծ։

Անարատ տաճար տընօրէնութեան
կոչեցար հոգւոյն սրբոյ միշտ կոյս.
զքեզ մեծ։

խաչ

Որ զանարատ բազուկս քո 'ի
խաչին տարածեցեր քրիստոս աստ-
ուած, եւ նշան յաղթութեան
ետուր մեզ. ամփաւ ըզկեանս մեր
պահեա։

Որ զաշխարհակեցոյց բազկատա-
րածութիւն խաչի քո քրիստոս
աստուած զաւազան զօրութեան
ետուր մեզ. ամ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Որ ըզմեռեալն 'ի ճաշակմանէ փայ-
տին յանցանաց, կենաց փայտիւն
կենդանացուցեր. ամփաւ ըզկեանս
մեր պահեա։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Աղօթիւք սրբոյ եւ բարեխօսու-
թեամբ, պահպանեա մեզ քրիստոս
մասն եւ բաժին ընդ հրաւիրեալսն
'ի կոչմանն արքայութեանն երկնից։

Օրհնութիւն՝ Առաջին կողմ։

օրհ
ակ

Յամենայն ժամ օրհնեմք ըզ-
քեզ, որ մարդասէրդ ես կե-
ցո ըզմեզ։

Յօրհնութիւն 'ի նոր օրհնեցէք
ըզտէր. զի նա է փառաւորեալ
յամենայն սրբոց իւրոց։

Օրհնեալ է այն որ արժանի արար
ըզմեզ հասանել 'ի մասն ժառան-
գութեան սրբոց 'ի լոյս։

Զօրութիւնք երկնայինք եւ ան-
մարմնոց զինուորութիւնք օրհնեն
ըզքեզ ասելով. սուրբ աստուած։

Եկեղեցիք արդարոց եւ ժողովք
մարտիրոսաց, գովեն ըզքեզ ասե-
լով. սուրբ աստուած։

Ազգ մարդկան կենդանեաց սաղ-
մոսիւք եւ օրհնութեամբ աղաղա-
կեն ասելով. սուրբ աստուած։։

Ճգնաւորք քրիստոսի հեզ-
մամբ որեան ձերոյ զկռապաշտու-
թիւն բարձիք յաշխարհէ. եւ 'ի
ճանապարհս արդարութեան դար-
ձուցիք ըզմոլորեալս։

Ճշմարտութեան քարոզք եւ լու-
սաւորիչք տիեզերաց էք պարծանք
եկեղեցւոյ. եւ յոյս հաւատացելոց։

Համբերութեամբ ձերով ընկալայք
'ի քրիստոսէ ըզպսակս անապա-
կան. եւ դասաւորեցայք 'ի յերկինս
ընդ անմարմնոցն դասս։

Յաղթող նահատակքն քրիս-
տոսի որք քաջութեամբ մարտեան
ընդ թշնամւոյն, եւ ըզբազմու-
թիւն լուծին ըզտանջանաց. զի զան-
տանելի ըզմէրսն 'ի յանձն առին։

Լոյս փառաց փարէր ըզնոքօք, եւ
հրեշտակք 'ի յերկինս ուրախանան.
զի կարապետք եղեն տիեզերաց,
եւ լուսաւորք մեղաւորաց։

Դասք անմարմնոցն աղաղակեն եւ
ասեն, փութացարուք ըզհետ կոչման-
նըն քրիստոսի, եւ խընկարգեալք
վայելեցէք յաւիտենից 'ի յարքա-
յութիւնն։

Պարծանք հաւատոյ սուրբ
ճգնաւորաց. որք ըզմարմինս իւ-
րեանց 'ի վերայ քո պատարագեցին,
եւ հեղմամբ արեանն իւրեանց նո-
րոգեցին զաշխարհս։

Դաստուորեալք ընդ անմարմնոց
բազմութիւնսն փայլեն որպէս
զարեգակն ՚ի մէջ աստեղաց. զի
զհոգիս մարդկան լուսաւորեցին ա-
ւազանին լուսով։
[բձ հայ] Այսօր ընդ երկնային զուար-
թունսն ժողովուրդք հայաստա-
նեայց, տօնելով ըզյիշատակ սուրբ
հայրապետաց շնորհազարդ սրբոյն
գրիգորի, օրհնեցէք ըզհայրն եր-
կնաւոր։
Այսօր որդիք թորգոմայ ծնեալք
աւազանաւն յորդիս սիոնի. ՚ի յի-
շատակի հարցըն սրբոց որդւոց
մեծի լուսաւորչին, գովեցէք զտը-
դին մեծին։
Այսօր երկնաւոր քահանայու-
թեանն հաւորդ քահանայք սուրբ
եկեղեցւոյ. ընդ քահանայապետս
աստուածային օրինօք պատուեալըս
բարեբանեցէք զհոգին ճշմարիտ,
երգելով ըզփառս ՚ի բարձունս։
[գձ մրգ] Որ առաքեցեր նախընթաց քում
գալըստեանդ սուրբ ըզմարգարէսն,
աւետարանել տիեզերաց զփրկութիւն
քո ՚ի հայրական ծոցոյ ՚ի փրկու-
թիւն հեթանոսաց. բարեխօսու-
թեամբ սոցա քրիստոս խընայեա
՚ի մեզ։
Որ խոնարհեցար յանպատում փա-
ռացդ որդի աստուծոյ, եւ եկիր ՚ի
կատարումըն մարգարէիցըն նախա-
ձայն քարոզութեանցն անճառ խոր-
հըրդով. բարեխօսութեամբ սոցա
քրիստոս խընայեա ՚ի մեզ։
Որ լուծեր կենարար մահուամբ
քո տէր զերկունըս մահու, խըզա-
նելով ՚ի դըժոխըս վերածեր ընդ
քեզ զհոգիս արդարոց մարգա-
րէիցն ՚ի լոյսն անըստուեր. բարե-
խօսութեամբ սոցա քրիստոս խը-
նայեա ՚ի մեզ։
Ի մաքրագործ հոգւոյն անօթ [եձ տռ]
ընտրեալ եւ ձիւնափայլ, թագա-
ւորք երկրի ճշխանք աշխարհի. ան-
պակաս գանձուց բաշխող յակոբ
ալփեան յուդայ յակոբեան. բա-
րեխօս լերուք առ տէր վասն ան-
ձանց մերոց։
Երեքսրբեան մի տէրութեան
խորհուրդ կամաց եւ հաւասարա-
պետք, փողոց հընչմունք բարբառք
աւետեաց ընդ ամենայն երկիր
սուրբըդ շմաւոն եւ մատաթիա.
բարեխօս լեր։
Բանին կենաց կանոնի քարոզ եւ
աւետարանիչ, երդ փրկութեան
հընչումն ահաւոր, ազդի մարդ-
կան պարծանք սուրբըդ մատթէոս.
բարեխօս լեր առ քրիստոս վասն
անձանց մերոց։
Աղաչեմք ըզքեզ տէր բարե- [չաք տատ]
խօսութեամբ սրբոց առաքելոց,
որք նահատակեցան ՚ի ճակատա-
մարտ պատերազմի, յաղթող
գտան ընդդէմ թըշնամւոյն. բա-
րեխօսութեամբ սոցա քրիստոս
խընայեա ՚ի մեզ։
Որք առին զպատուագինութեան
գրահըս հաւատոյ սըրտից իւր-
եանց, եւ ընկալան ՚ի գըլուխ սա-
ղաւարտ փրկութեան ըզնըշան
խաչին, սուսեր ընդ մէջ ածեալ
ըզճըշմարիտ սուրբ հոգին. բարե։
Որք մաքրեցին զանձինս իւրեանց
տաճար անուանըդ քում սըրբոյ.
եւ բուրեցին հոտ անուշութեան
զաղօթս իւրեանց ՚ի տեղւոջ հեղ-
ման սուրբ արեան իւրեանց. բա-
րեխօսու։

Հոգ Որ յերկնային զօրս անմարմնոցն նախ հեղեր առատապէս հոգիդ ճշմարիտ. զաստուածային եւ զգերագոյն քո իմաստութիւնդ. լինել փառաբանիչ սուրբ երրորդութեանդ. ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ։

Որ զկերպարանն աստուածային ստեղծեալ երրորդութեանդ խորհրդակցութեամբ. զարդարեցեր փչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ՚ի նմանէ խօսեցար օրհնօք եւ մարգարէիւք. ընդ նո։

Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էակցին. մըտեալ ՚ի վերնատունն դրօքըն փակելովք. շնորհելով ըստ առաջին փչմանն ըզքեզ մետամաննից. առաքելոցն ասաց առէք հոգի սուրբ. ընդ նո։

Հան Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն ձունելով տիեզերաց ՚ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէ՛ր եւ զմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո։

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին ՚ի յարեւելից. եւ դըպրութիւնք հրաշիցըն բանին. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէ՛ր եւ։

Զարհուրեալ դողան արարածք ՚ի ձայնէ սոսկալագոյն փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ՚ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէ՛ր եւ։

ած Որ նախինմաց իմաստութեամբ տնօրինեցեր զխորհուրդ սուրբ եկեղեցւոյ. խորագոյն արկեալ հիմունս համատմութեան ըզգաստ արդարոց. աղաչանօք սոցա խնայեա ՚ի մեզ։

Որ զօրհնութիւն նախաստեղծիցն աստուածազոյգ արուաց եւ իգաց. պայծառացեալ վայելչապէս ծաղկեցուցեր. այսօր ՚ի յոլովակին եւ ՚ի յաննան. ալէ։

Որ ըզխոստումն աբրահամու նահապետին մեր ըստ հոգւոյ. քահանայական եւ թագաւորական զաւազանացն միացեալ ցուցեր այսօր ՚ի յաննայէ. ալէ։

Խաչ քո եղիցի մեզ ապաւէն բոցանիշ փայլմամբն իւրով. խորտակեաց ըզթշնամին, եւ եղծ ըզդատակնիք անուանեալ փայտին կենաց ՚ի փրկութիւն տիեզերաց։ խաչ

Վեր առեալ ցընծան երկինք եւ երկիրս ուրախանայ ընդ յայտնիլ սրբոյ խաչին սեռակնաձեւ քառաթեւին, որ զաշխարհըս լուսաւորեաց արեգակնակերպ ճառագայթիւք։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Ցընծացաւ երուսաղէմ բերկրեցան հաւատացեալք, նորահրաշ զարդարեցան, քանզի տեսին զյաղթող նշանն. արարածք ամենայն ՚ի լուսոյն պայծառացան։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Արդ եկայք ժողովուրդք աստուծոյ եւ հաւատացեալք քրիստոսի. ՚ի ձեռըն սրբոց մարտիրոսացն առաքեսցուք գոհութեամբ փառք ՚ի բարձունս աստուծոյ։

Օրհնութիւն՝ Երկրորդ ձայն։

օրհ / բձ Օրհնեն զքեզ աստուած զօրք ամենայն հրեշտակաց. արդարոց անձինք եւ հոգիք ամենայն սրբոց։

Գովեն զքեզ քրիստոս մարտիրոսացն ժողովք. դասք մարգարէից եւ դունդք ամենայն սրբոց։

Բարեբանեն զքեզ սուրբ հոգի որ միայն ես հզօր, եւ պահես զօրութեամբ զյաւիտեանս 'ի քեզ։

Զօն ծննդեանն այսօր. եկայք հաւատացեալք օրհնեսցուք զաստուած յիշատակի սուրբ վկայիցն։

Որք զմահս խոցեանց կանգնեցին յերկրի աշտարակ հզօր, յոր ապաւինեալքս ամենեքեան եկայք հաւատացեալք օրհ։

Հեղումն արեան սոցա մաքրեաց զաղտեղերս յանօրէն կռապաշտութեանց, եւ խառնեաց զմարդիկ ընդ երկնային զօրութիւնս. եկայք հաւատացեալք օրհնեսցուք զաստուած զբնակեալն 'ի մէջ սրբոց։

Որ օրհնիս յանմարմնական զինուորութեանց վերնագոչեմք առ քեզ տէր. աղօթիւք սրբոց մարտիրոսաց խնայեա 'ի ժողովուրդս քո միայն մարդասէր։

Զոր ընտրեցեր յամենայն ազգաց երկրէ լուսաւորել զոգիս մարդկան. աղօթիւք սրբոց մար։

Որ գաս հայրական իշխանութեամբ պսակել զսուրբս քո. աղօթիւք սրբոց մարտիրոսաց փրկեա զմեզ 'ի հրոյն յաւիտենից միայն մարդասէր։

Ուրախանան հրեշտակք 'ի յերկինս ընդ չարչարանս ծննդաւորացն, եւ հրաշանան մարտիրոսք ընդ յաղթութիւնս սրբոցն։

Մեծամեծս պատերազմեալք զառաքինութեան ըղձանօքս, պսակեցան 'ի քրիստոսէ ընդ վերին զուարթունս։

Ցնծայ կաթողիկէ, զուարճանան հաւատացեալք. աղաղակեն ասելով. փառք քեզ աստուած։

Զքեզ տէր օրհնեն դասք սրբոց մարտիրոսաց, քաղցր ձայնիւ հնչմամբ քեզ երգեն. փառք քեզ փառք քեզ աստուած։

Որք քաջութեամբ համբերեցին բռնաւորացն սպառնալեաց, եւ ընդ անմահիցն դասակցեալ քեզ երգեն. փա։

Պարծանք եկեղեցւոյ եւ ուրախութիւն հրեշտակաց, ով տէր հայր անտոն, զաղաչանս մեր հանապազ մատո սուրբ երրորդութեանն։ բշ / ճըգ

Որ 'ի մարմնի կառուցեալ եւ զանմարմնոցն բերեալ 'ի քեզ զվարս. ով։

Բաժանող հոգեւորական լցեալ աստուածային ուրախութեամբ. ով տէր հայր ան։

Ով երջանիկ տէր սուրբ գրիգոր, սրբութեանցն պաշտօնեայ եւ առաջնորդ բանաւոր հօտի։ գշ / գըէ

Ընդ քեզ ունիմք բարեխօս առ յիսուս միածինն, եւ աղաչեա վասն քո ուխտաւորացս։

Կանխեաց խնդրեա զթողութիւն յանցանաց, 'ի քէն աշակերտելոցս։

եշ ձկ Յաւուրս վերջին ժամանակի շինեաց իւր տուն զեկեղեցի, հօրն գլխաւոր երկնաւորի իմաստութիւն բան եւ որդի. եւ ընդմարմին իւր 'ի զենլի, զգինի արեանն 'ի խառնելի. սեղանն հրաշից նորգործողի տուք օրհնութիւն յաւենայնի:

Որ եւ զծառայս իւր առաքեաց 'ի խառնելսն հրաւիրեաց, զքաղցեալսն 'ի հաց մարմնոյն կոչեաց զգինի արեանն եւ ծարաւեաց. յորս կոչմանս ապստամբեաց ազգ հեթանոսաց հայաստանեայց. այն որ ընդհրաւէս այս ներգործեաց մեզ նորագոյն յոյս հաստատեաց:

Համաստուած եւ իմաստուն գրիգորիոս անուն արթուն, նման խաչին մահուամբ որդւոյն չարչարանօք իւր սուրբ մարմնոյն, զանգս հայոց կոչեաց 'ի նոյն զգանս և զհարուածս եւ խստագոյն. միոյն բանին հօր իմաստուն տուք օրհնութիւն զօրհնէք հրաւէրն:

աբ հայ Որ լուսով աստուածային բանին զարդարեցեր զեկեղեցի. եւ զխաւարն անգիտութեան հալածեցեր յոգւոց մարդկան, ով տէր սուրբ գրիգոր. բարեխօս լեր վասն մեր առ միածին բանն հօր:

Որ զհամագոյ բնութիւն միաւոնակաւն երրորդութեանն յայտնեցեր եկեղեցւոյ խոստովանել միութիւն. ով տէր սուրբ գրի:

Որ զկրկնակ անօրէնութիւն մարդացելոյն վասն մեր ուսուցեր մի յերկուց նոր խառնուածս ըսքանչելի. ով տէր սուրբ:

հող Սքանչելի հողմոյ նման ահեղագոչ սաստիկ հնչմամբ, երեւեցար 'ի վերնատանն հոգին գասուն երկոտասան. որք առ 'ի քէն մկրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. մաքրեա 'ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց:

Էջեր յերկնից աստուածաբար գառել զաշխարհս ճշմարտութեամբ, ընդ արդարութեան եւ ընդ մեղաց եւ ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձ անհիւթականն պարգեւս եռաւր որդւոց մարդկան. մա՛ք:

Սէրն 'ի սիրոյ զուէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեանց քո հաստատեաց. ընտրեա 'ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա 'ի մէնջ ըզմէգ մե:

Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զերրորդութիւնըն, փառաւորելով ըզհայր. որ վերակոչեաց զամենեսեան 'ի մահուանէ յանմահութիւն: հան

Երգեցէք տէառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց, քրիստոսի երկրպագելով. որ վերա:

Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք, հոգեւորականն հնչմամբ գովեսցուք, սուրբ զհոգին փառաւորելով. որ վերահանեցոյց զմե:

Սուրբ եւ աստուածածին մարիամ ցանկալի կուսից եւ պարծանք ազգի մարդկան, մայր եւ աղախին մեծացուցանեմք: ած

Անկէզ մորենի եւ տաճար ընդհանուր լուսոյն, անարատ եւ անխախտելի կուսութիւն. մայր եւ:

Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան, եւ առագաստ հրաշալի ծագմանն. մայր եւ:

խաչ Այսօր խնդրի պատուական փայտ խաչին աւանդեալն ՚ի գողգոթա, ՚ի ձեռն աստուածասէր դշխոյին. Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանին:

Այսօր ընծայէ գողգոթայ ընծածկեալն ՚ի յերկրի, վերաբերեալ անուշահոտ խնկովք, ՚ի ձեռն երանելւոյն յուդայի. Եկայք հաւատացեալք երկրպագեմ:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Այսօր ՚ի ձեռըն փրկական սուրբ խաչին կենագործի պատուանին մեռեալ. եւ ողջոյ ատամանց ընկղծանումն իւր. Իսկ մեք քրիստոսի հաւատացեալք երկրպագեմ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Այսօր ցնծայ վերին երուսաղէմ ընդունելով ըզտաւն յարկին լուսեղէն. ուրախանան եւ հրեշտակք տեսլեամբ. փառք քեզ փառք քեզ աստուած:

---

Օրհնութիւն՝ Աւագ կողմ:

օրհ բկ Շնորհեա մեզ քրիստոս թագաւոր, կատարել ՚ի հաճոյս քո զյիշատակ սրբոցն եւ օրհնել զանուն քո սուրբ:

Որք հեղման քո սուրբ արեան եւ չարչարանաց քոց եղեն հաղորդք սուրբ վկայքն, եւ լուսաւորիչք աշխարհի:

Սոքօք միշտ աղաչեմք եւ փառաւորեմք անդադար երգով օրհնութեամբ, սուրբ զերրորդութիւնդ համագոյ:

Միաբան ամենեքեան զաստուածն աստուածոյ օրհնեցէք ձայնիւ սրբասացութեամբ ընդ պետականչին սրբոց:

Զթագաւորն փառաց քրիստոս զէակից հօր եւ հոգւոյն գովեցէք ձայնիւ սրբով:

Զխաչն պարգեւաց սուրբ զհոգին ճշմարտութեան բարեբանեցէք ձայնիւ սրբով:

Այսօր տօնեմք ըզտօն սրբոց վկայիցն, որք արեամբ նահատակեալք փոխեցան ՚ի զօրս վերին զուարթնոցն:

Արիաբար մարտեան ընդդէմ խորոխտ թագաւորաց. զյաղթօղական ընկալեալ ըզպսակ. փոխեցան ՚ի:

Եղեն օթեվանք սուրբ երրորդութեան. զանճառական ընկալեալ ըզկեանս. եւ բարեխօսեն առ տէր վասն անձանց մերոց:

Ով երանեալ սուրբ վկայք, որք արժանի եղէք մարմնով եւ արեամբ դասակից լինել զուարթնոց երկնից:

Քաղաքակալեալք ՚ի մարմնի եւ հետեւողք որդւոյն աստուծոյ. մարմնով եւ ար:

Լուսաւորեալք ՚ի հօրէ պայծառացեալք ՚ի հոգւոյն սրբոյ. բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց:

Յիշեա զմեզ աստուած փրկիչ մեր. յորժամ գաս թագաւորութեամբըդ քո կեցո ըզմեզ, բարեխօսութեամբ սրբոց քոց:

Շնորհեա մեզ թողութիւն երկնաւոր թագաւոր. ընկալ զաղաչանս մեր կեցո ըզմեզ, բարե:

Յօրհնութիւն 'ի նոր օրհնեսցուք զքեզ քրիստոս թագաւոր. որ վասն մեր մարմնացար կեցո զմեզ, բարեխօսութեամբ սրբոց քոց:

Բշ Հրշ Որ յանէից ստեղծեր զպաշտօնեայս քո 'ի հուր կիզելոյ հուրդ անեղական. ընդ նոսին օրհնեմք զքեզ եւ մեք հողեղէնքս:

Որ բանիւ գոյացուցեր զնմանակ գունդս հրեղինաց բանդ 'ի սկզբանէ. ընդ նոսին գովեմք զքեզ եւ մեք հողե:

Որ արարեր յոգիս իմանալիս զհրեշտակս քո հոգիս աստուծոյ. ընդ նոսին բարեբանեմք զքեզ եւ մեք հողեղէնքս:

Գշ Մրգ Ապաշխարութեամբ ապրեցան քաղաքն նինուէացւոց, 'ի լսել ձայնի մարգարէին եղեւ թողութիւն մեղաց:

Եհաս բանն առ թագաւորն. պատուէր տայր ժողովրդեանն լսել ձայնի մար:

Ի բերանոյ մանկանց տղայոց զարքայն երկնից յօգնութիւն կոչէին, լսել ձայնի մարգարէին եղեւ թողութիւն մեղաց:

Եշ Ներ Որ զլոյս անճառ շնորհաց աստուածային քո գիտութեանդ ծագեցեր յաշխարհս հայաստանեայց. գթած հայր երկնաւոր գթա 'ի մեզ մեղուցեալքս:

Որ ընտրեցեր յորովայնէ զմաքրեալն հոգւով սուրբն ներսէս, ժառանգել զվիճակ հայրենի, հովուել արդարութեամբ եւ իրաւամբք:

Որ օրինօք ճշմարտութեանն զարդարեաց զեկեղեցի. կարգաւորեալ բարեպաշտութեամբ, սարին աղաչանօք խնայեա 'ի մեզ քրիստոս:

Ընդ յիշատակ վկայից սրբոյն մեծին մինասայ, երանգինեայ գրաբանի, յուսով եկայք տօնեսցուք: Չաբ Մկց

Ով սուրբ վկայ քրիստոսի քաղցրաբարբառդ մինաս. արդահամս ծնողական յուսով զքեզ խնդրողացս:

Ի տաճարի հանգստեան սրբոյն մեծին մինասայ. եկայք հաւատացեալք յուսով երկրպագեսցուք:

Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգման. քանզի նորոգողն էից հոգին էջ 'ի սուրբ վերնատունն. որով նորոգեցան դասք առաքելոցն: Հոգ

Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ հօր հաշտութեան. քանզի որ եբարձ զհոգին 'ի մարդկանէ մարմին եղելոց, դարձեալ վերստին զնոյն պարգեւէ:

Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցնծութեամբ զգալուստ սուրբ հոգւոյն. որով զարդարեցան 'ի զգեստս լուսափայլս եւ գերապայծառս. երգեն ընդ սրովբէին զերեքսրբեանն:

Գալոց է միածնին փողով եւ փառօք հօր, եւ զհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ: Համ

Լուսաւոր են ճանապարհք արդարոց, եւ 'ի բիւրաւոր բանակս հրեշտակաց ամպովք ընթանան:

Ի վերին երուսաղէմ թռչին ամպովք ընդ առաջ տեառն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ տեառն լինին:

Սիւն լուսոյ եւ ամպ հովանի սուրբ կոյս, որ ցօղեցեր 'ի մեզ Ամ

ըզցօղն երկնային. զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս:

Անկէզ մորենի եւ սրովբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղն կենաց ՚ի քէն տուաւ մեզ. զքեզ բա:

Անծնից լուծիչ եւ քաւիչ մեղաց սուրբ կոյս, որ զանտանելին յերից ՚ի գիրկս քո բարձեր. զքեզ բա:

խաչ Ճառագայթ փառաց հօր որդիդ միածին, որ ըզլոյսդ անփոփոխ մարմնով պարագրեալ, այսօր ՚ի Թաբօր փառօք փայլեցեր:

Որ անտես սրովբէից անհաս ՚ի վեր քան ըզլուսն, ծառայի կերպիւ պայծառակերպեալ ըզլոյսդ անըստուեր. այսօր ՚ի Թա:

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:**

Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեամբ, ՚ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական, այսօր ՚ի Թա:

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:**

Զհայր եւ զորդի եւ ըզսուրբ զհոգին. փառաւորեմք ասելով. երեքսրբեան տէրութիւն կեցո ըզմեզ. բարեխօսութեամբ սրբոց քոց:

Օրհնութիւն՝ Երրորդ ձայն:

օրհ գձ Օտարական մահ սրբոց քոց քրիստոս ընդ երկնային զօրսն այսօր երգանկցեալ տօնեմք. որք հանդիմացան ընդդէմ բռնութեան թշնամւոյն:

Անմարմինք ՚ի մարմնի ցուցան գեր ՚ի վերոյ սրոյ եւ հրոյ տանջանաց. զպատուական մահս իւրեանց ընծայեցին քեզ քրիստոս բանաւոր զենմունք:

Նահատակեալք ճգնութեամբ ՚ի փորձ զանազան տանջանաց, համբերութեամբ վանեալ ըզթշնամւոյն պատերազմ, փոխեցան ՚ի զօրս վերին զուարթնոցն:

Երանելի սուրբ հայրապետք չարչարեալք վասն տեառն համբերեցիք. յաղթելով բռնաւորին դասակից եղէք վերնոցն:

Ճգնեալ նահատակեցայք յերկրի յաղթողք ՚ի պատերազմի. կոխելով ըզսատանայ դասն:

Լուսաւորեալք երկնային լուսովն, պայծառացեալք ՚ի հոգւոյն սրբոյ. բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց:

Երանելի սուրբ հայրապետք, որք կամաւ չարչարեցայք յանձն առիք զհամբերութիւն. յարժանաւոր աղօթըս ձեր յիշեսջիք զանձինս մեր:

Փոխանակ արեանըն տեառն ձեր արիւնդ հեղաւ յերկրի, եւ հոտ անոյշ բուրեաց յաշխարհ. յարժա:

Փոխանակ անցաւորիս ձեզ անանցն է պատրաստեալ պսակ փառաց ՚ի քրիստոսէ. յար:

Ընդ վերին զուարթունսն բարեբանեմք ըզքեզ տէր. սուրբ սուրբ սուրբ ես տէր զօրութեանց կեցո ըզմեզ:

Յիշատակաւ սրբոց մարտիրոսաց գոհաբանեմք ըզքեզ տէր, սուրբ:

Երեքսրբեան ձայնիւն աղաչակեմք առ քեզ տէր. սուրբ:

Զանյաղթելի ճգնաւորացն ըզյիշատակս եկայք հաւատացեալք ամենեքեան պատուեսցուք:

Քանզի մարմին ունելով զտանջանսն արհամարհեցին. Նմանո-

զըք լինելով չարչարանաց փրկչին. Եկայք հա։

բՂ ձձբ Հայրապետս սուրբ եւ անբիծ եւ ընտրեալ յորովայնէ. սքանչելագործ վըկայ եւ պարծանք ազգի մարդկան. առ քրիստոս բարեխօսեա վասըն մեր քո տօնողացս։

Հովիւ հոգեւոր բանաւոր հօտի. լուսաւորիչ տիեզերաց սիւն լուսոյ կանգնեալ 'ի մէջ եկեղեցւոյ. առ քրիստոս բարե։

Հաստատութիւն հաւատոյ ըղսակ 'ի գլուխ եկեղեցւոյ, պայծառ քարոզ տիեզերաց եւ պարծանք ազգի մարդկան. առ քրիստոս բարեխօսեա։

Ի տաճարի քում սրբութեան երկրպագեմք քո նշխարացդ. փառաւորեմք զօր յիշատակի կատարման քո հանգստեան. առ քրիստոս բարեխօսեա։

գՂ հայ Ժողովեալ սուրբ հայրապետքըն հրաւիրմամբ հոգւոյն սրբոյ, վերստին հաստատեցին զառաքելական քարոզութիւնն. 'ի վերայ վիմի հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ։

Որք զինու հոգւոյն սրբոյ արիաբար պատերազմեալք, վանեցին զընդդիմամարտ մոլութիւն հերձուածողացն. որպէս հովիւք քաջք հերքեցին ըզգայլսն 'ի հօտէ գառանց։

Եւ ըզհաւատոյ ճշմարիտ սուրբ երրորդութեանն, ընդհանուր քարոզեցին յեկեղեցիս ուղղափառաց. հաւատալ 'ի հայր եւ յորդի եւ յամենասուրբ հոգի։

եՂ առ Զառաջնորդս եւ զվարդապետս եկեղեցւոյ քում սրբոյ. յիշատակաւ պատուեմք այսօր. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խնայեա 'ի մեզ։

Ծիր մըշակք անպարտելի կաթուղիկէ եկեղեցւոյ, եւ պըսակ պարծանաց հաւատացելոց. բարե։

Համբարձապետք աստուածային խորհրդոյն, եւ բացողք դրան արքայութեան երկնից. բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց։

Որք արժանաւորեցայք կոչել յաշակերտութիւն առաքելոյն թադէոսի. եւ աստուածային հրով մաքրութեան, ոսկի փորձեալ գըտայք 'ի բնակարաննըս հրեշտակաց. ով երանելի սուրբ ոսկեանք. բարեխօսեցէք առ տէր մաքրել ըզմեզ 'ի մեղաց մերոց։ չար ռակ

Որք անհրաժեշտ դաւանութեամբ քարոզեցիք ըզքրիստոս 'ի դրունըս թագուհւոյն, մըկըրտելով ըզքաջ նահատակն 'ի յակունս եփրատայ 'ի ծաղկազարդ վայելչութիւնսն. ով երանելի սուրբ ոսկեանք, բարեխօսե։

Որք անպարտելի մնացիք 'ի հրապուրանաց որդւոյ թագաւորին, չարչարեալք վասըն քրիստոսի, որպէս խողխողեցայք պատարագ ընդունելի. ով երանելի սուրբ ոսկեանք, բարեխօսեցէք առ տէր մաքրել ըզմեզ 'ի մեղաց մերոց։

Հոգիդ ճշմարիտ որ զաստուածային ըզհրամանսըն քո զառածըն դաւթեան լըցեր, արբուցանելով աշակերտացն ըզպարապտութիւն քո 'ի սուրբ վերնատանն. ողորմեա։ Նոգ

Որ առաքեցար 'ի հօրէ կենդանաբար վըտակ եւ լոյս ճշմարիտ. ար-

բուսանելով նորօք որդւոց սիովնի զուղխս փափկութեան. ծղս՟ր։

Որ կատարեցեր ըզփափագ ցանկութեան սրտից նոցա. ուր ըսպասեալ մընային մեծի գալըստեան քո ՚ի սուրբ վերնատունն. ծղս՟րմեա։

**հան** Յահաւոր քո գալըստեանն յորժամ գաս տէր ՚ի յերկնից աստուածային քո զօրութեամբդ. եւ նշան սուրբ խաչին պայծառանայ ՚ի մէջ երկրի։

Նորոգին տարերք երկրի ՚ի ձայնէ հընչման փողոյն, որ գոչէ զկենդանութիւն. առ սրբք եկըն տէր կենդանեաց եւ մեռելոց։

Շնորհեա մեզ տէր ողորմութիւն ՚ի ծագել սրբոյ խաչին որով եղեւ մեզ փրկութիւն. զի նովաւ ելցուք ընդ առաջ աստուածորդւոյդ որ ՚ի յերկնից։

**ած** Զանճառելի լուսոյ մայր, եւ ըզբնակարան անըսկըզբնակից որդւոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք։

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանձնաւոր տաճար աստուծոյ բանին. օրհ։

Զբողբոջ փըրկութեան մայր, որ զանտանելին յէից ՚ի յարգանդի եբարձ. ընդ ամենեքեան օրհնութեամբ մեծացու։

**խաչ** Քեզ քրիստոսի կաթողիկէ եկեղեցւոյ շնորհողի զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նշանս, մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ՚ի բարձունս։

Սա կամաւ քո քրիստոս եւ թեւօք ամենազօր սուրբ հոգւոյն, եւ զասուք հրեշտակաց թռուցեալ եկաւորի ՚ի լեառն վարագայ բնակել ՚ի նմա։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս. համբարձէք միաբան ըզձեռըս ձեր ՚ի սրբութիւն, եւ ըզբնակեալն ՚ի սմա միշտ փառաւորեսցուք։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Քանզի տեսարան եղեն հրեշտակաց եւ մարդկան. զյաղթութեան պսակն ՚ի քրիստոսէ ընկալան. եւ բարեխօսեն առ տէր վասն անձանց մերոց։

---

Օրհնութիւն՝ Վառ ձայն։

Այսօր հրեշտակաց դասքն ՚ի յերկինս ուրախանան ՚ի վերա՟ստեան ճըգնութեան սրբոցն։ **օրհ / գկ**

Այսօր ճըգնազգեաց սրբոց դասքն ՚ի յերկրի պըսակեցան, երկնային աստուածեղէն փառօքն։

Այսօր անմարմնոց զինուորութիւնքըն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինուորաց բազմութիւնքն ընծայեցան ՚ի խորա՟ստեան սրբութեան երկնից։

Սուրբ աստըւած հայր անըսկիզբն, որ փառաւորեալդ ես ՚ի մէջ սրբոց քոց. օրհնեմք ըզքեզ ընդ զուարթունս երկնից։

Սուրբ աստըւած որդի միածին, որ պահեցեր յաղթող ըզճըգնութիւն սրբոց քոց. գովեմք ըզքեզ։

Սուրբ աստըւած հոգի ճըշմարիտ, որ նորոգեցեր ըզտիեզերըս ճըշմարիտ երկրպագութեամբ սուրբ

երրորդութեանդ. բարեբանեմք ըզքեզ անլռելի ձայնիւ։

Ճգնաւորական աշխատութեանց համբերեցին սուրբ մարտիրոսքն, եւ ըզպատերազմըն չարին վանեցին ժուժկալութեամբ. բարեխօսութեամբ սոցա Քրիստոս խընայեա 'ի մեզ։

Որք հեղին զարիւնս իւրեանց փոխանակ արեան քո Տէր. եւ ըզբռնութիւն հրապուրողին վանեցին ժուժկալութեամբ. բա։

Եւ ըզպըսակս անապական ընկալան 'ի քէն Քրիստոս. եւ դասաւորեցան 'ի դասս վերին զուարթնոցն. բա։

Նահատակք յաղթողք քաջք 'ի մարտի երանելի սուրբ մարտիրոսք. որք վանեալ ըզթշնամին խորտակեցիք։

Հրեշտակացըն դասքըն տօնակից են մեզ. եւ ջոկք աթոռոցըն զուարճացեալ բերկրին ընդ վարդագոյն ձեր հեղումն արեան. որք վանեալ ըզթըշնա։

Անթառամ պըսակըն ձեզ աւանդեալ մընայ քան զականըս պատուականըս գերագոյն հրաշիւք. որք վանեալ ըզթըշնա։

Այսօր մարտիրոսաց դասքըն ցընծացեալ բերկրին ընդ առաջ տեառն Քրիստոսի որդւոյն Աստուծոյ։

Ձայն 'ի յերկնից վըկայեալ ասէ. եկայք օրհնեալըք Հօր իմոյ, ժառանգորդք երկնից խորանացն։

բշ ատե Առաքեա 'ի մեզ Տէր ըզբազում գըթութեան քո զողորմութիւն, բարեխօսութեամբ սըրբոյ նախավըկային քո եւ ողորմեա։

Որում զերկնայինն բացեր ըզդրունս, ցուցանելով զանճառելի խորհուրդ. սորին աղաչանօք խընայեա 'ի մեզ Տէր եւ ողոր։

Որ աղօթանուէր հայցմամբ ըզթողութիւն խնդրելով 'ի քէն անօրէն ըսպանողաց իւրոց. սորին աղաչա։

Խոստովանող Քրիստոսի ճըշմարիտ վըկայ, բազմաչարչար նահատակ Տէր Գրիգորիոս. ըզպակասութիւն չարչարանաց տեառն 'ի մարմնի քում կրեցեր. որով ցընծայ եկեղեցի 'ի փառս որդւոց Սիոնի։ դշ գրի

Ծնող հոգեւոր աստուածանման սիրով. գորովագութ հայր պարծանաց Տէր Գրիգորիոս. չարչարանօք մարմնոյդ մաքրեցեր ըզմեզ 'ի յաղտոյ մեղաց, եւ ծընար որդիս լուսափայլ բանիւդ։

Կերպարան փառաց միածնի որդւոյն, մարտիրոս յաղթող Տէր Գրիգորիոս. բեւեռս երկաթիս ընկալան երկնագնաց թաթք ոտից քոց սուրբ, զի բեւեռեսցես ըզմեզ յերկիւղըն Աստուծոյ։

Այսօր ցընծայ եկեղեցի ընդ անմարմնոցըն դասակցեալ, տօնելով զյիշատակըս քո Տէր սուրբ Ներսէս. որ 'ի հոգւոյն սրբոյ աղաւնակերպ իջմամբ վըկայեցար. բարեխօսեա սա Քրիստոս վասն անձանց մերոց։ եշ ներ

Քահանայապետ ընտրեալ արժանապէս շնորհօք հոգւոյն բաշխեցեր զփրըկական մարմին եւ զարիւնըն տեառն. յորում հրեղէն սիւն 'ի յերկնից իջեալ. բարե։

Արդ աղաչեմք ըզքեզ լուսաւորիչ հոգւոց մերոց նըմանեալ

Մովսէսի նախամարգարէին մեծի,
լուսափայլեալ դիմօք աստուածա-
հրաշ տեսլեամբ. բարեխօսեա առ
քրիստոս վասն անձանց մերոց։

չար քառ Այսօր ընդ անմարմնոցըն դասս
պարէն, որք 'ի սեբաստիա ճգնու-
թեամբ պատերազմեալք յաղթե-
ցին թշնամւոյն. բարեխօսու-
թեամբ սոցա քրիստոս խնայեա
'ի մեզ։

Եւ զմոլութիւն անօրէն բռնա-
ւորին աստուածային արութեամբ
վանեալ, տարեալ ժուժկալութեամբ
համբերեցին տանջանացն. բարե։

Ի ձուլել պատուականն մարմնոցն
'ի դժնդակ օդոյն, տագնապէին
'ի լճին սառուցելոյ յանտանելի
տանջանացն. զաչս 'ի յերկինս
համբարձեալ եւ զօգնութիւն 'ի
քէն խնդրէին, որ յոյս եւ ապա-
ւէնդ ես քոց սրբոց խնայեա
'ի մեզ։

հոգ Զանքննելաբար բղխումն 'ի
հօրէ զհոգին ճշմարիտ. որ հնչ-
մամբ ձայնի էջ 'ի վերնատունն այ-
սօր նման սաստիկ հողմոյ. զոր
փառաւորեմք հոգեւոր երգով։

Զհամագոյակիցըն հօր եւ որդւոյ
զբաշխողըն շնորհաց. որ 'ի հրեղէն
լեզուս բաժանեալ զբանն ճշմարտու-
թեան լեզուաց շնորհեաց սուրբ
առաքելոցն. զոր փառա։

Զաղբիւրն իմաստութեան ըզկա-
տարեալն անձնաւորութեամբ. որ
խօսեցաւ յօրէնս եւ 'ի մարգարէս
եւ յաւետարանս. զոր փա։

հան Փառք քեզ աստուած փառա-
ւորեալ յաւիտեան, որ կենդանարար
ես մարմնոյ եւ գոյացուցիչ հո-
գւոյ մեր նորոգեցելոցն։

Որ բարձրացար 'ի խաչին վասն ա-
դամայ նորոգման. եւ իջանելով
քո 'ի դժոխս աւար առեր ըզ-
գերեալսն։

Ընդգինս արեան քո յիշեա կենա-
գործող աշխարհի. եւ հանգըս-
տեան արժանաւորեա յերուսա-
ղէմըն վերին։

Զաստուածածինն եւ զմիշտ ած
կոյսն անդադար օրհնեսցուք. քան-
զի ծագեաց մեզ լոյս երեւաց, եւ
փրկիչ անձանց մերոց։

Խնդա եւ ուրախ լեր անհարսա-
նացեալ մայր. քանզի որ 'ի քէն
ծնաւ մեզ աստուած 'ի փըր-
կութիւն անձանց մերոց։

Գանձ անապական գտար սուրբ
աստուածածին. բարեխօսեա քրիս-
տոսի աստուծոյ մերոյ, կեցուցա-
նել զանձինս մեր։

Յաղթող եւ զնոր օրհնութիւն խաչ
միշտ 'ի բարձունս երգեսցուք թա-
գաւորին քրիստոսի հաւատացեալ
ժողովուրդք։

Որ եկն 'ի լուսաւորել զընտրեալ
սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց
սուրբ խաչիւն. նորա ըզփառս եր-
գեսցուք։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Այսօր եւ մեք տօնեսցուք զնա-
ւակատիս սուրբ խաչին. եւ փր-
կողին մատուսցուք փառք եւ պա-
տիւ յաւիտեան։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Լուցէք ըզտեղի անկելոյն ապըս-
տամբողական թշնամւոյն, որ 'ի
յերկնից վայր անկեալ։

Օրհնութիւն՝ Չորրորդ ձայն:

օրհ / գձ Այսօր յիշատակ սրբոցն, եւ փայլեն նշխարք սոցա 'ի մէջ եկեղեցւոյ. աղաչեսցուք զտէր սոքօք խնայեա 'ի մեզ:

Հեղմամբ արեան սոցա մեծարի մայր սոցա իմանալի սիոն. աղա:

Տաճար են սուրբ հոգւոյն կենդանի ոսկերք սոցա հիւանդաց բժիշկ. աղա:

Այսօր ճգնութեամբ սրբոցն զուարճանայ եկեղեցի ուրախութեամբ մեծաւ հանդերձ որդւովք իւրովք. տօնելով զյիշատակ սոցա:

Սոքա են դեղ կենաց պարգեւեալ մեզ 'ի քրիստոսէ 'ի բժշկութիւն, պատուական սուրբ արեամբն իւրեանց:

Իշխանութիւն ունին 'ի հոգւոյն սրբոյ, առաջնորդել մեզ յերուսաղէմն վերին. 'ի քաղաք կենդանեաց 'ի մեծին սիոն:

Որք զառ 'ի քրիստոս զչարչարանս յանձն առեալ համբերեցիք ով աստուածասէր հայրապետք, եւ արժանի եղէք զերկնայինն առնուլ պսակն:

Որք փորձեցայք շիջանելոտ հրով. ժառանգեցիք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն. համարձակութիւն ունիք բարեխօսել առ տէր վասն անձանց մերոց:

Որք զամբարշտութեանցն վանեցիք զկռապաշտութիւն ով աստուածասէր հայրապետք. հաստատութիւն 'ի քրիստոսէ հայցեցէք անդադար սուրբ եկեղեցւոյ:

Ցնծութիւն է այսօր հրեշտակաց եւ մարդկան. զի զխրոխտացեալ զթշնամին վանեալ խորտակեցին սուրբ վկայքն. եւ եղեն յաղթօղք 'ի պատերազմի:

Մարմնով եւ արեամբ մարտեան ընդդէմ զինու. վիրաւորեալք 'ի մարմնի վիրաւորեցին 'ի մահ զբելիար, եւ առային պարծանս յաղթանակին:

Երանացեալք 'ի հօգեղէն զուարթնոց. եւ բարեբանեալք 'ի դասուց մարմնաւորաց սուրբ վկայքն. անեղին աջովն պսակեալ եղեն:

Յիշատակ է այսօր քաջ նահատակաց քրիստոսի սրբոց վկայիցն. եկայք ժողովուրդք ցնծութեամբ տօնեսցուք:

Քանզի տեւողք 'ի տանջանս եւ յաղթօղք 'ի մարտի եւ պսակեալք 'ի հօրէ. եկայք ժողո:

Որ 'ի հրեղէն զօրաց երկնից փառաբանիս աստուած, որով զերկնային անմարմնական աստուածային զշնորհս հեղեր յորդիս ադամայ. աղաչանօք սոցա ողորմեա մեզ աստուած: բղ / հրղ

Երեւելով հողեղինացս անհիւթականքն 'ի ձեւ մարմնոյ, որք եւ ծանուցին մարգարէիցն զխորհուրդ քո դալստեանդ բազմապատիկ տեսլեամբ օրինակելով. աղաչանօք սո:

Անճառելի տնօրէնութեանդ քո աւետաբերք առաքեցան գաբրիէլ եւ միքայէլ, անմարմնական դասուքն իւրեանց յերկրի սպասաւորելով. աղաչա:

Որ զյառաջագոյն ընտրեալսն առաքեցեր յաշխարհս սուրբ զմարգարէսն, աւետարանել զքո գա- գղ / մրգ

լուսոյ անթարգմանելի անօրէնութեամբ. սոքօք շնորհեա հաստատութիւն եկեղեցւոյ քում սրբոյ:

Որոց ետուր իշխանութիւն բացատրել զիջումն քո յաշխարհ, աստանօր կատարեցեր զմարգարէիցն ըղձեալութիւն. սոքօք շը:

Որ ըզմահ գերի առեալ մահուամբ ըզմահ կոխեցեր, արձակելով զերամբս մարգարէիցն յանդըստուեր քո հանգիստ. սոքօք շնորհեա հաստատութիւն եկե:

եշ տու Այսօր հաւատոյ աստղք փայլին հայր սուրբ ’ի քո սուրբ եկեղեցւոջ. մարգարէք փրկիչ տօնաւորս ողորմեա:

Բարեխօսութեամբ պետրոսի եւ պօղոսի քո սուրբ առաքելոցն, մարգարէք փրկ:

Լուսաւորեալք ’ի սոցա գիտութենէս փառաւորեմք սուրբ զերրորդութիւնդ. երկրպագանելիսոցն աղօթիւք տօնաւորս ողորմեա:

չոր եգն Որ հրաւիրեցեր զյառաջագոյն ընտրեալսն ’ի սկզբանէ աշխարհի ’ի հարսանիսն անմահականն, կոչելով յուրախութիւն ընդ բազմելոցն յառագաստին զաստուածազգեացն. աղաչանօք սոցա կեցո ըզմեզ փառաց թագաւոր:

Որ յաթոռս քերովբէականս վերանդստեալ հանգչէիր որդի աստուծոյ, համբերեցար խոնարհութեամբ բառնալ ’ի գիրկս յորդւոց ադամայ. աղա:

Որ ըզբաժակն անմահութեան սիրոյ քո արբեալ երանելին իգնատիոս, որպէս ցորեան աստուածային գազանաց մանրեալ ժանեօք հաց սուրբ գտաւ աստուծոյ. աղաչանօք սորա կեցո ըզմեզ փառաց թագաւոր:

Առաքելոյ աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ ’ի բարձանց, ’ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նստէին ’ի սուրբ վերնատանն: հոգ

Աննիւթական աղաւնի, անքննելի որ քննէ զխորս աստուծոյ. զոր առեալ ’ի հօրէ պատմէ զահաւոր եւ զմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյականն:

Օրհնութիւն ’ի բարձունս, երգողին ’ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն սրբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս ’ի յերկինս:

Փառք քեզ հայր, որ կենարար ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց. ընկալ զօրհնաբանող հոգիս յանմահական քո հանգիստ: հան

Մարգասէր հօր որդի, որ պատկերակից եղեր հողեղինացս եւ խաչեցար. ընկալ զօրհ:

Ամենազօր սուրբ հոգի, որ անդորրիչ ես նեղելոց եւ մխիթարիչ հոգւոց. ընկալ զօրհ:

Ծագումըն հրաշալի որ անյայտ էր ’ի մէնջ. եւ բանըն հայրական անըմբռնելի. հուր փայլակնացեալ եւ ’ի մարմնի բնակեցաւ անվընաս պահելով զարարածս ամենայն: ած

Ծագումըն հրաշագործ որ ’ի կուսէն ծագեցաւ, ճառագայթելով զարարածս ամենայն. երկինքըք ցընծային եւ երկիրս ուրախանայր.

Եւ քրիստոս աստուած ընդ մարդկան շրջեցաւ։

Առ քեզ ապաւինիմք ամենասրբուհի. գերազգոյն եւ հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային բանին։

խաչ Քրիստոս աստուած մեր շնորհեա մեզ ընդ պետրոսի եւ ընդ որդւոցըն զեբեդեայ արժանաւորիլ քում աստուածային տեսլեանդ։

Համբարձցես զմեզ տէր առաւել քան ըզգալի զթաբօրական ըզլեառն, յերկնաբերձ եւ յիմանալի խորանդ։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Վասն որոյ եւ մեք ըզքանկաելիս մեր յարմարեցուք քեզ հոգեւորական տաղաւար, որպէս միայնոյ մարդասիրի եւ փրկչի։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Լուսաւորեալք ՚ի յերկրի պայծառացեալք ՚ի յերկինս, եւ դասակցեալք ընդ հրեշտակս, եկայք ժողովուրդք ցընծութեամբ տօնեսցուք։

Օրհնութիւն՝ Վերջ ձայն:

օրհ / դկ Ի յիշատակս վկայից քոց քրիստոս պարգեւեա մեզ օրհնել ըզքեզ արժանապէս։

Կամաւ մատուցին զանձինս իւրեանց քեզ պատարագ արեամբըն իւրեանց, եւ այլըն ունին պըսակիլ ՚ի քէն տէր։

Սոցա աղօթիւք փըրկեա խնայեա ՚ի սուրբ եկեղեցի քո, զոր ըստացար պատուական արեամբըդ քո սրբոյ։

Այսօր յիշատակ սրբոց քոց. որք տանջանաց անօրինացըն համբերեցին. եւ դասակից եղեն վերին զուարթնոցն։

Այսօր եւ հրեշտակք ուրախանան ընդ կամաւոր չարչարանըս ճգնաւորացն, որք յաղթեցին անօրէն բռնաւորացն։

Սուրբ ես թագաւոր յաւիտենից, որ նըստիս ՚ի վերայ չորեքկերպեան կենդանեաց, եւ ՚ի սրբոց քոց փառաբանիս։

Փառք քեզ հայր երկնաւոր որ նըստիս ՚ի քրովբէս, եւ բարեբանիս ՚ի դասուց սերովբէից։

Ըզքեզ գովեմք թագաւոր փառաց քրիստոս, համաձայնեալ ընդ սուրբըս քո յեկեղեցիս արդարոց։

Սրբեա զանձինըս մեր եւ տաճարըս սուրբ երրորդութեանդ, կենդանարար սուրբ հոգի։

Պարծեցին սուրբքըն փառօք եւ ցընծասցեն ՚ի հանգիստս իւրեանց. քանզի ընդ հուր եւ ընդ սուր անցուցին զմարմինս իւրեանց։

Սուրբ զարիւնս իւրեանց հեղին չարչարանացըն համբերեցին. եւ զըսպառնալիս բռնաւորացն անարգեցին յաշխարհի։

Արդ եկայք հաւատացեալք կատարեսցուք ըզյիշատակ սոցա. քանզի սոքա են մեզ բարեխօս յարքայութեանն աստուծոյ։

Աջ տեառն ՚ի վերայ սրբոց իւրոց, եւ փառք իւր հանգուցեալ է յոսկերըս սոցա, եւ հոգիք

սոցամբ դասաւորեալ ընդ հրեշտակս 'ի յերկինս։

Բանակք հրեշտակաց տեառն շուրջ են զնոքօք. եւ երգակից են միմեանց յօրհնութիւնս աստուծոյ. եւ հայցեն միաբանն զխաղաղութիւն ամենայն աշխարհի։

բշ հրշ Այսօր ուրախացեալ սուրբ եկեղեցի քրիստոսի, տօնէ խնդութեամբ զտօն վերին երուսաղէմի. սրբասաց ձայնիւ փառաւորելով ընդ քրիստոս։

Այսօր համաձայնեալ որդիք սիովնի երկրայնոյ, տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին սիովնի. սրբասաց ձայնիւ փառաւորելով ընդ քրիստոս։

Այսօր դասք անմարմնոցն երգս առեալ պարեն ընդ մարդկան, զերգըս հնգեւորս յանմահ փեսային յառագաստ. սրբասաց ձայնիւ փառաւորելով ընդ քրիստոս։

գշ մրգ Այսօր ցնծայ զուարճացեալ եկեղեցի հեթանոսաց, տօնելով զյիշատակ մեծի նահապետին եւ հօրըն հաւատոյ աբրահամու. օրհնեցէք մանկունք սիովնի զհայրըն լուսոյ անլռելի։

Այսօր նոր իսրայէլ կոչեցեալ մարգարէիւքն առ աստուած, տօնեմ ցնծութեամբ ընդտօն հովուացն իսրայելին առաջնոյ. գովելով ըզգլուխ անկեան երկուց որմոց յարմարութեան։

Այսօր 'ի գլուխ լերանց տունն աստուծոյ հաստատեալ, որ եւ յաւէտ ռոգիս յանմահ հոգւոյն աստուածաբուղխ առատահոս անձրեւօք. բարեբանեմք զաղբիւրըն կենաց զարբուցանողըն ծարաւեաց։

եշ առ Այսօր երկնայնոցըն վայր իջեալ տօնեն ընդ հողեղէնս զյիշատակ սուրբ առաքելոցն քրիստոսի, որք դասեցին ըզմարդիկ ընդ հրեշտակս. փառաւորելով սուրբ զերրորդութիւնն համագոյ։

Այսօր պայծառ եղեալ վերնոցն որդիք նոր սիովնի 'ի յիշատակի լեզուացն հրեղինաց, որովք եղեն ըզգեցեալք ըզքրիստոս. փառաւոր։

Այսօր քահանայք եւ պաշտօնեայք սուրբ եկեղեցւոյ տօնախմբեն զյիշատակ լուսոյն ծագողացն, որովք մաքրեալք օծութեամբ սուրբ հոգւոյն. փառաւոր։

շաբ հայ Աստուածայինն հաւատոյ հարցըն սրբոց դաւանութեանն ծագեցաւ քեւ ընդհանուր լոյս յաստատնեայց սուրբ ուխտակէս. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։

Բանաւոր հօտին քրիստոսի ընտրեալ հովիւ քաջ, 'ի հօրէն լուսոյ բղխեալ շառաւիղ բարի տէր վրթանէս. անդա։

Գովեալդ 'ի վերայ հօրըն մեծի համանմանն, քաջութեամբ զանօրինաց խորտակեալ զպատկերն, տէր սուրբ յուսիկ. անդա։

Գոյակցեալ անմարմնոցն մաքուր կուսութեամբ, ճշմարիտ քահանայապետ վերայ քրիստոսի սուրբ գրիգորիս. անդա։

Երկնայնոցն 'ի յերկրի հաղորդ ճգնաւորութեամբ, յանդիմանելով զթագաւորըն կատարեցար վասն անուանըն տեառն սուրբ դանիէլ. անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։

հոգ Ի հայրաշարժ աղբերէն անհատահոսըրդ վտակ, կենդանարար սուրբ հոգի, օրհնեալ ես լոյս ճշմարիտ։

Այսօր 'ի սուրբ վերնատունն եկեալ աստուած ճշմարիտ, հրաշագործեաց զառաքեալսն 'ի լոյս փառաց քոց հոգի։

Հրճուանական խնդութեամբ աշակերտացըն լցեալ, փառաւորելով երգէին օրհնեալ ես լոյս գերազանց։

Որ 'ի հօրէ առաքեցար մարդասէր կարող փրկիչ. եւ ըզմեղուցեալ ըզմարդըն բժշկեցեր. ողորմեա տէր հրաժարելոյս. զոր հրաւիրեալ առ քեզ կոչեցեր։

Որ 'ի խաչին բեւեռեցար մարդասէր կարող փրկիչ. եւ ըզցօղ անապական արեանդ ցօղեցեր տիեզերաց. ողոր։

Որ ըզդըժոխս աւերեցեր եւ ըզգերեալսըն փրկեցեր. եւ զարգելեալսըն վերածեր 'ի լոյս կենացըն յաւիտենից. ողոր։

ած Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ մարիամ. որ օրհնեալդ ես 'ի կանանս. զքեզ օրհնեմք միշտ որ արժանիդ ես մեծացուցանեմք։

Անապական տաճար եւ առագաստ լուսոյ. որ 'ի քեզ փեսայացեալ բանըն կենաց բնակեցաւ. զքեզ օրհ։

Հուրըն կենդանի որ 'ի մորենին վառեցաւ, զոր անվնաս յարգանդի քում կրեցեր եւ ծնար աստուած եւ մարդ. զքեզ օրհ։

խաչ Խաչի քո քրիստոս երկրպագեն արարածք ամենայն, որ 'ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սա եղիցի մեզ պահապան յաղթող, ապրեցուցանել ըզմեզ 'ի պատրանաց բանսարկուին։

Ի սմա բարձրացար բարձող անիծից, որ փառաւորեալդ ես ընդ հօր. ժողովել ըզհեռացեալսըն կենսաբեր փայտիւն. ապրե։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա սպասէին արգելեալքն 'ի մեղասէր բանտին. որ ազատեաց ըզմեզ 'ի պատրանաց բանսարկուին։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Բազում համարձակութիւն է առ տէր բարեխօսութեամբ սոցա, եւ թողութիւն է մեղաց, որք կատարեն ըզյիշատակս սոցա։



# ԿԱՆՈՆ

## ՀԱՐՑԻՑՆ՝ ՀԱՄՕՐԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

Հարց. Առաջին ձայն:

Ը՛ԶՔԵԶ արդար եւ ուղիղ դատաւոր 'ի մէջ սրբոց քոց բարեբանիս. հարցըն մերոց աստուած օրհնեալ ես յաւիտեան։ հրց ած

Ըզքեզ որ 'ի հնոցն իջեր ապաւէն, խոնարհեալ 'ի գունդըս մարտիրոսաց զովիս. հար։

Ըզքեզ որ ահաւոր թագաւոր յաւիտենից, այսօր ընդ դասս վըկայից քոց բարեբանեմք. հար։

Ըզտէր օրհնեցէք, բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Անբաւելըն երկնից եւ հրեղինաց,

'ի հողեղինացս հաճեցաւ բնակել
իւր զինաւորս. բարձր։
Ուստի եւ մեք հաւատացեալքս
քրիստոսի ատեան, ընդ նոսին
խնդրելով ըզթողութիւն մեղաց
մերոց. բարձր։
մեծ Յանձառ փառաց խոնարհեցար
'ի մեր բնութիւնս, բանդ ան-
տըւած եւ մարմնացար 'ի սրբոյ
կուսէն։
Եւ ծնար 'ի սուրբ կուսէ անա-
պական մարմնով. ըզքեզ անդա-
դար բարեբանեալ մեծացուցա-
նեմք։
Այսօր զեկեալդ 'ի փրկութիւն
ազգի մարդկան, միաբանութեամբ
ամենեքեան մեծացուցանեմք։
ողոր Ժողովեալքս 'ի յիշատակ սըր-
բոց քոց քրիստոս, աղաչեմք ըզ-
քեզ, սոցա բարեխօսութեամբ ո-
ղորմեա։
Երկրպագեմք առաջի բեմի քո
քրիստոս. ընկալ քո գըթու-
թեամբդ զաղաչանըս մեր. սոցա
բարեխօ։
Զորս հոգւով եւ մարմնով որպէս
զանմարմինն անարատ 'ի գա-
լուստ քո պահեցես մարդասէր
փրկիչ. սոցա բա։
տէր Ժողովեալքս 'ի յիշատակ սըր-
բոց մարտիրոսացըն միաբանու-
թեամբ երգելով. օրհնութիւն 'ի
բարձունս երկնաւոր թագաւորիդ։
Քանզի հեղմամբ արեան սոցա
պատուեցաւ թըշնամին, եւ մեծա-
րեալ պարծի սոքիւ երգելով. օրհ։
Դասակցելոցն ընդ զօրըս վերին
զուարթնոցն յիշատակաւ բերկ-
րեալ, 'ի սրբութիւն սոցա եր-
գեսցուք. օրհ։

Որք ըզհանդէս նահատակու- տէր
թեան սոր բըռնաւորացըն ցուցին,
եւ յաղթեցին հաւատով երրեակ
լուսոյն եղեն մեզ առիթ. աղաչա-
նօք սոցա կեցո ըզմեզ։
Որք ըզխաւար կռապաշտութեան-
ցըն վանեալ հերքեցին, եւ կանգ-
նեցին մեզ նըշան յաղթող ընդ-
դէմ թըշնամւոյն. աղա։
Եւ հրաշափառ ճըգնութեամբ պա-
տերազմեալք 'ի յերկրի, վերհամ-
բարձեալք երկնայնոց դասուցն ե-
ղեն երդակիցք. աղա։
Որք զանձինս իւրեանց քեզ տէր
հայր ընծայեցին, եւ որդւոյ քում
քրիստոսի եղեն խաչակիցք. աղաչա-
նօք սոցա կեցո ըզմեզ։
Որք ըզմարմինս իւրեանց քեզ
տաճար մաքրեցին. եւ հոգւոյդ
սրբոյ եղեն օթեվան. աղա։
Որք ըզկեանս իւրեանց քեզ փո-
խանակեցին, եւ երկնից արքայու-
թեանդ եղեն ժառանգորդք. աղա-
չանօք սոցա կեցո ըզմեզ։
Պատուական վըկայից զինուո- տէր
րութեանցըն դասքն համաձայնեալք
ընդ երկնային զօրսն երգեն ասելով.
սուրբ ես տէր զօրութեանց բընա-
կեալդ 'ի լոյս։
Կարծրագոյն տանջանօք լուծին ըզ-
կապ մարմնոյ. եւ բացորձակ փայլ-
մամբ հոգւովն երգեն ասելով.
սուրբ ես տէր զօ։
Համաձայնեալք ընդ նոսին արժա-
նաւոր սիրով, 'ի տաճարի ճըգնա-
ւորացն երգեմք ասելով. սուրբ ես
տէր զօ։
Առաքինասէր վարուք հաճոյա- տէր
ցան սուրբ վըկայքն. եւ ընտրեցան
կամաւոր մահուամբն իւրեանց, եւ

հրաւիրեցան 'ի կոչումն արքայու-
թեանն երկնից։

Որք մաքրեցին զանձինս իւրեանց 'ի փորձ որդ եւ հրոյ. եւ հեղմամբ արեանն իւրեանց եղեն վկայք քրիստոսի. եւ հրաւի։

Աղօթիւք սոցա եւ բարեխօսու-թեամբ, պարգեւեա մեզ քրիստոս մասն եւ բաժին ընդ հրաւիրելոցն 'ի կոչումն արքայութեան երկնից։

ձկ Զինուորքն քրիստոսի 'ի հօրէ առեալ պարգեւս, յաստուածա-տունկ 'ի դրախտէն ծաղկեցաւ մեզ շնորհել. որ է զէն յուսոյ վա-հան հաւատոյ։

Խաչ երանելի վկային քրիստոսի զօրանայր 'ի սուրբ հոգւոյն. զի զերանութեանցն առնոյր ըղձնորս ողորմութեան. որ է զէն յու։

Առ արանջիք ըղձիշատակ սրբոյն արդար զօրավարին. որ է դուռն երկնից եւ ճանապարհ արքայու-թեան. եւ մեզ զէն յու։

ձկ Ողջերգնութիւն սրբոց քոց քրիստոս տօնելով այսօր ընդ զօրս անմարմնոցն, քեզ երգեմք անլռելի զօրհնաբանութիւն։

Մերկացեալք ըզմարդկային տը-կարութեան ըզգեստ, հաւատոյ վառեալ ըզգեստուք. յաղթեցէ-ք հակառակամարտիցն 'ի պա-տերազմի։

Մըկըրտեալք ընդ քրիստոսի հեղ-մամբ արեանն 'ի մահ, աստուածու-թեանքն զոլով հրաշակերտք, շնոր-հեցայք 'ի վայելչութիւն սուրբ արքայութեանն.

ճչ Պարծեցին սուրբքն այսօր եւ ցնծացեն յաւիտենականն 'ի վաստակս իւրեանց յանուր գա-լըստեան փրկչին. յորժամ գայ փառօք հօր փառաւոր ըլինել 'ի մէջ սրբոց իւրոց։

Սիրէ տէր զերկիւղածս իւր եւ պահէ ըզնոսա, եւ բնակէ 'ի հեզս եւ 'ի խոնարհս 'ի գաւըստեանն իւրոյ. յոր։

Փոխանակ ճըգնութեան համբե-րողաց մատուցանէ իւրաքանչիւր զանթառամ պսակն. փայլեն որ-պէս զարեգակն. յոր։



Ցընծացեալ բերկրի սուրբ վե-րին երուսաղէմ. ժողովարան միա-բանութեամբ ընդունել յարկսն յաւիտենից. յոր։

Ուրախ լեր հանապազ սուրբ ե-կեղեցի, եւ ցընծա 'ի փառս եւ 'ի պատիւ փեսայացեալ բանին. յոր։

Ընդ վերին զօրսն դասակցեալ եւ ըզգեցեալ ըզլոյս, եւ զանմա-հութեան լուեալ ըզձայն կենա-րարին, ասելով, եկայք օրհնեալք 'ի հօրէ, ժառանգեցէք զանպա-տում ըզկեանսն։

Սուրբ ես տէր զօրութեանց որ բնակեալդ ես 'ի յերկինս, եւ բա-րեբանիս 'ի սրբոց քոց։ հմք կեր մոխ

Երկնային զօրութիւնք սերովբէք եւ քերովբէք, անդադար օրհնեն սուրբ զանունդ քո։

Քահանայք ընդ նոսին պաշտօ-նեայք եւ ժողովուրդք երկրպա-գեսցուք տէրութեանդ քո։

Լոյս որ յառաջ քան զյաւի-տեանս 'ի հօրէ առաքեցար, եւ ըստամբ խոնարհեալ լուցեր զարա-րածս. օրհնեալ ես թագաւոր յա-ւիտենից։

Որ ըզլոյսն 'ի սկզբանէ հաստա-տեցեր վերնոյն, եւ զխաւարն

անգիտութեան յարութեամբդ քո հալածեցեր. օրհ։

Ուստի եւ մեք լուսաւորեալքս ընդ լուսեղէն զուարթնոցն երգեսցուք ցնծութեամբ 'ի յարութեան երեկոյիս. օրհ։

Հարց. Առաջին կողմ:

Հրց ակ Սուրբ աստուած արարիչ յաւիտենից, որ նստիս 'ի քերովբէս խնայեա յարարածս քո. աստուած հարցն մերոց։

Սուրբ աստուած թագաւորդ մեր քրիստոս. որ իջեր 'ի հօրէ եւ մարմնացար 'ի սրբոյ կուսէն. աստուած հայր։

Սուրբ աստուած որ աղբիւրդ ես անըսպառ. լցուցեր ըզմարգարէսն եւ զառաքեալսն աւետարանել ըզքեզ. աստուած հայր։

գ Հայր անսկիզբն որ խնամես զքո զարարածս. գործք քո ըզքեզ օրհնեն եւ առաւել բարձրացուցանեն զանհաս անուն քո սուրբ։

Որդիդ միածին էակից հօր եւ հոգւոյ. գործք։

Հոգիդ ճշմարիտ փառակից հօր եւ որդւոյ. գործք։

մեծ Ուրախ լեր աստուածածին, տաճար անխախտելի. զքեզ մեծացուցանեմք։

Յղացար անսերմանաբար, եւ զաստուած փայլակնապէս ծնար. ուրախ լեր աստուածածին. տա։

Երգէ մարգարէն, սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ, եւ դրունք երկնային. ուրախ։

Խնդրեմք 'ի քէն բարերար, ողորմեա անձանց մերոց։ ողբ

Վասն սրբոց քոց մարտիրոսաց, տէր ընկալ զաղաչանս մեր.

Որ գթածդ ես յամենայնի, տէր կեցո զանձինս մեր։

Սուրբ ես տէր զօրութեանց բնակեալդ 'ի լոյս յանմատոյց. ճգնութեամբ սրբոց քոց լուր տէր եւ ողորմեա։

Յամենայն ժամ օրհնեմք ըզքեզ, որ մարդասէրդ ես կեցո ըզմեզ։ տէր

Յօրհնութիւն 'ի նոր օրհնեսցուք ըզտէր. զի նա է փառաւորեալ յամենայն սրբոց իւրոց։

Օրհնեալ է այն որ արժանի արար ըզմեզ հասանել 'ի մասն ժառանգութեան սրբոցն 'ի լոյս։

Որ բարձրեալդ ես եւ 'ի սուրբս հանգուցեալ. ըզքեզ բարեբանեմք աստուած հարցն մերոց։ Հրց

Որ ըզսիրելիս քո զերիս մանկունսն անապականս պահեցեր 'ի հրոյն. ըզքեզ բարեբանեմք աստուած հարցն մերոց։

Որ ցուցեր ըզզօրութիւն աստուածութեանդ քո չար եւ անօրէն թագաւորին. ըզքեզ բա։

Ըզտէր օրհնեցէք, եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որք մատնեցին զանձինս իւրեանց տանջանաց, եւ դասակից եղեն վերին զուարթնոցն. ընդ նոսին ըզտէր օրհնեցէք եւ բարձր ա։

Ընդ կամաւոր չարչարանս սրբոց վկայիցն քահանայք եւ ժողովուրդք բարեբանեցէք զանմահ թագաւորն ըզքրիստոս, եւ բարձր ա։

մեծ Անարատ տաճար բնակարան անբաւ բանին աստուծոյ, մարիամ սուրբ կոյս, զքեզ եւ ըզծընեալն ի քէն մեծացուցանեմք։

Յարգանդի կրեցեր որ յառաջ քան զյաւիտեանս ի հօրէ ըզբանն, եւ ծընար մարմնով. զքեզ։

Արդ խնդրեմք ի քէն անդադար բարեխօսել վասն անձանց մերոց, առ որդին քո միածին, փրկել ըզմեզ ի փորձութենէ եւ յամենայն վտանգից մերոց։

ողբ Ըզյիշատակ սրբոց մարտիրոսացն այսօր տօնէ եկեղեցի հռչակելով ըզճգնութիւն սոցա հայր երկնաւոր. աղօթիւք սոցա ողորմեա։

Հրաշազարդ եւ պայծառ առաքինութեամբ քարոզեցին ըզքեզ տիեզերաց. քանզի իջեր ի հօրէ եւ մարմնացար ի սրբոյ կուսէն որդիդ միածին. աղօ։

Անուշահոտ բուրմամբդ քո լըցին ըզտիեզերս կենսաբեր աւետեօք. եւ ընդ վերին դասակարգութիւնսն համաձայնեալ բարեբանեն ըզքեզ հոգիդ ճշմարիտ. աղօ։

տէր Զօրութիւնք երկնայինք եւ անմարմնոց զինուորութիւնք օրհնեն ըզքեզ անլռելով. սուրբ աստուած։

Եկեղեցիք արդարոց եւ ժողովք մարտիրոսաց, գովեն ըզքեզ անլռելով. սուրբ աստուած։

Ազգ մարդկան կենդանեաց սաղմոսիւք եւ օրհնութեամբ աղաղակեն անլռելով. սուրբ աստուած։։

տէր Ճըգնաւորըք քրիստոսի հեղմամբ արեան ձերոյ զկռապաշտութիւն բարձիք յաշխարհէ. եւ ի ճանապարհս արդարութեան դարձուցիք ըզմոլորեալս։

Ճշմարտութեան քարոզք եւ լուսաւորիչք տիեզերաց էք պարծանք եկեղեցւոյ. եւ յոյս հաւատացելոց։

Համբերութեամբ ձերով ընկալայք ի քրիստոսէ ըզպսակս անապական. եւ դասաւորեցայք ի յերկինս ընդ անմարմնոցն դասս։

Յաղթող նահատակքն քրիստոսի որք քաջութեամբ մարտեան ընդ թշնամւոյն, եւ ըզբռնութիւն լուծին ըզտանջանաց. զի զանտանելի ըզվէրսն ի յանձն առին։ տէր

Լոյս փառաց փարէր ըզնոքօք, եւ հրեշտակք ի յերկինս ուրախանան. զի կարապետք եղեն տիեզերաց, եւ լուսաւորիչք մեղաւորաց։

Դասք անմարմնոցն աղաղակեն եւ ասեն, փութացարուք ըզհետ կոչմանըն քրիստոսի, եւ խնկաւորեցայք վայելեցէք յաւիտենից ի յարքայութիւնն։

Պարծանըք հաւատոյ սուրբ ճգնաւորաց. որք ըզմարմինս խուրեանց ի վերայ քո պատարագեցին, եւ հեղմամբ արեանն իւրեանց նորոգեցին զաշխարհս։ տէր

Դասաւորեալք ընդ անմարմնոց բազմութիւնսըն փայլին որպէս զարեգակն ի մէջ աստեղաց. զի զհոգիս մարդկան լուսաւորեցին աւազանին լուսով։

Արդ եկայք ժողովուրդք աստուծոյ եւ հաւատացեալք քրիստոսի. ի ձեռըն սրբոց մարտիրոսացն աւաքեսցուք գոհութեամբ փառք ի բարձունս աստուծոյ։

Ճըգնաւորք քրիստոսի մոլորեցելոց առաջնորդք։ ձնկ

Անգեղ կենաց էք յաշխարհի, հեղմամբ սուրբ արեան ձերով։
Եւ որք կատարեն ըզյիշատակըս ձեր, արբցեն յաղբերէն կենաց։

ճչւ Ի տաճարի հանգըստեան սըրբոց վերնոյն զաղաչանըս մեր մի անտես առներ որ կարդամք առ քեզ տէր. սոցա բարեխօսութեամբ կեցո ըզմեզ։

Որք վասն անուանդ քո հեղին ըզպատուական սուրբ զարիւնս իւրեանց. արիաբար մարտեան ընդդէմ թըշնամւոյն եւ զօրացան ի պատերազմի. սոցա բա։

Պարծեցին սուրբքըս քո տէր ի հանգիստ իւրեանց, որք տանջանաց անօրինացըն համբերեցին, եւ անթառամ պըսակացն արժանի եղեն. սոցա բա։

Հարց՝ Երկրորդ ձայն:

հրց բձ Անոխակալ եւ բարեգութ, մի ցրեր զնախտըս քո. մի մերժեր ըզմեզ յողորմութենէ քումմէ. տէր աստուած հարցըն մերոց։

Նախաստեղծին այցող փըրկիչ, փըրկեա զմեզ յարժանահաս նեղչաց մերոց, վասն ընտրելոց քոց սըրբոց. տէր աստուած հար։

Առաւել փառաւորեալ ի տաճարի սըրբոց քոց վերնոյն. մի անտես առներ զապաւինեալքս ի քեզ. տէր աստուած հար։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Ընդ ապրեցելոցն ի հնոցին երգակցելով գոչեսցուք. օրհնեցէք ամենայն գործք տեառն ըզտէր. եւ բարձր արա։

Ի վկայարանըս սրբոց քոց ընծայացուք ասելով, արժանաւորեա եւ ըզմեզ հասանել քրիստոս մասին ժառանգութեան սըրբոցն ի լոյս. եւ առաւել բարձրացի անուն քո ամենայն յաւիտեան։

Սուրբ եւ աստուածածին միածին ցանկալի կուսից եւ պարծանք ազգի մարդկան, մայր եւ աղախին մեծացուցանեմք։ մեծ

Անկէզ մորենի եւ տաճար ընդհանուր լուսոյն, անապատ եւ անխախտելի կուսութիւն. մայր եւ։

Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան, եւ անանդամ հրափայլ ծագմամբ. մայր եւ։

Հեղմամբ արեան սըրբոց վըկայիցն հաշտեաց ընդ մեզ քրիստոս, եւ փըրկեա յամենայն փորձութենէ։ ողբ

Որք նահատակեցան վասըն քո ի մահ. վերաւորեալքըս յաղթեցին թըշնամւոյն. սոցին աղաչանօք հաշտեաց ընդ մեզ։

Որք միացան ի սէր ահաւոր քո տէրութեանդ. եւ մատուցին զանձինս իւրեանց պատարագ քեզ եւ զենումն. սոցին աղա։

Օրհնեն ըզքեզ աստուած զօրք ամենայն հրեշտակաց. արդարոց անձինք եւ հոգիք ամենայն սըրբոց։ տէր

Գովեն ըզքեզ քրիստոս մարտիրոսացըն ժողովք. դասք մարգարէից եւ գունդք ամենայն սըրբոց։

Բարեբանեն ըզքեզ սուրբ հոգի որ միայնդ ես հըզօր, եւ պահես զօրացեալ զյուսացեալս ի քեզ։

Ընդ սուրբըս քո բարեբանեմք ըզքեզ քրիստոս, աստուած հարցըն մերոց։ հրց

Որք խաչակից քեզ գոլով յօժարութեամբ յանձն առին ըզդըժընդակ տանջանս. ընդ նոսին օրհնեմք ըզքեզ քրիստոս, աստուած հարցն մերոց:

Որք մեռան ընդ քեզ եւ կենդանացան, եւ թագաւորեալքն վայելեսցեն 'ի քո փառս, ընդ նոսին կենագործեա ըզմեզ քրիստոս աստուած հարցն մերոց:

Գ Ըզգոյշ օրհնեցէք գովեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան:

՝Որ սրբոցն է բնակարան եւ 'ի սուրբս հանգուցեալ. օրհ:

՝Որ նստի ընդ աջմէ հօր եւ բարբառնի 'ի դասուց մարտիրոսաց. ամենեքեան միաբան օրհ:

Մծ Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարբառնեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն աստուած աստուածոց եւ տէր տերանց փըրկիչ գոլով:

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ 'ի սուրբ կուսէն եւ անարատ ծընանիլ յորովայնէ անապական, բառնալով ըզմեր նեղութիւնս. աստուած աս:

Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տըղայ եղեւ յորդեգրութիւն կենաց կոչէ. աստուած աստուածոց եւ տէր տէ:

Ողր Աղբիւր կենաց աստուած եւ բըղխումն ողորմութեան. խընդրեմք 'ի քէն ըզթողութիւն մեղաց. որ միայնդ ես մարդասէր:

Փափագանօք մերձենամք առ սուրբս քո. հաշտեաց ընդ մեզ զհայրն բարեխօսութեամբ. որ միայնդ:

Որ ապաւէնդ ես կենաց եւ փըրկութեան մերոյ. խաղաղացո ըզեկեղեցիս մեր երկնային քո խաղաղութեամբդ. որ միայնդ ես մարդասէր:

Տօն ձըգնաւորացն այսօր. եկայք հաւատացեալք օրհնեցէք զաստուած յիշատակի սուրբ վըկայիցն: Տէր

Որք ըզմահս բուրեանց կանգնեցին յերկրի աշտարակ հըզօր, յոր ապաւինեալքս ամենեքեան եկայք հաւատացեալք օրհ:

Հեղումն արեան սոցա մաքրեաց ըզտիեզերս յանօրէն կռապաշտութեանց, եւ խառնեաց ըզմարդիկ ընդ երկնային զօրութիւնս. եկայք հաւատացեալք օրհնեցէք զաստուած ըզբնակեալն 'ի մէջ սըրբոց:

Որ օրհնիս յանմարմնական զինուորութեանց վերագոչեմք առ քեզ տէր. աղօթիւք սրբոց մարտիրոսաց խնայեա 'ի ժողովուրդս քո միայն մարդասէր: Տէր

Զորս ընտրեցեր յամենայն ազգաց երկրէ լուսաւորել զոգիս մարդկան. աղօթիւք սրբոց մար:

Որ գաս հայրական իշխանութեամբ պըսակել ըզսուրբս քո. աղօթիւք սրբոց մարտիրոսաց փըրկեա ըզմեզ 'ի հրոյն յաւիտենից միայն մարդասէր:

Զքեզ տէր օրհնեն դասք սըրբոց մարտիրոսաց, քաղցր ձայնիւ հընչմամբ քեզ երգեն. փառք քեզ փառք քեզ աստուած: Տէր

Որք քաջութեամբ համբերեցին բըռնաւորացն ըսպառնալեաց, եւ ընդ անմարմնոցն դասակցեալ քեզ երգեն. փա:

Այսօր ցնծայ վերինն երուսաղէմ ընդունելով զկոյսն յարկսն լուսեղէն. ուրախանան եւ հրեշտակք առնելով. փառք քեզ փառք քեզ աստուած:

Յկ Փառաւորեալդ փառօք Երրորդութիւն սուրբ, փառաց արժանի արար զծնօղն աստուածածին երկնային քո ժառանգութեանդ:

Արեամբ նահատակացն բերկրեալ, այսօր բարեխօսութեամբ փառաց արժանի արար զծնօղ:

Ի սրբութեան քում բարեբանեմք զքեզ. աղաչանօք սուրբ աստուածածնին, փառաց արժանի արար զծնօղ:

Ճշւ Ուրախանան հրեշտակք ՚ի յերկինս ընդ չարչարանս Ճգնաւորացն, եւ հրաշանան առաքեալք ընդ յաղթութիւնս սրբոցն:

Մեծացեալս պատերազմեալք զառաքինութեան ընդհանրես, պսակեցան ՚ի քրիստոսէ ընդ վերին զուարթունսն:

Ցնծայ կաթուղիկէ, զուարճանան հաւատացեալք. աղաղակեն առնելով. փառք քեզ աստուած:

---

Հարց՝ Աւագ կողմ:

Հրց Բկ Օրհնեմք զքեզ տէր անսկզբն հայր. աստուած հարցն մերոց:

Գովեմք զքեզ տէր միածին որդի. աստ:

Բարեբանեմք զքեզ տէր Ճշմարիտ սուրբ հոգի. աստ:

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան

Զոր փառաբանեն զօրք երկնաւորաց զուարթնոցն. բարձր:

Որում երկրպագեն դասք հրեղէնից սրբոց վերինիցն. բար:

Զքեզ աստուածածին որ վերօրհնիս ՚ի զօրաց հրեշտակաց, ազգ մարդկան կենդանեաց մեծացուցանեմք: Մեծ

Զքեզ բնակ հրեղէն աստուածութեանն յիմանալի զօրացն երանեմք, ազգ մարդ:

Զքեզ մայր էմմանուէլի, մարգարէին յառաջ գուշակեալ, ազգ մարդ:

Եկեալ եմք ՚ի տեղի վկայիցն. եւ աղաչեմք զքեզ աստուած ողորմեա: Ողր

Զաղաչանս մեր մի անտես առնէր բարեխօսութեամբ սրբոց քոց, եւ ո:

Փրկեա զմեզ յարենէ եւ ՚ի նեղչաց մերոց, բարե:

Տնօրհնեա մեզ քրիստոս թագաւոր, կատարել ՚ի հանգիստ զյիշատակ սրբոցն եւ օրհնել զանուն քո սուրբ: Տէր

Որք հեղման քո սուրբ արեան եւ չարչարանաց քոց եղեն հաղորդք սուրբ վկայքն, եւ լուսաւորիչք աշխարհի:

Սրբօք միշտ աղաչեմք եւ փառաւորեմք անդադար երգով օրհնութեամբ, սուրբ զերրորդութիւնդ համագոյ:

Որք ՚ի մարտի անօրինացն յաղթեցին արիաբար թշնամւոյն. աղաչանօք սոցա կեցո զմեզ փրկիչ, աստուած հարցն մերոց: Հրց

Որք վասն քո զկեանս իւրեանց փոխանակեցին սոսկապէս համ-

բերելով. աղաչանօք սոցա կեցո ըզմեզ փրկիչ, ամ։

Ուստի եւ մեք հաւատացեալքս ժողովեալք 'ի յիշատակ սրբոցն հայցեմք. ողոմ։

դ Ըզուարթ օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնոսա յաւիտեան։

Ընդ երկնային զինուորութեանն ըզթագաւորսն քրիստոս գովելով օրհնեցէք եւ բարձր արա։

Ընդ դասս երանելի վկայիցն ըզպսակիչն սրբոց բարեբանելով օրհնեցէք եւ։

մեծ Մայր լուսոյն մարիամ անհարսնացեալ օրհնեալդ 'ի կանայս։

Զլոյսն անճառաբեր յարգանդի կրեցեր, օրհ։

Մի դադարիր վասըն մեր բարեխօսել օրհ։

ողր Որք զանձինս իւրեանց ընծայեցին քեզ քրիստոս հաղորդելով քո չարչարանացդ. բարեխօսութեամբ սոցա ողորմեա մեզ աստուած։

Որք մեծապէս կանգնեցին ըզսիւն հաւատոյ. եւ հեղմամբ արեանն իւրեանց նորոգեցին զաշխարհս. բարե։

Որք տենչացան ըզհետ երանաւէտ ձայնին, եւ յաւիտենից կենացն արժանաւորք եղեն. բարեխօսութեամբ սոցա ողորմեա մեզ աստուած։

տէր Միաբան ամենեքեան զաստուածն աստուծոյ օրհնեցէք ձայնիւ սրբասացութեամբ ըզպսակիչն սրբոց։

Զթագաւորըն փառաց քրիստոս զէակից հօր եւ հոգւոյ գովեցէք ձայնիւ սրբ։

Զբաշխողըն պարգեւաց սուրբ զհոգին ճշմարտութեան բարեբանեցէք ձայնիւ սրբ։

Այսօր տօնեմք զտօն սրբոց վկայիցն, որք արեամբ նահատակեալք փոխեցան 'ի զօրս վերին զուարթնոցն։ տէր

Արիաբար մարտեան ընդդէմ խորխտ թագաւորաց. զյաղթողական ընկալեալ ըզպսակ. փոխեցան 'ի։

Եղեն օթեվանք սուրբ երրորդութեանն. զանճառական ընկալեալ ըզկեանս. եւ բարեխօսեն առ տէր վասն անձանց մերոց։

Ով երանեալ սուրբ վկայք, որք արժանի եղէք մարմնով եւ արեամբ դասակից լինել զուարթնոց երկնից։ տէր

Քաղաքավարեալք 'ի մարմնի եւ հետեւողք որդւոյն աստուծոյ. մարմնով եւ ար։

Լուսաւորեալք 'ի հօրէ պայծառացեալք 'ի հոգւոյն սրբոյ. բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց։

Յիշեա զմեզ աստուած փրկիչ մեր. յորժամ գաս թագաւորութեամբդ քո կեցո ըզմեզ, բարեխօսութեամբ սրբոց քոց։ տէր

Շնորհեա մեզ թողութիւն երկնաւոր թագաւոր. ընկալ զաղաչանս մեր կեցո ըզմեզ, բարե։

Յօրհնութիւն 'ի նոր օրհնեցուք ըզքեզ քրիստոս թագաւոր. որ վասըն մեր մարմնացար կեցո ըզմեզ, բարեխօսութեամբ սրբոց քոց։

Զհայր եւ զորդի եւ ըզսուրբ զհոգին. փառաւորեմք ասելով. երեքսրբեան տէրութիւն կեցո ըզմեզ. բարեխօսութեամբ սրբոց քոց։

Յւկ Ի փառս պարծեցին մանկունք սիրեցեալք 'ի տեառնէ, որք արժանի եղեն առնուլ զհայրական ըզպըսակն։

Որք ըզտանջանս եւ ըզմահ վասն անուան տեառըն յանձն առին, եւ արժանի եղեն առնուլ զհայրական ըզպըսակ։

Եւ զօրութեամբ սուրբ հոգւոյն եղեն յաղթողք 'ի պատերազմի. եւ արժանի եղեն առնուլ 'ի հօրէ ըզպըսակն։

Ճշւ Հրաշափառ ծննդութեամբ պատերազմեալք ընդդէմ թշնամւոյն, եւ արիաբար վառեալք զինու սուրբ հոգւոյն յաղթեցիք անօրինացն ով սուրբ վկայք. ըզձեզ ունիմք բարեխօս առ տէր վասն անձանց մերոց։

Անտանելի չարչարանացն եղէք վկայք ճշմարտութեան. եւ խաչակիցք եղէք որդւոյն միածնի, ընդունելի մահու արբիք ուրախութեամբ. ով։

Յաղթական համբերութեամբ կատարեցիք զընթացս ձեր, եւ փոխեցայք յերկրայնոցս 'ի յերկինս, ընկալայք 'ի քրիստոսէ ըզպըսակս անթառամս. ով սուրբ վկայք. ըզձեզ ունիմք բարեխօս։

Արդ եկայք հաւատացեալք կատարեսցուք ըզյիշատակ սրբոց վկայիցն. զի 'ի ձեռն սոցա բացցի մեզ դուռն ողորմութեան, ունելով միշտ բարեխօս առ տէր վասն անձանց մերոց։

Հմբ Որ պսակիչդ ես ամենայն մարտիրոսաց. եւ յաղթող պահեցեր ըզյուսացեալսն 'ի քեզ քրիստոս փառաց թագաւոր. բարեխօսութեամբ սրբոց մարտիրոսաց պարգեւեա զխաղաղութիւն երկրպագուացս ամենասուրբ երրորդութեանդ։

Որք մատնեցին զանձինս իւրեանց տանջանաց եւ մահու. եւ հեղմամբ արեանն իւրեանց եղեն վկայք քո կամաւոր մահուանն. բարեխօսութեամբ սրբոց մարտիրոսաց պարգեւեա զխաղաղութիւն երկրպագուացս ամենասուրբ երրորդութեանդ։

Որք ըզխաւար կռապաշտութեանցն վանեցին յաշխարհէ. եւ ընթացիւք կործանեցին ըզբելիար պատերազմեալք 'ի հանդիսի. բարե։

Հարց՝ Երրորդ ձայն:

Որք ըզտանջանս յանօրինաց վասն քո յանձն առին այսօր սուրբ վկայքն. ըզծնընդութիւնս սոցա բարեխօս քեզ ունիմք. կեցո զմեզ տէր աստուած հարցըն մերոց։ Հրց գձ

Որք եւ ըզմահըս դըժընդակըս բերելով արիաբար հանդիսացեալք 'ի մարտի. ըզծնըդ։

Ի տաճարի ծնընդաւորաց հանդըստեան քաղցրաձայն հընչմամբ երգելով. ըզծնըդ։

Ըզտէր օրհնեցէք, բարձր արարէք քաղցրաձայն հընչմամբ զաստուած յաւիտեան։ գ

Զյաղթանակ մարտ վկայիցն պատուելով այսօր ընդ զօրս անմարմնոցն, աւետեաւ բարեբանելով քեզ։

Քահանայք եւ պաշտօնեայք տօնելով այսօր ըզմեծ սոցա ըզծնընդնութիւնս. աւետեաւ բարե։

մեծ Աստուածածին երկնային դրուըն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ:

Ի քերովբէս բազմեալ ընդ հօր անապականաբար բնակիլ հաճեցար 'ի քում յորովայնի. ուրախ:

Որ բոցեղէն սրովբէիւք շուրջանակեալ պահիւր, այսօր 'ի մէջ մարդկան 'ի գիրկս հողեղինի յայտնեալ, ուրախ:

ողր Որք 'ի մարմնի զանմարմնականացըն բերելով սրութիւն հաւատոյ. պատերազմեցան ընդդէմ թըշնամւոյն քո ճըշմարիտ վըկայքն. բարեխօսութեամբ սոցա քրիստոս ողորմեա մեզ:

Որք զըսպառնալիս բռնաւորաց մահուամբ սրոյ եւ հրոյ համբերութեամբ յանձն առին. յաղթեցին առաքինաբար քո ճըշմարիտ վըկայքն. բարե:

Որք 'ի զօրաց երկրաւորաց զինաւորեալ քեզ երկնաւոր թագաւորիդ. դասակարգեցան ընդ հրեշտակս 'ի յերկինս քո ճըշմարիտ վըկայքն. բարե:

տէր Զարիական մահ սըրբոց քոց քրիստոս ընդ երկնային զօրսն այսօր երգակցեալ տօնեմք. որք հանդիսացան ընդդէմ բռնութեան թըշնամւոյն:

Անմարմինք 'ի մարմնի ցուցան գեր 'ի վերոյ սրոյ եւ հրոյ տանջանաց. զպատուական մահս իւրեանց ընծայեցին քեզ քրիստոս բանաւոր զենմունք:

Նահատակեալքդ ճըգնութեամբ 'ի փորձ զանազան տանջանաց, համբերութեամբ վանեալ ըզթըշնամւոյն պատերազմ, փոխեցան 'ի զօրս վերին զուարթնոցն:

Որ զանչափ քո զբարերարութիւնըդ շնորհեցեր քո արարածոց բարեգութ աստուած. զքեզ բարեբանեմք աստուած հարցըն մերոց: հրց

Որ 'ի ձեռն երանելի հայրապետացն բարձեր ըզխաւար կռապաշտութեան ազգի մարդկան ըզքեզ բարե:

Այսօր եւ մանկունքս սուրբ եկեղեցւոյ ընդ սերովբէին եւ ընդ քերովբէսն երգաբանեն բերկրական ձայնիւ. զքեզ բա:

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան: գ

Որք անցուցին զմարմինս իւրեանց ընդ հուր եւ ընդ սուր, եւ դասակից եղեն վերին զօրացն. ըզտէր օրհնեցէք:

Քահանայք եւ պաշտօնեայք համաբանական ձայնիւն ըզտէր օրհնեցէք:

Զանճառելի լուսոյ մայր, եւ ըզբնակարան անըմբռնելի որդւոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք: մեծ

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանճառելի տաճար աստուծոյ բանին. օրհ:

Զբոլորից փրկութեան մայր, որ զանտանելին յեց 'ի յարգանդի եբարձ. ըզնա ամենեքեան օրհ:

Զանմարմնոցն ըզմաքրութիւնըն մարմնական կրօնիւք տարեալ 'ի յանձինս իւրեանց քաջ եւ յաղթող երանեալ սուրբ հայրապետք. սոցա բարեխօսութեամբ ողորմեա մեզ աստուած: ողր

Տընօրհնաձայն եւ պայծառ առա-
քինութեամբ հերքեցին զբիշխանն
անօրէն ճիւրեան գործակցօք ճըգ-
նող հայրապետք. սոցա:

Հրեշտակք երկնից փափագին հան-
դիսի կատարման սոցա. որք 'ի մա-
հուն ճիւրեանց կենդանացան ե-
լին 'ի կամարն երկնից, խառնեցան
'ի գունդս զուարթնոցն. սոցա բա-
րեխօսու:

տէր Երանելի սուրբ հայրապետք
չարչարեալք վասն տեառն համ-
բերեցիք. յաղթելով բռնաւորին
գամակից եղէք վերնոցն:

Ճըգնեալ նահատակեցայք յերկրի
յաղթողք 'ի պատերազմի. կոխե-
լով զպատանեաց գամամ:

Լուսաւորեալք երկնային լուսովն,
պայծառացեալք 'ի հոգւոյն սրբոյ.
բարեխօսեցէք առ տէր վասն ան-
ձանց մերոց:

տէր Երանելի սուրբ հայրապետք,
որք կամաւ չարչարեցայք յանձն
առիք զհամբերութիւն. յարժանա-
ւոր յաղօթս ձեր յիշեսջիք զանձի-
նս մեր:

Փոխանակ արեանն տեառն ձեր
արիւնդ հեղաք յերկրի, եւ հոտ
անուշ բուրեաց յաշխարհ. յարժա:

Փոխանակ անցաւորիս ձեզ ան-
անցն է պատրաստեալ պսակ փա-
ռաց 'ի քրիստոսէ. յար:

տէր Ընդ վերին զուարթունսն բա-
րեբանեմք զքեզ տէր. սուրբ
սուրբ սուրբ ես տէր զօրութեանց
կեցո զմեզ:

Յիշատակաւ սրբոց մարտիրոսաց
գոհաբանեմք զքեզ տէր, սուրբ:

Երեքսրբեան ձայնիւն անդադա-
կեմք առ քեզ տէր. սուրբ:

Զանյաղթելի ճըգնաւորացն ըզ-
յիշատակս եկայք հաւատացեալք
ամենեքեան պատուեսցուք: տէր

Քանզի մարմին ունելով զտան-
ջանս արհամարհեցին. նմանա-
ղեք լինելով չարչարանաց փրկչին.
եկայք հա:

Քանզի տեսարան եղեն հրեշտա-
կաց եւ մարդկան. զյաղթութեան
պսակն 'ի քրիստոսէ ընկալան.
եւ բարեխօսեն առ տէր վասն ան-
ձանց մերոց:

Այսօր յիշատակ սրբոց մար- Յնկ
տիրոսաց. մանկունք սուրբ եկե-
ղեցւոյ ընդ զօրս երկնից տուք օր-
հնութիւն 'ի բարձունս սուրբ եր-
րորդութեանն:

Այսօր ճըգնութեամբ սրբոց մար-
տիրոսաց զուարճանան բանակք
անմարմնոցն, եկեղեցիք ընտրելոց.
տուք օրհ:

Այսօր շնորհեցան մեզ քարոզք
եւ վկայք 'ի խաւարէ կռապաշ-
տութեան եւ յանաստուածու-
թեան, ածեալ 'ի լոյս զամենայն
արարածս. տուք օրհ:

Պայծառացիր եկեղեցի աստուա- Ճչւ
ծոյ ընդ ճըգնութիւն սրբոց
վկայիցն. որք նահատակեցան 'ի
յերկրի, եւ 'ի յերկինս պսա-
կեցան:

Ուրախանան եւ հրեշտակք 'ի
յերկինս ընդ ճըգնութիւն սոր:

Համաձայնեալ ընդ նոսին այսօր եւ
մեք տօնեմք զյիշատակ սոր:

Ըզպսակիչն սրբոց եւ զհան- Հմք
գուցեալն 'ի քերովբէս. անդա-
դար ձայնիւ երգելով, օրհնեցէք
զտէր յօրհնութիւն 'ի նոր:

Այսօր տօնէ եկեղեցի զյիշատակ

սրբոց մարտիրոսացն. ընդ որս եւ մեք ձայնիւ երգելով, օրհնեսցուք ըզտէր։

Որ անթառամ փառօք պսակէ ըզսուրբս իւր, եւ 'ի դասս լուսեղէնս վերացոյց. օրհնեցէք ըզտէր։

Հարց՝ Վառ ձայն:

հրց գկ Օրհնութիւնք հրեշտակաց օրհնեն զքեզ. իմանալի ձայնիւն զքեզ փառաւորեն. աստուած հարցն մերոց։

Իշխանութիւնք և պետութիւնք. սերովբէք եւ քերովբէք փառաւորեն սուրբ զանունդ քո. աստուած հայր։

Ազգ մարդկան հողեղինաց դասուց մարտիրոսաց երկրպագեն տէրութեանդ քո. աստուած հայր։

գ Ըզտէր օրհնեցէք, բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Զոր փառաբանեն 'ի բարձունս իմանալի զօրութիւնքն. ժողովուրդք օրհնեն։

Որում երկրպագեն գոհելով դասք սրբոց մարտիրոսացն. քահանայք օրհնեն։

մեծ Զաստուածածին եւ զմիշտ կոյսն անդադար օրհնեսցուք. քանզի ծագեաց մեզ լոյս երեսաց, եւ փրկիչ անձանց մերոց։

Խնդա եւ ուրախ լեր անհարսնացեալ մայր. քանզի որ 'ի քէն ծնաւ մեզ աստուած 'ի փրկութիւն անձանց մերոց։

Գանձ անապական գտաք սուրբ աստուածածին. բարեխօսեա քրիստոսի աստուծոյ մերոյ, կեցուցանել զանձինս մեր։

Նայեա 'ի մեզ եւ ողորմեա մեզ քրիստոս, որ ունիս բազում գթութիւն։ օղ

Որ հայրդ ես որբոց եւ դատաւոր այրեաց քրիստոս, որ ու։

Որ պսակիչդ ես սրբոց, լոյս եւ մեզ աղօթիւք սոցա քրիստոս, որ։

Այսօր հրեշտակաց դասքն 'ի յերկինս ուրախանան 'ի վերայ ծննդեան սրբոյն։ տէր

Այսօր ծննդազգեաց սրբոց դասքն 'ի յերկիր պսակեցան, երկնային աստուածեղէն փառօքն։

Այսօր անմարմնոց զինուորութիւնքն մեծապէս տօնեն. քանզի երկրաւոր զինուորաց բազմութիւնքն ընծայեցան 'ի խորան սրբութեան երկնից։

Սուրբ աստուած հայր անսկիզբն, որ փառաւորեալդ ես 'ի մէջ սրբոց քոց. օրհնեմք զքեզ ընդ զուարթունս երկնից։ տէր

Սուրբ աստուած որդիդ միածին, որ պահեցեր յաղթող զծննդութիւն սրբոց քոց. գովեմք զքեզ։

Սուրբ աստուած հոգիդ ճշմարիտ, որ նորոգեցեր զտխեղեալս ճշմարիտ երկրպագութեամբ սուրբ երրորդութեանդ. բարեբանեմք զքեզ անլռելի ձայնիւ։

Ծննդոցական աշխատութեանց համբերեցին սուրբ մարտիրոսքն, եւ զպատերազմին չարին վանեցին ժուժկալութեամբ. բարեխօսութեամբ սոցա քրիստոս խնայեա 'ի մեզ։ տէր

Որք հեղին զարիւնս իւրեանց փոխանակ սիրեան քո տէր. եւ զծննդութիւն հրապուրողին վանեցին ժուժկալութեամբ. բա։

Եւ ըզպըսակս անապական ընկալան 'ի քէն Քրիստոս. եւ դասաւորեցան 'ի դասս վերին զուարթնոցն. բա։

տէր Նահատակք յաղթողք քաջք 'ի մարտի երանելի սուրբ մարտիրոսք. որք վանեալ ըզթշնամին խորտակեցին։

Հրեշտակացըն դասքըն տօնակից են մեզ. եւ ջոկք անթուոցըն զուարճացեալ բերկրին ընդ վարդագոյն ձեր հեղուածս արեան. որք վանեալ ըզթշնա։

Անթառամ պըսակըն ձեզ աւանդեալ մինչ քան զանկանելս պատուականս գերագոյն հրաշիւք. որք վանեալ ըզթշնա։

տէր Այսօր մարտիրոսաց դասքըն ցընծացեալ բերկրին ընդ անուշ տեառն Քրիստոսի որդւոյն Աստուծոյ։

Զայն 'ի յերկնից լըկայեալ ասէ. եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգորդք երկնից խորանացն։

Լցէք ըղտեղի անկելոցն ապըստամբողական թըշնամւոյն, որ 'ի յերկնից վայր անկեալ։

ձնկ Ընդ զուարթունս երկնից օրհնեցէ՛ք զՔրիստոս թագաւորն։

Ընդ դասս երանելի սրբոցըն գովեցէ՛ք յօրհնութիւն 'ի նոր զՔրիստոս թագաւորն։

Սրբոյ հոգւոյն. ԶՔրիստոս թագաւորըն բարեբանեցէ՛ք, զի ողորմեսցի բարեխօսութեամբ սըրբոցն։

ծչւ Ծընդաւորք ճըշմարիտք եւ վըկայք Քրիստոսի, որք զչարչարանս եւ ըզմահ յանձն առիք վասըն տեառն. ըզձեզ ունիմք բարեխօս առ Քրիստոս վասն անձանց մերոց։

Քանզի հեղմամբ արեան ձերոյ պայծառացան սուրբ եկեղեցիք. եւ զըստուերամած խաւար կռապաշտութեանըն բարձիք. ըզձեզ։

Երկնային զօրքն խնդալ 'ի պատիւ պատարագի մահուան ձերոյ. եւ ըզպըսակս անապական առբերելով 'ի հօրէ լուսոյ. ըզձեզ ու։

Հարց՝ Չորրորդ ձայն:

Յուսացեալքն յանուն քո սուրբ պատերազմեալք յաղթեցին թըշնամւոյն. սոցին աղաչանօք խընայեա 'ի մեզ. աստուած հարցըն մերոց։ հրց գձ

Որք կամաւն խրեանց անցին ընդ հուր եւ ընդ ջուր. եւ դասակիցք եղեն վերին զուարթնոցն. սոցին աղաչա։

Արդ խընդրեմք 'ի քէն թագաւոր փառաց. աղաչանօք սըրբոց վըկայիցըն խընայեա 'ի մեզ. աստուած հարցըն մերոց։

Եկեք. Ի վերնական զօրութենէ քումմէ պատերազմեալք յաղթեցին թըշնամւոյն, եւ դասակցեալք վերին զօրացն օրհնեն ըզքեզ գովեն եւ փառաւորեն։ գ

Եւ քաջութեամբ արիաբար ճըգնեալ արհամարհեցին ըզչար տանջանս եւ ըզմահ. եւ ձայնակցեալ երից մանկանցն օրհնեն ըզ։

Ուստի եւ մեք հաւատացեալքս 'ի քեզ կատարեսցուք ըզյիշատակ սըրբոց վըկայիցն. եւ ընդ նոսին համաձայնեալք օրհնեմք ըզքեզ գովեմք եւ փառաւորեմք։

մեծ Ըզքեզ օրհնութեամբ մեծա-
ցուցանեմք։
Որ ըզլուսն անստեղծ յարգանդի
կրեցեր սրբուհի անարատ, եւ
անճառապէս ծընար ըզվերանձգողն
երկնից. ըզքեզ օրհ։
Որ էից լուսոյն արժանի եղեր
բառնալոյ 'ի քո գիրկս. եւ արե-
գականն արդարութեան եղեր ա-
րեւելք. ըզքեզ օրհ։
ողր Որք ըզլուծաժանկ մահու ընդ քեզ
արբին, եւ մըկրտութեամբ ա-
րեան ընդ քեզ մըկըրտեցան. սո-
քօք աղաչեմք ողորմեա։
Որք եւ ըզխաչս խուրեանց բարձին
ըզկըմնի քո, եւ անմեկնելի սիրով
ընդ քեզ խաչակցեցան. սոքօք ա։
Որք նսկապէս չիջուցին ըզսատա-
րանկեալ փայլակն, եւ հրեշտա-
կացեալք 'ի դասս նորուն վերա-
կարգեցան. սոքօք աղա։
տէր Այսօր յիշատակ սրբոցն, եւ
փայլին նըշխարքն սոցա 'ի մէջ ե-
կեղեցւոյ. աղաչեսցուք ըզտէր սո-
քօք խընայեա 'ի մեզ։
Հեղմամբ արեան սոցա մեծարի
մայր սոցա իմանալի սիոն. աղա։
Տաճար են սուրբ հոգւոյն կեն-
դանի ոսկերքը սոցա հիւանդաց
բըժիշկ. աղա։
հրց Սուրբ ես տէր զօրութեանց.
որ յանմարմնական զօրացըդ գովիս
սըրբասաց ձայնիւ, ըզքեզ օրհնեմք
անստեղծ հայրըն մերոց։
Որ ետուր զօրութիւն մարդանէր
քոց Ճըգնաւորացըն յաղթել չա-
րին ընդդիմամարտութեան. ըզ-
քեզ օրհ։
Ընկալ այսօր ըզպարեխօսութիւն
քաջ նահատակաց քոց վկայից.
ողորմելով տօնողացս ըզյիշատակ
սոցա. ըզքեզ օրհնեմք անստեղծ
հայրըն մերոց։
Ըզտէր օրհնեցէք եւ բարձր ա- գ
րարէք ըզնա յաւիտեան։
Ընդ երկնային զօրսըն միաձայ-
նելով ըզպըսակիչըն սրբոց բարե-
բանելով օրհ։
Զբերկրեալըն այսօր 'ի յիշատակի
քաջ եւ յաղթող սուրբ երանե-
լեացն օրհ։
Անարատ կոյս աստուածածին մեծ
մարիամ, սրբուհի եւ մայր քրիս-
տոսի, յարգանդի տարար զանտա-
նելին ամենեցուն. օրհնութեամբ
ըզքեզ աստուածածին մեծա-
ցուցանեմք։
Ըզքեզ երկնային դասըն զոր ե-
տեսն եզեկիէլ, եւ արըն զոր ծա-
նեաւ գեդէօն. սերովբէ հողեղէն
վեհագոյն քերովբէից. օրհ։
Երիս խորհուրդըս սոսկալիս 'ի
քեզ տեսանի աստուածածին.
յըղութիւն անսերմնական, ծնունդ
անարատ. կուսութիւն յետ ծնըն-
դեան միալով անապական. օրհնու-
թեամբ։
Ըզքեզ սիրողաց որդի աստու- ողր
ծոյ պատուելոյ ըզյիշատակս ար-
ժանի արա, եւ աղօթիւք սոցա ո-
ղորմեա մեզ։
Որք փորձեցան 'ի փորձ սրոյ եւ
հրոյ, եւ 'ի քո պատուիրանաց եր-
բէք ոչ խոտորեցան. աղօ։
Եղեն տաճար սրբութեան ան-
մահ բանին, եւ ըզգանձս հոգե-
ւորս աստանօր պատրաստեցին. ա-
ղօթիւք սո։
Այսօր Ճըգնութեամբ սրբոցըն տէր
զուարճանայ եկեղեցի ուրախու-

թեամբ մեծաւ հանդերձ որդւովք նուովք. տօնելով զյիշատակ սոցա։

Սոքա են դեղ կենաց պարգեւեալ մեզ 'ի Քրիստոսէ 'ի բժշկութիւն, պատուական սուրբ նշխարքն իւրեանց։

Իշխանութիւն ունին 'ի հոգւոյն սրբոյ, առաջնորդել մեզ յերուսաղէմն վերին. 'ի քաղաք կենդանեաց 'ի մեծին սիոն։

հրց Որք հաղորդեցան չարչարանաց քոց Քրիստոս սուրբ հայրապետքն, եւ վերաբերեալ պայծառացան ընդ անմարմինն բազմութիւնսն. սոցին աղաչանօք խնայեա 'ի մեզ Աստուած հարցն մերոց։

Որք 'ի սկզբանէ պատուեալ եղեն 'ի սէր բոլորից հօրն, եւ ընտրեցեալս հրաւիրեցին յորդեգրութեան շնորհս. սոցին աղա։

Որք զընթացս իւրեանց կատարեցին հանճարիւք քո Քրիստոս, եւ ըզպսակս անապականն 'ի քէն ընկալան. սոցին աղա։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Զէակիցն հօր եւ հոգւոյն, որ բնակեալ է 'ի լոյս անմատոյց եւ բարեբանի սրբանոց ձայնիւ. բարձր արարէք ըզ։

Զերկրպագեալն 'ի սրբոց հայրապետաց, որք հեղմամբ արեանն իւրեանց նմանողք եղեն փրկողին զինքեանս. բարձր արարէք ըզնա յաւիտեան։

մեծ Ուրախացիր աստուածածին վերօրհնեալդ 'ի սրովբէից. ծագելով 'ի քէն մեզ լոյս մայր եղեր վերաձգողին. ազգ եւ ազինք ընդ քեզ մեծացուցանեմք։

Հիմն եղեր եկեղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ. 'ի հրեշտակաց սպասաւորեալ Գաբրիէլ քեզ աւետեաց. ազգ եւ։

Տեսանեմք ըզանսկալի զհրաշալի խորհուրդ յայտնեալ. 'ի հոգւոյն սրբոյ յղացեալ զբանն աստուած մարմնով ծնար. ազգ եւ։

ողր Ողորմեաց մեզ տէր աստուած մեր, 'ի յիշատակի սուրբ հայրապետացն։

Որք յանուն քո սուրբ դարձուցին զաշխարհս կռոցն 'ի պաշտելութենէ. աղօթիւք սոցա ողորմեա մեզ։

Եւ արժանի եղեն ընդունել 'ի քէն զանթառամ փառաց պսակն. աղօ։

տէր Որք զսա 'ի Քրիստոս զչարչարանս յանձն առեալ համբերեցիք ով աստուածասէր հայրապետք, եւ արժանի եղէք զերկնայինն առնուլ պսակ։

Որք փորձեցայք շիջանելոյ հրով. ժուժկալեցիք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն. համարձակութիւն ունիք բարեխօսել առ տէր վասն անձանց մերոց։

Որք զամբարշտութեանցն վանեցիք զկռապաշտութիւն ով աստուածասէր հայրապետք. հաստատութիւն 'ի Քրիստոսէ հայցեցէք անդադար սուրբ եկեղեցւոյ։

տէր Ցնծութիւն է այսօր հրեշտակաց եւ մարդկան. զի զխրոխտացեալ զթշնամին վանեալ խորտակեցին սուրբ վկայքն. եւ եղեն յաղթողք 'ի պատերազմի։

Մարմնով եւ արեամբ մարտեան ընդդէմ զինու. վիրաւորեալք 'ի մարմնի վիրաւորեցին 'ի մահ ըզ-

բեւեռար, եւ ստացան պարծանըս յաւիտենական։

Նորանաւեստեալք 'ի հոգեղէն զըւարթնոց. եւ բարեբանեալք 'ի դասուց մարմնաւորաց սուրբ վըկայքն. անեղին աջովըն պըսակեալ եղեն։

տէր Յիշատակ է այսօր քաջ նահատակաց քրիստոսի սրբոց վըկայիցն. եկայք ժողովուրդք ցընծութեամբ տօնեսցուք։

Քանզի տեւողք 'ի տանջանս եւ յաղթողք 'ի մարտի եւ պըսակեալք 'ի հօրէ. եկայք ժողո։

Լուսաւորեալք 'ի յերկրի պայծառացեալք 'ի յերկինս, եւ դասակցեալք ընդ հրեշտակս, եկայք ժողովուրդք ցընծութեամբ տօնեսցուք։

ձնկ Ըզքեզ կարգային յօգնութիւն սուրբ մարտիրոսքն եւ անձինն. որ 'ի բարձունըս բնակեալդ ես խընամեալ 'ի մեզ։

Դու ես գունդն լուսոյ, դու պըսակ պարծանաց 'ի քեզ յուսացելոց. որ 'ի բար։

Օրհնեալ գովեալ եւ 'ի սուրբըս հանգուցեալ. եւ դու ես ընդունող հոգւոց մերոց. որ 'ի բարձունըս բնակեալդ ես միշտ եւ յաւիտեան։

ձնկ Որպէս սուրբ գէորգ պարծանք ազգի մարդկան. հրաշալի ճըգնութեամբ 'ի յերկրի նահատակեալ, եւ 'ի յերկինըս պըսակեալ ընդ անմարմնոցըն դասս։

Քանզի դու վառեցար զինու սուրբ հոգւոյն. եւ յաղթեցեր արիաբար անմարմին բելիարայ։

Մի դադարիր բարեխօսել վասըն մեր առ հայր եւ որդի եւ սուրբ հոգին. զի յաղթեսցուք հաւատով անմարմին բելիարայ։

Ճըգնութիւնըք սրբոց քոց քրիստոս հաստատեցին ըզհիմունըս սուրբ եկեղեցւոյ. կանգնելով 'ի սմա ըզնըշան յաղթութեան։ ճշւ

Եւ հեղմամբ սուրբ արեանն իւրեանց ազատեցին ըզտիեզերս 'ի դիւցապաշտ մոլորութեանց. եւ եղեն յաղթողք 'ի պատերազմի։

Ընդ որս եւ մեք աղաչեմք քրիստոս ընկալ եւ ըզմեզ յերկնային խորանս 'ի լուսեղէն առագաստին. բարեխօսութեամբ եւ աղօթիւք սուրբ ճգնաւորացն։

---

Հարց. Վերջ ձայնի:

Առ քեզ աստուած հարցըն մերոց խոնարհեալ անձամբք պաղատիմք. մի անտես առներ տէր, որ փառաւորեալդ ես յաւիտեան։ հրց գկ

Յիշեա զուխտն աբրահամու ըզսահակայ եւ զյակոբայ. եւ զնեղելոց անձանց պաղատանս մի անտես առներ տէր, որ փա։

Շնորհեա տէր խընդրողացս 'ի քէն ըզթողութիւն մեղաց, 'ի տաճարի քում սրբութեան, բարեխօսութեամբ սրբոց քոց. որ փառաւո։

Ըզտէր. Օրհնեցէք ըզտէր երկինք եւ երկնային զօրութիւնք, սերովբէք եւ քերովբէք զաստուածն աստուծոց. բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Ըզտէր. Օրհնեցէք ըզտէր երկիր եւ որ 'ի սմա են կենդանիք. համբառնալով 'ի վեր ըզձայնս եւ երգօք հոգեւորօք, բարձր ա։

Ըզտէր. Օրհնեցէք ըզտէր գործք արարչականց եւ մարդկան, զարարչին արարածոց. միաբանութեամբ երգով բարձր արարէք ըզնա յաւիտեան։

մեծ Ի քեզ եմք ապաւինեալ քրիստոսի մայր աստուածոյ մերոյ։

Որ քան զերկինս բարձրագոյն Մարիամ, պարծանք եկեղեցւոյ. քրիստոսի մայր։

Որ քան զարեգակն պայծառագոյն Մարիամ, մի դադարիր բարեխօսել վասն մեր. քրիստոսի մայր։

ողր Զողորմութեան քո զդուռն բաց մեզ տէր. եւ արժանի արա զմեզ լուսեղէն յարկաց քոց ընդ սուրբս քո։

Ի պատրաստեալ քո յօթեվանս սրբոց քոց ընկալ եւ ըզմեզ փրկիչ յորդեգրութիւն 'ի դըպրութեան կենաց։

Ի նըստիլ քո յաւէտ դատաւոր աջեղ խնայեա յարարածս քո, բարեխօսութեամբ եւ աղօթիւք սուրբ ճըգնաւորացն։

տէր Ի յիշատակս վկայից քոց քրիստոս պարգեւեա մեզ օրհնել ըզքեզ արժանապէս։

Կամաւ մատուցին զանձինս իւրեանց քեզ պատարագ արեամբն իւրեանց, եւ այժմ ունին պըսակս 'ի քէն տէր։

Սոյնպէս աղօթիւք փրկիչ խնայեա 'ի սուրբ եկեղեցի քո, զոր ըստացար պատուական արեամբըդ քո սրբոյ։

հրց Որ ըզհրաշափառ քո զօրութիւնըդ ծանուցեր ազգի մարդկան. ցուցանելով յաղթող սուրբ զվկայսն 'ի պատերազմի վասն անուան քո, տէր աստուած հարցն մերոց։

Որք 'ի մարմնի անմարմնացան գեր 'ի վերոյ քան զբնութիւնս, արհամարհելով անարգեցին ըզչար տանջանս եւ զմահ. եւ եղեն վկայք քո կամաւոր մահուամբն. տէր աստուած հար։

Հանդիսացեալ այսօր եւ մեք տօնեմք ըզյիշատակ սուրբ վկայիցն. խաղաղացո զկեանս մեր աղօթիւք սոցա, եւ փրկեա զմեզ 'ի նեղչաց մերոց. տէր աստը։

Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Գ

Որ փառացն իւրոց տեսող սուրբ զվկայսն արժանի արար, եւ երգակիցս անմարմնականն զօրացն. օրհնեցէք եւ բարձր ա։

Որ սուրբ լուսաւորեաց զազգս որդւոց մարդկան 'ի գիտութիւն ճշմարտութեան, եւ հրաւիրեաց յերկնից յարքայութիւնն. օրհնեցէք եւ բարձր ա։

Որ զանճառելին ծընար սուրբ աստուածածին կոյս. օրհնեալ ես յաւիտեան։ մեծ

Որ զարարչականըն հօր զին սկըզբանէ բանն աստուած. յորովայնի քում կրեցեր. օրհ։

Զքեզ եզեկիէլ ետես երկնային դուռն եւ հարսն անխորձ. օրհ։

Ըզյիշատակս վկայից քոց տօնեմք այսօր քրիստոս թագաւոր. աղաչանօք սոցա ողորմեա։ ողր

Որք յաղթեցին անօրէն բռնաւորաց հեղմամբ արեանն իւրեանց. եւ դասակից եղեն վերին զուարթնոցն։

Եւ ընկալան ըզպըսակս անթառամ-

կանոնս յանդիմանէր լուսոյն. եւ միշտ ուրախանան ընդ հրեշտակս ՚ի յերկինս։

տէր Այսօր յիշատակ սրբոց քոց. որք տանջանաց անօրինացն համբերեցին. եւ դասակից եղեն վերին զուարթնոցն։

Այսօր եւ հրեշտակք ուրախանան ընդ կամաւոր չարչարանս ճգնաւորացն, որք յաղթեցին անօրէն բռնաւորացն։

Սուրբ ես թագաւոր յաւիտենից, որ նստիս ՚ի վերայ չորեքկերպեան կենդանեաց, եւ ՚ի սրբոց քոց փառաբանիս։

տէր Փառք քեզ հայր երկնաւոր որ նստիս ՚ի քրովբէս, եւ բարեբանիս ՚ի դասուց սերովբէից։

Ընդ քեզ գովեմք թագաւոր փառաց քրիստոս, համաձայնեալ ընդ սուրբս քո յեկեղեցիս արդարոց։

Սրբեա զանձինս մեր եւ տաճարացս սուրբ երրորդութեանդ, կենդանարար սուրբ հոգի։

տէր Պարծեցին սուրբքն փառօք եւ ցնծասցեն ՚ի հանգիստս իւրեանց. քանզի ընդ հուր եւ ընդ ջուր անցուցին զմարմինս իւրեանց։

Սուրբ զարիւնս իւրեանց հեղին չարչարանացն համբերեցին. եւ զըսպառնալիս բռնաւորացն անարգեցին յաշխարհի։

Արդ եկայք հաւատացեալք կատարեսցուք զյիշատակ սոցա. քանզի սոքա են մեզ բարեխօս յարքայութեանն աստուծոյ։

տէր Աջ տեառն ՚ի վերայ սրբոց իւրոց, եւ փառք իւր հանգուցեալ է յոսկերս սոցա, եւ հոգիք սոցա դասաւորեալ ընդ հրեշտակս ՚ի յերկինս։

Բանակք հրեշտակաց տեառն շուրջ են զնոքօք. եւ երգակից են միմեանց յօրհնութիւնս աստուծոյ. եւ հայցեն միաբան զխաղաղութիւն ամենայն աշխարհի։

Բազում համարձակութիւն է առ տէր բարեխօսութեամբ սոցա, եւ թողութիւն է մեղաց, որք կատարեն զյիշատակս սոցա։

Որք եկեալ եմք ՚ի պատուել զյիշատակ սուրբ վկայիցն, առցուք ըսկիզբն ըզգօնութեան, աղաղակելով առ քրիստոս տէր փառք քեզ, փառք քեզ տէր աստուած։ Ռկ

Ահաւոր ես հրեշտակաց անուանս ՚ի սերովբէից. եկիր երեւեցար մարմնով, ուսուցեր մեզ ասել տէր փառք քեզ, փառք։

Յանմարմնոց ես վերօրհնեալ ՚ի մարդկանէ երկրպագեալ. քեզ փառք վայելէ պատիւ յամենայն ժամ ասել տէր փառք քեզ, փառք։

Այսօր եկեղեցի քրիստոսի պայծառանայ յիշատակաւ սրբոց վկայիցն. որ բարեխօսեն առ տէր վասն մեր։ Ճշւ

Այսօր ՚ի հեղմունս արեան սոցա դասք հրեշտակաց խոնարհեալ միաբանութեամբ տօնեն ընդ մարդկան։

Եկայք եւ մեք քրիստոսի հաւատացեալքս կատարեսցուք զյիշատակ սրբոց վկայիցն. որք բարեխօսեն առ տէր վասն մեր։

Երրորդութեանն սիրով անձինք յաղթող վկայիցն, արժանա- Հմբ

ուրք ընդունելոյ, 'ի յանուածգամատըն լուսոյ:

Զի՞ զառաջին մեղացն ըղձոց արեամբն իւրեանց շիջուցին. եւ ըզտմեղերս հրաւիրեցի՞ն յօրհնաբանութիւն:

Հե՞ղմամբ արեանըն իւրեանց մեզ ճանապարհ հորդեցին. եւ առ քրիստոս մեզ գնալըն կենա՞ց բացին 'ի յերկինս:

հմբ Աստուած բարձրեալ եւ 'ի սուրբս հանգուցեալ, եւ 'ի սրբոց վերօրհնեալ մաղթելով հայցեմք 'ի քէն տուող բարեաց. բարեխօսութեամբ սրբոց մարտիրոսացն հաշտեաց ընդ մեզ քրիստոս:

Որք կոծանեցին զանօրինացն ըզպատկերսն, եւ յիշատակ քաջութեան թողին յաշխարհի. բար:

Պատարագ անուշահոտ մատուցին քեզ ըզմարմին եւ զարիւն, համբերելով չարչարանաց վասն անուանըդ քում սրբոյ. բա:



# ԿԱՆՈՆ

## ՀԱՆԳՍՏԵԱՆ ՀԱՄՕՐԷՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ Ի ՔՐԻՍՏՈՍ Ի ՎԵՐԱՅ ՈՒԹՆ ՁԱՅՆԻՑ ԿԱՐԳԱՒ. ՈՐ ԸՍՏ ՁԱՅՆԻ ԱՒՈՒՐՆ՝ Ի ՊԱՇՏԱՄԱՆ ՍԽԵՏԱՐԱՆԻՆ ԱՍԻ:

Առաջին ձայն.

աճ Քեզ վայելէ աստուած օրհնութիւն, որ յարութիւնդ ես ձայնիւ յաւիտենից ննջեցելոցն. թագաւոր եւ իշխան վերօրհնեմք ըզքեզ:

Ի միւսանգամ գալըստեանըդ քո քրիստոս փառաց թագաւոր 'ի ձայն փողոյ նորոգին հոգիք ննջեցելոցն, եւ յառնեն 'ի մեռելոց անապական մարմնով:

Վասն որոյ եւ մեք ըզքեզ աղաչեմք հայր երկնաւոր. դասաւորեա ըզննջեցեալսն մեր 'ի վերինդ քո երուսաղէմ, 'ի ժողովս անդրանկաց գրելոց 'ի յերկինս:

Զայն արկեալ կենարարն աստուածային բարբառովն, ասէ եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն 'ի հանդերձեալ երկրին:

Ընդ առաջ ելանել քեզ հաւատով 'ի յօդըս վերինս, աստուածազգեաց լուսով պայծառացեալ 'ի դասս անմարմնոցն. 'ի լսել ըզձայն երանաւէտ կոչմանն:

Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանսն, 'ի լուսեղէն առագաստին պայծառացեալ 'ի դասս անմարմնոցն, 'ի ժողովս անդրանկաց գրելոց 'ի յերկինս:

Զհոգիս ծառայից քոց քրիստոս, ընկալ 'ի դասս անդրանկաց գրելոց 'ի յերկինս:

Ընկալ վասըն սոցա ըզբանաւոր պատարագս 'ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում:

Ողորմեա ինձ աստուած: տպլ կեր

Որ զառաջինն ոչ պահելով ըզպատուիրանըն մեռաք, շնորհեցեր քեւ օրինակ մեզ պատուիրան կենաց, զի պահելով կենդանասցուք.

Ողորմեա ինձ աստուած:

Որ 'ի խորհուրդ քո կամաւոր, մահուանն եկեղեցի քո քրիստոս, մեռանելով օրինաց մեղաց, զի յա-

ռուցեալ ընդ քեզ նորոգեսցի 'ի փառս. ողորմեա ինձ աստուած:

ապշ Հայր բազումողորմ խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին. Թող ինձ զմեղս իմ, եւ ողորմեա:

Տէր որ գթացար 'ի կինն քանանացի, գթա եւ յիս 'ի մեղաւորս, եւ ողոր:

Տէր որ դարձուցեր զմաքսաւորն 'ի գիտութիւն ճշմարտութեան, դարձո եւ զիս զմոլորեալս, եւ ո:

ապշ Աստուած բազումողորմ, խոնարհեա յարարածս քո հայր ամենակալ, եւ ողորմեա:

Արեգակն արդարութեան, ծագեա 'ի հոգիս մեր զլոյս ճշմարտութեան, եւ ողոր:

Տուր մեզ տէր զխաղաղութիւն, եւ փրկեա 'ի նեղչաց մերոց հոգիդ ճշմարտութեան, եւ ողոր:

մրտ Փառաւորեալքս 'ի յիշատակ սրբոց քոց քրիստոս, աղաչեմք զքեզ, նոցա բարեխօսութեամբ ողորմեա:

Երկրպագեմք առաջի բեմի քո քրիստոս. ընկալ քո գթութեամբդ զաղաչանս մեր. նոցա բարեխօ:

Զորս հոգւով եւ մարմնով որպէս զանմարմինս անարատ 'ի գալուստ քո պահեսցես մարդասէր փրկիչ. նոցա բա:

ղազ Այսօր գոլով 'ի բեթանիա քո ամենազօր հրամանաւդ ձայնեցեր զղազարու, եւ դողացաւ մահ. դժոխք պարտեցան, ապականութիւն լուծաւ. կենդանարար քրիստոս կեցո զմեզ:

Այսօր գոլով 'ի բեթանիա զքո զաշխարհակեցոյց սուրբ զյարութիւնդ յառաջագոյն ծանուցեր անապականութեամբ կոչմամբ. զչորեքօրեայն 'ի թաղմանէ. կենդանարար քրիստոս կե:

Այսօր գոլով 'ի բեթանիա եբրայեցւոց մանկունքն բարբանջեցեալ աւետին. զմարիամու զեղբայրն 'ի թաղմանէ յարուցեալ որդւոյն մարիամու. կենդանարար քրիստոս կեցո զմեզ:

Անճառելի հօր էակից, 'ի խաչ ելեր կամաւ հօր. ողորմեա: յար

Անմահութեանց տուող քրիստոս, 'ի գերեզման իջեր որպէս մարդ. ողոր:

Եւ յերրորդ աւուր յարեար, յոյս յարութեան ցուցար մեզ. ողոր:

Որ յամենայնի ես աստուածութիւն, եւ 'ի ձայն հնչման իջեր յերկնից սուրբ հոգի. ողորմեա մեզ: հոգ

Որ զամենայն լնուս զօրութեամբ քո, եւ 'ի դաս առաքելոցն իջեր բնակիլ սուրբ հոգի. ողոր:

Որ անբաժանելի ես յաստուածութեան, եւ 'ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի. ողոր:

Որ զաւետիս հնչւոյն 'ի հրեղէն 'ի հրեշտակէն ընկալար. ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ մարիամ անհամանացեալ: ած

Անըսկիզբն բանն հաճեցաւ առնուլ մարդեղութեամբն ըսկիզբն 'ի կուսէդ, քրիստոս աստուած թագաւորն յաւիտենից:

Աղաչեմք զքեզ սուրբ աստուածածին առ քրիստոս բարեխօսեա փրկել զժողովուրդս իւր, զոր գնեաց արեամբն իւրով:

խաչ Հրաշակերտ եւ զօրեղ փայտ խաչի քո քրիստոս դաւանան զօրութեան 'ի յերկրի երեւեալ. Եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

Զոր հրեշտակն ծածկեալ զանթաքչելի ըզգանձն, փախստեամբ թագուհւոյն փայտ կենաց յայտնեցաւ. Եկայք ժողո։

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։

Սա է զէն յաղթութեան հաւատացելոց. ախոյեան եւ կնիք յաղթող ընդդէմ թշնամւոյն. Եկայք ժողո։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Հաստեալ 'ի ձեռըն սուրբ մարմնոյ եւ արեան քո տէր. եւ պարգեւեալ նոցա գանձիլ յաջողմանըն քո։

Առաջին կողմ:

ակ Զօրք քո արարին եւ ըստեղծին զնա 'ի հողոյ. 'ի յօրհնել ըզքեզ ատորուած յաւիտեան։

Իսկ պատրանօք բանսարկուին խափանեցաւ յանձնառ լուսոյն, եւ դարձաւ անդրէն 'ի հող յորմէ առեղծաւ։

Մխիթարիչ սուրբ հոգի լուսաւորեա զմեր ննջեցեալսն, եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

Հայր անսխալ եւ բարեգութ, մաղթելով հայցեմք 'ի քէն վասն մեր ննջեցելոցն արժանաւորել հանգստեան օթեւանին սրբոցն։

Անճառ ծնունդ հօր որդի, որ մահկանացուաց կեանքդ ես, զհոգիս ննջեցելոց մեր ընկալ եւ արժանաւորեա. հան։

Եւ նորոգող սուրբ հոգի, յորժամ նորոգես զապականեալսն, յայնժամ շնորհեա եւ մեր ննջեցելոցն արժանաւորիլ հանգստեան օթեւանին սրբոցն։

Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն անելով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո։

Յորժամ ճառագայթք աստուածութեանըդ փայլին 'ի յարեւելից. եւ դըպրութիւնըք հրաշիցըն բանին. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ։

Որ տաւաքեցար 'ի հայրական ապշ կեր
ծոցոյ ծածկեալ խորհուրդ ընդ հօր յաւիտեան, եւ առեր մարմին զմեղուցելոյ նախաստեղծին յանապական կուսէն անճառ միութեամբ, վասն մերոյ փրկութեան. ողորմեա։

Որ փոխանակ ճաշակողին դառնութեան մահաբեր պտղոյն անճաշակ լինելով քո բառանօրեայ, քաղցրացուցեր յուսով ըզլուծ նոր քո օրինաց. վասն մե։

Որ աջակողմ աւազակին բացեր ըզդուռըն դրախտին կենաց. բաց եւ մեզ մեղաւորացս ողորմութեամբ, որք ընդ նմին զքեզ դաւանիմք տէր եւ թագաւոր. աղաչեմք ըզքեզ ողորմեա։

Տօլ կենդանողս հանդամամող զիս ալէկծէ։ ապշ

Մըըըրկեալ ալիք թըշնամին ինձ յարուցանէ։

Նաւապետ բարի լեր անձին իմոյ ապաւէն։

ապշ Մերձ եմ յընկըղմիլ օգնեա ինձ նաւապետ բարի. քանզի ծանրացան ՚ի վերայ իմ բեռինըք մեղաց։

Աստուած յօգնել ինձ փութա քանզի խորըք չարեաց ընկըղմեն զիս յանդունդս. այլ դու նաւապետ լեր եւ ինձ ձեռընտու։

Փըրկեա ՚ի վըտանգէ ըզնաւաբեկս ՚ի յալեաց ծովէ. քանզի կորընչիմ ՚ի մեղաց անօրէնութեան իմոյ։

մրտ Խընդրեմք ՚ի քէն բարերար, ողորմեա անձանց մերոց։

Վասըն սըրբոց քոց մարտիրոսաց, տէր ընկալ զաղաչանըս մեր։

Որ դըթածդ ես յամենայնի, տէր կեցո զանձինըս մեր։

Սուրբ ես տէր զօրութեանց բընակեալդ ՚ի լոյս յանմատոյց. ձըգնութեամբ սըրբոց քոց լուր տէր եւ ողորմեա։

ղաղ Այսօր կանգնեցաւ աւազան մըկըրտութեան ՚ի թողութիւն մեղաց մերոց։

Այսօր տէրըն մեր լուանայր զոտս աշակերտացըն եւ պատուիրէր զայս առնելով։

Մի ոմն ՚ի ձէնջ եղբարք մատնելոց է զիս ՚ի մահ եւ որոշի յաշակերտացդ։

Զայն լուեալ պետրոսի ակնարկէր առ յովհաննէս հարցանել թէ ով իցէ։

Բանըն զոր ասաց յիսուս տըրտմեցոյց զնա զաշակերտսն եւ խռովեցան ամենեքեան։

յար Իջեր յերկնից որդի աստուծոյ եւ մարմնացար ՚ի սըրբոյ կուսէն, որ անմեկնելիդ ես ՚ի հօրէ. ողորմեա։

Եկիր ՚ի չարչարանըս կամաւորապէս աստըւած եւ խաչեցար վասն ազգի մարդկան, եւ ՚ի գերեզման իջեր անապական. ողորմեա։

Զմահ լուծեր եւ զաշխարհս ազատեցեր կարողապէս տէր, եւ ՚ի մեռելոց յարեար իշխանութեամբ, ողորմեա։

Որ առաքեցար ՚ի հօրէ հոգիդ անեղ եւ համագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին. լինել մըխիթարիչ սուրբ առաքելոցն. աղաչեմք ըզքեզ ողորմեա։ հոգ

Որ իջեր տիրաբար յերկնից սաստիկ հողմոյ նըման աստուած յայտնապէս, եւ ՚ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ՚ի դասս առաքելոցն. աղաչեմք ըզք։

Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սըրբոց քոց առաքելոցն. որք արբուցին տըրտմեցելոց որդւոց ադամայ ըզբաժակն ուրախարար յոյժ ւոյն եդեմայ. աղաչեմք ըզք։

Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ յեդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս եւայի. յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ աճ

Դու լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւու լուսոյն ճըշմարտի. որով հերքեաւ խաւարն առաջին. օրհ։

Ըզքեզ ունիմըք բարեխօս կոյս անհարսնացեալ. մայր անարատ էմմանուէլի. տաճար բանին հօրն երկնաւորի. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։

Ըզքեզ քաղաք աստուծոյ եւ տաճար անապական, աստուածա- խաչ

զարդ եւ լուսազգեստ անախտաձան
փառօքն պճնեալ սուրբ հոգին.
եւ յաւէժ ուրախանան միշտ հա-
ւատացեալք։

Ի քեզ ծագեալ 'ի համագոյին աս-
տուծոյ արդարութեան արեգակն,
որ լուսաւորեալ փարատեաց 'ի
քէն զխաւարն անգիտութեան եւ
հաստատեաց զհիմունս քո 'ի վե-
րայ հիման առաքելոց եւ մար-
գարէից։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Ի քեզ կանգնեալ սեղան սրբու-
թեան եւ բղխեալ աղբիւր անմա-
հական, որ յորդառատ վտակօք
արբուցանէ յաւէտ ըզծնեղերս
գեղեցկապէս բղխեալ ըզբողբոջս
աննուշից. եւ յաւէժ ուրախանան
միշտ հաւատացեալք։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Զարհուրեալ դողան արարածք 'ի
ձայնէ սոսկալի փողոյն. յոր-
ժամ հարկանէ հրեշտակապետն
եւ կոչէ 'ի դատաստան զազգս որ-
դւոց մարդկան. յայնժամ անուր ա-
հեղին յիշեա տէր եւ զմեր
ըզննջեցելոյն. եւ հանգո ընդ
սուրբս քո։

---

Երկրորդ ձայն։

բձ Հրեշտակային ձայնիւն օրհնես-
ցուք զամենասուրբ զերրորդու-
թիւնն, փառաւորելով ըզհայր. որ
վերակոչեաց զամենեսեան 'ի մա-
հուանէ յանմահութիւն։

Երգեցէք տեառն երգ նոր եկե-
ղեցիք սրբեցելոց, քրիստոսի եր-
կրպագելով. որ վերա։

Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք,
հոգեւորական հրաշամբ գովես-
ցուք, սուրբ զհոգին փառաւորե-
լով. որ վերահանգոյց զամե։

Ի ձայն փողոյ գալստեան քո
տէր, ամենայն հոգիք զարթիցեն
կալ 'ի դատաստանի քում քրիս-
տոս աստուած մեր։

Յորժամ հրաշէ բարբառն անհա-
գին, եւ հարկանի փող յարու-
թեան մերոյ. եւ մեք գոչելով ա-
սեմք փառք գալստեան քո տէր։

Յորժամ առնես հատուցումն
տէր, եւ սուրբք քո պարծեսցին
'ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փր-
կիչ կալ 'ի յաջմէ քումմէ։

Թագաւոր անմահ արարիչ յա-
ւիտենից, մարդասիրութեամբդ
քո խնայեա յանձինս մեր. ստեղ-
ծիչ կենդանեաց եւ հանգուցիչ
ննջեցելոց։

Ի խաչին բեւեռեցար զմահու
լուծեր զիշխանութիւն. յաւիտե-
նից զննջեցեալսն վերածեր յան-
մահ 'ի կեանս. տէր։

Ընդ անեղեաց մարգարէին որ
առ փրկեալքս արեամբ գառինդ,
ցնծամք եւ մեք ծառք անտառի
ընդ գալուստ տեառնդ կրկնա-
կի. շնորհեա մեզ տէր ընդ արդա-
րոցն ընդ առ 'ի քէն ոլնկեալ ծա-
ռոցն, անջրդի յուսով զուարճա-
նալ եւ յերկրորդին ընդ քեզ
ցնծալ։ պաշ կեր

Սրբին նման տայ անեղծ զաքա-
րիաս նոր սիոնի, եթէ ուրախ
լեր ահա գայ առ քեզ խոնարհ
եւ հեզ արքայ. նստեալ 'ի յէշ
եւ յաւանակ կրկին աղանց գով
օրինակ. նստեալդ յաթոռ քե-
րովբէից նմա գթութեամբ 'ի
մեր հոգիս։

Զահեղ փառաց քոյ երեւումն որ լինելոց է յերկրորդումն, եւ տես դատելոյ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազգամարդ հոգւոյն. թէ յայտնապէս անտուած գայցէ հուր առաջի իւր բորբոքէ. յայնժամ յիսուս 'ի մեզ խնայեա գթած քրիստոս եւ ողորմեա։

Աստուածածին անհարսանացեալ յերկրէ յերկինս հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ նըման քո միածնի դ յաջակողմեան. յայնժամ մաղթեա ընդ մեր ըզնոյն փրկել ըզմեզ յահեղ բոցոյն, համագամս ընդ արդարոց երգել ըզփառս ընդ երկնայնոցն։

ապղ Դարձո զցասումն քո 'ի մէնջ, յաղագակեալ հողեղինացս. բազմագութ տէր խնայեա եւ մի կորուսաներ։

Կանգնեա զանկեալս 'ի գլորմանէ, զվիրաւորեալս 'ի թըշնամւոյն. որ բժշկդ ես հիւանդաց, բժշկեա զիմ զհիւանդութիւնս։

Ի յանցանաց իմոց թախծեալ անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսաւորն. աստուած քաւեա զիս զմեղաւորս։

ապղ Անօրէնութեանց քննող դատանեաց, բժշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն եւ կեցո միայն մարդասէր։

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան, ողորմեա անձին իմոյ բազմամեղի եւ կեցո միայն մար։

Ամենաբաւական ողորմութեան շնորհ, պարգեւեա ինձ յահագին աւուրն ըզթողութիւն եւ կե։

մրտ Հեզմամբ արեան սըրբոց վըկայից նահատակաց ընդ մեզ քրիստոս, եւ փրկեա յամենայն փորձութենէ։

Որք նահատակեցան վասն քո 'ի մահ. վիրաւորեալք յաղթեցին թըշնամւոյն. սոցին աղաչանօք հաշտեաց ընդ մեզ քրիստոս, եւ փըրկեա յամե։

Որք միացան 'ի սէր ահաւոր քո տէրութեանդ. եւ մատուցին զանձինս ինքեանց պատարագ քեզ եւ զենումն. սոցին աղա։

Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին դողալով կարապետքն դըժոխոցն. եւ մեռեալն եկն արտաքս անապականն։ ղպզ

Կացեալ 'ի դուրս այրին եւ ձայնէր ազդ արարող բարբառովն 'ի գերեզմանն. ղազարէ եկ արտաքս։

Ելեալ 'ի գերեզմանէն երիզապինդ պատանօքըն մեռեալն. հրամայեաց լուծանել 'ի կեանսըն յաւիտենից։

Իջեր յերկնից որդի աստուծոյ ազատեցեր զարարածս. անկանիմ առաջի քո. ողորմեա ինձ աստուած։ յար

Ի խաչին բեւեռեցար աստուած եւ ըզմարդն 'ի կապանաց մահու արձակեցեր. եւ զիս մի անտես առներ, որ մեղօքս եմ մեռեալ։

Ծագումըն հօր անմահ լուսոյն. որ իջեր 'ի գերեզման կենդանացուցեր զարարածըս քո. եւ զիս մի անտես առներ. քանզի քեզ միայնոյ մեղայ։

Սարսափելի հողմոյ նըման ահեղագոչ սաստիկ հընչմամբ, երեւեցար 'ի վերնատանն հոգիդ դասուն երկոտասան. որք առ 'ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով հոգ

մաքրեցան. մաքրեա 'ի մեղաց ըզ-
մեզ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փա-
ռաց:

Եկիր յերկիր աստուածաբար դա-
տել զաշխարհս իշխանաբար, ընդ
արդարութեան եւ ընդ մեղաց
եւ ընդ չարին դատաստանաց.
բացեր ըզգանձ անհիւթական
պարգեւս ետուր որդւոց մարդ-
կան. մաքր:

Սէրն 'ի սիրոյ զսէրդ առաքեաց
յինքըն զանդամս իւր քեւ յօղեաց.
զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն
սեամբ քո հաստատեաց. տընտես
'ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ
շնորհօք քո զարդարեաց. մաքր-
րեա 'ի մեղաց ըզմեզ մե:

աձ Խոնարհեցար 'ի բարձանց եւ
մարմնացար 'ի կուսէն. որ նըստէ-
իր 'ի քրովբէս սրբարիչ ա-
րարածոց:

Երկինք չէին բաւական փառաց
անմահ անեղին. արգանդ կուսին
ժուժկալեալ ընդունել ըզ-
գանձ երկնային:

Յորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշ-
խէին մերձենալ. 'ի խանձարուրս
պատեցար եւ եդար 'ի մսուր
անբանից:

խաչ Այսօր խնդրէ պատուական
փայտ խաչին աւանդեալն 'ի գող-
գոթայ, 'ի ձեռն աստուածասէր
դշխոյին. եկայք հաւատացեալք
երկրպագեսցուք աստուածային
սուրբ նշանիս:

Այսօր ընծայէ գողգոթայ ըզծած-
կեալն 'ի յերկրի, վերաբերեալ ա-
նուշահոտ խնկովք, 'ի ձեռն ե-
րանելւոյն յուդայի. եկայք հա-
ւատացեալք երկրպագա:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Այսօր 'ի ձեռըն փրկական սուրբ
խաչին կենդանագործի պատանին մե-
ռեալ. եւ ողբայ սատանայ ըզկոր-
ծանումն իւր. իսկ մեք քրիստոսի
հաւատացեալք երկրպագա:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Արժանաւորաց քոց աղօթիւք
յիշեա ըզմեր ըզննջեցեալսն, յոր-
ժամ գայցես անձառ փառօք հա-
տուցանել մարդկան ըստ գործս.
եւ մեր ննջեցելոցն շնորհեա դա-
սիլ ընդ սուրբըս քո:

Աւագ կողմն:

Քեզ վայելէ աստուած օրհնու-
թիւն որ յանմատոյց աթոռ
անմահից փառաբանիս 'ի բարձունս.
ըզննջեցեալսն յանուն քո ըն-
կալ յերկնային քո սուրբ առա-
գաստ. որ միայնդ ես մարդասէր: բկ

Որ ունիս իշխանութիւն մահու
եւ կենաց, յիշեա զհոգիս ննջե-
ցելոց մերոց, եւ հանգո ընդ սուր-
բըս քո 'ի խորան քում սիրողաց.
որ միայնդ:

Որ յամենայնի ես օրհնեալ տէր.
արժանի արա ըզծառայս քո վե-
րստին նորոգման. 'ի լսել ըզ-
ձայն աստուածային փողոյն. ընդ
առաջ ելանել քոց փառացդ. որ
միայնդ ես:

Թագաւոր խաղաղութեան որ
քաղցրութեամբ խնամես զքո զա-
րարածս. յիշեա տէր զհոգիս ննջե-
ցելոցն սուրբըս քո. եւ դասա-
ւորեա 'ի յաւուրն այցելութեան:

Որ կոչեցեր 'ի դրանց մահու ըղձասիրելին քո զղազարոս, եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա տէ՛ր զհոգիս նոցին:

Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո տէ՛ր զհոգիս ննջեցելոյն ընդ սուրբս քո, եւ դասու:

Ի գիշերաց կանխեալ սաղմոսիւք եւ արտասուօք հայցեմք 'ի քէն քրիստոս, յիշեա՛ զննջեցեալսն 'ի սուրբ անուն քո, եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո:

Որ յանմարմնոց վերոհնիս, առ քեզ կարդամք և պաղատիմք քրիստոս. յիշեա՛:

ապչ կեր

Որ պատուիրան ճշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ քո քրիստոս, անհանգիստ ժամանակաւ աղօթել միշտ առ աստուած հոգւով եւ մտօք:

Որ ըղձան քո օրինաց հաստատեցեր գործով մեզ օրինակ. հանելով ըզգիշերն 'ի գլուխ յաղօթս աստուածոյ բնութեամբ մերով տնօրինաբար, որում կրկնի ծունր ամենայն:

Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ քեզ քրիստոս. շնորհեա մեզ յամենայն ժամ լինել քեզ յանդիման, մաքուր աղօթիւք ընդ անմարմնոցն որ յերկինս:

Աղաչանօք աստուածածնին անապական քում ծնողին, զմանալի անչափ սիրոյ մերոյ բացցես ողորմութեամբ հայրն 'ի լոյս քո քրիստոս:

Յամենայն ժամ աղաչանք իմ այս են, 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս տէր: ապչ

Յանցանաց իմոց զարհուրի սիրտ իմ. աղաչեմ ըզքեզ թող ինձ տէր:

Արտասուաց իմոց մի լռեր տէր. զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի:

Ողորմեա ինձ աստուած իմ ողորմեա ինձ. զի անպատասխանի եմ յամենայնի թող ինձ տէր: ապչ

Ճանապարհք քո ուղիղ են, ես միայն մոլորեցայ. դարձո զիս եւ ողորմեա ինձ աստուած:

Դատաստանք քո արդար են ես միայն եմ մեղուցեալ. քաւեա զիս եւ ողորմեա ինձ աս:

Ընկեալ եմք 'ի տեղի վշտալից. եւ աղաչեմք ըզքեզ աստուած ողորմեա: մրտ

Զաղաչանս մեր մի անտես առներ բարեխօսութեամբ սրբոց քոց, եւ ողոր:

Փրկեա զմեզ յարենէ եւ 'ի նեղչաց մերոց, բարե:

Իմաստուն կուսանքն պատրաստեալ իւղ լապտերաց, ելին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք: ղպգ

Իսկ յիմարաց կուսիցն ունայնացեալք 'ի յիւղոյ, անպատրաստ գտան դրընտեան փեսային շիջեալ լապտերօք:

Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր, զի մտցուք 'ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապ:

Ողորմեա ինձ աստուած իմ ողորմեա: յար

Որ 'ի յերկնից իջեր բանդ աստու-

ւած, եւ վասն մեր մարմնացար ՚ի սրբոյ կուսէն. ողորմ։

Որ ՚ի խաչին տարածեցեր զանձառ բազուկս քո, եւ վասն մեր հեղեր զարիւն քո սուրբ. ողորմ։

Որ ՚ի գերեզմանի եդար անապական, եւ յարուցեալ նորոգեցեր զաշխարհս. ողորմ։

Որ ՚ի յերկինս համբարձար ամենակարող, եւ ընդ աջմէ հօր նստար յաթոռ փառաց. ողորմ։

հոգ Իջեր տէր ողորմութեամբ քո յաշխարհ, եւ ըզմեռեալ բնութիւնս ՚ի կեանս վերափոխեցեր։

Ելեր տէր առ հայր փառօք ՚ի յերկինս, եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զհոգիդ։

Բացեր տէր այսօր ըզգանձդ երկնային եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բնութեանս։

ած Որ ողորմեցար ՚ի մեղս ծնեալ մարդկան հայր երկնաւոր ըստ մարգարէին. եւ ետուր բնութեանս այսօր պարգեւ ըզհոգին սուրբ ըզծնող որդւոյդ միածնի. մաղթանօք սորա տէր մեզ ողորմեա։

Որ ցօղեցեր ՚ի մեզ յամպոյ օրհնաց որդիդ այսօր զկոյսն մարիամ. յորմէ ծընար մարմնով եւ բարձեր նովաւ ըզմեղս նախաստեղծին ադամայ. մաղ։

Որ մաքրեցեր հոգիդ սուրբ ըզսիրտ եւ զմարմին մօր քո փառակցին. այսօր ամուլ ծնողաց նորին Ետուր ըզմայր բանին զօրհնիչն եւայի. մաղ։

խաչ Ճառագայթ փառաց հօր որդիդ միածին, որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ, այսօր ՚ի թաբօր փառօք փայլեցեր։

Որ անտես սրովբէից անհաս ՚ի վեր քան ըզլեան, ծառայի կերպիւ պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր, այսօր ՚ի թա։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեամբ, ՚ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական այսօր ՚ի թա։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Որ մարմնացար վասն մեր. աղաչանօք աստուածածնին քրիստոս. յիշեա զննջեցեալս ՚ի սուրբ անուանդ քո, եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

---

## Երրորդ ձայն

Ի ձայն մեծի զուարթնոյն եւ ՚ի հնչումն հրաշալի փողոյն, ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին, յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալս, եւ հանգո ընդ սուրբս քո։ գձ

Յորժամ նշան տէրունեան խաչ գայթիւք փայլի, եւ թագաւորըդ թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն, եւ հան։

Յորժամ ատեան դատաստանին դնի, եւ դըպրութիւնք հրաշէցն բանին. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ ըզմեր ըզննջեցեալ։

Որ երկայնամիտդ ես տէր. քաղցր եւ անոխակալ հանգո զհոգիս քոց ծառայից. զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին։

Զյիշատակ հրաժարելոյն 'ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զուխտըս մեր ընկալ որպէս զաբելին զնուէրն եւ զաբրահամուն. զի:

Ի խորան քում սիրողաց հանգուցես ընծայս քո, եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբըս քո. զի:

Որ խոնարհեցար յերկնից բանդ աստուած, եւ առեր մարմին 'ի սրբոյ կուսէն. յիշեա զննջեցեալսն մեր յորժամ գայցես անճառ փառօք. զի դու ես տէր ամենայն երկրի:

Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց, եւ խաչիւըդ քո լուծեր զերկունըս մահու. յիշ:

պչ կեր Որ արարեր զօրութեամբ զիմանալեացն աշխարհ վերին, եւ 'ի նմա հաստատեցեր տընտես ըզպետըս հրեղինացն. օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ:

Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի. եւ 'ի դրախտն որ յադենի տընտես եդեալ զմարդն առաջին. օրհ:

Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհրդեամբ. եւ 'ի սմա կարգեալ տընտես զքարոզս բանին ճշմարտութեան. օրհ:

Անտանելի տաղաւար բարձրոյ էիցըս բարձրոյն. որ ծընար զաստուած մարմնով զանմարմնաբար ծընունդըն հօր. բարեխօսեա վասըն մեր աստուածածին մարիամ:

պչ Զերծո զիս յորոգայթէ որսողին եւ յամենայն վտանգից ապրեցո եւ ողորմեա:

Յաներեւոյթ թշնամւոյն եւ 'ի գաղտնի նետից բանսարկուին պահեա եւ ող:

Փըրկեա զիս 'ի յանցանաց մեղաց իմոց, եւ նորոգեա զիս հոգւով զգաստութեան եւ ող:

Տուր մեղաց խոց զիս ալէկոծէ. պչ
որ ես նաւապետ բարի, շնորհեա ինձ նաւահանգիստ հայր ամենակալ:

Խորըք պատրանաց զիս կորուսանեն. այլ դու նաւապետ բարի, շնոր:

Որ միայն իշխանդ ես թողուլ ըզմեղս. եւ ես աղաչեմ ըզքեզ. տէր թող ինձ ըզմեղս իմ հայր ամե:

Որք 'ի մարմնի զանմարմնակա- մրտ
նացըն բերելով արութիւն համատոյ. պատերազմեցան ընդդէմ թշնամւոյն քո ճշմարիտ վըկայքն. բարեխօսութեամբ սոցա քրիստոս ողորմեա մեզ:

Որք զըսպառնալիս բռնաւորաց մահուամբ սրոյ եւ հրոյ համբերութեամբ յանձն առին յաղթեցին առաքինաբար քո ճշմարիտ վըկայքն. բա:

Որք 'ի զօրաց երկրաւորաց զինուորեալ քեզ երկնաւոր թագաւորիդ. դասակարգեցան ընդ հրեշտակս 'ի յերկինըս քո ճշմարիտ վըկայքն. բա:

Արկողդ ըզլոյս որպէս զօթոց. ղաղ
այսօր անճառ խոնարհութեամբ 'ի վերնատանըն խորհըրդոյ ըզգեստ ծառայի ըմփածանիլ յանձն առեր. օրհնեմք զեկեալդ 'ի կամաւոր չարչարանս:

Որում երկրպագեն դասք հրեշտակաց խոնարհեցար 'ի լուանալ զոտըս հողեղէնս, բըժըշկել սոքօք ըզգարշապարս նախահօրն. բըժըշկեա զհոգւոյ խոցս զհիւանդութիւն:

Որ 'ի խորհուրդըս փրկականս ե-
կեղեցւոյ բաշխեցեր աշակերտացն
ըզմարմինըդ քո, նորոգելով ըզ-
մահացեալսն 'ի ճաշակմանէ. հա-
ղորդս այսմ ընկալ ըզմեզ միայն
մարդասէր:

յար Յամենայնի բազումողորմ աս-
տուած. նայեաց յիս գթութեամբ
եւ խնայեա. զի դու միայն ես
մարդասէր:

Եւ խաչիւըդ քո կենարարաւ պահ-
հեա. եւ յարութեամբըդ քո փըր-
կեա եւ ապրեցո. զի դու մի:

Եւ 'ի միւսանգամ 'ի գալըստեան
քո տէր. վերըստին զիս նորոգեա
եւ ապրեցո. զի դու մի:

հոգ Որ համագոյդ ես հօր եւ որ-
դւոյ, անճառաբար բղխումն 'ի
միշտ էէն. այսօր բղխեցեր ջուր
կենդանի յերուսաղէմ. հոգի աս-
տուծոյ ողորմեա:

Որ արարչակից ես հօր եւ որդւոյ,
որով կենդանածնեալք 'ի ջրոյս
արարածք այսօր որդիս աստուծոյ
ծնանին 'ի ջրոց. հոգի աս:

Որ փառակից ես հօր եւ որդւոյ,
եւ քննես ըզխորս աստուծոյ.
այսօր խորագէտս իմաստից զյի-
մարս աշխարհի արարեր. հոգի
աստուծոյ ո:

ած Դասք անմարմնականք երկնա-
ւոր զօրացն, 'ի մէջ հովուացն
օրհնէին ըզծագումըն լուսոյ մե-
ծին 'ի հօրէ մեզ 'ի փրկութիւն:

Եւ մոգքն աստեղը նշանաւ
եկին 'ի բեթղեհէմ երկիր-
պագին տեառն, եւ 'ի յայրին մա-
տուցին ըզընծայս խորհրդոյ:

Եւ հովիւքն երգէին ընդ հրեշ-
տակըս, փառք 'ի բարձունս
մեծին աստուծոյ. որ եկիր եւ
փրկեցեր ըզտիեզերս քոյով յայտ-
նութեամբըդ:

Քեզ քրիստոսի կաթուղիկէ ե- խաչ
կեղեցւոյ շնորհողի զյաղթական
ըզպատուական զաստուածընկալ
սուրբ նշանս, մատուցանեմք զօր-
հներգութիւն միշտ 'ի բարձունս:

Սա կամաւ քո քրիստոս եւ թե-
ւօք ամենազօր սուրբ հոգւոյն, եւ
դասուք հրեշտակաց թռուցեալ ե-
կաւորի 'ի լեառըն փառագոյ բը-
նակիլ 'ի նմա:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Եկայք ժողովուրդք երկրպագես-
ցուք աստուածային սուրբ նշա-
նիս. համբարձէք միաբան ըզձե-
ռըս ձեր 'ի սրբութիւն, եւ ըզ-
բնակեալն 'ի սմա միշտ փառաւո-
րեսցուք:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Ի նըստիլ քո յաթենի դատաւոր
ահեղ. աղաչանօք սուրբ աստուա-
ծածնին յիշեա զննջեցեալսըն
մեր, յորժամ գայցես անճառ փա-
ռօք. քանզի քո են փառք
յաւիտեանս ամէն:

Վառ ձայն

Լոյս 'ի լուսոյ զմեզ լուսաւորեա, գկ
որ փառօք հօր հանդերձեալ
ես գալ 'ի դատել զերկիր. արժա-
նաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալսն
անճառ խոստմանց քոց ընդ սուր-
բըս քո:

Հօր եւ հոգւոյ համագոյակից, 'ի
տիեզերական ահեղ աւուրն ար-
ժանաւորեա եւ:

Երկնի եւ երկրի արդար դատաւոր, յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց, արժանաւորեա եւ։

Որ արարիչդ ես հրեղինաց եւ հողեղինաց. եւ մշտընջենաւոր փառաբանիս ՚ի բանաւոր պաշտօնէից. ՚ի քէն հայցեմք թողութիւն շնորհեա ննջեցելոց մերոց։

Որ ՚ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան բընակեցար. եւ զանմահութիւն պարգեւեցեր մեզ մահացելոցս. ՚ի քէն հայց։

Յորժամ նստիս յաթոռ փառաց դատողական իշխանութեամբ, եւ փառաւորես առ ՚ի քէն փառօք ըզգինս արեան քո տէր. ՚ի քէն հայց։

Որ անբաւ քո մարդասիրութեամբըդ գըթացար յազգըս մարդկան, ծընար ՚ի կուսէն. ըզծընեալըս սուրբ աւազանին ըզննջեցեալսըն մեր ընդ սուրբս քո հանգո թագաւոր յաւիտենից։

Որ ՚ի վերայ խաչին զենար որպէս գառն, եւ զմարմին եւ զարիւնդ քո բաշխեցեր ՚ի փըրկութիւն աշխարհի. զհաղորդեալս մարմնոյ քո եւ արեան, ըզննջեցեալսըն մեր ընդ սուրբս քո հանգո թա։

ապշ / կէր Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն հայր որդւոյդ միածնի, զոր առաքեցեր ՚ի դարձումըն մոլորեալ աշխարհին. դարձո եւ զմեզ ՚ի մեղաց որդւոյ քո չարչարանօք։

Գովեմք ըզքեզ բան եւ լոյս որ զտիրական քո պատկեր լուսով ճրագի քո գըտեալ վերականգնեցեր. կանգնեա զանկեալքըս մեղօք քոյին սուրբ չարչարանօք։

Բարեբանեմք զփառակիցըդ հօր զհոգիդ ճըշմարիտ. որ նորոգեցեր ըզհնացեալքս մեղօք հընոյն ադամայ. նորոգեա եւ զմեզ ՚ի մեղաց նորոգութեամբ քո շնորհաց։

Ուրախացիր բարձրելոյն հովանացեալ զօրութեամբ, եւ բնակարան սուրբ հոգւոյն որով ծընար զբանն աստուած. բարեխօսեա վասըն մեր աստուածածին մարիամ։

Քրիստոս մատըուած մատուցող. ողորմեա։ ապշ

Անօրէնութեամբ ՚ի մեղս երկնեաց զիս մայր իմ. աղաչեմ փըրկիչ. ողորմեա։

Վիրաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ փըրկիչ. մի անտես առներ. ողորմեա։

Մաքսաւորին հառաչանօք ՚ի տաճարին էառ ըզքաւութիւն. նոյնին ձայնիւն եւ ես գոչեմ. ողորմեա ինձ աստուած։ ապշ

Աւազակն աղաղակէր ՚ի խաչին, յիշեա զիս տէր. նո։

Անառակ որդին աղերսանօք աղաչէր ըզքեզ, հայր մեղայ յերկինս եւ առաջի քո. նովին։

Նայեաց ՚ի մեզ եւ ողորմեա մեզ քրիստոս, որ ունիս բազում գըթութիւն։ մրտ

Որ հայրդ ես որբոց եւ դատաւոր այրեաց քրիստոս, որ ու։

Որ պըսակիչդ ես սրբոց, լուր եւ մեզ աղօթիւք սոցա քրիստոս, որ ունիս բա։

Շնորհեա մեզ տէր ընդ աղքատաց օրինակին զանզարու ժուժկա- ղաղ

ղութիւն. զի կամաւոր աղքատութեամբ արքայութեանդ երկնից ընդ նմին լիցուք արժանի. լուր մեզ եւ ողորմեա քրիստոս աստուած։

Որ փոխանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան նմա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն անգթութեան 'ի գոգն աբրահամու զնա ընկալար. լուր մեզ եւ ողոր։

Լուսաւորեա զաչս սրտից ստանալ մեզ ողորմութեամբ 'ի քէն տէր զողորմութիւն. զի մի ընդ մեծատանն հայցեսցուք 'ի բոց հնոցին ծագիւ մատին ջուր 'ի զովացումն. լուր մեզ եւ ողոր։

յար Որ տրտմակցորդ քո չարչարանօք խաչին ազատեցեր զմարդն 'ի տրտմազգեաց փայտէն եւ 'ի մեղսաճաշակ պտղոյն. քրիստոս աստուած եւ մեզ ողորմեա։

Որ մահուամբ քո կենդանի եւ մեռելութեամբքն յերկրի նորոգեցեր դարձեալ զաշխարհս եւ զհողացեալ բնութիւնս. քրիստոս աստուած եւ։

Որ երեքօրեայ յարութեամբ քո եւ համբարձմամբդ յերկինս վերածեր զմարդն առ կենաց փայտն եւ յանմահական ճաշակն. քրիստոս աս։

հոգ Զանսկզբնաբար բղխումն 'ի հօրէ զհոգին ճշմարիտ. որ հնչմամբ ձայնի էջ 'ի վերնատունն այսօր նման սաստիկ հողմոյ. զոր փառաւորեմք հոգեւոր երգով։

Զհամագոյակիցն հօր եւ որդւոյ զբաշխողն շնորհաց. որ 'ի հրեղէն լեզուս բաժանեալ զանձն ընտրութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. զոր փառ։

Զաղբիւրն իմաստութեան ըզկատարեալն անձնաւորութեամբ. որ խօսեցաւ յօրէնս եւ 'ի մարգարէս եւ յաւետարանս. զոր փա։

Աստուածածին խորան լուսոյ անվայրափակ արփւոյն կենաց. որ եղեր արեւելք արեգականն արդարութեան. եւ նստելոցս 'ի խաւարի լոյս ծագեցեր. վասն որոյ ամենեքեան զքեզ միշտ մեծացուցանեմք։ ած

Անապական տաճար եւ մորենի անկիզելի. որ զանճառ հուր աստուածութեանն 'ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն որոյ ամենեքեան զք։

Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտիս. որով երկինք յերկիր անձրեւեաց հորդեալ հոգւով 'ի քեզ տրպաւորեալ բանին. վասն որոյ ամե։

Ով պահապան որ ծագեցար յեդեմայ, նշան յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն։ խաչ

Դու փակելոյ դրախտին բացող եւ առաջնորդ աւազակին. որ զբոցեղէն սուրն կապտեաց անեղին հրամանաւ։

**Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ։**

Քեւ ցնծան բատրայինքս ամենայն 'ի միւսանգամ քո գալստեանն. եւ յաւէժ զուարճանան դասք անմարմնոցն առ էիցս։

**Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։**

Որ ըստ նմանութեան մահու քո տնկակիցս արարեր, եւ երկնից արքայութեանդ ժառանգորդ լի-

նել խոստացար. զհաւատա-
ցեալս գալըստեան քո տէր
ըզնընջեցեալսն մեր ընդ սուր-
բըս քո հանգո թագաւոր յա-
ւիտենից:

Չորրորդ ձայն:

գձ Քանզի զքեզ օրհնեն իշխա-
նութիւնք երկնից, թագաւոր
փառաց ամենակալ ամենակարող.
Թող ըզմեղըս մեր ննջեցելոցն,
եւ հանգո 'ի խորանի քում 'ի յար-
քայական 'ի հանգըստեան:

Որ 'ի նախնումն ըզմարգարէին մով-
սէս լուսաւորեցեր աստուածային
փառօք տեսլեամբ աստուածու-
թեանդ քո. լուսաւորեա եւ ըզ-
մեր ըզնընջեցեալսն, եւ հանգո
'ի խորս:

Բարեխօսութեամբ սուրբ աս-
տուածածնի ծընողի եւ մօր քո
յիշեա զգինս արեան քո տէր,
եւ դասաւորեա յերանաւէտ յան-
թառամ եւ յանարըտում 'ի
կեանսդ 'ի յար:

Փառըք քեզ հայր, որ կենարարդ
ես մարմնոց եւ գոյացուցիչ հո-
գւոց. ընկալ զօրհնաբանող հո-
գիս յանմահական քո հանգիստդ:

Մարդասիրի հօր որդի, որ պատ-
կերանկից եղեր հողեղինացս եւ
խաչեցար. ընկալ:

Ամենազօր սուրբ հոգի, որ ան-
դորրիչ ես նեղելոց եւ մխիթա-
րիչ հոգւոց. ընկալ:

Ի հանգիստ քո տէր, ուր ամե-
նայն սուրբքըդ քո հանգչին. հան-
գո զհոգիս ծառայից քոց ընդ սուր-
բըս քո մարդասէր:

Դու աստըւած որ իջեր 'ի դը-
ժոխս, զերկունըս մահու լուծեր,
ըզկապեալսն արձակեցեր. եւ զհո-
գիս ծառայից քոց հանգո ընդ:

Որ զօրէնըս սըրբութեան պա- ապշ կեր
հոց նախ 'ի դրախտին աւանդե-
ցեր. զոր ոչ պահելով նախաստեղ-
ծիցըն ճաշակմամբ պըտղոյն ճաշա-
կեցին ըզդառնութիւն մեղաց եւ
մահու. վասն որոյ շնորհեա մեզ
տէր ճաշակել ըզքաղցրութիւն
քոց պատուիրանաց:

Որ զանալուն վիրօք մեղաց հարաք
յոգիս 'ի թըշնամւոյն. եւ 'ի բազ-
մապատիկ հիւանդութիւնս կա-
րօտացաք մարդասիրիդ բառնալոյ
ըզցաւըս մեր. վասն որոյ բըժըշ-
կեա ըզմեզ քրիստոս որպէս մար-
դասէր:

Որ եկիր 'ի փըրկութիւն մարդկան
ծնընդեամբ կուսին մարիամու. եւ
կենդանարար քո յարութեամբդ
հրաւիրեցեր ըզմահացեալըս 'ի յա-
րութիւն անմահութեան. վասն
որոյ աղաչանօք մօր քո կեցո
զմեզ փըրկիչ:

Համբառնամ առ քեզ տէր զաչս ապշ
իմ, նայեա յիս գըթութեամբըդ
քո, եւ ողորմեա:

Դու ես յոյս եւ ապաւէն իմ, զեր-
ծո զիս յորոգայթէ մեղաց, եւ ո:

Ապրեցուցիչ իմ եւ փըրկիչ իմ,
ապրեցո զիս յորոգայթէ մեղաց,
եւ ողորմեա:

Բազմութեամբ յանցանօք ծան- ապշ
րաբեռնեալ է անձն իմ. միայնոյ
քեզ մարդասիրի աղաչեմ. ողորմեա
ինձ աստըւած:

Բըղխմամբ արտասուաց եւ հառա-
չանօք սըրտի իմոյ անդադար հայ-

ցեմ բազմամեղութեամբ. քաւեա զիս աստուած։

Բազմագութ մարդասէր շնորհեա զթողութիւն խոց յանցանաց. զի առ քեզ միայն պաղատիմ. քաւեա զիս աստուած։

մրտ Ըզքեզ սիրողաց որդի աստուծոյ պատուելոյ ըզյիշատակս արժանի սրա, եւ աղօթիւք սոցա ողորմեա մեզ։

Որք փորձեցան ՚ի փորձ սրոյ եւ հրոյ, եւ ՚ի քո պատուիրանաց երբեք ոչ խոտորեցան. աղօ։

Եղեն տաճար սրբութեան անմահ բանին, եւ ըզգանձըս հոգեւորս աստանօր պատրաստեցին. աղօթիւք սոցա։

ղպղ Զգալուստ քո քրիստոս այսօր յերուսաղէմ նոր եկեղեցի սուրբ, յաղթական երգով բարեբանեմք. օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

Որ վայելն մերոյ փրկութեան յաւանակի նստիլ յանձն առեր, ընդ մանկունսըն բարեբանեմք. օրհնեալ եկ։

Թագաւոր երկնաւոր զեկեղեցի քո անշարժ պահեա, եւ զերկրպագուս անուանըդ քում պահեա ՚ի խաղաղութեան։

յար Զյարութիւն աստուածորդւոյն հրեշտակապետն այսօր աւետէր կանանցն ասելով, յարուցեալ է տէրն ՚ի գերեզմանէն։

Ընթացեալ կանանցըն խնդութեամբ պատմէին աշակերտացն ասելով, յարու։

Վասն որոյ եւ մեք ընդ հրեշտակին գոչեսցուք զյարութիւնըն քրիստոսի, որ փրկեացն ըզմեզ ՚ի ձեռաց մահու։

Ամպեղէն աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ ՚ի բարձանց, ՚ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն, մինչդեռ նստէին ՚ի սուրբ վերնատանն։ հոգ

Անհիւթական աղաւնի, անքըննելի որ քննէ ըզխորս աստուծոյ. զոր առեալ ՚ի հօրէ պատմէ զահաւոր եւ ըզմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համագոյական։

Օրհնութիւն ՚ի բարձունս, ելողին ՚ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս ՚ի յերկինս։

Ծագումն հրաշալի որ անյայտ էր ՚ի մէնջ. եւ բանըն հայրական անմարմնելի. հուր փայլակնացեալ եւ ՚ի մարմնի բնակեցաւ անվնաս պահելով զարարածս ամենայն։ ած

Ծագումն հրաշագործ որ ՚ի կուսէն ծագեցաւ, ճառագայթելով զարարածս ամենայն. երկինք ցընծային եւ երկիր ուրախանայր. եւ քրիստոս աստուած ընդ մարդկան շրջեցաւ։

Առ քեզ ապաւինիմք ամենասուրբուհի. գերագոյն եւ հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային բանին։

Զօրութիւն սուրբ խաչի քո քրիստոս որ կանգնեցեր ՚ի փըրկութիւն աշխարհի. սա պահեսցէ ըզմեզ յամենայն փորձութենէ։ խաչ

Քանզի 'ի սմա բարձրացար աստուած, եւ 'ի սմա հեղեր ըզպատուական սուրբ զարիւնըդ. սա:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Եւ ըզքո միւսանգամ ըզգալուստդ նըշանաւ խաչի քո ցուցեր աշխարհի. սա:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից:

Ընդ հոգւոցն արդարոց կատարելոց եւ զհոգիս ծառայից քոց ընդ սուրբըս քո հանգո մարդասէր:

Վերջ ձայն

դկ Հայր անսկիզբըն բարեխնամ մարդասէր. որ ստեղծիչդ ես հոգւոց եւ մարմնոց. յիշեա զննջեցեալսն մեր եւ հանգո ընդ սուրբս քո:

Որդիդ միածին որ գըթածդ ես առ ամենեսեան. եւ խաչիւ եւ արեամբ գնեցեր ըզքո ժողովուրդս. յիշեա զգինս արեան քո տէր, եւ հան:

Հոգիդ ճըշմարիտ որ աղբիւրդ ես անըսպառելի, եւ լըցուցիչ ամենայն բարութեանց. յիշեա զնըն:

Խընդրեմք 'ի քէն թագաւոր փառաց փառաւորեալդ 'ի զուարթնոց. ըզննջեցեալսն մեր ընկալ մարդասէր տէր, եւ հանգո ընդ սուրբս քո:

Յորժամ գաս փառօք հօր դատել զերկիր արդարութեան արեգակն. ըզննջեցեալսն մեր ըն:

Ի նըստիլ քո յաթենի դատաւոր ահեղ քրիստոս փըրկիչ մեր եւ յոյս. ըզննջեցեալսն մեր ըն:

Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ 'ի հրեղէն կառս. յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո ընդ սուրբս քո:

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան եւ ներող յանցանաց մերոց. յիշեա զհո:

Բանն որ ընդ հօր յէութեան եւ համագոյ սուրբ հոգւոյն ըզպատկերն նուրական խառնեալ ընդ հողանիւթ բընութեանս. զոր զարդարեալ փառօք եդ 'ի դրախտին փափկութեան: ապչ կեր

Յորում ցընծայր զուարճացեալ անտրտմական խնդութեամբ. քանզի զաստուած տեսանէր միշտ խոնարհեալ 'ի դրախտին. յորմէ զլուսոյն ճառագայթ տըպաւորէր 'ի յինքեան:

Վասն որոյ աղաչեա մայր աստուածոյ մարիամ զմիածին քո զորդին զի շնորհեսցէ ըստ աւազակին, ժառանգել վերըստին մեզ ըզդրախտին վայելչութիւն:

Քրիստոս աստուած յոյս ապաշխարողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց: ապչ

Առ քեզ բազմագութ ապաւինեալ կարդամք. մի մերժեր ըզմեզ յողորմութենէ քումմէ:

Որպէս զանառակն ընդունեցեր առ քեզ. յիշեա եւ զիս տէր 'ի քում արքայութեանդ:

Ըզմեղս իմ խոստովան լինիմ առ քեզ քրիստոս, որ միայնդ ես բազմագութ թողութեամբ. ողորմեա ինձ աստուած: ապչ

Դու տէր որ ճըշմարտութեանց ես սիրող, եւ քըննես ըզծածուկս գաղտնեաց սըրտի իմոյ. ողոր:

Տուր ինձ ցնծութիւն փրկութեան, եւ հոգւով տէրութեանդ քո հաստատեա զիս. եւ ողոր:

մրտ Զողորմութեան քո զդուռն բաց մեզ տէր. եւ արժանի արա զմեզ լուսեղէն յարկաց քոց ընդ սուրբս քո:

Ի պատրաստեալ քո յօթեւանսն սրբոց քոց ընկալ եւ զմեզ փրկիչ յորդեգրութիւն 'ի դպրութեան կենաց:

Ի նստիլ քո յատենի դատաւոր ահեղ խնայեա յարարածս քո, բարեխօսութեամբ եւ աղօթիւք սուրբ Ծննդաւորացն:

զաղ Յիսուս միածին անմահութեանց պարգեւատուն երեւեցաւ մեզ, խափանեաց զզօրութիւն մահու:

Բղխմամբ արտասուաց Մարեամու եւ Մարթայի անկեալ առ ոտսն տեառն, խնդրէին զնորոգումն եղբօրն:

Բանիւ բանն աստուած կենագործեաց զՂազարոս 'ի թաղմանէն, եւ եկեալ արտաքս անապական:

յար Յորժամ եկին 'ի գերեզմանն իւղաբեր կանայքն, եւ բերին զխունկսն 'ի խնկել զանապական մարմինն:

Յայնժամ հրեշտակն աւետարանէր յարութեան քրիստոսի. պատմեցէք աշակերտացն զյարութիւնն տեառն

Իսկ նոցա զարհուրեալ վասն ահագին տեսլեանն. պատմէին աշակերտացն զահագին տեսիլն:

հոգ Ի համբառնալ բանին յերկինս եւ 'ի նստիլ ընդ աջմէ հօր, զուարճացեալ առաքելոցն երկրպագէին. օրհնելով զհայր զառաքող բանին:

Համահաւասարեալ գունդքս սրբոցն 'ի վերնատանն խորհրդոյ, համբարձմամբ անչափ սպասէին հոգւոյն. օրհնեն:

Յանկարծահաս հնչմամբ հեղեալ կենդանարար աղբիւր լուսոյ. անմահական կենաց լուսով զարդարեալ. որք օրհնէին զհայր զառաքող հոգւոյն:

Աստուածածին մայր եւ կոյս ծագող արեգականն արդարութեան, որ լուսաւորեացն զմեզ, հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք զմիածին քո զորդին: ած

Նորոգ զօրէնս բնութեան մարդկան հրաշափառ քո ծնունդ, եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ, եւ կուսութեանդ քո ոչ խախտեցան կնիք. հոգե:

Զքեզ մորենի անկէզ, լեառն վիմածին դուռն փակեալ եւ ամբիծ կնքեալ. նախատեսացն գուշակեալ մայր եւ կոյս. հոգե:

Աշխարհ քո քրիստոս երկրպագէն արարածք ամենայն, որ 'ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սա եղիցի մեզ պահապան յաղթող, ապրեցուցանել զմեզ 'ի պատրանաց բանսարկուին: խաչ

Ի սմա բարձրացար բարձողդ անիծից, որ փառաւորեալդ ես ընդ հօր. ժողովել զհեռացեալսն կենաբեր փայտիւն. ապրե:

Փառք հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ:

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա սպասէին արդե-

լեալքն ՚ի մեղսասէր բանտին. որ ազատեաց ըզմեզ ՚ի պատրանաց բանսարկուին։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Ո՞ր միւսանգամ գալոց ես հայրենի փառօքդ նորոգել զնախաստեղծին ծընունդ. յիշեա՛ զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո ընդ սուրբըս քո։



# ԿԱՆՈՆ

## ՀԱՆԳՍՏԵԱՆ ՀԱՐՑԻՑՆ
## ԸՍՏ ՈՒԹՆ ՁԱՅՆԻՑ ԿԱՐԳԱՒ

Հարց՝ Առաջին ձայն։

հրց առձ Օրհնեա՛լ ես դու քրիստոս, որ յարեար ՚ի մեռելոց ողորմած եւ կոխեցեր ըզմահ. տէր աստուած հարցըն մերոց։

Որ մահկանացուացս կեանքդ ես. զհոգիս ննջեցելոց մեր ընկալ. տէր աստը։

Զորս փոխեցեր յաշխարհըն կենդանեաց, հանգըստեան արժանաւորեա. տէր աստը։

գ Ըզտէր օրհնեցէք, եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Ն՟ցէք. Որ գալոցն է զօրութեամբ բազմաւ. ազդմամբ ձայնի կենագործէ ըզննջեցեալսն. ըզտէր։

Ն՟ացէ. Աղաչեմք ըզքեզ բարերար. հանգո զհոգիս ծառայից քոց ընդ սուրբըս քո. օրհնեսցուք եւ բարձր արասցուք զանուն քո յաւիտեան։

մեծ Յարուցելոյն ՚ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս, որ ըզննջեցեալսըն յադամայ կենագործէ անապական. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ՚ի կանայս։

Անարատին երկնի եւ երկրի եղեր տաճար եւ անապատ, որ ըզննջեցեալսն մեր հրեղէն նորոգէ. զքեզ մեծ։

Կերպակրողին տիեզերաց արբուցեր ըզքո սուրբ ըզկաթն, որ ըզննջեցեալսն մեր վերըստին նորոգէ. զքեզ մեծ։

Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո տէր պատուեցեր ըզմեզ. ընկալ եւ այժմ ըզննջեցեալսն ՚ի քեզ ուղիղ հաւատով, ըստ մեծի քում ողորմութեան։ ողր

Որ շնորհօք սուրբ հոգւոյն լուսաւորեցեր, յիշատակի իւրեանց զհոգիս նոցա ընկալ մարդասէր, ըստ մեծի քում ողոր։

Որք հաղորդեցան մարմնոյ եւ արեան քո տէր. հանգո զհոգիս նոցա ընդ սուրբըս քո քրիստոս աստուած. քանզի գինք սուրբ արեան քո են։

Քեզ վայելէ աստուած օրհնութիւն, որ յարութիւնդ ես ձայնիւ յաւիտենից ննջեցելոցն. թագաւոր եւ իշխան վերօրհնեմք ըզքեզ։ տէր

Ի միւսանգամ գալըստեանն քո քրիստոս փառաց թագաւոր ՚ի ձայն փողոյ նորոգին հոգիք ննջեցելոցն, եւ յառնեն ՚ի մեռելոց անապական մարմնով։

Վասն որոյ եւ մեք ըզքեզ աղաչեմք հայր երկնաւոր. դասաւորեա ըզննջեցեալսն մեր ՚ի վերինն քո երուսաղէմ, ՚ի ժողովս անդրանկաց գրելոց ՚ի յերկինս։

տէր Զայն արկեալ կենարարին աստուածային բարբառովն, ասէ. եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն 'ի հանդերձեալ երկրին։

Ընդ առաջ ելանել քեզ հաւատով 'ի յօդըս վերինս, աստուածազգեայց լուսով պայծառացեալ 'ի դասս անմարմնոցն. 'ի լսել ըզձայն երանաւէտ կոչմանն։

Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանսն, 'ի լուսեղէն առագաստին պայծառացեալ 'ի դասս անմարմնոցն, 'ի ժողովս անդրանկաց գրելոց 'ի յերկինս։

տէր Զհոգիս ծառայից քոց քրիստոս, ընկալ 'ի դասս անդրանկաց գրելոց 'ի յերկինս։

Ընկալ վասըն սոցա ըզբանաւոր պատարագս 'ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում։

Հաշտեա 'ի ձեռըն սուրբ մարմնոյ եւ արեան քո տէր. եւ պարգեւեա նոցա դասել յաջակողմեանն քո։

տէր Որ անճառ անօրէնութեամբ 'ի փրկութիւն ազգի մարդկան խոնարհեցար բանդ աստուած. այսօր հանգո և ըզմեր ըզննջեցեալսն ընդ սուրբս քո. որ միայն ես մարդասէր։

Որ անչարչարելիդ մարմնով եկիր կամաւ 'ի չարչարանս, եւ 'ի խաչին բեւեռեցար. հեղեր զարիւնդ 'ի փրկութիւն. այսօր հան։

Որ թաղմամբ երեքօրեայ ըզզօրութիւն մահու լուծեր, եւ կոխեցեր ըզիշխանն մահու, եւ վերածեր ըզննջեցեալսն. այսօր։

Որ հրաւիրեցեր յանմահութիւն զազգըս մարդկան անմահութեանց բաշխող քրիստոս, աղաչանօք աստուածածնին, այսօր։

Հարց՝ Առաջին կողմ:

Գոհաբանեմք ըզքեզ յաղթական երգով թագաւոր փառաց, որ կամաւոր խոնարհութեամբդ քո իջեր 'ի փրկել ըզպատրեալսն 'ի ճաշակմանէ. օրհնեմք ըզքեզ աստուած հայրցըն մերոց։ հրց ակ

Որ լուծեր ըզմահ եւ վերածեր ըզննջեցեալսն 'ի դժոխոց անչընչութեամբըն քո 'ի վերայ խաչին, եւ իջանելով քո 'ի գերեզման թագաւոր անմահ. օրհ։

Որ նըստար ընդ աջմէ հօր, եւ հրաւիրեցեր առ քեզ ըզդասուանողըս քո. արժանաւորեա եւ ըզմեր ըզննջեցեալսըն դասակից լինել սրբոց քոց. օրհ։

Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ փառօք հօր հանդերձեալ է գալ 'ի դատել զերկիր, եւ բիւրաւոր բանակըք վերին զուարթնոցըն կարապետք լինին գալստեան նորա բարձր ա։

Որ ահագին գողմամբ զարհուրեցուցանէ զարարածս 'ի գալստեան իւրոյ, եւ քաջահընչող ձայնիւ փողոյն համահաւաքէ ըզննջեցեալսն որ յադամայ բա։

Աղաչեսցուք ըզկենարարըն մեր, որ դատաւոր է կենդանեաց եւ մեռելոց. զի արժանի արասցէ ըզննջեցեալսըն մեր մըտանել

'ի յառագաստ ընդ իմաստուն կուսանացն. բարձր արա։

մեծ Անարատ տաճար բնակարան անեղական բանին աստուծոյ, մարիամ սուրբ կոյս, զքեզ եւ զծնեալն 'ի քէն մեծացուցանեմք։

Յարգանդի կրեցեր որ յառաջ քան զյաւիտեանս 'ի հօրէ բղխեալն, եւ ծնար մարմնով. զքեզ։

Արդ խնդրեմք 'ի քէն անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց, առ որդին քո միածին, փրկել զմեզ 'ի փորձութենէ եւ յամենայն վտանգից մերոց։

ողր Արարիչ աստուած եւ ըստեղծիչ ազգի մարդկան մի անտես առներ ըզննջեցեալսն մեր. այլ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

Որդիդ միածին յարութիւն տիեզերաց. մի ան։

Հոգիդ ճշմարիտ մխիթարիչ սգաւորաց. մի ան։

տէր Ձեռքդ քո արարին եւ ըստեղծին զիս 'ի հողոյ. 'ի յօրհնել զքեզ աստուած յաւիտեան։

Իսկ պատրանօք բանսարկուին խափանեցայ յանճառ լուսոյն, եւ դարձայ անդրէն 'ի հող յորմէ ստեղծայ։

Մխիթարիչ սուրբ հոգի լուսաւորեա զմեր ննջեցեալսն, եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

տէր Հայր անոխակալ եւ բարեգութ, մաղթելով հայցեմք 'ի քէն վասն մեր ննջեցելոցն արժանաւորել հանգստեան օթեվանին սրբոցն։

Անճառ ծնունդ հօր որդի, որ մահկանացուացս կեանքդ ես, զհոգիս ննջեցելոց մեր ընկալ եւ արժանաւորեա. հան։

Եւ նորոգող սուրբ հոգի, յորժամ նորոգես զապականեալսն, յայնժամ շնորհեա և մեր ննջեցելոցն արժանաւորել հանգստեան օթեվանին սրբոցն։

Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութիւն առնելով տիեզերաց 'ի դատաստանն ահաւոր. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ զմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո։ տէր

Յորժամ ճառագայթք աստուածութեանդ փայլին 'ի յարեւելից. եւ զօրութիւնք հրաշէկըն բանին. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ։

Զարհուրեալ դողան արարածք 'ի ձայնէ սոսկալի փողոյն. յորժամ հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ 'ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ զմեր ըզննջեցեալսն. եւ հան։

Հարց. Երկրորդ ձայն:

Որ թագաւոր ես թագաւորաց, եւ բաշխող կենդանութեան ազգի մարդկան. այսօր մարդասիրութեամբդ քո զննջեցեալսն մեր ընկալ, եւ հանգո ընդ սուրբս քո, աստուած հարցն մերոց։ հրց բձ

Որ յահաւոր եւ յանպախաղաց գալստեան քո տէր զարթուցանես զննջեցեալսն 'ի բարբառ փողոյն. յայնժամ երանաւէտ կոչմամբ զննջեցեալսն մեր ընկալ, եւ հան։

Եւ յահագին ձայնէ գոչմանցն զարհուրին գերեզմանք ունայնացեալք. յայնժամ աստուածային լուսով պայծառացեալ ննջեցեալքն մեր, եւ հան։

գ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։

Զառաքեալն 'ի հօրէ զմխիթարիչ հոգւոյ հանգուցելոցն օրհ։

Եւ 'ի բիւրաւոր բանակս հրեշտակաց միաւորէ զհաւատացեալս անուան իւրոյ, դասաւորելով յաջակողմեան դասուն. եւ բարձր արա։

մեծ Ըզքեզ ամենօրհնեալդ աստուածածին մայրդ լուսոյ եւ առագաստ աստուծոյ բանին, մեծացուցանեմք։

Ըզքեզ պայծառ երկինք եւ ամպ լուսեղէն, ծնօղ արարչին եւ մօրենի անկիզելի, մեծա։

Ըզքեզ դուռն երկնից եւ ճանապարհ արքայութեան, բարձող անիծից եւ սրովբէ հողեղէն, մեծա։

ողր Որ կոչեցեր առ քեզ տէր զտիեզերս ամենայն, ընկալ զմեր ըզննջեցեալսն 'ի գոգ նահապետին աբրահամու, ողորմած տէր փրկիչ եւ բարերար։

Որ թողութեանց ես տուող աստուած, թող զմեղս մեր ննջեցելոցն, կարօղ յամենայնի եւ հզօր. ողոր։

Որ լուսատու ես տիեզերաց քրիստոս աստուած, լուսաւորեա եւ զմեր ըզննջեցեալսն լուսով երանաւէտ զուարթնոցն. ողոր։

տէր Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զերրորդութիւնն, փառաւորելով զհայր. որ վերակոչեաց զամենեսեան 'ի մահուանէ յանմահութիւն։

Երգեցէք տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց, քրիստոսի երկրպագելով. որ վերա։

Սրբասաց ձայնիւն օրհնեսցուք, հոգեւորական հրճուանօք զովեսցուք, սուրբ զհոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամե։

Ի ձայն փողոյ գալստեան քո տէր, ամենայն հոգիք զարթիցեն կալ 'ի դատաստանի քում քրիստոս աստուած մեր։ տէր

Յորժամ հնչէ բարբառն ահագին, եւ հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմք փառք գալստեան քո տէր։

Յորժամ առնես հատուցումն տէր, եւ սուրբք քո պարծեսցին 'ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փրկիչ կալ 'ի յաջմէ քումմէ։

Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից, մարդասիրութեամբդ քո խնայեա յանձինս մեր. ստեղծիչ կենդանեաց եւ հանգուցիչ ննջեցելոց։ տէր

Ի խաչին բեւեռեցար զմահու լուծեր զիշխանութիւն. յաւիտենից ըզննջեցեալսն վերածեր յանմահ 'ի կեանս. ստեղ։

Արժանաւորաց քոց աղօթիւք յիշեա զմեր ըզննջեցեալսն, յորժամ գայցես անճառ փառօք հատուցանել մարդկան ըստ գործս. եւ մեր ննջեցելոցն շնորհեա դասիլ ընդ սուրբս քո։

Հարց՝ Աւագ կողմն:

հրց բկ Արարիչ եւ մարդասէր տէր, որ վասըն մեր ըզմահ ճաշակեցեր. տէր աստուած հարցըն մերոց։

Որ խոստացար հաւատացելոց ննջեցելոց յանուն քո ըզկեանս. տէր աստուած հար։

Այդ խնդրեմք 'ի քէն մարդասէր տէր. զհոգիս ննջեցելոց դասեա ընդ սուրբըս քո. տէր։

գ Ըզտէր օրհնեցէք. Բարձր արարէք ըզնըստեալն 'ի յաթոռ փառաց անդադար հոգեւոր երգով։

Որ գալոցն է ընդ ամպս երկնից 'ի նորոգել զերեսս երկրի. բար։

Ի գոչել աստուածային փողոյն զարթուցանել ըզննջեցեալսն հանդերձ կենդանեօք. բար։

մեծ Մայր լուսոյն Մարիամ անհարսնացեալ, օրհնեալդ 'ի կանայս։

Զլոյսն անստուեր յարգանդի կրեցեր, օրհ։

Մի դադարիր վասըն մեր բարեխօսել, օրհ։

ողբ Որ որդիդ ես եւ բանդ աստուած հաւասարակից ընդ հօր յէութեան, առ քեզ կարդամք մարդասէր. հանգո զհոգիս ննջեցելոց մեր ընդ սուրբըս քո։

Որ իջեր յերկնից վասըն մեր, զառաջինն առեր զյանցանսն ադամայ, մերով բնութեամբ բարձեր 'ի վերայ խաչին անարատ ձեռօք. հանգո զհոգիս ննջե։

Որ լուծեր զիշխանութիւն մահու կամաւորական մահուամբ քո քրիստոս. բանաւորաց զաղաչանս առաջի քո հեղեալ մաղթեմք. հանգո զհո։

Քեզ վայելէ աստուած օրհնութիւն որ յանմատոյց աթոռ անմահից փառաբանիս 'ի բարձունս. ըզննջեցեալսըն յանուն քո ընկալ յերկնային քո սուրբ առագաստ. որ միայնդ ես մարդասէր։ տէր

Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց, յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո ընդ սուրբըս քո 'ի խորան քում սիրողաց. որ միայնդ։

Որ յամենայնի ես օրհնեալ տէր. արժանի արա ըզծառայս քո վերըստին նորոգման. 'ի լսել ըզձայն աստուածային փողոյն. ընդ առաջ ելանել քոց փառացդ. որ միայնդ ես։

Թագաւոր խաղաղութեան որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբըս քո. եւ դասաւորեա 'ի յաւուրն այցելութեան։ տէր

Որ կոչեցեր 'ի դրանց մահու ըզսիրելին քո զղազարոս, եւ ծանուցեր զաստուածութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա տէր զհոգիս ննջե։

Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբըս քո, եւ դասաւո։

Ի գիշերաց կանխեալ սաղմոսիւք եւ արտասուօք հայցեմք 'ի քէն քրիստոս, յիշեա զննջեցեալսն 'ի սուրբ անուանըդ քո, եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբըս քո։ տէր

Որ յանմարմնոց վերրօրհնիս, առ

քեզ կարդամք և պաղատիմք քրիս-
տոս. յիշեա:

Որ մարմնացար վասն մեր. աղա-
չանօք աստուածածնին քրիստոս.
յիշեա զննջեցեալսն ՚ի սուրբ
անուն քո, և հանգո զհոգիս
նոցա ընդ սուրբս քո:

տէր Որ հայրդ ես բարեխնամ գը-
թա ՚ի մեր ննջեցեալսն. և պար-
գևեա մեզ փառս տալ անուա-
նդ քում սրբոյ:

Որ հրաւիրողդ ես կոչեցելոց ընդ
աջմէ դասելոցն կարգեա և զզ-
մեր ննջեցեալսն, և պարգևեա
մեզ փառս տալ ան:

Որ նորոգողդ ես ազգի մարդկան,
արա արժանի և զմեր զննջե-
ցեալսն ընդ բազմելոցն աբրահամու
փառս տալ ան:

տէր Գալոց է միածինն փողով և
փառօք հօր, և զհողեղէն բնու-
թիւնս հրեղէն նորոգէ:

Լուսաւոր են ճանապարհք արդա-
րոց, և ՚ի բիւրաւոր բանակս
հրեշտակաց ամպովք ընթանան:

Ի վերին երուսաղէմ թռչին
ամպովք ընդ առաջ տեառըն յօդս.
և այնպէս յամենայն ժամ ընդ
տեառըն լինին:

Սաղմոս. Գլ. 22. Տէր հովուեսցէ զիս:

Պատրաստ արարեր առաջի
իմ զսեղան. ակըն յանդիման
նեղչաց իմոց:

Սաղմոս. Գլ. 22. Օծեր իւղով զգլուխ իմ:

Օծեր իւղով զգլուխ իմ.
բաժակ քո որպէս անապակ արբե-
ցոյց զիս:

Սաղմոս. Գլ. 121. Ուրախ եղէ ես ոյք:

Ողջոյն քեզ սուրբ եկեղեցի.
ողջոյն քեզ սեղան սրբութեան
ողջոյն ձեզ դասք քահանայու-
թեան. ես ճանապարհորդեցի առ
արարիչն իմ:

Սաղմոս. Գլ. 86. Հիմունք նորա ՚ի լերանն:

Ողջոյն ձեզ մանկունք եկե-
ղեցւոյ. ողջոյն ձեզ հաւատա-
ցեալ եղբարք իմ ՚ի քրիստոս. ող-
ջոյն ձեզ համօրէն ժողովրդա-
կանք. ես ճանապարհորդեցի առ
քրիստոս յոյսն ամենեցուն:

Սաղմոս. Գլ. 138. Տէր փորձեցեր զիս:

Ահա հրաժարիմ ՚ի քէն սուրբ
եկեղեցի. ահա մեկնիմ ՚ի ձէնջ
սիրելի եղբարք, ՚ի կոչումն վե-
րանորոգողին քրիստոսի աստուծոյ
մերոյ:

Սաղմոս. Գլ. 138. Զանգործս իմ տեսին:

Աղօթս արարէք վասն իմ
հարք իմ, եղբարք և որդիք. և
օրհնեսցէ զձեզ քրիստոս փրկիչ
մեր. պահեսցէ հաստատուն ՚ի հա-
ւատս իւր մինչև ՚ի սահմանեալ
կէտ կոչմանս այսորիկ. և խաղա-
ղութիւն տեառն եղիցի ընդ ձեզ
յաւիտենից յաւիտեանս ամէն:

Սաղմոս. Գլ. 123. Եթէ ոչ տէր էր:

Օգնութիւն է մեզ յանուանէ
տեառն. այն որ արար զերկինս և
զերկիր:

Սաղմոս. Գլ. 145. Օրհնեա անձն իմ զտէր:

Երանի ազգի որում տէր աս-
տուած յակոբայ օգնական է
նորա:

Սաղմոս. Գլ. 132. Զի բարի կամ զի վայել:

Անդ պատրաստեաց տէր զօր-
հնութիւն, և զկեանսն յաւի-
տենից:

Սաղմոս. Գլ. 133. *Ահա օրհնեցէք ամենայն։*

Օրհնեսցէ զձեզ տէր 'ի սիովնէ. այն որ բնակեալն է յերուսաղէմ։

Սաղմոս. Գլ. 118. *Մերձեցաւ անձն իմ 'ի։*

Մերձեցաւ անձն իմ 'ի հող յորմէ ստեղծայ. քանզի պատուիրանաւն մեղայ, եւ ճաշակեցի ըզդառնութիւն մահու. տէր յիս իմ օգնեա ինձ։

Սաղմոս. Գլ. 118. *Զճանապարհս մեղաց։*

Զճանապարհս քո ես ոչ պահեցի. քանզի ոչ ժամանեցի ապաշխարել, այլ հեղգացայ. այլ առ քեզ միայն պաղատիմ հայր երկնաւոր. տէր յիս իմ օգնեա ինձ։

Սաղմոս. Գլ. 118. *Օրէնսդէտ արա։* Կցորդ:

Օրէնսդէտ արա զիս տէր 'ի ճանապարհի քում. քանզի խընդրեցի գոլ առ քեզ. դառնալ անդրէն 'ի հող յորմէ ստեղծայ. այլ առ քեզ միայն պաղատիմ հայր երկնաւոր. տէր յիս իմ օգնեա ինձ։

Ահա մերձեցայ։

Հաւատ ունելով հոգի խաղաղութեան, երթ առ արարիչըն հայցելով, աստուած իմ հանգո։

Որ եսուր հոգի յիսուս, ըզսա պահեա, զի քո խաչի եւ յարութեանըդ հաւատոյ թագաւոր երկնաւոր, հանգո զհոգի սորա յիշելով սորա զհաւատս։

Ի քաղաք տեառըն զօրութեանց եւ 'ի քաղաք թագաւորին մեծի. ուր ժողովք սրբոցն են 'ի խաղաղութեան, գնասցես յուսով եւ հանգիցես ընդ հրեշտակաց դասս, տեսանել զլոյսըն յաւիտենից։

Մերձեցաւ անձն իմ 'ի հող յորմէ ստեղծեր զիս, եւ հոգւոյս մեկնեալ յինէն. տէր զապաւինեալս յիշեա 'ի քում գալըստեանն։

Ստեղծուած եմ անարատ ձեռաց քոց մի անտես առներ, այլ խնայեա յիս յահագին աւուրն. տէր զապաւի։

Յորժամ գաս փառօք հօր դատել ըզտիեզերս ամենայն, եւ հարկանի փող հրնչման յարութեան. տէր զապաւի։

Ի գալըստեան տեառըն դրունք երկնից բանին. եւ ճառագայթիւք անճառ լուսով սուրբ խաչն երեւի։

Յերեսաց տեառըն լերինք հալին. եւ 'ի յահէ փառաց նորա շարժին զօրութիւնք։

Աւետեօք տեառըն մեռեալըք յառնեն. եւ սուրբք ամենայն անճառ փառօք զարդարին։

Գայ զօրութեանց թագաւորն 'ի նորոգել զաշխարհս. 'ի ձայն ահեղ բարբառոյ զարթուցանէ զնընջեցեալսն։

Դողան երկինք եւ երկիր յահէ փառաց քրիստոսի. հուր բորբոքեալ ընթանայ, բոցակիզէ զմեղաւորսն։

Նորափետուր զարդարին դասըք սրբոց կուսանացն. ուրախութեամբ մըտանեն 'ի յառագաստ փեսային։

Ի քեզ եմք ապաւինեալ ամենօրհնեալ սրբուհի. լեր բարեխօս անդադար վասըն մերոյ փրկութեան։

Սարաւելըն ստամամբ եւ ահագին զօրութեամբ գալոց է փրկիչն յաշխարհս յարուցանել ըզմեռեալսն։

Ահեղ եւ մեծ բարբառով հրեշտակապետըն գոչէ. արիք ասէ մի ննջէք, ահա եհաս ձեր փրկիչ։

Բոմամբ սրբութիւք յարուցեալ, եւ ընթանան առաջի. եւ տեսանեն զփրկիչն եկեալ փառօք 'ի յաշխարհս։

Գալստին գործոցըն ծածուկք յայտնին 'ի մեծ հրապարակն. եւ դողալով ընթանան 'ի յանվախճան 'ի տանջանս։

Ի յօթնեվանս հօրն իւրոյ կոչէ զզգաստ արդարոցն, եւ յանպատում 'ի բարիս զոր խոստացեալ է նոցա։

Սիրով անմահ փեսայիւն եղեր դու մայր մարիամ. բարեխօսեա վասն մեր 'ի յայնմ աւուր ահեղին։

Հարց. Երրորդ ձայն:

հրց գձ Օրհնեմք զքեզ հայր անսկիզբն ստեղծիչ ամենայն եղելոց. զխոստովանողս սուրբ անուանդ քո զննջեցեալսըն հանգո յարքայութեան քում. աստուած հարցըն մերոց։

Գովեմք զքեզ անճառ ծնունդ հօր անսկզբնակից որդի, որ մահու խաչի համբերեցեր վասն մեր. զննջեցեալսն 'ի քեզ ուղիղ հաւատով պայծառացո ընդ սուրբս քո. աստը։

Բարեխօսեմ սուրբ հոգի փառակից հօր եւ որդւոյ. հայցեմք 'ի քէն զննջեցեալսըն ճշմարիտ հաւատով սուրբ երրորդութեանդ, 'ի միւսանգամ նորոգմանըն դասեա 'ի դասս ընտրելոց քոց. աստը։

Ըզտէր. Միաբանական ձայնիւ ժողովուրդք առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ գոլով է փառօք հօր միածին որդին, ձայնիւ աստուածային փողոյն առնէ յարութիւն որդւոց մարդկան միա։

Որ առնէ հատուցումն ըստ իւրաքանչիւր գործոց դատաւորըն կենդանեաց եւ մեռելոց. եւ փառաւորէ զսիրելիս իւր պայծառացեալ 'ի կամարս լուսեղէնս. քահանայք առաւել բարձր։

Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։ մեծ

Աւետաւոր հրեշտակն աւետաբանէր զծնեալ փրկիչն 'ի սրբոյ կուսէն։

Ասէ ուրախ լեր բերկրեալդ. քանզի տէր տերանց է ընդ քեզ։

Հայր բարեգութ որ գթացար 'ի յազգս որդւոց մարդկան. առաքեցեր զմիածինդ 'ի փրկութիւն. յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո ընդ սուրբս քո։ ողր

Որդիդ միածին որ յարեար 'ի մեռելոց. 'ի միւսանգամ գալըստեանըն քո յարութիւն մեզ խոստացար. յիշեա զհո։

Հոգիդ ճշմարիտ մխիթարիչ սգաւորաց. աղաչանօք սուրբ աստուածածնին եւ ամենայն քոց սրբոց. յիշեա զհո։

Ի ձայն մեծի զուարթնոյն եւ 'ի հնչումըն հրաշալի փողոյն, ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին, յայնմ աւուր ահեղին յիշեա տէր եւ զմեր ննջեցեալսն, եւ հանգո ընդ սուրբս քո։ տէր

Յորժամ նշան տէրունեան ճառագայթիւք փայլէ, եւ թագաւորդ թագաւորաց փառօք տեսանի. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ զմեր զննջեցեալսն, եւ հան:

Յորժամ ատեան դատաստանին դնի, եւ դպրութիւնք հրաշէկն բանին. յայնժամ աւուր ահեղին յիշեա տէր եւ զմեր զննջեցեալսն:

տէր Որ երկայնամիտդ ես տէր. քաղցր եւ անոխակալ հանգո զհոգիս քոց ծառայից. զի մի դարձցին տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին:

Ի խորան քում սիրողաց հանգուցես զծառայս քո, եւ զհոգիս նոցա դասեցես ընդ սուրբս քո. զի մի դարձցի:

տէր Որ խոնարհեցար յերկնից բանդ աստուած, եւ առեր մարմին 'ի սրբոյ կուսէն. յիշեա զննջեցեալսն մեր յորժամ գայցես անճառ փառօք. զի դու ես տէր ամենայն երկրի:

Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց, եւ խաչիւդ քո լուծեր զերկունս մահու. յիշ:

Ի նստիլ քո յատենի դատաւոր ահեղ. աղաչանօք սուրբ աստուածածնին յիշեա զննջեցեալսն մեր, յորժամ գայցես անճառ փառօք. քանզի քո են փառք յաւիտեանս ամէն:

տէր Արարչագործ աստուած, զարարածս քո մի անտես առներ. այլ գթա 'ի ննջեցեալսն մեր, եւ հանգո ընդ սուրբս քո 'ի խորան քում սիրողաց:

Արարչակից հօր որդի, 'ի միւսանգամ քո գալըստեանն անդատապարտ պահեա զնոսա:

Կենդանարար սուրբ հոգի, յորժամ նորոգես զերկինս եւ զերկիր, նորափետուր զարդարեա զնոսա:

Արարչագործ աստուած, որ յոչընչէ գոյացուցեր զերկինս եւ զերկիր. օրհնեմք զքեզ, որ հանգուցիչ ես ննջեցելոց համայն ամենակալ: տէր

Բանդ աստուած եւ համագոյ փառաց հօր պատկեր. գովեմք զքեզ, որ յարութիւնդ ես ննջեցելոց որդիդ միածին:

Անգիւտ անըսպառ յորդէ բաշխի տնօրէնական շնորհ. բարեբանեմք զքեզ, որ նորոգող ես ննջեցելոց հոգիդ ճշմարիտ:

Յանհուն քո գալըստեանն յորժամ գաս տէր 'ի յերկնից աստուածային քո զօրութեամբդ. եւ նշան սուրբ խաչին պայծառանայ 'ի մէջ երկրի: տէր

Նորոգին տարերք երկրի 'ի ձայնէ հրեշտակին փողոյն, որ գոչէ զկենդանութիւն. ասէ արիք ելէք տէր կենդանեաց եւ մեռելոց:

Շնորհեա մեզ տէր ողորմութիւն 'ի ծագել սրբոյ խաչին որով եղեւ մեզ փրկութիւն. զի նովաւ ելցուք ընդ առաջ աստուածորդւոյդ որ 'ի յերկնից:

Քրիստոս աստուած յիշեա զննջեցեալսն 'ի սուրբ անուանդ քո: ձյն

Ըզգինս արեան քո տէր յիշեա եւ հանգո ընդ սուրբս քո: պհ բշ գշ եշ

Եւ 'ի միւսանգամ քո գալըստեանն զննջեցեալսն մեր յիշեա եւ հան:

Արեգակն արդարութեան Քրիստոս եւ ասպաւէն յուսացելոց, որ եւ ըզմեղօք մեռեալ մարմինս կենդանացուցեր փրկիչ. ընկալ ըզմեր ննջեցեալսն, եւ հանգո ընդ սուրբս քո։

Առ քեզ կարդամք անձամբք բեկելովք եւ արտասուալից հառաչանօք. որ ի գերեզմանին ղազարու արտասուեցեր փրկիչ. ընկալ ըզմեր ննջեցեալսն, եւ հանգո ընդ սուրբս քո։

Ի քէն հայցեմք բղխումն ողորմութեան եւ պարգեւիչ կենդանութեան. որ աւազակին ըզդրախտն ժառանգեցուցեր փրկիչ. ընկալ ըզմեր ննջեցեալսն, եւ հանգո ընդ սուրբս քո։

Հարց. Վառ. ձայն

հրց գկ Բանն աստուած որ ի ծոց հօր, վասն մերոյ փրկութեան ի յերկնից խոնարհեցար, զի զմեզ նորոգեսցես ի կեանս. աստուած հարցն մերոց։

Որ հանդերձեալ ես գալ փառօք հօր զարթուցանել ըզննջեցեալսն ի սուրբ անունդ քո, նորոգեա եւ ըզմեր ննջեցեալսն. աստուած հարցն մե։

Անմահութեան տուող քրիստոս եւ պարգեւիչ կենդանութեան, ի միւսանգամ գալստեանն եւ յաշխարհական ատենին թողութիւն շնորհեա մեր ննջեցելոցն. աստուած հար։

գ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Որ նստիս ընդ աջմէ հօր ծընողի քո, եւ մարդասիրապէս խընամես զարարածս. բարձր ես։

Որ ըզհնացեալ բնութիւն մարդկան նորոգէ իւր աստուածութեամբն, եւ կենագործէ ի կեանս անմահ. բարձր ես։

Լեառն վիմածին աղբիւր յորդառատ. բուրունակ ծաղկեալ այգի վայելուչ արմաւէ հողեղէն. բարեհոտնաւոյ բանին տուն անօրէնութեան տաղաւար հոգւոյն. առ ծընեալն ի քէն միշտ բարեխօսեա անդադար հայցմամբ. շնորհել զթողութիւն մեր ննջեցելոցն։ մեծ

Փափկութեան դրախտին բացող բանալի. քրիստոսի բարձող նըմանող երկնից. սափոր ոսկեղէն լի մանանայիւ. գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսսեայ տանձար լուսոյ մայր. առ ծըն։

Ցօղ քաղցրածաւալ ցանկալի զուարթնոցն. նիւթեղէն արփէ գեղ մարգարտափայլ հիմն եկեղեցւոյ. մաքուր անձանի ամպ հովանաւոր սուրբ կոյս մարիամ. առ ծընեալն ի քէն։

Յանըսկըզբնական ծոցոյ հօր խոնարհեալ բանըդ մարմնացար ի կուսէն վասըն փրկութեան մերոյ, աղաչեմք ըզքեզ. զննջեցեալսըն մեր ի քեզ ուղիղ հաւատով յիշեա տէր յորժամ գաս թագաւորութեամբդ քո։ ողր

Անոխակալ քաղցրութեամբ որդի աստուծոյ, հաճեցար բառնալ ըզմեղս աշխարհի քո խաչելութեամբն. աղաչեմք ըզ։

Կամաւորական մահուամբ քո լուծեր զերկունս մահու, եւ ար-

ժամի արարեր թողութեան յանցանաց քաւիչ քո արեամբ. աղամ։

Որ փոխանակ մեղաւորաց ըզմեռանիլ յանձն առեր. իջանելով 'ի դժոխս փրկեցեր 'ի մեղսամահ բանտէն ըզգերեալսն. աղամ։

Բարեբանեմք զանչափ քո զմարդասիրութիւնդ, որ երեքօրեայ յարուցեալ զկենդանութիւն պարգեւեցեր աշխարհի. աղամ։

տէր Լոյս 'ի լուսոյ զմեզ լուսաւորեա, որ փառօք Հօր հանդերձեալ ես գալ 'ի դատել զերկիր. արժանաւորեա՛ եւ զմեր ըզննջեցեալսն անձանց խոստմանց քոց ընդ սուրբս քո։

Հօր եւ Հոգւոյ համագոյակից, 'ի տիեզերական ահեղ ատենին արժանաւորեա՛ եւ։

Երկնի եւ երկրի արդար դատաւոր, յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց, արժանաւորեա՛ եւ։

տէր Որ արարիչդ ես հրեղինաց եւ հողեղինաց. եւ մշտընջենաւոր փառաբանիս 'ի բանաւոր պաշտօնէից. 'ի քեն հայցեմք թողութիւն շնորհեա ննջեցելոց մերոց։

Որ 'ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան բնակեցար. եւ զանմահութիւն պարգեւեցեր մեզ մահացելոցս. 'ի քեն հայ։

Յորժամ նստիս յաթոռ փառաց դատողական իշխանութեամբ, եւ փառաւորես առ 'ի քեն փառօք ըզգինս արեան քո տէր. 'ի քեն հայ։

տէր Որ անբաւ քո մարդասիրութեամբդ գթացար յազգս մարդկան, ծնար 'ի կուսէն. ըզծնեալս սուրբ աւազանաւն ըզննջեցեալսն մեր ընդ սուրբս քո հանգո՛ թագաւոր յաւիտենից։

Որ 'ի վերայ խաչին զենար որպէս գառն, եւ զմարմին եւ զարիւնդ քո բաշխեցեր 'ի փրկութիւն աշխարհի. զհաղորդեալս մարմնոյ քո եւ արեան, ըզննջեցեալսն մեր ընդ սուրբս քո հանգո՛ թա։

Որ ըստ նմանութեան մահու քո տընկակիցս արարեր, եւ երկնից արքայութեանդ ժառանգորդ լինել խոստացար. զհաւատացեալս գալըստեան քո տէր ըզննջեցեալսն մեր ընդ սուրբս քո հանգո՛ թագաւոր յաւիտենից։

Փառք քեզ անտրուած փառաւորեալ յաւիտեան. որ կենարարդ ես մարմնոց եւ պայծառացուցիչ հոգւոց մեր ննջեցելոյն։ տէր

Որ բարձրացար 'ի խաչին վասն ադամայ նորոգման, եւ իջանելով քո 'ի դժոխս աւար առեր ըզգերեալսն։

Ըզգինս արեան քո յիշեա կենագործող աշխարհի. եւ հանգըստեան արժանաւորեա՛ յերուսաղէմն վերին։

Ընդ զուարթունս երկնից օրհնեցէք ըզնընտրեալն 'ի յաթոռ փառաց. զի հանգուսցէ ըզննջեցեալ ծառայս իւր յաւիտենից 'ի միւսանգամ փառաց իւրոյ գալըստեանն։ տէր

Ընդ սերովբէիցն սրբասաց ձայնիւ գովեցէք զորդին միածին. զի հան։

Ընդ քերովբէիցն փառաբանութեանց բարեբանեցէք զՀոգին Ճշմարիտ. զի՛ հան:

Հարց. Չորրորդ ձայն:

հրց դձ Որ փառօք Հօր համագերձեալ ես գալ ի դատել զերկիր արդարութեամբ. զի զհոգեղէն ըզբղխութիւնս մեր վերացեալ նորոգեսցես ի կեանս, ընդ աջմէ քո Տէր աստուածահայրցն մերոց:

Որ աստուածային բարկութեամբ դատես ըզհեղինացեալս մեղօք լուսատու տիեզերաց. լուսաւորեա և զմեր զննջեցեալսն անճառելի աստուածային լուսովդ. ընդ աջմէ քո Տէր աս:

Որ նստիս ի վերայ բազմաչեայ քերովբէից թագաւոր խաղաղութեան. հանգո և զմեր զննջեցեալսն ի վերինդ քո Երուսաղէմ. ընդ աջմէ քո Տէր աս:

գ Ըզտէր օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեանս:

Որ յանհեղակերպ հայրենի կաս ընդ Հօր փառակից կենդանանին յաւիտենից, և իշխանութեամբ դատէ զամենայն արարածս. օրհնե:

Միաբան հայցեմք ի քէն սուրբ Հոգիդ կենդանարար. աղաչանօք սուրբ աստուածածնին արա արժանի և զմեր զննջեցեալսն մտանել ի յերկնային քո սուրբ առագաստ. և ընդ վերին զօրսն օրհնել սուրբ զերրորդութիւնդ:

մեծ Բազմերամք վեհագունիցն հոյաքըն յոգնախումբս եղանակեին. երգս առեալ մատուցանեն զերաժըշտականաց զերանաւէտ հոգեղէն հնչմունս, քերովբէք Էմմանուէլ որ ծընար ողջաբար և վերածեր զազգըս մարդկան հօր յորդեգրութիւն. աղաչանօք հայցեմք ի քէն զննջեցեալսն մեր ընդ սուրբս քո հանգո:

Գերագեղեալ դասէն ըզքեզ գերապայծառ զուարթունք հոգեղինացն, հեզաբար թևաւորեալ պարունակեալ ծածկեն զդէմս յահէ փառաց քոց. քե:

Զնոյն և մեք երգեմք քեզ բարբառական ձայնիւ զերգըս հոգեւորս. առ բերելով քեզ պատարագ ոսկի կնդրուկ զմուռս և զհալուէս. քե:

Ահագին է օրն դատաստանին, և դողումն առաջի բեմին. սարսափին հրեշտակք սասանի երկիր. զննջեցեալսն մեր մի անտես առներ յահագին աւուրն դատաստանին բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին: մեծ

Բանին դրունք երկնից բացին հրեշտակք. բանին գերեզմանք բորբոքի գեհեան. ըզնըն:

Գալարին երկինք որպէս մագաղաթ. գերանգոյն գուշէ փող գաբրիէլեան. գերապանծ լուսով զարդարին արդարքն. ըզնըն:

Յորժամ հարկանի փող գալըստեան քո Տէր, յայնժամ զարհուրեալ դողան արարածք ի յահէ քումմէ. աղաչեմք ըզքեզ փրկիչ, հանգո և զմեր զննջեցեալսն ընդ սուրբըս քո. որ միայն ես բազումողորմ: ողր

Յահաբեկ լուսոյ ծագման քո Տէր

ցընծան դասք առաքինեացն 'ի վե-
րոյ լուսեղէն ամպոյն. ողմ։

Անխափան բազմագութ ողորմած
տէր. մի անտես առներ ըզմեղու-
ցեալքս յահագին աւուրն. որ
միայնդ ես բազումողորմ։

ողր Զահագին համբաւ գալստեան
քո տէր ըզմըտաւ ածեմք, զար-
հուրեմք 'ի յերկիւղէ 'ի սպառնա-
լեաց գեհեննոյն. աղաչեմք ըզքեզ
փրկիչ, հանգո եւ ըզմեր ըզնըն-
ջեցեալսն ընդ սուրբըս քո, որ մի-
այնդ ես բազումողորմ։

Յորժամ գաբրիէլ հարկանէ ըզ-
տիեզերական ըզզարբեառ փողն,
եւ նորոգին հոգիք, նըկատէն
զիւրաքանչիւր տեղին. ողմ։

Ատեանըն դընի եւ դըպրութի-
ւնք հրաշիցըն բանին. եւ դատա-
ւորն ահեղ յակնարկելն իւր յա-
րարածս հատուցանէ վարձս ըստ
գործոց իւրաքանչիւրոյն. ողմ։

տէր Յանուլի գքեզ օրհնեն իշխա-
նութիւնք երկնից, թագաւոր փա-
ռաց ամենակալ ամենակարող. թող
ըզմեղըս մեր ննջեցելոցն, եւ
հանգո 'ի խորանի քում 'ի յար-
քայական 'ի հանգըստեան։

Որ 'ի նախնումն ըզմարդարէն մով-
սէս լուսաւորեցեր աստուածային
փառօք տեսլեամբ աստուածու-
թեանըդ քո. լուսաւորեա եւ ըզ-
մեր ըզնընջեցեալսն, եւ հանգո
'ի խորա։

Բարեխօսութեամբ սուրբ աս-
տուածածնի ծընողի եւ մօր քո
յիշեա զգինս արեան քո տէր,
եւ դասաւորեա յերանաւէտ յան-
թառամ եւ յանտըրտում 'ի
կեանսդ 'ի յար։

Փառըք քեզ հայր, որ կենարարդ տէր
ես մարմնոց եւ գոյացուցիչ հո-
գւոց. ընկալ զօրհնաբանող հո-
գիս յանմահական քո հանգիստ։

Մարդասէրն հօր որդի, որ պատ-
կերակից եղեր հողեղինացս եւ
խաչեցար. ընկալ։

Ամենազօր սուրբ հոգի, որ ան-
դորրիչ ես ննջելոց եւ մխիթա-
րիչ հոգւոց. ընկալ։

Ի հանգիստ քո տէր, ուր ամե- տէր
նայն սուրբք քո հանգչին. հան-
գո զհոգիս ծառայից քոց ընդ սուր-
բըս քո հանգո մարդասէր։

Դու աստըւած որ իջեր 'ի դը-
ժոխս, զերկուորս մահու լուծեր,
ըզկապեալսն արձակեցեր. եւ զհո-
գիս ծառայից քոց ընդ։

Ընդ հոգւոյն արդարոց կատարե-
լոց եւ զհոգիս ծառայից քոց
ընդ սուրբըս քո հանգո մար-
դասէր։

Ժամանակ դարձի իմոյ եհաս տէր
'ի յերկրէ. արդ տէր ընկալ ըզծա-
ռայս քո, եւ հոգի քո բարի ա-
ռաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ու-
ղիղ։

Խոստովանող հոգիս, որ ելից զու-
նայնութեան ընթացս աշխարհի.
արդ տէր ընկալ ըզ։

Ի վերջնումն աւուր մեծի, յոր-
ժամ առնես զայցելութիւն քոյոց
սիրողաց. յայնժամ խնայեա 'ի ծա-
ռայս քո, եւ։

Գըթա տէր 'ի հոգիս մեր նըն- տէր
ջեցելոցն եւ յիշեա ողորմու-
թեամբ. քանզի գինք սուրբ արեան
քո են. 'ի յորժամ հրաշալի ձայնիւ
փողոյն յառնեն մեռեալքն եւ կան
առաջի ահաւոր քո բեմին։

Զընկըղմեալքըս յանհագին մեղաց
ծովուս ապրեցո 'ի գեհեննոյն ընդդա-
ւանողըս սուրբ Երրորդութեանդ.
'ի յոր։

Զլուսաւորեալքըս ծննընդեամբ
սուրբ աւազանին մի բարկու-
թեամբ խրատեր, եւ մի սրտմըտ-
ութեամբըդ քո յանդիմաներ.
'ի յոր։

տէր Բարձրեալ թագաւոր յաւիտե-
նից Հայր անըսկիզբն, որ զմիա-
ծինդ առաքեցեր 'ի փրկութիւն
ազգի մարդկան. աղաչեմք ըզքեզ
յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց,
և` հանգո 'ի քում յարքայութեանդ։

Բանդ աստուած Երեւեալ մարմ-
նով յերկրի քահանայապետ ճըշ-
մարիտ, որ 'ի վերայ խաչին պատա-
րագեալ բարձող մեղաց գառն ա-
նարատ. աղա։

Երանական շնորհաց բաշխող
սուրբ Հոգիդ ճըշմարիտ. որ վե-
րըստին ծնընդեամբ աւազանին կո-
չեցեր յորդեգրութիւն ըզտիեզե-
րըս. գըթութեամբըդ քո նորո-
գեա զհոգիս ննջեցելոց մերոց,
եւ հան։

տէր Հայր անըսկիզբն արարիչ յաւի-
տենից, առ քեզ կարդամք եւ պա-
ղատիմք. հանգո զննջեցեալսըն
մեր 'ի սուրբ անունըդ քո։

Որդիդ միածին էակից Հօր եւ
Հոգւոյ. 'ի միաւանգամ քո գալըս-
տեանն հանգո։

Հոգիդ ճըշմարիտ փառակից Հօր
եւ որդւոյ. աղաչանօք աստուա-
ծածնին հանգո։

տէր Որ հայրական իշխանութեամբ
եւ փառօք գալոց ես տէր, նըստե-
լոց ես դատաւոր հանդերձ քո
առաքելովք. եւ առնես ըզհատու-
ցումըն քո արարածոց։

Որ լուսափայլ ճառագայթիւք նը-
շանաւ սըրբոյ խաչին, յանհաւոր
բեմին բազմիս, եւ ըստորեւս զօ-
դիս յայծեաց, եւ առնես։

Արդ աղաչեմք ըզքեզ քրիստոս
որդի աստուծոյ, հանգո զմեր նըն-
ջեցեալսն 'ի վերին երուսաղէմ.
զի մի դարձցի տընանկ ամաչե-
ցեալ 'ի յաւուրն ահեղ ատենին։

Խոնարհեալքս 'ի տաճար փառաց տէր
սրբութեանդ խոնարհեալ ան-
ձամբըք պաղատիմք, դատաւոր
կենդանեաց եւ մեռելոց քրիստոս
որդի աստուծոյ. յայնմ աւուր յա-
հեղին լուսազարդեալ պայծառա-
ցո զհոգիս մեր ննջեցելոցն 'ի վե-
րին երուսաղէմ 'ի յաջակող-
մեան դասուն։

Մեծ եւ ահեղ է օր գալըստեան
քո տէր. յորժամ շարժին զօրու-
թիւնք երկնից, արեգակնակերպ
ճառագայթիւք փայլես 'ի յարե-
ւելից. յայնմ աւուր յա։

Յորժամ հարկանի փող գալըս-
տեան քո տէր, 'ի յայնըժամ եւ
Երկիրըս դըղըրդեալ վերաբերէ
ըզննջեցեալսն որ յադամայ. յայնմ
աւուր յահե։

Մերձեցայ ես 'ի դուռըն գե- տէր
րեզմանին, եւ եհաս ինձ ժամա-
նակ մըտանել 'ի յարգանդ եր-
կրի, յորմէ առեղծեալ եմք ամենե-
քեան, բըժիշկ իմաստուն եւ ճար-
տարապետ. բըժըշկեա զհոգւոյ իմ
զհիւանդութիւն. արարող եւ յոյս
փրկութեան մերոյ։

Եղիցի ձեռըն քո պահապան ան-
ձին իմոյ, եւ աջ քո բարի առաջ-

նորոգեսցէ ինձ ՚ի յարդարութիւն.
բժիշկ իմաստուն ես։

Բըղխեսցես առ իս ըզգութ մարդասիրութեանդ. եւ յաղբերէդ կենաց լուացես զմեղս անձին իմոյ. բժիշկ իմաստուն ես։

Կեցցէ անձն իմ օրհնեսցէ ըզքեզ զամենայն աւուրս կենաց իմոց. եւ առ քեզ ապաւինիմ հովիւ բանաւոր հօտի, դարձո զմոլորեալս ՚ի հօտ քո քրիստոս. բժիշկ իմաս։

Անսկիզբն աստուած սկիզբն արարչութեան, ՚ի հողոյ ստեղծեր ըզմարդն առաջին. գործել եւ պահել յանպատում ՚ի կեանս. իսկ ՚ի ստունգանել հրամանի քո տէր, ըզվըճիռ մահու ՚ի վերայ եդեալ, հող էիր անդրէն եւ ՚ի հող դարձցիս. եւ այժմ աղաչեմք զստեղծողդ ամենից, ընկալ եւ հանգո զհրաժարեալ հոգիս, յեօթնամասնեղեան լուսեղէն խորանս. ուր ժողովքն են սրբոցն ՚ի խաղաղութեան, հոգւով հեզութեամբ յերկնից բարութիւնն։

Ոսկի եղեալս անպիտանացոյ. գեղեցկայարմար չինուածոյս քակտումն. իմաստունս յիմարեցոյ, ՚ի յալեաց մեղաց յոր ընկղմեցայ. եւ այժմ աղա։

Կոչողն եհաս վերին կոչողին. կոչնատէրն ահեղ կոչողն ահաւոր. դատաւորն անաչառ դատաստանն արդար. հրեշտակք անողորմ դատին զմեղաւորս. եւ այժմ աղա։

Մեծ եւ ահեղ է օրն դատաստանին. եւ դողումն առաջի բեմին. ՚ի լսել ըզձայն փողոյն եւ ըզհընչումն ահագին հրոյն։

Սարսափմամբ սասանի երկիր եւ դողան արարածք. եւ գաբրիէլ հընչեցուցանէ ըզտիեզերական ըզբարբառ փողոյն. եւ հոգիքն ըզգենուն զանապականն մարմինս։

Խաչըն փայլի յարեւելից եօթնըպատիկ պայծառ քան զարեգակն, պայծառանան արդարքն. եւ մեղաւորքըն ծածկին յանըստուեր լուսոյն. եւ ճառագայթ սուրբ խաչին առաջի քո գայ մաքրէ տեղի քեզ իջեւանի. ՚ի յայնմ աւուր ահեղին ողորմեա հոգւոց մեր ննջեցելոցն։

Հարց. Վերջ ձայն:

Յաւիտենից աստուած եւ արարիչ ամենայնի, որ մահկանացուացս կեանք ես եւ անմահութիւն. ըզքեզ բարեբանեմք աստուած հարցն մերոց։ հրց դկ

Որ սպասաւորեալդ ես ՚ի սերովբէից, զգեցար զծառայի կերպարանս. եւ խոստացար հաւատացելոց ննջեցելոց յանուն քո ըզկեանս. ըզքեզ բա։

Արդ խնդրեմք ՚ի քէն քրիստոս արարչակից հօր եւ սուրբ հոգւոյն, որ դատաւորդ ես կենդանեաց եւ մեռելոց. զհոգիս ննջեցելոց դասեա ընդ սուրբս քո. ըզքեզ բա։

Ըզտէր օրհնեցէք. Առաւել բարձր արարէք ըզնա յաւիտեան։ գ

Որ գալոցն է ընդ ամպս երկնից ՚ի նորոգել զերեսս երկրի. եւ զարթուցանէ ըզննջեցեալսն հանդերձ ամենայն սրբովք. առա։

Միաբան աղաչեսցուք ըզթագաւորն մեր քրիստոս, զի արժանի

արասցէ ըզննջեցեալսըն մեր մըտանել 'ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն. առ:

մեծ Աստուածածին մայր եւ կոյս ծագող արեգականն արդարութեան, որ լուսաւորեցան ըզմեզ, հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք ըզմիածին քո զորդին:

Ելոյծ զօրէնս բնութեան մարդկան հրաշափառ քո ծնունդ, եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ, եւ կուսութեանդ քո ոչ խախտեցան կնիք. հոգեւոր եր:

Զքեզ մորենի անկէզ, լեառըն վիմածին դուռըն փակեալ եւ աղբիւր կնքեալ. նախատեսացըն գուշակեալ մայր եւ կոյս. հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք, եւ փառաւորեմք ըզմիածին քո զորդին:

ողբ Որ թագաւորդ ես յաւիտենից քրիստոս աստուած. ընկալ ըզծառայս քո 'ի բարի, եւ շնորհեա 'ի յաջակողմեան քում դասին:

Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց, հանգո զհոգիս քոց ծառայից, եւ շնորհեա 'ի:

Յորժամ կարգի աթոռ տէրութեանդ քո, եւ հաստատի ատեան դատաստանին. յայնժամ խնայեա 'ի ծառայս քո, եւ շնորհեա 'ի յաջակողմեան քում դասին:

ողբ Ողորմութեանց տէր, ողորմութեանց տուող քրիստոս 'ի միւսանգամ քո գալըստեանն շնորհեա եւ մեր ննջեցելոցըն կալ 'ի յաջմէ քումմէ. որ ողորմածդ ես յամենայնի:

Յորժամ զաննմահութիւն կենաց շնորհես, եւ 'ի կեանս հրաւիրես. ընդ կամարարս անուանեալ

քո ըզննջեցեալսըն մեր դասաւորեա. որ ողոր:

Ընդ սուրբս քո դասեա եւ ընդ արդարսըն պսակեա 'ի տեղի անկելոց հրեշտակաց ըզննջեցեալսըն մեր կարգաւորեա. որ ողոր:

Հայր անսկիզբըն բարերինամ մարդասէր. որ ստեղծիչդ ես հոգւոց եւ մարմնոց. յիշեա զննջեցեալսըն մեր եւ հանգո ընդ սուրբս քո: տէր

Որդիդ միածին որ գթածդ ես առ ամենեսեան. եւ խաչիւ եւ արեամբ գնեցեր ըզքո ժողովուրդս. յիշեա զգինս արեան քո տէր, եւ հան:

Հոգիդ ճշմարիտ որ աղբիւրդ ես անսպառելի, եւ լուսացիչ ամենայն բարութեանց. յիշեա զնըն:

Խնդրեմք 'ի քէն թագաւոր փառաց փառաւորեալդ 'ի զուարթնոց. ըզննջեցեալսըն մեր ընկալ մարդասէր տէր, եւ հանգո ընդ սուրբս քո: տէր

Յորժամ գաս փառօք հօր դատել զերկիր արդարութեան արեգակն. ըզննջեցեալսըն մեր ըն:

Ի նստել քո յաթոռ դատաւոր անհեղ քրիստոս փրկիչ մեր եւ յոյս. ըզննջեցեալսըն մեր ըն:

Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ 'ի հրեղէն կառս. յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց, եւ հանգո ընդ սուրբս քո: տէր

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան եւ ներող յանցանաց մերոց. յիշեա զհո:

Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք նորոգել զնախաստեղծին ծնունդ. յիշեա զհո:

տէր Թագաւոր փառաց քրիստոս ան-
մահութեանց բաշխող. 'ի փառա-
ւորեալ գալըստեանն քո արժա-
նաւորեա ըզննջեցեալսն մեր դա-
սակից լինել սրբոց քոց մարդա-
սիրապէս. որ ես միշտ 'ի յա-
թոռ փառաց:

Զորս հաւաքեցեր ընդ սուրբս
քո, հաղորդիլ մարմնոյ եւ արեան
քո տէր. այսօր ընկալեալ հանգո
զհոգիս նոցա, կենագործելով 'ի
կեանսըդ յաւիտենից մարդասէր:

Ցորժամ առնես զհատուցումըն
տէր, եւ սուրբք քո պարծեսցին
'ի քեզ. յայնժամ խնայեա 'ի դա-
ւանողըս քո, դասաւորելով յաջա-
կողմեան դասուն մեր:

Թագաւոր փառաց քրիստոս յոյս
ապրի մարդկան, անհասանելի քո
զօրութեամբդ իջեր 'ի յերկնից կե-
նագործելով զանարատ ձեռաց քոց
ստեղծուածս զապականեալսն 'ի քեզ
զհոգիս ննջեցելոց մեր ընկալ յան-
տըրտում 'ի կեանսդ. որ օրհնիս
երգով 'ի հրեղէն զուարթնոցն:

Ի յերեւիլ հրաշիցն արփիահրաշ
փայլմամբ 'ի քառակերպեանն նը-
շանի քո տէր, եւ զօրք երկնից 'ի
յերկիր ծաւալին. զապա:

Ի հարկանել փողոյ հրեշտակա-
պետին մեծի, 'ի բանալ գերեզմա-
նացըն զարթիցեն մեռեալքն. անա-
պական մարմնով զարդարին ընդ
առաջ քո տէր. զապա:

Որ 'ի հօրէ առաքեցար մարդա-
սէր կարող փրկիչ. եւ ըզմեղսն-
ցեալ ըզմարդըն բըժշկեցեր. ողոր-
մեա տէր հրաժարելոյս. զոր հրաւի-
րեալ առ քեզ կոչեցեր:

Որ 'ի խաչին բեւեռեցար մար-
դասէր կարող փրկիչ. եւ ըզցօղ
անապական արեանդ ցօղեցեր ախե-
զերացս. ողոր:

Որ ըզդըժոխս աւերեցեր եւ ըզ-
գերեալսն փըրկեցեր, եւ զարգե-
լեալսն վերածեր 'ի յոյս կենացն
յաւիտենից. ողոր:

Ես ասացի տէր ողորմեա հո-
գւոյ իմոյ բազմամեղի, որ բնա-
կեալդ ես 'ի յերկինս եւ յանմար-
մնոց փառաբանիս. յիս մարդասի-
րեա բազմագութ փրկիչ, եւ փա-
րատեցո զցաւս անձին իմոյ:

Պականեցայ յազգատոհմէ ըքեալ
թողի զկեանս աշխարհի. եւ մար-
մին ունայնութեան դարձաւ 'ի
հող ուստի ստեղծաւ. յիս մար-
դասիրեա բազմ:

Ցաւօք յայնմիկ մատնեցայ 'ի
ձեռս ահեղ հրապարակին. եւ առ
քեզ ապաւինիմ ստեղծող բնաւից
տէր բոլորից. յիս մար:

Հայեցայ 'ի բարձունս առ քեզ
կարող յամենայնի. ընկալ զիս
յարկս արդարոց անմահածուկ ա-
ջովդ քո. յիս մար:

Ահա 'ի խաղաղութիւն դարձայ
'ի հող յորմէ ստեղծայ. նորոգող
ճարտարապետ պարգեւատու ողոր-
մութեան. յիս մար:

Այլ կենդանիքս օրհնեմք ըզքեզ
քրիստոս թագաւոր յաւիտենից,
որ փառօք փառաւորիս 'ի յերկնայ-
նոց եւ յերկրայնոցս. յիս մար:

Փառաբանութիւն առաքեմք ճշւ
քեզ հայր երկնաւոր. յիշեա զնըն- գշ
ջեցեալսն մեր, եւ հանգո ընդ
սուրբըս քո:

Որ էակից ես հօր եւ հոգւոյ որ-
դիդ միածին. յիշ:

Ո՛ր փառակիցդ ես Հօր եւ որդւոյ Հոգիդ ճշմարիտ. յիշ:

ճշւ / սւր Ո՛ր անըսկիզբն յէութեան եկիր յաշխարհ, մարմնացար 'ի կուսէն յաղագս մերոյ պարտեաց. հանգո զննջեցեալսն մեր:

Ո՛ր 'ի Հօրէ լուսոյ լոյս ծագեցար մեզ եւ կեանք, միածին որդի Հօր համագոյակից. հան:

Ո՛ր 'ի վերդ ես քան ըզմիտս եւ զխորհուրդս. եւ խաչի համբերեալ փրկեցեր ըզտիեզերս. հան:

Շաբաթապահոց յորս տօն ոչ տօնի՝ յաւուր ուրբաթու՝ զճաշուն զայս ասա՛:

ճշւ Ո՛ր յանէից ստեղծող գոյից արարչակից Հօր բանդ աստուած. թողութիւն շնորհեա ննջեցելոց քոց ծառայից, յորժամ գաս դատել զոր անաչառ ձեռօք ստեղծեր:

Ո՛ր 'ի Հօրէ առաքեցար եւ մարմնացար 'ի սուրբ կուսէն. թողութիւն շնոր:

Ո՛ր 'ի խաչին անշնչացար, զմահու լուծեր զիշխանութիւն. թողութիւն շնոր:

Ո՛ր պսակիչդ ես քոց սրբոց, եւ անկախճան բարեաց բաշխող. թողութիւն շնոր:

Տեառն Ներսիսի ասացեալ վասն ննջեցելոց:

բկ / դկ Աստուած անեղ անժամանակ Հայր անըսկիզբն եւ անքանակ, որդւոյ պատճառ ծնընդեամբ անճառ Հոգւոյն բղխմամբ անքննաբար. աղաչեմք ըզքեզ գթած երկայնամիտ եւ ողորմած, ողորմեա քո ստեղծուածոյս՝ 'ի քեզ յուսով ննջեցելոյս:

Բանդ որ 'ի ծոց Հօր միածին եւ կերպարան սկզբնատպին, որով երկինք գոյացան աշխարհ լըրիւ հաստատեցան. հայցեմք 'ի քէն տէր եւ փրկիչ ամենողորմ եւ կեցուցիչ. ողոր:

Գերագոյն շնորհաց բաշխող երկնաւորաց եւ երկրայնոց, կեանք եւ կենաց տուող Հոգի Հօր եւ որդւոյ արարչակից. խնդրեմք 'ի քէն աղբիւր բարեաց արբուցանողդ ծարաւեաց. ողոր:

Դաւանիմք ընդ սրովբէից. զկենդանարարդ համայնից. երեքսրբեան մի տէրութիւն զՀայր եւ զորդի եւ սուրբ զՀոգիդ. յոր հանգուցեալքս մըկրտեալ եւ հաւատով խոստովանեալ. ողոր:

Երրակի թիւ կատարեալ յերիս անձինս բաժանեալ, աստուածութեամբ միաւորեալ, միով բնութեամբ հաւասարեալ. յորմէ կապեալք եւ արձակիմք եւ վերըստին անլոյծ կապիմք. ողոր:

Զէակիցըդ Հօր զորդի փառաւորեմք անըռւելի. որ իջեր յարգանդ կուսին զանդամային առեր մարմին. աղաչանօք աստուածածնին անապական քում ծընողին ողոր:

Երեւեցար մարմնով յերկրի որ 'ի Հօրէ անմեկնելի. ընդ Հողեղէնս բնակեցար 'ի Հրեղինաց երկրպագեալդ. պաղատանօք երկնաւորաց փառաբանիչ քոց Հրեշտակաց ողոր:

Ըստ օրինացըն մովսեսի ընծայեցար 'ի տաճարին, զի ըզբնութիւնըս մարդկային ընծայեսցես Հօր 'ի յերկինս, խնդրուածովք սուրբ ծե-

րունութիւնքեւ 'ի կամակից արձակելոյն ող:

Թագաւորըդ հրեղինաց, որ ընդ մարդկան հողեղինաց շրջեցար տնօրինաբար կրեցեր ըզկիրըս մարդկաբար. որ վասըն մեր զայս ամենայն 'ի յանձն առեր խոնարհութեամբ. ող:

բձ Ժողովեալքս 'ի հրաժարումըն
գձ ծառայի քո յաշխարհէ, հայցեմք 'ի քէն արտասուելով եւ պաղատիմք զայս ասելով. Ճանապարհ ընդ քեզ երլից հանգուցելոյս լեր ուղեկից. 'ի յօթեվանս հօր քո լուսոյ ըզնըննջեցեալըս մեր հանգո:

Ի փրկութեան մերոյ սկըզբան մըկըրտեցար 'ի յորդանան. զոր շնորհեցեր նոր աւազան 'ի մաքրութիւն մեղաց մարդկան. հայցմամբ կըրկին կարապետին մեծին 'ի ծնունդըս մըկըրտչին 'ի յօ:

Լուսաւոր ձայնիւ յերկնից զքեզ դաւանեաց հայր էակից. աղաւնակերպ հոգին իջեալ առ համագոյդ իւր հանգուցեալ. ըզմըկըրտեալըս նովին հոգւով յորդեգրութիւն հօր հաւատով. 'ի յօ:

Խաւար մեղաց հալածեցաւ լոյս գիտութեան քեւ ծագեցաւ. խայթուած օձին բըժըշկեցաւ հիւանդութիւն մեր ողջացաւ. կենդանաբարըդ մեռելոց եւ լուսատուդ խաւարելոց. 'ի յօ:

Ծագումն անուն առ 'ի հօրէ որ ընտրեցեր 'ի յաշխարհէ, լուսաւորիչ տիեզերաց ըզզգաստ ընտրեալ աշակերտացն. աղաչանօք առաքելոցն փող յարութեան մեր եղելոյ. 'ի յօ:

Կեանք 'ի կենաց լոյս 'ի լուսոյ որ ըստեղծեր զմեզ 'ի հողոյ. նորոգեցեր դարձեալ կըրկին ծնընդեամբ սրբոյ աւազանին. զոր կեցուցեր շնորհիւ քոյին 'ի մահուանէն այն առաջին. 'ի յօ:

Հոգւով լըցեր զմարդն առաջին զոր կորուսեալ խաբմամբ չարին. ըզնոյն հոգի բանիւ քոյին հեղեր յոգիս մեր վերըստին. նովին հոգւով սուրբ եւ բարի առաջնորդեա հոգւոյ սորին. 'ի յօ:

Զայնեցեր առ զղազարոս որով ետուր մեռելոց յոյս, կենդանութեամբ չորեքօրեայն կենդանացան ուք յադամայն. կենաց ձայնիւ վերջին փողոյ կոչեա ըզսա յայսմ հողոյ. 'ի յօ:

Ղօղեալ սարսեաց պահակ մահու 'ի կենարար ձայնի լըրոյ. արագապէս զոյգ ընդ բանին ետ ըզմեռեալն ըստ հրամանին. իշխանք օդոյս այս սարսեսցեն զհոգի սորա մի արգելցեն. 'ի յօ:

Ճանապարհ մոլորելոց եւ ճառա- ակ
գայթ խաւարելոց. հրաւիրեցեր գկ
զորդիս լուսոյ 'ի յերկնային հարսանիս քո. ընդ զուարճալից անդ ժողովոց արժանացո ըզսա դասուց. լի լապտերօք մոյծ յառագաստ ընդ իմաստուն սուրբ կուսանացն:

Մերով բնութեամբ զոր ըզգեցար 'ի փայտ խաչին բեւեռեցար. լուծանելով զմեզ 'ի մեղաց 'ի նախահօրըն կապանաց. լոյծ եւ ըզսա 'ի յանցանաց վասըն քո սուրբ չարչարանաց. լի լապ:

Յետ կամաւոր մահու խաչի եդար 'ի նոր գերեզմանի. երեքօրեայ թաղմամբ յերկրի նոր ըստեղծեր զմեզ կենդանի. զննջեցեալս ընդ քեզ 'ի հող մահու վերակոչեա ձայնիւ փողոյ. լի լապ:

Նըստեալ կանա՜նցն իւղաբերից
եւ ողբայի՛ն սրտատրուալեաց, Իբր
ըղձեռեալ անյո՛ւսալից ըզկե՛նդա-
նիդ յարուցենից. վա՛ղն նոցի՛ն
սուրբ արտասուաց մաքրեա՛ ըզմեզ
'ի յանցանաց. լի՛ լապ։

Շա՛րժեալ հիմա՜նցըն դըժո՛խոց 'ի
տեսանե՛լ ըզքեզ ներքնոց, հաներ
զհոգիսն որք 'ի՛ բանտի՛ն կապեա՛լ
զի՛շխանըն մահածի՛ն. ը՛նդ հա՛ն-
գուցեա՛լ հոգիս սըրբոց հանգո՛ ըզհո՛-
գիս ննջեցելոյս. լի՛ լապ։

Ո՛ւրախութեամբ զօրք Երկնայի՛ն
յերկնի՛ց յերկիր իջանէի՛ն. յորժամ
յարեա՛ր 'ի մեռելոց լոյս ծագեցար
արարածոց. սուրբ յարութեամբ քո
կե՛նարար յա՛րո ըզմեզ 'ի կեանս ան-
մա՛հ. լի՛ լապ։

Չը՛հանդուրժեա՜լ պահապա՛նացն
'ի յերկինուղէ՛ երկնաւորացն, որք ա-
ւետիս տայի՛ն կանանց թէ մա՛հ
լուծաւ մահկանացուաց. սա՛ որ
մահու քո մի՛նկալից լիցի կե՛նաց
հաղորդակից. լի՛ լապ։

Պա՛րակցեա՜լ անմարմնականքն առ
կենդանատու սուրբ գերեզմանն, տա՛ն
զաւետիս ազգի՛ մարդկա՛ն վա՛ղն
կե՛նացն յաւէժական. գթածութեա՛մբ
պարուց նոցի՛ն ըզննջեցեալս յո՛րըն
վերջին. լի՛։

Ջա՛հաւորեա՜լ նըշա՛ն խաչի՛ն յարե-
ւե՛լից փայլեալ ծագի՛ն. հաւատա-
ցեալքն 'ի՛ քե՛զ բերկրի՛ն եւ ուրա՛-
ցողքըն կոծեցի՛ն. զե՛րկըրպագու-
սըրբոյ խաչի՛ն պայծառացո լուսով
նորի՛ն. լի՛ լապ։

աձ Ռա՛հ գործեա՜լ երկնաւորաց
գձ գան անուշի քո նախընթաց, զընտ-
րեալըս քո ժողովելով քեզ ընդ ա-
ռաջ բերե՛ն ամպով. ը՛նդ ո՛րա-
նեա՛ց օգնականաց խառնեա ըզմեզ
սուրբ երամից. գթասաւորեա ըզմեզ
վերնոյն Երգե՛լ ըզփառս ընդ զը՛-
ւարթնոցն։

Սա՛րսափի՜ն տարե՛րք երկրի յոր-
ժամ փառօք գաս հայրենի, արե-
գական լոյս խաւարի լուսի՛նն աս-
տեղքըն նուաղի՛ն. ըզմեզ յաւուրն
անե՛րեկի լուսաւորեա լուսո՛վ քոյի՛ն.
գթասաւորեա ըզմեզ վեր։

Վե՛րնակա՜ն զօրացըն պետ փողէ
զարթուցս անե՛տաբեր, որոք մե-
ռեալք որք յադամայ քա՛նզի ահա՛
ե՛կըն փեսայ. ը՛նդ հարսնացեա՛լ մա-
քուր հոգւոց կարգեա ըզմեզ 'ի թիւ
սըրբոց. գթա։

Տի՛րակա՜ն յաթոռ նըստի՛ս յարա-
րա՛ծոց երկըրպագիս, արդարու-
թեամբ զաշխարհ դատիս վարձս
ըստ գործոց հատուցանես. յայն-
ժամ շնորհեա ողորմութիւն ննջ-
ջեցելոյս մեր թողութիւն. գթա։

Րա՛մեալ մարդկա՜ն ազգ ժողովի՛ն
որք յադամայ ծընեալք լինի՛ն, եւ
հրեշտակաց դասք Երկնայի՛ն համա-
գումա՛յն վա՛յրաբերի՛ն. 'ի յայնմ
ահե՛ղ հրապարակի՛ն յիշեա ըզմեզ
յօրն ահագի՛ն. գթա։

Ցո՛ւցանի՜ն գաղտնիք մարդկա՛ն
իւրաքա՛նչիւր որ գործեցա՛ն. բա-
րեաց գործողքըն պսակի՛ն չա-
րեա՛ցն 'ի հուրն անշէջ մատնի՛ն.
յայնժամ յիշեա զորա՛ բարի՛ն
գործըք մեղա՛ցըն ջնջեսցի՛ն. գթ։

Իւ՛րսին պըսա՜կք զանազա՛նեալք
եւ պատմուճա՛նք լուսափայլեալք.
սուրբ վկայից 'ի՛ գլուխ եդեալ
եւ արդարոցըն զարդարեալ. հա՛-
ղորդս արա հայցմամբ նոցի՛ն ըզմեզ
լուսոյ փառաց նոցի՛ն. գթա։

Փառաց 'ի փառըս բարձրաննան ա-
ջակողմեանքըն վերանան, յորժամ
լըսեն զերամնականն ձայն օրհնու-
թեան 'ի քեն կոչման. ննջեցե-
լոյս մեր լըսեցո զաստուածային
բարբառըդ քո. դասս։
Քահանայք եւ ժողովուրդք հայ-
ցեմք 'ի քեն տէր բարեգութ, ընդ
ննջեցեալսըն հաւատով ընկալ ըզմեզ
նովին յուսով, յերուսաղեմ քաղաք
վերին յորում արդարքըն ժողովին.
փառս վերերգել միշտ ընդ նոսին
երրորդութեանդ երրեակ անձին։
եշ Արարիչ եւ մարդասէր ա-
գձ նախախնամ եւ բարեգութ, որ գո-
վիս 'ի սրովբէից տէր դատա-
ւոր արդարութեան. ընդ սրբոց
առաքելոց տէր պսակեա զմեր
ննջեցեալսն. ողորմած տէր ո-
ղորմեա հոգւոցըն մեր ննջե-
ցելոց։
գշ Յորժամ գըրեալքըն կատարին
որ զայնմ աւուր մեզ պատմե-
ցին. մարգարէից բանքըն յար-
գին առաքելոցըն վճարին. ող։
բշ Ի վերին երուսաղէմ 'ի բնա-
կարանըս հրեշտակաց, ուր ենովք
եւ եղիաս կան ծերացեալ ա-
ղաւնակերպ, 'ի դրախտին եդե-
մական պայծառացեալ արժա-
նապէս. ողոր։
տրն Թագաւոր փառաց քրիստոս որ
ժամանեալ գաս 'ի յերկնից 'ի վե-
րայ թեւոց հողմոց քո հայրե-
նի կերպարանօք. եւ առնես հրա-
փորձութեամբ ըզքննութիւն
որդւոց մարդկան. ողոր։
եկե Ի գնել բեմին բազմի փեսայն,
եւ առագաստըն զարդարի. զօր-
րինելեան փողըն գոչէ. սուրբք
ամենայն անդ հաւաքին. արդա-
րոց դասքըն բերկրին, իսկ մեղ-
աւորքըն թախանձին. ողոր։
Յորժամ հընչին փողոյն լինի շող
եւ ղեւտական գիրըն յայտնի. ձա-
ւագայթ սրբոյ խաչին յարե-
ւելից փառօք ծագի. հրեշտա-
կաց գունդք ծառայլին հրեշտա-
կապետք պարունակին. ողոր։
Ահեղ խորհուրդ քահանային նոչ
բազկատարած կայ 'ի բեմին ա-
ռաջի սուրբ սեղանոյն. հուր
շրջանի խաւար մերժի. տըրտմեալ
հոգիքըն ուրախանան, զի թո-
ղութիւն մեզ աց լինի. ողոր։
Մովսէս աստուածախօս եւ տպ
ահարօն ը ղեւտացին, մարգա-
րէքըն իսրայէլի եւ քահանայք
հին օրինին, յառաջադոյն մեզ
ծանուցին ըզգալուստ սուրբ
միածնին. 'ի փրկութիւն մեզ
յայտնեցին, յանապատի կե-
րակրէին. ողոր։
Տըրտմահաղորդ չարչարանօք ուր
'ի յանձն առեր ըզմահ խաչին. եւ
փայտին բարձող եղեր վասն ա-
դամայ նախաստեղծին. ողոր։
Զարհուրեցան զօրք երկնային ագ
յորժամ տեսին զտէրդ 'ի խա- ուր
չին. արեգական լոյս քող ար-
կեալ եւ լոյս լուսնին նուաղե-
ցաւ. յահեղ փառաց աստուա-
ծորդւոյդ խաւար եղեւ ընդ տիե-
զերս. ողոր։
Ուրախացան ազգըք մարդկան կեր
յորժամ լըւան զքո յարութիւնդ.
նորափետուր զարդարեցան 'ի
յարութեան սուրբ միածնիդ. ող։
Աղաչանօք սրբոյ խաչին եւ շաբ
անբարբառ բարեխօսին. եւ սըր-

բոյ աստուածածնի եւ յովհաննու կարապետին. եւ սրբոյն ստեփաննոսի եւ առաջին մարտիրոսին. եւ սրբոյ լուսաւորչին հայաստանեայց հայրապետին. եւ սրբոց առաքելոց եւ համօրէն մարտիրոսաց. ող:

Ես անացի 'ի վերանալ յինէն աւուրց իմոց, յոր ժամ երթայցեմ եւ ես այսօր. յառաջին օթեւանին զոր ոչ գիտէի. օգնեա եւ ինձ քրիստոս այսօր յառաջին ճանապարհին. եւ 'ի միւսանգամ գալստեանն քո օգնեա ինձ:

Եկն եհաս օր վախճանի իմոյ. լալումն ողբումն եւ աշխարումն. սիրտ իմ խռովեցաւ յիս, եւ ոսկերք իմ ցամաքեցան. օգնեա:

Ի մահճի իմ զարթուցին զիս պահանջողք հոգւոյ իմոյ. տանին զիս ճանապարհ հեռաւոր, զոր ոչ գիտէի. օգնեա:

Նայեցայ եւ ոչ ոք էր որ օգնէր ինձ. ապաւինեցայ յաստուած փրկութեան իմոյ. ցնծասցէ հոգի իմ յարքայութեան քում. օգնեա:

Գրեցայ ես 'ի գիր կենդանութեան. եւ մեկնեցայ երթալ առ արարիչն երկնի եւ երկրի. օգնեա եւ ինձ քրիստոս այ:

Յանստուեր եւ յանեղ լուսոյն հեռացայ խաւարմամբ խաւարային. ճաշակեցի ըղձմահաութ պտղոյն. հողանայ պատկեր բարերար ստեղծողին. օգ:

Յանջատման հոգւոյս 'ի մարմնոյս, 'ի քակտիլ գեղեցիկ շինուածոյս, զարհուրիմ 'ի սպառնալեաց թագաւորին, թէ պահանջէ յինէն զտաղանդ պատուիրանին. օգնեա:

Կուսածին մարդացեալ աստուած իմ յիսուս. յայնժամ աւուր ահեղ ատենին ըզգինս արեանն քո մի դատապարտեր. օգնեա:

Անսկալլի է օր վախճանին եւ ահեղ օր դատաստանին. յայնժամ աւուր ահեղ ատենին ըզգինս արեանն քո մի անտես առներ, զի պատկեր եմ բարերար ստեղծողին. օգնեա:

Զահաւոր դատաստան դատաւորիդ տեսի, եւ զարհուրեցայ. զի անպատրաստ եգիտ զիս 'ի հրամանաց քոց թագաւոր յաւիտենից. օգնեա:

Աստուածածին անարատ մայր տեառն եւ կոյս սուրբ. բարեխօսեա առ որդին քո միածին, զի փրկեսցէ զմեզ 'ի սպառնալեաց գեհենոյն. եւ պարգեւեսցէ մեզ զերկնից զարքայութիւնն. եւ հանգուսցէ զհոգիս մեր ննջեցելոցն. օգնեա եւ ինձ քրիստոս այսօր. յառաջին ճանապարհին եւ 'ի միւսանգամ գալստեանն քո օգնեա ինձ:



# ՑՈՒՑԱԿ

## ԿԱՐԳԻ ՇԱՐԱԿԱՆԻՍ

# ՑԱՆԿ

## ՄԵԾԱՑՈՒՍՑԷԻՑՆ

| Անուանք Ամսոց Երկոտասանից | Ա | Բ | Գ | Դ | Ե | Զ | Է | Ը | Ձայնագիւտ. Արարեալ յԱնդրիասէ իմաստասիրէ՝ Ատենադպրէ Թագաւորին Հեթմոյ։ | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Թ | Ժ | Ի | Լ | Խ | Ծ | Կ | Հ | | | | | | | |
| | Ձ | Ղ | Ճ | Մ | Յ | Ն | Շ | Ո | | | | | | | |
| | Չ | Պ | Ջ | Ռ | | | | | | | | | | | |
| Փետրուար | է | զ | ե | դ | գ | բ | ա | * | Ս | Վ | Տ | Ր | Ց | Ւ | Փ |
| Մարտ | գ | բ | ա | * | է | զ | ե | դ | է | զ | ե | դ | գ | բ | ա |
| Ապրիլ | բ | ա | * | է | զ | ե | դ | գ | զ | ե | դ | գ | բ | ա | * |
| Մայիս | * | է | զ | ե | դ | գ | բ | ա | դ | գ | բ | ա | * | է | զ |
| Յունիս | է | զ | ե | դ | գ | բ | ա | * | գ | բ | ա | * | է | զ | ե |
| Յուլիս | ե | դ | գ | բ | ա | * | է | զ | ա | * | է | զ | ե | դ | գ |
| Օգոստոս | դ | գ | բ | ա | * | է | զ | ե | * | է | զ | ե | դ | գ | բ |
| Սեպտեմբեր | գ | բ | ա | * | է | զ | ե | դ | է | զ | ե | դ | գ | բ | ա |
| Հոկտեմբեր | ա | * | է | զ | ե | դ | գ | բ | ե | դ | գ | բ | ա | * | է |
| Նոյեմբեր | * | է | զ | ե | դ | գ | բ | ա | դ | գ | բ | ա | * | է | զ |
| Դեկտեմբեր | զ | ե | դ | գ | բ | ա | * | է | բ | ա | * | է | զ | ե | դ |
| Յունուար | ե | դ | գ | բ | ա | * | է | զ | * | * | է | զ | ե | դ | դ |
| Փետրուար | դ | գ | բ | ա | * | է | զ | ե | * | է | զ | ե | դ | գ | բ |

## ԽՐԱՏ ԿԻՐԱՌՈՒԹԵԱՆ ԱՂԻՒՍԱԿԻՍ

Եթէ մոռացեալ լինի պատահմամբ ձայն աւուրն՝ եւ դու գտանել կամիցիս, նախ պարտիս գիտել թէ ո՞րն իցէ Գիր տարւոյն, այլ եւ զամիսն եւ զքանիս նոյն ամսոյն յորում որոնես։

Ուստի կա՛լ զԳիր տարւոյն 'ի վերուստ՝ որ է Տնագլուխ եղեալ՝ է՛ջ 'ի վայր հանդէպ ամսոյն, ուր է Եօթներեակ նորին։ Եւ առեալ զեօթներեակն՝ միաւորեա՛ ընդ թուոյ աւուր ամսոյն. եւ ութ ութն 'ի բաց գնա՛. եւ որ ինչ մնայ՝ այն է ձայն աւուրն անսխալ։

Բայց իմա՛՝ զի Գիր տարւոյ սորին ոչ փոփոխի 'ի մուտն Յունուարի, այլ յաւուր Կիւրակէի Բուն բարեկենդանին. յորում աւուր եւ ձայնն զինչ եւ իցէ՝ փոփոխի 'ի Վերջ ձայն. զի չէնք Աղիւսակիս արարեալ է 'ի վերայ Բուն բարեկենդանին, եւ անտի սկսեալ։ Զոր օրինակ թուական տարւոյս է՝ ՌՅԿԳ, Գիր տարւոյն է Հ. եւ յայսմ ամի Բուն բարեկենդանն 'ի Փետրուարի ԺԶ լինի. եւ հանդէպ սոյն ամսոյ, եւ 'ի ներքոյ Հ Տարեգրին եղեալ տուփն՝ է *, վասն որոյ չիք ինչ յաւելուլ 'ի վերայ ԺԶին, յորմէ երկիցս ութն 'ի բաց գնալով 'ի Վերջ ձայնն գայ։ Այլ եթէ ամն յորում կաք, նահանջ իցէ, 'ի Մարտ ամսոյ սկսեալ՝ պարտիս զերկրորդ գիր Տարեգրոյն 'ի կիր առնուլ. զի Փետրուար ամիսն մի օր յաւելանայ։ Սոյնպէս իմա՛ եւ վասն այլոց Տարեգրաց եւ ամսոցն աւուրց թուոց եւ Եօթներեկաց։

# ՑՈՒՑԱԿ

## ՅԱՏՈՒԿ ԱՒՈՒՐՑ ՀԱՐՑԻՑ ԵՒ ՄԵԾԱՑՈՒՍՑԻՑ